# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1956 ՀԻՆԳՇԱԲԹԻ 4 ՅՈՒՆՈՒԱՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٥٦ الخميس ٤ يناير ٢٠٢٤


## 2023-Ը ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ. ԴՐԱՄԱՏԻԿ, ՀԻԱՍԹԱՓԵՑՆՈՂ ԵՒ ՅՈՒՍԱԴՐՈՂ ԻՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ՏԻԳՐԱՆՈՒՀԻ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

Անցած տարին Հայաստանի համար բարդ էր. տեղի ունեցան բազմաթիւ իրադարձութիւններ՝ անսպասելի, սթափեցնող, հիասթափեցնող, դրամատիկ, շրջադարձային ու նաեւ յուսադրող: Այս յօդուածում յիշեցնում ենք դրանց այն մասը, որն առաւել կարեւոր էր Հայաստանի հասարակութեան համար, փոխեց երկրի ներկան ու ապագան:

**1. Հայաստանն ապրում էր Արցախից ստացուող լուրերով**

2023-ին ամբողջ հայութեան ուշադրութիւնը՝ թէ Հայաստանում, թէ Սփիւռքում սեւեռուած էր Արցախում տեղի ունեցող իրադարձութիւնների վրայ: Նախորդ տարուայ Դեկտեմբերի 12-ից փակ էր ԼՂ Հայաստանին կապող միակ ճանապարհը, Լաչինի միջանցքը:

Այն փակել էին իրենց էկօակտիւիստ անուանող ադրբէջանցիները: Իրենց ակցիան հիմնաւորում էին Արցախում «օգտակար հանածոների ապօրինի շահագործման բնապահպանական ռիսկերով» եւ մոնիթորինգի իրականացնելու հնարաւորութիւն պահանջում Դրմբոնի եւ Կաշէնի հանքավայրերում:

Շրջափակման հէնց առաջին օրը Հայաստանի վարչապետը յայտարարեց. «Ադրբէջանը Լեռնային Ղարաբաղում ցեղասպանութիւն է կազմակերպում, նախապատրաստում»:

Փետրուարին Արդարադատութեան Միջազգային Դատարանը բաւարարեց Հայաստանի պահանջը միջանկեալ միջոց կիրառել եւ պարտադրել Ադրբէջանին բացել Լաչինի միջանցքը: Սակայն Բաքուն չկատարեց դատարանի որոշումը:

Ապրիլին Ադրբէջանի սահմանապահ ծառայութիւնը յայտարարեց Լաչինի ճանապարհի մուտքի մօտ, ռուս խաղաղապահների վերահսկողութեան գօտում հսկիչ-անցագրային կէտի տեղադրման մասին: Խաղաղապահները որեւէ կերպ չարձագանքեցին, ճանապարհը շրջափակած քաղաքացիները լքեցին տարածքը, միջանցքի վերահսկողութիւնն անցաւ Ադրբէջանի պետական մարմիններին:

Յունիսի 15-ից ԼՂ-ում հումանիտար ճգնաժամն աւելի սրուեց: Ադրբէջանն արգելափակեց ոչ միայն մարդկանց, այլեւ հումանիտար բեռների մուտքը Արցախ: Օգոստոսին արդէն սովամահութեան դէպք արձանագրուեց:

Երեւանում ՄԱԿ-ի գրասենեակի ու տարբեր դեսպանատների դիմաց մարդիկ ինքնաբուխ ակցիաներ էին իրականացնում:

Հայաստանի կառավարութեան կողմից յատկացուած 400 տոննա ընդհանուր քաշով հումանիտար բեռը, որը Լաչինի միջանցքի սկզբնամաս էր հասցուել 19 բեռնատարներով Յուլիսի 26-ին, երկու ամիս մնաց տեղում կանգնած: Նոյն բախտին արժանացաւ Ֆրանսիայի կողմից արցախահայութեանն ուղարկուած 10 բեռնատար օգնութիւնը: Ադրբէջանական կողմը չթոյլատրեց դրանց մուտքը ԼՂ:

Սեպտեմբերի 19-ին Ադրբէջանը ռազմական գործողութիւններ սկսեց, որն անուանեց «հակաահաբեկչական օպերացիա»: Պաշտօնական Բաքուն հաւաստիացնում էր, թէ հրետակոծում է միայն ռազմական թիրախները: Իսկ տեղի բնակիչները ոչնչացուած բնակելի թաղամասերը պատկերող տեսանիւթեր էին տարածում:

Պատերազմը տեւեց մէկ օր: Պաշտօնական տուեալներով՝ հայկական կողմն ունեցաւ 200 զոհ եւ աւելի քան 400 վիրաւոր: Զոհեր եւ վիրաւորներ են արձանագրուել նաեւ խաղաղ բնակիչների շրջանում:

Սեպտեմբերի 20-ին ԼՂ ղեկավարութիւնը յայտարարեց, որ ընդունում է կրակի դադարեցման առաջարկը: Սեպտեմբերի 21-ին տեղի ունեցաւ Ղարաբաղի եւ Ադրբէջանի ներկայացուցիչների առաջին հանդիպումը Եւլախում: Ռուս խաղաղապահներին յանձնուեց ողջ ռազմական տեխնիկան:

Սեպտեմբերի 28-ին նախագահ Սամուէլ Շահրամանեանը հրամանագիր ստորագրեց առ այն, որ 2024 թուականի Յունուարի 1-ից Լեռնային Ղարաբաղի Հանրապետութիւնը կը դադարի գոյութիւն ունենալ:

Մինչ այդ, Սեպտեմբերի 24-ին Ադրբէջանը միակողմանի բացեց Լաչինի միջանցքը: Եւ ամբողջ հայութիւնը մէկ շաբաթում լքեց իր տները ԼՂ-ում: Մարդիկ անհամատեղելի համարեցին իրենց կեանքը Ադրբէջանի կազմում եւ տեղափոխուեցին Հայաստան:

Արցախը լքող հայերի թւում էին նաեւ նախկին ու ներկայ պաշտօնեաներ, որոնցից 8-ին ադրբէջանցիները ձերբակալեցին: Այս պահին Բաքուի բանտերում են նախկին նախագահներ Արկադի Ղուկասեանը, Բակօ Սահակեանը եւ Արայիկ Յարութիւնեանը, պետնախարար Ռուբէն Վարդանեանը, պաշտպանութեան բանակի հրամանատարի տեղակալ Դաւիթ Մանուկեանը, պաշտպանութեան նախարար Լեւոն Մնացականեանը, արտգործնախարար Դաւիթ Բաբայեանը, նաեւ ձերբակալութեան պահին գործող Ազգային Ժողովի խօսնակ Դաւիթ Իշխանեանը:

Նրանք մեղադրւում են բազմաթիւ ծանր յանցանքներում՝ պատերազմական, մարդկութեան դէմ յանցագործութիւններից մինչեւ ահաբեկչական գործողութիւններ եւ դրանց ֆինանսաւորում:

Միւս արցախցիները Հայաստան էին հասնում երկու-երեք օրում, քանի որ Հակարիի կամուրջը խցանուած էր: Այստեղ նրանք հաշուառւում էին, օգնութիւն ու ժամանակաւոր կացարան ստանում:

Պաշտօնական Երեւանը յայտարարեց, որ այսպիսով Ադրբէջանն աւարտին հասցրեց իր նպատակը՝ էթնիկ զտումն ու ցեղասպանութիւնը հայ բնակչութեան նկատմամբ:

**2. Եւրամիութեան դիտորդները տեղակայուեցին հայ-ադրբէջանական սահմանին**

Արցախեան երկրորդ պատերազմից յետոյ չի թուլանում լարուածութիւնը հայ-ադրբէջանական սահմանին: Հայաստանի ռազմավարական դաշնակից Ռուսաստանի անտարբեր կեցուածքն ու անգործութիւնը դեռ նախորդ տարի փաստացի պարտադրեցին Նիկոլ Փաշինեանի կառավարութեանը մտածել անվտանգութեան մեխանիզմների դիւերսիֆիկացիայի մասին:

ԵՄ դիտորդական առաքելութեան տեղակայումը հայ-ադրբէջանական սահմանի երկայնքով այդ քայլերից մէկն էր:

2023-ի Յունուարին Եւրամիութիւնը ↳ 4

## ՓԱՇԻՆԵԱՆՆ ՈՒ ԱԼԻԵՒԸ ՍԱՆԿՏ ՊԵՏԵՐԲՈՒՐԳՈՒՄ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՕՐԱԿԱՐԳԻՆ ՎԵՐԱԲԵՐՈՂ ՀԱՐՑԵՐ

Հայաստանի վարչապետն ու Ադրբէջանի նախագահը Սանկտ Պետերբուրգում քննարկել են խաղաղութեան օրակարգին վերաբերող հարցեր, *Ազատութիւն ռադիոկայան*ի հարցին ի պատասխան յայտնեց վարչապետի մամուլի խօսնակ Նազելի Բաղդասարեանը:

«ԱՊՀ ոչ պաշտօնական գագաթաժողովի ընթացքում տեղի են ունեցել ոչ պաշտօնական շփումներ Հայաստանի վարչապետի եւ Ադրբէջանի նախագահի միջեւ: Քննարկուել են Հայաստան-Ադրբէջան խաղաղութեան օրակարգին վերաբերող հարցեր: Քննարկումները եղել են երկկողմ ձեւաչափով», - նշել է վարչապետի խօսնակը:

Սա Լեռնային Ղարաբաղի նկատմամբ Ադրբէջանի իրականացրած ռազմական գործողութիւններից յետոյ երկու երկրների ղեկավարների առաջին հանդիպումն էր:

Հայաստանի եւ Ադրբէջանի առաջնորդները վերջին անգամ հանդիպել էին Յուլիսին եւրոպական միջնորդութեամբ: Հերթական բանակցութիւնները նախատեսուած էին Նոյեմբերին՝ Գրանադայում, սակայն Արցախի հայաթափումից յետոյ Ադրբէջանի նախագահը տապալեց ոչ միայն այդ, այլ նաեւ Բրիւսէլի հանդիպումը: Տեղի չունեցան նաեւ արտգործնախարարների վաշինգտոնեան բանակցութիւնները:

Ու թէեւ դէմ առ դէմ բանակցութիւններ չկային, կողմերն այս ընթացքում փոխանակում էին խաղաղութեան պայմանագրի նախագիծը: Նախօրէին Երեւանը հաստատեց՝ ստացել է փաստաթղթի 7-րդ տարբերակը: Ադրբէջանի արտգործնախարարն ասել էր, թէ հանդիպումներ սպասւում են 2024-ին: Կոնկրէտ վայրի եւ ժամկէտների մասին, սակայն, Բայրամովը չի խօսել:

## ԲԱՔՈՒՆ ԵՒ ԵՐԵՒԱՆԸ ՊԱՏՐԱՍՏ ԵՆ ԱՒԱՐՏԻՆ ՀԱՍՑՆԵԼ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ. ՊԵՍԿՈՎ

Բաքուն եւ Երեւանը պատրաստ են աւարտին հասցնել խաղաղութեան պայմանագիրը, *Առաջին ալիք*ի եթերում Դեկտեմբերի 26-ին յայտարարել է Ռուսաստանի նախագահի մամուլի քարտուղար Դմիտրի Պեսկովը:

«Նրանք հակամարտող կողմեր չեն, նրանք յայտարարում են իրենց լիակատար պատրաստակամութեան մասին հասնելու միասնական փաստաթղթի, աւարտին հասցնելու խաղաղ բանակցութիւնները, խաղաղութեան պայմանագրի: Այստեղ որեւէ ռիսկ չկայ», - պատասխանել է Պեսկովը հարցին, թէ արդեօք վախենալու չէ մէկ տեղ հաւաքել «հակամարտող կողմերին»:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՄԻՐԶՈՅԵԱՆԸ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԵԿՏՈՐԻ ՄԱՍԻՆ

Քաղաքականութեան մէջ, մասնաւորապէս, Հայաստան-Ռուսաստան յարաբերութիւնների մասին խօսելիս, պէտք է առաւելագոյնս ուշադիր լինենք ձեւակերպումների հանդէպ եւ չառաջնորդուենք պարզունակ գնահատումներով, ասաց արտգործնախարար Արարատ Միրզոյեանը՝ Դեկտեմբերի 27-ին պատասխանելով լրագրողի հարցին, թէ ինչպէ՞ս կը մեկնաբանի այն, որ վերջին շրջանում թւում էր, թէ Հայաստանի արտաքին քաղաքական վեկտորը գնում է դէպի եւրաինտեգրում, սակայն վարչապետի՝ Ռուսաստան այցից յետոյ տպաւորութիւն է, թէ գնում է դէպի Մոսկուա:

Անդրադառնալով հայկական կողմի դժգոհութիւններին, որոնք առնչւում են ռուսական կողմին, Միրզոյեանը նշեց. «Երբեք չենք թաքցրել, որ եղել են մի շարք խնդիրներ, որոնց մասին մենք բարձրաձայնել ենք: Այդ խնդիրները վերաբերում են առաջին հերթին երկկողմ ռուսական, նաեւ ՀԱՊԿ-ի շրջանակներում Հայաստանի ունեցած ակնկալիքներին եւ այդ ակնկալիքների արդարացմանը կամ չարդարացմանը: Այդ խնդիրները եղել են, այդ խնդիրները մենք տեսել ենք ե՛ւ այն դէպքերում, երբ Հայաստանի Հանրապետութեան սահմաններն են խախտուել եւ Հայաստանի ինքնիշխան տարածքներն են յայտնուել օկուպացիայի տակ, ե՛ւ այն Լեռնային Ղարաբաղում խաղաղապահների գործունէութեան կամ անգործութեան դէպքերում, ու բազմաթիւ այլ, այդ թւում՝ որոշակի տնտեսական հարցերում»:

Արտգործնախարարը նշեց՝ ՀԱՊԿ-ը մի կազմակերպու- ↳ 4

# ԽՄԲԱՎԱՐ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

1949-ին կը յօրինէ *Հէքիաթ* օփերայի լիպրեթթօն եւ երաժշտութիւնը, որ իր ղեկավարութեամբ կը բեմադրուի 1949 Սեպտեմբեր 10, 11 եւ 17-ին, Աղեքսանդրիոյ Յառաջդիմասէրի մէջ, վերջինիս ուժերով:

*Հէքիաթ*ը կազմուած է երկու արարներէ եւ մէկ պատկերէ.

Ա. արար – Հէքիաթային անտառ, արեւածագ:

Պատկեր – Նոյն տեսարան, լուսինի խաւարում:

Բ. արար – Հրաշափոխուած անտառ, պայծառ առաւօտ:

Գործող անձինք՝ իշխան, որբուհի, երկու որսորդ եղբայրներ, երկու փայտահատներ, մենապարուհի:

40 հոգինոց քառաձայն երգչախումբ՝ բարի եւ չար ոգիներ, թիթեռնիկներ, գաճաճներ, զինուորներ եւ ժողովուրդ:

Կ'ուղեկցի 15 հոգինոց նուագախումբ(116):

*Հէքիաթ*էն համարներ Ափրիկեան կը կրկնէ իր ղեկավարած յետագայ ձեռնարկներուն մէջ հատուածներ (1950 Մայիս 2-ին, եգիպտական ռատիօ)(117), «Բարի եւ չար ոգիներու պարը» (1950 Մայիս 28, Աղեքսանդրիոյ Լիսէ Ֆրանսէ)(118), որսորդներու տեսարանը (1950 Օգոստոս 6, Կամքի դաշտ)(119):

Երբ կը կատարուի «Գնանք եղբայրներ» համարը (1952 Մայիս 18, Գահիրէի Յուսաբեր), Կարօ Գէորգեան կը գրէ. «*Հէքեաթ* օփերայէն առնուած եւ Ափրիկեանի մշակած «Գնանք եղբայրներ»ը թէեւ հայկական ոճ չունէր, բայց հաճոյքով ունկնդրուեցաւ իբրեւ խանդավառ քայլերգ մը»(120):

Այլ առիթով, Բիւզանդ Կռանեան եւս պիտի յիշէր *Հէքիաթ*ը եւ նոյնպէս զայն պիտի գնահատէր հայկական/ոչ-հայկական երկուութեան հիման վրայ. «Իր *Հէքիաթ*ը, մշակումով արեւմտեան, բայց իր դաշնաւորման մէջ կը պահէ հեղինակին պարզութիւնն ու անկեղծութիւնը»(121):

Որոշ հետաքրքրութիւն մը կ'առթէ Պօղոսեան Ազգային Վարժարանի աշակերտութեան համար յօրինած պարային երաժշտութիւնները: Վարժարանի ամավերջին հանդէսին՝ 1951 Յուլիս 1, Լիսէ Ֆրանսէ, կը ներկայացուին երկու պարեր, առաջինը՝ կախարդական անտառի պարախառն պատկեր մը, պարադիր՝ Սրբուհի Սարգիսեան, երկրորդը՝ հայկական պար, պարադիր՝ Գեղանոյշ Սէրթլեան: Աշակերտական նուագախումբը՝ Ափրիկեանի ղեկավարութեամբ, կ'ուղեկցի պարերուն, Ափրիկեանի յօրինած երաժշտութեամբ. «Շնորհաւորելի է երաժշտութեան ուսուցիչ պ. Կարպիս Ափրիկեան, որ կրցած էր երկու պարերն ալ հետաքրքրական դարձնել, շնորհիւ իր յօրինած պարի եղանակներուն»(122):

Իսկ 1952 Հոկտեմբեր 15-ին, Եգիպտոսի ռատիոկայանի Հայկական Ժամէն պարիթօն Սարգիս Սարգիսեան կը մեներգէ Ափրիկեանի *Լեգենդ*ը(123):

Երգահանդէսներուն մէջ տեղ գտած են անհատական շեշտերով մշակած *Հօյ նար* եւ *Էս գիշեր Համբարձում է* խմբերգները, որոնք Ափրիկեանի հեղինակութիւններէն ամենաշատը գրաւած են մամուլի ուշադրութիւնը, նոյնիսկ աւելի շատ քան ամբողջ երեկոներ գրաւած *Հէքիաթ*ը:

*Հօյ նար*ը կը հնչէ՝ 1950 Նոյեմբեր 5 (Աղեքսանդրիոյ Լիսէ Ֆրանսէ)(124), 1952 Նոյեմբեր 16 (Գահիրէի Յուսաբեր)(125), 1952 Դեկտեմբեր 7 (Աղեքսանդրիոյ Մոհամմատ Ալի սրահ)(126): 1952 Նոյեմբեր 16-ի պարագային կը յիշատակուի մեներգչուհիի առկայութիւնը:

*Հօյ նար* եւ *Էս գիշեր Համբարձում է* կը հնչեն՝ 1952 Մայիս 4 (Աղեքսանդրիոյ Մոհամմատ Ալի սրահ)(127), 1952 Մայիս 18 (Գահիրէի Յուսաբեր)(128):

Այս երկու յօրինումներուն համար քաջալերանքի արժանի է հեղինակը, կ'ընդհանրացնէ *Արաքս*, «Գալով Ափրիկեանի *Հօյ նար* եւ *Էս գիշեր Համբարձում է* զոյգ կտորներուն, երկուքն ալ նոյնպէս յաջող կերպով երգուած, չափազանց մեծ յաջողութիւն մը կը ներկայացնէին մեր երիտասարդ խմբավարին համար որ արժանի է ոչ միայն ամէն շնորհաւորութեան այլեւ բոլորիս անվերապահ քաջալերանքին»(129):

*Յուսաբեր*ի անստորագիր նկարագրողը կը փորձէ պատկերաւոր ըլլալ. «Յայտագրին վերջին երկու երգերը, *Հօյ նար*ը եւ *Էս գիշեր Համբարձում է*ն, մշակուած էին խմբավարին՝ պ. Կ. Ափրիկեանի կողմէ: Առաջինը, առոյգ կշռոյթով, կենսախինդ արտայայտութեամբ, ուշադրութիւն գրաւեց մասնաւորաբար իր բերած երիտասարդ շեշտով եւ յանդուգն շարահիւսութեամբ: Երկրորդը տօնական յիշատակներու կապուած հայրենաշունչ երգ մըն էր, լեցուն տեղական գոյնով, ջերմութեամբ, ցնծագին կեանքի մը թրթռուն պատկերներով եւ այնքան հարազատ մեր ժողովուրդին, որ խելայեղ ծափահարութիւններ խլեց եւ կրկնուեցաւ»(130):

Կարօ Գէորգեան յայտնութիւն մը կը համարէ Ափրիկեանի մշակում-յօրինումները յիշեալ երկու երգերուն.

«Իբրեւ ստեղծագործող եւ սեփական կնիքով հրապարակ իջնող հեղինակ, յայտնութիւն մը եղաւ ան նախ իր դաշնաւորումներուն մէջ: Յայտագրի վերջընթեր կտորը՝ *Հօյ նար*ը, օրինակի համար, նորութիւն էր իր կառուցումով, իր մեկնարկութեամբ, իրար գրկող, եւ դանդաղ թէ արագ իր գնացքին մէջ երբեք չկաղացող իր ոստոստուն կշռոյթով: Ուրիշ երաժշտագէտներ ալ դաշնաւորած են այս ժողովրդական պարերգը յաջողութեամբ: Ափրիկեանին յղացումը, սակայն, կը զանազանուի անոնցմէ իր շարք մը գիւտերով եւ որոշ մասերու մէջ՝ իր հարուստ երանգներով:

«Իսկ իր միւս ստեղծագործութիւնը, *Էս գիշեր Համբարձում է*ն, որ ապահովաբար իբրեւ յայտագրի ծանրագոյն հրետանին, անոր վերջին թիւը կը կազմէր, անվիճելի կատարելութիւն մըն է: Ոճով, ոգիով ու նիւթով գերազանցապէս ժողովրդական ու հայկական այս երգին մէջ հեղինակը մեզի կու տայ Համբարձման վիճակը, իր ամբողջական ու աւանդական հրապոյրով:

«Փակէ աչքերդ, ունկնդրէ երգը եւ ինքզինքդ կը գտնես դալարիքին վրայ աղբիւրի մը քովը կամ հնամենի ծառի մը տակ, ուր Համբարձման գիշերով հաւաքուած են իրենց ամօթխածութեան մէջ դեռ շիկնող գեղջկուհիներն ու իրենց ակնարկութիւններով ու նայուածքներով անոնց քար նետող պարմանիները, որոնք վիճակ կը հանեն զուարթութեան ու ծիծաղի քրքիջներով: Ու մինչ աղջիկները իրենց նազանքին ու տղաքը իրենց իղձերուն անձնատուր կ'երգեն լիաթոք, տարածուն շշուկներէ վերջ տեսարանը կը յանգի իր վախճանին բամբ շեշտերովը երգող այրերուն - «Էս գիշեր Համբարձո՛ւմ է»...

«Հեղինակը այնքան կեանք ու ջերմութիւն դրած է այս գողտրիկ խմբերգին մէջ, որ առանց այլեւայլի հիացումի առարկայ կը դառնան իր յղացումներուն գեղեցիկ յանդգնութիւնն ու անակնկալ բաղակցութիւնները: Այս մէ՛կ երգը միայն պիտի բաւէր յայտնութիւն մը նկատելու Ափրիկեանը, երաժշտական արուեստի կալուածին մէջ: Եւ իրապէս, եղաւ ան այդպիսին շատ շատերու համար»(131):

Ցեղայինը, անհատականութիւնը եւ արդիականութիւնը կը խառնուին Բիւզանդ Կռանեանի մօտ.

«Բացի ղեկավարի այս խոստումէն, երիտասարդ արուեստագէտը երեւան կը բերէ նոյնպէս երաժըշտական արտակարգ ընդունակութիւններ: Իր դաշնաւորած *Հօյ նար*ը, որ ամէն համերգի կ'երգուի եւ ժողովուրդի ջերմ խանդավառութեան կ'արժանանայ, ամենացայտուն ապացոյցն է: Ափրիկեան, հակառակ իր ունեցած երաժշտական անբաւարար պատրաստութեան – Եգիպտոսի ընձեռած սահմանափակ միջոցներով եւ ինքնօգնութեամբ – կը ճանչնայ դաշնաւորումի սկզբունքներն ու էութիւնը: Լիովին ըմբռնած ըլլալով հայ ժողովրդական երաժըշտութեան *մոթիւ*ը, պահելով հանդերձ անոր ցեղային դրոշմն ու ոգին, արուեստագէտը չի սահմանափակուիր իր նախորդներու աւանդութեամբ, գծած ճամբաներով, այլ երիտասարդի մը յանդգնութեամբ ներճիգ կը փորձէ հայկական երաժշտութեան մէջ ներմուծելու արդիական առողջ տարազներ եւ *ուժականութիւն*: Կը շեշտեմ վերջին բառը, որովհետեւ այս ծլող տաղանդը կարծես սահմանուած է հայկական զգայնութեան եւ պարզութեան միացնելու ուժը:

«Արուեստի մէջ *ուժ* ըսելով չեմ հասկնար արտաքին ու նիւթական միջոցներով ստեղծուած ճիգը, այլ ներքին, յղացման զգացական յորձանքներէն ծնած թափը: Այս խոստումը կը ներշնչէ Կարպիս Ափրիկեան: Իր ուղին լի է անսահման կարելիութիւններով: Անիկա դժբախտութիւնն ունի հայ հողը տեսած չըլլալու, սակայն, ատոր փոխարէն, օժտուած է ցեղային հարուստ ժառանգականութեամբ, ինչպէս ամէն տաղանդ, բնազդօրէն կ'ըմբռնէ հայ երաժշտութեան ոգին եւ իր արտայայտութեան ու յղացումներու մէջ երեւան կը բերէ նորութիւն մը, որ իր անհատական խառնուածքին եւ իր ապրած դարուն անդրադարձումն է»(132):

Դատելով Ափրիկեանի յօրինումներու փարիզեան շրջանի ձայնագրութիւններէն, Կռանեանի շեշտադրութիւնը արդիականութեան վրայ բաւական չափազանցուած է: Ցեղային-ազգայինի եւ սեփական անհատականութեան կապի յաւերժական հարցին շուրջ առաջ բերած գաղափարախօսութիւնը՝ ուրիշ խնդիր: Բայց անկախ այս ուղղակի իմաստներէն, անդրադարձումը եւ կեդրոնացումը Ափրիկեանի յատկապէս *Հօյ նար*ին վրայ ինքնին վկայութիւն մըն է վերջինիս առթած հետաքրքրութեան եւ շարժած զգացումներուն:

Այս բոլորէն զատ, Ափրիկեան նաեւ կը մշակէր եւ կը գործիքաւորէր խմբերգներուն եւ մեներգներուն նուագախումբի նուագակցութիւնները:

* * *

Ափրիկեանի եգիպտահայ գործունէութեան այս ընթերցանութիւնը մամուլին ընդմէջէն նաեւ կը ներկայացնէ եգիպտահայ կուսակցական մամուլի պատմութեան քանի մը յատկանիշներ: Մէկ կողմէ՝ անկաշկանդ ուռճացումը ամէն բանի, միւս կողմէ՝ առկայութիւնը բաց տարածութիւններու, որոնցմէ օգտուած են յօդուածագիրներ, մանաւանդ երբ վերջիններս կը ներկայանան իրենց անուններով՝ ի դիմաց անանուն Թղթակից-Ներկաներուն: Վերջապէս, բաց տարածութիւններու առկայութիւնը նոյն ինքը ընթերցողին համար, որ ենթադրեալ փակ բնագիրէն կրնայ որսալ որոշ ենթիմաստներ, կատարել գնահատականներ, փոխանակ տեղեկութիւններու ուղղակի վերարտադրութեան: Ոչ ամէն բան միանշանակ է, ոչ ամէն բնագիր ենթակայ է ապաշրջանակումի, բայց կարելիութիւնները կան, այնտեղ են: Եւ քանի որ չկայ վերջնագրային բնագիր՝ որքան ալ ուզենք բնագիր մը դիտել իբրեւ անառարկելի վերջնագիր, Ափրիկեանի վերոյիշեալ կենսագրութիւնը կարելի է նաեւ շարադրել այլ տեսանկիւններէ: Կարեւորը, ան զերծ ըլլայ կարծրատիպերէ եւ կանխադրոյթներէ:

(Վերջ 8)

**ԾԱՆՕԹԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ**

116. *Յուսաբեր*, 1 Սեպտեմբեր 1949: Թղթակից, «*Հէքիաթ* օփերայի ներկայացումը», 17 Սեպտեմբեր 1949: *Յուսաբեր*, 13 Սեպտեմբեր 1949: «*Հէքիաթ* օփերայի երրորդ ներկայացումը», *Յուսաբեր*, 8 Հոկտեմբեր 1949:

117. «Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբը պետական ռատիոկայանէն», *Յուսաբեր*, 28 Ապրիլ 1950:

118. *Յուսաբեր*, 26 Մայիս 1950: Թղթակից, «Հայաստանի անկախութեան տարեդարձի տօնակատարութիւնը», *Յուսաբեր*, 6 Յունիս 1950:

119. *Յուսաբեր*, 21 Յուլիս 1950: Թղթակից, «Յառաջդիմասէրի կազմակերպած տարեկան մեծ ձեռնարկը ի նպաստ ուսանողաց ֆոնտին», *Յուսաբեր*, 18 Օգոստոս 1950:

120. Կարօ Գէորգեան, նշ. յօդ.ը:

121. Բիւզանդ Կռանեան, նշ. յօդ.ը:

122. Թղթակից, «Աղեքսանդրիոյ հայ վարժարաններու ամավերջի հանդէսները», *Յուսաբեր*, 11 Յուլիս 1951:

123. «Հայկ. Ժամ պետական ռատիոկայանէն», *Յուսաբեր*, 14 Հոկտեմբեր 1952:

124. *Յուսաբեր*, 31 Հոկտեմբեր 1950: Թղթակից, «Հ.Յ.Դ. վաթսունամեակի փառահեղ տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 20 Նոյեմբեր 1950:

125. *Յուսաբեր*, 7 Նոյեմբեր 1952: «Կիրակի օրուան մեծ համերգը», *Յուսաբեր*, 18 Նոյեմբեր 1952:

126. Բիւզանդ Կռանեան, նշ. յօդ.ը:

127. *Յուսաբեր*, 29 Ապրիլ 1952: «Հայ երգին ոյժը», *Արաքս*, 10 Մայիս 1952: Թղթակից, «Համազգայինի երգչախումբին անդրանիկ համերգը», *Յուսաբեր*, 12 Մայիս 1952:

128. *Յուսաբեր*, 13 Մայիս 1952: Կարօ Գէորգեան, նշ. յօդ.ը:

129. «Հայ երգին ոյժը», *Արաքս*, 10 Մայիս 1952:

130. Թղթակից, «Համազգայինի երգչախումբին անդրանիկ համերգը», *Յուսաբեր*, 12 Մայիս 1952:

131. Կարօ Գէորգեան, նշ. յօդ.ը:

132. Բիւզանդ Կռանեան, նշ. յօդ.ը:

## ԵՐԵՒԱՆԻ ԵՒ ԲԱՔՈՒԻ ՄԻՋԵՒ ՀԵՐԹԱԿԱՆ «ՓՈԽԱՆՑՈՒՄԸ»

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

Երեւանը ստացել է խաղաղութեան պայմանագրի տեքստի շուրջ Բաքուի առաջարկները, յայտնել է Հայաստանի Արտգործնախարարութիւնը: Դրանք փաստացի Բաքուի պատասխանն են Նոյեմբերի վերջին Երեւանի ուղարկած առաջարկ-պատասխաններին, որոնք իրենց հերթին Երեւանի պատասխանն էին դեռեւս Սեպտեմբերին Ադրբէջանից ստացուած առաջարկներին: Ի՞նչպիսին է այդ «փոխանցումների» բովանդակութիւնը՝ որեւէ կերպ յայտնի չէ, եւ հանրութիւնները կարող են կռահումներ անել միայն հրապարակային յայտարարութիւնների հիմքով:

Միեւնոյն ժամանակ այն, որ այս պահին չկան հանդիպումներ որեւէ ձեւաչափում, յուշում է, որ կողմերի միջեւ չկայ պայմանագրի տեքստի շուրջ այնպիսի համաձայնութիւն, որը հնարաւոր կը դարձնի հանդիպումների ու դրանց ընթացքում քննարկումները՝ կամ արտգործնախարարների կամ առաջին դէմքերի մակարդակով: Այս ընթացքում Ադրբէջանը բարձրաձայնել է այսպէս ասած երկու նոր մօտեցման մասին: Մէկն այն, որ Ադրբէջանը Հայաստանից ակնկալում է «ռեւանշի» բացակայութեան եւ տարածքային ամբողջութեան լիակատար ճանաչման երաշխիք, հաւաստիացում, միւսն այն, որ Ադրբէջանը փորձում է խաղաղութեան պայմանագրից տարանջատել սահմանազատման եւ սահմանագծման գործընթացը: Պէտք է ենթադրել, որ հէնց դրանց կ'առնչուեն Բաքուի վերջին առաջարկները, որոնք ստացել է Երեւանն օրերս:

Եթէ Ադրբէջանին յաջողուի խաղաղութեան պայմանագրի գործընթացում ամրագրել այդ մօտեցումները, ապա դրանք կարող են Հայաստանի համար դառնալ նոր ծուղակ, որ Բաքուն կը հիւսի Փետրուարին կայանալիք նախագահի ընտրութիւնից յետոյ որեւէ արկածախնդրութեան առիթ ստեղծելու համար, հաշուի առնելով այն, որ 2024 թուականի համար սպասւում է միջազգային բաւականին մեծ տուրբուլենտութիւն, հաշուի առնելով այն, որ տարբեր մակարդակի ընտրական փուլերում են լինելու միանգամից մի քանի խոշոր խաղացողներ: Հանգամանքը, որ Հայաստանն ու Ադրբէջանը աշխատում են թէկուզ «փոխանցումով», ինքնին նպաստում է կայունութեան կառավարմանը, սակայն հէնց այդ աշխատանքի բովանդակութիւնն է գլխաւոր հարցի պատասխանը՝ կայունութիւնը կառավարւում է հաւասարակշռուած քաղաքական բանակցութեան համար կարեւոր յենման կէտերի ամրացումո՞վ, թէ՞ անհաւասարակշռութեան խորացումով եւ լիցքերի «ստորջրեայ» կուտակումով:

## ՏԿԵ ՆԱԽԱՐԱՐԸ ՄԱՆՐԱՄԱՍՆԵՐ Է ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ «ՀԻՍԻՍ-ՀԱՐԱՒ» ՃԱՆԱՊԱՐՀԻ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ԸՆԹԱՑՔԻՑ

Հայաստանի Տարածքային Կառավարման եւ Ենթակառուցուածքների նախարար Գնել Սանոսեանը յայտարարել է, որ 2023 թուականին Հիւսիս-Հարաւ ճանապարհային միջանցքի ծրագրում երկու մասով թերակատարումներ են եղել:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ Գնել Սանոսեանն այս մասին ասել է Դեկտեմբերի 29-ին մամուլի ասուլիսի ժամանակ:

«Հիւսիս-Հարաւ ծրագրում երկու մասով թերակատարումներ ունեցանք: Որոշ դէպքերում մենք նախանշում ենք, որպէսզի հողերի օտարման գործընթացում իրականացնենք վճարումներ, բիւջէում այդ գումարները դնում ենք: Յետագայում, երբ հողերի օտարման գործընթաց է տեղի ունենում, ունենում ենք դատական վէճեր, որն էլ բերում է նրան, որ գործընթացը երկարում է, եւ չենք կարողանում տուեալ ժամանակահատուածում վճարել: Միւսն այն է, որ մենք որոշակի գումար էինք նախանշել Սիսիան-Քաջարան հատուածի համար, թէեւ մրցութային գործընթաց ենք իրականացրել, բայց մի շարք հարցերի շուրջ կան բանավէճեր կամ տարբեր մտքեր, շարունակում ենք քննարկել գործընկերների հետ: Քանի որ այդ գործընթացն առաջ չգնաց, մենք չունեցանք շինարար եւ չվճարեցինք», - ասաց Սանոսեանը:

Նա ընդգծեց, որ 2018-ից յետոյ փաստացի կարողացել են ասֆալտբետոնէ ծածկոյթ ապահովել սկզբում Թալին-Լանջիկ հատուածում, յետոյ Լանջիկ-Գիւմրի հատուածում:

«Դա միակ հատուածն էր, որ մենք շինարարութիւն ունէինք: Աշտարակից Թալին հատուածը մնացել էր անաւարտ, դատական երկար քաշքշուկներ կային, եւ ժամանակաւոր ճանապարհին արդէն երկար տարիներ դարձել է հիմնական ճանապարհ՝ իր խնդիրներով: Ի ուրախութիւն բոլորիս՝ այս տարի կարողացանք այդ երկու հատուածներում շինարարական աշխատանքները սկսել», - ասաց Սանոսեանը:

Հիւսիս-Հարաւի մասով միւս ուրախալի նորութիւնն այն է, որ ճանապարհի հարաւային հատուածում վերջապէս գործընթաց են սկսել. մրցոյթի արդիւնքում Քաջարանից Ագարակ տանող 32 կմ հատուածի շինարարութեան համար կայ յաղթող ընկերութիւն:

Նախարարն ընդգծեց, որ Սիսիան-Քաջարան հատուածը բաւական բարդ պրոյեկտ է, քանի որ այնտեղ կայ 12 թունել, 27 կամուրջ:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՐԹՈՒԹԵԱՆ ՏԵՍՉԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆ ԱՄՓՈՓԵԼ Է 2023 ԹՈՒԱԿԱՆԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ

Հայաստանի Կրթութեան Տեսչական Մարմինը Երեւանի պետական համալսարանի դահլիճում Յունուարի 3-ին ամփոփել է 2023 թուականին կատարած աշխատանքները՝ շահագրգիռ կողմերի եւ գործընկերների մասնակցութեամբ:

Այս մասին յայտնում է Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարութիւնը՝ նշելով, որ տեսչական մարմնի ղեկավար Վաղարշակ Մատիկեանը Տեսչական Մարմնի կառավարման խորհրդին՝ ԿԳՄՍ նախարար Ժաննա Անդրէասեանի նախագահութեամբ, ներկայացրել է 2024 թուականին սպասուող անելիքները:

Նա իր խօսքում շեշտել է, որ մինչ այժմ ստուգումների գործընթացի ժամանակ Տեսչական Մարմնի ուշադրութիւնը կենտրոնացել է տուեալ ուսումնական հաստատութեան գործունէութեան՝ գործող օրէնսդրութեանը համապատասխանելուն: Ըստ Վաղարշակ Մարտիկեանի՝ այսուհետ վերահսկողութիւնը կը դառնայ առաւել բովանդակային, որպէսզի հանրակրթութեան նոր չափորոշչի ներդրմանը զուգընթաց ստուգումներն առաւել արդիւնաւէտ եւ առարկայական լինեն: Այժմ ստեղծւում է գնահատման նոր գործիքակազմ, որը պէտք է անմիջական ազդեցութիւն ունենայ կրթութեան որակի բարելաւման վրայ:

Նախարար Ժաննա Անդրէասեանն իր խօսքում կարեւորել է Կրթութեան Տեսչական Մարմնի կողմից նախաձեռնուած բարեփոխումները: Դիմելով Տեսչական միւս մարմինների գործընկերներին՝ նախարարը կարեւորել է, որ ուսումնական հաստատութիւններում ստուգումներ իրականացնելիս ոչ միայն արձանագրուեն առկայ խնդիրները, այլեւ ստուգումների վերլուծութիւնները քաղաքականութիւն մշակելու հիմք դառնան:

Միջոցառման աւարտին Կրթութեան Տեսչական Մարմնի ղեկավար Վաղարշակ Մարտիկեանը շնորհակալագիր է յանձնել Տեսչական Մարմնի ղեկավարի տեղակալ Ռաիսա Գալստեանին՝ երկարամեայ եւ բարեխիղճ աշխատանքի համար:

ԽՈՀԵՐ

## ՆՈՒԻՐՈՒԱԾՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ԺԹ. դարէն սկսեալ արեւմտահայ եւ սփիւռքահայ մամուլը յագեցած է նուիրեալներու անուններով, մեծ մասամբ մեծահարուստ դրամատէրեր՝ որոնք իրենց գերշահոյթի յաւելեալ արժէքի սահմաններուն մէջ կատարած են նուիրատուութիւններ, կամ կուսակցական գործիչներ՝ որոնք իրենց ոչ-աշխատանքային ժամերը յատկացուցած են կուսակցութեան, երբեմն նաեւ մտաւորականներ՝ որոնք գործած են կուսակցական միաւորներու ընդմէջէն:

Իրականութեան մէջ, նուիրեալ ըլլալ կը նշանակէ հետեւողական, յարատեւ աշխատանք՝ հիմնուած ներքին համոզումի եւ ներքին պահանջի վրայ, ուր գործունէութիւնը կլանած է անձի ողջ էութիւնն ու ներաշխարհը, ինչպէս նաեւ գրաւած անոր մտածողութեան գրեթէ ամբողջութիւնը՝ շուրջօրեայ ժամանակով, այլ ոչ հատուածական պահերով՝ որոնցմէ անդին մտածողութիւնը պարզապէս դադրած է գոյութիւն ունենալէ:

Կը տեսնենք, սակայն, որ նուիրեալի կոչում կը սիրուի տրուիլ՝ հիմք ընդունելով հատուածական պահերու բացարձակացումը, իբր այդ պահերը գրաւած ըլլան ամբողջ ժամանակ մը:

Նուիրում բառը կորսնցուցած է իմաստային բովանդակութիւնը, շնորհիւ անսպառ ու ինքնանպատակ օգտագործումին: Բառի աղճատուած գործածութիւնը խաւարած է իրական նուիրեալները:

Եգիպտահայ *իրական* նուիրեալներու անուններ դժուար չէ գտնել՝ Վահան Թէքէեան, Արշակ Ալպօյաճեան, Աւետիս Եափուճեան, Բենիամին Թաշեան, Աշոտ Զօրեան, եւ շատ ուրիշներ: Ինչ որ ըրած են՝ տարերք է: Նախ եղած են նուիրեալներ՝ արդէն բառի իրական իմաստով, ապա անցած մասնագիտութեան, եւ ոչ հակառակը: Նուիրուածութիւնը ինքնին կը տանի մասնագիտացումի, մասնագիտացումը ոչ անպայմանօրէն կը տանի նուիրուածութեան:

Մտաւորականութեան առնչութեամբ, ԺԹ. դարու զանգուածային կրթութիւնը ողջ աշխարհի մէջ յառաջացուց ոչ-նուիրեալ (չ)մտածող խաւի մը կազմաւորումը, որ կը շարունակուի մինչեւ այսօր: Տոքթորական կրողներ, փրոֆեսորներ, ակադեմականներ՝ որոնք կ'արտադրեն միայն պահանջեալ պահուն, միայն պատուէրով, միայն դրամի փոխարէն, միայն յատուկ նպատակակէտի համար, միայն արտաքին դրդումով: Հայկական ներկայ Սփիւռքը լեցուն է ոչ-նուիրեալներու օրինակներով, տոքթորներ՝ որոնք իրենց ողջ կեանքը կը մնան չարտադրող աստիճանաւորներ, թոշակառուներ՝ որոնք յանկարծ կը դառնան բանասէրներ, մատենագէտներ կամ բանաստեղծներ, պատմաբաններ՝ որոնք մէկ անգամ կը դառնան պատմաբան հայագիտական հանդէսի մը համար, գրողներ՝ որոնք կը սկսին գրել լրագիրի մը խմբագիրը դառնալէ ետք, կուսակցականապետեր՝ որոնք կը մրցին իրական գրողներու հետ: Կը տուժէ սփիւռքեան որակը: Այդ որակը կը դառնայ չափանիշ:

## ԼԵԶՈՒԻ ԿՈՄԻՏԷՆ ԱՄՓՈՓԵԼ Է «ՏԱՐՈՒԱՅ ԲԱՌԸ-2023»-Ի ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

Լեզուի Կոմիտէն ամփոփել է «Տարուայ բառը-2023»-ի արդիւնքները: Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէս*ը, քուէարկըւածներից ամենաշատ ձայներն է ստացել ԱՊՐՈՒՄԱԿՑՈՒՄ բառը (42%):

«Թէեւ դիմացինի ապրումները սեփականի պէս զգալը միշտ էլ յատուկ է եղել մարդուն, բայց «ապրումակցում» բառը նորաբանութիւն է: Հաւանաբար ստեղծուել է «կարեկցում» բառի նմանութեամբ, բայց որպէս երեւոյթ աւելի ընդգրկուն է: Ունի բառարանային գրանցում:

Ինչո՞ւ է նախապատուութիւնը տրուել այս բառին: Մարդկային յարաբերութիւններին ուղղուած մեր թարմ հայեա՞ցքն է բնորոշում այն, մեր կարիք-ակնկալի՞քը դիմացինից, թէ՞ այդ ամենամարդկային յատկանիշը կորցնելու վախը: Գուցէ բոլորը միասին:

Այնուամենայնիւ, մեծամասնութեան համար անցնող տարուայ բառը ԱՊՐՈՒՄԱԿՑՈՒՄ-ն է:

Երկրորդ տեղում ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ բառն է (30%): Սա մենիմաստ բառ չէ, բայց մեզ համար այսօր այն նախ եւ առաջ նշանակում է պատերազմի, հակամարտութեան բացակայութիւն, եւ բնական է, որ շատերի հայեացքը նրան է ուղղուած: Կարեւոր է նաեւ մարդու ներքին խաղաղութիւնը: Իսկ դրա համար այս բառի միւս իմաստներն են պէտք. լռութիւն, հանդարտութիւն, անդորրութիւն, հաշտութիւն եւ այլն:

Երրորդ տեղում ՀԱՅԱՍԱԹ բառն է (7%): Հայասաթ-1-ը հայկական առաջին տիեզերական արբանեակն է: Բառը ստեղծուել է հայ եւ լատիներէն ծագմամբ satelles՝ արբանեակ բառերից, որոնք միացել են ա յօդակապով: Բնորոշում է մեր լաւատեսութիւնը Հայաստանի գիտական ապագայի նկատմամբ», - նշուած է հաղորդագրութեան մէջ:

ՋԱՀԱԿԻՐ

## ՄԻՐԶՈՅԵԱՆԸ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԵԿՏՈՐԻ ՄԱՍԻՆ

1 ➩

թիւն է, որտեղ անդամները պարտաւորւում են պաշտպանել միմեանց սահմանները, «մեր սահմանները խախտուել են եւ մենք տեսել ենք, որ էս կազմակերպութիւնն էնքան էլ չի շտապել այդ սահմանները պաշտպանել»:

Ինչ վերաբերում է Հայաստանի վարչապետի՝ ԵԱՏՄ գագաթնաժողովին մասնակցելու որոշմանը, Միրզոյեանն ընդգծեց. «Չեմ կարծում, որ դուք երբեւէ լաւծ լինէք, որ ԵԱՏՄ-ի մասով մենք ունենք նոյնպիսի ակնկալիքների չկատարում, ինչպիսին ունէինք ՀԱՊԿ-ի պարագայում»:

## 2023-Ը ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ. ԴՐԱՄԱՏԻԿ, ՀԻԱՍԹԱՓԵՑՆՈՂ ԵՒ ՅՈՒՍԱԴՐՈՂ ԻՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1 ➩

որոշեց նոր քաղաքացիական առաքելութիւն ուղարկել Հայաստան: Այս անգամ երկու տարով:

Մինչ այդ՝ 2022 թուականի Հոկտեմբերին հայ-ադրբէջանական սահմանի հայկական կողմում ԵՄ դիտորդներ էին տեղակայուել երկամսեայ ժամկէտով:

Առաքելութեան նպատակն է մշտադիտարկել Ադրբէջանի հետ սահմանը, նպաստել անվտանգային իրավիճակի կայունացմանը սահմանամերձ շրջաններում:

Տարուայ ընթացքում աշխատանքի արդիւնաւէտութիւնն ապահովելու համար առաքելութիւնն ընդլայնեց օպերատիւ գրասենեակների ու պարեկների թիւը: Այս պահին գործում է օպերատիւ հինգ գրասենեակ, դիտորդների թիւը՝ սկզբնական 40-ից հասել է 209-ի:

Պարեկութիւնն իրականացնում են ֆրանսիացի ժանդարմներ, գերմանացի ոստիկաններ, ինչպէս նաեւ ներկայացուցիչներ ԵՄ անդամ շուրջ 25 երկրներից: Դիտորդները զինուած չեն, իրավիճակի մասին մշտադիտարկման արդիւնքները զեկոյցի տեսքով փոխանցւում են Բրիւսէլ:

**3. Հայաստան-Թուրքիա կարգաւորման գործընթացը խոստումնալից էր, բայց տեղաշարժ չգրանցուեց**

Տարին ակտիւ սկսուեց: Յունուարի 6-ին Թուրքիան Հայաստանին յայտնեց ապրանքների ուղիղ օդային փոխադրումների արգելքի վերացման մասին: Սա Հայաստանի եւ Թուրքիայի յարաբերութիւնների կարգաւորման հարցերով յատուկ ներկայացուցիչների նախորդ տարուայ պայմանաւորուածութեան իրականացումն էր: Նոյն հանդիպման ընթացքում ձեռքբերած միւս պայմանաւորուածութիւնը՝ «երրորդ երկրների քաղաքացիների համար ապահովել հայ-թուրքական ցամաքային սահմանը հատելու հնարաւորութիւնը» մինչ օրս չի իրականացել:

Փետրուարին Թուրքիայում աւերիչ երկրաշարժից յետոյ Հայաստանի իշխանութիւնները մարդասիրական օգնութիւն ուղարկեցին տուժածներին: Թուրքիա մեկնեցին նաեւ հայ փրկարարներ:

1993թ.-ից ի վեր փակուած Մարգարայի կամուրջը՝ Թուրքիայի հետ սահմանին, Փետրուարի 11-ին առաջին անգամ բացուեց հայկական մեքենաների համար, որոնք 100 տոննա մարդասիրական բեռ էին տանում:

Փետրուարի 15-ին Հայաստանի արտգործնախարարի գլխաւորած պատուիրակութիւնը մեկնեց Անկարա: Արարատ Միրզոյեանն առանձնազրոյց էր ունեցել թուրք պաշտօնակցի՝ Մեւլութ Չաւուշօղլուի հետ, տեղի էր ունեցել նաեւ ընդլայնուած կազմով հանդիպում:

Այցին անդրադարձել էր Եւրամիութեան յատուկ ներկայացուցիչ Տոյվօ Կլաարը, որը թուիթէրեան իր միկրոբլոգում գրել էր. «Սա պատմական այց է, որը յաջորդեց օգնութեան կարիք ունեցող հարեւանին աջակցելու որոշմանը: Յուսով ենք, որ սա հայ-թուրքական յարաբերութիւնների զարգացումների նախանշան է»:

Մայիսին Թուրքիայում էր Հայաստանի խորհրդարանի խօսնակը: Ալէն Սիմոնեանը մասնակցում էր Սեւծովեան տնտեսական համագործակցութեան խորհրդարանական վեհաժողովին:

Յունիսի 3-ին վարչապետ Նիկոլ Փաշինեանը մասնակցեց Թուրքիայի նախագահի երդմնակալութեան արարողութեանը: Առաջին անգամ Հայաստանի բարձրաստիճան պաշտօնեան անձամբ Էրդողանի կողմից հրաւէր ստացաւ՝ արարողակարգային նման միջոցառման մասնակցելու համար:

2023-ին տեղի ունեցաւ նաեւ Հայաստանի եւ Թուրքիայի հաւաքականների երկու հանդիպում: Երեւանեան հանդիպումն արժանացաւ ոչ միայն հայ ֆուտբոլասէրների, այլ ողջ հասարակութեան ուշադրութեանը:

Թուրքիայի հաւաքականի հետ հանդիպումներն ասոցացւում են յարաբերութիւնների կարգաւորման նախորդ փորձի հետ, որը ստացել էր «ֆուտբոլային դիւանագիտութիւն» անուանումը:

Այս տարուայ ակտիւ շփումներն էլ առաջընթաց չարձանագրեցին, ինչպէս դա կանխորոշում էին հայ փորձագէտները: Թուրքագէտ Մուշեղ Խուդաւերդեանի կարծիքով՝ գործնական քայլեր Անկարան չի ձեռնարկի, քանի դեռ կարգաւորուած չեն հայ-ադրբէջանական յարաբերութիւնները:

«Երբ Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան փաստաթուղթ ստորագրուի, միայն այդ ժամանակ կարելի կը լինի խօսել հայ-թուրքական յարաբերութիւնների բարելաւման մասին», - *JAMnews*-ի հետ զրոյցում ասել է նա:

**4. Հայաստան-Ռուսաստան յարաբերութիւնները երբեւէ այս աստիճան լարուած չեն եղել**

Տեւական ժամանակ է, ինչ Հայաստանի բարձրագոյն ղեկավարութիւնը բացայայտ եւ կոշտ քննադատութեան է ենթարկում Ռուսաստանին իր ստանձնած պարտաւորութիւնները չկատարելու համար:

Հայկական կողմի դժգոհութեան պատճառը Ադրբէջանի հետ սահմանին տեղի ունեցած միջադէպերն էին, երբ Ռուսաստանն եւ ռուսական ՀԱՊԿ ռազմական դաշինքը հրաժարուեցին կատարել դաշնակցի ինքնիշխան տարածքը պաշտպանելու իրենց պարտաւորութիւնը:

Հայաստանի համար մէկ այլ ցաւոտ կէտ է ռուսական խաղաղապահ զօրախմբի անգործութիւնը, որը տեղակայուած էր Լեռնային Ղարաբաղի տարածքում հայ բնակչութեանը պաշտպանելու առաքելութեամբ:

Վերջին շրջանում, բացի հրապարակային քննադատութիւնը, Հայաստանի իշխանութիւնները բոյկոտում էին բոլոր միջոցառումներն ու հանդիպումները ՀԱՊԿ-ի ու ռուսական այլ ինտեգրացիոն համակարգերի շրջանակում:

Հայաստանի հասարակութեան, քաղաքական գործիչների եւ վերլուծաբանների մի զգալի հատուած Ռուսաստանի դիրքորոշումն անհամատեղելի է համարում ռազմավարական դաշնակցի կարգավիճակի հետ: Եւ այդ տեսակէտն են հէնց արտայայտում երկրի իշխանութիւնները: Ռուսաստանում դա ընկալւում է որպէս «փախուստ դէպի Արեւմուտք»: Սակայն հայ քաղաքագէտների մեծամասնութիւնը չի կիսում այն կարծիքը, թէ Հայաստանը փոխում է արտաքին քաղաքականութեան վեկտորը:

Ռուսաստանը դժգոհ է Հայաստանի ղեկավարութեան պահուածքից, ինչն արտայայտւում է տարբեր բարձրաստիճան պաշտօնեաների եւ փորձագէտների յայտարարութիւններով:

Ռուսական կողմի զայրոյթի պատճառներ այս տարի դարձաւ նաեւ Հայաստանի վարչապետի տիկնոջ՝ Աննա Յակոբեանի այցը Կիեւ, այն էլ մարդասիրական բեռի ուղեկցութեամբ:

Շատ աւելի մեծ աղմուկ բարձրացաւ Ռուսաստանում, երբ Հայաստանը վաւերացրեց Հռոմի ստատուտը:

Հայաստանից պարբերաբար յայտարարում են, որ փաստաթղթի վաւերացումը ուղղուած չէ Ռուսաստանի դէմ, այլ «ծառայելու է Հայաստանի ինքնիշխան տարածքի նկատմամբ ադրբէջանական ոտնձգութիւնների կանխմանը»:

«Հայաստանի տարածքում կատարուած ցանկացած ծանր յանցագործութիւն կը յայտնուի Միջազգային Քրէական Դատարանի իրաւասութեան ներքոյ, եւ նրանց համար, ովքեր մտադիր են նման յանցագործութիւն կատարել, դա առնուազն զսպող ազդեցութիւն կ՚ունենայ: Հաշուի առնելով այն հանգամանքը, որ Ադրբէջանի զինուած ուժերը դեռ գտնւում են Հայաստանի ինքնիշխան տարածքում, վաւերացումն արդարացուած է», - քուէարկութիւնից յետոյ ասաց միջազգային իրաւական հարցերով ներկայացուցիչ Եղիշէ Կիրակոսեանը:

Սակայն, դատելով Ռուսաստանում շարունակուող քննարկումներից, կարելի է եզրակացնել, որ այս տեղեկատուութիւնն այնտեղ լուրջ չեն ընկալում:

Մոսկուայում մտահոգիչ գնահատեցին նաեւ Սեպտեմբերին Հայաստանում կազմակերպուած “Eagle partner 2023” (Արծիւ գործընկեր 2023) հայ-ամերիկեան համատեղ զօրավարժութիւնները:

Ռուսաստանի արտգործնախարարը նշել էր, թէ «որեւէ լաւ բան չի տեսնում, որ ՆԱՏՕ-ի ագրեսիւ երկիրը փորձում է ներթափանցել Կովկաս»:

**5. Անվտանգային ոլորտում Հայաստանի նոր գործընկերները**

Հայաստանի վարչապետն ու անվտանգութեան քարտուղարը այս տարի բաց տեքստով խօսեցին այն մասին, որ Ռուսաստանը չի մատակարարել հարիւրաւոր միլիոնների զէնք: Շեշտեցին՝ դրա համար վճարուած է, ակնկալւում է, որ գոնէ կը վերադարձուի այդ գումարը:

Դրան զուգահեռ ընթանում էին Հայաստանի համար անսովոր գործընթացներ: Զէնք էր բերւում զէնք Հնդկաստանից, պայմանագրեր ստորագրուեցին Ֆրանսիայից ոչ մահաբեր զէնքի մատակարարման եւ պաշտպանութեան ոլորտում հայ-բրիտանական համագործակցութեան մասին:

«Հայաստանը յստակ որոշում է կայացրել փոխել իր արտաքին քաղաքականութիւնը եւ հեռանալ Մոսկուայից: Իմ կարծիքով, Հայաստանն արդէն սկսել է մերձենալ մեզ հետ: Նրանք պահանջում են աւելի շատ համագործակցութիւն, աւելի շատ քաղաքական երկխօսութիւն ՆԱՏՕ-ի հետ: Մենք ողջունում ենք մեր գործընկերների այս որոշումները, որոնք, մեր կարծիքով, նպաստում են տարածաշրջանի կայունացմանը», - ասել է Հարաւային Կովկասում եւ Կենտրոնական Ասիայում ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղարի յատուկ ներկայացուցիչ Խաւիէր Կոլոմինան:

**6. Ուղիղ բանակցութիւններ Ադրբէջանի հետ**

Նոյեմբերի 30-ին Հայաստանի եւ Ադրբէջանի սահմանին տեղի ունեցաւ սահմանազատման ու սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովների հանդիպումը: Այն առաջին անգամ տեղի ունեցաւ առանց միջնորդների մասնակցութեան:

Ժամեր անց կողմերն անսպասելի համատեղ յայտարարութեամբ հանդէս եկան: Դրա մէջ ասւում էր. «Հայաստանի Հանրապետութիւնը եւ Ադրբէջանի Հանրապետութիւնը համակարծիք են, որ տարածաշրջանում վաղուց սպասուած խաղաղութեան հասնելու պատմական հնարաւորութիւն կայ»:

Այս փաստաթղթի ստորագրման արդիւնքում հայրենիք վերադարձան Ադրբէջանում պահուող 32 հայ գերի, Հայաստանը Ադրբէջանին յանձնեց երկու զինծառայողի:

**7. Փաշինեան-Ալիեւ ոչ ֆորմալ հանդիպում Սանկտ Պետերբուրգում**

Դեկտեմբերի 26-ին Հայաստանի վարչապետը մեկնեց Սանկտ Պետերբուրգ՝ մասնակցելու Եւրասիական տնտեսական բարձրագոյն խորհրդի նիստին: Այցը կայացաւ ռուսական ինտեգրացիոն կառոյցներում հանդիպումների երկար բոյկոտից յետոյ: Ըստ հայ քաղաքագէտների՝ Փաշինեանը չէր կարող հրաժարուել մասնակցութիւնից, քանի որ 2024 թուականի Յունուարի 1-ից ԵԱՏՄ մարմիններում նախագահութիւնն անցնում է Հայաստանին:

Այստեղ անցնում էր նաեւ ԱՊՀ երկրների ղեկավարների ոչ պաշտօնական հանդիպումը, որին ժամանել էր Ադրբէջանի նախագահը:

Երեկոյեան յայտնուեցին Նիկոլ Փաշինեանի եւ Իլհամ Ալիեւի ոչ պաշտօնական շփման լուսանկարները:

Հայաստանի վարչապետի մամուլի քարտուղարը յայտնեց, որ նրանք «քննարկել են Հայաստան-Ադրբէջան խաղաղութեան օրակարգին վերաբերող հարցեր»:

***JAMnews***

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1957 ՀԻՆԳՇԱԲԹԻ 18 ՅՈՒՆՈՒԱՐ 2024 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. | عدد رقم ١٩٥٧ الخميس ١٨ يناير ٢٠٢٤


## ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԿԸ ՀԵՌԱՑՆԵՆ ՀԱՅ-ԱԶԸՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆԸ

**Epress.am**

Վերջին օրերս Պաքուէն հնչող յայտարարութիւնները լրջագոյն հարուած են խաղաղութեան գործընթացին՝ յայտարարեց վարչապետ Նիկոլ Փաշինեան: Արտաքին Գործոց նախարար Արարատ Միրզոյեան արձանագրեց՝ թէ բովանդակային առումով ազըրպէյճանական նոր առաջարկներուն մէջ որոշակի յետընթաց կը տեսնենք:

Մինչ այդ, Ազըրպէյճանի նախագահը կը պատրաստուէր նախընտրական քարոզարշաւին: Անցեալ շաբաթ Իլհամ Ալիեւ կը սպառնար՝ որ եթէ Սիւնիքի մէջ «միջանցք» չբացուի, ապաշրջափակում չի կայանար: Ալիեւ հրապարակաւ կը մերժէր նաեւ զօրքերու հայելային յետքաշումի առաջարկը, միջերկիրներ (անկլաւներ) եւ ոչ միջերկիր գիւղեր կը պահանջէր Հայաստանէն, կը հարցադրէր Հայաստանի 14 հազար քառակուսի քիլոմեթր տարածքի եւ մայրաքաղաք Երեւանի պատկանելիութիւնը եւ կը պնդէր՝ թէ սահմաններուն սահմանազատումը պէտք է իրականանայ ոչ թէ խորհրդային վերջին քարտէզներով՝ որոնք հիմքն են հանրապետութիւններու անկախացումին, այլ նախախորհրդային եւ վաղ խորհրդային քարտէզներու հիմքով:

Ազըրպէյճանի արտաքին գերատեսչութիւնը վերջին շրջանին կը խօսի խնդրայարոյց կէտերը խաղաղութեան պայմանագիրէն դուրս ձգելու անհրաժեշտութեան մասին: Խօսքը, նախ եւ առաջ, սահմաններու սահմանազատումի (եւ հաղորդակցութիւններու ապաշրջափակումի) մասին է: Բանակցութիւններուն երկկողմ ձեւաչափ տալով, Ազըրպէյճան կը փորձէ այնպէս ընել՝ որ խաղաղութեան պայմանագիրը ստորագրուի, առանց լուծելու հիմնական վէճերը: Այսինքն՝ իրավիճակը մնայ անկայուն եւ ենթակայ յետագայ սրումներու:

**«Ծովէ ծով» Ազըրպէյճան**

«Ի հեճուկս պայմանաւորուածութիւնների՝ Ադրբէջանը փորձում է տարածքային պահանջներ գեներացնել Հայաստանի նկատմամբ», – Յունուար 13-ին Գաւառի մէջ կուսակիցներուն առջեւ ունեցած ելոյթին ըսաւ Նիկոլ Փաշինեան:

Ըստ իրեն, սահմաններուն սահմանազատումն ու սահմանագծումը պէտք է հիմնուած ըլլան 1991-ի Ալմա-Աթայի հռչակագիրին վրայ: 1991-ի հռչակագիրին նկատմամբ իրենց հաւատարմութիւնը Պաքուն եւ Երեւանը գրաւոր յայտարարութիւններով վերահաստատեցին նաեւ Փրակի եւ Մոսկուայի բանակցութիւններուն ընթացքին: Փաշինեան յիշեցուց՝ որ սահմանազատումի գործընթացը նոր սահման ստեղծելու մասին չէ́, այլ անկախացումի պահուն իրաւական ուժ ունեցող սահմանները վերարտայայտելու, վերարտադրելու մասին է: Այդ սահմանները ամրագրուած են խորհրդային վերջին քարտէզներուն մէջ:

Արդէն տարիներ շարունակ Փաշինեան կը պնդէ, որ սահմանազատումը պէտք է իրականացուի ճիշդ այդ՝ 1975 թուականի քարտէզներուն հիման վրայ: Ասիկա կը բխի անկախացումի սկզբունքներէն եւ միջազգային իրաւունքէն: Ի հակադրութիւն, Ազըրպէյճան կը վկայակոչէ ինչ-որ «պատմական քարտէզներ»: Մինչեւ այսօր Պաքուն ճշգրիտ տարեթիւեր չէ նշած:

Յունուար 10-ին, ազըրպէյճանական հեռատեսիլին տուած հարցազրոյցին, Ալիեւ առաջին անգամ փակագիծեր կը բանայ.

«20-րդ դարուն ազըրպէյճանական հողերը մաս առ մաս տրուած են Հայաստանին: 1918-ին՝ ազըրպէյճանական տեմոքրաթական հանրապետութեան հիմնադրումէն մէկ օր ետք, Իրեւանը փոխանցուած է Հայաստանին, թէեւ ասոր համար որեւէ հիմք գոյութիւն չէ ունեցած: Ան հինաւուրց ազըրպէյճանական քաղաք է», – յայտարարեց Ազըրպէյճանի ղեկավարը, պընդելով՝ որ նոյն տրամաբանութիւնը գործեց նաեւ խորհրդային տարիներուն, որուն արդիւնքով «Ազըրպէյճան 100 հազար քառակուսի քիլոմեթրէն դարձաւ 86,6 հազար»:

Ալիեւ աւելցուց՝ որ Հայաստան «կ'ուզէ մէկ կողմ ձգել 60-ականներու, 50-ականներու, 40-ականներու քարտէզները եւ յղում ընել 70-ականներուն», Ազըրպէյճանն ալ «վճռականօրէն ընդդիմացաւ եւ կ'ընդդիմանայ ասոր»:

**1991-էն ոչ կանուխ**

Աւելին. նոյն հարցազրոյցին մէջ Ազըրպէյճանի առաջնորդը յայտարարեց՝ թէ ազըրպէյճանական բանակը նոյնիսկ մէկ քայլ ետեւ պիտի չերթայ 2021 Մայիսին եւ 2022 Սեպտեմբերին Հայաստանէն գրաւած տարածքներէն:

Հայաստանի նկատմամբ ռազմական յարձակումները դրացի երկիրին ղեկավարը բնութագրեց որպէս «սահմանի ճշդում»: Երեւանի առաջարկը՝ զօրքերը հայելային սկզբունքով սահմանէն ետ քաշել, մերժեց Ալիեւը, փոխարէնը՝ պահանջեց Հայաստանէն վերադարձնել «գրաւեալ 8 գիւղերը»:

«Կան միջերկրային (անկլաւային) եւ ոչ միջերկրային գիւղեր: Ոչ միջերկրային չորս գիւղերը անխօս պէտք է վերադարձուին Ազըրպէյճանին: Միջերկիրներուն առնչութեամբ, պէտք է փորձագիտական խումբ ստեղծել եւ քննարկել: Մենք կը կարծենք, որ բոլոր միջերկիրները պէտք է վերադարձուին, այդ միջերկիրներուն մէջ բնակեցնել մարդոց, եւ յատուկ պայմաններով ճանապարհներ ստեղծել՝ այդ միջերկիրներուն հասնելու համար: Այս է մեր դիրքորոշումը», – յայտարարեց Ազըրպէյճանի նախագահը:

Յետագայ լարուածութիւններէ խուսափելու համար, հայկական կողմը նախապէս կ'առաջարկէր միջերկիրները փոխանակել համաչափութեան եւ փոխադարձութեան սկզբունքով: Երեւանը, միեւնոյն ժամանակ, չէր բացառեր զանոնք փոխադարձաբար վերադարձնելու տարբերակը:

Գալով «գրաւեալ տարածքներուն», Հայաստանէն կը յիշեցնէին անկախացումէն ետք Ազըրպէյճանի գրաւած հողերը, եւ կը շեշտէին՝ որ այս հարցերը կարելի է լուծել, եթէ համաձայնութեան գան սահմանազատումի քարտէզներուն շուրջ:

«Հայաստանը բարձրացնում է 32 գիւղերի հարցը, որոնց կենսական նշանակութեան տարածքներն օկուպացուած են, այդ թւում՝ Գեղարքունիքի մարզում: Մենք հաւա-

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ՆՇԵՑ, ԹԷ ԻՆՉ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՎ Է ՀԱՅԱՍՏԱՆՆ ՊԱՏՐԱՍՏ ՃԱՆԱՊԱՐՀ ՏՐԱՄԱԴՐԵԼ ԱԴՐԲԷՋԱՆԻՆ

Կառավարութեան բոլոր գործողութիւնները ուղղուած են եւ շարունակւում են ուղղուած լինել Հայաստանի Հանրապետութեան ինքնիշխանութեան եւ տարածքային ամբողջականութեան հաստատմանը եւ պաշտպանութեանը: *Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ կառավարութեան անդամների հետ հարց ու պատասխանի ժամանակ այս մասին ասաց վարչապետ Նիկոլ Փաշինեանը՝ պատասխանելով Հայաստան Խմբակցութեան պատգամաւոր Արթուր Խաչատրեանի հարցին, թէ տարածաշրջանում ստեղծուած անվտանգային նոր իրավիճակում կառավարութիւնն ի՞նչ լուծումներ է առաջարկում:

«Անկախութեան գոյութեան ողջ ընթացքում Հայաստանի Հանրապետութեան ինքնիշխանութիւնը եւ տարածքային ամբողջականութիւնը չենք ֆիքսել եւ լղոզել ենք, ինչը ֆունդամենտալ խնդիր է: Ես էլի եմ ասում՝ հարցին պէտք է ճիշտ դիտանկիւնից նայել:

«Բոլոր գործողութիւնները ուղղուած են եւ շարունակւում են ուղղուած լինել Հայաստանի Հանրապետութեան ինքնիշխանութեան եւ տարածքային ամբողջականութեան հաստատմանը եւ պաշտպանութեանը, որովհետեւ ես կարող եմ նաեւ ձեզ ասել, ոչ ընդհանրապէս անվտանգային մարտահրաւէրների մէջ ո՞րն է մեր ռազմավարական ընկալումը: Մեր ռազմավարական ընկալումն հետեւեալն է, որ մեր բոլոր դիրքորոշումները եւ ձեւակերպումները պէտք է յենուեն լեգիտիմութեան վրայ: Այսինքն՝ պէտք է լինեն բացառիկ լեգիտիմ:

«Ինչ վերաբերւում է պաշտօնական Բաքուից հնչող յայտարարութիւններին՝ ես դրանց հրապարակային արձագանքել եմ, բայց չեմ զլանայ նաեւ ձեր հարցին ի պատասխան կոնկրէտ ասել: «Խաղաղութեան խաչմերուկ»-ը, ըստ էութեան, ներառում է ձեր հարցի պատասխանը», - ասաց Փաշինեանը:

«Վարչապետը նաեւ պատասխանեց Բաքուից հնչող յայտարարութիւնների վերաբերուող հարցին՝ նշելով, որ հայկական կողմի հարցադրումներին ի պատասխան՝ Ադրբէջանը երկու հակադարձում է անում:

«Առաջին հակադարձումը հետեւեալն է, որ եթէ Հայաստանի Հանրապետութիւնը պատրաստ չի բացել ճանապարհները, ուրեմն Ադրբէջանը կ'օգտուի Իրանի տարածքով անցումից: Եւ երկրորդ հակադարձումն այն է, որ ինչո՞ւ պէտք է Ադրբէջանի հիմնական մասից դէպի Նախիջեւան անցման ժամանակ, որը 47 կիլոմետր է, տեղի ունենան ինչ-որ ստուգման գործընթացներ: Մենք այս երկու արձագանքին պատասխանում ենք նոյն կերպ՝ ինչ պայմաններով Իրանը տալիս է այդ ճանապարհը Ադրբէջանին, նոյն պայմաններով Հայաստանը նոյնպէս պատրաստ է տալ: Եւ եթէ Հայաստանի տարածքով անցումը Ադրբէջանի հիմնական մասից դէպի Նախիջեւան 47 կիլոմետր է, Իրանի տարածքով էլ 49 կիլոմետր է: Եթէ իսկողական գործառոյթները ընդունելի են 49 կիլոմետրի համար, բնականաբար, չեն կարող ընդունելի չլինել 47 կիլոմետրի համար», - եզրափակեց Փաշինեանը:

## ԵՄ ԽՈՐՀՈՒՐԴԸ Կ'ԸՆԴԼԱՅՆԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

ԵՄ Խորհուրդը որոշում է կայացրել մեծացնել Հայաստանում իր քաղաքացիական դիտորդական առաքելութիւնը:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ X-ի իր միկրոբլոգում այս մասին յայտնել է Հայաստանում ԵՄ դիտորդական առաքելութեան մամուլի ծառայութիւնը:

«Մենք ողջունում ենք Հայաստանում քաղաքացիական դիտորդական առաքելութիւնն ընդլայնելու ԵՄ Խորհրդի որոշումը: Առաքելութեան անձնակազմի աւելացումն ընդգծում է ԵՄ յանձնառութիւնը տարածաշրջանում խաղաղութեանն ու անվտանգութեանը», - ասուած է գրառման մէջ:

ԵՄ կայքում հրապարակուած որոշման մէջ նշւում է, որ 2023 թուականի Յունուարի 23-ից մինչեւ 2025 թուականի Փետրուարի 19-ն ընկած ժամանակահատուածում առաքելութեան հետ կապուած ծախսերը հոգալու համար նախատեսուած հիմնական ֆինանսական գումարը կը կազմի 39 միլիոն 35 հազար եւրօ:

Յիշեցնենք, որ 2023 թուականի Դեկտեմբերին ԵՄ արտաքին գործերի բարձր ներկայացուցիչ Ժոզէպ Բորէլը յայտարարել է, որ ԵՄ-ն Հայաստանում իր քաղաքացիական դիտորդական առաքելութեան թիւը 138-ից կը հասցնի 209-ի:

# ՏԻՐԱՆ ՍԷՖԷՐԵԱՆ
## (1900-1959)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

Գիտնական, մետաղագէտ, զօդում-եռակցումի մասնագէտ՝ Տոքթ. Տիրան-Տանիէլ Սէֆէրեան համանիացած է Ֆրանսայի առաջատար գիտնականներէն մէկը:

Եգիպտահայ մամուլը միշտ զինքը ներկայացուցած է իբրեւ զաւակը համար աւելի ծանօթ ու տիրական դէմքի՝ Քաղաքական Ժողովի ատենապետ, ապա Թեմական Ժողովի Բ. ատենապետ Կարապետ Սէֆէրեանի զաւակը:

Ծնած է 1900-ին, Սամսոն: Հայրը՝ Կարապետ Սէֆէրեան, մայրը՝ Հայկուհի Մուրատեան, դուստրը Սամսոնի կառավարիչի օգնական (յետագային՝ Տէտէ-Աղաճի կառավարիչ) Կարապետ Մուրատեանի:

Նախնական կրթութիւնը ստացած է Պոլսոյ Քատըքէօյի հայկական վարժարանի մը մէջ:

1909-ին ծնողքին հետ կը փոխադրուի Աղեքսանդրիա(1), ուր ուսումը կը շարունակէ ֆրանսական դպրոցի մը մէջ, զոր կ'աւարտէ 1919-ին:

1920-ին կը մեկնի Ֆրանսա(2):

1927-ին կ'աւարտէ Սենթ-Էթիէնի Հանքաբանական Դպրոցը (École des Mines de Saint-Étienne)(3): *Արեւ* հպարտութեամբ հաղորդելէ ետք «Պ. Կարապետ Սէֆէրեանի» որդիին շրջանաւարտութիւնը, կ'աւելցնէ. «Պ. Տ. Սէֆէրեան մասնաւոր ուսումնասիրութեան առարկայ ըրած է քարիւղը, որուն վրայ տարի մը առաջ գրած իր Mémoireը մեծ գնահատութեան արժանացած էր դպրոցին վարչութեան կողմէ ինչպէս նաեւ իր պատրաստած 500 մէթր խորութեամբ հորի մը վերջին ծրագիրը»(4):

Դպրոցը աւարտելէ ետք մինչեւ 1945 թուական կ'աշխատի Զօդումի Հիմնարկին (Institut de Soudure) մէջ: Այդ շրջանին կ'աւարտէ կարեւոր հետազօտութիւններ՝ նիթրիտները պողպատէ եռակցումի մետաղին մէջ, եւ կրակեպու կազային զօդումի բնագիտութիւնը (ֆիզիքս)(5):

Անվէրի մէջ հրատարակուող *Գիտութիւն եւ գիտելիք* ամսագիրէն քաղելով, 1929-ին *Արեւ* կը ձեւակերպէ հետեւեալ լուրը.

«Պ. Տիրան Սէֆէրեանի (զաւակը Քաղաքական Ժողովոյ ատենապետ Պ. Կարապետ Սէֆէրեանի) մէկ գիւտը, զոր յաջողած է ընել Բարիզի Օֆիս Սանթրալի գիտական աշխատանոցին մէջ, որուն վարիչն է ինքը: Գիւտը կը կայանայ նիքելի այլակերպումը կարելի դարձնելու մէջ:

«Նիքելը մետաղ մըն է որ ուրիշ մետաղներու պէս յարմարութիւն չունի թերթի վերածուելու, ինչ որ անկարելի կը դարձնէր այդ մետաղին օգտագործումը: Պ. Տիրան Սէֆէրեան գտած է այդ անատակութեան գիտական պատճառը եւ հետեւաբար նաեւ միջոցը, որով այլեւս այդ մետաղը յարմարութիւն կ'ունենայ ամէն ձեւի մտնելու եւ մեծ յեղաշրջում մը յառաջ բերելու մետաղագործութեան եւ ճարտարարուեստին մէջ»(6):

1929 Ապրիլին կը գտնուի Գահիրէ եւ Ապրիլ 27-ին ֆրանսերէն լեզուով կը բանախօսէ Հայ Գեղարուեստասիրաց Միութեան մէջ, նիւթ ունենալով՝ *Արդի գիտական մեծ տեսութիւններու պատմութիւնը* (L'histoire des grandes théories scientifiques modernes)(7):

Միսակ Շալճեան կը համառօտագրէ մէկ ու կէս ժամ տեւած բանախօսութիւնը, որուն ընթացքին Սէֆէրեան «գրահաշուական ֆօրմիւլներով եւ չափագիտական տարազներով բացատրեց իր նիւթը»: Քննախօսը կ'եզրակացնէ. «Պ. Սէֆէրեան ծափերու մէջ վերջացուց իր դասախօսութիւնը, շնորհակալութիւն յայտնելով Սրբազան Հօր որ բարեհաճած էր իր ներկայութեամբը զինքը պատուել, ինչպէս եւ Գեղարւեստասիրացի վարչութեան, որ հաճելի պատեհութիւնը ընծայած էր իրեն, հայկական շրջանակի մը մէջ արտայայտուելու համար»(8):

1930 Յուլիս 9-12-ին Լիէժի մէջ տեղի ունեցաւ *Ասեթիլէնի, ինքնածին զօդումի եւ յարակից արդիւնաբերութիւններու միջազգային 10-րդ համագումարը* (Xe congrès international pour l'acétylène, la soudure autogène et les industries connexes), կազմակերպութեամբ Ասեթիլէնի Զուիցերիական Ընկերութեան: Կը մասնակցին 20 ազգերէ շուրջ 300 պատուիրակներ: Ֆրանսայի ներկայացուցիչներէն մէկն էր Սէֆէրեան: Այս համագումարին առընչութեամբ, նշելէ ետք որ Տիրան Սէֆէրեան զաւակն է Կարապետ Սէֆէրեանի, *Արեւ* կը մեկնաբանէ.



Տոքթ. Տիրան Սէֆէրեան

«Հասկնալու համար սոյն համաժողովի ճարտարարուեստական կարեւորութիւնը, պէտք է ի նկատի ունենալ թէ մետաղագործական ճարտարարուեստներու մէջ տարուէ տարի մեծ կարեւորութիւն կը ստանայ ասէթիլէնի եւ թթուածինի բոցին միջոցաւ մետաղները հալեցնելով իրար զօդելու կիրառումը, որու կատարելագործումին համար երեք տարին անգամ մը Եւրոպայի զանազան կարեւոր կեդրոններու մէջ կը կազմակերպուի համաժողով:

«Այս տարի 60-է աւելի հաղորդագրութիւններ կարդացուեցան: Սակայն գիտական յանձնաժողովները – որոնցմէ միոյն կ'անդամակցի նաեւ Պ. Տիրան Սէֆէրեան – անոնցմէ միայն 6-ը արժանի դատած են միջազգային կերպով ընդունուելու իբրեւ զուտ գիտական եւ ճարտարարուեստական արժէք ներկայացնող գործեր: Ուրախ ենք իմանալով որ այդ ընդունուածներէն երկուքը մեր հայրենակցին ներկայացուցած ուսումնասիրութիւններն են:

«Առաջինը Etalon de lumière, լոյսի գունատրման աստիճանը որոշելու համար հնարուած ամենաճերմակ լոյս մը՝ որ իբրեւ չափանիշ (étalon) պիտի ծառայէ աստղաբաշխական աշխատանոցներու մէջ: Այս գիւտին աշխատակցած ըլլալով նաեւ Բարիզի Դիտարանի Տնօրէն Տոքթ. Ժիւլ Պայօ սոյն չափանիշը պիտի յորջորջուի «Étalon de lumière Baillaud-Séférian»: Համաժողովին մէջ Պ. Սէֆէրեան փորձը կատարած է յաջողապէս՝ արժանանալով ականաւոր գիտնականներու ջերմ շնորհաւորութիւններուն: Երկրորդը՝ թթուածինի եւ ասէթիլէնի բոցին միջոցաւ կատարուած մետաղեայ զօդումները յատկանշող օրէնքներ եւ տարազներն են (Lois et formules caractérisant l'exécution des soudures oxy-acetylènique)»(9):

(Շար. 1)


ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Տեղափոխութեան հանգամանքներուն մասին տես՝ Պ[ետրոս] Տէփոյեան, «Կարապետ Սէֆէրեան (իր մահուան առիթով)», *Արեւ*, 1 Մարտ 1952, ԼԷ. տարի, թիւ 10.099, էջ 2:

2. Առաքել Պատրիկ, «Դանիէլ Սէֆէրեան», *Արեւ*, 31 Հոկտեմբեր 1970, ԾԵ. տարի, թիւ 15.766, էջ 2: Առաքել Պատրիկ ամուսինն է Տիրան Սէֆէրեանի քրոջ՝ Շուշան Պատրիկի: Տիրան աւագ որդին էր չորս զաւակներու. իրմէ վերջ տարիքային կարգով կու գան՝ Շուշան (նկարիչ ամուսինին հետ 1947-ին ներգաղթած Հայաստան եւ այնտեղ մահացած), Նուարդ (չամուսնացած, մահացած Գահիրէ), Գրիգոր (ամուսնացած-ամուսնալուծուած, մահացած Գահիրէ):

3. «Հայ ուսանողի մը յաջողութիւնը», *Արեւ*, 24 Յունիս 1927, ԺԳ.տարի, թիւ 2541, էջ 2: Վ., «Տոքթ. Տիրան Կ. Սէֆէրեան», *Արեւ*, 22 Հոկտեմբեր 1959, ԽԵ. տարի, թիւ 12.425, էջ 2: Gerard E. Claussen, 'World-Wide Welding News,' *Welding Journal*, July 1960, Volume 19, Number 7, p. 678:

4. «Հայ ուսանողի մը յաջողութիւնը»:

5. Gerard E. Claussen, նշ. յօդ.ը, էջ 678:

6. «Պ. Տիրան Սէֆէրեանի գիւտը», *Արեւ*, 15 Մարտ 1929, ԺԵ. տարի, թիւ 3074, էջ 2:

7. *Արեւ*, 26 Ապրիլ 1929, ԺԵ. տարի, թիւ 3108, էջ 3:

8. Մ[իսակ] Շ[ալճեան], «Պ. Տիրան Սէֆէրեանի դասախօսութիւնը», *Արեւ*, 9 Մայիս 1929, ԺԵ. տարի, թիւ 3118:

9. «Հայ գիտունի մը յաջողութիւնները», *Արեւ*, 29 Յուլիս 1930, ԺԶ. տարի, թիւ 3495, էջ 2:


ՀԱՅԱՍՏԱՆ

# ՄԵՐ ՆՊԱՏԱԿԸ ՊԷՏՔ Է ԼԻՆԻ ԱՄԵՆԱԱՆՎՏԱՆԳ ԵՐԿԻՐ ԼԻՆԵԼԸ. ՓԱՇԻՆԵԱՆ

Համաձայն միջազգային հեղինակաւոր ՆԱՄԲԵՕ (NUMBEO) վերլուծական-տեղեկատուական պորտալի 2023-ին ներկայացրած «Յանցաւորութեան եւ անվտանգութեան ինդեքսի» ամփոփ տուեալների՝ Հայաստանն ուսումնասիրուած 142 երկրների շարքում զբաղեցնում է 7-րդ տեղը (2022 թ.՝ 8, 2018 թ.՝ 18): Երեւան քաղաքն իր հերթին 416 քաղաքներից ընդգրկուել է 20 ամենաանվտանգ քաղաքների շարքում, իսկ տարածաշրջանում առաջինն է:

Այս մասին վարչապետ Նիկոլ Փաշինեանին զեկուցել են Ներքին Գործերի Նախարարութիւնում՝ ներկայացնելով նախարարութեան 2023 թուականի գործունէութեան հաշուետուութիւնը:

Վարչապետը գոհունակութիւն է յայտնել արձանագրուած արդիւնքներից եւ նշել. «Իհարկէ, այս տուեալները շատ լաւն են, այս փուլի համար մենք գոհ ենք, բայց յոյս ունեմ, որ միջազգային իմիջի առումով շատ աւելի լուրջ խնդիրներ ենք դնում մեր առաջ: Այսինքն՝ եթէ մենք այսօր, ցաւօք, առայժմ միայն ներքին անվտանգութեան իմաստով այս կազմակերպութեան տեսակէտից 7-րդն ենք, դա նշանակում է, որ խնդիր պէտք է դնենք աւելի առաջ գնալ, եւ մեր նպատակը պէտք է լինի ամենաանվտանգ երկիր լինելը: Եւ նոյնն էլ մայրաքաղաք Երեւանը:

Զբօսաշրջային կազմակերպութիւններն իրենց փաթեթները ձեւաւորելիս այսպիսի բաներին շատ մեծ ուշադրութիւն են դարձնում: Պէտք է միշտ մատը զարկերակի վրայ պահել, որտեղ յետընթաց ենք ունենում կամ առաջընթաց չենք ունենում՝ խորանանք, հասկանանք՝ ի՞նչն է պատճառը: Իհարկէ, առաջին հերթին այս պրոցեսը կապուած է Ոստիկանութեան եւ Փրկարար Ծառայութեան աշխատանքի հետ: Այսինքն՝ սա ամենակարեւորն է: Մենք ամէն տարի այս ուղենիշը պէտք է ունենանք մեր Փրկարար Ծառայութեան եւ Ոստիկանութեան աշխատանքը գնահատելիս», - ասել է Փաշինեանը:

# ՎԱՐՉԱՊԵՏԸ ԲԱՔՈՒԻՑ ՀՆՉՈՂ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑԻՆ ԼՐՋԱԳՈՅՆ ՀԱՐՈՒԱԾ Է ՀԱՄԱՐՈՒՄ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանի գնահատմամբ՝ վերջին օրերին Բաքուից հնչող յայտարարութիւնները լրջագոյն հարուած են խաղաղութեան գործընթացին: Վարչապետն այս մասին յայտարարեց Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութեան նախաձեռնող խմբի նիստին, որն անցկացուեց Գաւառ քաղաքում:

«Իմ գնահատմամբ՝ վերջին շրջանում Բաքուից հնչող յայտարարութիւնները լրջագոյն հարուած են խաղաղութեան գործընթացին: Ինչո՞ւ մի քանի պատճառներով: Պատճառներից առաջինը հետեւեալն է, որ, ինչպէս գիտէք, մենք մի քանի անգամ հրապարակային արձանագրուած պայմանաւորուել ենք, որ Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութիւնը, ինչպէս նաեւ սահմանների դելիմիտացիան եւ դեմարկացիան պէտք է հիմնուած լինի 1991 թուականի Դեկտեմբերի Ալմա-Աթայի հռչակագրի վրայ: Սա նշանակում է, որ Հայաստանը եւ Ադրբէջանը միմեանց տարածքային ամբողջականութիւնը ճանաչում են այն ըմբռնմամբ, որ Հայաստանի Հանրապետութեան տարածքը ճշգրիտ այնքան է, ինչքան եղել է ՀԽՍՀ-ի տարածքը եւ Ադրբէջանի տարածքը ճշգրիտ այնքան, ինչքան եղել է ԱԽՍՀ-ի տարածքը: Ալմա-Աթայի հռչակագիրը հենց դա էլ ասում է, որ Խորհրդային Միութիւնը փլուզուեց եւ խորհրդային այն հանրապետութիւնները, որոնք միացել են Ալմա-Աթայի հռչակագրին, իրենք իրենց տարածքներով ձեռք են բերում անկախութիւն եւ խորհրդային պետութիւնների միջեւ ունեցած ադմինիստրատիւ սահմաններ դառնում են պետական սահմաններ: Սա նշանակում է, որ սահմանների սահմանազատման գործընթացը սահման ստեղծելու մասին չէ: Այսինքն՝ մեր դելիմիտացիայի յանձնաժողովները ոչ թէ պէտք է գնան սահման ստեղծեն, այլ իրենք պէտք է վերաարտայայտեն այն սահմանները, որոնք գոյութիւն են ունեցել 1991 թուականին Ալմա-Աթայի հռչակագիրն ընդունելու պահին», - ընդգծեց վարչապետը:

Նրա խօսքով՝ այդ պայմանաւորուածութիւնները Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ արձանագրուել են ե՛ւ 2022 թուականի Հոկտեմբերի 6-ի Պրահայի հանդիպման արդիւնքում ընդունուած քառակողմ յայտարարութիւնում, ե՛ւ նոյն ամսուայ ընթացքում Սոչիում տեղի ունեցած հանդիպման ժամանակ, ե՛ւ 2023 թուականի Յուլիսի 15-ին Բրիւսելում տեղի ունեցած հանդիպման ժամանակ:

«Ինչո՞ւ եմ հարուած համարում վերջին օրերին Ադրբէջանից հնչող յայտարարութիւնները, որովհետեւ այն, ինչ նրանք ասում են ամենաբարձր մակարդակով, ուղիղ հակասում է այս տրամաբանութեանը եւ այս պայմանաւորուածութեանը», - ասաց վարչապետը:

Միեւնոյն ժամանակ վարչապետը նշեց, որ Ադրբէջանը փորձում է տարածքային պահանջներ գեներացնել Հայաստանի նկատմամբ, որը նա համարեց բացարձակապէս անընդունելի:

# ՊՈՒՏԻՆԻ ՎԵՑԵՐՈՐԴ «ԱՔԼՈՐԱԿԱՆՉԸ»

ՎԱՀՐԱՄ ԱԹԱՆԵՍԵԱՆ

Տեղական հեռուստարնկերութիւններին Ալիեւի հարցազրոյցն, անկասկած նախընտրական է, տօնայնութիւնը՝ յատկապէս: Այս իմաստով, երեւի, ճիշտ կը լինէր հայկական մամուլում ոչ թէ պարզապէս վերատիրաժաւորել նրա «յունուարեան թեզիսները» եւ զարմանալ կամ զայրանալ, այլ փորձել քարոզչական «յարդը» եւ քաղաքական «հատիկը» զանազանել: Դա, անշուշտ, մասնագիտական-վերլուծաբանական հաստատութիւնների, ԱԳՆ-ի, Անվտանգութեան Խորհրդի, յատուկ ծառայութիւնների խնդիրն է: (Միջանկեալ արձանագրենք, որ Ալիեւը հռչակել է իր երկրի «նոր դարաշրջան». դա արդէն իսկ մարտահրաւէր է, բայց ոչ միայն եւ ոչ այնքան Հայաստանին):

Ալիեւի մանուածապատ, արեւելեան երկիմաստութիւններով խճողուած խօսքից այս փուլի համար երկու կարեւոր «մասնահատում» է պէտք, կարծես անել: Առաջինը. նա խոստովանեց, որ Նոյեմբերի 9-ի եռակողմ Յայտարարութիւնն ունի կամ աւելի ճիշտ ունեցել է, պայմանականօրէն ասենք՝ «բանաւոր պայմանաւորուածութիւնների կամ ջենթըլմէնական համաձայնութիւնների բլոկ»: Ի մասնաւորի՝ «այնտեղ (Լեռնային Ղարաբաղում) ամէն ինչ պէտք է մնար՝ ինչպէս կար»: Այսինքն, քաղաքական եւ, մանաւանդ, ուժային Ստեփանակերտի չեղարկման, լուծարման, կազմացրման ոչ գրաւոր, ոչ բանաւոր պայմանաւորուածութիւն չի եղել:

Երկրորդ բացայայտումն այն է, որ Ալիեւը հինգ անգամ Պուտինի հետ քննարկել է, - նա ասում է՝ «ամենաբարձր մակարդակով բարձրացրել ենք» - Լաչինի միջանցքի հսկողութեանը Բաքուի ուժային կառոյցներին ներգրաւելու հարցը: «Դա կը թուլացնէր ռուս խաղաղապահների քննադատութիւնը, մենք որոշակի պատասխանատուութիւն կը վերցնէինք» - ասում է Ալիեւը: Ստացւում է, որ Նոյեմբերի 9-ից մինչեւ 2022թ. Մարտի 22-ը (այդ օրուան կ'անդրադառնանք) Ալիեւը Պուտինին խնդրել է բանաւոր խմբագրել եռակողմ Յայտարարութեան «Լաչինի միջանցքը գտնւում է Ռուսաստանի խաղաղապահ զօրախմբի հսկողութեան ներքոյ» ձեւակերպումը, դէ-ֆակտօ անցնել Գորիս-Ստեփանակերտ աւտօճանապարհի ռուս-ադրբէջանական համատեղ կառավարման, բայց յաջողութեան չի հասել:

Ակնյայտ է, որ Պուտինը վեցերորդ անգամ «Յիսուսին ուրացել է»: Եւ դա տեղի է ունեցել 2022թ. Փետրուարի 22-ին՝ Ուկրաինայի դէմ յարձակումից երկու օր առաջ: Ի դէպ, նախօրէին կամ գրեթէ միաժամանակ Պուտինը հանդիպել է նաեւ Պակիստանի վարչապետ Իմրան Խանին, որ հազիւ մէկ ամիս անց խորհրդարանում ենթարկուեց իմփիչմենթի եւ պաշտօնանկ արուեց՝ ըստ գերիշխող տեսակէտի՝ Միացեալ Նահանգների եռանդուն միջամտութեամբ: Ինչո՞ւ Վաշինգտոնը քայլ չարեց Ալիեւի դէմ՝ հարց է, որ խորութեամբ պէտք է ուսումնասիրուի: Այդ տքնաջան աշխատանքը դարձեալ հասցէագրելի է Հայաստանի պատկան կառոյցներին:

Բայց դառնանք Պուտին-Ալիեւի «ոչ-

↳ 4

# ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ՝ ՀՈԳՈՒ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՈՒՍՈՒՑՈՂԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿ. ԱՐԹՈՒՐ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆԻ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

ՆԱԻՐԱ ՏԻԳՐԱՆԵԱՆ

Այսօր հայ հասարակութիւնը կարիք ունի բժշկահոգեբանական դիտանկիւնից խնդիրներին մօտեցում ցուցաբերած գրականութեան, որը նաեւ հոգու ամրապնդման ուսուցողական ձեռնարկ է: Նման համոզմունք ունի բանաստեղծ, գրականագէտ, սփիւռքագէտ Արթուր Անդրանիկեանը:

«Անշուշտ, նման գրականութեան կարիք կայ, բայց պէտք է կարողանանք տեղ հասցնել, քանի որ այսօր, չեմ ուզում պախարակել, բայց գիտենք, թէ որն է լայն սպառման գրականութիւնը՝ էժանագին ու մարդկանց առօրեական պահեր նկարագրող սիւժէներ: Մենք պէտք է նպաստենք, որ այդ գրականութիւնն իր կենսագործունէութիւնը շարունակի հասարակութեան մէջ, քանի որ հասարակութեան հոգեւոր ապաքինման համար հէնց նման գրականութիւնը շատ անհրաժեշտ է», - cultural.am-ի հետ զրոյցում ասում է Արթուր Անդրանիկեանը:

Հայաստանի Ազգային Գրադարանում Նոյեմբերի 16-ին տեղի ունեցաւ Արթուր Անդրանիկեանի բանախօսութիւնը *Բժշկութեան հոգեբանական ներգործութիւնը գրականութեան մէջ* թեմայով: Բանախօսն անդրադաձաւ 8 հայ գրողների (Ծերենց, Նահապետ Ռուսինեան, Ռուբէն Սեւակ, Շաւարշ Նարդունի, Հրաչ Զարդարեան, Ժիրայր-Վահէ Մալճեան, Իգնա Սարըասլան եւ Վարդգէս Դաւթեան) ստեղծագործութիւնների՝ նրանց գրական երկերում հոգեբանական, խորքային բացայայտումներ անելու տեսակէտից:

«Այս գրողներին ես եմ ընտրել: Նրանցից շատերի՝ Շաւարշ Նարդունու, Հրաչ Զարդարեանի, Ժիրայր-Վահէ Մալճեանի, Իգնա Սարըասլանի ստեղծագործութիւնները ես եմ հրատարակել իմ առաջաբանով: Ամենակարեւորը՝ որոշ գրողների ժողովածուների առաջաբանը գրել եմ արեւմտահայերէն յատուկ միտումով, որ նրանց գրականութիւնը արեւմտահայոց մտքից է բխում», - ասում է Ա. Անդրանիկեանը: Բացի այդ, նրա խօսքով՝ այսօր արեւմտահայերէնի վիճակն այնքան էլ լաւ չէ. ըստ ԻՒՆԵՍԿՕ-ի վերջին տուեալների՝ արեւմտահայերէնը գտնւում է անհետացող լեզուների առաջին տասնեակում: Նաեւ դրանով է պայմանաւորուած, որ գրականագէտն արեւմտահայերէնը ներկայացնելու համար որոշ գրքերի առաջաբաններ գրել է հէնց արեւմտահայերէն, որպէսզի դոյզն-ինչ կարողանայ նպաստել սրբազան լեզուի պահպանմանը:

Անդրադառնալով բանախօսութեան համար ընտրուած հեղինակներին, եւ թէ ինչն է նրանց կապում՝ ասում է. «Ես այս գրողների մօտ տեսնում եմ բժշկութեան հոգեբանական դրսեւորումները, որովհետեւ իրենք պարզապէս ոչ միայն իրենց հերոսների միջոցով են դրսեւորում իրենց բժշկական, բժշկագիտական գաղափարները, մօտեցումները, նրանք նաեւ այլ մասնագիտութեան են տիրապետում: Բժշկի համար շատ բնորոշ մասնագիտութիւն է հոգեբանութիւնը: Հոգեբանութիւնը տարրալուծուած է բժշկութեան մէջ, եւ այս գրողները հիմնականում այլ կենսակերպ, մօտեցումներ ունեցող անհատներ են, մտաւորականներ են, բնականաբար, նրանց ստեղծագործութիւններն ինձ համար շատ ուշագրաւ են: Այս գրողներն իրենց ստեղծագործութիւններով կարողացել են լուծել ամենատարբեր խնդիրներ»:

Նա բանախօսութիւնը սկսեց հայ պատմավիպասանութեան հիմնադրից՝ Ծերենցից (Յովսէփ Յակոբի Շիշմանեան): Ծաւալուն անդրադարձ կատարեց ամերիկաբնակ գրող, հրապարակագիր, եւրոպական առումով բանասիրութեան դոկտոր, հոգեթերապեւտ Վարդգէս Դաւթեանին: Հէնց նա է եղել այն ներշնչող, ներքին մղիչ ուժը, որ Արթուր Անդրանիկեանը մտայղացել է կազմակերպել այս բանախօսութիւնը:

Բանախօսութեան ընթացքում տեղի ունեցաւ նաեւ Վարդգէս Դաւթեանի *Երկեր*ի վեց հատորեակի առաջին հատորի շնորհանդէսը:

«Շատ դժուար է լինել մէկ մարդ եւ տիրապետել այդքան բազմաշերտ գիտելիքների: Վարդգէս Դաւթեանը տաղանդաւոր մարդ է. կարելի է լինել տաղանդաւոր գրող, բայց չլինել տաղանդաւոր մարդ: Տաղանդաւոր գրողը որոշակի առումով ունի սահմանափակումներ, իսկ տաղանդաւոր մարդը, երբ որ գրող է, նկարիչ է, ճարտարապետ է, նրանց հնարաւորութիւնները բազմաշերտ են: Լինելով գրքի առաջին հատորի խմբագիրը՝ Վարդգէս Դաւթեանի շնորհիւ ես կարողացայ բացայայտել շուրջ 20 եւ աւելի տարիների իմ մտածումները:

↳ 4

ԽՈՀԵՐ

# ԼՌԵԼՈՒ ԱՐՈՒԵՍՏԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

«Լռութիւնը դատարկութիւն չէ. պատասխաններով լեցուն է ան», կ'ըսէ Պուտտիզմը:

Քիչ թէ շատ ժողովրդական ճաշարան մը հրաւիրուած էի: Երեք հոգի էինք: Կերանք եւ պարտադրաբար խօսեցանք: Քովի սեղանը նստած էին ամուսիններ, որոնք կ'ուտէին դանդաղօրէն, առանց բառ մը փոխանակելու: Խռոված չէին իրարմէ: Իրենց դէմքերուն արտայայտութիւնը խիստ հանդարտ էր: Մեր երեքի նկատողութենէն չվրիպեցաւ անոնց լռութիւնը: Մեզի համար ընդունելի չէր երեւոյթը: Եկած ես ճաշարան՝ պէտք է խօսիս: Չուզեցինք հասկնալ՝ որ անոնց լռութիւնը աւելի հաղորդակցային, աւելի ինքնակազդուրիչ էր, քան մեր երեքի պարապ ու անիմաստ ճաշարանային խօսակցութիւնը: Ճաշարանի մէջ փիլիսոփայութեան մասին պիտի չխօսիս: Մեր քովինները կը խօսէին փիլիսոփայութեան մասին՝ լռելով:

Բնականաբար, խօսակցութիւնը մարդկային մտածելակերպի անբաժան գործօն մըն է: Խօսակցութեամբ կարելի է շատ բան փոխել դրականի, կարելի է յեղափոխութիւններ կատարել՝ եթէ խօսակցութիւնը դառնայ համընդհանուր ենթակայականութեան հարթակ:

Խօսակցութիւնը նաեւ ձայն է, իսկ խօսքի եւ ձայնի յարաբերութիւնը կրնայ ըլլալ համահունչ կամ հակադիր, մէջտեղը գտնուող բազում նրբերանգներով:

Ոչինչ սխալ կայ խօսելու մէջ: Պղատոնի հանճարեղ փիլիսոփայութիւնն ամբողջութեամբ հիմնուած է խօսակցութեան վրայ՝ փոխխօսակցութիւն, երկխօսութիւն, տրամասացութիւն: Ծայրագոյն արեւելեան կրօնք-փիլիսոփայութիւնները աւելի կը միտին լռութեան՝ խոկում (meditation), եոկա, հարցում առանց պատասխանի: Ճափոնցիները ունին «չինմոքու» բառը՝ արեւմրտեան լռութեան եւ հանդարտութեան համարժէքը, որ մաս կը կազմէ տեղական մշակոյթին՝ ուր լռութիւնը կը համարուի հաղորդակցութեան կարեւոր ոլորտ մը, յաճախ աւելի արժէքաւոր քան բառը:

Ճափոնցիները ունին լռելով դիմացինին յարգելու աւանդոյթը: Լռելով յարգելը հաղորդակցութեան միջոց մըն է: Բայց միակողմանի է: Միեւնոյնն է՝ մէկ կողմը կը խօսի, եւ անոր խօսելուն հետեւանքն է միւս կողմի լռութիւնը: Լռութիւնը չէ ինքնադրդումը:

Չեմ խօսիր պարտադրուած լռութեան մասին, կը խօսիմ ինքնակամ լռութեան մասին: Այս առումով լռելը նաեւ ինքնակառավարում է, ինքնակրթութիւն, մտային մարզանք:

Ի դէպ, լռելն ու լռութիւնը նոյնական չեն: Լռել կը նշանակէ չխօսիլ՝ ինքնակամ կամ պարտադրուած: Լռութիւնը աւելի մեծ հասկացողութիւն մըն է, ան ոչ միայն կը բովանդակէ չխօսիլը, այլ կը վանէ ձայնը ընդհանրապէս՝ երաժշտութիւն, փողոցի աղմուկ, մեծ խանութի ժխոր, եւլն.: Գրութիւնս լռելու մասին է:

Սինեմայի լաւագոյն ֆիլմերը անոնք են՝ որոնց մէջ հաւասարակշռուած կը գտնենք խօսակցութիւնն ու լռութիւնը: Անընդհատ խօսակցութեան վրայ հիմնուած ֆիլմերը տկար մտածողութեան արդիւնք են:

Նոյնիսկ թատրոնը՝ որ ամբողջութեամբ հիմնուած է խօսքի վրայ, կը դառնայ խորազդեցիկ երբ կը ներմուծուին դերասանական լռութիւններ:

Երաժշտութիւնը՝ որ ամբողջութեամբ հիմնուած է հնչիւնի վրայ, այսինքն՝ ձայնի, կը դառնայ աւելի արտայայտիչ դադարներու հմուտ գործադրութեամբ: Արդէն կայ Մոցարթի յայտնի խօսքը. «Լռութիւնը շատ կարեւոր է: Նոթաներուն միջեւ եղած լռութիւնը նոյնքան կարեւոր է, որքան բուն նոթաները»:

Բայց այսպէսով թատրոնն ու երաժշտութիւնը լռութիւնը ընդունած կ'ըլլան իբրեւ ածանցում խօսքին ու ձայնին, ան ընդունելի է այնքան ժամանակ որ կայ առաջնայինը՝ խօսքը: Թերեւս ասիկա նկատի ունենալով էր որ Ճոն Քէյճ ստեղծեց իր հռչակաւոր 4'33-ը, ուր դաշնակահարը չի նուագեր 4 վայրկեան 33 երկվայրկեան, դիմադրելով ձայնը: Բայց արդեօ՞ք քիչ մը շօուի վրայ հիմնուած այս յղացումը կրնայ յառաջացնել մտորում եւ խոկում: Հազիւ թէ: Բայց կրնայ դաշնակահարին եւ հանդիսատեսին միջեւ յառաջացնել յարաբերութեան տարբեր տեսակ մը:

Խօսիլն ու լռելը փոխադարձաբար կապուած են: Բայց միայն խօսակցութիւնն է ուշադրութեան կեդրոնը: Կը նսեմացուի լռելը, ներկայացուելով իբրեւ կարելիութեան կորուստ եւ երբեմն նաեւ՝ տկարութիւն: Խօսքը առաւել գրաւիչն է, առաւել գայթակղիչը: Լռելը, միւս կողմէ, առաւել աներեւոյթն է՝ բայց առաւել թափանցիկը, առաւել աննկատն է՝ բայց առաւել թափանցողը:

Արդի սպառողականութիւնը լռել չի ճանչնար: Պիտի խօսիս՝ ապրանքդ ծախելու համար: Պիտի խօսիս՝ դիմացինէդ աւելի դրամ կորզելու համար: Պիտի խօսիս՝ ինքզինքդ պարտադրելու համար: Սպառողական խօսքը հիմքն է անհաւասարութեան:

Խօսքային սպառողականութեան բացառիկ կրող մըն է հեռատեսիլը: Օրական 24 ժամ խօսք: Ամէն տեսակ բնագաւառի հաղորդավարներ՝ որոնք պէտք է անընդհատ խօսին, հարցազրոյցներ՝ ուր ամէն մարդ պէտք է խօսի, վերջապէս թոքշօուներ՝ իբրեւ խօսքը ցուցադրականացնելու ծայրայեղ միջոց:

ՋԱՀԱԿԻՐ

## 3 ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ՝ ՀՈԳՒՈՒ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ...

Դաւթեանը նաեւ բժշկագիտական գիտելիքների է տիրապետում, նա բժշկահոգեբանական դիտանկիւնից է մօտենում խնդիրներին: Նրա «Նեւրոտիկ վիճակների յաղթահարումը» գիրքն անուանում եմ հոգու ամրապնդման ուսուցողական ձեռնարկ:

Նրա գրած բժշկագիտական, զուտ գիտական նշանակութիւն ունեցող գրքերն այսօր շատ հետաքրքրայարոյց են, շատ օգտակար են յատկապէս երիտասարդների համար, դրանցում վեր են հանուած դեպրեսիաներին, ներանձնական խնդիրներին վերաբերող հարցեր», - ասում է գրականագէտը:

Բանախօսութեան ընթացքում Արթուր Անդրանիկեանն անդրադարձաւ նաեւ համաշխարհային գրականութեան մէջ բժշկի մասնագիտութիւն ունեցող հեղինակներին՝ սկսած 14-րդ դարի ֆրանսական վերածննդի խսկայից՝ Ֆրանսուա Ռաբլէից, մինչեւ ռուս հանճարեղ գրողներ Անտոն Չեխով, Միխայիլ Բուլգակով:

«Նրանք գրողներ են, որոնց ստեղծագործութիւններում առկայ չեն ցցուն վիճակներով բժշկագիտական խնդիրները, ուղղակի իրենց ստեղծագործութիւններում իբրեւ բժիշկ, հոգեբան, կարողանում են կազմակերպել իրենց հերոսների ներկայացնելու այնպիսի միջավայր, որ հերոսների միջոցով դրսեւորւում է հասարակութեան ողջ սպեկտորը: Հասարակութիւնը դիտւում է հերոսների ներաշխարհի միջով կամ հակառակը: Այս խնդիրներին անդրադարձել են բոլորը: Պատահական չէ, որ Ռաբլէի՝ մահուանից առաջ վերջին նախադասութիւնն էր «իջեցրէք վարագոյրները, կատակերգութիւնն աւարտուած է»: Հիմա դա սոսկ կատակերգութիւն չէ, իրականութեան այն անտեսանելի կողմերն են, որոնք դրսեւորւում են իր ստեղծագործութիւններում:

Մեր գրողները նոյնպէս կարողացել են իրենց ստեղծագործութիւններում արտայայտել այն միջավայրը, իրականութիւնը, որի ժամանակ իրենք ապրել են, ստեղծագործել են», - ասում է նա ու յաւելում, որ այս գրքերն ընթերցողներն անպայման պատկերացում կը կազմեն, որ դրանց հեղինակները բժշկութեան հետ կապ ունեն:

Բանախօսութեան ժամանակ արձանագրուեց բժշկի հոգեբան լինելու հանգամանքը: Որպէս օրինակ նշում է, որ Նահապետ Ռուսինեանը, որը Փարիզի բժշկական համալսարանն աւարտելուց յետոյ տեղափոխուել էր ծննդավայր՝ Պոլիս, զբաղուել է հասարակական, հանրային գործունէութեամբ: Նա, իր բժշկական գիտելիքները հոգեբանօրէն օգտագործելով, նպաստել է, որ աշխարհաբարն իր յաղթարշաւը շարունակի:

Արթուր Անդրանիկեանի խօսքով, այս բանախօսութիւնը շատ աւելի խորքային է, բազմաշերտ է, խորագիրը պատշաճում է գիտական նստաշրջանի:

«Մենք գիտենք, թէ այսօր ինչ գրքերի շնորհանդէսների են գնում մարդիկ, ինչպիսի ընդհանուր հոգեբանական իրավիճակ է տիրում Հայաստանում: Այնուամենայնիւ, յանուն արդարութեան պէտք է ասել՝ ովքեր ներկայ գտնուեցին բանախօսութեանը, գրքի շնորհանդէսին, գուցէ ինչ-ինչ առումներով օգտակար մօտեցումներ, գաղափարներ քաղեցին», - ասում է բանաստեղծ, գրականագէտ, սփիւռքագէտ Արթուր Անդրանիկեանը:

## 3 ՊՈՒՏԻՆԻ ՎԵՑԵՐՈՐԴ «ԱՔԼՈՐԱԿԱՆՉԸ»

խարներին»: Կրեմլում Ռուսաստանի եւ Ադրբէջանի ռազմավարական համագործակցութեան Հռչակագրի ստորագրումից ուղիղ մէկ ամիս անց՝ 2022թ. Մարտի 22-ին Բաքու գործուղուեց, իսկ դա կարող էր արուել միայն Պուտինի հրահանգով, Ռուսաստանի Զինեալ Ուժերի բարձրաստիճան պատուիրակութիւն, որ գլխաւորում էր ցամաքային զօրքերի հրամանատար գեներալ-գնդապետ Կիմը: Երկու օր անց Հայաստանի ԱԺ ընդդիմադիր խմբակցութեան պատգամաւորը ֆէյսբուքում «աւետեց» ադրբէջանական զինուժի մուտքը Ասկերանի շրջանի Փառուխ գիւղ եւ յստակ նշեց, որ «ուղղութիւնը դէպ Քարագլուխ է»:

Իլհամ Ալիեւը նաեւ բացայայտեց, որ այդ, ինչպէս նաեւ «Սարիբաբա» եւ «Վրէժխնդրութիւն» օպերացիաները մի ծրագրի առանձին դրուագներ էին, որի այդ պահի ապոթեոզը Լաչինի, Սուսի եւ Աղաւնոյի յանձնումն էր եւ միջանցքի «երթուղու փոփոխութիւնը»: Փաստացի Ադրբէջանը Լաչինի միջանցքի նկատմամբ վերահսկողութիւն հաստատել է 2022թ. Օգոստոսի 5-ին: Դա Պուտինի «վեցերորդ աքլորականչն» էր: Ալիեւը կարող է միայն հպարտանալ, որ կարողացել է համոզել կամ արժանի է եղել, որ Պուտինն իր միջոցով «մատնի Յիսուսին»: Իսկ թէ դրանում ո՞րն էր Ստեփանակերտի «ինքնամատուցման» ընթացքը՝ յաջորդիւ:

## 1 ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԿԸ ՀԵՌԱՑՆԵՆ ՀԱՅ-ԱԶՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ...

տարիմ ենք Ալմա-Աթիի հռչակագրի հիման վրայ փոխադարձաբար միմեանց տարածքային ամբողջականութիւնը ճանաչելուն: Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ օկուպացուած տարածքներ պէտք է չլինեն: Այնտեղ, որտեղ պարզուի, որ Հայաստանն է ինչ-որ տարածքներ հսկողութեան տակ պահում, որոնք դէ իւրէ պատկանում են Ադրբէջանին, Հայաստանը պէտք է այդ տարածքներից դուրս գայ, իսկ այն տարածքներից, որոնք դէ իւրէ պատկանում են Հայաստանին եւ որոնք Ադրբէջանն է պահում տիրապետութեան տակ, պէտք է դուրս գայ Ադրբէջանը», – Յունուար 13-ին վերահաստատեց Փաշինեան:

Ասիկա, ըստ Հայաստանի ղեկավարին, հնարաւոր չէ ընել առանց փոխադարձաբար համաձայնուած քարտէզի. «Ինչպէ՞ս որոշենք, այդ տարածքը Հայաստանի տարածքն է, թէ՞ Ադրբէջանի: Մի ձեւ կայ՝ քաղաքական առումով յենուել 1991 թուականի Ալմա-Աթիի հռչակագրի վրայ»:

**Ալիեւ կը պնդէ ռուսական ներկայութիւնը**

«Նախընտրական» հարցազրոյցին մէջ, Իլհամ Ալիեւ կրկին խօսեցաւ «Զանգեզուրի միջանցքի» մասին, սպառնալով՝ որ եթէ ան չբացուի, պիտի չբացուի նաեւ հայ-ազրպէյճանական սահմանը:

«[Հայաստանը] պէտք է մեզի անխոչընդոտ անցում տայ Զանգիլանի եւ Օրդուբադի միջեւ, ասիկա անոնց պարտաւորութիւնն է: Բեռները, քաղաքացիները եւ ինքնաշարժի միջոցները՝ որոնք կ'երթեւեկեն Ազրպէյճանէն Նախիջեւան, պէտք է անցնին առանց որեւէ զննութեան եւ մաքսային վարչարարութեան», – նշեց Ազրպէյճանի ղեկավարը:

Հակառակ որ Նոյեմբեր 9-ի յայտարարութեան գրեթէ բոլոր դրոյթները ոտնահարուեցան եւ արդէն անվերադարձօրէն ջնջուեցան նոյնինքը Ազրպէյճանի կողմէ, խօսելով «միջանցքի» բացումին մասին, Ալիեւ առաջարկեց յենուիլ ճիշդ այդ պայմանագիրին վրայ.

«Նոյեմբեր 10-ի յայտարարութեան մէջ գրուած է՝ որ ճանապարհի 42-43 քմ. հատուածի ապահովութիւնն ու վերահսկողութիւնը պէտք է իրականացնեն ռուս սահմանապահները, եւ այդ պարտաւորութիւնը պէտք է կատարուի», – ըսաւ Ազրպէյճանի ղեկավարը:

Ալիեւի վերջին հարցազրոյցէն ետք, Փաշինեան կրկնեց՝ թէ «Զանգեզուրի միջանցքի» ազրպէյճանական նախագիծը ուղղակի նկրտում է Հայաստանի ինքնիշխանութեան եւ տարածքային ամբողջականութեան նկատմամբ:

Վարչապետը մէկ անգամ եւս վերահաստատեց Հայաստանի դիրքորոշումը՝ թէ ճանապարհները եւ սահմանները պէտք է բացուին հիմնուելով երկիրներու տարածքային ամբողջականութեան եւ իրաւազօրութեան, փոխադարձութեան սկզբունքներուն վրայ.

«Բառային խաղերից դուրս գանք: Մենք ի՞նչ ենք ասում: Ասում ենք՝ ինչ պայմանով Իրանի Իսլամական Հանրապետութիւնը տրամադրում է կապ Նախիջեւանի եւ Ադրբէջանի միւս հատուածի միջեւ, նոյն պայմաններով մենք էլ ենք պատրաստ տրամադրել էդ կապը՝ ե՛ւ երկաթուղային, ե՛ւ աւտոճանապարհային», – նշեց Հայաստանի վարչապետը:

Արձագանգելով Ալիեւի պնդումներուն՝ թէ Հայաստանը 2020 Նոյեմբեր 9-ի եռակողմ յայտարարութեամբ պարտաւոր է անխոչընդոտ կապ տրամադրել Ազրպէյճանին, Փաշինեան յիշեցուց՝ թէ եռակողմ յայտարարութեան մէջ, նախ, «Զանգեզուրի միջանցքի» մասին որեւէ յիշատակում չկայ, եւ երկրորդ՝ այդ յայտարարութեան երեք կողմերէն երկուքը՝ Ազրպէյճան եւ Ռուսաստան, իրենց գործողութիւններով ցոյց տուին՝ որ իրենց համար այլեւս գոյութիւն չունի ան. «Չի կարող այդպէս լինել, որ երկու կողմի համար այդ փաստաթուղթն այլեւս գոյութիւն չունենայ, բայց երրորդ կողմի համար այն շարունակի գոյութիւն ունենալ»:

**Երեւանը չ'ուզեր պատերազմ**

Ազրպէյճանի նախագահը հրապարակաւ մերժեց նաեւ խաղաղութեան պայմանագիրի համար երաշխաւորներ ամրագրելու հայկական կողմի պահանջը: Լեռնային Ղարաբաղի հայ բնակչութեան ապագայի մասին արդէն չի խօսուիր: Աւելին. Պաքու ամիսներ շարունակ կը հրաժարի միջազգային հարթակներու բանակցութիւններէն, պարբերաբար կը յայտարարէ գործընթացը երկկողմ ձեւաչափով շարունակելու մասին եւ կը խօսի խրնդրայարոյց կէտերը, մասնաւորապէս՝ սահմանազատումին առնչուող հարցերը, պայմանագիրի բնագիրէն դուրս ձգելու անհրաժեշտութեան մասին:

Քանի մը օր առաջ վերջին կէտին անդրադարձաւ Հայաստանի Արտաքին Գործոց նախարար Արարատ Միրզոյեան. «Վերջնական խաղաղութեան պայմանագիրը պէտք է յստակութիւն ապահովի: Նաեւ հասկանալիօրէն եթէ երկրների միջեւ սահմանների սահմանազատման գործընթացը կարող է երկար ժամանակ տեւել, առնուազն խաղաղութեան պայմանագրում մենք պէտք է տեսնենք այն յստակ հիմքերը, որոնց վրայ պէտք է յետագայում ընթանայ սահմանազատման գործընթացը», – նշեց Միրզոյեան:

Փաշինեան աւելցուց, որ պէտք է կնքել խաղաղութեան այնպիսի պայմանագիր՝ որ կանխէ պատերազմի հնարաւորութիւնը: «Երբեմն Ադրբէջանի առաջարկներին ծանօթանալով տպաւորութիւն ենք ստանում, թէ փորձ է արւում ստեղծել մի փաստաթուղթ, որով պէտք է լեգիտիմացուի յետագայ պատերազմները: Սա տրամաբանութիւնից դուրս է», – նշեց Փաշինեան:

**...Ազրպէյճան կը ներխուժէ Հայաստան եւ կը նեղուի Արեւմուտքէն**

Նախընտրական «յետընթացի» յետանախորդին վրայ, ամերիկեան Stratfor հետախուզավերլուծական կեդրոնի փորձագէտները կը կանխատեսեն՝ որ «եթէ տարուայ առաջին վեց ամիսներուն [խաղաղութեան պայմանագիրի շուրջ բանակցութիւններուն] զգալի յառաջընթաց չարձանագրուի, ամառն կը մեծնայ Ազրպէյճանի կողմէ Հայաստանի հարաւէն զգալի մաս մը անջատելու վտանգը:

«...Երեւանը շատ քիչ լծակներ ունի եւ, հաւանաբար, ստիպուած ըլլայ ընդունիլ Պաքուի պահանջները՝ Հայաստանի հարաւը տարանցումի եւ ընդհանուր սահմանի սահմանազատումի վերաբերեալ», – կը կանխատեսեն Stratfor-ի փորձագէտները:

Ըստ անոնց, պիտի չկերանայ Ռուսաստանի ազդեցութիւնը Հարաւային Կովկասի վրայ. «Հայաստանը պիտի շարունակէ մնալ ՀԱՊԿ կազմին մէջ, տնտեսութիւնն ալ սերտօրէն կապուած պիտի մնայ ռուսական տնտեսութեան»: Միւս կողմէ՝ էական աճ պիտի արձանագրեն Ազրպէյճանի եւ Ռուսաստանի երկկողմ յարաբերութիւններն ու առեւտրային կապերը. «Ասոնք պիտի հասնին նոր բարձունքներու», «Պաքուն պիտի նպաստէ հիւսիս-հարաւ ենթակառուցուածքի զարգացումին, որ Ռուսաստանը կը կապէ Իրանին»:

«Եթէ Նախիջեւանի հետ ցամաքային կապ հաստատելու համար Պաքուն ներխուժէ Հայաստան, Ազրպէյճանն ու Թուրքիան պիտի յայտնուին Արեւմուտքի ճնշումին տակ, եւ չի բացառուիր՝ որ փոխեն արտաքին քաղաքական կողմնորոշումը եւ թեքուին Արեւմուտքէն՝ աւելի սերտ կապեր հաստատելով Ռուսաստանի, Չինաստանի եւ Իրանի հետ», – կ'եզրակացնեն Stratfor-ի զեկուցագիրները:

*Արեւելահայերէնէ արեւմտահայերէնի փոխադրութիւն՝ Ա.*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1958 ՀԻՆԳՇԱԲԹԻ 1 ՓԵՏՐՈՒԱՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٥٨ الخميس ١ فبراير ٢٠٢٤


## ՏԱԿԱՒԻՆ ԳՈՅՈՒԹԻՒՆ ՈՒՆԻ՞ ՆՈՅԵՄԲԵՐ 9-Ի ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

*Հարցազրոյց ՏԻԳՐԱՆ ԳՐԻԳՈՐԵԱՆի հետ*
*Հարցազրուցավար՝ ԺԱՆՆԱ ԱՒԱԳԵԱՆ*

**ԺԱՆՆԱ ԱՒԱԳԵԱՆ – Կ'առաջարկեմ զրոյցը սկսիլ Սերկէյ Լաւրովի ասուլիսով, ուր խօսեցաւ Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ խաղաղութեան համաձայնագիրին եւ հայ-ռուսական յարաբերութիւններուն մասին, ինչպէս նաեւ անդրադարձաւ Զանգեզուրի Միջանցքին, մասնաւորապէս ըսելով՝ որ Ռուսաստանի, Հայաստանի եւ Ազրպէյճանի ղեկավարներուն միջեւ ձեռք բերուած համաձայնութիւններու ծիրէն ներս Զանգեզուրի Միջանցքին մասին երբեք չէ խօսուած, բայց նաեւ չբացառեց նման ճանապարհներու ապաշրջափակումը, ուր պէտք է ռուսական ներկայութիւն ըլլայ։ Ապա անդրադարձաւ Փաշինեանի յայտարարութեան՝ թէ Հայաստան պատրաստ է այդ ճանապարհը տրամադրել, եթէ Ազրպէյճան անկէ օգտուի իրաւական տարբերակի նմանողութեամբ։ Լաւրովը այս համեմատութիւնը համարեց ոչ-տեղին։ Ի՞նչ է կարծիքդ։**

ՏԻԳՐԱՆ ԳՐԻԳՈՐԵԱՆ – Այո, կը տեսնենք որ վերջին շրջանին ե՛ւ Պաքուն ե՛ւ Մոսկուայէն նորէն սկսած են հնչել յայտարարութիւններ՝ որ այդ ճանապարհին վրայ պէտք է ռուսական ներկայութիւն ըլլայ։ Վերջերս Ալիեւ եւս շեշտեց ռուսական ներկայութեան հանգամանքը, նշելով որ այդ ճանապարհը պէտք է ապահովութեան երաշխաւորանք ունենայ։ Կը նշանակէ՝ որ այս հարցին շուրջ կողմերը հեռու են համաձայն ըլլալէ, քանի որ յստակ է՝ թէ վերջին տարիներուն Հայաստանի իշխանութիւններուն համար կարծես թէ կարմիր գիծ եղած ըլլայ ասիկա. անոնք նոյնիսկ հրաժարեցան Ռուսաստանի եւ Ազրպէյճանի հետ բանակցիլ Լաչինի Միջանցքի ապաշրջափակումին շուրջ, մտածելով որ այդ հարցը կրնայ օգտագործուիլ Հայաստանի դէմ՝ ճիշդ այդ անխափան կապը ապահովելու համար Ազրպէյճանին։ Այստեղ սակայն պէտք է շեշտել որ անշուշտ ձեւական առումով Լաւրովի յայտարարութիւնը կը համապատասխանէ իրականութեան։ Այսինքն, Նոյեմբեր 9-ի Յայտարարութեան մէջ նշուած է Ռուսաստանի Ապահովութեան Դաշնային Ծառայութեան (ՖՍԲ) ներկայութիւնը։ Գիտենք որ հայկական կողմը յետոյ ուրիշ ձեւով սկսաւ մեկնաբանել այս կէտը, որ բնական էր, քանի որ այս կէտը Նոյեմբեր 9-ի Յայտարարութեան մէջ մտած էր ուժի կիրառումի սպառնալիքի տակ, այսինքն՝ Հայաստանին վրայ պարտադրուած փաստաթուղթ էր եւ պարտադրուած կէտ։ Այդ ժամանակ Հայաստանը ստորագրեց որովհետեւ չունէր ուրիշ ելք։ Երբ արդէն իրավիճակը քիչ մը կայուն ու հանդարտ տեսք ստացաւ, հայկական կողմը, յանձին Հայաստանի իշխանութիւններուն, սկսաւ այլ ձեւով մեկնաբանել այս կէտը, այսինքն սկսաւ նշել՝ որ խօսքը հայկական վերահսկողութեան մասին է, իսկ ռուսական կողմը պէտք է պարզապէս օգնէ հայկական կողմին ապահովել այդ ճանապարհին ապահովութիւնը։ Հայաստան յղում կ'ընէր նաեւ ռուսաստանեան տարբեր կառոյցներու որոշումներուն, անոնց օգտագործած բառապաշարին։ Բայց այս բոլոր հարցերը արդէն այժմէական չեն։

**Ժ. Ա. – Նոյեմբեր 9-ի Յայտարարութեան յղում ըրիր, բայց այդ փաստաթուղթին մէջ եղած կէտերէն շատերը արդէն չեն պահպանուած։**

Տ. Գ. – Ոչ թէ շատերը, այլ այդ փաստաթուղթը չկայ։ Այդ փաստաթուղթը մեծ մասամբ Լեռնային Ղարաբաղի մէջ ստեղծուած իրավիճակի մասին էր, թէ պէտք է ապահովուի հայ բնակչութեան ապահովութիւնը, պէտք է Լաչինի Միջանցք ըլլայ, շփումի գիծ կայ, Լեռնային Ղարաբաղ կայ։ Հիմա այդ բոլորը չկայ եւ բաւական տարօրինակ է որ Մոսկուա կը շարունակէ պնդել փաստաթուղթի կէտերէն մէկուն կատարումը։ Այսինքն բոլոր միւս կէտերը չկատարուեցան եւ փաստացիօրէն փաստաթուղթը չկայ։

**Ժ. Ա. – Թերեւս իշխանութիւնները այս անկիւնէն ե՞ւս պէտք է բարձրացնեն հարցը։**

Տ. Գ. – Անշուշտ։ Բայց այստեղ խնդիրը այն է՝ որ Հայաստանի իշխանութիւնները այնքան զգուշաւոր քաղաքականութիւն կը վարեն այս հարցերուն շուրջ, որ այդքան քաղաքական կամք չունին շիտակ յայտարարելու Նոյեմբեր 9-ի փաստաթուղթի չգոյութիւնը եւ փորձելու ջնջել իրենց ստորագրութիւնը։ Հիմա անշուշտ կը նշեն որ միւս կէտերը չեն կատարուած, բայց ուղիղ կերպով չեն յայտարարեր նմանատիպ փաստաթուղթի չգոյութիւնը։ Իսկ փաստաթուղթը չկայ, եւ պէտք է խօսիլ ասոր մասին։ Եթէ կը շարժինք այն մտայնութեամբ՝ որ նմանատիպ քայլեր կրնան ապակայունացնել իրավիճակը եւ նոր սրումներ յառաջացնել, տեղի տուած կ'ըլլանք յաւերժական ճգնաժամի բանաձեւին, այսինքն՝ Ազրպէյճան կամ Ռուսաստան կամ այլ խաղացողներ կրնան անընդհատ պահանջներ դնել Հայաստանի առջեւ, իսկ Հայաստանի իշխանութիւնները ճիշդ այդ վախէն ելլելով պատրաստ կ'ըլլան կատարել բոլոր պայմանները։ Այս նիւթը ամփոփելով պէտք է նշել՝ որ այս հարցին շուրջ բոլոր քննարկումները տեղին ու արդիական չեն։ Այս քննարկումները կրնային տեղի ունենալ՝ երբ գոյութիւն ունէին Լեռնային Ղարաբաղն ու Լաչինի Միջանցքը, երբ այդ փաստաթուղթը բան մը կը ներկայացնէր։ Հիմա Նոյեմբեր 9-ի փաստաթուղթին յղում ընելը արդէն քաղաքական անպատկառութեան զազաթնակէտն է։ Բայց գիտենք որ միջազգային յարաբերութիւններուն մէջ յաճախ քաղաքական անպատկառութիւնը կանխորոշիչ կ'ըլլայ, եւ Պաքուն ու Մոսկուան անշուշտ պիտի շարունակեն ճնշում գործադրել Երեւանի վրայ որպէսզի իրենց փափաքած նախատիպով բացուի այդ հաղորդակցութիւնը, եթէ երբեւէ որեւէ բան պիտի բացուի տարածաշրջանին մէջ։

**Ժ. Ա. – Լաւրով խօսեցաւ նաեւ Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ խաղաղութեան համաձայնագիրի մասին եւ համոզմունք յայտնեց որ Ազրպէյճան պատրաստ է զայն կնքել Ռուսաստանի տարածքին վրայ, ինչպէս**

➷ 4



## ԱՄՈՒԼՍԱՐԸ՝ ԿՐԿԻՆ ՄԱԿԵՐԵՍ

Մեր ընթերցողները թերեւս յիշեն 2018-2019 թուականներու *Ճահակիր*ի թիւերը, երբ լրագիրս գրեթէ յամառօրէն կ'արձագանգէր եւ կը մեկնաբանէր Ամուլսարի հանքին խնդիրը, ներկայացնելով աքթիւիսթներուն դրական, հետեւողական եւ արդիւնաւէտ պայքարը տակաւին օգտագործումի չյանձնուած վտանգաւոր հանքին դէմ, մինչ յեղափոխութենէն ետք եկած կառավարութիւնը՝ որ Ամուլսարի խնդիրը ժառանգած էր նախորդ օլիկարքական համակարգէն, կ'ընթանար միջին ճամբով, մէկ կողմէն՝ աքթիւիսթներուն թողելով իրենց տեղերը, առանց ոստիկանական ուժ բանեցնելու, միւս կողմէն՝ փորձելով չվշտացնել հանքը սեփականացուցած Լիտիան Արմենիա անդրազգային ընկերութեան եւ պարբերաբար յայտարարութիւններ ընելով ի նպաստ անոր։

Այս նիւթին շուրջ *Ճահակիր*ի վերջին յօդուածաշարը՝ «Ամուլսարը՝ ուրանիումի եւ անդրազգային ընկերութեան միջեւ», տպագրուած Հոկտեմբեր 2019-ին, կանգ կ'առնէր ընդհանրապէս անդրազգային ընկերութիւններու վտանգին, անոնց վերպետական կարողութիւններուն վրայ, շեշտելով անոնց ունեցած ազդեցութիւնը պետութիւններու որոշումներուն վրայ։

Որմէ ետք խնդիրը կը թուէր մարած ըլլալ, գոնէ առերեւութապէս։ Եւ ահաւասիկ, 2024 Յունուար 18-ի նիստին, Հայաստանի կառավարութիւնը որոշում կայացուց ընդունիլ Լիտիան Արմենիա ընկերութեան բաժնետոմսերուն 12,5%-ը՝ որպէս սեփականութիւն։

Լիտիան Արմենիա քանի մը տարի առաջ սնանկացաւ, վերակազմաւորուեցաւ եւ սեփականութեան իրաւունքները զիջեց իր մեծ բաժնետէրերուն։

Պիտի չկրկնենք 2018-2019-ին մեր գրածն ու կրկնածը՝ Ամուլսարի հանքի լուրջ ու իրական վտանգներուն մասին։

Քանի մը օր առաջ, Հայաստանի 134 Հասարակական Կազմակերպութիւններ եւ անհատներ կը ստորագրեն կոչ-յայտարարութիւն մը՝ իբրեւ բողոք Կառավարութեան որոշումին եւ պայքար հանքի օգտագործումին դէմ (https://epress.am/-2024/01/25/lydian_armenia_dangeorus_present.html)։

Ի տարբերութիւն 2018-2019-ին, Ամուլսարի խնդիրին մէջ այս անգամ կ'աւելնայ Ազրպէյճանի գործօնը։ Ազրպէյճան արդէն մօտեցած է Ամուլսարին՝ կը գտնուի Ջերմուկի սահմաններուն վրայ, գրեթէ վերահսկելով Ջերմուկը։

Եւ չ'ուշանար Ազրպէյճանի Շրջակայ Միջավայրի Պաշտպանութեան անդամ, փոխնախագահ Ամին Մամետովի յայտարարութիւնը. «Հիանալի է Հայաստանի հասարակական կազմակերպութիւններուն եւ էքօաքթիւիսթներուն բողոքը կենսաբազմազանութեան եւ ջրային աղբիւրներու համար լուրջ վտանգ ներկայացնող Ամուլսարի հանքավայրի շահագործումին դէմ»։ Ան կ'աւելցնէ. «Դեռ անցեալ տարուայ Յունիսին, երբ Հայաստան կ'ուզէր գործարան կառուցել Նախիջեւանի սահմանին, մենք տարածեցինք բազմաթիւ յայտարարութիւններ։ Դժբախտաբար, Հայաստանի հասարակական կազմակերպութիւններուն կողմէ արձագանգ չեղաւ։ Բայց հիմա, այս արձագանգին առկայութիւնը ցոյց կու տայ, որ մեր յայտարարութիւնները դիտած են նաեւ Հայաստանի հասարակական կազմակերպութիւնները։ Մեր ներկայացուցած փաստերը ստուգելէ ետք պարզեցին՝ որ իրապէս տեղի կ'ունենան մարդու առողջութիւնը վնասող գործողութիւններ»։

Ուրեմն, Ազրպէյճանի յայտարարութենէն պէտք է հասկնալ՝ որ հայ աքթիւիսթներուն վերջին յայտարարութիւնը արձագանգն է Ազրպէյճանի պետական մակարդակով զգուշացումին։

Աւելորդ է ըսել՝ որ աքթիւիզմը, այս պարագային հայկական աքթիւիզմը, ամբողջապէս անհամատեղելի է իշխանականութեան հետ, ալ ուր մնաց ազրպէյճանական բռնատիրական համակարգին։ Աւելորդ է յիշեցնել՝ որ նոյն ինքը Ազրպէյճան որքան հողեր անդառնալիօրէն աւերած է իր իսկ սեփական տարածքներէն՝ փոխան քարիւղի եւ հանքավայրերու։

Վերջապէս, հայ աքթիւիսթներուն բացարձակապէս չի հետաքրքրեր Ազրպէյճանի պաշտօնական դիրքորոշում-

➷ 4

# ՏԻՐԱՆ ՍԷՖԷՐԵԱՆ
## (1900-1959)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

931-ին կը հրատարակէ իր առաջին հատորը՝ *Ինքնածին զօդումի գործադրութիւնը* (Pratique de la soudure autogène):

1935-ին կը ստանայ ֆիզիքական գիտութիւններու տոքթորի աստիճան, իբրեւ թէզ ներկայացնելով՝ *Étude de la formation des nitrures de fer par fusion et du système fer-azote* (տե՛ս հրատարակած գիրքերուն ցանկը ստորեւ):

Փարիզի մէջ ամուսնացած ըլլալով Հերմինէ Եսայեանի հետ, 1935 Յուլիս 15-ին կը ծնի իր միակ զաւակը՝ Քլոտ-Կարապետ-Յակոբ(10):

Ֆրանսական Ազգային Ճարտարարուեստութեան Քաջալերումի Ընկերութիւնը (Société d'encouragement pour l'industrie nationale) 1941-ին կը շնորհէ ոսկի մետալ, զօդումի գիտութեան մէջ ունեցած իր ներդրումներուն համար:

1948 Յունուարին կը գտնուի Եգիպտոս, «մասնակցելու համար կազմութեան վրայ եղող Եգիպտական մետաղագործական ընկերութեան մը թեքնիք աշխատութեանց»(11):

1952 Յունուարի վերջ, «Գահիրէի Թեմական Ժողովի փոխ-ատենապետ Պ. Կարապետ Սէֆէրեանի» որդին Տիրան Սէֆէրեան դարձեալ կը գտնուի Գահիրէ, ուր կը մնայ մինչեւ Փետրուար 9(12): Ան եկած էր տեսնելու իր հիւանդ հօրը, որ կը մահանայ Փետրուար 22-ին:

Եօթը տարի աշխատելէ ետք զանազան ընկերութիւններու հետ, 1952-ին կը միանայ Sarazin Co.-ին իբրեւ էլեքթրոն հետազօտութեան վարիչ: Այնտեղ, համագործակցելով Մարսէլ Մոնէյրոնի հետ, կը հրատարակէ ուսումնասիրութիւններ՝ ջրածինի ներգործութիւնը ազդեցութեան արժէքին վրայ, եւ էլեքթրոններու դասակարգումը՝ անցումի ջերմաստիճանի ներգործութեան առումով:

Այս բոլորէն զատ, ան եղած է խորհրդատու Սէն Նազէրի նաւաշինական կեդրոնին եւ մասնակցած Ֆրանս հսկայ անդրատլանտեան նաւուն շինութեան՝ ստանձնելով մետաղաշինական մասին պատասխանատուութիւնը: Եղած է նաեւ պողպատեայ շինութիւններու պատասխանատուն՝ Շինիոնի 100 հազար քիլօուաթնոց հիւլէական ելեկտրակայանի շինութեան մէջ: Նշանակուած է *Լարուս* հանրագիտարանի մետաղագիտութեան բաժինի խմբագիր(13):

Մասնակցած է գիտաժողովներու, վերջինը ըլլալով Չեխոսլովաքիոյ մէջ ճիշդ իր մահէն առաջ:

Կը մահանայ 59 տարեկանին սիրտի տագնապէ, Փարիզ, 1959 Սեպտեմբեր 29(14):

Իր մահուան առիթով գրած յօդուածին մէջ, *Welding Journal* զինք կը ներկայացնէ իբրեւ «Ֆրանսայի զօդող մետաղագործներու գլխաւորներէն մէկը»(15):

ՍՍՀՄ Գիտութիւններու Ակադեմիային կից Զօդումի Ազգային Յանձնախումբի նախագահ, ԳԱ թղթակից-անդամ Ն. Ն. Ռիկալին մահուան առիթով ցաւակցական նամակ կը յղէ ֆրանսական զօդող ճարտարագէտներու ընկերութեան քարտուղարին, ուր, ի միջի այլոց, կը գրէ. «Տոքթ. Տ. Սէֆէրեանի տոքթորական թէզը՝ *Երկաթի նիթրիտը եւ երկաթի ու ազոթի նոր հաւասարակշռութեան տրամագիծը* նիւթով (1935), ՍՍՀՄ-ի մէջ արժանացած է մեծ համբաւի եւ նոյն տարին թարգմանուած ռուսերէնի»(16):

Տիրան Սէֆէրեան կը ստորագրէր Տանիէլ Սէֆէրեան (Daniel Séférian), եւ այդ անունով է հռչակուած ոչ-հայկական շրջանակներու մէջ:

Հեղինակն է բազմաթիւ գիտական յօդուածներու *Revue de métallurgie*-ի, *Welding Journal*-ի մէջ եւ այլուր:

Հրատարակած գիրքերն են (բոլորը ֆրանսերէն):

1. *Pratique de la soudure autogène*, en collaboration avec M. G. Franche, Paris: Sfelt, 1931.
2. *Étude de la formation des nitrures de fer par fusion et du système fer-azote* (Thèse de Doctorat), Paris: Institut de Soudure Autogène, 1935.
3. *Étude des flammes de soudure*, Paris: Institut de Soudure Autogène, 1935.
4. *Les essais d'endurance en flexion répétée comme critère de soudabilité des tôles*, en collaboration avec MM. R. L'Hermitte et F. Canac, Paris: Groupement français pour le développement des Recherches Aéronautiques (G.R.A.), 1943-1945-1946.



Սամսոն, 1900-ականներու սկիզբ: Ձախէն աջ. Տիրանի մայրը՝ Հայկուհի Սէֆէրեան (ծնեալ Մուրատեան), մօրեղբայրը՝ Վահագն Մուրատեան, մօր կողմէ մեծհայրը՝ Կարապետ Մուրատեան, Տիրան՝ երեխայ ժամանակ: (Անձնական հաւաքածոյէս, Հ.Ա.):

5. *Les méthodes particulières d'étude des soudures*, Paris: G.R.A., 1947.
6. *Les soudures: technique, métallurgie, contrôle des soudures*, Paris: G.R.A., 1948.
7. *Pratique du soudage*, Paris: Larousse, édit., 1950.
8. *Les soudures: technique, contrôle, soudabilité des métaux* (2e édition), Paris: Dunod, 1954.
9. *Métallurgie de la soudure*, préface de P. Chevenard, Paris: Dunod, 1959.




Տիրան Սէֆէրեանի ինքնագիր մակագրութիւնը գիրքերէն մէկուն մէջ (անձնական հաւաքածոյէս, Հ.Ա.)

Գիրքերը թարգմանուած են զանազան լեզուներու, որոնցմէ կարելի է թուել.

- *High Temperature Welding Flames: Preceded by a Note on the Specific Heat of Gases at High Temperatures*, translated by F. Daniel, London: The Penton Publishing Cy Ltd., 1937 (անգլերէն):
- *Práctica de la Soldadura Autógena*, trad. de M. Company, Barcelona: Gustavo Gill S.A., 1945 (սպաներէն):
- *Trattato complete delle saldature: tecnica, metallurgia, controlli*, prima traduzione italiana a cura del Dott. Aldo Regè, Milano: Editore Ulrico Hoepli, 1951 (իտալերէն):
- *Kaynak: tekniği, metallürjisi, muayenesi*, çev. Muzaffer Sağışman, Salahaddin Anık, Sami Erten, İstanbul: İstanbul Teknik Üniversitesi, 1959 (թրքերէն):
- *The Metallurgy of Welding*, translated by E. E. Bishop, with a Preface by Pierre Chevenard, New York: John Wiley and Sons Inc., 1962 (անգլերէն):
- *Металлургия сварки*, пер. с фр. инженеры И. Н. Ворновицкий и В. Д. Тарлинский, Москва: Машгиз, 1963 (ռուսերէն):
- *Metalurgija zavarivanja*, preveo s francuskog Dipl. inž. Radmilo M. Arsenijević, Beograd: Izdavačko preduzeće Građevinska knjiga, 1969 (սերպերէն):

(Վերջ 2)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

10. «Ծնունդ», *Արեւ*, 9 Օգոստոս 1935, Ի. տարի, թիւ 5045, էջ 3:
11. Ս. Շալճեան, «Հայ կեանքը Գահիրէի մէջ», *Արարատ*, 17 Յունուար 1948, ԻԳ. տարի, թիւ 2 (1064), էջ 2:
12. «Տոքթ. Տիրան Սէֆէրեան Գահիրէի մէջ», *Արեւ*, 7 Փետրուար 1952, ԼԷ. տարի, թիւ 10.079, էջ 1:
13. Վ., «Տոքթ. Տիրան Կ. Սէֆէրեան», էջ 2:
14. Անդ, էջ 2:
15. Gerard E. Claussen, նշ. յօդ.ը, էջ 678:
16. Առաքել Պատրիկ, նշ. յօդ.ը:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԿԱՅԱՑԱՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒ ԱԴՐԲԵՋԱՆԻ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ՀԱՐՑԵՐՈՎ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ

Հայ-ադրբեջանական սահմանի՝ Իջեւան-Ղազախ հատուածում Յունուարի 31-ին կայացաւ սահմանազատման հարցերով Հայաստանի ու Ադրբեջանի յանձնաժողովների նիստը: Ի տարբերութիւն նախորդ հանդիպման, այս մէկի վերաբերեալ կողմերը որեւէ մանրամասն չեն յայտնել:

Երեւանն ու Բաքուն նոյնաբովանդակ հաղորդագրութեամբ միայն տեղեկացրել են, թէ սա երկու երկրների փոխվարչապետերի գլխաւորած յանձնաժողովների 6-րդ հանդիպումն էր:

Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեանն յայտնել էր, որ երկու երկրների փոխվարչապետերի գլխաւորած յանձնաժողովների հանդիպումից հայկական կողմը յստակութեան ակնկալիք ունի: Խորհրդարանի խօսնակն ակնարկել էր, թէ կողմերը դեռ ընդհանուր յայտարարի չեն եկել քարտէզների հարցում:

Երեւանն առաջարկում է սահմանազատումն անել խորհրդային ամենաթարմ՝ 1975 թուականի քարտէզներով, մինչդեռ Բաքուն դէմ է: Ադրբեջանի նախագահն այդ հարցին տարեսկզբին էր անդրադարձել:

«Այսինքն, նրանք ուզում են մի կողմ թողնել 1960-ականների, 50-ականների, 40-ականների քարտէզները եւ յղում անել հէնց՝ 70-ականներին, քանի որ մեր պատմական հողերն այդ ժամանակ արդէն նրանց էին տրուել: Ուստի, մենք վճռականօրէն ընդդիմացել եւ ընդդիմանում ենք դրան», - ասել է Իլհամ Ալիեւը:

Միեւնոյն ժամանակ Ալիեւը Երեւանից պահանջել էր, Ադրբեջանի նախագահի ձեւակերպումն է՝ «օկուպացուած ութ գիւղերը»: Ալիեւն ասել է, թէ ակնկալում է, որ սահմանազատման յանձնաժողովների այս ամսուայ նիստում յստակութիւն կը մտցուի նաեւ անկլաւների հարցում: Ըստ Ալիեւի՝ Յունուարին նախատեսուած հանդիպման «օրակարգում մէկ՝ Ղազախ-Թովուզ հատուածի սահմանազատման հարցն է»:

Մինչդեռ հայկական կողմը հանդիպման օրակարգի մասին այլ տեղեկութիւն էր յայտնել: Ըստ փոխվարչապետ Միեր Գրիգորեանի՝ նախնական պայմանաւորուածութեամբ, հանդիպմանը սահմանուելու են փաստաթղթերի տեսակները, նոյնականացուելու քարտէզները: Տարեվերջին՝ սահմանազատման յանձնաժողովների առաջին նիստից մէկուկէս տարի անց՝ Երեւանն ու Բաքուն հաստատեցին համատեղ աշխատանքային հանդիպումների կազմակերպման աշխատակարգը:

Հայաստանի եւ Ադրբեջանի փոխվարչապետերի գլխաւորած յանձնաժողովներից մէկն անցկացուել է Երասխի հատուածում, 3-ը՝ Տաւուշի մարզի եւ Ղազախի, մէկական էլ՝ Մոսկուայում ու Բրիւսէլում:

## ԿԽՄԿ-Ն ՇԱՐՈՒՆԱԿՈՒՄ Է ԱՋԱԿՑԵԼ ԼՂ-ՈՒՄ ՄՆԱՑԱԾ ԱՆՁԱՆՑ

«Կարմիր Խաչի Միջազգային Կոմիտէի թիմը շարունակում է Լեռնային Ղարաբաղում իր աշխատանքը». այս մասին Radar Armenia-ի հետ զրոյցում ասաց Հայաստանում ԿԽՄԿ պատուիրակութեան հաղորդակցման ղեկավար Զառա Ամատունին, պատասխանելով հարցին՝ կազմակերպութիւնը շարունակո՞ւմ է գործել Ղարաբաղում, եւ ի՞նչ նոր արձանագրումներ կան:

«Վիճակագրութիւն չենք վարում տեղի բնակչութեան առնչութեամբ, բայց շուրջ երկու տասնեակ տարբեր խոցելիութեան անձի շարունակում ենք աջակցել թէ՛ առողջական, թէ՛ ծառայութիւնների հասանելիութեան առումով», - ասաց Ամատունին:

Նշենք, որ ԿԽՄԿ ներկայացուցիչները Դեկտեմբերին տեսակցել էին 2023թ. Սեպտեմբերի 19-ից յետոյ Լեռնային Ղարաբաղում մնացած անձանց:

ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԸ ԲԱՑՈՒՄ Է ԽԱՂԱՔԱՐՏԵՐԸ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը այցելել է արդարադատութեան նախարարութիւն՝ 2023 թուականի գերատեսչական գործունէութեան հաշուետուութիւնը լսելու համար: Այցի ընթացքում սակայն առանցքայինը եղել է այն, որ Նիկոլ Փաշինեանը բացել է խաղաքարտերը եւ ըստ էութեան առաջին անգամ լսելի դարձրել նոր Սահմանադրութիւն ունենալու իշխանական ծրագիրը: «Առաջինը, որ ես կարծում եմ, որ այնուամենայնիւ, մենք ինչքան էլ այդ խնդիրը փորձենք այլ ձեւերով լուծել, Հայաստանի Հանրապետութիւնն, ի վերջոյ, պէտք է ունենայ Սահմանադրութիւն, որը կասկածի տեղիք չտուող քուէարկութեան արդիւնքներով ընդունուել է Հայաստանի Հանրապետութեան ժողովրդի կողմից:

«Սա էլ է լեգիտիմութեան հետ կապուած, իմիջիայլոց, կարեւոր շեշտադրում», յայտարարել է Նիկոլ Փաշինեանը, դարձեալ խօսելով այն մասին, որ Հայաստանի անվտանգութեան համար կարեւոր է լեգիտիմութիւնը: Բարդ է ասել, Նիկոլ Փաշինեանն ինքը պատկերացընո՞ւմ է, որ ինչքան խօսում է լեգիտիմութեամբ անվտանգութեան մոդէլի մասին, այնքան նա ըստ էութեան ստեղծում է Հայաստանի պետական կենսագործունէութեան «լեգիտիմութեան ճգնաժամ» եւ ըստ այդմ դրանով իսկ կամայ, թէ ակամայ գեներացնում Հայաստանի պետականութեան հանդէպ նորանոր արտաքին յաւակնութիւններ ու վտանգներ: Փաստացի, հրապարակաւ եւ պարբերաբար խօսելով «լեգիտիմութեան» խնդիրների մասին, Նիկոլ Փաշինեանը ըստ էութեան «ասում» է, որ ներկայիս իրավիճակում հայկական պետականութիւնն ունի «լեգիտիմ գոյութեան» հետ կապուած խնդիրներ, հետեւաբար դա էլ «նշանակում» է, որ «օբիեկտիւ» են դառնում հայկական ներկայիս պետականութեան հանդէպ եղած բոլոր արտաքին յաւակնութիւնները, անկախ այն բանից՝ դրանք հրապարակաւ դրսեւորուո՞ղ, թէ՞ լատենտ յաւակնութիւններ են:

Անկասկած է, որ 44-օրեայ պատերազմից յետոյ ստեղծուած եւ աստիճանաբար առաւել խորացած նոր իրավիճակում Հայաստանի առաջ կանգնած են լրջագոյն հարցեր, որոնք հրամայական են դարձնում պետականութիւնը նոր իրողութիւնների հանդէպ առաւել յարմարեցնելու խնդիրը: Սակայն, դա բացառապէս ներքին, «խոհանոցային» աշխատանքի հարց է, որի նպատակը պէտք է լինի Հայաստանի դիմադրունակութեան ներուժի վերականգնումը, այլ ոչ թէ Հայաստանի պետական կենսագործունէութեան «լեգիտիմութեան» հարց բարձրացնելը, ինչը անում են այդ պետականութեան հակառակորդները: Այն, որ կայ պետական արդիականացման, բոլոր ոլորտներում ռեֆորմացիայի, նորարարութեան, այդ թւում սոցիալ-հոգեբանական վերականգնման եւ այլ խորքային խնդիրներ ու անհրաժեշտութիւններ, անհերքելի է: Բայց, երբ առաջ է քաշւում «պետականութեան լեգիտիմութեան» հարց՝ ինչ փաթեթի ներքոյ էլ արուի, ապա դա կարող է լուծել ոչ թէ արդիականացման, այլ հակառակը՝ ինքնութեան ճգնաժամի խորացման, արդիականացման հարցում գործնական կարողութիւնների բացակայութեան եւ դրանց համար «ալիբիներ» ստեղծելու խնդիր:

## ԱԴՐԲԷՋԱՆԻՆ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԼԱՄԵՆՏՈՒՄ ՊԱՏԺՈՒՄ ԵՆ ՆԱԵՒ ՀԱՅԵՐԻՆ ՎՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Յունուարի 24-ին Եւրոպայի Խորհրդի Խորհրդարանական Վեհաժողովը (ԵԽԽՎ) քուէարկութեամբ դադարեցրել է Ադրբէջանի պատուիրակութեան լիազօրութիւնները: Նախաձեռնութիւնը գերմանացի, սոցիալ-դեմոկրատ Ֆրանկ Շվաբէինն էր: Վեհաժողովի կողմից ընդունուած որոշմամբ Ադրբէջանի պատուիրակութիւնն առնուազն մէկ տարով հեռացուել է ԵԽԽՎ-ից, յայտարարուել է, որ նշուած ժամանակահատուածում պատուիրակութիւնը կարող է վերադառնալ միայն իր կանոնակարգային պարտաւորութիւնները կատարելու դէպքում:

Որոշման մէջ ԵԽԽՎ-ն վկայակոչել է 2023 թուականի Յունիսին ընդունած՝ Լաչինի միջանցքով ազատ եւ անվտանգ մուտքի ապահովման մասին իր բանաձեւը: Ադրբէջանական երկարամսեայ շրջափակումը Լեռնային Ղարաբաղում յանգեցրել էր լուրջ հումանիտար ճգնաժամի, Բաքուն հերքել էր ոչ միայն հետեւանքները, այլեւ շրջափակման փաստն ինքնին: Վեհաժողովի բանաձեւը անտեսուել էր Ադրբէջանի կառավարութեան կողմից:

ԵԽԽՎ-ն իր որոշման մէջ խորը ափսոսանք է յայտնել, որ փաստահաւաք առաքելութեան շրջանակներում ԵԽԽՎ զեկուցողը զրկուել է նոյնիսկ Լաչին մեկնելու հնարաւորութիւնից: Աւելի վաղ՝ գերմանացի պատուիրակը մանրամասնել էր՝ զեկուցողներն անցած տարի առնուազն երեք անգամ փորձել են եւ չեն կարողացել այցելել արգելափակուած միջանցք:

Վեհաժողովը յիշատակել է նաեւ 2023-ի Հոկտեմբերին ընդունած՝ «Հումանիտար իրավիճակը Լեռնային Ղարաբաղում» բանաձեւը, որով դատապարտել էր Ադրբէջանի սեպտեմբերեան յարձակումը եւ արձանագրել, որ այն յանգեցրել է Լեռնային Ղարաբաղի ողջ հայ բնակչութեան փախուստին՝ յարուցելով էթնիկ զտումների կասկածներ: Հոկտեմբերին ընդունած բանաձեւում Վեհաժողովը զգուշացրել էր՝ եթէ Ադրբէջանը շարունակի չկատարել իր կանոնադրական պարտաւորութիւնները, Յունուարին ԵԽԽՎ-ն չի վաւերացնի ադրբէջանական պատուիրակութեան լիազօրութիւնները:

Խորհրդարանական Վեհաժողովը յաւելել է՝ Եւրախորհրդին միանալուց աւելի քան 20 տարի անց Ադրբէջանը չի կատարել կազմակերպութեան անդամակցութիւնից բխող հիմնական պարտաւորութիւնները, լուրջ մտահոգութիւններ կան Ադրբէջանում ազատ եւ արդար ընտրութիւններ անցկացնելու կարողութեան, իշխանութիւնների բաժանման, գործադիրի համեմատ օրէնսդիր իշխանութեան թուլութեան, դատական իշխանութեան անկախութեան եւ մարդու իրաւունքների պաշտպանութեան առնչութեամբ:

Վեհաժողովը ափսոսանք է յայտնել, որ չի հրաւիրուել հետեւելու Ադրբէջանի գալիք արտահերթ նախագահական ընտրութիւններին՝ չնայած Ադրբէջանը, որպէս մոնիթորինգի ենթակայ երկիր, ունի հրաւէրը ուղարկելու պարտաւորութիւն:

«Սա համագործակցութեան բոլոր կանոնների յստակ եւ աններելի խախտում է, ինչպէս նաեւ փորձ՝ խարխլելու Եւրոպայի Խորհուրդը», – նախաձեռնութիւնը ներկայացնելիս ասել է գերմանացի պատուիրակը:

Վեհաժողովը մտահոգութիւն է յայտնել նաեւ այն կապակցութեամբ, որ Մոնիտորինգային Կոմիտէի համազեկուցողներին թոյլ չի տրուել հանդիպել քաղաքական դրդապատճառներով մեղադրուող կամ ձերբակալուած անձանց հետ:

Խօսքը, հաւանաբար, լրտեսութեան կամ դաւաճանութեան մեղադրանքներով ձերբակալուած հարիւրաւոր հաւատաւորների եւ վերջին ամիսների ընթացքում ձերբակալուած լրագրողների մասին է: Վերջիններիս Ադրբէջանի իրաւապահ մարմինները փողերի մաքսանենգութիւն են մեղսագրում, պրոպագանդիստական մեքենան մեղադրում է Միացեալ Նահանգներից հովանաւորուելու մէջ:

**Նախայարձակ ինքնահեռացում**

Նախքան լիագումար նիստի մեկնարկելը՝ ադրբէջանական պատուիրակութիւնն Ստրասբուրգում հանդէս է եկել յայտարարութեամբ եւ յօժարակամ դադարեցրել իր համագործակցութիւնը այս կառոյցի հետ:

«Այս որոշումը կայացւում է Վեհա- ↳ 4

ԽՈՀԵՐ

## ԼՌԵԼ ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ «Խոհեր»-ուն մէջ ակնարկ կը նետէի ինքնակամ լռելու վրայ՝ իբրեւ մարդկային մտածողութեան որակ եւ ինքնակրթութեան միջոց: Լռել՝ չխօսելու իմաստով, լռել՝ իբրեւ միջոց ինքն իր մէջ:

Հիմա կրնանք աւելի գործնական եւ ուղղակի մօտեցում մը ուրուագծել, նկատի առնելով լռելը ոչ իբրեւ ինքն իր մէջ ծաւալուող ընթացք, այլ իբրեւ խօսքի հետեւանք, ինչպէս նաեւ լռելը ընդունիլ ոչ միայն չխօսելու իմաստով, այլեւ չգրելու: Այս մօտեցումը դիտաւորեալ այսպէս ձեւակերպեցի՝ որպէսզի յարմարի Սփիւռքի սովորական դարձած երկու դաշտերու:

**Մէկը՝ միջկուսակցական պայքար կոչուածն էր**, երբ կողմերը կը գործածէին իրենց մամուլին եւ բեմերուն բոլոր կարելիութիւնները, վարկաբեկելու համար միւսին (հիմա չկայ այդ պայքարը, բայց կայ քար անտարբերութիւն միւսին նկատմամբ):

Ի՞նչ կրնար պատահիլ, երբ այդ պայքարի օրերուն, կողմերէն մէկը որոշ պահու մը հաւաքական համաձայնութեամբ որոշէր չպատասխանել՝ չգրել ու չխօսիլ:

Անշուշտ ահռելի դժուար բան մըն է ընդհանուր աղմկարար թոհուբոհին մէջ յանկարծ ունենալ կողմի մը լռութիւնը: Թոհուբոհը ջրհեղեղի նման կ'աղմկէ ամէն տեղ եւ ակամայաբար կը շարժէ ամէն բան: Բայց ֆիզիքական ջրհեղեղ չէր կատարուածը: Մտաւոր ջրհեղեղ էր: Իսկ մտաւորականութիւնը ենթադրաբար կապուած է քաղաքակրթութեան, ինքնագիտակցութեան, ինքնազսպումի, ուրիշը ճանչնալու սկզբունքներուն վրայ: Կ'ըսեմ՝ ենթադրաբար, քանի որ իրականութեան մէջ այդպէս չեն եղած աշխարհի տիրող քաղաքակրթութիւնները: Անոնք իրենց շուրջ շինած են երեւակայական ու իրական պատեր, դարձած են խումբեր՝ ինքզինքնին փառաբանող եւ ուրիշները վանող ու բացառող, քաջալերած են պատերազմները՝ պարզապէս ուրիշը ջնջելու հաճոյքէն մղուած: Ճիշդ է, խումբերը արտադրած են իրենք իրենց մէջ, տուած բարձրարժէք ու բարձրարուեստ գործեր, բայց արտախումբի բացասականացումը դարձուցած ներխմբային յարմարաւէտութեան հենք: Զնջած են քաղաքակրթութեան քաղաքակիրթ կողմը:

Վերադառնամ Սփիւռքին: Ի՞նչ կ'ըլլար՝ եթէ սփիւռքեան կողմերէն մէկը որոշէր վերադառնալ քաղաքակրթութեան քաղաքակիրթ ոլորտին, որոշէր իրականացնել քաղաքակիրթ քաղաքակրթութիւն, եւ պարզապէս լռէր կամ չպատասխանէ միւսի յարձակումներուն: Այդ միւսը, որոշ ժամանակ ետք եւս պիտի լռէր՝ ստիպուած ու պարտադրուած, որմէ ետք յարձակումի վրայ հիմնուած գիրն ու խօսքը պիտի իմաստազրկուէին կամ առաւելագոյնը պիտի դառնային ծիծաղելի մենախօսութիւն, քանի որ մէկ կողմի խօսքը իր իմաստը կը ստանար միւսի պատասխանէն, աւելի ճիշդ՝ երկու կողմերուն խօսքերը օրինականութիւն կը ստանային փոխադարձ գոյութիւններէն:

Եւ եթէ մէկ կողմի քաղաքակիրթ լռութիւնը յառաջացնէր միւս կողմի ստիպողական լռութիւնը, արդեօք ընդհանուր խօսութային դաշտը պիտի չդառնա՞ր աւելի խոր, աւելի տարողունակ, աւելի կառուցողական, աւելի ներառական: Լռութիւնը պիտի չարտադրէ՞ր արդեօք խոհուն խօսք ու գիր:

Բնականաբար, այդպէս չեղաւ:

**Միւսը՝ ներկուսակցական գովասանքն է**, որ կը շարունակուի մինչեւ այսօր, երբ միաւորներէն ներս կատարուած ամէն մէկ ձեռնարկ, հրատարակուած ամէն մէկ գիրք, ամէն մէկ գործունէութիւն ու գործողութիւն կ'ունենայ գերչափազանցուած արձագանգ քննախօսականի կամ գրախօսականի տարազով: Մէկ կողմ ձգենք չափազանցութիւնը: Վտանգաւոր է՝ երբ բացայայտօրէն վատը կը «քննախօսուի» բացայայտօրէն լաւ: Հասկնալի է, միաւորներէն ներս վատը քննադատելը ահռելի դժուար նախաձեռնութիւն մըն է: Եկէ՛ք ըսենք՝ անկարելի: Դուռները փակ են: Այս պարագային, աւելի լաւ չը՞լլար լռել՝ լռել վատի նկատմամբ, եւ բաւարարուիլ լաւի արձագանգումով: Բացասական երեւոյթի գրական դրականացումը կրնայ խորացնել վատի արմատականացումն ու յարատեւութիւնը: Լռելով՝ ժամանակի ընթացքին վատը հող չ'ունենար յարատեւելու: Լռելը կրնայ պայքար մը համարուիլ ցածրորակին դէմ: Բայց եթէ քննադատութիւնը բնականաբար կը յառաջացնէ հակարձագանգ քննադատուողի մօտ, կը պարզուի որ լռութիւնն ալ նոյն արձագանգը ունի, թէեւ նուազ չափով: Միաւորներու ներսը գրեթէ պարտադրական է գերդրական արձագանգը՝ անկախ արձագանգուող սկզբնաղբիւրի արժէքէն:

Իսկ ո՞վ է որ պիտի լռէ: Մտաւորականը, գրողը, այն անձը՝ որ պատասխանատու է միաւորի մամուլին եւ պատկերային վերարտադրութեան: Բայց ասիկա նաեւ այն մտաաւորականն է, որուն ապրուստը, դրամական եկամուտը կը հայթայթէ միաւորը: Միաւորին պաշտօնեան է: Այս առումով մտաւորականները կարելի է բաժնել երեք պայմանական խումբերու.

1. Անոնք որոնք համոզուած են ամէն բանի ↳ 4

ԶԱՆԱԿԻՐ

## 3 ԱԴՐԲԵՋԱՆԻՆ ԵԻՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԼԱՄԵՆՏՈՒՄ...

ժողովում տիրող այլատեացութեան, ադրբէջանատեացութեան եւ իսլամատեացութեան անտանելի մթնոլորտի պատճառով», – յայտարարել է Ադրբէջանի պատուիրակութիւնը:

ԵԽԽՎ որոշումն ու Ադրբէջանի պատուիրակութեան՝ նախայարձակ ինքնահեռացումը տեղի են ունենում Բաքուի եւ Արեւմուտքի միջեւ յարաբերութիւնների սրման, Բաքուի եւ Մոսկուայի միջեւ աննախադէպ մերձեցման ֆոնին: Ադրբէջանը վերջին ամիսներին հրաժարւում է մասնակցել արեւմըտեան հարթակներում կազմակերպուած՝ հայ-ադրբէջանական բանակցութիւններին, հրապարակաւ քննադատում է Ֆրանսիային, սպառնում Միացեալ Նահանգներին:

**Խաւիարային դիւանագիտութիւն**

ԵԽԽՎ-ի եւ Ադրբէջանի յարաբերութիւնները նախկինում նշանաւորուել են «խաւիարային դիւանագիտութեան» շուրջ հետաքննութիւններով՝ 2012 եւ 2016 թուականներին հրապարակուած զեկոյցներում «Կայունութեան եւրոպական նախաձեռնութիւնը» փաստեր է ներկայացրել այն մասին, որ Բաքուն երկար տարիներ կաշառել է Եւրոպայի Խորհրդի խորհրդարանական վեհաժողովի 10-ից 12 անդամներին:

Հետաքննութիւնում նշուել է՝ Ադրբէջանի «խաւիարային դիւանագիտութիւնը» մեկնարկել է 2001 թուականին, երբ երկիրը դարձել է Եւրոպայի Խորհրդի անդամ, եւ իր գագաթնակէտին է հասել 2005 թուականին, երբ աւարտուել է Բաքու-Թբիլիսի-Ջէյհան նաւթատարի կառուցումը: Դրանից յետոյ Ադրբէջանը «սկսել է լողալ նաւթային եկամուտների մէջ»:

***Epress.am***

## 1 ԱՄՈՒԼՍԱՐԸ՝ ԿՐԿԻՆ ՄԱԿԵՐԵՍ

ները, բայց, միաժամանակ, պէտք չէ անտեսել՝ որ Ազրպէյճան, եթէ շահ ունենայ, կրնայ բանեցնել իր ազդեցութիւնը Հայաստանի վրայ, նոյնիսկ եթէ այդ շահը ըլլայ միայն քաղաքական, իբրեւ յաջորդական ճնշումի միջոց:

Իսկ թէ ի՛նչ պատահած է 2019-էն մինչեւ այսօր, որ Հայաստանի Կառավարութիւնը տուած է Ամուլսարի օգտագործումի արտօնութիւնը եւ նոյնիսկ դարձած բաժնետէր, տակաւին կը մնայ բոլորովին անյայտ:

Բայց մէկ կարեւոր կէտ մը՝ որուն վրայ կը հիմնուէր *Զահակիր*ի Հոկտեմբեր 2019-ի յօդուածը, հաստատապէս ունեցած է իր ազդեցութիւնը: Խօսքը վերոյիշեալ անդրազգային ընկերութիւններուն մասին է ողջ նէօլիպերալ աշխարհի մէջ՝ իբրեւ վերպետական միաւորներ, որոնց մէկ փոքր բաղկացուցիչն է Լիտիան Արմենիա: Կառավարութեան որոշումը կը նշանաւորէ անդրազգայիններուն յաղթանակը պետութեան վրայ:

Ա.

## 3 ԼՌԵԼ ՍՓԻՒՌՔԻ ՄԷՋ

դրականացումով իրենց միաւորէն ներս, քանի որ զինուորագրուած քարոզչութիւնը իրենց մօտ վերացուցած է ինքնուրոյն մտածելու կարողութիւնը: Անգիտակից ինքնագրաքննադատութեան կրողներն են անոնք:

2. Անոնք որոնք կը գիտակցին իրենց սխալը, բայց անկարող են դուրս գալ իրենց շրջանակէն, քանի որ ստանձնած պաշտօնը կը հանդիսանայ իրենց ապրուստի միակ աղբիւրը: Առ նուազն առաջինէն կը տարբերին այնքան՝ որ իրենց գովաբանութեան աստիճանը կը դարձնեն նուազ ցայտուն, նուազ բռնկուն, իրենց արձագանգներուն մէջ գործածելով հաւասարակշռուած բառապաշար: Գիտակից ինքնագրաքննադատութեան կրողներն են անոնք:

3. Երրորդ տեսակը իւրայատուկ է, քանակով շատ քիչ, եւ մեծապէս առնչուած է անհատական բարձր տաղանդի եւ ներքին կամքի հետ: Այս խումբին մասին «Խոհեր»-ը անդրադարձած է «Կուսակցական մամուլ՝ ճեղքումներ, արդարացում»-ի մէջ (*Զահակիր*, թիւ 1938-1942): Անոնք գիտէին ըլլալ ոչ-բացարձակ՝ բացարձակ միջավայրի մը մէջ: Անոնց ամբողջ ապրուստը եւս կախեալ էր միաւորէն, որմէ դուրս կրնային մնալ անօթի: Անոնք, բացի յիշեալ յօդուածիս նշուած ճեղքումներէն, գիտէին լռել վատին նկատմամբ: Եգիպտոսի մէջ, Վահան Թէքէեան, Լիպարիտ Նազարեանց եւ քանի մը ուրիշներ երբեք, երբեք չգովերգեցին վատը: Անոնք լռեցին՝ երբ արգիլուած էր լռելը: Լռեցին՝ պարտադրուած ժխորի մթնոլորտի մէջ: Լռելով՝ կրցան գտնել ճեղքուածքներ համարձակ արտայայտութիւններու համար:

Սխալ չհասկնանք: Խօսքս չքննադատելու կոչ մը չէ բնաւ: Խօսքս շերտային կարելիութիւններու մասին է ընդամէնը:

## 1 ՏԱԿԱԻԻՆ ԳՈՅՈՒԹԻՒՆ ՈՒՆԻ՞ ՆՈՅԵՄԲԵՐ 9-Ի ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

**նաեւ իրենք այդ ազդակները ղրկեցին Հայաստան բայց չունեցան արձագանգ: Ան քննադատաբար մօտեցաւ դէպի Արեւմուտք ուղղուած Հայաստանի հայեացքին: Ի՞նչ է կարծիքդ, արդեօ՞ք կայ տպաւորութիւն՝ որ ազրպէյճանական կողմը պատրաստ է երրորդ կամ այլ խաղացողի հարթակի վրայ ստորագրել այդ համաձայնագիրը, եւ ի՞նչ է կարծիքդ Հայաստանի դիրքորոշումին մասին:**

Տ. Գ. – Պէտք է կրկին արձանագրել՝ որ բանակցութիւնները այս փուլին կ'ընթանան երկկողմ ձեւաչափով, տեղի կ'ունենան տարբեր մակարդակով հանդիպումներ: Երէկ [Յունուար 23] Արտաքին Գործոց նախարարը եւս իր աւուլիսին մէջ խօսեցաւ ասոր մասին...

**Ժ. Ա. – Ի դէպ, Արարատ Միրզոյեանը նշեց՝ որ ինք դէմ չէ միջամտութեան:**

Տ. Գ. – Գիտես, ասիկա արդէն ինչ-որ արդարացում է: Այսինքն, նշումը՝ որ տարբերութիւն չկայ երկկողմ եւ բազմակողմ ձեւաչափերուն միջեւ, պարզապէս կը հանդիսանայ Հայաստանի իշխանութիւններուն նոր արդարացումը՝ թէ ինչու ընդունեցին Ազրպէյճանի այդ պայմանը: Ժամանակին իրենք շահագրգռուած էին որ բանակցութիւնները տեղի ունենան Ուաշինկթոնի հարթակին վրայ, քանի որ յոյս ունէին որ Միացեալ Նահանգները ինչ-որ յաւելեալ դերակատարութիւն կ'ունենայ: Հիմա Պաքուն գործընթացէն յաջողութեամբ դուրս մղեց արեւմըտեան դերակատարները: Ինչպէս արդէն նշեցի, ասիկա արդարացումի փորձ մըն է՝ թէ իբր բանակցութիւնները միշտ եղած էին երկկողմ, Պրիւքսէլի մէջ տեղի կ'ունենային թէ Ուաշինկթոնի: Վերադառնալով հարցումիդ, այո, կը տեսնենք որ Ազրպէյճանը կրցաւ բանակցութիւնները վերածել երկկողմ ձեւաչափի: Կայանալիք բոլոր համաձայնութիւնները տեղի պիտի ունենան այդ ձեւաչափով: Բուն ստորագրութեան ձեւական օրը կամ պահը արդէն այդքան ալ կարեւոր պիտի չըլլայ Ազրպէյճանի համար. եթէ Պաքու որոշէ փաստաթուղթը ստորագրել Մոսկուայի մէջ, այնտեղ պիտի երթան: Յատկապէս եթէ հաշուի առնենք՝ որ այս փուլին Ազրպէյճանի յարաբերութիւնները Արեւմուտքի հետ այնքան ալ լաւ վիճակի մէջ չեն գտնուիր: Տեսանք որ Ազրպէյճան հրաժարեցաւ ընդունիլ ամերիկացի բանակցող եւ միջնորդ Լուիս Պոնոյին, իր Հայաստան այցելութենէն ետք Թոյվօ Քլաար չգնաց Ազրպէյճան: Նմանատիպ խօսակցութիւններ կան այլ պաշտօնեաներու մասին՝ որոնք գտնուելով տարածաշրջանին մէջ Ազրպէյճան չէ ընդունած անոնց: Տեսանք նաեւ Պաքուի բոլոր մակարդակներով, ներառեալ Իլհամ Ալիեւի մակարդակով ընդունելութիւնը Ռուսաստանի փոխվարչապետ Օվերչուքին, որ կը զբաղի այս հարցերով՝ ապաշրջափակում, սահմանազատում, եւլն.: Յստակ է, որ այս փուլին Ազրպէյճանի յարաբերութիւնները Ռուսաստանի հետ շատ աւելի կառուցողական ու լաւ վիճակի մէջ կը գտնուին քան Արեւմուտքի, եւ այս առումով կը կարծեմ որ կարելի չէ բացառել փաստաթուղթին ստորագրութիւնը ռուսական հարթակի վրայ, բայց, ինչպէս արդէն նշեցի, ասիկա էական չէ, քանի որ բանակցութիւնները կ'ընթանան երկկողմ ձեւաչափով:

**Ժ. Ա. – Հետաքրքրական է, որ Ռուսաստանը Լաւրովի բերանով կ'ուզէ հաստատել՝ թէ ինքն է այս հակամարտութեան կարգաւորումի ամենակառուցողական դերակատարը կամ միջնորդը: Բայց տարբեր է մեր առջեւ եղած պատկերը. պատմութիւնը ուրիշ բան ցոյց տուաւ: Տեսանք Ռուսաստանի վերաբերմունքը՝ երբ կար Պաքու-Ստեփանակերտ հանդիպումի հնարաւորութիւն:**

Տ. Գ. – Այո, յատկապէս վերջին կէս տարուայ պատմութիւնը, այսինքն Արցախի մէջ տեղի ունեցած աղէտին նախորդող շրջանը, երբ տարբեր դերակատարներ փորձեր կատարեցին սկսելու գործընթացը: 2023-ին Միացեալ Նահանգները՝ որ այդ պահուն հիմնական միջնորդն էր, կը փորձէր կազմակերպել Պաքու-Ստեփանակերտ հանդիպում, որ պէտք է կայանար երրորդ երկիրի մը տարածքին վրայ: Առաջին հանդիպումը նախատեսուած էր Սոֆիայի մէջ: Համաձայնութիւն կար՝ որ կողմերը պէտք էր Սոֆիայի մէջ հանդիպում ունենային: Ի դէպ, ասիկա պաշտօնական մակարդակով հանդիպում պիտի ըլլար, այսինքն Արցախի պետական պաշտօնեաներէն բաղկացած պատուիրակութիւն մը պիտի երթար հանդիպելու ազրպէյճանական պատուիրակութեան: Ճիշդ է, հանդիպումը փակ ձեւաչափով պիտի ըլլար, այսինքն ոչ ոք պիտի իմանար անոր մասին: Բայց հանդիպումէն քանի մը օր առաջ ռուսական կողմը մամուլի մէջ արտահոսք կատարեց՝ թիրախաւորելով Արցախի Արտաքին Գործոց նախարար Սերկէյ Ղազարեանին, նշելով որ ան կ'աշխատի ազրպէյճանական եւ ամերիկեան կողմի համար: Ապա Մայա Զախարովա յղում ըրաւ այդ հրապարակումին: Այսպէս ռուսերը տապալեցին Սոֆիայի հանդիպումը: Սակայն ամերիկացիները շարունակեցին փորձել նոր հանդիպում կազմակերպել եւ հասան համաձայնութեան հանդիպումը կայացնելու Պրաթիսլաւայի մէջ: Այս անգամ Ռուսաստանը պարզապէս գնաց եւ Ազրպէյճանին առաջարկեց աւելին ինչ կ'առաջարկէին ամերիկացիները, այսինքն ընդունեց ազրպէյճանական դիրքորոշումը՝ որ հանդիպումները պէտք է տեղի ունենան Ազրպէյճանի տարածքին վրայ եւ մասնաւորապէս Եւլախի մէջ: Պէտք է նշել, որ Ազրպէյճանը շատ լաւ խաղաց այդ միջնորդներուն [Ռուսաստանի եւ Միացեալ Նահանգներու, Ա.] միջեւ եղած տարաձայնութիւններուն հետ եւ կարողացաւ ռուսական կողմէն ստանալ առաւելագոյնը, այսինքն հրաժարեցաւ երթալ Պրաթիսլաւա եւ սկսաւ պնդել Եւլախի մէջ հանդիպում կազմակերպելու վրայ: Եթէ այս ամէնը ամփոփենք, կրնանք արձանագրել որ Ռուսաստանը ի վիճակի չըլլալով որեւէ բան իրականացնել գետինի վրայ, միւս բոլոր դերակատարներուն խանգարեց գործընթաց սկսիլ: Անշուշտ պէտք է հասկնալ, որ հազիւ թէ այդ գործընթացի շնորհիւ որեւէ հայանպաստ լուծումներ ըլլային, բայց եթէ գործընթացը տեղի ունենար, թերեւս կարելի կ'ըլլար յետաձգել տեղի ունեցած աղէտը, կամ մեղմել աղէտին հետեւանքները՝ աւելի քիչ կորուստներով դուրս գալով իրավիճակէն, կամ թերեւս սառեցնել իրավիճակը որեւէ փուլի: Սառեցնել ըսելով նկատի ունիմ առ նուազն բացառել ռազմական գործողութիւնները: Բայց ռուսական կողմը ի վիճակի չըլլալով որեւէ բան կատարել գետինի վրայ, այսինքն ազդել Ազրպէյճանի վրայ, վերջաւորութեան ընդունեց Ազրպէյճանի բոլոր պահանջներն ու դիրքորոշումները եւ խանգարեց բոլոր միւս դերակատարներուն, միայն մեզի ցոյց տուած ըլլալու համար՝ թէ ինքն է այնտեղ գլխաւոր դերակատարը եւ պէտք չէ գոյութիւն ունենայ որեւէ արեւմըտեան ներգրաւուածութիւն: Այս առումով, Լաւրովի պնդումները ռուսական կողմի կառուցողականութեան եւ այլ դերակատարներու ոչ-կառուցողականութեան մասին, անշուշտ անպատկառութեան եւս դրսեւորում մըն է:

*ՍիվիլՆէթ*

Առցանց պատկերափոխուած հաղորդում

*Գրառում եւ արեւմտահայերէնի փոխադրութիւն՝ Ա.*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1959 ՀԻՆԳՇԱԲԹԻ 15 ՓԵՏՐՈՒԱՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٥٩ الخميس ١٥ فبراير ٢٠٢٤


## ԿԱԶԱ՝ ԲԱՑՕԹԵԱՑ ԲԱՆՏ

Ընդամէնը 318 քիլոմեթր կը բաժնէ Գահիրէն՝ ուր նստած կը գրեմ, Կազայի սահմանէն՝ ուր հիմա տեղի կ'ունենայ ամենէն վայրագ եւ ամենէն անտրամաբանական մարդակերտ աւերումներէն մէկը:

2023 Հոկտեմբեր 7, Համաս կը կատարէ իր գոյութենէն ի վեր ամենամեծ ծաւալի յարձակումը Իսրայէլի վրայ, սպաննելով 1139 քաղաքացիներ եւ զինուորականներ: Իսրայէլ կը պատասխանէ դաժանագոյն յարձակումով Կազայի վրայ:

Գրեթէ միակողմանի պատերազմը կը շարունակուի մինչեւ այսօր, չորս ամսուայ ընթացքին խլելով աւելի քան 29,500 մարդկային կեանքեր՝ որոնց մէջ պաղեստինցիներուն թիւը կ'անցնի 28,000-ը եւ իսրայէլցիներունը՝ 1,400-ը, կը վիրաւորուին աւելի քան 67,800 պաղեստինցիներ եւ 10,700 իսրայէլցիներ, պաղեստինցիներուն կողմէ կան աւելի քան 7,800 կորսուած անձեր: Թիւերը կ'աւելնան ամէն օր: Թիւերը բաւարար են ցոյց տալու պատերազմին (որեւէ պատերազմի) ահաւորութիւնը, եւ այս պարագային՝ հակամարտող կողմերուն ուժային անհամաչափութիւնը:

Կազայի մէջ Իսրայէլի ռմբակոծումները կը քանդեն բնակարաններ, առեւտրական շէնքեր, ջուրի եւ կոյուղիի ենթակառուցուածքներ, հիւանդանոցներ, դպրոցներ, համալսարաններ, մզկիթներ, եկեղեցիներ, խանութներ, գործարաններ, օգնութեան եւ ծառայութեան կեդրոններ, փողոցներ, հնագիտական վայրեր, գերեզմանոցներ: Վերացած է Կազայի բնակարաններու կէսէն աւելին, հիմնայատակ եղած է ընդհանուր կառուցուած շէնքերուն 30 տոկոսը:

Ասկէ զատ, Կազայի 2 միլիոն 375 հազար պաղեստինցի բնակիչներէն 1 միլիոն 900-ը դարձած է տեղահանուած նոյնինքը Կազայի փոքրիկ սահմաններէն ներս, գոյատեւելով ապրուստի նուազագոյն պայմաններու բացակայութեան պայմաններուն տակ՝ իբր հետեւանք Իսրայէլի ամբողջական շրջափակումին եւ հասցուցած անհաւատալի աւերին: Եգիպտական սահմաններուն մօտ յառաջացած են վրանաքաղաքներ՝ ընդգրկելով մօտաւորապէս 3,500 քառ. քմ., հաւասար 500 ֆութպոլի մեծ դաշտերու:

Եւ այս բոլորը կը կատարուի արդէն բացայայտօրէն, աշխարհի աչքին առջեւ, բոլորիս իրազեկութեամբ:

Քիչ մը պատմութիւն: 1948-ին Իսրայէլի պետութեան հիմքը դրուեցաւ պաղեստինցիներուն ցեղասպանութեամբ: Եւ այստեղ երեւան եկաւ քիչ կատարուող հակադարձութիւն մը: Հրեաները՝ Բ. Համաշխարհային Պատերազմին մեծապէս ցեղասպանեալ ժողովուրդ մը գերմանական ծայրայեղ ազգայնական-ֆաշական մանր վերնախաւի մը կազմակերպութեամբ, այս անգամ իրե՛նց քաղաքական-սիոնական մանր վերնախաւը կը դառնայ նոյնքան ծայրայեղ ազգայնական՝ կոտորելու համար պաղեստինցիները: Ցեղասպանութիւնները վերէն հրահրուած գործողութիւններ են, ծրագրուած կերպով ժողովուրդները ամբոխավարելէ եւ ժողովուրդները օտարացնելէ ետք:

1967-ին Իսրայէլ կը գրաւէ ամբողջ Պաղեստինը եւ մինչեւ այսօր կը մնայ այնտեղ, հակառակ ՄԱԿ-ի կեցուածքին՝ որ Իսրայէլի սահմանները կը ճանչնայ մինչեւ 1967-ի տարածքը, եւ հակառակ ՄԱԿ-ի բանաձեւերուն՝ որոնք կը հրահանգեն Իսրայէլին վերադառնալ 1967-ի սահմանները: Որո՛ւն հոգն է: Ղարաբաղի պարագային, «միջազգային» հանրութեան հոգն էր կեանքի կոչել ՄԱԿ-ի եւ ԵՄ-ի բանաձեւերը՝ որոնք Լեռնային Ղարաբաղը կ'ընդունէին իբրեւ Ազըրպէյճանի ինքնավար հանրապետութիւն: Ազըրպէյճան կազ ունէր փոխադրելիք դէպի Արեւմուտք: Ի դէպ, ՄԱԿ-ի բանաձեւած սահմաններուն մէջ գտնուող Պաղեստինն ալ կազ ունի Միջերկրականի իրեն պատկանող տարածքի խորութեան մէջ: Բայց ո՞վ իրեն թոյլ կու տայ կազ արտաբերել:

Մէկ կողմ ձգելով 1948-ին Իսրայէլի ստեղծած տէ ֆաքթօ իրականութիւնը՝ որ շուտով 1949-ին վերածուեցաւ տէ իւրէի, 1967-էն որոշ շրջան անց Իսրայէլ կը սկսի ստեղծել նոր տէ ֆաքթօ իրականութիւններ՝ որոնք հաւանաբար երկար ժամանակ մնան այդպէս, այսինքն՝ չվերածուին տէ իւրէի: Այս նոր տէ ֆաքթոները պայմանաւորուած են պաղեստինցիներու հողերուն (գրաւեալ տարածքներուն) վրայ մինչեւ այսօր ստեղծուող հրէական նոր գաղութներով, բուն բնակիչներու հողերու հետեւողական բռնագրաւումով, այն աստիճան՝ որ վերադարձը 1967-ի սահմաններուն կը դառնայ անկարելի:

Զարմանլիօրէն, այստեղ եւ այլուր իր արարքները արդարացնելու համար, հրեայ վերնախաւը կրցաւ աշխարհին պարտադրել եզրոյթ մը՝ «հակասեմականութիւն», տիրակալ ու բռնատիրական բառ մը՝ որուն ենթարկուելէ կը վախնան անթիւ գրողներ ու մտաւորականներ: Կը բաւէ քննադատել Իսրայէլի քաղաքականութիւնները պաղեստինցիներուն նկատմամբ՝ յորջորջուելու համար հակասեմական: Ամերիկան, Ռուսաստանը, Ազըրպէյճանը, Հայաստանը քննադատելու համար մարդիկ չեն դառնար հակամերիկեան, հակառուսական, եւլն., բայց Իսրայէլի վերնախաւին արարքները քննադատողները դիւրութեամբ կը դառնան հակասեմական: Հակասեմական, եւ ոչ հակահրէական: Եզրոյթին ընտրութիւնն ալ իր արժէքը ունի: Ամերիկան քննադատողին համար եզրոյթ չկայ, Իսրայէլը (եւ հրեաներուն հետ կապուած այլ երեւոյթներ) քննադատողին՝ կայ: Հրեայ սիոնական վերնախաւը կը դառնայ անձեռնմխելի:

Իսրայէլական 75-ամեայ արարքներուն միակ տուժողը պաղեստինցի ժողովուրդն է: Եւ Համաս կը ներկայանայ իբրեւ դիմադրութեան ու ազատագրութեան կրող շատերու համար: Իրապէ՞ս այդպէս է: Ի՞նչպէս յառաջ եկաւ Համասի ուժը:

Համաս ծնունդն ու հետեւանքն է 1987-ին սկսած պաղեստինեան երկարատեւ առաջին Ինթիֆատային, որ ցնցեց Իսրայէլը: Համաժողովրդական ըմբոստութիւններն ու անհնազանդութիւնները ամենամեծ վտանգներն են իշխանութիւններուն:

Համասի հիմնադիրը Մահմետական Եղբայր մըն է՝ Շէյխ Ահմատ Եասին, որուն հետեւեալ խօսքերը բաւական հասկնալի են. «Մենք չենք ատեր հրեաները, եւ անոնց դէմ չենք պայքարիր հրեայ ըլլալնուն համար: Հրեաները ազատ մարդիկ են՝ ինչպէս մենք: Մենք կը սիրենք բոլոր կրօնքները: Եթէ իմ սեփական մօրմէս ծնած եղբայրս գրաւէ տունս,

↳ 3

## ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄԻՑ ՅԵՏՈՅ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ԱՌԱՋԻՆ ԱՅՑԸ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀԸ ՀՈՒՆԳԱՐԻԱՅՈՒՄ Է

Հայաստանի նախագահ Վահագն Խաչատուրեանը պաշտօնական այցով ժամանեց Բուդապեշտ: *Արմենպրէս*ի թղթակցի հաղորդմամբ Բուդապեշտի Ֆերենց Լիստ միջազգային օդանաւակայանում նախագահ Խաչատուրեանին դիմաւորեց Հունգարիայի նախագահի աշխատակազմի ղեկավար Շանդա Տոմաշը:

Նախագահի գլխաւորած պատուիրութեան կազմում են նաեւ Առողջապահութեան նախարար Անահիտ Աւանեսեանը, Արտաքին Գործերի նախարարի տեղակալ Պարոյր Յովհաննիսեանը, Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարի տեղակալ Արթուր Մարտիրոսեանը, Ազգային Ժողովի պատգամաւոր Հռիփսիմէ Գրիգորեանը:

Պաշտօնական այցի ընթացքում նախագահ Վահագն Խաչատուրեանը հանդիպումներ կ'ունենայ Հունգարիայի նախագահ Կատալին Նովակի, Հունգարիայի վարչապետ Վիկտոր Օրբանի, Ազգային Ժողովի նախագահ Լասլօ Կէօվէրի հետ:

*Հայաստանի եւ Հունգարիայի միջեւ դիւանագիտական յարաբերութիւնները, որոնք հաստատուել էին 1992թ. Փետրուարի 26-ին, կասեցուել էին 2012թ. Օգոստոսի 31-ին Հունգարիայի կողմից ադրբէջանցի ոճրագործ Ռամիլ Սաֆարովին Ադրբէջանին արտայանձնելուց յետոյ Հայաստանի Ազգային Անվտանգութեան Խորհրդի որոշմամբ:*

*2022թ. Դեկտեմբերի 1-ին Լոձում ԵԱՀԿ նախարարական համաժողովի շրջանակներում տեղի է ունեցել Հայաստանի եւ Հունգարիայի ԱԳ նախարարներ Արարատ Միրզոյեանի եւ Պետէր Սիյարտոյի հանդիպումը, որի ընթացքում պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել վերականգնել լիարժէք դիւանագիտական յարաբերութիւնները: 2023թ. կայացել է Սիյարտոյի այցը Հայաստան:*

## 2023 ԹՈՒԱԿԱՆԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ՄԵԿՆԱԾՆԵՐԻ ԹԻՒԸ ԳԵՐԱԶԱՆՑԵԼ Է ԺԱՄԱՆԱԾՆԵՐԻ ՑՈՒՑԱՆԻՇԸ

Անցած տարուայ Յունուար-Դեկտեմբեր ամիսներին Հայաստան է մուտք գործել տարբեր երկրների 4 մլն 764 հազար 274 քաղաքացի, իսկ հակառակ ուղղութեամբ երկրի սահմանը հատել է 4 մլն 793 հազար 768 մարդ: Ժամանածներից 1 մլն 972 հազար 135-ը եւ մեկնածներից 2 մլն 8 հազար 647-ը եղել են Հայաստանի քաղաքացիներ:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ այդպիսի տուեալներ է ներկայացրել Հայաստանի վիճակագրական կոմիտէն:

Մեկնածների թիւը 29 հազար 494-ով գերազանցել է ժամանածների ցուցանիշը: Նոյն ժամանակահատուածում երկրից մեկնած Հայաստանի քաղաքացիների թիւը 36 հազար 512-ով աւելին է, քան ժամանածներինը: Նման միտում է գրանցուել նաեւ 2022 թուականին, երբ տարբերութիւնը կազմել է 27 հազար 941: 2022-ին տարբեր երկրների անձնագրերով Հայաստան է մուտք գործել 3 մլն 394 հազար 371 քաղաքացի, մեկնողների թիւը կազմել է 3 մլն 355 հազար 639 մարդ՝ համապատասխանաբար 1 մլն 479 հազար 798-ը եւ 1 մլն 507 հազար 739-ը Հայաստանի անձնագրով:

Առաւել շատ մարդ Հայաստան է ժամանել Զուարթնոց օդանաւակայանի (2 մլն 537 հազար 576), Բագրատաշէնի (1 մլն 401 հազար 232), Բաւրայի (341 հազար 247) եւ Մեղրիի (308 հազար 690) սահմանային անցակէտերով:

## ՌՈՒՍԱՍՏԱՆՆ ԱՇԽԱՏՈՒՄ Է ԸՆԴԼԱՅՆԵԼ ՀԻՒՊԱՏՈՍԱԿԱՆ ՆԵՐԿԱՅՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՒ ԱԴՐԷՋԱՆՈՒՄ

Ռուսաստանն աշխատում է ընդլայնել իր հիւպատոսական ներկայութիւնը Հայաստանում եւ Ադրբէջանում, ՏԱՍՍ-ի հետ հարցազրոյցում ասել է փոխարտգործնախարար Միխայիլ Գալուզինը, նշելով, որ նրանք բարեկամական երկրներ են:

Նրա խօսքով՝ ԱՊՀ երկրներում Ռուսաստանի դիւանագէտների աշխատանքի առանձնայատկութիւնն առաջին հերթին այն է, որ դրանք բարեկամական երկրներ են, որոնց հետ ունեն բազմադարեայ համատեղ պատմութիւն, միմեանց աւանդոյթների խորը ըմբռնում, ընդհանուր մշակոյթ եւ ռուսաց լեզու:

# ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

## (Ծննդեան 105-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

1963 Փետրուար 15 – Մարտ 1-ին Գահիրէ եւ Աղեքսանդրիա կ'այցելէր Սիլվա Կապուտիկեան, հանդիսանալով եգիպտահայ գաղութէն ներս երբեւէ ամենախանդավառ ընդունելութիւն գտած այցելու մտաւորականը կամ արուեստագէտը:

Խորհրդային ձնհալի տարիներուն սկսաւ Հայաստանի գեղարուեստական համոյթներու, արուեստագէտ եւ մտաւորական անհատներու, ինչպէս նաեւ զբօսաշրջիկային խումբերու այցելութիւնը Եգիպտոս, որոնք բոլորն ալ եգիպտահայութեան կողմէ կ'ընդունուէին տարբեր չափի խանդավառութեամբ եւ ջերմութեամբ:

1959-ին կու գար Հայաստանի Երգի եւ Պարի Անսամբլը՝ Թաթուլ Ալթունեանի ղեկավարութեամբ, 1961-ին՝ Պարի Անսամբլը ղեկավարութեամբ Էդուարդ Մանուկեանի, 1961-ին՝ Արամ Խաչատուրեան, 1962-ին՝ Գոհար Գասպարեան (եգիպտահայերուն յայտնի Գոհարիկ Խաչատուրեանը): Անոնցմէ առաջ սկսած էին այցելել զբօսաշրջիկային սահմանափակ խումբեր, որոնք կը բաղկանային յատուկ ընտրուած քաղաքական վերնախաւի ներկայացուցիչներէ, ինչպէս նաեւ արուեստագէտներէ եւ մտաւորականներէ: Օրինակ, զբօսաշրջիկային ծիրին մէջ 1962-ին Եգիպտոս կու գար երաժշտագիտուհի Ցիցիլիա Բրուտեան: Չհաշուելով Վազգէն Ա. Կաթողիկոսի պատմական այցելութիւնը 1956-ին, իբրեւ իշխանական ուղեւորութիւն:

Երգի եւ Պարի Անսամբլը կը ստեղծէր աննախադէպ խանդավառութիւն՝ իր լեզուն ընկալելի ըլլալով եգիպտահայ բոլոր խաւերուն: Արամ Խաչատուրեան հրաւիրուած էր եգիպտական պետական մակարդակով, եւ անոր ազդեցութիւնը եգիպտական երաժշտական մշակոյթի վրայ կ'ըլլար վիթխարի, աւելի քան եգիպտահայ գաղութի: Գոհար Գասպարեան Եգիպտոս կը վերադառնար շատերու մօտ արթնցնելով հին յիշողութիւններ, իսկ իր լեզուն դասական երգն էր, օփերան, փրոֆեսիոնալիզմը:

Կարելի է ըսել, որ Կապուտիկեան եգիպտահայ գաղութէն ներս ստեղծեց նոյն խանդավառութիւնը ինչ Երգի եւ Պարի Անսամբլը, բայց արդէն անհատական մակարդակով: Իր խօսքը բոլորի համար էր, առանց մասնագիտական եւ ոչ-մասնագիտական բաժանումներու, ընկալելի բոլոր խաւերուն՝ Անսամբլին նման:

Թերեւս Կապուտիկեան-եգիպտահայ ուղղակի առնչութիւնը սկսած էր քանի մը տարի առաջ՝ 1956-ին, երբ մանկավարժուհի եւ գրագիտուհի Զարուհի Ծաղկունիի հսկողութեամբ, Գահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանի 11 աշակերտներ Վազգէն Ա. Կաթողիկոսի ձեռամբ Կապուտիկեանին կը ղրկէին 12 նամակներ, զորս 1956 Նոյեմբեր 2-ին կը կարդար Երեւանի ռատիոյէն: Միաժամանակ կը կարդար իր յուզախառն նամակը՝ ուղղուած Գալուստեանի աշակերտներուն, որ շուտով պիտի հրատարակուէր *Արեւ*ի մէջ(1):

1963 Յունուար-Փետրուարին Կապուտիկեան այցելութեան գացած էր Լիբանան (Պէյրութ, Զահլէ, Թրիփոլի) եւ Սուրիա (Հալէպ, Դամասկոս): Ըստ երեւոյթին, Եգիպտոսը չկար նախնական ծրագիրին մէջ: Առիթէն օգտուելով, Գահիրէի Հայ Գեղարուեստասիրաց Միութիւնը, յանուն երեք միութիւններու՝ Կոկանեան Սրահ (Գահիրէ), Տիգրան Երկաթ (Աղեքսանդրիա) եւ Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն, զինք կը հրաւիրէ Եգիպտոս: Այս առիթով կը կազմուի կարգադիր յանձնախումբ մը, որուն միջոցով կը կազմակերպուին բոլոր ձեռնարկներն ու այցելութիւնները(2): Յանձնախումբի անդամներն էին Շաքէ Իփէքեան, Ալիս Տէփոյեան, Ալեքսանդր Սարուխան, Համբարձում Գարայեան, Վահագն Տէփոյեան, Օնիկ Ալեքսանեան, Նորայր Տէօվլէթեան եւ Էտմոն Կոտալագեան(3):

Յօդուածս կը փորձէ ուրուագծել բանաստեղծուհիին այցելութիւնը Եգիպտոս երկու դիտանկիւններէ՝ տեղեկատուական եւ գաղափարական-մեկնաբանական:

Ունի հետեւեալ բովանդակութիւնը.

Ա. ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ
1. Ժամանակագրութիւն
2. Կապուտիկեանի ձայնն ու պատկերը մեկնումէն ետք
3. Երեւանեան արձագանգներ

Բ. ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԸՆԿԱԼՈՒՄՆԵՐ
1. Մտաւոր դիմաւորում
2. Կապուտիկեանի խօսքը
3. Յուսաբերի հարցը
4. Տնային աշխատանք բանասէրներուն համար
5. Խանդավառութեան պատճառները
6. Յետգրութիւն

* * *

### Ա. ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

### 1. ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

**ՈՒՐԲԱԹ, 15 ՓԵՏՐՈՒԱՐ**

***Ժամանում Գահիրէ***

Երեկոյեան ժամը 6.25-ին, Պէյրութէն եկած United Arab Airlines օդանաւը կը հասնի Գահիրէի Ալմազա օդակայանը: Օդանաւի սանդուխին մօտ Կապուտիկեանին կը դիմաւորեն կարգադիր յանձնախումբին անդամները:

Օդանաւէն էջքը կը լուսանկարեն եւ կը պատկերանկարեն եգիպտական լրատուամիջոցները: Երեկոյեան, Գահիրէի հեռատեսիլը կը սփռէ ժամանումը:

Մտնելով պաշտօնական անձնաւորութիւններուն վերապահուած դուռնէն, կ'առաջնորդուի դէպի հիւրերու սրահը, որուն ներսն ու դուրսը հաւաքուած էր շուրջ 500 հոգիի հասնող բազմութիւն մը (հիւրը դիմաւորելու համար յանձնախումբը կազմակերպած էր օթոպիւսներու սպասարկութիւն): Եկած էին Խորհրդային Դեսպանատան ներկայացուցիչներ, եգիպտահայ կազմակերպութիւններու եւ մարմիններու ղեկավարներ, լրագրողներ:

Կապուտիկեան կ'իջեւանի Սեմիրամիս պանդոկը:

***Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն***

Երեկոյեան, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան սրահ, պաշտօնական հանդիպում Կապուտիկեանի հետ, մասնակցութեամբ Ազգային Իշխանութեան եւ կազմակերպութիւններու ներկայացուցիչներուն: Ներկայ էին հայ եկեղեցիներու ներկայացուցիչներ՝ Սամբրէ Արք. Սիրունեան (Հայ Առաքելական), Պօղոս Վրդ. Բայուճեան (Հայ Կաթողիկէ), Վեր. Վահան Թութիկեան (Հայ Աւետարանական), Թէմական եւ Քաղաքական ժողովներու ներկայացուցիչներ, *Արեւ*, *Յուսաբեր*, *Ջահակիր*, *Սաւառնակ* եւ *Արաքս* թերթերու ներկայացուցիչներ, եկեղեցիի եւ գերեզմանատան հոգաբարձութիւն, Գալուստեան Ազգային Վարժարանի տնօրէնուհի Իսկուհի Տատրըեան, Մխիթարեան Վարժարանի տնօրէն Վարդան Վրդ. Աշքարեան, Անարատ Յղութեան Հայ Քոյրեր, Հայկական Ընթերցասրահի, Հ.Բ.Ը.Միութեան, Գեղարուեստասիրացի, Համազգայինի, Կոկանեանի, Նիզր Իսթի վարչութիւններ, եւլն.:

Յայտագիրը նախատեսուած էր սկսիլ ժամը 9.30-ին, բայց հիւրը կ'ուշանայ ակամայաբար: Գեղարուեստասիրացի ատենապետ եւ այդ օրուայ հանդիսավար Վահագն Տէփոյեան, մինչեւ հիւրին ժամանումը հանդիսականներուն գոհացում տուած ըլլալու համար գործադրութեան կը կոչէ գեղարուեստական յայտագիրը.

Արամ Խաչատուրեան, Սոնաթին, դաշնակ՝ Շողիկ Տատրեան:

Սիլվա Կապուտիկեան, *Արարատեան դաշտ*, արտասանութիւն՝ Սեդա Ճիզմէճեան:

Արամ Խաչատուրեան, *Կարինէ*, մեներգ՝ Վերա Հացունի, դաշնակի նուագակցութիւն՝ Նուարդ Թիրեաքեան:

Սիլվա Կապուտիկեան, *Պաթումի նաւահանգիստը*, արտասանութիւն՝ Մանուշ Թէրզիպաշեան:

Երկու մեներգներ, մեներգ՝ Բարսեղ Գարթալճեան:

Կը ժամանէ Կապուտիկեան:

Բարի գալուստի խօսք՝ Սամբրէ Արք. Սիրունեան:

Խօսք՝ Ալեքսանդր Սարուխան:

Խօսք՝ Սիլվա Կապուտիկեան(4):

**ՇԱԲԱԹ, 16 ՓԵՏՐՈՒԱՐ**

***Ալ-Ախպար***

Առաւօտեան ժամը 9.30, այցելութիւն *Ալ-Ախպար* օրաթերթ, նախաձեռնութեամբ եւ ուղեկցութեամբ լրագիրի երգիծանկարիչ Ալեքսանդր Սարուխանի: Լրագրողուհիի հարցումներէն ետք, տեսակցութիւն *Ալ-Ախպար*ի խմբագրապետ Մուսթաֆա Ամինի հետ(5):

***Ալ-Ահրամի թղթակցութիւ***

Ժամը 11.30, *Արեւ* օրաթերթի սենեակներէն մէկուն մէջ, տեսակցութիւն *Ալ-Ահրամ* օրաթերթի թղթակցուհիին հետ, ներկայութեամբ Ալեքսանդր Սարուխանի(6):

**Ազգային Առաջնորդարան**

Կէսօրէ ետք ժամը 5, Ազգային Առաջնորդարանի դահլիճ, ընդունելութիւն ի պատիւ Կապուտիկեանի, ներկայութեամբ երեսփոխաններու եւ հրաւիրեալներու: Բացումի խօսք՝ Սամբրէ Արք. Սիրունեան, խօսք՝ Թեմական Ժողովի Բ. ատենապետ Գրիգոր Դարբինեան, Քաղաքական Ժողովի ատենապետ Օննիկ Ծալեան, Էօժէն Բաբազեան եւ Լոնտոնէն հիւրաբար ժամանած Սարգիս Քիւրքճեան: Կը գործադրուի գեղարուեստական յայտագիր, ուր մեներգներով եւ արտասանութիւններով ելոյթ կ'ունենան Մարկրիթ Յակոբեան, Գրիգոր Փարթամեան եւ Օր. Տէմիրճեան, որմէ ետք իր խօսքը կ'արտասանէ Կապուտիկեան: Ապա կ'այցելէ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի եւ Արզաթեան դարմանատուն(7):

**Կոկանեան Սրահ**

Երեկոյեան ժամը 9, Կոկանեան Սրահի պարտէզ, ժողովրդային ընդունելութիւն եւ ճաշկերոյթ ի պատիւ Կապուտիկեանի: Կը նուագէ պատահաբար նոյն ժամանակ Գահիրէ գտնուող ջութակահարուհի Անահիտ Ցիցիկեան (որ ամուսինին հետ Գահիրէի ճամբով կը մեկնէր Պաղտատ աշխատանքի համար):

Յայտագիր.

Բացումի խօսք՝ սրահի ատենապետ Համբարձում Գարայեան:

Խօսք՝ Ալեքսանդր Սարուխան:

Հայկական պար՝ Կոկանեան Սրահի աղջիկներու խումբ:

Կոմիտաս, *Կռունկ*, *Ծիրանի ծառ*, *Քելէր ցոլէր*, ջութակ՝ Անահիտ Ցիցիկեան:

Էդուարդ Բաղդասարեան, *Մելոդիա*, ջութակ՝ Անահիտ Ցիցիկեան:

Հայկական երգեր, մեներգ՝ Մկրտիչ Նալպանտեան, դաշնակի նուագակցութիւն՝ Գէորգ Փիլիկեան:

Խօսք՝ Սիլվա Կապուտիկեան(8):

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**


1. «Նամակ Սիլվա Կապուտիկեանէ», *Արեւ*, 2 Փետրուար 1957, ԽԲ. տարի, թիւ 11.595:

2. «Սիլվա Կապուտիկեանի ԱՄՀ այցելութեան առիթով», *Արեւ*, 9 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.433:

3. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 14 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.095:

4. «Սիլվա Կապուտիկեան Ուրբաթ օր Գահիրէ կը ժամանէ», *Արեւ*, 11 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.434: *Արեւ*, 12 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.435: «Սիլվա Կապուտիկեան երէկ ժամանեց «Սֆինքսի, Բուրգերու եւ Նեղոսի հեքիաթային երկիրը»», *Արեւ*, 16 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.439: «Հայրենի բանաստեղծուհին Գահիրէի մէջ», *Արաքս*, 16 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 6 (1776): «Ս. Կապուտիկեանի հանդիպումը Գահիրէի ազգ. հաստատութեանց եւ կազմակերպութեանց», *Յուսաբեր*, 16 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 269: Սիւակ Շալճեան, «Սիլվա Կապուտիկեանի Գահիրէ ժամանումը եւ զանազան ելոյթները», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777): «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 8 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.092:

5. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 14 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.095:

6. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 23 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.102:

7. «Սիլվա Կապուտիկեան հայրենական ապրումներու խրախճանք մը պարգեւեց եգիպտահայ գաղութին», *Արեւ*, 18 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.440: «Բանաստեղծուհի Ս. Կապուտիկեան


↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# ԲԱՐԻ ԳԱԼՈՒՍՏ ՓՈՂՈՑ. ԻՆՉՈ՞Ւ ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆԸ ՉԻ ՅԱՋՈՂՈՒՄ

ԼԻԱՆՆԱ ԽԱՉԱՏՐԵԱՆ

2018 թուականից ի վեր մենք փաստացի ստացանք նոր ընդդիմութիւն, որը կազմուած էր նախկին իշխանութեան ներկայացուցիչներից եւ մերձիշխանական խմբերից: Եթէ Հայաստանը լինէր «աշխատող դեմոկրատիա», սա կը լինէր բնական կեանքի մի մասը: Տարբեր կուսակցութիւնների ազատ շրջանառութիւնը քաղաքական դաշտում խօսում է այն մասին, որ համակարգն առողջ է:

Բայց հետաքրքիր է, որ մեր երկրում, չնայած խորագոյն ճգնաժամերին՝ քովիդ, պատերազմ, բռնի տեղահանութիւն, ընդդիմութիւնը կարծես տեղում դոփում է ու դոփում: Ոչինչ, բացի վիրաւորական հարայ-հրոցից, ճիշտ ինչպէս նախկին ընդդիմութեան դէպքում: Ի՞նչն է պատճառը: Մի՞թէ այդ կախարդական «հայու գենն» է, որ չի թողնում մեր հասարակութեանն առաջ գնալ: Իհարկէ ոչ: Հաւանաբար այստեղ կան օբիեկտիւ եւ սուբիեկտիւ պատճառներ, որոնց ընդհանուր ուրուագծերն այժմ դիտարկենք:

**Փոս փորողը...**

Ամենաակնառու օբիեկտիւ պատճառը թերեւս Սահմանադրութիւնն է: Նախկին իշխանութիւնները իրենք իրենց երկարակեցութեան համար անհրաժեշտ օրէնքները գրեցին, բայց հաշուի չառան, որ այս կոստիւմը միայն իրենց չէ, որ գեղեցկացնում է: Այն յարմար է ցանկացած իշխանութեան համար: Արդիւնքում՝ մենք ունենք ԱԺ-ում դեկորատիւ ընդդիմութիւն, որը չի կարող ազդել որոշումների ընդունման վրայ: Ազդեցութեան միակ միջոցը փողոցն է դառնում:

**Ես լիովին դարձայ դու...**

Փողոցը ծանր հարթակ է: Այն պահանջում է հետեւողականութիւն, ճարտար խօսք, յուզականութեան որոշակի մակարդակ եւ դա կառավարելու ունակութիւն ու ամենակարեւորը՝ խարիզմա: Կուսակցութեան ղեկավարները կարող են փոխանցել իրենց պաշտօնը հետեւորդներին, իսկ, ա՛յ, խարիզման չես կտակի:

Այսօր յեղափոխութեան ալիքով փողոց նետուած ընդդիմադիրների զգալի մասը իր քաղաքական կշիռը վաստակել է ոչ թէ ճարտար խօսքով, այլ կուսակցական սանդուղքով դանդաղ եւ հնազանդ առաջ բարձրանալով: Ըստ այդմ՝ նոր պայմաններին դեռ պէտք է սովորել: Իսկ մինչ այդ կրկնում են այն, ինչ տեսել են: Ատելութիւն երկրի ղեկավարի նկատմամբ եւ նրան հեռացնելու պատճառ:

Նախկին ընդդիմութեան կարգախօսների արտացոլանքը չէր էլ կարող աշխատել, քանի որ նախ՝ հասարակութիւնն այդքան ներուժ չունի կարճ ժամանակում երկու անգամ նոյն ալիքը բարձրացնելու համար, բացի այդ՝ նախկին գլխաւոր ընդդիմադիրը դիմում էր անմիջապէս ժողովրդին՝ ցոյց տալով, որ հէնց իրենց կառուցած ինստիտուտները չեն աշխատում:

Նման շռայլութիւն ընդդիմութիւնն իրեն չի կարող թոյլ տալ: Քանի որ ինստիտուտները դեռ քիչ թէ շատ մնում են իրենց կառուցածը: Ըստ այդմ՝ ընդդիմութիւնը հաւանաբար պէտք է մտածի կոնցեպցիայի, ծրագրի, տեսլականի, մի բան անելու, ոչ թէ վերացնելու մասին: Պէտք է աշխատի հասարակական կառոյցների, տեղային խնդիրները լուծելու եւ կաթիլ առ ⇘ 4

# ԿԱՅԱՑԱՒ *ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԴՐԱ ԼՈՒՍԱԲԱՆՈՒՄԸ. ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԵՌԱՆԿԱՐԸ ՓՈՓՈԽՈՒՈՂ ԱՇԽԱՐՀՈՒՄ* ՍԵՄԻՆԱՐ-ՔՆՆԱՐԿՈՒՄԸ

Փետրուարի 3-4-ը Ծաղկաձորում կայացաւ *Արտաքին քաղաքականութիւնը եւ դրա լուսաբանումը. խաղաղութեան հեռանկարը փոփոխուող աշխարհում* սեմինար-քննարկումը՝ կազմակերպուած Իրազեկ Քաղաքացիների Միաւորում ՀԿ կողմից:

Բաց մրցոյթով ընտրուած լրագրողների եւ կարծիքի առաջատարների համար բանախօսութեամբ հանդէս եկան Հայաստանի Անվտանգութեան Խորհրդի քարտուղար Արմէն Գրիգորեանը, ԱՄՆ Միջազգային Զարգացման Գործակալութեան Հայաստանի էներգետիկ անվտանգութեան ծրագրի ղեկավար Աբգար Բուդաղեանը, Հայաստանում ԵՄ պատուիրակութեան ղեկավար, ԵՄ դեսպան Ն.Գ. Վասիլիս Մարագոսը, Հայաստանի ԱԺ Հայաստան Խմբակցութեան պատգամաւոր Արթուր Խաչատրեանը, Հայաստանի ԱԺ փոխնախագահ, Հայաստան-Թուրքիա յարաբերութիւնների կարգաւորման գործընթացում Հայաստանի յատուկ ներկայացուցիչ Ռուբէն Ռուբինեանը, Հայաստանի էկոնոմիկայի նախարար Վահան Քերոբեանը:

Բանախօսները մասնակիցներին ներկայացրին վերջին ամիսներին արտաքին քաղաքական (ռազմաքաղաքական, տնտեսական, էներգետիկ եւ այլ) տիրոյթում տեղի ունեցող գործընթացները «Chatham House» ֆորմատով:

Ծրագրի շրջանակներում տեղի ունեցող հանդիպումներն իրականացւում են Ժողովրդավարութեան Ազգային Հիմնադրամի (NED) աջակցութեամբ եւ կրում են շարունակական բնոյթ:

1 ⇘

# ԿԱԶԱ՝ ԲԱՑՕԹԵԱՅ ԲԱՆՏ

պիտի պայքարիմ անոր դէմ»:

Պէտք չէ մոռնալ՝ որ Մահմետական Եղբայրները հնարքն են արեւմտեան ուժերուն՝ որոնց նախնական նպատակն էր Եղբայրներուն միջոցով իրենց իշխանութիւնը ամրացնել արաբական որոշ երկիրներու վրայ: Բայց ասիկա արդէն ուրիշ հարց է: Պարզապէս ըսել կ'ուզեմ, նոյնիսկ իր սաղմնային վիճակին մէջ, Համաս զերծ չէր կրօնք տարածելու հռետորաբանութենէն: Իսկ Եասինի վերոյիշեալ յայտարարութիւնն ալ դուրս չէ Քորանի դրոյթներէն, որ կը պարտադրէ յարգել ուրիշին կրօնքը, կրօնքի կրողը: Պուտտիզմը, հինտուիզմը, եւլն. կրօնք չեն նկատուիր այնտեղ:

Մահմետական Եղբայրներու եւ Ինթիֆատայի համաձուլուածք մը, Համաս չէր կրնար դառնալ այսօրուայ աղմկարար կազմակերպութիւնը առանց Իսրայէլի արտօնութեան:

Այս տարուայ Յունուարին, *Arte* հեռատեսիլի կայանը կը պատկերասփռէ հաղորդում մը, ուր կը խօսի Իսրայէլի Շին Պէթ Ապահովութեան Գործակալութեան նախկին տնօրէն (1996-2000) Ամի Այալոն.

«Կազայի եւ Արեւմտեան Ափի մէջ այս փոքրիկ խումբին [Համասին, Ա.], այս Մահմետական Եղբայրներուն օժանդակելու որոշումը կառավարութեան պաշտօնական ընտրութիւնը չէր, այլ գաղափարն էր Իսրայէլի Ապահովութեան Գործակալութեան՝ Շին Պէթի: Մեր նպատակն էր դիմակայել ազգայնականները՝ Պաղեստինի Ազատագրութեան Կազմակերպութիւնը (PLO) եւ Ֆաթահը, որոնք կրնային հրապուրել պաղեստինցիները: Դժբախտաբար, այսօր կը հասկնանք որ ասիկա շատ խելացի քայլ մը չէր: Այո, մենք սխալ մը գործեցինք: 1980-ականներուն դեռ ⇘ 4

ԽՈՀԵՐ

# ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

«Ամէն սրտցաւ հայ պէտք է» այսպէս ընէ, այնպէս ընէ, մտահոգուի այսինչ բանով, հեռու մնայ այնինչ բանէն, եւ այլն, եւ այլն: Հայրենասէր գրողներու սիրած հրամայագիրներէն մէկն է ասիկա, որուն միջոցով քեզի պարտադիր հայրենասէր դարձնելէ առաջ կ'ուզեն ցոյց տալ իրե՛նց հայրենասիրութիւնը:

Ո՞ւր կը կայանայ խնդիրը:

Նախ, հրամայականը: Ո՞վ իրաւունք ունի հրամայել միւսին: Ինչո՞ւ հրամայել, երբ կարելի է երկխօսիլ, իսկ եթէ հեղինակային բնագիր է՝ առաջարկել, բացատրել, մեկնաբանել:

Հրամայականը բնագիրը կը վերածէ վերջնագիրի, որմէ ետք արդէն բնագիրը սպառած կ'ըլլայ ինքն իրեն:

Յետոյ, հրամայում՝ հայրենասիրութեան անունով: Հայրենասիրութիւն՝ որ կապուած է հրամայողի պարտադիր ընտրութեան հետ: Եթէ քու ընտրութիւնդ կը գտնուի այլուր, պարզապէս հայրենասէր չես, սրտցաւ հայ չես:

Վերջերս ել-նամակով հարիւրաւորներու ղրկուեցաւ գիրք մը կարդալու հրամանը. «Ամէն սրտցաւ հայ պէտք է անպայման կարդայ այս գիրքը», քանի որ այնտեղ կը գտնուի եղեր ազգովի գոյատեւելու բանալին:

Քանթի, Մարքսի, Տարուինի մօտ չկա՞ն «գոյատեւելու» տրամասացութիւնները՝ մտածող մարդոց մակարդակով: Հասկնալով մարդկային գործօնը՝ իր պատմա-փիլիսոփայական բնաբանին մէջ, կարելի չէ՞ գոյատեւումի հիմքերուն ծանօթանալ, առանց հակամարտութիւններու:

Պէ՞տք է ազգամիջեան հակամարտութիւն տեղի ունենայ՝ որպէսզի ունենանք հայրենասիրական գոյապայքար: Վերացո՛ւր աշխարհի մէջ ազգային հակամարտութիւնները, կը վերանայ գոյապայքարը: Վերանալով գոյապայքարը, սակայն, կը վերանայ նաեւ հայրենասիրութեան յիշեալ հրամայական տեսակը: Ինչո՞վ պիտի սնուին այս տեսակ հայրենասէրները, երբ հայրենասիրութիւնը հրամայականէն վերածուի ինքնագիտակից մեկնողական համամարդկայնութեան, հիմնուած ազգերու տարբերութեան վրայ, այլ ոչ բախումի:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ԲՆԱԿԱՆ ՅԱՒԵԼԱՃԸ 2023 ԹՈՒԱԿԱՆԻՆ 23.5 ՏՈԿՈՍՈՎ ԳԵՐԱԶԱՆՑԵԼ Է ՆԱԽՈՐԴ ՏԱՐՈՒԱՅ ՑՈՒՑԱՆԻՇԸ

Հայաստանի բնակչութեան բնական յաւելաճը 2023 թուականին 23.5 տոկոսով գերազանցել է նախորդ տարուայ ցուցանիշը՝ կազմելով 11 հազար 960 մարդ:

*Արմէնպրէս*ի հաղորդմամբ՝ Հայաստանի վիճակագրական կոմիտէն, հիմնուելով Քաղաքացիական Կացութեան Ակտերի ռեգիստրի տուեալների վրայ, տեղեկացնում է, որ 2023-ին Հայաստանում ծնուել է 36 հազար 265 երեխայ (110-ով քիչ, քան 2022-ին)՝ 19 հազար 52 տղայ եւ 17 հազար 213 աղջիկ: 2022-ի համեմատ նորածին տղաների թիւը պակասել է 184-ով, մինչդեռ աղջիկներինը հակառակը՝ 74-ով աւելացել է:

2023թ. Յունուար-Դեկտեմբերին սեռերի յարաբերակցութեան գործակիցը կենդանի ծնուած նորածինների շրջանում կազմել է 110.7 տղայ՝ 100 աղջկայ հաշուով՝ 2022-ի 112.2 համեմատ:

Կրճատուել է մահացած ծնուածների թիւը՝ 420 նախորդ տարուայ 427-ի դիմաց:

2023-ին Հայաստանում մահացել է 24 հազար 305 մարդ, ինչը 2387-ով պակաս է նախորդ տարուայ ցուցանիշից: Մահացածներից 12 հազար 567-ը արական, իսկ 11 հազար 738-ը՝ իգական սեռի են: 2022-ին մահացածների թւում նոյնպէս գերակշռել են տղամարդիկ:

Անցեալ տարի բնակչութեան կենսունակութեան գործակիցը (ծնուածների եւ մահացածների յարաբերակցութիւնը) կազմել է 149.2%, իսկ 2022-ին եղել է 136.3%:

Նախանցեալ տարուայ համեմատ 2023-ին 588-ով կրճատուել է ամուսնութիւնների քանակը: Անցեալ տարի Հայաստանում ձեւաւորուել է 16 հազար 207 նոր ընտանիք: Իսկ ահա ամուսնալուծութիւնների քանակը 2022-ի համեմատ մնացել է անփոփոխ՝ 4525:

Ներկայացուած վիճակագրութիւնում ներառուած չեն 2023թ. Հոկտեմբեր-Դեկտեմբեր ամիսներին Քաղաքացիական Կացութեան Ակտերի ռեգիստրում արձանագրուած՝ Լեռնային Ղարաբաղից բռնի տեղահանուածների վերաբերեալ քաղաքացիական կացութեան գրանցումները, մասնաւորապէս, ծննդեան՝ 279 (բացի այդ՝ նաեւ 273 վերականգնուած ծննդեան գրանցումներ), մահուան՝ 514, ամուսնութեան՝ 173 եւ ամուսնալուծութեան՝ 19 դէպքերը:

# ՁԱՅՆԱԿԻՐ

## ԲԱՐԻ ԳԱԼՈՒՍՏ ՓՈՂՈՑ. ԻՆՉՈ՞Ւ ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆԸ ՉԻ ՅԱՋՈՂՈՒՄ

3

կաթիլ վստահութիւն հաւաքելու շուրջ: Բայց դեռ չի անում: Դժուար է ասել՝ չի՞ ուզում, թէ՞ չի գիտակցում:

Այստեղ իհարկէ կարելի է խօսել այն մասին, որ ամբողջ աշխարհում կուսակցական եւ գաղափարական ճգնաժամ է: Եւ դա ճիշտ է: Բայց, ի վերջոյ, ի թիւս այլ օբիեկտիւ գործօնների, մենք թերեւս ունենք ամենասուբիեկտիւ, տեղային խնդիրը: Ահա նա...

**Զոմբի ապոկալիպսիս**

Չնայած «մեռնեմ օրէնքին» թեւաւոր արտայայտութեանը՝ մեր հասարակութիւնն այդուհանդերձ փորձել է հնարաւորինս շրջանցել այն եւ խուսափել օրէնքից:

Ինչո՞ւ:

Որովհետեւ օրէնքը չի համարել նաեւ իրենն ու իր ստեղծածը: Սա սոցիալական խոր շերտաւորման եւ ձեւաւորուած անհաւասարութեան արդիւնք է, որի ծայրաստիճան վիճակը բերում է նաեւ քաղաքական-քաղաքացիական շերտաւորման: Արդիւնքում՝ դու ունենում ես մի դասակարգ, որը գտնւում է սոցիալական բուրգի վերեւում, գրում է օրէնքներ իր գործն առաջ տանելու եւ բուրգի ներքեւի մասում գտնուողներին հնարաւորինս կառավարելու համար:

Արդիւնքում՝ քաղաքական էլիտար շերտն իրեն պարտաւոր չի համարում հետեւել օրէնքին, իսկ լայն հասարակութիւնը ամէն գնով խուսանաւում է օրէնքից:

Այսքան երկար պատմեցի, որ գամ ու հասնեմ ընդդիմութեան հռետորաբանութեանը, որից իրենք կամաց-կամաց հրաժարւում են, բայց դեռ դրա հովերը նշմարւում են խօսքի մէջ: Ժէխ, զոմբի, բոմժ... հասարակ, աղքատ մարդկանց այդպէս անուանելը, ամէն անգամ լայն զանգուածներին հերթական անգամ յիշեցնում է, թէ ի՛նչ սոցիալական անջրպետի հետ են առնչւում ընդդիմութեան տարբեր առաջնորդներն ու նրանց հետեւորդները:

Այս խօսոյթը կարծես հրաւիրում է հասկացած, խելացի քաղաքացիներին «ֆայմողների» էլիտար ակումբ, ինչը դժուար շատերին գրաւի: Անգամ եթէ քաղաքացին տանել չի կարողանում ներկայ իշխանութիւններին, սեփական դիրքի եւ սխալների համար ներողութիւն չխնդրող, քաղաքացուն վերեւից ներքեւ նայող հռետորաբանութեան յետեւից դժուար գնայ:

Սրանք են, ըստ իս, մերօրեայ ընդդիմութեան ձախողումների հիմնական պատճառները՝ վատ օրէնսդրութիւն, երկար տարիներ ժողովրդից կտրուած լինելու հետեւանքով իրավիճակի ոչ ադեկուատ, իներցիոն գնահատում, համապարփակ, կառուցողական գաղափարի բացակայութիւն, փողոցի հետ աշխատելու փորձի պակաս, հռետորաբանութեան սխալներ եւ, իհարկէ, իմիջային անխնայ հարուածներ իշխանութեան կողմից:

Արդիւնքում՝ մենք ունենք քաղաքական անապատ: Որտեղ քամու պէս աղմկում են ինչ-որ ուժեր եւ միրաժի պէս շատ դժգոհների աչքին գալիս է մէկ այլ պոպուլիզմի վարպետ, գալիս է ծայրայեղացուած բառապաշարով, իւթուբեան եւ տիկտոկեան տարբեր հարթակներից ու ցասումի տեսիլքներով լցնում մեր հասարակութեան գաղափարական ամայութիւնը:

## ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ...

2

Ազգ. Առաջնորդարանին մէջ», *Յուսաբեր*, 19 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 271: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 27 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.104:

8. *Արեւ*, 15 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.438: «Սիլվա Կապուտիկեան հայրենական ապրումներու խրախճանք մը պարգեւեց եգիպտահայ գաղութին», *Արեւ*, 18 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.440: «Սիլվա Կապուտիկեանի առաջին մեծ ելոյթը», աղագրեց Վ. Թորիկեան, *Արեւ*, 21 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.443: Սիսակ Շալճեան, «Սիլվա Կապուտիկեանի Գահիրէ ժամանումը եւ զանազան ելոյթները», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777): Ս., «Տաղանդաւոր ջութակահար Տիկ. Վ. Անահիտ Յիցիկեան», *Սաւառնակ*, 9 Մարտ 1963, 49-րդ տարի, թիւ 9: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 27 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.104:

## ԿԱԶԱ՝ ԲԱՑՕԹԵԱՅ ԲԱՆՏ

3

չէինք հասկցած հետեւանքները երկարաժամկէտ հեռաւորութեան վրայ: [...]

«Նեթանիահուն եկաւ նոր յղացումով մը: Հակամարտութիւնը դադրեցնելու համար պէտք էր ապահով ըլլայինք՝ որ պաղեստինեան իշխանութիւնը մնայ բաժնուած: Ուրեմն, մեր շահուն համապատասխան էր՝ որ Համասը ղեկավարէ Կազան, մինչ պաղեստինեան իշխանութիւնը, այսինքն՝ Ֆաթահը, վերահսկէ Արեւմտեան Ափը: Այսպիսով անոնց հրամանատարութիւնը կը մնայ բաժանեալ: Իսկ առանց ներպաղեստինեան զրուցակցութեան, չկայ բանակցութիւն: Եւ այս պատճառով պէտք էր այնպէս ընել՝ որ Համասը չփլուզուի, վստահ ըլլալ որ տնտեսութիւնը գործէ՝ նոյնիսկ եթէ դանդաղի, որ մարդիկ կարողանան աշխատիլ Իսրայէլի մէջ՝ բայց ոչ շատ, պաղեստինցի ձկնորսները երթան ծով՝ բայց նոյնպէս ոչ շատ: Այսպէս վստահ կ'ըլլանք որ Համաս կը գոյատեւէ: Բայց երբ այսպէս կ'ատարէք, նոյնիսկ ակամայօրէն կ'ամրացնէք Համասի իշխանութիւնը, կ'աւելցնէք Համասի ուժը»:

Տարիներ շարունակ Քաթար ֆինանսապէս սատարեց Կազային: Քաթար Ծոցի առաջին երկիրներէն է՝ որ յարաբերութիւն հիմնած է Իսրայէլի հետ: Այալոն կը շարունակէ. «Քաթարցիները Կազա եկան դրամը ձեռքերնին, արտօնութեամբ Նեթանիահուի կառավարութեան, որուն նպատակն էր թոյլ չտալ Համասի փլուզումը»:

2018-էն սկսեալ, Էմիրան նոյնիսկ վճարեց կազացի աւելի քան 50 հազար պաշտօնեաներու ամսականները, ամսական աւելի քան 30 միլիոն տոլլար:

Մէկ կողմ ձգենք Այալոնի քարոզչականհռետորաբանական եզրակացութիւնը՝ թէ իրենք սխալէր էին Համասը օժանդակելու հաշուարկումներուն մէջ, փաստը կը մնայ այն՝ որ Իսրայէլ ուղղակիօրէն մասնակցած է Համասի վերելքին եւ գոյատեւումին: Եւ Իսրայէլի նման հզօր պետութիւն մը չէր կրնար երկարատեւ հեռանկարով սխալած ըլլալ: Ան կ'ուզէր, եւ մինչեւ հիմա կ'ուզէ Համասը: Կ'ուզէ՝ որ «միջազգային» հանրութիւնը Համասը պաշտօնապէս շարունակէ ընդունիլ իբրեւ ահաբեկչական կազմակերպութիւն, որպէսզի այդ տարածքին վրայ կատարէ ինչ որ կ'ուզէ՝ ապահովութեան պատրուակով:

Համասի իշխանականացումով, Իսրայէլ տարիներու ընթացքին յաջողեցաւ իր դէմ եղած համաժողովրդային հորիզոնական Ինթիֆատան փոխարինել «ահաբեկչական» ուղղահայեաց սահմանափակ հարուածներով՝ որոնք ոչ մէկ վնաս կրնան հասցնել պետութեան, բայց որոնց միջոցով Իսրայէլ կրնայ ինքզինքը աշխարհին ծախել իբրեւ անապահով եւ թշնամիներով շրջապատուած երկիր:

Լրատուամիջոցներուն մէջ չեն յիշուիր Իսրայէլի առօրեայ յարձակումները պաղեստինցիներուն վրայ, պաղեստինցիներ՝ որոնք ոչ սպանած են իսրայէլցիներ, ոչ ալ երբեւէ մտածած են կռուիլ անոնց դէմ: Մինչդեռ Թել-Աւիւի մէջ մէկ «ահաբեկչական» գործողութեան մը պատճառով Իսրայէլ ինքզինք աշխարհին կը յաջողի ներկայացնել իբրեւ թշնամիներով շրջապատուած վտանգուած երկիր:

Աշխարհի ամենէն ուժեղ բանակի տէրն է Իսրայէլ, ունի աշխարհի ամենէն կազմակերպուած եւ ազդեցիկ գաղտնի գործակալութիւններէն մէկը: Կարելի չէ հաւատալ՝ որ ան Համասը ամրացուց առանց հեռանկարային իրազեկութեան, իսկ այսօր, կարելի չէ հաւատալ՝ որ Հոկտեմբեր 7-ի յարձակումի ընթացքին Համասի գործածած զէնքերը Կազա մտած ըլլան առանց Իսրայէլի իրազեկութեան: Կազայի բոլոր սահմանները, ներառեալ ծովային տարածքը, կը գտնուին Իսրայէլի ամբողջական վերահսկողութեան տակ, բարձր թեքնոլոժիք սարքերու օգնութեամբ:

Լայն տեսադաշտով անհրաժեշտ է արձանագրել ու անընդհատ կրկնել՝ որ զէնք, զինարտադրութիւն, պատերազմ եւ անոնց շնորհիւ շրջանառուող հսկայական դրամ, կը հանդիսանան ժամանակակից դրամատիրական տնտեսութեան շարժիչները, տնտեսութիւն՝ որ փոխանակ ծառայելու ժողովուրդին, կը ծառայէ փոքրագոյն ընտրելախաւի մը, ընտրելախաւ մը՝ որ կ'իշխէ աշխարհի վրայ եւ տնտեսութիւնը կ'ուղղորդէ ի շահ իրեն: Այս ծիրէն ներս է որ կը գործէ Կազայի ներկայ պատերազմ-ջարդը: Այս ծիրէն ներս գործեց Ղարաբաղի հարցը եւ անոր «լուծումը»:

Իսկ այս բոլոր իրարանցումին մէջ բնաւ հաճելի չէ տեսնել հայեր՝ որոնք Կազայի այս պատերազմին առիթով դիրք բռնեն Համասի կամ Իսրայէլի կողմը, այլեւ Ղարաբաղի եւ Կազայի համեմատութիւններուն համար դիմեն անհամատեղելիին:

Խօսոյթներէն մէկն այն է՝ որ Ղարաբաղը չունեցաւ Համաս մը: Հարցում. Հոկտեմբեր 7-ի յարձակումով Համաս վնասե՞ց Իսրայէլին, թէ օգուտ բերաւ անոր: Չէ՞ որ ան առիթ տուաւ Նեթանիահուին կիրառել այն՝ ինչ որ պիտի չկրնար ընել առանց Համասի նախայարձակումին:

Կարելի՞ է արդեօք Համասի յարձակումը ընդունիլ բարոյական-գաղափարական տեսանկիւնէ միայն՝ իբրեւ քաջարի դիմադրութիւն զաւթողի դէմ, մինչ քանի մը օրուայ ընթացքին գրեթէ ամբողջ կազացի ժողովուրդ մը կը դառնար անօթեւան, անօթի, ծարաւ եւ տեղահանուած իր իսկ տարածքին վրայ: Ի՞նչ է ազատագրութեան նպատակը՝ եթէ ազատագրողը պիտի դառնայ ալ աւելի չազատագրուած: Բռնութիւնը ծնունդ կու տայ նոր բռնութեան, պատերազմը՝ նոր պատերազմի:

Այսպէս թէ այնպէս, այսօր շուրջ երկու միլիոն պաղեստինցիներ բանտարկուած են իրենց սեփական տարածութեան վրայ, անօթեւան, կաթիլ մը ջուրի կարօտ: Անոնք կը կոտորուին միջազգայինօրէն ճանաչուած իրենց տարածքին վրայ: Իսկ Արեւմտեան լրատուամիջոցները երկու բան կը ճանչնան: Առաջինը՝ Համաս, իբրեւ ահաբեկչական կազմակերպութիւն, որով արդարացուցած կ'ըլլան Իսրայէլի գործողութիւնները: Երկրորդը՝ մարդասիրական օգնութիւն, որուն միջոցով աշխարհը ցոյց տուած կ'ըլլայ իր կարեկցութիւնը եւ աջակցութիւնը պաղեստինցիներուն: Թող կոտորուին, հոգ չէ, կարեւորը մարդասիրական օգնութիւնն է: Դիտաւորեալ կերպով առաջ նետուած ապակողմնորոշիչ հասկացողութիւն մը, քողարկելու համար խնդիրին հիմքը, բուն պատճառը: Մենք հայերս որքան այս արտայայտութիւնը լսեցինք Ղարաբաղի շրջափակումին ժամանակ: Ինչ կայ աւելի գեղեցիկ երեւոյթ քան մարդու հանդէպ սէրը՝ մարդասիրութիւնը, հետեւաբար՝ մարդասիրական օգնութիւնը, մոռնալով՝ որ արտայայտութեան օգտագործումը պատերազմի բնաբանին մէջ կու գայ ճնշելու պատերազմի արհաւիրքի զգացողութիւնը, մտածողութիւնը, հասկացողութիւնը, եւ նպաստելու նոյնինքը պատերազմի շարունակութեան՝ մարդկային խիղճը եւ ուշադրութիւնը արդէն շեղած ըլլալով բուն խնդիրէն եւ ընկալումի շեղտադրութիւնը փոխադրած ըլլալով իրական ու ամենակալ պատերազմէն դէպի կողմնակի եւ սահմանափակ կարողութիւններով մարդասիրութիւն, կողմնակին դարձնելով աւելի տիրական եւ իրական քան իրականն ու ամենակալը:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1960 ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ՓԵՏՐՈՒԱՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٦٠ الخميس ٢٩ فبراير ٢٠٢٤


## «ՈՒՇԱՑԱԾ ՊԱՏԱՍԽԱՆ». ՀԱՊԿ-Ի ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՍԱՌԵՑՈՒՄ

JAMnews

«Հայաստանի մասնակցութիւնը Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեանը (ՀԱՊԿ) գործնականում, ըստ էութեան, սառեցուած է», - Փետրուար 23-ին *France 24*-ին տուած հարցազրոյցին մէջ յայտարարեց Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան:

Ի պատասխան, ՀԱՊԿ-ի քարտուղարութիւնը նշեց՝ որ անդամակցութիւնը կասեցնելու յայտ չեն ստացած Երեւանէն:

Քաղաքագէտ Գուրգէն Սիմոնեան ըսաւ՝ որ այսպէսով Փաշինեան արձագանգեց Ռուսաստանի «ապիկար քաղաքականութեան», դիտել տալով՝ որ պատասխանը ուշացած էր: Չի բացառուիր որ ասիկա պայմանաւորուած ըլլայ ձմռան աւարտով, այսինքն՝ հայկական կողմը հաշուի առած է նաեւ Ռուսաստանէն զալիք պատասխան քայլերը, մասնաւորապէս՝ կազի խափանումներու հաւանականութիւնը:

*JAMnews* հարցուց քաղաքագէտին՝ արդեօ՞ք Մոսկուան նաեւ կը դիմէ ռազմական ուժի օգտագործելով Պաքուն: Սիմոնեանի գնահատումով, Ազրպէյճանին զսպողը Արեւմուտքն է, բայց յստակ չէ՝ թէ որքան կը շարունակուի:

**ՀԱՊԿ-ը ապահովութեան ոլորտի պարտաւորութիւնները չկատարեց Հայաստանի նկատմամբ**

Հարցազրոյցին մէջ վարչապետ Փաշինեանը անդրադարձաւ նաեւ ՀԱՊԿ-ին մասնակցութիւնը սառեցնելու գործնական պատճառներուն:

«Ես գնահատում եմ, որ ՀԱՊԿ-ը չի կատարել անվտանգային ոլորտի պարտաւորութիւնները Հայաստանի նկատմամբ, մասնաւորապէս 2021 թ.-ին, 2022 թ.-ին: Եւ դա չէր կարող անցնել առանց հետեւանքների», - յայտարարեց ան:

Խօսելով Հայաստանի մէջ ռուսական ռազմակայանի մասին, ըսաւ՝ որ անոր տեղակայումը ռազմաքաղաքական դաշինքի հետ առնչութիւն չունի:

«Դա բոլորովին այլ իրաւապայմանագրային հարթութիւն է, եւ այդ հարթութեանն անդրադառնալու առիթ չենք ունեցել»:

Ասկէ առաջ, մամուլի մէջ շրջանառութեան մէջ մտած էին տեղեկութիւններ՝ որ հնարաւոր է Ջուարթնոց միջազգային օդակայանէն դուրս բերուին ռուս սահմանապահները:

«Գործընթացը տեղի է ունենալու մօտ ժամանակներում, կայ քաղաքական որոշում», - *Factor TV*-ին վստահեցուց բարձրաստիճան պաշտօնեաներէն մէկը:

**«Անդամակցութիւնը կասեցնելու յայտ չենք ստացած»**

ՀԱՊԿ քարտուղարութիւնը պատասխանեց Հայաստանի վարչապետի յայտարարութիւններուն, ըսելով թէ «անդամակցութիւնը կասեցնելու յայտ չենք ստացած»:

«Գալով մասնակցութիւնը սառեցնելու թէզին, նկատի ունենալ է այն կէտը՝ որ Հայաստանը չէ մասնակցած կազմակերպութեան վերջին շրջանի շարք մը ձեռնարկներուն», - ՌԻԱ Նովոսթիին յայտնեց ՀԱՊԿ-ի քարտուղարութիւնը:

Նիւթին անդրադարձաւ նաեւ Ռուսաստանի նախագահի խօսնակ Տմիթրի Փեսքով, նշելով՝ որ Հայաստանի հետ շփումներուն մէջ կը նախատեսէ յստակեցնել ՀԱՊԿ-ի անդամակցութեան իրավիճակը:

**Փորձագիտական կարծիք**

Ըստ քաղաքագէտ Գուրգէն Սիմոնեանին՝ Փաշինեանի յայտարարութիւնները կը կատարուին ոչ թէ Ֆրանսա կատարած իր այցելութեան, այլ վերջին տարիներու Ռուսաստանի վարած քաղաքականութեան յետնախորքին վրայ: Ան շեշտեց՝ որ Մոսկուան դրժեց Երեւանի հետ երկկողմ ռազմաքաղաքական պայմանագիրերն ու համաձայնութիւնները:

«Ոչ միայն չկանխեցին պատերազմը ԼՂ-ում, այլեւ օժանդակեցին մեր թշնամիներին: Սա միայն ուշացած պատասխանն է այն ապիկար քաղաքականութեան, որը Ռուսաստանն իրեն թոյլ տուեց Հայաստանի նկատմամբ», - *JAMnews*-ի հետ ունեցած զրոյցին ըսաւ ան:

Վերլուծաբանը մատնանշեց նաեւ ՀԱՊԿ-ի կողմէ Հայաստանի ինքնիշխան տարածքը չճանաչելու հանգամանքը: Շեշտեց՝ թէ ՀԱՊԿ-ը, ինչպէս նաեւ միւս միաձուլող կառոյցները միտուած են Ռուսաստանի մեծապետական, կայսերապաշտական նպատակներուն ծառայելու:

Քաղաքագէտի գնահատումով՝ ՀԱՊԿ-ի կանոնադրութեան մէջ սառեցում/ապասառեցումի գործիքակազմ չէ նախատեսուած:

Վարչապետի յայտարարութիւնը ընդամէնը կը նշանակէ՝ որ Հայաստանը կը կատարէ վճարումները, բայց չի մասնակցիր նիստերուն: Ցոյց ունի, որ հայկական կողմի յայտարարութիւնները կը վերածուին ճշգրիտ գործողութիւններու՝ թէ ինչպէս դուրս գալ ՀԱՊԿ-էն եւ Ջուարթնոց օդակայանէն հեռացնել ռուս սահմանապահները:

«Իրական դուրս գալը կը լինի այն, երբ Հայաստանը ծանուցում յղի ՀԱՊԿ, որ դադարեցնում է անդամակցութիւնը ռազմաքաղաքական դաշինքին, որից յետոյ արդէն մենք մեզ կը համարենք լիակատար ՀԱՊԿ-ից դուրս եկած», - ըսաւ ան:

Մինչեւ այսօր արձանագրուած միակ կամային քայլը, ըստ իրեն, եղած է Հայաստանի կողմէ Հռոմի Սթաթութի վաւերացումը: Սիմոնեանը յիշեցուց՝ որ անկէ ետք, սակայն, հայկական կողմը զևաց ԵԱՏՄ, նախագահութիւն ստանձնեց եւ «կոմպլեմենտարիզմ է խաղում»:

Կը կարծէ՝ որ Փաշինեանի յայտարարութիւնը պայմանաւորուած է նաեւ Հայաստանի ապահովութեան նոր ուղիով, որուն նպատակն է համագործակցութեան եզրեր գտնել արեւմտեան երկիրներու հետ՝ ԱՄՆ, Ֆրանսա: Հեռանկարին մէջ կան նաեւ Գերմանիա եւ Մեծ Բրիտանիա:

Անդրադառնալով Փաշինեանի յայտարարութեան նոր պատերազմի հնարաւորութեան մասին, քաղաքագէտը նկատեց՝ որ ան «ակնառու եւ շօշափելի է», ներառեալ Մոսկուայի մասնակցութիւնը: Ռուսական կողմը միտուած է պատերազմի՝ առանց պատճառի կամ առիթի սպասելու:

«Անկախ նրանից՝ մենք ինչ մօդելի վարք կը դրսեւորենք՝ պաշտպանողակա՞ն, թէ՞ ջայլամի քաղաքականութեան, միեւնոյն է՝ Ռուսաստանը զնում է դրան: Այլ խնդիր է՝ արդեօք Ալիեւը կը ցանկանայ այդ պրոքսիի դերակա-

↳ 4

## ՌՈՒՍԱՍՏԱՆ

### ՊՈՒՏԻՆԸ ԹՈՒՐՔԻԱՅԻՆ ԱՆՈՒԱՆԵԼ Է ԱՄԵՆԱՅՈՒՍԱԼԻ ԳՈՐԾԸՆԿԵՐԸ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ՈԼՈՐՏՈՒՄ

Թուրքիան գազի ոլորտում Ռուսաստանի ամենայուսալի գործընկերն է այն բանից յետոյ, երբ Գերմանիան հրաժարուեց ռուսական վառելիքից:

Այս մասին Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինը յայտարարել է լրագրող Պաւէլ Զարուբինին տուած հարցազրոյցում, վերջինիս Telegram ալիքում:

«Պարզուեց, որ թուրքերն ամենայուսալի գործընկերներն են: «Թուրքական հոսքով» գազը հոսում է Եւրոպա», - նշել է Պուտինը:

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ՓՈԽՎԱՐՉԱՊԵՏԸ ՄԱՆՐԱՄԱՍՆԵՐ ՆԵՐԿԱՅԱՑՐԵՑ ՀԱՅԱՍՏԱՆ-ԱԴՐԲԵՋԱՆ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ՀԱՐՑԵՐՈՎ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՑ

Փոխվարչապետ Մհեր Գրիգորեանը հաւանական է համարում երկու-երեք ամսուայ ընթացքում Հայաստանի եւ Ադրբէջանի սահմանազատման եւ սահմանագծման հարցերով յանձնաժողովների աշխատանքների մեթոդաբանութեան նախագծի համաձայնումը: Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէսը*, Մհեր Գրիգորեանն այս մասին ասաց Ազգային Ժողովում Կառավարութեան անդամների հետ հարց ու պատասխանի ժամանակ՝ պատասխանելով Քաղաքացիական Պայմանագիր խմբակցութեան պատգամաւորի հարցին, թէ Ադրբէջանի հետ սահմանագծման եւ սահմանազատման աշխատանքները ո՞ր փուլում են գտնւում եւ ի՞նչ ճանապարհային քարտէզ գոյութիւն ունի.

«Մենք առաջին փուլում քննարկեցինք եւ հաստատեցինք աշխատակարգը, որով նկարագրեցինք մեր շփումների արդիւնքների ամփոփման եւ կազմակերպման ձեւը, հաստատեցինք երկու կառավարութիւններով:

«Այս փուլում մենք քննարկում ենք համատեղ գործունէութեան կանոնակարգը, որը շատ աւելի շատ մեթոդական նկարագրութիւն է պարունակելու եւ երբ մենք այդ աշխատանքները աւարտին հասցնենք, երկու երկրներն էլ տուեալ փաստաթղթի նախագիծը կը դնեն ներպետական շրջանառութեան մէջ: Կախուած բովանդակութիւնից, թէ ինչ կը նկարագրուի, ինչ կոնսենսուսի կը գանք, ըստ այդմ այդ փաստաթուղթը կը շրջանառուի, ամենայն հաւանականութեամբ, որպէս օրէնսդրական նախագիծ», - ասաց Գրիգորեանը:

↳ 4

### ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՄԻՋԱՆՑՔԻ ԲԱՑՈՒՄԸ ԿԸ ՄԵԾՑՆԷ ԲԱՔՈՒ-ԹԲԻԼԻՍԻ-ԿԱՐՍ ԵՐԿԱԹՈՒՂՈՎ ԲԵՌՆԱՓՈԽԱԴՐՈՒՄՆԵՐԻ ԾԱՒԱԼԸ. ԹՈՒՐՔ ՆԱԽԱՐԱՐ

Զանգեզուրի Միջանցքի բացումը կը մեծացնի Բաքու-Թբիլիսի-Կարս երկաթուղով բեռնափոխադրումների ծաւալը, *TRT Haber*-ին ասել է Թուրքիայի տրանսպորտի եւ ենթակառուցուածքների նախարար Աբդուլքադիր Ուրալօղլուն:

Նա նաեւ նշել է, որ կայ այլընտրանք՝ ընդգծելով Զանգեզուրի Միջանցքը Իրանի տարածքով անցնելու հնարաւորութիւնը:

Ուրալօղլուն յաւելել է, որ թուրքական կողմն աւարտել է Նախիջեւանի եւ Կարսի միջեւ 224 կմ երկարութեամբ երկաթուղային գծի կառուցումը:

Դեռ այս տարեսկզբին Թուրքիայի տրանսպորտի նախարարը յայտարարել էր, որ Անկարան ակնկալում է իրականացնել Զանգեզուրի Միջանցքի ստեղծման նախագիծը մինչեւ 2029 թուականը:

Նա նշել էր, որ Զանգեզուրի Միջանցքի ադրբէջանական հատուածը, որը սկսւում է Բաքուից մինչեւ Հորադիզ, մօտենում է աւարտին: Միջանցքի թուրքական հատուածի երկարութիւնը 224 կմ է:

«Ընդհանուր առմամբ, այս միջանցքի ստեղծման ողջ

↳ 4

# ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

## (Ծննդեան 105-ամեակին առիթով)

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

**ԿԻՐԱԿԻ, 17 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Ճարտարապետներու Սենտիքայի սրահ**

Առաւօտեան ժամը 10.45, Ճարտարապետներու Սենտիքայի սրահ, գեղարուեստական հանդիսութիւն ի պատիւ Կապուտիկեանի, կազմակերպութեամբ Հայ Գեղարուեստասիրաց Միութեան:

Յայտագիր.

*Երիտասարդական քայլերգ*, մեներգ՝ Միքայէլ Գարանֆիլեան, դաշնակի նուագակցութիւն՝ Շաքէ Իփիքեան:

*Ներբող Հայաստանին*, արտասանութիւն՝ Վարսենիկ Սըլեան:

Արամ Խաչատրեան, հատուած *Գայեանէէն*, մենապար՝ փոքրիկն Նայիրի Փարթամեան, դաշնակի նուագակցութիւն՝ Մօ. Շթեռն:

Ստեփան Զրբաշեան, *Միրոյ երգ* (խօսք՝ Սիլվա Կապուտիկեան), զուգերգ՝ Մարկրիթ Յակոբեան եւ Միքայէլ Գարանֆիլեան:

Աւետիս Մեսումենց, *Գնչուի երգ*, մեներգ՝ Գրիգոր Փարթամեան:

Արամ Խաչատրեան, Սոնաթին, դաշնակ՝ Ժանէթ Շիրիկճեան:

Եդուարդ Յակոբեան, *Սիրոյ երազով* (խօսք՝ Սիլվա Կապուտիկեան), մեներգ՝ Հանրիէթ Կարապետեան, դաշնակի նուագակցութիւն՝ Շաքէ Իփիքեան:

Եդուարդ Յակոբեան, *Սիրուն Զարօս* (խօսք՝ Աւետիք Իսահակեան), մեներգուհի՝ Հանրիէթ Կարապետեան, դաշնակի նուագակցութիւն՝ Շաքէ Իփիքեան:

Սիլվա Կապուտիկեան, *Բաթումիի նաւահանգստում*, արտասանութիւն՝ Նորա Իփիքեան:

Բանախօսութիւն՝ Համբարձում Գարայեան:

Սիլվա Կապուտիկեան, *Մենք հաւատում ենք*, արտասանութիւն՝ Յակոբ Համբիկեան:

Ճառ՝ Սիլվա Կապուտիկեան, արտասանելով նաեւ իր երեք բանաստեղծութիւնները՝ *Երեւանի հին Պանթէոնում*, *Երեւանի ձայնը* եւ *Խօսք իմ որդուն*(9):

**Հ.Մ.Ը.Մ. Նուպար**

Կէսօրուայ ճաշ Հ.Մ.Ը.Մ. Նուպարի մարզադաշտին վրայ(10):

**Հելիոպոլսոյ Ազգային Գերեզմանատուն**

Այցելութիւն Հելիոպոլսոյ Ազգային Գերեզմանատուն, ուր ծաղիկներ կը զետեղէ Վահան Թէքէեանի, Միհրան Տամատեանի եւ Արշակ Ալպօյաճեանի շիրիմներուն առջեւ(11):

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 18 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Գալուստեան Ազգային Վարժարան**

Առաւօտեան ժամը 10.30, այցելութիւն Գալուստեան Ազգային Վարժարան: Կը մտնէ դասարանները: Ի պատիւ իրեն, վարժարանին պարտէզը յատուկ պատրաստուած բեմի մը առջեւ, աշակերտները կը սարքեն հանդէս մը: Կը խօսի տնօրէնուհի Իսկուհի Տատրեան, աշակերտները կը կատարեն երգեր եւ արտասանութիւններ, որոնցմէ ետք կը խօսի Կապուտիկեան: Խօսքին մէջ կը յիշէ վարժարանի ողբ. ուսուցչուհի Զարուհի Շառլոնեան, որուն միջոցով ստացած էր աշակերտներուն վերոյիշեալ նամակները:

**Գալուստեան Ազգային Մանկապարտէզ**

Ժամը 12, այցելութիւն Շուպրայի Գալուստեան Ազգային Մանկապարտէզ: Սրահին մէջ տեղի կ'ունենան երգեր, արտասանութիւններ եւ թեթեւ հիւրասիրութիւն:

**Գալուստեան Ազգային Վարժարան**

Վերադարձ Գալուստեան Վարժարան, ուր Գալուստ Աղայի արձանին քով կը տնկէ յիշատակի ծառ մը:

Ժամը 2, հիւրը կ'ըլլայ Գալուստեանի Տիկնանց Խնամակալութեան սաներու սեղանին, շրջապատուած Սրբազան Հօր, երեսփոխաններու, ուսուցչական կազմին, Ծնողաց Միութեան ներկայացուցիչներուն եւ ազգայիններու:

Ժամը 3, մեկնում դպրոցէն(12):

**Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն**

Երեկոյեան ժամը 7, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան սրահ, թէյասեղան եւ պատուասիրութիւն ի պատիւ Կապուտիկեանի, կազմակերպութեամբ սրահի տիկիններուն:

Յայտագիր.

Բացումի խօսք՝ Շաքէ Իփիքեան:

Ուղերձ՝ Ալիս Տեփոյեան:

Արամ Խաչատրեան եւ Ֆրանց Շուպերթ, դաշնակ՝ Արա Շիրիկեան:

Խօսք՝ սրահի ատենապետ Վահագն Տեփոյեան:

Վահան Թէքէեանի երկու բանաստեղծութիւններ եւ Կապուտիկեանի քառեակներ, արտասանութիւն՝ Նորա Իփիքեան:

Խօսք՝ Սիլվա Կապուտիկեան(13):

**Հայկական Ընթերցասրահ**

Երեկոյեան ժամը 9.15, Հայկական Ընթերցասրահ, ժողովրդական հանդիսութիւն ի պատիւ Կապուտիկեանի: Յատուկ ներկայացուցիչներ եկած էին Աղեքսանդրիայէն: Ներկայ էին *Ջահակիր*, *Արեւ*, *Սաւառնակ* եւ *Արաքս* թերթերու խմբագիրներ եւ թղթակիցներ, գրողներ՝ Խորէն Տէտէեան եւ Արմէն Տատուր, Գալուստեանի տնօրէնուհի՝ Իսկուհի Տատրեան, նկարիչներ՝ Սիմոն Սամսոնեան եւ Բիւզանդ Կոճամանեան, Էմփրեզարիօ՝ Լեւոն Հիւրմիւզ, Խորհրդային Դեսպանատան ներկայացուցիչներ՝ Սերգէյ Միքայէլեան, Էդմոն Շահնազարեան, Պօղոս Յակոբեան, հայրենի ջութակահարուհի՝ Անահիտ Ցիցիկեան եւ ամուսինը:

Յայտագիր.

Հայաստանի Պետական Հիմն, դաշնակ՝ Շաքէ Իփիքեան:

Բացումի խօսք՝ Սարգիս Պալաեան:

Սիլվա Կապուտիկեան, *Ներբող Հայաստանին*, արտասանութիւն՝ Օր. ՃԷՃԷեան:

Առնօ Բաբաջանեան, *Էքսպրոմտ* (Impromptu), դաշնակ՝ Զուարթ Թաշճեան:

Սիլվա Կապուտիկեան, *Մայրիկի օգնականը* եւ *Իմ տատիկին*, արտասանութիւն՝ փոքրիկն Նուպար Պահատրեան:

Խօսք՝ Սիսակ Շալճեան:

Սիլվա Կապուտիկեան, *Հող հայրենի*, արտասանութիւն՝ Գրիգոր Նիկողոսեան:

Հայկական մենապար, պարուհի՝ Մարօ Պալաեան:

Սիլվա Կապուտիկեան, *Խօսք իմ որդուն*, արտասանութիւն՝ Պէաթրիս Վոլթէռ:

Խօսք՝ Հայկ Ժամկոչեան:

Սիլվա Կապուտիկեան, *Լինել թէ չլինել*, արտասանութիւն՝ Արաքսի Օհանեան:

Գուսան Աշոտ, երկու երգեր, մեներգ՝ Գրիգոր Փարթամեան:

Արամ Խաչատրեան, կտոր մը, ջութակ՝ Անահիտ Ցիցիկեան:

Կոմիտաս, *Կռունկ* եւ *Ծիրանի ծառ*, ջութակ՝ Անահիտ Ցիցիկեան:

Խօսք՝ Խորէն Տէտէեան:

Ճառ՝ Սիլվա Կապուտիկեան(14):

(Շար. 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

9. «Սիլվա Կապուտիկեան հայրենական ապրումներու խրախճանք մը պարգեւեց եգիպտահայ գաղութին», *Արեւ*, 18 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.440: Բաբէլ, «Խորհրդածութիւններ բանաստեղծուհի Սիլվա Կապուտիկեանի ժամանման առթիւ», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777): Սիսակ Շալճեան, «Սիլվա Կապուտիկեանի Գահիրէ ժամանումը եւ զանազան ելոյթները», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777): «Սիլվա Կապուտիկեանի խօսքը եգիպտահայութեան», ստորագրեց Վ. Թ[որիկեան], *Արեւ*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.455: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 28 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.105. 29 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.106:

10. «Սիլվա Կապուտիկեան հայրենական ապրումներու խրախճանք մը պարգեւեց եգիպտահայ գաղութին», *Արեւ*, 18 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.440: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 29 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.106. 30 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.107:

11. «Սիլվա Կապուտիկեան հայրենական ապրումներու խրախճանք մը պարգեւեց եգիպտահայ գաղութին», *Արեւ*, 18 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.440: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 6 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.090:

12. «Ընդունելութիւններ ի պատիւ Սիլվա Կապուտիկեանի Գալուստեան Վարժարանին մէջ», *Արեւ*, 19 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.441: Թղթակից, «Ս. Կապուտիկեան Գալուստեանի Վրժ.ի մէջ», *Յուսաբեր*, 23 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 275: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 30 Մարտ 1965, Ծ. տարի, թիւ 14.084:

13. *Արեւ*, 18 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.440: «Ընդունելութիւններ ի պատիւ Սիլվա Կապուտիկեանի Գալուստեան Վարժարանին մէջ», *Արեւ*, 19 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.441: «Խօսք՝ Սիլվա Կապուտիկեանին», *Արեւ*, 16 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.461:

14. *Արեւ*, 16 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.439: «Ընդունելութիւններ ի պատիւ Սիլվա Կապուտիկեանի Գալուստեան Վարժարանին մէջ», *Արեւ*, 19 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.441: «Հայկական Ընթերցասրահի մեծ ընդունելութիւնը», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777): «Սիլվա Կապուտիկեանի ճառը Հայկական Ընթերցասրահին մէջ», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777): «Սիսակ Շալճեանի ճառը Գահիրէի Հայկական Ընթերցասրահին մէջ», *Արաքս*, 2 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 8 (1778): Ս., «Տաղանդաւոր ջութակահար Տիկ. Վ. Անահիտ Ցիցիկեան», *Սաւառնակ*, 9 Մարտ 1963, 49-րդ տարի, թիւ 9: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 23 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.102:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ԵՐԵՍՈՒՆՄԷԿ ՊԱՏԱՆԻ ԵՐԱԺԻՇՏ ՄԻԱՑԵԼ Է ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ ՅԱՆՈՒՆ ԱՊԱԳԱՅԻ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ ԿՐԹԱԿԱՆ ԾՐԱԳՐԻՆ

Երեւանից եւ Հայաստանի մարզերից երեսունմէկ պատանի երաժիշտ միացել է Երաժշտութիւն Յանուն Ապագայի հիմնադրամի կրթական եւ զարգացման ծրագրին:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ այս մասին յայտնում են հիմնադրամից եւ տեղեկացնում, որ աւարտուել եւ ամփոփուել են Երաժշտութիւն Յանուն Ապագայի 2023-2024 թուականների կրթական եւ զարգացման ծրագրի մրցոյթի ունկնդրումները եւ հարցազրոյցի փուլերը:

Ծրագրին դիմելու յայտ էր ներկայացրել ընդհանուր 50 դիմորդ Երեւանից, Արարատի, Արագածոտնի, Արմաւիրի, Գեղարքունիքի, Լոռու, Կոտայքի, Շիրակի եւ Տաւուշի մարզերից:

Հիմնադրամը, նպատակ ունենալով էլ աւելի մեծ թուով պատանի տաղանդաւոր երաժիշտների տալ հնարաւորութիւն կրթուելու եւ զարգանալու, այս տարի ծրագրում ընդգրկել է կրկնակի թուով պատանի երաժիշտների՝ ներառելով ծրագրում 15 կրթաթոշակառու եւ 16 մասնակից, որոնցից 5-ը՝ Հայաստանի մարզերից:

Պատանի երաժիշտները կրթական եւ զարգացման ծրագրի շրջանակում հնարաւորութիւն են ունենալու ստանալ վարպետութեան դասեր աշխարհի լաւագոյն երաժիշտների եւ պրոֆեսորների կողմից, ձեռք բերել բեմական փորձ՝ համերգային ելոյթներ ունենալով հիմնադրամի կազմակերպած համերգներին, ունենալ թանգարանային այցեր՝ բացայայտելով Հայաստանի հարուստ մշակոյթն ու պատմութիւնը, ունենալ օտար լեզուի դասեր՝ զարգացնելով իրենց ազատ հաղորդակցման հմտութիւնները, ներկայ գտնուել Հայաստանի պետական սիմֆոնիկ նուագախմբի համերգներին եւ, իհարկէ, ստանալ նիւթական աջակցութիւն:

Դիմորդների կատարումները լսելու եւ գնահատելու համար ժիւրիի միջազգային յանձնաժողովում ընդգրկուել էին հանրայայտ երաժիշտներ եւ պրոֆեսորներ՝ Լաւարդ Սկու-Լարսէն (ջութակ), Մարկ Սաբբա (ալտ), Դաւիթ Աբրահամեան (ալտ), Տիբօ Լաւրենով (թաւջութակ), Ուրսիա Մարտինէս Բոտանա (կոնտրաբաս), Ջորջէ Թուդորաքէ (թաւջութակ), Սիլվիա Կորիչելի (ֆագոտ), Պակօ Մարտինէս (ֆլեյտա), Սելին Մոինէռ (հոբոյ), Խոսէ Վիսենտէ Կաստելլօ (գալարափող), Նուրի Գուարնաշելլի (գալարափող), Երոն Ռիմսդեյկ (դաշնամուր), Ֆիլիպ Իւանով (դաշնամուր), Կատիա Վիկմանս (դաշնամուր), Էթիեն Ռապէ (դաշնամուր):

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՄՓՈՓՈՒԵՑԻՆ ԵՐԵՒԱՆԵԱՆ ԲԵՍԹՍԵԼԼԷՐ ՅԱՏՈՒԿ ՆԱԽԱԳԾԻ ՏԱՐԵԿԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

ՄԱՐՋԱՆ ՉՕԲԱՆԵԱՆ

Արդէն 11 տարի *Արմենպրէս* լրատուական գործակալութիւնն իրականացնում է Երեւանեան Բեսթսելլեր նախագիծը: Այն նպատակ ունի ամրապնդելու գրողների, ընթերցողների, հրատարակչութիւնների միջեւ կապը: Նախագիծը հնարաւորութիւն է տալիս ընթերցողներին իրազեկել ժամանակակից գրական միտումների ու ամենապահանջուած գրքերի մասին, ինչպէս նաեւ գիրք ընթերցելը դարձնում է աւելի վարակիչ:

*Արմենպրէսի* տնօրէն Նարինէ Նազարեանի խօսքով՝ տարիներ շարունակ մրցանակաբաշխութեան արդիւնքներն ամփոփուել են Փետրուարի 21-ին՝ Մայրենի Լեզուի Օրը:

**«Տարուայ ամենապահանջուած թարգմանութիւններ»** անուանակարգում մրցանակ շնորհուեց Մարիա Սաղոյեանին՝ Խալէդ Հոսէյնի գրքերի հայերէն թարգմանութիւնների՝ *Արմենպրէսի* Երեւանեան Բեսթսելլեր յատուկ նախագծում տարուայ բեսթսելլեր ճանաչուելու համար:

**«Տարուայ բեսթսելլերների թարգմանիչ»** անուանակարգում մրցանակ շնորհուեց Աստղիկ Աթաբեկեանին՝ Ալեքս Մայքլիդիսի *Լռակեաց հիւանդը* եւ Քարէն Մակմանուսի *Մեզնից մէկը ստում է* գրքերի համար:

**«Տարուայ ամենապահանջուած թարգմանութիւնների հրատարակիչ»** անուանակարգում մրցանակ ստացաւ Էդիթ Պրինտը՝ Ագաթա Քրիստիի գործերի՝ Երեւանեան Բեսթսելլեր յատուկ նախագծում տարուայ բեսթսելլեր ճանաչուելու համար:

Հրատարակչութեան հիմնադիր Մկրտիչ Կարապետեանի խօսքով՝ իրենք չեն հասցնում տպագրել հեղինակի գրքերը, որոնք բաւականին պահանջուած են: Հատորների մի մասը կան, միւսները կը լինեն աւելի ուշ:

**«Տարուայ մանկապատանեկան գրքերի հրատարակիչ»** ճանաչուեց Բուկինիստ հրատարակչութիւնը՝ այս նախագծում մանկական բազմատեսակ գրքերով ներկայացուած լինելու համար:

**«Տարուայ բեսթսելլերների հրատարակիչ»** անուանակարգում մրցանակ ստացաւ Դաւինչի հրատարակչութիւնը՝ Նոն ֆիքշն (փաստավաւերագրական) ժանրում Ջոն Ստրելէքի գրքերի տարուայ բեսթսելլեր ճանաչուելու համար:

«Մրցանակն անսպասելի է, որովհետեւ գրքերը հրատարակելիս մենք չենք մտածում, որ այն բեսթսելլեր դառնայ, այլ ուզում ենք, որ այն նախ դուր գայ մեր թիմին: Ստացւում է՝ գնորդին եւս դուր է գալիս, մենք գտել ենք նշաձողը, որը կարող է գնորդին բաւարարել, ուրեմն դեռ լիքը գործ ունենք անելու», - ասաց հրատարակչութեան տնօրէն Հայկ Աջապահեանը:

**«Տարուայ հայ հեղինակ»** անուանակարգում յաղթող ճանաչուեց Աշոտ Աղաբաբեանը՝ մի քանի գրքով տարուայ բեսթսելլեր ճանաչուելու համար:

**«Տարուայ բեսթսելլեր»** մրցանակը ստացաւ Ռուբէն Եսայեանը: Նրա՝ *Թունելից 13 կմ հեռաւորութեան վրայ* գիրքը 2023 թուականին վաճառքի ամենաբարձր ցուցանիշն է արձանագրել այս նախագծում:

«Սա ինձ համար շատ կարեւոր պահ է, որովհետեւ որպէս գրող առաջին անգամ եմ մրցանակ ստանում: Այն շատ մոտիւացնող ու պարտաւորեցնող է», - նշեց հեղինակը:

**«Յատուկ մրցանակներ»**-ի արժանացան Նիւմէգ (գրքի փառատօնների հիմնադրման՝ BookFest) եւ Զանգակ («Ամառային ընթերցանութիւն. հանդիպում գրքի շուրջ») հրատարակչութիւնները՝ գրքի նկատմամբ սիրոյ ամրապնդման, գրական արժէքների տարածման գործում ունեցած աւանդի համար:

Լեւոն Անանեանի անուան երիտասարդական մրցանակը շնորհուեց Անտարէս հրատարակչութեանը՝ երիտասարդ գրողների գրքերի լոյս ընծայման եւ հանրահռչակման գործում ունեցած ջանքերի համար:

«Այսօր տեսնում ենք, որ թէ՛ մեր մշտական մրցանակակիրների յարաբերակցութիւնն է փոխուել, թէ՛ նոր անուններ, հրատարակիչներ ու գրողներ կան: Ուրեմն՝ ամէն ինչ ճիշտ ենք արել», - իր խօսքում նշեց Լեւոն Անանեանի որդին, գործակալութեան նախկին տնօրէն, նախագծի հիմնադիր Արամ Անանեանը:

«Երեւանեան բեսթսելլեր» եւ «Նոր գիրք» յատուկ նախագծերի իրականացման գործում ներդրած ջանքերի համար շնորհակալագիր շնորհուեց Ռոզա Գրիգորեանին:

Միջոցառմանն ամփոփուեց նաեւ *Armenpress* լրատուական գործակալութեան եւ գործընկեր հրատարակչութիւնների համատեղ անցկացրած *Գրքապտոյտ* մրցոյթը (Այն մեկնարկել էր ֆէյսբուքեան տիրոյթում, մասնակիցները նկարի օգնութեամբ պէտք է գուշակէին գրքի անուանումը): Յաղթողները ձեռք բերեցին սպասուած գրքերը:

ԽՈՀԵՐ

## ՔԻՉ ՄԸՆ ԱԼ ԳՐԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Քանի մը օր առաջ Գահիրէի Ազգային Առաջնորդարանի հրատարակութեամբ լոյս տեսաւ եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թատերագիր եւ թարգմանիչ Վարուժանի [Վարուժան Գազանճեան] *Թարգմանաշար* հատորը (645 էջ), որ կը բովանդակէ Գայիոս Վալերիոս Կատուլլոսի, Դանտէի, Պետրարքի, Միքելանճելոյի, Շեքսփիրի, Ճոն Տանի, Անտրու Մարվէլի, Ճոն Քիցի, Ֆիցճերըլտի, Պրաունինկի, Պօտլէրի, Քաւաֆիի, Էլիոթի, Հեոիքի, Պլէյքի, Ուրրծուըրթի, Փերսի Պիշ Շելիի, Էտկար Ալան Փոյի, Ֆրոսթի, Օտընի, Գամինկզի, Նակիպ Մահֆուզի, Սալահ Ժահինի, Ամալ Տոնքուլի, Նիզար Քապպանիի եւ Ահմատ Ապտէլ-Մո՛թի Հէկազիի բանաստեղծութիւններու եւ արձակներու իր կատարած թարգմանութիւնները:

Իւրաքանչիւր թարգմանութեան դիմացը դրուած է բնագիրը իսկական լեզուով՝ լատիներէն, իտալերէն, անգլերէն, ֆրանսերէն եւ արաբերէն: Այնպէս որ, ինչպէս ենթադրաբար Վարուժան պիտի ըսէր իր սովորական երգիծական-հեգնանքով՝ «ով որ չի հաւնիր թարգմանութիւնս՝ թող կարդայ բնօրինակը»:

Քանի որ *Թարգմանաշարը* կը դիտուի «Խոհեր»-ուն ակնոցով, իսկ «Խոհեր»-ուն հեղինակը, ի տարբերութիւն *Ջահակիրի* երկրորդ էջը գրաւած հեղինակին բանասիրական վաւերականութեան յոխորտանքներուն, նպատակ չի դներ ըլլալ ամբողջական, օրինական, աւարտուն, լիակատար, եւլն., ներկայ սիւնակով հեղինակը ակնարկ պիտի նետէ քանի մը ընտրովի կէտերու վրայ, հատորի կողմնակին դարձնելով հիմնական, հիմնականը մեղմելով համեմատութիւններով, մինչ իրական գրախօսական մը ձգելով մասնագէտներուն, եթէ երբեւէ Սփիւռքի հեղինակի մը գիրքը կը գրախօսուի առանց անձնական յարաբերութեան, շահի, դրամական պարգեւի, պարտադրանքի, կամ կուսակցական թելադրանքի:

«Խոհեր»-ը նախ նկատեց՝ որ հատորը չունի երկու խօսք, կամ նախաբան, կամ որեւէ նախաբացատրութիւն: Չկան թարգմանութիւններուն թուականները, թէեւ հեղինակային վարը աւելի քան յստակ է՝ Գահիրէ: Կարելի չէ եղած ասիկա ալ վերացնել: Հատորը անմիջապէս կը սկսի բանաստեղծութեամբ: Դիտաւորեալ եղած այս բացակայութիւնը, լռութիւնը, կերպ մըն է ինքնաներկայացումի: Ինքնաբացատրութիւն մը գաղափարականի գերակայութեամբ, ուղի մը դէպի գաղափարապաշտութիւն: Բացատ՝ յանուն գաղափարային լրութեան:

Արդեօ՞ք գաղափարը ի գոյ է ինքն իր մէջ, ինքն իր հետ: Արդեօ՞ք կարելի է գաղափարապաշտ փիլիսոփաներէն ամենէն ցայտուններուն մէկուն՝ Պղատոնի *Հանրապետութիւնը* հասկնալ առանց իր ժամանակին եւ վայրին: Օրինակ, կարելի չէ հասկնալ, թէ ինչո՞ւ Պղատոն իր Հանրապետութենէն վանած է բանաստեղծները, եթէ իրազեկ չըլլանք՝ որ փիլիսոփան կ'ապրէր յունական մշակոյթի բանաւորութենէն դէպի գրաւորութեան անցումի ժամանակը, եւ իբրեւ արմատապէս գրաւոր անձ, իրեն համար անընդունելի էր բանաւոր շրջագայող երգիչ-բանաստեղծի տիպարը՝ որ վերիշխող էր տուեալ ժամանակատարածային ոլորտին մէջ: Այլապէս Պղատոն չէր կրնար վանել բանաստեղծութիւնը իբրեւ այդպիսին:

Մէկ կողմ ձգենք Պղատոնը: Արդեօ՞ք կարմիր վարդը յաւերժական է: Բայց չէ՞ որ կարմիր վարդը կ'արտայայտուի մեր ընկալումներուն միջոցով, իսկ ընկալումները կը ճանչնան ժամանակ ու վայր: Իսկ արդեօ՞ք այդ ընկալումները գրականութեան մէջ չեն արտայայտուիր լեզուի միջոցով, որ ինքնին յարափոփոխ ու յարաճուն գործօն մըն է, դարձեալ սերտօրէն կապուած ժամանակատարածային հասկացողութեան հետ:

Թարգմանութիւններուն մէկ մասը նախապէս տեղադրուած էին *Հայերէն blog* կոչուող կայքէջին վրայ, կրելով թարգմանութեան թուականները: Երբ 2017 Նոյեմբերին *Ջահակիրի* մէջ կը հրատարակէի Գազանճեանի մասին յօդուածաշարս եւ կը կազմէի կայքէջին վրայ տեղադրած իր նիւթերուն ցանկը, ուշադիր էի ամբողջութեամբ վերարտադրել թէ՛ թարգմանութիւններուն եւ թէ՛ տեղադրութեան թուականները: Տուեալ պահու թելադրած մատենագիտական վերարտադրութիւն մըն էր լոկ, բայց կարեւորութիւն եւ իմաստ կրնար ներկայացնել մատենագիտութենէն անդին կատարուելիք բանասիրական-գրականագիտական ուսումնասիրութեան մը համար: *Թարգմանաշարին* մէջ Վարուժան ջնջած է բոլոր թուականները, այն թուականները՝ զորս ինք ընդունած էր տեղադրել կայքէջին վրայ, յագուրդ տալով գաղափարները ապաժամանակային դարձնելու ձգտումին:

Գիրքին բացականերէն մէկն ալ թարգմանիչն է, ներկայացուած միայն իր անձանունով՝ Վարուժան, թէեւ բոլորին յայտնի է ամբողջ անունը՝ Վարուժան Գազանճեան: Անունի ինքնաթօթափումը նաեւ հեղինակ հասկացողութեան թօթափումն է: Պիտի վերադառնանք Ռոլան Պարթի «Հեղինակին մահը» (1967) եւ անոր աւելի արմատական շարունակութիւնը հանդիսացող Միշէլ Ֆուքոյի «Ի՞նչ է հեղինակը» (1969) յօդուածներուն, որոնք, տարբեր հարթակներու դիտանկիւններով, գրողի հեղինակութիւնը կը համարեն վնասակար բնագիրի իմաստային շերտերը գտնելու, տարածելու եւ բազմացնելու համար: Այս երկու գրութիւնները մեծ ազդեցութիւն ունեցած են յետարդիական մտածողութեան վրայ: Նկատի չունիմ բնաւ՝ որ Վարուժան եւս ազդուած է անոնցմէ, իր բռնած ուղին վստահաբար արդիւնքն է սեփական ընտրութեան եւ համոզումի: Խօսքս սկզբունքի մասին է: Այս առումով պիտի առարկեմ, ինչպէս ուրիշներ առարկած են, որ խնդիրը ոչ թէ հեղինակն է, այլ անոր ֆեթիշականացումը: Խնդիր է՝ երբ հեղինակին մասին կանխակարծիքները, կանխադրոյթները, կանխասահմանուած ոճը կը դառնան գերակշռող բնագիրի ընթերցանութեան մէջ, ամբողջովին ազդելով մեր ընկալումին վրայ: Ասոնք են որ կը խանգարեն շերտային ընթերցանութիւնը, թափանցումը բնագիրին մէջ: Այսինքն, ոչ թէ հեղինակն է խանգարիչը՝ իբրեւ այդպիսին, այլ հեղինակին բացարձակացումը, որ սովորական դարձած է յատկապէս ԺԹ. դարէն սկսեալ:

Չեմ ուզեր բարդ հարցերու դիրին պատասխաններ առաջադրել, ոչ ալ նպատակս է ցրիւ տալ *Թարգմանաշարի* (ոչ-)հեղինակային մտադրութիւնը, աւելի ճիշդ՝ ենթամտադրութիւնը: Բայց, ահաւասիկ, կրկին ըսի՝ *հեղինակային* մտադրութիւն, նկատի առնելով գիրքին թօթափումները եւ գաղափարական ինքնակեցութիւնը: Այսինքն, չկրցայ հանել *հեղինակը* եւ *հեղինակի* հասկացողութիւնը իմ սեփական բնագիրէս: Հեղինակ հասկացողութիւնը գոյութիւն ունի այնտեղ ուր կայ գրականութեան կամ արուեստի արտադրութիւն, նոյնիսկ եթէ Անանուն ըլլայ ան: Կարեւորը՝ հասկացողութեան հետ առնչուելու կերպն է: Արդարեւ, հեղինակն ալ ժամանակային հասկացողութիւն է. Միջնադարի հեղինակը տարբեր է Վերածնունդէն, վերջինս տարբեր է ԺԹ. դարէն: Հեղինակը նաեւ տարածային է. ֆոլքլորի հեղինակը բոլորովին տարբեր է Շեքսփիրէն կամ Խաչատուր Աբովեանէն:

Յստակ պէտք է ըլլայ, որ այս բոլորին մասին նշում անգամ չկայ *Թարգմանաշարին* մէջ: Ընդհակառակը, այդ նշումներուն բացակայութիւնն է որ զիս մղեց խնդիրը տանիլ այս ուղղութեամբ, բացակայութեան մէջ անձնապէս տեսնելով այս իմաստները: Թերեւս ուրիշ մը այլ կերպ մեկնաբանէր բացակայութիւնը: Ոչինչ կայ վերջնական իմաստներուն մէջ: Առաւել եւս՝ բացակայութեան:

☞ 4

ՋԱՀԱԿԻՐ



1
## ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՄԻՋԱՆՑՔԻ ԲԱՑՈՒՄԸ ԿԸ ՄԵԾԱՅՆԻ...

գործընթացը կը տեւի հինգ տարի: Այսինքն՝ ես կարծում եմ, որ 2028 թուականին մենք ամբողջութեամբ կ'աւարտենք բոլոր աշխատանքները», - ասել է նա:

Նախարարը յաւելել է, որ Հորադիզից Օրդուբադ հատուածում շինարարական աշխատանքները շարունակւում են՝ բացառութեամբ Հայաստանի տարածքով անցնող հատուածի:

Բաքուն ցանկանում է Զանգեզուրի Միջանցքով առանց մաքսակէտերի տեղադրման ուղիղ կապ հաստատել Ադրբէջանի արեւմտեան շրջանների եւ Նախիջեւանի միջեւ: Պաշտօնական Երեւանն էլ Ադրբէջանի իշխանութիւնների կողմից Զանգեզուրի Միջանցք ձեւակերպումը գնահատում է որպէս տարածքային նկրտում Հայաստանի նկատմամբ:

Անցած տարեվերջին Բաքուն յայտարարեց, թէ «Զանգեզուրի Միջանցքը կորցրել է իր գրաւչութիւնը», նշելով՝ այդ ծրագիրը կարող է իրականացնել Իրանի հետ: Սակայն այս տարեսկզբից Ադրբէջանը հարցը կրկին օրակարգ է բերել՝ պնդելով, թէ Հայաստանը պէտք է Նախիջեւանի հետ ճանապարհի տրամադրի՝ առանց մաքսային ու սահմանային վերահսկողութեան:

1
## ՓՈԽՎԱՐՉԱՊԵՏԸ ՄԱՆՐԱՄԱՍՆԵՐ ՆԵՐԿԱՅԱՑՐԵՑ..

Փոխվարչապետի կարծիքով՝ եթէ երկու կողմերը սկզբունքային դիրքորոշումների շրջանակներում մնան եւ իրենց նախագծման աշխատանքները բխի Ալմա Աթայի հռչակագրից, ապա կարող են երկու-երեք ամսուայ ընթացքում ունենալ կանոնակարգի նախագիծ, որը կը պարունակի աշխատանքի մեթոդաբանութիւնը:

«Մեթոդաբանութիւնը հաստատելուց յետոյ շատ ժամանակ կը պահանջի բուն գործընթացը՝ թէ՛ սահմանազատման, թէ՛ սահմանագծման, բայց, այնուամենայնիւ, բոլորիս հասկանալի կը լինի, թէ ինչով ենք զբաղուած», - եզրափակեց Գրիգորեանը:

1
## «ՈՒՇԱՑԱԾ ՊԱՏԱՍԽԱՆ». ՀԱՊԿ-Ի ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՍԱՌԵՑՈՒՄ

տարութիւնը կատարել Մինսկից [Փաշինեան-Ալիեւ-Շոլց հանդիպումէն] յետոյ: Եթէ յանդգնեց, ուրեմն լիարժէքօրէն աֆիլացւում եւ կցւում է ռուսական նաւին»:

*France 24*-ին տուած հարցազրոյցին մէջ Փաշինեան յայտարարեց՝ որ թէեւ դիւանագիտական մակարդակով Ադրբեջան կը հաստատէ ոչ մէկ յարձակումի մտադրութիւն ունենալ, սակայն կարգ մը փաստեր, ներառեալ Ներքին Հանդի դէպքերը, կը վկայեն՝ թէ ան նոր յարձակում կը պատրաստէ Հայաստանի վրայ:

Ըստ Սիմոնեանին, յարձակումը արդէն ծրագրաւորուած էր: Արեւմուտքն էր որ կրցաւ առկախել զայն եւ զսպել Պաքուին: Իր կարծիքով «հզօր զսպաշապիկ» էր, մասնաւորապէս՝ մինսկեան հանդիպումը:

«Ադրբէջանը, սակայն, սպասելու է յարմար աշխարհաքաղաքական կոնիւնկտուրայի, որպէսզի այդ քայլին [նոր յարձակումին] գնայ: Միեւնոյն է՝ գնալու է: Տեսնենք՝ ինչքան կը տեւի այդ զսպաշապիկը», - ամփոփեց քաղաքագէտը:

*Արեւելահայերէնէ արեւմտահայերէնի փոխադրութիւն՝ Ա.*

3
## ՔԻՉ ՄԸՆ ԱԼ ԳՐԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

Անցնելով աւելի գործնական անկիւնի մը, «Խոհեր»-ը նկատեց, որ *Թարգմանաշարի* չորս բանաստեղծութիւններ Վահան Թէքէեան ժամանակին թարգմանած եւ հրատարակած էր *Արեւի* մէջ: Անոնք են՝ Շեքսփիրի երկու հնչեակները՝ *No longer mourn for me when I am dead* եւ *Devouring time, blunt thou the lion's paws*, եւ Շարլ Պօտլէրի երկու հնչեակները՝ *Recueillement* եւ *La Destruction*: Թէքէեան շատ աւելի թարգմանած է Շեքսփիրէն եւ Պօտլէրէն (Տե՛ս՝ Վահան Թէքէեան, *Ամբողջական երկեր*, հատոր 5, Ոտանաւոր թարգմանութիւններ, Գահիրէ, Տպարան Սահակ-Մեսրոպ, [1949]), բայց այստեղ նկատի ունիմ վաւերաբար Եգիպտոսի մէջ առաջին անգամ տպագրուածները:

Այս առիթով, «Խոհեր»-ը որոշեց նախ հպանցիկ ակնարկով մը առնչութիւն-տարբերութիւններ որոնել շեքսփիրեան յիշեալ երկու հնչեակներու թարգմանութիւններուն միջեւ, ապա յաջորդաբար վերահրատարակել թէ՛ Շեքսփիրի եւ թէ Պօտլէրի չորս բանաստեղծութիւններուն զոյգ թարգմանութիւնները, ցանկութիւն ունենալով մեր ընթերցողները առերեսել թարգմանական երկու ճաշակներու:

**ՇԵՔՍՓԻՐԻ ՀՆՉԵԱԿՆԵՐ**

**1. Տուներու բաժանում**

Շեքսփիրի յիշեալ երկու հնչեակները (ինչպէս իր հնչեակներուն մեծամասնութիւնը) թէեւ կը գրուին առանց տուներու բաժանումի, բայց կազմուած են երեք քառատողերէ (քառեակներէ) եւ մէկ երկտողէ: Քառատողերը կը զարգացնեն գաղափարներու շղթայ մը, մինչ երկտողը հանդէս կու գայ իբրեւ ամփոփիչ:

Վարուժան հետեւած է այս կառուցուածքին:

Թէքէեան ընտրած է հնչեակի քառատող-քառատող-եռատող-եռատող տարբերակը: Այսպէս էր Թէքէեանին ժամանակակից Ֆերնան Հանրիի ֆրանսերէն յայտնի թարգմանութիւնը (*Les Sonnets de Shakespeare*, traduits en sonnets français avec introduction, notes et bibliographie par Fernand Henry, Paris: Librairie Paul Ollendorff, 1900), որուն հաստատաբար հետեւած է ան: Չմոռնանք այդ ժամանակուայ հայ գրողներուն ֆրանսամէտութիւնը:

**2. Յանգաւորում**

Շեքսփիրի երկու հնչեակները կը հետեւին միեւնոյն յանգաւորումի՝ ԱԲԱԲ-ԳԴԳԴ-ԵԶԵԶ-ԷԷ:

Վարուժան կը հետեւի նոյն կերպին: Իսկ հնչիւնային նմանութիւնը կը հիմնէ վերջին շեշտակիր ձայնաւորներուն վրայ, անկախ անոնց յաջորդող բաղաձայներուն՝ յի*շեր*/*մեծ*/մի*տքէդ*/*եթէ*, կամ՝ նայ*իս*/այլ*եւս*/խղճ*ալի*/ վերջնապ*էս*:

Միւս կողմէ, Թէքէեան չէ ընտրած կայուն յանգաւորում: Օրինակ, *Համայնակեր ժամանակ* ը ունի ԱԲԲԱ-ԳԴԴԳ-ԵԶԶ-ԵԷԷ յանգաւորում, *Երբ ես մեռնիմ*ը՝ ԱԱԲԲ-ԳԳԴԴ-ԵԵԵ-ԶԶԶ:

**3. Տաղաչափութիւն**

Շեքսփիրի նոյն հնչեակներուն տողերը գրուած են եամպական հնգաչափով (iambic pentameter): Անոնք կազմուած են տասը վանկերէ, որոնք բաղկացած են հինգ եամպական ոտքերէ.

No lon / ger mourn // for me / when I / am dead

Վարուժան տողը կազմած է տասներկու վանկերէ, բաժնուած վեցական վանկերով երկու բարդ ոտքերու: Ահաւասիկ այս նոյն տողին թարգմանութիւնը.

Այլեւս, ո՛չ, դաղրէ՛ // իմ մահը սգալէ

Ոտքերը այլազան են, կրնան ըլլալ 2 + 4 + 2 + 4.

Այլէ / ւըս, ո՛չ, դաղրէ՛ // իմ մա / հը սգալէ

Կամ՝ 4 + 2 + 3 + 3.

Զգէ՛ ետիդ / հետքեր // ցաւալի / ու ցնծուն

Կամ՝ 4 + 2 + 4 + 2.

Բայց կ'արգիլեմ / քեզի // մէկ ահռելի / ոճիր

Եւ այլն:

Թէքէեան տողը կազմած է տասնըչորս վանկերէ, բաժնուած եօթնական վանկերով երկու բարդ ոտքերու: Ահաւասիկ վերոյիշեալ նոյն անգլերէն տողին թարգմանութիւնը.

Երբ ես մեռնիմ լա՛ց վըրաս // այնքան ատեն միմիայն

Բոլոր ոտքերը միանաշանակ են՝ 4 + 3 + 4 + 3.

Երբ ես մեռնիմ / լա՛ց վըրաս // այնքան ատեն / միմիայն

Կամ՝

Բերնէդ չելլէ / թո՛ղ բընաւ // իմ խեղճ անու / նըս եւ թո՛ղ

Կամ՝

Ո՛վ փութաջան / ժամանակ. // ըրէ՛ երկրին / մեր հըսկայ

Թէքէեանի եւ Վարուժանի համար տաղաչափութիւնը սերտօրէն կապուած է լեզուական հնչերանգին հետ: 71-րդ հնչեակի անգլերէնը կը սկսի այսպէս.

No longer mourn for me when I am dead
Then you shall hear the surly sullen bell
Give warning to the world that I am fled
From this vile world, with vilest worms to dwell:

Վարուժան թարգմանած է.

Այլեւս, ո՛չ, դաղրէ՛ իմ մահը սգալէ,
Երբ որ լսես խըռով ղօղանջը զանգերու
Փախուստըս կը գուժէ զազիր այս
աշխարհէն,
Հօգ չէ թէ զազրագոյն որդին հետ ապրելու:

Թէքէեան թարգմանած է.

Երբ ես մեռնիմ լա՛ց վըրաս այնքան ատեն
միմիայն
Որքան լսես ղօղանջին այն զանգակին՝
ողբաձայն՝
Ծանուցանող ամէնուն թէ ցած աշխարհն
այս թողած
Կ'երթամ բնակիլ որդերուն հետ աւելի՛
եւըս ցած

Տարբերութիւնը կարելի է փնտռել արեւմըտահայերէն լեզուի մէջ: Վարուժանի լեզուն սեղմօրէն արտայայտիչ է, Թէքէեանինը ունի եղանակային երկարաձգութիւն մը՝ որ, տարբեր հարթակի վրայ, քիչ մը կը նմանի Մխիթարեան հայրերուն գրաբարեան ծորուն տաղաչափական ուժեղութեան: Վարուժանի բառիմաստը ներամփոփ է՝ առանց ըլլալու վճռական, Թէքէեան երբեմն կը ձգտի արտայայտել լեզուական գեղեցկութիւնը՝ իբրեւ այդպիսին, բայց նաեւ տարածութեան շնորհիւ կարողանալով խուսափիլ լեզուական հնարաւոր կտրուկութենէ:

Արդարեւ, թէ՛ Վարուժան եւ թէ Թէքէեան գործածած են կենդանի արեւմտահայերէն լեզու մը, որ կը փոխարինէ շեքսփիրեան արդէն անգործածելի եւ հնամենի անգլերէնը՝ այնքան ընտանի ու այժմէական ԺԶ. դարուն: Նոյնիսկ ակներեւ են Վարուժանի արդի արեւմտահայերէնը եւ Թէքէեանի անցեալ դարասկիզբի հայերէնը իբրեւ ժամանակային գործօններ, որոնք զիրար անփոխարինելի են:

Ժամանակի խնդիր կայ այստեղ: Վալթըր Պենիամինի յօդուածը թարգմանութեան մասին՝ «Թարգմանիչին առաքելութիւնը» (1923), որ իրականութեան մէջ Շարլ Պօտլէրի բանաստեղծաշարի իր կատարած գերմաներէն թարգմանութեան նախաբանն էր, կարեւոր անդրադարձ ունի թարգմանական ժամանակի հարցին, բնօրինակի մը իւրաքանչիւր նոր թարգմանութեան մէջ տեսնելով նոր ժամանակի դրոշմը՝ լեզու, մտածողութիւն, արտայայտչաձեւ, եւլն., իւրաքանչիւր նոր թարգմանութիւն ինքը դառնալով բնօրինակ՝ յաջորդ թարգմանութեան մը համար: Շեքսփիր/Պօտլէր – Թէքէեան – Վարուժան կը մտնեն այս տրամաբանութեան մէջ:

(Շար. 1/2)

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1961 ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՄԱՐՏ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٦١ الخميس ١٤ مارس ٢٠٢٤

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏԻՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹԻՒ 1 ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐՈՒՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵԳԻՊՏՈՍ**

1920 Օգոստոս 17-24-ին Հայաստանի առաջին հանրապետութեան անունով Գահիրէ եւ Աղեքսանդրիա կ'այցելէր այդ ժամանակ արդէն նախկին վարչապետ Ալեքսանդր Խատիսեան, կազմակերպելու Հայաստանի Անկախութեան Փոխառութեան գործողութիւնը եգիպտահայ գաղութին հետ: Թէեւ ան արդէն Հայաստանի թիւ 1-ը չէր, բայց իբրեւ լիազօրուած ներկայացուցիչ, եգիպտահայութեան համար խորհրդանշեց Հայաստանը եւ խորհրդանշականօրէն ընդունուեցաւ իբրեւ թիւ 1:

1972 Յունուար 8-18-ին Գահիրէ կը գտնուէր Հայաստանի Համայնավար Կուսակցութեան (Կոմկուս) Ա. քարտուղար Անտոն Քոչինեան: Կու գար ոչ իբրեւ Ա. քարտուղար, այլ իբրեւ Աֆրօ-Ասիական երկիրներու համաժողովին մասնակցող Խորհրդային Միութեան պատուիրակութեան նախագահ: Բայց իբրեւ Ա. քարտուղար եւ Հայաստանի թիւ 1 առաջնորդ, ան կարեւոր եւ ազդեցիկ հանդիպումներ կ'ունենար եգիպտահայ գաղութի համախոհ հատուածին հետ:

Հայաստանի անկախութեան հռչակումի պաշտօնական թուականէն (1991 Սեպտեմբեր 23) ընդամէնը ութ ամիս եւ Խորհրդային Միութեան պաշտօնական աւարտէն (1991 Դեկտեմբեր 25) հինգ ամիս ետք՝ 1992 Մայիս 26-28-ին, եռօրեայ պաշտօնական այցելութեամբ Եգիպտոս կու գար Հայաստանի երրորդ հանրապետութեան առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեան, հանդիպում ունենալով նախագահ Հոսնի Մուպարաքի եւ բարձրաստիճան պաշտօնատարներու հետ: Ասիկա Հայաստանի թիւ 1 առաջնորդի մը երբեւէ առաջին այցելութիւնն էր քաղաքական հարթակի վրայ, Հայաստան-Եգիպտոս պետական յարաբերութիւնները սերտացնելու յետնախորքին վրայ:

2007 Ապրիլ 14-15-ին երկօրեայ պաշտօնական այցելութեամբ Եգիպտոս կը գտնուէր Հայաստանի երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեան, հանդիպում ունենալով նախագահ Հոսնի Մուպարաքի եւ բարձրաստիճան պաշտօնատարներու հետ, չմոռնալով նաեւ երթալ մինչեւ Լուքսոր եգիպտական հնութիւնները դիտելու համար:

2024 Մարտ 5-6-ին երկօրեայ պաշտօնական այցելութեամբ Եգիպտոս կու գայ Հայաստանի ներկայ վարչապետ Նիկոլ Փաշինեան: Հայաստանի անկախացումէն ի վեր երրորդ առաջնորդն է՝ որ կ'այցելէ Եգիպտոս:

**ՆԱԽԱՊԱՏՄՈՒԹԻՒՆ**

2020 Սեպտեմբեր 12-ին Հայաստանի Արտաքին Գործոց նախարար Զոհրապ Մնացականեան եռօրեայ այցելութեամբ կու գայ Եգիպտոս, որուն ընթացքին պաշտօնական հրաւէր կը յղէ Եգիպտոսի նախագահ Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսիին՝ այցելելու Հայաստան: Հրաւէրը կը հաստատէ Եգիպտոսի Արտաքին Գործոց նախարար Սամէհ Շոքրի, Մնացականեանի հետ Սեպտեմբեր 13-ին ունեցած մամուլի ասուլիսին: Սեպտեմբեր 14-ին՝ հանդիպում Ալ-Սիսիի հետ:

Յետոյ կու գայ 44-օրեան իր քաղաքական հետեւանքներով, եւ կը յետաձգուի այցելութիւնը:

2023 Յունուար 24-26-ին Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսի պաշտօնական այցելութեամբ կը մեկնի Հնդկաստան, որմէ ետք 27-28-ին կ'անցնի Ազրպէյճան, իսկ 28-29-ին երկօրեայ այցելութեամբ կը գտնուի Հայաստան: Այսինքն, կը կատարէ տարածաշրջանային կարեւոր շրջագայութիւն: Ասիկա առաջին անգամն էր՝ որ Եգիպտոսի նախագահ մը կ'այցելէր Հայաստան:



Հելիոպոլսոյ նախագահական Իթթիհատէյա Պալատ, Եգիպտոսի նախագահ Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսիի հետ:

2023 Մարտ 8-9-ին Եգիպտոս կ'այցելէ Հայաստանի Արտաքին Գործոց Նախարար Արարատ Միրզոյեան: Իրմէ առաջ, Փետրուար 12-ին եկած էր Ազրպէյճանի Արտաքին Գործոց նախարար Ճէյհուն Պայրամով:

**ԷՐՏՈՂԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ**

Թուրքիոյ ամբողջական աջակցութիւնը Եգիպտոսի Իսլամ Եղբայրներուն պատճառ հանդիսացաւ 2013-ին Թուրքիոյ եւ Եգիպտոսի յարաբերութիւններու արմատական խզումին: Դիւանագիտական երկարատեւ միջամտութիւններու շնորհիւ կարելի եղաւ հասնիլ նոր համաձայնութեան եւ 2024 Փետրուար 14-ին Ռեճէփ Թայիփ Էրտողան այցելելով Եգիպտոս ամենաջերմ ընդունելութեամբ դիմաւորուեցաւ Եգիպտոսի նախագահին կողմէ:

Թէեւ 20 օր ետք Հայաստանի վարչապետին այցելութիւնը Եգիպտոս հեռուէն կամ մօտէն ոչ մէկ կապ ունէր Էրտողանի այցելութեան հետ եւ ժամանակները լոկ պատահականութիւններ էին, բայց կարեւոր է նկատի առնել Եգիպտոսի խաղացած նուրբ քաղաքականութիւնները զանազան բեւեռներու հետ, կարողանալով այլազանել իր արտաքին քաղաքականութիւնը:

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 5 ՄԱՐՏ**

**Ժամանում**

Մարտ 5-ի առաւօտեան, Գահիրէի միջազգային օդակայանին մէջ Հայաստանի վարչապետին կը դիմաւորէ Եգիպտոսի վարչապետ Մուսթաֆա Մատպուլի:

Հայաստանի պատուիրակութեան մաս կը կազմեն՝ Արտաքին Գործոց նախարար Արարատ Միրզոյեան, Շրջակայ Միջավայրի նախարար Յակոբ Սիմիդեան, Տնտեսութեան նախարարի տեղակալ Ռաֆայէլ Գէորգեան, Ներդրումներու Աջակցութեան Կեդրոնի գլխաւոր տնօրէն Լեւոն Օհանէսեան, եւ ուրիշներ:

**Հանդիպում Եգիպտոսի նախագահին հետ**

Վարչապետը կ'ուղեւորուի Հելիոպոլսոյ նախագահական Իթթիհատէյա Պալատը, ուր տեղի կ'ունենայ առանձնազրոյց Եգիպտոսի նախագահ Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսիի հետ, որմէ ետք ընդլայնուած կազմով կը շարունակուին քննարկումները:

Երկու առաջնորդները կը քննարկեն տնտեսութեան, ենթակառուցուածքներու, զբօսաշրջիկութեան, օդային հաղորդակցութեան, բարձր թեքնոլոժիի, գիւղատնտեսութեան, շրջակայ միջավայրի, կրթութեան, մշակոյթի ոլորտներուն մէջ համատեղ նոր ծրագիրներ իրականացնելու հետ կապուած հարցեր: Կը քննարկեն նաեւ Հարաւային Կովկասի եւ Մերձաւոր Արեւելքի մէջ տեղի ունեցող գործընթացները, կարեւորելով խաղաղութեան եւ կայունութեան ամրապնդումը:

Վարչապետ Փաշինեան Եգիպտոսի առաջնորդին մանրամասնութիւններ կը հաղորդէ Հայաստան-Ազրպէյճան խաղաղութեան պայմանագիրին շուրջ տեղի ունեցող քննարկումներուն մասին, ներկայացնելով հայկական կողմի սկզբունքային դիրքորոշումները: Փաշինեան կը բացատրէ Լեռնային Ղարաբաղէն բռնի տեղահանուածներուն մարդասիրական խնդիրները:

Հայաստանի փափաքն էր մարդասիրական օգնութիւն ուղարկել Կազա, բայց չէր տիրապետեր լոժիսթիք միջոցներուն: Հանդիպումին ընթացքին Փաշինեան Ալ-Սիսիին ներկայացնելով խնդիրը, տեղւոյն վրայ կը ստանայ լուծումը: [*Հասկնալի է որ Հայաստանի օգնութիւնը Կազային լոկ խորհրդանշական իմաստ ունի: Կը թուի, որ ասիկա անուղղակի ուղերձ մըն է Իսրայէլին՝ Ազրպէյճանի նկատմամբ իր ցուցաբերած ռազմական անսահման աջակցութեան համար:*]



Գահիրէի միջազգային օդակայան, Եգիպտոսի վարչապետ Մուսթաֆա Մատպուլի կը դիմաւորէ Նիկոլ Փաշինեանին:

Ասկէ զատ, Փաշինեան կը վստահեցնէ Ալ-Սիսիին՝ որ Հայաստան պիտի աջակցի 2025-2029 թուականներու ԻՒՆԵՍՔՕ-ի ընդհանուր տնօրէնի պաշտօնի Եգիպտոսի թեկնածու Խալէտ Ալ-Անանիին: [*Այս կէտը Փաշինեան յայտարարեց Եգիպտոսի վարչապետ Մուսթաֆա Մատպուլիի հետ ունեցած Մարտ 6-ի հանդիպումին: Հանդիպումի մանրամասնութիւններուն կարելի է ծանօթանալ Եգիպտոսի վարչապետութեան արաբերէն պաշտօնական կայքէջին վրայ: Հայաստանի պաշտպանութիւնը եգիպտացի թեկնածուին ունի իր իմաստը: 2009-ին, ԻՒՆԵՍՔՕ-ի ընդհանուր տնօրէն կ'ընտրուէր պուլկարուհի Իրինա Պոքովա, դուրս մղելով եգիպտացի թեկնածու Ֆարուք Հոսնիին, որ ընտրութիւններուն մինչեւ նախավերջին փուլը վաստակած էր քուէարկուներու հանգիստ մեծամասնութիւնը: 2012-ին Պոքովա անձնական սերտագոյն յարաբերութիւններ կը մշակէ Ազրպէյճանի իշխող ընտանիքին եւ մասնաւորապէս ԻՒՆԵՍՔՕ-ի բարի կամքի դեսպանուհի Մեհրիպան Ալիեւայի հետ: Աստիճանաբար կը բացայայտուին փտածութեան մեծ գործարքներ: Ամէն անգամ որ ԻՒՆԵՍՔՕ-ն ձեռնարկ մը կը կազմակերպէր Ալիեւայի հանրային յարաբերութիւններուն (PR) համար, քանի մը օր ետք 100-էն մինչեւ 250 հազար եւրօ կը յայտնուէր Պոքովայի ամուսինին՝ ԻՒՆԵՍՔՕ-ի ընդհանուր քարտուղար Քալին Միթրովի պանքային հաշիւներուն մէջ: Աւելի ցայտունը այն էր՝ որ Պոքովա, որուն տնօրէնութեան ամբողջ շրջանի ընդհանուր վարձավճարը եղած էր 781 հազար տոլլար, Նիւ Եորքի մէջ սեփականատէրը կը դառնար 2,4 միլիոն տոլլար արժողութեամբ երկու բնակարաններու: 2017-ին Պոքովա կը ստիպուի*

↳ 3

# ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

## (Ծննդեան 105-ամեակին առիթով)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 19 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Անարատ Յղութեան Վարժարան**

Առաւօտեան այցելութիւն Անարատ Յղութեան Հայ Քոյրերու Վարժարան: Կը կայանայ կոկիկ հանդէս մը, բարի գալուստի խօսք՝ Տիկ. Թէրզեան, արտասանութիւններ աշակերտներուն կողմէ, խօսք՝ Կապուտիկեան(15):

**Նուպարեան Ազգային Վարժարան**

Այցելութիւն Նուպարեան Ազգային Վարժարան: Կը մտնէ դասարանները, որմէ ետք տեղի կ’ունենայ յայտագիր, խօսք՝ տնօրէն Տիգրան Պապիկեան, հայերէնի ուսուցիչ Նուպար Քիւփէլեան, եւ Կապուտիկեան: Աշակերտ Հայկ Նագաշեան կը կարդայ ուղերձ՝ *Խոստովանիմք*(16):

**Այծեմնիկ Հանգստեան Տուն**

Այցելութիւն Այծեմնիկ Հանգստեան Տուն: Խօսք՝ Տիկնանց Այծեմնիկ Միութեան ատենապետուհի Գայեանէ Փափազեան, Ալեքսանդր Սարուխան եւ Կապուտիկեան(17):

**Մխիթարեան Վարժարան**

Այցելութիւն Մխիթարեան Վարժարան: Ողջոյնի խօսք՝ վարժարանի տեսուչ Հայր Բարսեղ Ֆերհաթեան, ողջոյնի տաղաչափեալ խօսք՝ Հայր Վարդան Աշքարեան (Վարդունի), խօսք՝ Կապուտիկեան, աշակերտներուն կողմէ երգեր եւ արտասանութիւններ, ինչպէս նաեւ հայկական տարազով պարեր՝ *Հոյ նազանըմ*, *Յայլուղըս մնաց ձեր դուռը*, եւլն.(18):

**Նիըր Իսթ Ակումբ**

Երեկոյեան ժամը 10 (նախատեսուած 9-ի փոխարէն), Նիըր Իսթ Հայկական Ակումբ, ժողովրդային ընդունելութիւն ի պատիւ Կապուտիկեանի, ներկայութեամբ բոլոր հայ կազմակերպութիւններու ներկայացուցիչներուն եւ յարանուանութիւններու պետերուն:

Յայտագիր.

Բացումի խօսք՝ Ժիրայր Ճեպէլեան:

Սիլվա Կապուտիկեան, *Խօսք իմ որդուն*, արտասանութիւն՝ Աստղիկ Կոճամանեան:

*Ջուրն ելաւ*, մեներգ՝ Տիանա Գոգորեան, դաշնակի նուագակցութիւն՝ Յ. Ճեպէճեան:

Սարմեն, *Խաղընկերս*, արտասանութիւն՝ Պերճ Գոգորեան:

*Բարձր սարեր*, մեներգ՝ Ռ. Պաճագեան, դաշնակի նուագակցութիւն՝ Պ. Գոգորեան:

Անդրանիկ Ծառուկեան, *Ուխտ Արարատին*, արտասանութիւն՝ Անի Սիրքէճեան:

Կտոր մը, ջութակ՝ Պետրոս Գոգորեան:

Փակումի խօսք՝ Մամբրէ Արք. Սիրունեան(19):

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 20 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Մարմինայի գերեզմանատուն**

Առաւօտեան այցելութիւն Մարմինայի գերեզմանատուն, ուղեկցութեամբ Ալիս Տեփոյեանի, Ալեքսանդր Սարուխանի, Օննիկ Ալեքսանեանի եւ Նորայր Տէօվլէթեանի: Ծաղիկներ կը դնէ Արմենակ Եկարեանի, Ռուբէն Հերեանի, Վահան Զարդարեանի, Արփիար Արփիարեանի, Երուանդ Օտեանի եւ Սիրանոյշի շիրիմներուն(20):

**Բուրգեր**

Կ’այցելէ Բուրգերը եւ Սփինքսը եւ ներկայ կը գտնուի Լոյս եւ Ձայն ներկայացումին(21):

**ՈՒՐԲԱԹ, 22 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Մեկնում Աղեքսանդրիա**

Առաւօտեան ժամը 9.30-ի գնացքով կը մեկնի Աղեքսանդրիա, ընկերակցութեամբ Օննիկ Ալեքսանեանի, Շաքէ Իփէքեանի եւ Ալիս Տեփոյեանի: Ժամը 12.10-ին կը հասնի Սիտի Կապէր կայարանը, ուր դիմաւորելու եկած էին շուրջ 200 աղեքսանդրահայեր: Կ’իջեւանի Սեսիլ պանդոկը(22):

**Ճաշ**

Ճաշ Պօ-Ռիվաժի մէջ, ներկայութեամբ Ազգային Իշխանութեան անդամներուն(23):

**Մոնթազայի պալատ**

Կարճ այցելութիւն Մոնթազայի պալատը եւ զբօսայգին(24):

**Տիգրան Երկաթ**

Երեկոյեան ժամը 8.30, Տիգրան Երկաթի սրահ, պաշտօնական հանդիպում Կապուտիկեանի հետ, ներկայութեամբ երեք յարանուանութիւններու պետերուն, Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան անդամներուն, մշակութային եւ մարզական միութիւններու ներկայացուցիչներուն, հայ մամուլի թղթակիցներուն:

Խօսք՝ Տիգրան Երկաթի ատենապետ Բենիամին Մամուրեան, Տիգրան Երկաթի պատուոյ նախագահ Միհրան Թոգաթլեան, Աղեքսանդրիոյ Առաջնորդական Փոխանորդ Զաւէն Վրդ. Չինչինեան, Աղեքսանդրիոյ Մխիթարեան Վարժարանի տեսուչ Հայր Աւետիք Թալաթինեան, Սիլվա Կապուտիկեան(25):

**ՇԱԲԱԹ, 23 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցի**

Առաւօտեան ժամը 10.30, այցելութիւն Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցի եւ ընդունելութիւն Առաջնորդարանի դահլիճին մէջ, ներկայութեամբ Թեմական Ժողովի, Քաղաքական Ժողովի, հոգաբարձութիւններու եւ Տիկնանց Խնամակալութեան անդամներուն: Բարի գալուստի խօսք՝ Զաւէն Վրդ. Չինչինեան, խօսք՝ Կապուտիկեան:

**Պօղոսեան Ազգային Վարժարան**

Այցելութիւն Պօղոսեան Ազգային Վարժարան: Սրահին մէջ կը գործադրուի յայտագիր.

*Ծաղկիր ազատ իմ հայրենիք*, երգ:

Խօսք՝ վարժարանի տնօրէն Լեւոն Գալէմքեարեան:

Ուղերձ՝ վարժարանի հոգաբարձութեան կողմէ Բիւզանդ Բրուտեան:

Ուղերձ՝ աշակերտուհի Անժէլ Չիլինկիրեան:

Աւետիք Իսահակեան, *Դարդը սրտիս*, արտասանութիւն՝ աշակերտուհի Նուշիկ Հէքիմեան:

*Որքան կ’ուզէի տեսնել այն երկիրը*, արտասանութիւն՝ աշակերտուհի Մարօ Աղաճեան:

*Գարուն բացուեց* եւ *Երգ բարեկամութեան*, վարժարանի աշակերտական երգչախումբ:

Սիլվա Կապուտիկեան, *Խօսք իմ որդուն*, արտասանութիւն՝ աշակերտուհի Անայիս Սարգիսեան:

Սիլվա Կապուտիկեան, *Եւ հաւատում ենք*, արտասանութիւն՝ աշակերտ Գէորգ Քիւփէլեան:

Խօսք՝ Սիլվա Կապուտիկեան:

**Մելգոնեան Մանկապարտէզ**

Այցելութիւն Մելգոնեան Մանկապարտէզ: Կ’արտասանեն եւ կ’երգեն մանուկները, եւ իր պատգամը կը փոխանցէ Կապուտիկեան:

**Մխիթարեան Վարժարան**

Մխիթարեան Վարժարանի սրահ, հանդիսութիւն ի պատիւ Կապուտիկեանի:

Յայտագիր.

*Ծաղկիր ազատ իմ հայրենիք*, դպրոցի երգչախումբ, խմբավար՝ Հ. Արիստակէս Մանուկեան, դաշնակի նուագակցութիւն՝ Շաքէ Աւագով:

Գուրգէն Ալեմշահ, *Իմ հեռաւոր հայրենիք*, նոյն:

Սիլվա Կապուտիկեան, *Խօսք իմ որդուն*, արտասանութիւն՝ աշակերտուհի Սոնիկ Ոսկերիչեան:

Խօսք՝ վարժարանի տեսուչ Հ. Աւետիք Թալաթինեան:

Խօսք՝ Սիլվա Կապուտիկեան(26):

**Թանգարան եւ բերդ**

Այցելութիւն Աղեքսանդրիոյ պատմական թանգարանը եւ Քաիթ-պէյի բերդը(27):

**Հ.Բ.Ը.Միութեան կեդրոն**

Երեկոյեան, այցելութիւն Հ.Բ.Ը.Միութեան Քանտը Սեզարի կեդրոն եւ Հ.Մ.Ը.Մ. մարզական ակումբ: Ընդունելութիւն եւ պատուասիրութիւն: Խօսողներէն է՝ Վրէժ-Լեւոն Սէֆէրեան(28):

**Տիգրան Երկաթ**

Երեկոյեան ժամը 9, Տիգրան Երկաթի սրահ, ճաշկերոյթ եւ ընդունելութիւն ի պատիւ Կապուտիկեանի: Խօսք՝ Տիգրան Երկաթի ատենապետ Բենիամին Մամուրեան, Տիգրան Երկաթի պատուոյ նախագահ Միհրան Թոգաթլեան, մտաւորական Միսաք Քիւփէլեան, Կապուտիկեան: Գեղարուեստական յայտագիր(29):

(Շար. 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

15. «Յուզումնալի հանդիպումներ Սիլվա Կապուտիկեանի հետ», *Արեւ*, 20 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.442:

16. «Յուզումնալի հանդիպումներ Սիլվա Կապուտիկեանի հետ», *Արեւ*, 20 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.442: «Պր. Տիգրան Պապիկեանի ուղերձը», *Արեւ*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.455: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 29 Մարտ 1965, Ծ. տարի, թիւ 14.083:

17. «Յուզումնալի հանդիպումներ Սիլվա Կապուտիկեանի հետ», *Արեւ*, 20 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.442: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 6 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.090:

18. «Յուզումնալի հանդիպումներ Սիլվա Կապուտիկեանի հետ», *Արեւ*, 20 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.442: «Գողթնի քնար», *Արեւ*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.455: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 29 Մարտ 1965, Ծ. տարի, թիւ 14.083:

19. *Արեւ*, 19 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.441: «Յուզումնալի հանդիպումներ Սիլվա Կապուտիկեանի հետ», *Արեւ*, 20 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.442: Ներկայ մը, «Ս. Կապուտիկեան Նիըր Իսթի մէջ», *Յուսաբեր*, 20 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 272: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 30 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.107. 3 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.108:

20. «Սիլվա Կապուտիկեան կ’այցելէ հայ մտաւորականներու շիրիմները», *Արեւ*, 21 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.443: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 6 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.090: *Արեւ*, 10 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.094:

21. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 10 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.114. 11 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.115:

22. «Սիլվա Կապուտիկեան Աղեքսանդրիա մեկնեցաւ», *Արեւ*, 22 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.444: «Աղեքսանդրիա ժամանումը», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777): «Սիլվայի ելոյթներն ու այցելութիւնները քաղաքիս մէջ», *Արաքս*, 2 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 8 (1778): «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 4 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.109. 5 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.110:

23. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 6 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.111:

24. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 6 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.111. 7 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.112:

25. *Արեւ*, 18 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.440: «Սիլվա Կապուտիկեան Տիգրան Երկաթի մէջ», *Արեւ*, 23 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.445: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 7 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.112:

26. Մասնաւոր թղթակից, «Սիլվա Կապուտիկեան Մխիթարեան Վարժարանին մէջ», *Արեւ*, 8 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.454: «Սիլվա Կապուտիկեան Մխիթարեանի մէջ», *Արաքս*, 9 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 9 (1779):

27. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 7 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.112:

28. «Քերթողուհի Սիլվա Կապուտիկեանի այցելութիւնը Ազգային Առաջնորդարան եւ Պօղոսեան Ազգային Վարժարան», *Արաքս*, 2 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 8 (1778): «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 7 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.112:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՆԴԻՊԵԼ ԵՆ ՀԱՅ-ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ՀԱՐՑԵՐՈՎ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ

Հայ-ադրբէջանական սահմանին Մարտի 7-ին հանդիպել են երկու երկրների միջեւ պետական սահմանի սահմանազատման հարցերով պետական յանձնաժողովները:

Փոխվարչապետեր Միհեր Գրիգորեանի եւ Շահին Մուստաֆաեւի նախագահած յանձնաժողովներն անդրադարձել են սահմանազատման հարցերին եւ սկսել համաձայնեցնել յանձնաժողովի համատեղ գործունէութեան վերաբերեալ կանոնակարգի նախագիծը, նաեւ քննարկել են սահմանազատման աշխատանքների իրականացման կարգի վերաբերեալ ուղեցոյցների նախագծերը:

«Կողմերը պայմանաւորուել են սեղմ ժամկէտներում աւարտին հասցնել յանձնաժողովների համատեղ գործունէութեան վերաբերեալ կանոնակարգի նախագծի համաձայնեցումը», - փոխանցում է հայկական կողմը:

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻՆ ՊԱՇՏՕՆԱՊԷՍ ՏԵՂԵԿԱՑՐԵԼ Է, ՈՐ ԶՈՒԱՐԹՆՈՑՈՒՄ ՄԻԱՅՆ ՀԱՅ ՍԱՀՄԱՆԱՊԱՀՆԵՐ ՊԻՏԻ ՄՆԱՆ

Հայաստանը պաշտօնական նամակով դիմել է ռուսական կողմին եւ տեղեկացրել՝ Զուարթնոց օդանաւակայանում ծառայութիւն պէտք է իրականացնեն միայն հայ սահմանապահները, խորհրդարանում Մարտի 6-ին յայտարարեց Անվտանգութեան Խորհրդի քարտուղար Արմէն Գրիգորեանը՝ ընդգծելով, որ սա Երեւանի յստակ դիրքորոշումն է:

«Հայաստանի ծառայութիւնները՝ սահմանապահ զօրքերը պէտք է ամբողջութեամբ իրականացնեն ծառայութիւն: Հայաստանը անկախութեան շրջանում տարբեր ուղղութիւններով կարողութիւններ է ձեռք բերում, եւ այս պահին Հայաստանն ամբողջական կարողութիւն ունի օդանաւակայանում ամբողջութեամբ վերահսկողութիւն իրականացնելու համար», - ասաց ԱԽ քարտուղարը:

Զուարթնոցից ռուսներին հանելու մասին քննարկումներին նախորդեց Ներքին Հանդի արիւնալի միջադէպը, որի հետեւանքով հայկական կողմը չորս զոհ ունեցաւ: Իշխանութեան ներկայացուցիչները սկսեցին բացայայտ կասկածի տակ դնել աւելի քան երեք տասնամեակ Հայաստանի սահմաններին ծառայութիւն իրականացնող ռուս սահմանապահների արդիւնաւէտութիւնը: Օդանաւակայանից ռուսներին հանելն աւելի վաղ ճիշտ էր համարել խորհրդարանի խօսնակը՝ մտավախութիւն յայտնելով, թէ մի օր էլ հայերին դուրս կը հանեն այնտեղից, ինչպէս արցախցիներին՝ Արցախից: Թէ ինչ ժամկէտներում է Երեւանը ակնկալում, որ ռուսները դուրս գան, Արմէն Գրիգորեանը չյստակեցրեց:

Կրեմլի խօսնակը, մինչդեռ, Մարտի 6-ին ասել է, որ Զուարթնոց օդանաւակայանից ռուս սահմանապահների դուրսբերման վերաբերեալ հարցումներ չեն եղել:

Մոսկուայից ակնկալում են ↳ 4

1 ↳

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏԻՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ



Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցի, ձախին՝ Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեան կու տայ բացատրութիւններ, մէջտեղը՝ Արհ. Տ. Գրիգոր Օգոստինոս Եպս. Գուսան:

*հեռանալ պաշտօնէն: 2022-ին Ալիեւա եւս կը ստիպուի հեռանալ: Արդէն պարզ կը դառնայ Փաշինեանի կեցուածքը եգիպտացի նոր թեկնածուին հանդէպ, մանաւանդ որ այսօր կը գտնուի նոր մարտահրաւէր մը կապուած Ղարաբաղի հայկական յուշարձաններու պահպանութեան հետ:*]

Հանդիպումէն ետք, երկու երկիրներու ղեկավարներուն ներկայութեամբ, տեղի կ'ունենայ համատեղ փոխըմբռնումներու յուշագիրներու ստորագրութիւն.

1. Յուշագիր Հայաստանի եւ Եգիպտոսի Շրջակայ Միջավայրի նախարարութիւններուն միջեւ, շրջակայ միջավայրի պահպանութեան ոլորտի համագործակցութեան մասին: Կը ստորագրեն Հայաստանի եւ Եգիպտոսի Շրջակայ Միջավայրի նախարարներ Յակոբ Սիմիդեան եւ Եասմին Ֆուատ:

2. Յուշագիր Հայաստանի Տնտեսութեան Նախարարութեան եւ Եգիպտոսի Գիւղատնտեսութեան եւ Հողերու Բարելաւումի Նախարարութեան միջեւ, 2024-2026 թուականներու ծրագիրներու մասին: Կը ստորագրեն Հայաստանի Տնտեսութեան նախարարի տեղակալ Ռաֆայէլ Գէորգեան եւ Եգիպտոսի Գիւղատնտնեսութեան նախարար Ալ-Սայէտ Ալ-Քասէր:

3. Յուշագիր Հայաստանի Տնտեսութեան Նախարարութեան եւ Եգիպտոսի Միջազգային Համագործակցութեան Նախարարութեան միջեւ, տնտեսական համագործակցութեան մասին: Կը ստորագրեն Հայաստանի Տնտեսութեան նախարարի տեղակալ Ռաֆայէլ Գէորգեան եւ Եգիպտոսի Միջազգային Համագործակցութեան նախարար Ռանիա Ալ-Մաշաթ:

Ապա երկու առաջնորդները լրատուամիջոցներու ներկայացուցիչներուն համար հանդէս կու գան յայտարարութիւններով:

Ալ-Սիսի կը ներկայացնէ այն «ջանքերը՝ զորս Եգիպտոս կը գործադրէ» Կազայի մէջ եւ կը յայտնէ Պաղեստինի Հանրապետութեան ձեւաւորումի անհրաժեշտութիւնը 1967 Յունիս 4-ի սահմաններուն հիման վրայ:

«Միանում ենք Գազայում անյապաղ հրադադար հաստատելու միջազգային հանրութեան կոչերին», կ'ըսէ Փաշինեան, շեշտելով՝ որ Հայաստան կ'աջակցի միջազգային հանրութեան որդեգրած երկու պետութիւններու սկզբունքին:

Վարչապետը կ'անդրադառնայ առեւտուրի, ներդրումի եւ զբօսաշրջիկութեան հարցերուն.

«Հայաստան կատարած Ձեր այցից յետոյ նկատելի է դարձել Հայաստանի նկատմամբ եգիպտացի ներդրողների հետաքրքրութեան աճը. եգիպտական յայտնի ընկերութիւնների ղեկավարներ ու ներկայացուցիչներ են այցելել մեր երկիր՝ տեղում ներդրումային հնարաւորութիւններին ծանօթանալու նպատակով: Յուսով եմ, որ այս այցի շրջանակում եգիպտացի գործարարների հետ կայանալիք հանդիպմանը եւս լրացուցիչ խթան կը հաղորդենք տնտեսական յարաբերութիւններին:

«Ներկայումս առեւտրատնտեսական յարաբերութիւնների զարգացման ուղղութեամբ իրականացւում են գործնական քայլեր: Ընթացիկ տարում նախատեսւում է անցկացնել Հայաստանի Հանրապետութեան եւ Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան միջեւ միջկառավարական համատեղ յանձնաժողովի հերթական նիստը, որի շրջանակում կը գումարուի նաեւ գործարար համաժողով: Տարուայ ընթացքում ակնկալւում է եւս երկու ոլորտային գործարար համաժողովների անցկացում: Հայաստանի կառավարութիւնը կը խրախուսի հայաստանցի գործարարներին՝ մասնակցելու Կահիրէում կայանալիք նշեալ համաժողովներին:

«Երկկողմ յարաբերութիւններում դինամիկ զարգացում է ապրում զբօսաշրջութիւնը: Մեր քաղաքացիների համար Եգիպտոսը տարիներ շարունակ հանդիսանում է հանգստի նախընտրելի ուղղութիւններից մէկը, եւ տարեցտարի մեր



Գահիրէի Ազգային Առաջնորդարանի բակ, յարգանքի տուրք Եղեռնի յուշակոթող խաչքարին առջեւ:

զբօսաշրջիկների թիւը զգալիօրէն աճում է»:

Վարչապետը չի մոռնար շնորհակալութիւն յայտնել Եգիպտոսին՝ եգիպտահայութեան նկատմամբ տարած հոգատարութեան համար.

«Չեմ կարող չնշել, որ Հայաստանի եւ Եգիպտոսի միջեւ յարաբերութիւններում առանձնայատուկ դերակատարութիւն ունի եգիպտահայ համայնքը, որը դարեր շարունակ իր նպաստն է բերում ինչպէս Եգիպտոսի զարգացմանը, այնպէս էլ՝ այսօր մեր երկրների միջեւ կապերի ամրապնդմանը: Այս առնչութեամբ յատուկ շնորհակալութիւն պէտք է յայտնեմ այն հոգատարութեան համար, որը պետական մակարդակով մշտապէս վայելել են ու շարունակում են վայելել Եգիպտոսում բնակուող մեր հայրենակիցները»:

**Պաշտօնական հանդիպումներ**

Նախագահէն ետք Փաշինեան կ'ուղեւորուի Արաբական Պետութիւններու Լիկայի կեդրոնատեղի, ուր հանդիպում կ'ունենայ Լիկայի գլխաւոր քարտուղար Ահմատ Ապուլ Ղէյթի հետ, ապա կ'այցելէ Ապպասիայի Սուրբ Մարկոս ուղղափառ տաճարի պատրիարքարան, ուր հանդիպում կ'ունենայ Ղպտի ուղղափառ եկեղեցիի առաջնորդ, Աղեքսանդրիոյ եւ Համայն Ափրիկէի Պապ Թաւատրոս Երկրորդի հետ:

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 6 ՄԱՐՏ**

**Գործարարական հանդիպում**

Օրուան առաջին այցելութիւնը կ'ըլլայ Եգիպտոսի Առեւտուրի Պալատի Միաւորումը, ուր հանդիպում կ'ունենայ գործարարներու հետ:

Ելոյթներ կ'ունենան՝ Եգիպտոսի Առեւտուրի եւ Արդիւնաբերութեան նախարար Ահմատ Սամիր, Միաւորումի նախագահ Ահմատ Ալ-Ուաքիլի, Հայաստանի Տնտեսութեան նախարարի տեղակալ Ռաֆայէլ Գէորգեան, Հայաստանի ներդրումներու Աջակցութեան Կեդրոնի գլխաւոր տնօրէն Լեւոն Օհանէսեան, եւ Հայաստանի վարչապետը: Վերջինս կը փորձէ ցոյց տալ Հայաստանի վերջին տարիներուն արձանագրած տնտեսական աճը, նպատակ ունենալով քաջալերել եգիպտացի գործարար ներդրողները:

**Հանդիպում վարչապետ Մուսթաֆա Մատպուլիի հետ**

Փաշինեան կը մեկնի նոր վարչական քաղաքը եւ կը հանդիպի Եգիպտոսի վարչապետ Մուսթաֆա Մատպուլիի հետ:

Եգիպտոսի կողմէ ներկայ էին Միջազգային Համագործակցութեան նախարար Ռանիա Ալ-Մաշաթ, Շրջակայ Միջավայրի նախարար Եասմին Ֆուատ, Առեւտուրի եւ Արդիւնաբերութեան նախարար Ահմատ Սամիր եւ Եւրոպական Գործերու Արտաքին Գործոց նախարար Խալէտ Էմարա:

Եգիպտոսի վարչապետը կը շեշտէ երկու երկիրներու պատմական յարաբերութիւններուն կարեւորութիւնը, նշելով պատմականօրէն Եգիպտոսի հիւրընկալումը տասնահազարաւոր հայերու, որուն շնորհիւ տեղի ունեցաւ եգիպտացի եւ հայ ժողովուրդներու միախառնում: Ան կ'արձանագրէ նաեւ եգիպտահայ գաղութին ունեցած նպաստները Եգիպտոսի քաղաքական, տնտեսական եւ մշակութային բնագաւառներու զարգացումին մէջ:

Մատպուլի վեր կը հանէ Հայաստանի ջանքերը՝ որոնք ուղղուած էին Եւրասիական տնտեսական միութեան հետ Եգիպտոսի ստորագրած ազատ գօտիի համաձայնագիրին:

Ան շնորհակալութիւն կը յայտնէ հայկական կողմին՝ Երեւանի հրապարակներէն մէկը Եգիպտոսի անունով կոչելու համար եւ կ'աւելցնէ՝ որ եգիպտական կողմը Գահիրէի հրապարակներէն մէկը պիտի անուանէ Հայաստանի անունով:

Իր կողմէ, Փաշինեան շնորհակալութիւն կը յայտնէ ջերմ հիւրընկալութեան համար եւ կը նշէ Եգիպտոսի նախագահին հետ ունեցած արդիւնաւէտ քննարկումները: Ան յոյս կը յայտնէ՝ որ իր պաշտօնական այցելութեան շնորհիւ, երկկողմ գերազանց քաղաքական յարաբերութիւններուն ↳ 4

# ՁԱՅՆԱԿԻՐ

## ՀԱՆԴԻՊԵԼ ԵՆ ՀԱՅ-ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ...

Օրերս Միհր Գրիգորեանի գրասենեակից հրապարակել էին Հայաստանի պահանջած 31 ոչ անկլաւային տարածքների ցանկը, որոնց օկուպացիայի փաստը Ադրբէջանը հրաժարւում է ընդունել. Տաւուշում՝ Բերքաբեր, Սարիգիւղ, Սեւքար, Վազաշէն, Պառաւաքար, Մովսէս, Արծուաբերդ, Չինարի, Այգեձոր, Սիւնիքում՝ Քաջարանց, Սալվարդ, Գորհայք, Սառնակունք, Անգեղակոթ, Աղիտու, Նորաւան, Վաղատին, Վերիշէն, Խոզնավար, Տեղ, Ներքին Հանդ, Արարատի մարզում՝ Պարույր Սեւակ, Գեղարքունիքում՝ Սոտք, Կութ, Նորաբակ, Ներքին Շորժա, Վերին Շորժա, Ակունք, Կախակն, Կուտական, Վայոց Ձորում՝ Ջերմուկ: Դրանց մի մասը Ադրբէջանի տիրապետութեան տակ է անցել դեռ 90-ականներին՝ Ղարաբաղեան առաջին պատերազմի ժամանակ, միւսը՝ 2021-22-ի ադրբէջանական ներխուժումների հետեւանքով:

Ադրբէջանը, ըստ փոխվարչապետի գրասենեակի, բարձրաձայնում է հետեւեալ տեղանունները՝ Բաղանիս Այրում, Աղաշը (ներքին) Ոսկեպար, Խեյրիմլի, Կըզըլ Հաջիլի: Տաւուշի մարզի այս գիւղերը հիմնականում անբնակ են: Այդ տարածքների մօտով են անցնում դէպի Վրաստան ճանապարհը եւ Հայաստան մտնող գազամուղը:

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻՆ ՊԱՇՏՕՆԱՊԷՍ...

հայկական կողմի հետ քննարկել ՀԱՊԿ-ի շուրջ իրավիճակը: Ռուսաստանի ատաքին գերատեսչութեան խօսնակ Մարիա Զախարովայի խօսքով՝ մտահոգութիւնները փարատելու նպատակով միջգերատեսչական խորհրդակցութիւններ անցկացնելու առաջարկ են արել Երեւանին, արձագանք դեռ չկայ: Արմէն Գրիգորեանը պնդեց, թէ այդ առաջարկից տեղեակ չէ: Կրկին քննադատեց ՀԱՊԿ-ը:

«Մենք պնդել ենք, որ Հայաստանը սահման ունի Ադրբէջանի հետ, ՀԱՊԿ-ը պնդել է, որ չունի եւ չի ճանաչել, եւ նոյնիսկ չի դատապարտել Հայաստանի տարածքի օկուպացիան: Ես կ'ասէի՝ այստեղ աւելի շատ անհրաժեշտութիւն կայ, որ Ռուսաստանի Դաշնութիւնը՝ որպէս ՀԱՊԿ անդամ, յստակեցնի իր դիրքորոշումները Հայաստանի հանդէպ, այլ ոչ թէ Հայաստանը», - շեշտեց նա:

Թէեւ վարչապետը անցած շաբաթ չէր բացառել ՀԱՊԿ-ից դուրս գալու հեռանկարը, Անվտանգութեան Խորհրդի քարտուղարն այդպէս էլ չյստակեցրեց՝ ռազմական դաշինքից դուրս գալու հարց Երեւանը քննարկում է, թէ ոչ: Փոխարէնը հերթական անգամ պնդեց՝ Հայաստանը դիվերսիֆիկացիայի քաղաքականութիւն է իրականացնում:

Քննարկւում է արդեօք ԵՄ-ին անդամակցելու յայտ ներկայացնելու հարցը՝ Արմէն Գրիգորեանն այդպէս էլ յստակ պատասխան չտուեց: Ազգային Ժողովի նախագահն էր անցած շաբաթ յայտարարել, թէ Հայաստանը մտածում է ԵՄ անդամ դառնալու ուղղութեամբ:

«Մեր սեղանին են Հայաստանի արտաքին քաղաքականութեանը վերաբերող բոլոր օպցիաները, եւ մենք լաւագոյն օպցիան կ'ընտրենք՝ հաշուի առնելով մեր անվտանգութեան միջավայրը, մեր տարածաշրջանը, մեր գործընկերներին», - նշեց նա:

Անվտանգութեան Խորհրդի քարտուղարը խորհրդարան էր եկել հանդիպելու Քաղաքացիական Պայմանագիր խմբակցութեանը: Փակ քննարկումը մօտ 2.5 ժամ տեւեց:

## ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ...

29. *Արեւ*, 18 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.440: «Սիլվա Կապուտիկեան Տիզրան Երկաթի մէջ», *Արեւ*, 23 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.445: «Սիլվա Կապուտիկեան Աղեքսանդրիա եւ Լուքսոր կ'այցելէ», *Արեւ*, 27 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.446: «Քերթողուհի Սիլվա Կապուտիկեանի այցելութիւնը Ազգային Առաջնորդարան եւ Պօղոսեան Ազգային Վարժարան», *Արաքս*, 2 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 8 (1778): «Քերթողուհի Սիլվա Կապուտիկեանի այցելութիւնը Ազգային Առաջնորդարան եւ Պօղոսեան Ազգ. Վարժարան», *Արեւ*, 4 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.450: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 7 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.112. 8 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.113:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏԻՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ



Խմբանկար Գահիրէի Ազգային Առաջնորդարանի մուտքին:

համատեղ կը խորանայ նաեւ տնտեսական փոխգործակցութիւնը:

Փաշինեան կը կարեւորէ Եգիպտոսի ջանքերը նոր վարչական քաղաքի կառուցումին համար եւ կը նշէ՝ որ Հայաստան եւս կը ծրագրէ կառուցել նոր քաղաք մը իբրեւ Աքատեմական Քաղաք:

Համաձայնութիւն ձեռք կը բերուի յառաջիկայ ամիսներուն Գահիրէի մէջ գումարել Հայաստան-Եգիպտոս Միջկառավարական Յանձնաժողովի վեցերորդ նիստը եւ անոր կցել գործարար ֆորում: [*Յիշեցնենք՝ որ Հայաստան-Եգիպտոս Միջկառավարական Յանձնաժողովի հինգերորդ նիստը տեղի ունեցած էր 2017 Սեպտեմբերին, Երեւանի մէջ:*]

**Այցելութիւն Ալ-Ազհարի Գերագոյն Իմամին**

Հանդիպում Ալ-Ազհարի Գերագոյն Իմամ, շէյխ Ահմատ Մոհամմատ Ալ-Թայէպի հետ:

Փաշինեան Գերագոյն Իմամին է կը նուիրէ Երեւանի Մատենադարանին մէջ պահուող 1719 թուականի Քորանի առաջին սուրայի կրկնօրինակը:

**Այցելութիւն հայկական եկեղեցի եւ Առաջնորդարան**

Կ'այցելէ Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին: Զինքը կը դիմաւորէ Եգիպտոսի Հայոց Թեմի առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեան, որ բացատրութիւններ կու տայ եկեղեցիի պատմական եւ կառուցումային յատկանիշներուն մասին: Սրբազան առաջնորդին կ'ուղեկցի Եգիպտոսի Հայ Կաթողիկէ Համայնքի առաջնորդ Արհ. Տ. Գրիգոր Օգոստինոս Եպս. Գուսան:

Դուրս գալով եկեղեցիէն, վարչապետը ծաղկեփունջ կը դնէ Եղեռնի յուշակոթող խաչքարին առջեւ:

Ապա կ'անցնի Ազգային Առաջնորդարանի դահլիճ, ուր Սրբազան առաջնորդի բացատրութիւններէն ետք կը սկսի հաւաքոյթը եգիպտահայ գաղութի ներկայացուցիչներուն հետ (ներկայ էր նաեւ տողերուս հեղինակը):

Հայաստանի վարչապետը կ'ունենայ համապարփակ եւ ընդգրկուն յանպատրաստից ելոյթ մը, ամբողջապէս բաց ու մտերիմ ոճով:

Խօսքը կը սկսի շեշտելով, որ իր պաշտօնական հանդիպումներուն ընթացքին ականատես եղաւ այն շատ լաւ տպաւորութեան՝ զոր եգիպտահայերը թողած են Եգիպտոսի մէջ:

Խօսքը կարելի է բաժնել երեք մասերու: Առաջինը՝ հրաւէր մըն է խորքային մտածողութեան, երկրորդը՝ Ազրպէյճան, երրորդը՝ Սփիւռք:

Բարդ ժամանակներ կ'ապրինք, ըսաւ, ներկան բնորոշելով իբրեւ «ճգնելու ժամանակ», այսինքն՝ ժամանակն է ճգնելու, խորհելու: Շեշտեց՝ որ պէտք է ընդլայնենք մտածելու մեր սահմանները եւ չսահմանափակուինք մենք մեզմով, եւ թէ կարեւոր է որեւէ նիւթի շուրջ ցոյց տալ «ռեֆլեքս», ինքնահայեցումի գործընթացք: Որովհետեւ կ'ապրինք շրջադարձային հանգրուան մը, երբ դժբախտաբար, ոչ մեր որոշումով, տեղի կ'ունենայ աշխահակարգի փլուզում:

Կ'աւելցնէ՝ որ երբ կը տրուի հարցում մը, կարծեք ան տրուած է արդէն պատրաստ պատասխանի համար: Կու տանք հարցում՝ որուն պատասխանը գիտենք: Պէտք է տրամադրուած ըլլանք քննարկել հարցերը: Կը կարծենք՝ որ կան պատասխանները, հետեւաբար, կը գտնուինք յաւերժական պատասխաններու տիրոյթին մէջ:

Բաւարար չէ հայրենասիրութիւնը, ըսաւ, այլ կարեւոր է հասկնալու կարողութիւնը: «Էներգիան» օգտագործենք հասկնալու համար խորքը: Օրինակ, հասկնալ Ցեղասպանութեան խորքը: Ցեղասպանութեան մասին կան բազմաթիւ գիրքեր, բայց կը պակսի խորքը: Այսինքն՝ ինչո՞ւ կատարուեցաւ Ցեղասպանութիւնը: Նման դէպքեր կը կատարուին ժամանակ առ ժամանակ, բայց չենք փնտռեր անոնց խորքը: Չենք հարցներ՝ ինչո՞ւ կատարուեցաւ:

Յաճախ մեր ամբողջ քննադատութիւնը կը սահմանափակենք մէկ բառով, օրինակ՝ դաւաճան, որ կ'արգիլէ մեզի մտածել եւ մեկնաբանել: Պէտք է ձերբազատուինք այս տեսակ դիւրին քննադատութիւններէ, եզրակացուց Փաշինեան:

Վարչապետը կ'անցնի ազրպէյճանական հարցին, իր խօսքը կեդրոնացնելով քանի մը կէտերու շուրջ:

1. Հայաստան անընդհատ կը մեղադրուի ապաշրջափակումի հարցը խոչընդոտելու մէջ եւ առաջ կը նետուի Զանգեզուրի միջանցք կոչուած ճանապարհը: Տեղեկացուց՝ որ ասոր հակադարձելու համար է որ Հայաստանի Կառավարութիւնը նախագծեց Խաղաղութեան Խաչմերուկ ծրագիրը (նախագիծը կարելի է բեռնել Կառավարութեան կայքէջէն https://www.gov.am/am/crossroad), իբրեւ տարածաշրջանային բաց երթեւեկութեան միջոց:

2. Ազրպէյճան կը փորձէ անընդհատ «էսկալացիայի» նիւթեր ստեղծել: Ան Հայաստանին կը մեղադրէ նոր զէնքեր գնելու մէջ, մինչդեռ մեր ծառայութիւնները հաստատած են՝ որ ան մեզմէ տասնեակներ աւելի քանակութեամբ զէնք կը շարունակէ գնել Իսրայէլէն, Թուրքիայէն, Ռուսաստանէն, Պուլկարիայէն, Սերպիայէն: Ան աղմուկ կը բարձրացնէ իր սեփական գնումները թաքցնելու համար:

3. Մեզի համար տարածքային ամբողջականութեան հիմքը Ալմա-Աթայի համաձայնագիրն է: Ազրպէյճան չի յստակեցներ իր դիրքաւորումը, ամէն անգամ նոր քարտէզներ առաջ մղելով:

4. Մենք եւս կրնանք պահանջներ ներկայացնել եւ հարցեր բարձրացնել Ազրպէյճանին: Օրինակ, Պաքուի քաղիւղի հայ սեփականատէրերուն հարցը: Բայց ասիկա մեր քաղաքականութիւնը չէ:

Վերջապէս, վարչապետը առաջ կը մղէ Սփիւռքի հարցը: Սփիւռքի դերը գտնելու խնդիր ունինք, ըսաւ ան: Շարունակեց՝ թէ Սփիւռքի մէջ ալ Սփիւռք կայ, այսինքն՝ շատեր կը գտնեն Սփիւռքի հայկական կառոյցներէն, իրենց հանգիստը գտնելով այլուր:

Իբրեւ պետութեան ներկայացուցիչ, Փաշինեանի համար Հայաստան-Սփիւռք յարաբերութիւններուն համար առաջնային է հիմնարկային (ինստիտուցիոնալ) կառուցուածքը: Այս առումով, շեշտեց՝ որ գոյութիւն ունեցող միակ կառոյցը Համահայկական Հիմնադրամն է: Միայն ան է՝ որ պետական մակարդակով կ'ապահովէ Հայաստանի եւ Սփիւռքի յարաբերութիւնը: Վարչապետը նոյնիսկ փափուկ քննադատութիւն մը ուղղեց սփիւռքահայութեան, երբ ակնարկեց որ հիմնադրամի հիմնադրութեան թուականէն (1992) մինչեւ այսօր, նուիրատուներու նշանակալի տոկոս մը կը կազմեն Հայաստանի եւ Արցախի մեծահարուստները:

Քանի մը ներկաներու հարցումներուն պատասխանելէ եւ շնորհակալական խօսքէ ետք կ'աւարտի հանդիպումը:

**Այցելութիւն եգիպտական թանգարան**

Եգիպտոս կատարած պաշտօնական այցելութեան վերջին կայանը կ'ըլլայ Եգիպտական Քաղաքակրթութեան Ազգային Թանգարանը, ուր կը շրջագայի թանգարանի գործադիր տնօրէն Ահմատ Ֆարուք Ղոնէյմի ուղեկցութեամբ եւ բացատրութիւններով:

**Մեկնում**

Փաշինեան եւ պատուիրակութիւնը երեկոյեան կը մեկնին Երեւան:

Ս.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1962 ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՄԱՐՏ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٦٢ الخميس ٢٨ مارس ٢٠٢٤


## ԿԱՐՕ ՓԱՅԼԱՆ ԵՒ ԱՌԱՋՆԱՅԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Իբրեւ Թուրքիոյ Ժողովրդավարական Կուսակցութեան անդամ, Կարօ Փայլան 2015-2023-ին անդամ էր Թուրքիոյ Խորհրդարանին:

Ինծի նման թրքերէն չիմացողներս ոչ-առաջնային հայերէն աղբիւրներէ կ'իմանայինք՝ որ ան Խորհրդարանի մէջ կը պահանջէր հայոց ցեղասպանութեան ճանաչում եւ կ'արժանանար թուրքերուն բացասական վերաբերմունքին: Կատարեալ պատկեր մը հայերուս համար՝ մենք միշտ լաւ, անոնք միշդ վատ կտրուկ ու յաւերժական երկուութեամբ: Չկար ամբողջական Փայլանը հասկնալու կարելիութիւն:

Այս սահմանափակ տեղեկութիւններուն հիման վրայ, Փայլանը յետքայլ մը կը նկատէի Հրանդ Տինքի նկատմամբ, որ հայոց ցեղասպանութեան հարցը նոյնպէս կը բարձրացնէր Թուրքիոյ ներսէն (ի տարբերութիւն մեզի նման դուրսէն պոռացողներու), բայց մէկ կողմէն զայն ընդունելով իբրեւ լայն հասկացողութեամբ մշակութային գործօն, եւ միւս կողմէն զայն անպայմանօրէն կապելով Թուրքիոյ ժողովրդավարացումի պայքարին հետ, հայոց ցեղասպանութեան հասկացողութիւնը սերտօրէն կապելով ժողովրդավար Թուրքիոյ հետ: Տինք կ'ուզէր որ ցեղասպանութիւնը տեղ գտնէր թրքական ինքնութեան մէջ, ինչպէս մէկ պահ մը ուզեց ընել Օրհան Փամուք, այլ ոչ իբրեւ ինքնութեան հակակշիռ տարր, զոր թուրքերը պարտաւոր են ընդունիլ առանց հասկնալու: Ընդունիլ ստիպողաբա՞ր՝ զոր հազիւ թէ ընդունիլ կարելի է համարել, թէ ընդունիլ հասկնալով:

Յետոյ կամաց-կամաց սկսանք հասկնալ, որ Փայլան եւս հայոց ցեղասպանութիւնը ուզած է կապել ժողովրդավարական գործընթացքի հետ եւ մտցնել այդ տրամաբանութեան մէջ: Երբ սկսանք ասիկա հասկնալ, իր անունը սկսաւ դուրս մնալ աւանդական մամուլէն:

Այժմ, Ուաշինկթոնի մէջ ան կը տանի լոպիական գործունէութիւն՝ ի նպաստ Հայաստանի:

2023 Հոկտեմբեր 9-ին Պետրոս Ղազարեան հարցազրոյց կը վարէ Փայլանի հետ Հայաստանի *Հանրային հեռատեսիլ*էն, եւ 2024 Մարտ 1-ին Արման Բաբաջանեան կը զրուցէ *Առաջին լրատուական* առցանց կայքէն: Երկու զրոյցներուն մէջ Փայլան ի յայտ կը բերէ կայուն համոզումներու տէր անհատականութիւն մը, որուն կարծիքները կարելի է ամփոփել հետեւեալ կէտերուն մէջ.

1. Կարեւոր է տեսնել մեծ պատկերը: Ռուսաստան չ'ուզեր որ Հայաստանը անկախ ըլլայ եւ ժողովրդավար երկիր մը դառնայ, որովհետեւ ժողովրդավարութիւնը օրինակ կրնայ ծառայել շուրջի երկիրներուն: Ռուսաստան կ'ուզէ Հայաստան մը կառուցել Պելառուսի օրինակով: Ռուսաստան չ'ուզեր որ հայ-ազրպէյճանական խաղաղութիւնը կայանայ, քանի որ պիտի կորսնցնէ իր ունեցած ազդեցութիւնը Կովկասի մէջ: Ասիկա կանանչ լոյս տուած է Ազրպէյճանին դիմելու առաւելապաշտական պահանջներու Հայաստանէն:

Թուրքիան պատասխանատուութիւն չէ ստանձնած Կովկասի խաղաղութեան համար, խաղը թողելով Ռուսաստանին: Եւ ասիկա պայմանաւորուած է Ռուսաստան-Թուրքիա յարաբերութիւններով: Թուրքիա կազ կ'առնէ Ռուսաստանէն, առեւտուր կ'ընէ հետը: Իսկ Ռուսաստան գտնուելով պատժամիջոցներու տակ, զարգացուցած է առեւտուրը Թուրքիոյ հետ: Այսինքն, ռուս-ուքրաինական պատերազմէն ետք սերտացան ռուս-թրքական յարաբերութիւնները: Այս պատճառով Փութին պահանջներ ունի Էրտողանէն եւ չ'ուզեր որ Էրտողան կառուցողական դեր խաղայ Կովկասի մէջ:

2. Ռուս-թրքական այս նոր յարաբերութիւններուն պատճառով է որ Ռուսաստան չ'ուզեր նաեւ Թուրքիա-Հայաստան ճանապարհի բացումը: Այդ ճանապարհի բացումով պիտի տկարանայ Հայաստանի կախուածութիւնը Ռուսաստանէն:

Հայ եւ թուրք ժողովուրդներուն միջեւ նախապաշարումներ կան, որովհետեւ չեն ճանչնար իրարու: Հանդիպումներու միջոցով կրնան փարատուիլ նախապաշարումները: Բայց եթէ գոց է սահմանը՝ ինչպէ՞ս կրնան երկու ժողովուրդները հանդիպումներ ունենալ:

3. Թուրքիա կրնայ կառուցողական դեր խաղալ խաղաղութեան համար, թէ՛ Հայաստան-Թուրքիա ճանապարհը բանալու առումով, եւ թէ Ազրպէյճանին մղելու խաղաղութեան պայմանագիր ստորագրել Հայաստանի հետ: Թուրքիա այսպէս կրնայ ընել՝ եթէ Արեւմուտքէն բան մը ունենայ առնելիք:

Օրինակ մը: Յունաստանի եւ Թուրքիոյ յարաբերութիւնները անցեալ տարի շատ վատ էին: Ինչպէ՞ս եղաւ որ այս տարի խիստ լաւացան եւ Էրտողանը գնաց հանդիպեցաւ Միցոթաքիսին: Եղաւ այն՝ որ 2022-ին Յունաստանը աւելցուց Ամերիկայի եւ ՆԱԹՕ-ի ռազմական գոյութիւնը Յունաստանի մէջ: Եւ երբ Թուրքիան պէտք ունեցաւ Ամերիկայէն գնել F16-ները, Ամերիկան, Յունաստանի պահանջով, պարտադրեց Թուրքիային լաւ յարաբերութիւններ ունենալ Յունաստանի հետ:

Պէտք է արեւմտեան երկիրները այս տեսակ պահանջներ ունենան Էրտողանէն որպէսզի խաղայ կառուցողական քաղաքականութիւն տարածաշրջանին մէջ եւ Հայաստանի հետ: Մենք չունինք Յունաստանի լծակը: Բայց պէտք է մտածել ու գործել այս ուղղութեամբ, այսինքն, արեւմտեան երկիրներուն մօտ պէտք է գտնել լծակներ՝ որպէսզի անոնք պարտադրեն Էրտողանին դիմելու այդ քայլին: Հայաստանի համար շատ կարեւոր է բանալ դէպի Թուրքիա ճանապարհը:

4. Մենք հայերս կը տեսնե՞նք այս մեծ պատկերը: Դժբախտաբար՝ ո՛չ: Փաշինեանը կը մեղադրենք, ուրիշներ կը մեղադրենք, զիրար կը մեղադրենք: Կատարուածին համար կը պոռանք բայց չենք նայիր ապագային: Ընտրուած վարչապետ Փաշինեանին հանելէ զատ ուրիշ բանի մասին չի մտածեր ընդդիմութիւնը: Եթէ Հայաստանի համար վտանգ կայ, ժողովուրդը թող միանայ թշնամիին դէմ եւ ոչ թէ կառավարութեան: Այս բաժանումը մեր ամենամեծ տկարութիւնն է:

Անշուշտ բոլորս ալ խորապէս յուզուեցանք Արցախով: Ես ալ կ'ուզեմ որ Արցախը նորէն հայկական ըլլայ: Բայց այսօր Հայաստանը կանգնած է վտանգի առջեւ, եւ ասոր վրայ է որ պէտք է կեդրոնանանք: Ասիկա չի նշանակեր որ համաձայն ենք Փաշինեանի ամէն ըրածներուն: Խնդիրը Փաշինեանը չէ: Խնդիրը Հայաստանն է: Այս պատճառով պէտք է միանանք եւ միասնաբար արգիլենք այս մեծ վտանգը: Այս ուղղութեամբ միասնութիւն չկայ:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՓԱՇԻՆԵԱՆԻ ԵՒ ՍՏՈԼՏԵՆԲԵՐԳԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Կառավարութիւնում Մարտի 19-ին տեղի է ունեցել վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղար Եէնս Ստոլտենբերգի ընդլայնուած կազմով հանդիպումը:

Վարչապետը ողջունել է պարոն Ստոլտենբերգի այցը մեր երկիր եւ նշել. «Յարգելի գլխաւոր քարտուղար, ողջունում եմ Ձեր եւ Ձեր պատուիրակութեան այցը Հայաստանի Հանրապետութիւն: Շատ ուրախ եմ այս այցի համար, որովհետեւ ակնյայտօրէն այն շատ լաւ հնարաւորութիւն է քննարկելու մեր լայնածաւալ օրակարգը, ինչը թերեւս հէնց նոր արեցինք: Իհարկէ, Ձեր պատուիրակութեան կազմում շատ ծանօթ մարդիկ կան, ովքեր պարբերաբար այցելում են Հայաստանի Հանրապետութիւն, մենք թարմ տեղեկատուութիւն ենք տրամադրում նրանց, նրանք թարմ տեղեկատուութիւն են տրամադրում մեզ առկայ հարցերի ու քաղաքականութիւնների վերաբերեալ: Իհարկէ, մենք հետաքրքրուած ենք ՆԱՏՕ-ի հետ համագործակցութեան խորացմամբ, եւ յոյս ունեմ, որ Հայաստանի համար անհատականօրէն յարմարեցուած ծրագիրը կ'ընդունուի հնարաւորինս շուտ: Դուք գիտէք, որ այժմ մենք գտնւում ենք մասշտաբային բարեփոխումների փուլում, եւ յոյս ունեմ, որ այդ ծրագիրն օգտակար կը լինի նաեւ մեր արտաքին օրակարգի համար: Եւս մէկ անգամ, բարի գալուստ»:

Իր հերթին Եէնս Ստոլտենբերգը նշել է. «Շնորհակալութիւն ինձ եւ իմ պատուիրակութեանը հիւրընկալելու համար: Մենք Հայաստանի հետ փոխգործակցութիւնը բարձր ենք գնահատում: Դուք երկար տարիներ մասնակցել էք ՆԱՏՕ-ի տարբեր առաքելութիւնների եւ գործողութիւնների, մենք գնահատում ենք ձեր մասնակցութիւնը Կոսովոյի առաքելութեանը: Մենք յոյս ունենք, որ այժմ կարող ենք առաւել խորացնել եւ ուժեղացնել մեր փոխգործակցութիւնը, ներառեալ Հայաստանի համար անհատականօրէն յարմարեցուած ծրագրի ընդունման միջոցով: Իհարկէ, մենք աջակցում ենք ձեր ինքնիշխանութեանը եւ տարածքային ամբողջականութեանը: Մենք նաեւ աջակցում ենք ձեր ջանքերը՝ միտուած առաւել անկախ արտաքին քաղաքականութեան զարգացմանը, ինչը

↳ 4

ՖՐԱՆՍԱ

## ՖՐԱՆՍԻԱՅԻ ՎԱՐՉԱՊԵՏՆ ԱԴՐԲԷՋԱՆԻՑ ՊԱՀԱՆՋԵԼ Է ՅԵՏ ՔԱՇԵԼ ԶՕՐՔԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՕԿՈՒՊԱՑՈՒԱԾ ՏԱՐԱԾՔՆԵՐԻՑ

Ֆրանսիայի վարչապետ Գաբրիէլ Ատալն Ադրբէջանից պահանջել է յետ քաշել իր զօրքերը Հայաստանի օկուպացուած տարածքներից:

Ինչպէս հաղորդում է *Արմենպրէս*ը, վկայակոչելով *Le Figaro*-ին, Ֆրանսիայի վարչապետն այդ մասին ասել է Ֆրանսիայի հայկական կազմակերպութիւնների համակարգող խորհրդի ամենամեայ ընթրիքի ժամանակ ունեցած ելոյթում՝ նշելով, որ Ադրբէջանի նախագահն ինքն է խոստովանել, որ ադրբէջանական ուժերն առաջխաղացում ունեն Հայաստանի տարածքի մի քանի կէտերում:

«Այսօր մեր խնդիրը կայանում է նրանում, որ օգնենք Հայաստանին պաշտպանել իր անկախութիւնը, իր ժողովրդավարութիւնը, սուվերէնութիւնն ու տարածքային ամբողջականութիւնը», - յայտարարել է Ատալը:

Ֆրանսիայի վարչապետը նաեւ յաւելել է, որ Ռուսաստանը ցանկանում է պատժել Հայաստանին իր խաղաղութեան ձգտման, իր ինքնիշխանութեան նկատմամբ յարգանքի, այն սկզբունքների համար, որոնք Մոսկուան անարգում է Ուկրաինայում:

Աթալը յիշատակել է Հայաստանի միանալը Միջազգային Քրէական Դատարանին՝ ընդգծելով, որ Հայաստանն ընտրել է ժողովրդավարութիւնը եւ իրաւական պետութիւն լինելու ճանապարհը:

Ֆրանսիայի վարչապետը շեշտել է, որ Մոսկուան չդատապարտեց Ադրբէջանի կողմից ուժի կիրառումը Լեռնային Ղարաբաղում, որտեղ մինչեւ անցած տարեվերջ մեծամասնութեամբ հայեր էին բնակւում՝ յաւելելով, որ այսպէս կոչուած ռուսական խաղաղապահ ուժերը թոյլ տուեցին, որ այնտեղ հումանիտար ճգնաժամ լինի:

# ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

## (Ծննդեան 105-ամեակին առիթով)

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

**ԿԻՐԱԿԻ, 24 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Մելգոնեան Մանկապարտէզ**

Առաւօտեան, Մելգոնեան Մանկապարտէզի սրահ, ժողովրդային հանդիսութիւն, նախաձեռնութեամբ Ազգային Իշխանութեան եւ հովանաւորութեամբ յարանուանութիւններու պետերուն: Բացումի խօսք՝ Աղեքսանդրիոյ Առաջնորդական Փոխանորդ Զաւէն Վրդ. Չինչինեան, խօսք՝ մտաւորական Ստեփան Շահպազ, գեղարուեստական յայտագիր(30):

**Վերադարձ Գահիրէ**

Կէսօրէ ետք ժամը 2.20-ի գնացքով Սիտի Կապէրէն կը մեկնի Գահիրէ: Մեծ թիւով ազգայիններ կայարան եկած էին ողջերթի համար(31):

**Կոկանեան Սրահ**

Երեկոյեան ժամը 8, Կոկանեան Սրահ, Վարդանանցի առիթով թատերական ներկայացում՝ *Աւարայրի արծիւը*: Պատուոյ հիւր՝ Կապուտիկեան, որ վերջաւորութեան բեմ բարձրանալով կ’արտասանէ իր խօսքը(32):

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 25 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Լուքսոր**

Կէսօրին օդանաւով կը մեկնի Լուքսոր առաջնորդութեամբ եգիպտաբան Արա Պոյաճեանի, ուղեկցութեամբ Էտմոն Կոտալազեանի, Վարդավառ Զէյթունցեանի եւ Վարդուհի Թորիկեանի(33):

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 26 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Վերադարձ Գահիրէ**

Գիշերը օդանաւով կը վերադառնայ Գահիրէ(34):

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 27 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Երուանդ Մսրլեան եւ Արտաշէս Գարտաշեան**

Առաւօտեան պանդոկ կու գայ *Սաւառնակ*ի խմբագիր Երուանդ Մսրլեան եւ կը յանձնէ Կապուտիկեանի անունով հայերէն եւ ֆրանսերէն այցետոմսեր, զորս տպագրած էր իր սեփական Ոսկետառ տպարանին մէջ:

Պանդոկ կու գայ Արտաշէս Գարտաշեան եւ կը յանձնէ ծրար մը՝ որ կը բովանդակէ հանգուցեալ գրողներու եւ գործիչներու նամակներ, լուսանկարներ եւ ինքնագիրներ, խնդրելով որ զայն փոխանցէ Երեւանի թանգարան(35):

**Սիմոն Սամսոնեանի արուեստանոց**

Այցելութիւն Սիմոն Սամսոնեանի աշխատանոց, ուր Սամսոնեան կը նկարէ Կապուտիկեանի դիմանկարը:

Եկած էր Գահիրէի *Ալ-Մասաա* արաբերէն օրաթերթի թղթակից Քամալ Ալ-Կուէյլի, որ բանաստեղծուհիին հետ ունեցած տեսակցութիւնը կը հրատարակէ լրագիրի Մարտ 1 թիւին մէջ:

Եկած էր նաեւ աչազուրկ աշուղ Յարութիւն Ֆիլեան, որ կ’արտասանէ իր բանաստեղծութիւնները(36):

**Եգիպտական թանգարան**

Առաւօտեան այցելութիւն եգիպտական թանգարան, ընկերակցութեամբ եգիպտաբան Արա Պոյաճեանի:

**Կէսօրուայ ճաշ**

Կէսօրուայ ճաշ Նեղոսի ափին գտնուող Ալ-Նահր քազինոյին մէջ, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան վարչութեան հրաւէրով:

**Յուսաբեր**

Երեկոյեան ժամը 9.15, Հելիոպոլսոյ Յուսաբեր ակումբի Լ. եւ Ս. Գարագաշեան սրահ, հանդիսութիւն եւ ընդունելութիւն ի պատիւ Կապուտիկեանի, կազմակերպութեամբ Համազգայինի Գահիրէի վարչութեան: Ներկայ էին երեք յարանուանութիւններու ներկայացուցիչներ, Ազգային Իշխանութեան եւ հոգաբարձութիւններու անդամներ, ազգային եւ յարանուանական վարժարաններու տնօրէններ, բարեսիրական, մշակութային եւ մարզական բոլոր կազմակերպութիւններու, հաստատութիւններու եւ մամուլի ներկայացուցիչներ:

Յայտագիր.

Բացումի խօսք՝ Համազգայինի ատենապետ Եփրեմ Թուշեան:

Խօսք՝ Բենիամին Թաշեան:

Երեք արտասանութիւններ՝ Օր. Ս. Մահսերեճեան, Օր. Ռ. Չէքիճեան, Հայկազ Գալուստեան:

Վեց խմբերգներ, Համազգայինի Քնար երգչախումբ, խմբավար՝ Երուանդ Ալեքսանեան, մեներգ՝ Օր. Մ. Յակոբեան, Օր. Հ. Չիթճեան, Պր. Յ. Գասպարեան:

Քսիլոֆոնի նուագ, նուագող՝ Երուանդ Ալեքսանեան, դաշնակի նուագակցութիւն՝ Տիկ. Ս. Նշանեան:

Խորհրդապատկեր՝ *Պատգամ*, Կապուտիկեանի *Խօսք իմ որդուն* բանաստեղծութեան վրայ, պատրաստութիւն՝ Նուարդ Թիրեաքեան:

Խօսք՝ Սարգիս Զէյթլեան:

Ճառ՝ Սիլվա Կապուտիկեան (շուրջ մէկ ժամ)(37):

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 28 ՓԵՏՐՈՒԱՐ**

**Հ.Բ.Ը.Միութեան կեդրոն**

Կէսօրէ ետք, Հ.Բ.Ը.Միութեան կեդրոն, հանդիսութիւն ի պատիւ Կապուտիկեանի:

Յայտագիր.

Բացումի խօսք՝ Հայկազ Քիւրքճեան:

Ուղերձ՝ Յակոբ Սեպուհեան:

Արամ Խաչատրեան, Սոնաթին, դաշնակ՝ Շողիկ Տատրեան:

Սիլվա Կապուտիկեան, *Ներբող Հայաստանին*, արտասանութիւն՝ Լիւսի Սարգիսեան:

Գուսան Աշոտ, երգ մը, մեներգ՝ Միքայէլ Գարանֆիլեան:

Վահան Թէքէեան, *Եկեղեցին հայկական*, արտասանութիւն՝ Արթօ Պետիկեան:

Անդրանիկ Ծառուկեան, *Հէյ ճան Երեւան*, արտասանութիւն՝ Արթօ Պետիկեան:

Խօսք՝ Ալեքսանդր Սարուխան:

Խօսք՝ Հ.Բ.Ը.Միութեան Լոնտոնի մասնաճիւղի ատենապետ Սարգիս Քիւրքճեան:

Խօսք՝ Սիլվա Կապուտիկեան:

Փակումի խօսք՝ Մամբրէ Արք. Սիրունեան:

**Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն**

Երեկոյեան ժամը 9, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան սրահ, ողջերթի խրախճանք, կազմակերպութեամբ Կոկանեան Սրահի եւ Գեղարուեստասիրաց Միութեան վարչութիւններուն: Հանդիսավար՝ Գեղարուեստասիրացի ատենապետ Վահագն Տեփոյեան:

Յայտագիր.

Խօսք՝ Տիգրան Երկաթի ատենապետ Բենիամին Մամուրեան, Աղեքսանդրիոյ պատուիրակներէն Մ. Քիւփէլեան, կարգադիր յանձնախումբի անունով Ալեքսանդր Սարուխան, եւ Սիլվա Կապուտիկեան(38):

**ՈՒՐԲԱԹ, 1 ՄԱՐՏ**

**Մեկնում**

Առաւօտեան ժամը 10.15, Air France օդանաւով կը մեկնի Փարիզ: Օդակայան եկած էին Կոկանեան Սրահի, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան, Հայկական Ընթերցասրահի, Բարեգործականի, Համազգայինի եւ Տիգրան Երկաթի ներկայացուցիչները, Նուպարեան Ազգային Վարժարանի բարձր դասարանի աշակերտները իրենց տնօրէնին եւ ուսուցիչներուն առաջնորդութեամբ(39):

**Այլ այցելութիւններ**

Գահիրէի մէջ Կապուտիկեան այցելած է նաեւ Աշոտ Զօրեանի արուեստանոցը, ուր Զօրեան նկարած է անոր դիմանկարը: Կարելի չեղաւ գտնել այցելութեան թուականը(40):

Այցելած է նաեւ Շաքէ Ալպանի սթուտիոն եւ լուսանկարուած(41):

(Շար. 4)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

30. «Սիլվայի ելոյթներն ու այցելութիւնները քաղաքիս մէջ», *Արաքս*, 2 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 8 (1778): «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 8 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.113:

31. «Սիլվայի ելոյթներն ու այցելութիւնները քաղաքիս մէջ», *Արաքս*, 2 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 8 (1778): «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 8 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.113. 10 Մայիս 1965, Ծ. տարի, թիւ 14.114:

32. *Արեւ*, 22 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.444: «Սիլվա Կապուտիկեան Աղեքսանդրիա եւ Լուքսոր կ’այցելէ», *Արեւ*, 27 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.446: Ա., «*Աւարայրի արծիւը* թատերախաղի բեմադրութիւնը», *Արեւ*, 5 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.451:

33. «Սիլվա Կապուտիկեան Աղեքսանդրիա եւ Լուքսոր կ’այցելէ», *Արեւ*, 27 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.446: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 12 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.116. 13 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.117. 14 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.118:

34. «Սիլվա Կապուտիկեան Աղեքսանդրիա եւ Լուքսոր կ’այցելէ», *Արեւ*, 27 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.446: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 14 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.118. 22 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.125:

35. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 24 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.126:

36. «*Ալ Մասա* օրաթերթի թղթակցին տեսակցութիւնը բանաստեղծուհի Ս. Կապուտիկեանի հետ», թարգմ.՝ Ի. Տ., *Յուսաբեր*, 11 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 286: «Սիլվա Կապուտիկեանի տեսակցութիւնը *Ալ Մեսա*յի թղթակիցին հետ», *Արեւ*, 16 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.461: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 5 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.089. 6 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.090. 24 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.126: Սամսոնեանի հետ հանդիպումին թուականը *Յուսաբեր* կը նշէ Փետրուար 28, բայց «Քարաւանները դեռ քայլում են»-ի մէջ Կապուտիկեան վստահ է՝ որ հանդիպումը տեղի ունեցած է Յուսաբերի Փետրուար 27-ի ելոյթէն անմիջապէս առաջ:

37. *Յուսաբեր*, 23 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 275: «Սիլվա Կապուտիկեանի երէկուան այցելութիւններն ու հանդիպումները», *Արեւ*, 28 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.447: «Համաժողովրդային ջերմ ընդունելութիւն Ս. Կապուտիկեանի», *Յուսաբեր*, 28 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 277: «Տեսարաններ Ս. Կապուտիկեանի ի պատիւ ընդունելութենէն», *Յուսաբեր*, 1 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 278: «Բ. Թաշեանի խօսքը (Սիլվա Կապուտիկեանի ի պատիւ ընդունելութեան առիթով)», *Յուսաբեր*, 2 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 279: «Տեսարաններ Ս. Կարպուտիկեանի ի պատիւ ընդունելութենէն», *Յուսաբեր*, 2 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 279: «Տեսարաններ Ս. Կապուտիկեանի ի պատիւ ընդունելութենէն», *Յուսաբեր*, 4 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 280: «Տեսարաններ Ս. Կապուտիկեանի ի պատիւ ընդունելութենէն», *Յուսաբեր*, 5 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 281: «Ս. Կապուտիկեանի խօսքը (խօսուած Համազգայինի ընդունելութեան առիթով)», *Յուսաբեր*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 285. 11 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 286. 13 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 287. 13 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 288: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 31 Մարտ 1965, Ծ. տարի, թիւ 14.085:

38. *Արեւ*, 28 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.447: «Կապուտիկեան այս առաւօտ մեկնեցաւ Փարիզ», *Արեւ*, 1 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.448: Ս. Շալճեան, «Բարեգործականի թէյասեղանը», *Արաքս*, 9 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 9 (1779):

39. «Սիլվա Կապուտիկեանի երէկուան այցելութիւններն ու հանդիպումները», *Արեւ*, 28 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.447: *Արեւ*, 28 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.447: «Կապուտիկեան այս առաւօտ մեկնեցաւ Փարիզ», *Արեւ*, 1 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.448: «Սիլվա Կապուտիկեանի հրաժեշտի խօսքը սփիւռքահայութեան», *Արեւ*, 2 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.449:

40. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 2 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.087:

41. *Արեւ*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.455: «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 5 Ապրիլ 1965, Ծ. տարի, թիւ 14.089:

ՌՈՒՍԱՍՏԱՆ

## ՈՐՔԱՆ Է ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ ԱՊՐՈՂ ՀԱՅԵՐԻ ԹԻՒԸ

Ռուսաստանի նախագահի մամուլի քարտուղար Դմիտրի Պեսկովը Մարտի 6-ին պնդել է, որ Ռուսաստանում աւելի շատ հայ է ապրում, քան Հայաստանում:

*Փաստերի ստուգման հարթակն* ուսումնասիրել է Ռուսաստանի եւ Հայաստանի վիճակագրական տուեալները՝ պարզելու այդ երկրում ապրող հայերի թիւը:

**Ռուսաստանում վերջին մարդահամարի տուեալները**

Ռուսաստանի պետական վիճակագրական դաշնային ծառայութեան համաձայն, վերջին մարդահամարն այդ երկրում անցկացուել է 2020-2021 թուականներին, տուեալները վերջնական ամփոփուել ու հրապարակուել են 2022 թուականին. ըստ այդ մարդահամարի, Ռուսաստանում հայերի թիւը կազմել է մօտ 950,000: ↬ 4

ԺՆԵՒ

## ԱԼԷՆ ՍԻՄՈՆԵԱՆԻ ԳԼԽԱՒՈՐԱԾ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԺՆԵՒՈՒՄ ՄԱՍՆԱԿՑԵԼ Է ՄԻՋԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ 148-ՐԴ ՎԵՀԱԺՈՂՈՎԻ ԲԱՑՄԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆԸ

Հայաստանի Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեանի գլխաւորած պատուիրակութիւնը Մարտի 24-ին Ժնեւում մասնակցել է Միջխորհրդարանական Միութեան 148-րդ վեհաժողովի բացման արարողութեանը:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին հաղորդագրութիւն է տարածել Հայաստանի ԱԺ հասարակայնութեան հետ կապերի եւ հաղորդակցութեան վարչութիւնը:

Բացման խօսքով հանդէս են եկել Միջխորհրդարանական Միութեան նախագահ Տուլիա Էքսոնը, գլխաւոր քարտուղար Մարտին Չունգոնգը, Երիտասարդ խորհրդարանականների ↬ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿԳՄՍ ՆԱԽԱՐԱՐԸ ԱԿԱԴԵՄԻԱԿԱՆ ՔԱՂԱՔԻ ՄԱՍԻՆ

Հայաստանի ԿԳՄՍ նախարար Ժաննա Անդրէասեանը Մարտի 24-ին Ֆէյսբուքի իր էջում գրել է.

«Սիրելի դասախօսներ, գիտաշխատողներ, ուսանողներ, ուզում եմ երկու բան յստակեցնել. այս պահին որեւէ բան տեղի չի ունենում որեւէ բուհի կամ ինստիտուտի հետ. մենք իրական ու խորքային քննարկման պրոցեսում ենք, որ հասկանանք՝ ինչպէս աւելի արդիւնաւէտ դարձնենք բարձրագոյն կրթութիւնն ու գիտութիւնը, աւելի փոխկապուած, աւելի որակեալ, աւելի մրցունակ՝ առաջին հերթին մեր ուսանողների եւ հանրութեան համար: Հետեւաբար, բոլոր այն ահագուժող դիտարկումները, թէ այսօր-վաղը ինչ-որ բան է պատահելու, անտեղի են, մոլորեցնող ու շփոթեցնող: Ինչ-որ բանը պատահելու է մեր համատեղ աշխատանքով, քննարկումներով եւ դրա արդիւնքով:

«Ակադեմիական քաղաքն ամենեւին միայն ենթակառուցուածքի ու միջավայրի մասին չի. այն նախեւառաջ կրթութեան բովանդակութեան մասին է, որտեղ դասախօսը դասաւոռ չի եւ ստիպուած չի օրական անհնար ժամեր դասաւանդել՝ մի բուհից միւսը յաճախ վազելով, այլ առաջին հերթին բարձր որակաւորուած մասնագէտ է՝ իր աշխատասենեակով, դասաւանդման օպտիմալ ժամերով, հետազօտութեան համար յարմար պայմաններով, որտեղ իր աշխատանքը փոխկապուած է գիտութեանը ու դրանով իսկ զարգացող ու զարգացնող աշխատանք է:

«Ակադեմիական քաղաքը ուսանողի կրթութեան մասին է, որը դպրոցից տարբեր կրթութիւն է. չի սկսւում եւ աւարտւում սահմանուած դասացուցակով. ուսանողն է ընտրում դասընթացները նախընտրած դասախօսների մօտ՝ ունենալով տուեալ մասնագիտութեան պարտադիր եւ ընտրովի դասընթացների ցանկը: Ինքն է ընտրում յաջորդականութիւնը, ↬ 4

ԽՈՀԵՐ

## ՔԻՉ ՄԸՆ ԱԼ ԳՐԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ահաւասիկ Շեքսփիրի եւ Պօտլէրի չորս բանաստեղծութիւններուն թարգմանութիւնները: Նախ Թէքէեանը, ապա նոյնի Վարուժանը:

ՀՆՉԵԱԿ 19

ՈՒԻԼԻԱՄ ՇԵՔՍՓԻՐ

*Թարգմ.*՝ ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

Համայնակեր ժամանա՛կ, կրծէ՛ ճանկերն առիւծին,
Ստիպէ՛ հողն որ լափէ իր զաւկըները բոլոր.
Վայրագ վագրին ալ խլէ՛ դուն ժանիքները հզօր
Եւ իր արեան մէջ անմահ փիւնիկն այրէ՛ վերստին:

Եղանակներ՝ անցքիդ վրայ ըրէ՛ զըւարթ կամ մըռայլ,
Ո՛վ փութաջան ժամանակ. ըրէ՛ երկրին մեր հըսկայ,
Գեղեցկութեանցն իր ամէն՝ ինչ որ հաճոյ քեզ կուգայ՝
Բայց սա՛ ոճիրն ահռելի թո՛ղ քեզ ըլլայ արգիլեալ.-

Ո՛չ, մի՛ նըշեր քու ժամերդ աղուոր ճակտին վրայ
սիրոյ,
Մի՛ փորեր հոն ոչ մէկ գիծ, եւ թոյլ տո՛ւր որ ապագան
Տեսնէ տիպար մ'իր վըրայ գեղեցկութեան,
քաղցրութեան...

Սակայն եթէ յոռեգոյնն ալ գործելով դուն տաս խոյս՝
Իմ սիրականս մընայ պիտի, ո՛վ ծեր ժամանակ,
Տաղերուս մէջ թարմ յաւէտ, աւերներուդ հակառակ...:

(*Արեւ*, 2 Հոկտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7536, էջ 2: Վերատպուած՝ Վահան Թէքէեան, *Ամբողջական երկեր*, հատոր 5, Ոտանաւոր թարգմանութիւններ, Գահիրէ, Տպարան Սահակ-Մեսրոպ, [1949], էջ 99:)

ՀՆՉԵԱԿ 19

ՈՒԻԼԻԱՄ ՇԵՔՍՓԻՐ

*Թարգմ.*՝ ՎԱՐՈՒԺԱՆ

Լափլափող Ժամանակ, ճանկն առիւծին կտրէ՛,
Թող հողը կըլլանէ սերունդն իր իսկ ծնած,
Վայրագ վագրի բերնէն սուրսայր ակռան պոկէ՛,
Փիւնիկն ալ աննուաճ՝ այրէ՛ մէջն իր արեան:

Զգէ՛ ետիդ հետքեր ցաւալի ու ցնծուն,
Ըրէ՛ ինչ որ կ'ուզես, Ժամանակ սրաթռիչ,
Ընդարձակ աշխարհին, խամրող հաճոյքներուն,
Բայց կ'արգիլեմ քեզի մէկ ահռելի ոճիր.

Չըլլա՛յ որ փորփըրես սիրոյս ճակատը գեղ,
Ոչ ալ գիծեր քաշես հնամոյն գրիչով,
Դաշն իր գեղեցկութիւնն աւերող ընթացքէդ
Անարա՛տ թող մնայ այրերու ալ յաջորդ:

Այլ յոռեգո՛յնը փորձէ, Ժամանակ երկժանի,
Սէրըս տողերուս մէջ յաւերժ է պատանի:

(*Թարգմանաշար*, էջ 99)

ՀՆՉԵԱԿ 71

ՈՒԻԼԻԱՄ ՇԵՔՍՓԻՐ

*Թարգմ.*՝ ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

Երբ ես մեռնիմ լա՛ց վըրաս այնքան ատեն միմիայն
Որքան լսես ղօղանջիւնն այն զանգակին ողբաձայն՝
Ծանուցանող ամէնուն թէ ցած աշխարհն այս թողած
Կ'երթամ բնակիլ որդերուն հետ աւելի՛ եւըս ցած:

Ո՛չ իսկ յիշէ՝ այս տողերն եթէ աչքիդ տակ իյնան,
Ձեռքն որ զանոնք դըրոշմեց, զի կը սիրեմ քեզ
ա յնքան՝
Որ յօժար եմ մեռնելու խոհանքիդ մէջ իսկ անուշ,
Եթէ իմ յուշըս մտքիդ համար ըլլայ պիտի փուշ:

Երբ դուն կարդաս այս քերթուածն ու ես դարձած
ըլլամ հող,
Բերնէդ չելլէ թո՛ղ բընաւ իմ խեղճ անունըս եւ թո՛ղ
Քու սէրդ ալ կորսըւի իմ կեանքիս հետ կորսըւող:

Զի կը վախնամ, կը վախնա՛մ որ այս աշխարհն
իմաստուն
Մահէս յետոյ կը ծաղրէ ինծի հետ քեզ ալ երբ դուն
Չըկրնաս ցաւըդ զսպել ու զայն ցոյց տաս ամէնուն:

(*Արեւ*, 16 Օգոստոս 1941, ԻԶ. տարի, թիւ 6887, էջ 2: Վերատպուած՝ Վահան Թէքէեան, *Ամբողջական երկեր*, հատոր 5, Ոտանաւոր թարգմանութիւններ, Գահիրէ, Տպարան Սահակ-Մեսրոպ, [1949], էջ 100:)

ՀՆՉԵԱԿ 71

ՈՒԻԼԻԱՄ ՇԵՔՍՓԻՐ

*Թարգմ.*՝ ՎԱՐՈՒԺԱՆ

Այլեւըս, ո՛չ, դադրէ՛ իմ մահը սգալ,
Երբ որ լսես խըռով ղօղանջը զանգերու
Փախուստըս կը գուժէ զազիր այս աշխարհէն,
Հոգ չէ թէ զազրագոյն որդին հետ ապրելու:

Այո, երբ տողն իսկ այս կարդաս՝ ո՛չ, մի՛ յիշեր
Ձեռքը որ զայն գրեց, զի սէրս է այնքան մեծ՝
Լիովին քակտուիլ կը նախընտրեմ միտքէդ,
Պիտի սիրտըդ խոցէ յիշելըդ զիս եթէ:

Եւ դեռ եթէ, կ'ըսեմ, քերթուածիս դուն նայիս,
Երբ ես տղմուտ հողին խառնըւած եմ այլեւս,
Թող չարձակուի շրթնէդ անունն իմ խղճալի,
Թող սէրըդ կեանքիս հետ կործանի վերջնապէս.

Զի աշխարհն իմաստուն կ'անգոսնէ ո՛ղբն անգամ,
Եւ ինծի հետ քե՛զ ալ կը ծաղրէ երբ չկամ:

(*Թարգմանաշար*, էջ 107)

ԻՆՔՆԱՄՓՈՓՈՒՄ

ՇԱՐԼ ՊՕՏԼԷՐ

*Թարգմ.*՝ ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

Խելօք կեցի՛ր, ո՛վ իմ Ցաւս եւ ամփոփուէ՛,
հանդարտէ՛.
Կ'սպասէիր Իրիկուան, ահա՛ կ'իջնէ թեւաբաց.
Խաւարահիւս մթնոլորտ մ'ոստանը տե՛ս կը պատէ՝
Ոմանց անդորր եւ այլոց բերելով հոգ ու կասկած:

Մահկանացուաց մինչ կ'երթայ անարգ ամբոխն այս
հըլու,
Մտրակին տակ Հաճոյքին՝ անագորոյն դահճապետ,
Ստրկական կացուրդէն խղճի խայթեր քաղելու,
Ձեռքդ ինծի տո՛ւր, ո՛վ իմ Ցաւս, եկո՛ւր այս կողմ,
ինծի հետ,

Հեռո՛ւ, հեռո՛ւ անոնցմէ: Տե՛ս Տարիներն հոգեսպառ,
Պատըշգամին վրայ Երկնի, շըքազգեստիւք հընաձեւ.
Ժպտուն Կարօտը յառնող մութ ջուրերուն ի վերեւ.

Մեծ կամարի մը ներքեւ ննջող Արեւն ոգեվար,
Եւ զերդ պատանք մը երկայն քաշքըշելով իր ետին՝
Լըսէ՛, լըսէ՛, սիրելի՛ս, քալելն անուշ Գիշերին:

1920

(*Արեւ*, 21 Մարտ 1942, ԻԶ. տարի, թիւ 7067, էջ 2: Վերատպուած՝ Վահան Թէքէեան, *Ամբողջական երկեր*, հատոր 5, Ոտանաւոր թարգմանութիւններ, Գահիրէ, Տպարան Սահակ-Մեսրոպ, [1949], էջ 65:)

ԻՆՔՆԱՄՓՈՓՈՒՄ

ՇԱՐԼ ՊՕՏԼԷՐ

*Թարգմ.*՝ ՎԱՐՈՒԺԱՆ

Զգաստացի՛ր, Վիշտ իմ, ժամն է հանդարտելու,
Գիշերը հայցեցիր, կ'իջնէ ահաւասիկ,
Մթագնում մը տակաւ կը փռուի քաղաքին,
Ոմանց բերելով հոգ, ոմանց ալ՝ամոքում:

Մահկանացու մարդոց մինչ բազմութիւնն ստոր
Մտրակուած Հաճոյքէն, դահիճէն այդ անգութ,
Խղճի խայթ կը ժողվէ տօնէն ստրուկներու,
Վիշտ իմ, ձեռք տո՛ւր, երթանք մենք ափեր հեռաւոր:

Տարիները մեռած տե՛ս ինչպէս կը հակին,
Հինցա՛ծ հանդերձանքով, երկնի պատշգամին,
Կ'ելլէ ծովուն խորէն Զղջումն ուրախերես:

Մեռկ շողերն արեւուն կամարին տակ կ'իյնան,
Եւ վերն՝ Արեւելքին փռուող պատանքի պէս,
Սիրելիդ իմ, լսէ՛, թաւալը Գիշերուան:

(*Թարգմանաշար*, էջ 269)

ՔԱՆԴՈՒՄԸ

ՇԱՐԼ ՊՕՏԼԷՐ

*Թարգմ.*՝ ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

Քովըս անդուլ անդադար կը շարժըտկի Սատանան.
Անհըպելի որպէս շունչ մը կը լողայ շուրջըս ան.
Զայն կը կլլեմ եւ կ'զգամ որ կ'այրի թոքըս անկէ
Եւ թէ զիս տենչ մը անանց ու յանցաւոր կը մրկէ: ↬ 4

ՋԱՀԱԿԻՐ

## ՔԻՉ ՄԸՆ ԱԼ ԳՐԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

Ան մերթ կ'առնէ, գիտնալով իմ մեծ սէրըս Արուեստի,
Ձեւը կնոջ մը կանանց մէջ ամենէն տարփելի
Եւ պատըրուակ բռնելով թէ հոգիս շատ է մռայլ՝
Կուտայ շուրթիս վարժութիւնն հեղուկներու անիծեալ:

Ան կը քըշէ զիս այսպէս, հեռու աչքէն Աստուծոյ,
Վաստակաբեկ, հեւասպառ, մէջտեղը խոր դաշտերուն՝
Ուր Ձանձրոյթին կը տիրէ ամայութիւնը անհուն,

Եւ կը նետէ, աչքերուս մէջ լի դողովն ամօթոյ,
Բերանաբաց մեծ վէրքեր եւ ըզգեստներ շարաւոտ
Եւ Քանդումի իր գործի՛քն արիւնազանգ, մահահոտ:
(*Արեւ*, 30 Օգոստոս 1941, ԻԶ. տարի, թիւ 6898, էջ 2: Վերատպուած՝ Վահան Թէքէեան, *Ամբողջական երկեր*, հատոր 5, Ոտանաւոր թարգմանութիւններ, Գահիրէ, Տպարան Սահակ-Մեսրոպ, [1949], էջ 23:)

### ԿՈՐԾԱՆՈՒՄԸ

ՇԱՐԼ ՊՕՏԼԷՐ
**Թարգմ.՝ ՎԱՐՈՒԺԱՆ**

Կողքիս անդադար կը շարժի Սատանան,
Ու կը ծփայ նման օդի անբռնելի,
Կը խմեմ ու կը զգամ՝ թոքերըս կը վառին,
Կը լեցուին տենչանքով մեղսատանջ ու անանց:

Երբեմն ալ, քաջագէտ մեծ սիրոյս Արուեստի,
Կերպարանքը կ'առնէ հրապուրիչ կնոջ,
Եւ իր կեղծապաճոյճ խայծ ու պատրուակով,
Լպիրշ սիրահիւթին կը դարձընէ մոլի՛:

Այսպէս կը տանի զիս հեռո՛ւ աչքէն Տիրոջ,
Հեւ ի հեւ, յոգնաբեկ՝ մէջտեղն անապատին
Հեռասահման, լքուած Ձանձրոյթին անամոք,

Ու կը նետէ առջեւն աչքիս զարմացական՝
Կեղտոտած հնոտիք, վէրքեր բաց տակաւին,
Եւ ամենայն սարուածքն արիւնռուշտ Կործանմա՛ն:
(*Թարգմանաշար*, էջ 287)
(Վերջ 2)

## ՓԱՇԻՆԵԱՆԻ ԵՒ ՍՏՈԼՏԵՆԲԵՐԳԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

կարծում ենք, որ կարեւոր է: Ես անձամբ հիացած եմ Ձեր առաջնորդութեամբ եւ յանձնառութեամբ: Մենք ողջունում ենք Ձեր քայլերը՝ միտուած ժողովրդավարական ինստիտուտների ուժեղացմանը, օրէնքի գերակայութեանը, նաեւ ողջունում ենք այն, որ Ուկրաինային մարդասիրական օգնութիւն էք հասցնում»:

Վարչապետ Փաշինեանը եւ ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղարը քննարկել են Հայաստան-ՆԱՏՕ համագործակցութեան զարգացմանը, ինչպէս նաեւ տարածաշրջանային նշանակութեան հարցեր: Վարչապետը զրուցակցին է ներկայացրել Հայաստանի կառավարութեան *Խաղաղութեան խաչմերուկ* նախագիծը:

Եէնս Ստոլտենբերգը կարեւորել է տարածաշրջանում խաղաղութեան եւ կայունութեան ապահովումը եւ ընդգծել, որ ՆԱՏՕ-ն աջակցում է Հայաստանի ինքնիշխանութեանը, տարածքային ամբողջականութեանը եւ մեր երկրի խաղաղ ձգտումներին:

Յաջորդիւ Նիկոլ Փաշինեանը եւ Եէնս Ստոլտենբերգը հանդէս են եկել յայտարարութիւններով:

*ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղարը Հայաստան կը գար Ադրբէջան եւ Վրաստան կատարած այցելութիւններից յետոյ:*

## ԱԼԷՆ ՍԻՄՈՆԵԱՆԻ ԳԼԽԱՒՈՐԱԾ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ...

ֆորումի նախագահ Դէն Քարդէնը:

Վեհաժողովի հիմնական ուղղուածութիւնը *Խորհրդարանական դիւանագիտութիւն. կամուրջների ստեղծում յանուն խաղաղութեան եւ փոխըմբռնման* խորագրով քննարկումն է:

Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեանը վեհաժողովի շրջանակում հանդէս եկաւ ելոյթով: Խորհրդարանի ղեկավարը ունեցաւ նաեւ երկկողմ հանդիպումներ:

Միջխորհրդարանական Միութիւնում Հայաստանի ԱԺ պատուիրակութեան անդամներ՝ Ազգային Ժողովի նախագահի տեղակալ Յակոբ Արշակեանը, պատգամաւորներ Յասմիկ Յակոբեանը, Ծովինար Վարդանեանը, Արսէն Թորոսեանը, Լեւոն Քոչարեանը եւ Հայաստանի Ազգային Ժողովի աշխատակազմի ղեկավար-գլխաւոր քարտուղար Դաւիթ Առաքելեանը մասնակցեցին վեհաժողովի շրջանակում անցկացուող նիստերին, քննարկումներին եւ աշխատաժողովներին:

## ԿԱՐՕ ՓԱՅԼԱՆ ԵՒ ԱՌԱՋՆԱՅԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Այս մեծ պատկերը շատ վտանգաւոր է: Հայաստան ամենավտանգաւոր ժամանակներ կ'ապրի այսօր: Վտանգը դիմագրաւելու համար զօրաշարժ չկայ:

[*Այսօր նոյնիսկ կ'օգտագործուին դեռ նոր բռնագաղթուած արցախցիները՝ զանոնք հրահրելով իջնել հրապարակ իրենց դժգոհութիւնները արտայայտելու համար, մինչ հրահրողներուն բուն նպատակը ըլլալով բոլորովին ուրիշ բան, կամ որեւէ բան՝ բացի արցախցիներուն իրական ցաւը տեղ հասցընելէ: Ա.*]

5. Մենք տակաւին պատմութեան մէջ կ'ուզենք ապրիլ. կ'ըսենք՝ մէկ դար առաջ ցեղասպանութիւն եղաւ, կ'ըսենք՝ հիմա նորէն եղաւ: Աշխարհակարգը փոխուած է այսօր եւ ան չի ճանչնար մարդու իրաւունքներ: Միայն շահեր կը ճանչնայ: Պէտք է հասկնանք ասիկա ու միասնաբար աշխատինք այսօրուայ վտանգին դէմ:

Այս ուղղութեամբ է որ լոպպինկ պէտք է ընենք, որպէսզի Ամերիկան եւ Եւրամիութիւնը կարմիր գիծ մը քաշեն Ազըրպէյճանին: Օրինակ, եթէ Ազըրպէյճանը յարձակի Հայաստանի վրայ, դադրեցնեն կազ ներմուծել իրմէ: Եւ այս ուղղութեամբ է որ կը պայքարիմ այսօր Ուաշինկթոնի մէջ, կը փորձեմ համոզել Թուրքիոյ կառավարութեան շարունակել կառուցողական քաղաքականութիւնը, եւ կը ջանամ որ Ամերիկան ու Եւրամիութեան երկիրները զսպեն Ազըրպէյճանը:

6. Գացի Գորիս, Սիւնիք, Արարատ եւ այլ վայրեր, հանդիպելու եւ մտիկ ընելու արցախցիներուն, լսելու իրենց պահանջները: Մօտաւորապէս կէսը կ'ուզէ օտար երկիր երթալ՝ Ռուսաստան, Ֆրանսա, եւլն.:

Անմիջական կարիքները լուծուած են, ասիկա շատ լաւ բան մըն է, ես հպարտ եմ, կամաւորները մեծ աշխատանք տարած են, ամէն բան շատ լաւ է: Բայց արցախցիներուն համար կա՛յ յաջորդ հարցը՝ ո՞ւր պիտի երթան, ո՞ւր պիտի ապրին: Հիմա ասոր վրայ պէտք է կեդրոնանանք, պէտք է բնակարաններ կառուցենք, համոզենք օտար երկիրներուն նպաստներ տրամադրել, խօսինք օտար Հասարակական Կազմակերպութիւններու հետ: Պէտք է ապահովենք արցախցիներուն ամբողջական ու երկարատեւ կարիքները, որպէսզի մնան Հայաստանի մէջ: Բոլոր հայերուն պատասխանատուութիւնն է ասիկա, քանի որ աշխարհի բոլոր հայերուն սխալներով է որ այստեղ հասանք: Հիմա մեր առաջնային գործն է միասնաբար աշխատելով արցախցիներուն պահել հոս, բարձրացնել անոնց ոգին: Ասոր համար պէտք ունինք զօրաշարժի: Նման զօրաշարժ չեմ տեսներ: Ուաշինկթոնի մէջ շուտով այս հարցին շուրջ ալ պիտի աշխատիմ:

[*Յանձնախումբ կը կազմուի, վտարանդի կառավարութիւն կը յայտարարուի, ոչ թէ ներկայ իրական ու գործնական վտանգը դիմագրաւելու, ոչ թէ արցախցիներուն կեանքը բարելաւելով զանոնք Հայաստանի մէջ պահելու, այլ արցախցիները Արցախ վերադարձնելու նպատակով, առարկելով՝ որ ամբողջ աշխարհը կ'ընդունի արցախցիներուն վերադարձը, մոռցնել տալով՝ որ ամբողջ աշխարհը Ղարաբաղը ընդունած էր եւ տակաւին կ'ընդունի իբրեւ ինքնավար հանրապետութիւն Ազըրպէյճանի կազմին մէջ, երեսուն տարի ամբողջ աշխարհը մէկ քայլ ետ չկանգնեցաւ այս բանաձեւէն, չլսեց հայերուս առաջ քաշած ինքնորոշումի իրաւունքի դրոյթը, եւ ՌԶ ՈՔ առարկեց Ազըրպէյճանի ներկայ գրաւումը Արցախին, քանզի այդպէս կը պահանջէր ներկայ աշխարհաքաղաքական վիճակը: Առանց աշխարհաքաղաքական վիճակի փոփոխութեան, ոչ մէկ արցախցի պիտի կրնայ վերադառնալ իր բնակավայրը, դժբախտաբար: Երեսուն տարի «միջազգային» իրաւական համակարգը չգործեց (կամ չուզեց գործել) հայերուն ի նպաստ, ինչո՞ւ գալիք 50 տարիներուն պիտի գործէ: Եւ մինչեւ որ յանձնախումբի ստեղծիչ Պարոն նախկին նախարարը վերադարձնէ արցախցիները իրենց տուները, անոնց կէսը արդէն արտագաղթած պիտի ըլլայ: Եւ այստեղէն կրկին ու կրկին մակերես կ'ելլէ ազգայնականութեան արդի տարատեսակը: Այսինքն, արցախցիներու վերադարձի պատումը առաջ նետելով նախարարը (ինչպէս նաեւ վտարանդի կառավարութիւնը) կը վաստակի հայրենասիրական կէտեր, մինչ արցախցիներու այսօրուայ եւ մօտ ապագայի հրատապ ու անյետաձգելի հարցերուն մատակարարումը չի յարմարիր հայրենասիրական մեծ պատումներուն: Հայրենասիրական մեծ հարցազրոյցներ եղան նախկին նախարարին հետ այս հարցին եւ յանձնախումբին շուրջ, մինչ հիմնահոսանքային լրատուամիջոցները ոչ մէկ հարցազրոյց վարեցին արցախցիներուն համար աշխատած եւ առօրեայ անհրաժեշտութիւններ լուծած կամաւորներուն հետ: Այստեղ ազգայինը չէ յանցաւորը: Յանցաւորը ազգայինին մեր տուած տարազն է: Տարազը աւելի կարեւոր է քան ազգայինը՝ ինչպէս որ կայ: Ա.*]

Ա.

## ՈՐՔԱՆ Է ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ ԱՊՐՈՂ ՀԱՅԵՐԻ ԹԻՒԸ

Նշենք, որ ըստ մարդահամարի անցկացման մեթոդաբանութեան, Ռուսաստանում բնակչութեան էթնիկ կազմի տուեալները ստացուել են՝ «Ձեր ազգային պատկանելիութիւնը» հարցի պատասխանների հիման վրայ՝ համաձայն Ռուսաստանի սահմանադրութեան 26-րդ յօդուածով սահմանուած՝ մարդու սեփական ազգութիւնը որոշելու եւ նշելու իրաւունքի:

Այսպիսով, Ռուսաստանում 950,000 մարդ է ապրում, որն իրեն ազգութեամբ համարում է հայ, եւ այդ երկրի պաշտօնական տուեալները հիմնւում են հէնց այդ փաստի վրայ:

Յատկանշական է, որ նախորդ՝ 2010 թուականի մարդահամարի տուեալներով, այդ թիւը կազմել է 1,182 մլն մարդ. փաստացի, այդ երկրում իրենց հայ համարողների թիւը զգալիօրէն կրճատուել է վերջին 10 տարում:

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՏՈՒԵԱԼՆԵՐԸ

Հայաստանի 2022 թուականի մարդահամարի տուեալներով՝ մեր երկրում բնակչութեան ճնշող մեծամասնութիւնը՝ 2,932 մլն մարդուց 2,875 մլն-ը, ազգութեամբ հայ են:

Այսպիսով, Ռուսաստանի եւ Հայաստանի պաշտօնական տուեալները հակասում են Ռուսաստանի նախագահի մամուլի քարտուղարի պնդումներին. Հայաստանում, համաձայն այդ տուեալների, երեք անգամ աւելի շատ հայ է ապրում, քան Ռուսաստանում:

***Փաստերի ստուգման հարթակ (fip)***

## ԿԳՄՍ ՆԱԽԱՐԱՐԸ ԱԿԱԴԵՄԻԱԿԱՆ ՔԱՂԱՔԻ ՄԱՍԻՆ

ինտենսիվութիւնը, ժամկէտը: Ընտրում եւ պատասխանատուութիւն է վերցնում իր ուսումնառութեան համար:

«Այդպիսով՝ գուցէ մի դաս առաւօտեան է ունենում, մի դաս՝ ցերեկը, ընթացքում էլ՝ հրաշալի միջավայր ու հնարաւորութիւններ՝ իր կրթութիւնը իր ուզած ձեւով կազմակերպելու՝ գրադարաններում, այլ յարմար միջավայրերում, գուցէ ընթացքում մի թեթեւ աշխատելու՝ գրպանի գումարը հոգալու համար, ընկերների հետ շփուելու եւ միասին պատրաստուելու ինչ-որ թեմայի կամ դասի, քննութեան: Այս բովանդակութիւնն անհնար է առանց միջավայրի:

«Ակադեմիական քաղաքն իրականում անուանումն է մի ծրագրի՝ բովանդակութեան եւ միջավայրի, որ պէտք է լինի առաջին հերթին ձեզ համար, սիրելի դասախօսներ եւ ուսանողներ: Քննարկենք միասին, գտնենք լաւագոյն լուծումները»:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1963 ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ԱՊՐԻԼ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٦٣ الخميس ١١ أبريل ٢٠٢٤


## ՀԱՅԱՍՏԱՆ-ԵՄ-ԱՄՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԻՆ ՄԱՍԻՆ

**JAMnews**

Պրիւքսէլի մէջ Ապրիլ 5-ին տեղի ունեցաւ Հայաստան-ԵՄ-ԱՄՆ բարձր մակարդակով հանդիպում՝ ներկայութեամբ Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի, Եւրոպական Յանձնաժողովի նախագահ Ուրսուլա ֆոն տէր Լայէնի, ԵՄ Արտաքին Գործերու եւ Ապահովութեան Քաղաքականութեան բարձր ներկայացուցիչ Ժոզէփ Պորէլի, ԱՄՆ պետական քարտուղար Անթոնի Պլինքէնի եւ ԱՄՆ Միջազգային Զարգացումի Գործակալութեան տնօրէն Սամանթա Փաուըրի:

«ԱՄՆ կ'ուզէ Հայաստանը տեսնել բարգաւաճ եւ կայուն երկիր, որ խաղաղ է իր դրացիներուն հետ», - այս առիթով յայտարարեց Պլինքէն: Ան վստահեցուց՝ որ ԱՄՆ եւ ԵՄ պատրաստ են իրենց ջանքերը ներդնել այս նպատակին համար:

Ժոզէփ Պորէլ դիտել տուաւ՝ որ «այսօր ամերիկացի ընկերներուն հետ նոր մակարդակի վրայ կը դնենք Հայաստանի հետ գործընկերութիւնը, կը միաւորենք մեր ուժերը՝ ցոյց տալու համար մեր ուժեղ յանձնառութիւնը Հայաստանի ինքնիշխանութեան, ժողովրդավարութեան եւ կայունութեան նկատմամբ»:

Հանդիպումին մասնակցողները կրկնեցին նախնական յայտարարութիւնը՝ թէ ասոր առանցքը կը գտնուին Հայաստանի տնտեսական զարգացումին հեռանկարները եւ Լեռնային Ղարաբաղի հայերուն տրամադրուող հասարակական աջակցութիւնը:

Ուրսուլա ֆոն տէր Լայէն ողջունեց Հայաստանի ժողովրդավարական բարեփոխումները եւ այն հանգամանքը՝ որ պատժամիջոցները շրջանցելու հարցով Երեւանը օգնութիւն չի ցուցաբերեր Մոսկուային:

**Հանդիպումին արդիւնքները**

Հանդիպումի արդիւնքներուն մասին մասնակիցները կ'ընդունին համատեղ յայտարարութիւն, ուր կը նշուի, որ ԵՄ-ը պիտի շարունակէ աջակցիլ Հայաստանի բարեփոխումներուն՝ Համապարփակ եւ Ընդլայնուած Գործընկերութեան Համաձայնագիրի (CEPA) միջոցով:

Բարեփոխումները խթանելու եւ բոլոր ոլորտներուն մէջ համագործակցութիւնը ընդլայնելու նպատակով ԵՄ-ը եւ Հայաստանը յառաջընթաց ապահովեցին Հայաստան-ԵՄ Գործընկերութեան նոր օրակարգի շուրջ:

«ԵՄ եւ ԱՄՆ մտադիր են լրացուցիչ օգնութիւն ցուցաբերել՝ օգնելու Հայաստանին մեղմել վտանգները, այլազանել առեւտուրը եւ ամրապնդել տնտեսական ու հիմնարկային դիմակայունութիւնը», - նշուած է յայտարարութեան մէջ:

**Մանրամասնութիւններ՝ ինչպէս ԱՄՆ-ը եւ ԵՄ-ը պիտի աջակցին Հայաստանին**

Ուրսուլա ֆոն տէր Լայէն յայտնեց՝ որ Պրիւքսէլ պատրաստ է յառաջիկայ չորս տարիներուն յաւելեալ 270 միլիոն եւրոյի աջակցութիւն տրամադրել Հայաստանի տնտեսութեան զարգացումին համար:

«Մենք կ'աջակցինք ձեր պիզնէսին, ձեր տաղանդներուն, յատկապէս ձեր փոքր եւ միջին ձեռնարկութիւններուն, որպէսզի կարողանան զարգանալ, նորարարութիւններ կատարել եւ մուտք գործել նոր շուկաներ», - դիտել տուաւ ան:

Տեղեկացուց՝ որ ներդրումներ պիտի ըլլան նաեւ ենթակառուցուածքային նախագիծերու, վերականգնուող ուժանիւթի, օդային հաղորդակցութեան եւ միջուկային ուժի ոլորտներուն մէջ:

«ԱՄՆ-ը Հայաստանի տնտեսութեան մէջ պիտի ներդնէ 65 միլիոն տոլլար, որ 50 տոկոսով աւելի է երկու տարի առաջ տրուած աջակցութենէն», - կը յայտարարէ Անթոնի Պլինքէն:

Ըստ իրեն, ԱՄՆ կը պաշտպանէ այն գաղափարները՝ որոնք կան Երեւանի ներկայացուցած Խաղաղութեան Խաչմերուկ առաջարկին մէջ, եւ բարձր կը գնահատէ այդ նախագիծը:

Ֆոն տէր Լայէն եւ Պլինքէն կը վստահեցնեն՝ որ պիտի շարունակեն նիւթապէս աջակցիլ ԼՂ-էն բռնի տեղահանուած հայերուն:

Ժոզէփ Պորէլ կը շեշտէ՝ որ Հայաստան-ԵՄ յարաբերութիւնները «առաւել քան ամուր են», կը զարգանան դրական ուղիով, կը գտնուի զանոնք աւելի զարգացնելու փոխադարձ հետաքրքրութիւն. «Աւելի կայուն եւ ուժեղ Հայաստան կը նշանակէ աւելի կայուն եւ ուժեղ Հարաւային Կովկաս, որմէ օգուտներ կը քաղեն տարածաշրջանի բոլոր երկիրները»:

**«Պատրաստ ենք գրաւիչ դարձնել Հայաստանի ներդրումային միջավայրը»**

Նիկոլ Փաշինեանի գնահատութեամբ՝ այս հանդիպումը կը նշանաւորէ ԱՄՆ-ի ու ԵՄ-ի հետ Հայաստանի ընդլայնուող գործընկերութիւնը: Ըստ իրեն, այդ գործակցութեան հիմքը յարգանքն է մարդու իրաւունքներու եւ հիմնարար ազատութիւններու նկատմամբ:

«Հայաստանը վերահաստատում է արդարադատութեան եւ հանրային հատուածի բարեփոխումներն առաջ մղելու իր յանձնառութիւնն՝ աւելի ուժեղ, աւելի ապահով եւ առաջադէմ երկիր կառուցելու համար», - շեշտեց Փաշինեան:

Իր համոզումով՝ ճիշդ ժամանակն է առաջ մղել տնտեսական համագործակցութիւնը եւ խթանել առեւտուրը: Կը վստահեցնէ՝ որ Հայաստան վճռականօրէն տրամադրուած է բարձրացնելու մասնաւոր հատուածի մրցունակութիւնը. «Պատրաստ ենք բարելաւել մեր ներդրումային միջավայրը, այն աւելի գրաւիչ դարձնել եւրոպական ու ամերիկեան ընկերութիւնների համար: Ակնկալում ենք, որ մեր գործընկերները մեզ կ'աջակցեն արդիականացնել Հայաստանի որակի ենթակառուցուածքը, կառուցել բիզնէս ցանցեր եւ ուսումնասիրել առեւտրի դիւրացման հնարաւոր սխեմաները»:

**Քննադատութիւն դրացիներուն կողմէ**

Երկար ժամանակ է՝ որ Հայաստան-ԵՄ-ԱՄՆ Պրիւքսէլի հանդիպումը կը գտնուէր ուշադրութեան կեդրոնը: Թէեւ նախաձեռնողներն ու Երեւանը կը պնդէին՝ որ պիտի քննարկուին բացառապէս Հայաստանի բարեփոխումներուն, ժողովրդավարութեան եւ տնտեսական զարգացումին առնչուող հարցեր, իսկ հայ-ազրպէյճանական օրակարգին մասին անդրադարձ պիտի չըլլայ, միեւնոյնն է՝ Մոսկուան, Պաքուն եւ Անքարան անընդհատ քննադատեցին կայանալիք հանդիպումը:

Ռուսաստան կը պնդէր՝ որ հանդիպումը «կը միտի Հարաւային Կովկասի մէջ ստեղծել նոր բաժանարար գիծեր, քանդել Մոսկուայի հետ դարաւոր կապերը, տկարացնել տարածաշրջանային ապահովութեան եւ տնտեսական համագործակցութեան գոյութիւն ունեցող մեքանիզմները»:

Ազրպէյճան եւ Թուրքիա կը յայտարարէին՝ թէ ան «կողմնակալ է, հիմնուած է երկակի չափանիշներու վրայ» եւ «կը հակասէ չէզոքութեան սկզբունքին»: ԱՄՆ պետական քարտուղարը եւ Եւրոպական Յանձնաժողովի նախագահը նոյնիսկ անհարժեշտ նկատեցին հեռաձայնել Ազրպէյճանի նախագահին եւ վստահեցնել՝ որ հանդիպումը ուղղուած չէ Պաքուի դէմ:

**Փորձագիտական կարծիք**

Քաղաքագէտ Գուրգէն Սիմոնեանի կարծիքով՝ Հայաստանի տնտեսական այլազանումի աշխատանքները նոյնպէս պայմանաւորուած են ապահովութեան բաղադրիչով: Ուստի պատահական չի համարեր՝ որ քննարկումը ծաւալուեցաւ տնտեսական

↳ 4

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՅԱՍՏԱՆ ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹԻՒՆ ՈՒՂԱՐԿԵՑ ԿԱԶԱ

Հայաստան 29,94 թոն մարդասիրական օգնութիւն ուղարկեց Կազայի բնակչութեան:

Ըստ տարածուած հաղորդագրութեան, ծանր պայմաններու մէջ գտնուող շուրջ 1,5 միլիոն անձի Հայաստանի կառավարութիւնը կը տրամադրէ պահածոներ, չոր սնունդ, դեղ:




Համաձայնութիւնը ձեռք բերուած էր վարչապետ Նիկոլ Փաշինեանի Եգիպտոս կատարած այցելութեան ընթացքին:

Եգիպտոսի նախագահ Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսիի հետ ունեցած հանդիպումի ընթացքին Փաշինեան տեղեկացուց՝ որ Երեւանը կը միանայ Կազայի մէջ անյապաղ զինադադար հաստատելու միջազգային հանրութեան կոչերուն, աւելցնելով՝ որ Երեւանը պէտք ունի Գահիրէի աջակցութեան եւ խորհրդատուութեան՝ Հայաստանի կողմէ մարդասիրական օգնութիւն հասցնելու համար Կազա:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՐՑԱԽԻՑ ԲՌՆԻ ՏԵՂԱՀԱՆՈՒԱԾ ՇՈՒՐՋ 11 ՀԱԶԱՐ ՄԱՐԴ Է ԱՐՏԱԳԱՂԹԵԼ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ. ԼՂ ՕՄԲՈՒԴՍՄԷՆ

Արցախից բռնի տեղահանուած շուրջ 11 հազար մարդ է արտագաղթել Հայաստանից, Մարտի 29-ին յայտարարել է Արցախի օմբուդսմէն Գեղամ Ստեփանեանը՝ արցախցիների իրաւունքների, Հայաստանի անվտանգութեան հարցերով իրաւապաշտպանների մասնակցութեամբ համաժողովի ընթացքում:

«Հիմնական պատճառը սոցիալ-կենցաղային պայմաններն են, որոնք խաթարում են մարդկանց բնականոն կեանքը Հայաստանում, դրա համար նախընտրում են տեղափոխուել օրինակ՝ Ռուսաստանի հարաւային հատուածներ, որտեղ շատ աւելի էժան է կազմակերպել կեանքը, քան Հայաստանում», - ասել է Ստեփանեանը:

Արցախի Մարդու Իրաւունքների Պաշտպանը (ՄԻՊ) ներկայացրել է նաեւ Արցախից տեղահանուելուց յետոյ Հայաստանում աշխատանքի տեղաւորուած անձանց թիւը՝ 10 հազար 800:

«Ամենացաւալին այն է, որ այս թուերի մէջ շատ քիչ տոկոս են կազմում յատկապէս կրթութեան բնագաւառի ներկայացուցիչները, ընդամէնը 220 ուսուցիչ է, որ Հայաստանի կրթական հաստատութիւններում է այսօր աշխատում, մինչդեռ, Արցախում 4 հազար ուսուցիչ ենք ունեցել», - նշել է

↳ 2

# ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

## (Ծննդեան 105-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

### 2. ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ՁԱՅՆՆ ՈՒ ՊԱՏԿԵՐԸ ՄԵԿՆՈՒՄԷՆ ԵՏՔ

Ձայներիզի եւ տեսաերզի վրայ ձայնագրուած եւ պատկերահանուած էին Կապուտիկեանի ճառերը եւ այցելութիւնները, որոնք ներկայացուեցան յաջորդական ձեռնարկներու ընթացքին:

1963 Մարտ 13, Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան սրահ: Սրահի մուտքի պատին վրայ կախուած էին Կապուտիկեանի Եգիպտոսի լուսանկարները: Ունկնդրութիւն Կոկանեան Սրահի եւ Ճարտարապետներու Սենտիքայի ճառերուն, ձայնագրուած Օննիկ Ալեքսանեանի կողմէ: Պաստառի վրայ կը ցուցադրուին Լուքսորի այցելութեան գունաւոր սլայտերը՝ լուսանկարուած Նասիպ Կարիպեանի կողմէ(42):

Մայիս 29, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Հայ Տանիք, կը ներկայացուի Կապուտիկեանի Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ այցելութիւններուն գունաւոր ֆիլմը, պատրաստութիւն Օննիկ Ալեքսանեանի: Ունկնդրութիւն ճառերէն ետք արտասանած բանաստեղծութիւններու ձայնագրութիւններուն(43):

Յունիս 30, Կոկանեան Սրահ, կը ներկայացուի Կապուտիկեանի Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ այցելութիւններուն գունաւոր ֆիլմը, պատրաստութիւն Օննիկ Ալեքսանեանի, ինչպէս նաեւ Լուքսոր այցելութեան ֆիլմը, պատրաստութիւն Նասիպ Կարիպեանի: Ունկընդրութիւն իր ճառերէն ետք արտասանած բանաստեղծութիւններուն(44):

Այցելութեան առաջին տարելիցի նշում, 1964 Փետրուար 20, Աղեքսանդրիոյ Տիգրան Երկաթ, ուր կը ներկայացուին գունաւոր ֆիլմը եւ ձայնագրութիւնները(45):

### 3. ԵՐԵՒԱՆԵԱՆ ԱՐՁԱԳԱՆԳՆԵՐ

Ոչ միայն եգիպտահայութիւնը խանդավառուեցաւ Կապուտիկեանով, այլ Երեւանի մէջ եւս յատուկ հետաքրքրութիւն ցուցաբերուեցաւ Կապուտիկեանի այցելութիւններուն նկատմամբ: Ահիկա կը պարզուի Կապուտիկեանի նամակէն՝ ղրկուած *Արեւ*ի խմբագրութեան, ուր, ի միջի այլոց, կը պատմէ.

«Երեւան գալուցս յետոյ համարեայ ամէն օր հանդիպումներ եմ ունենում զանազան հիմնարկներում, գրում եմ զանազան թերթերի համար, ռատիոյի համար եւ բոլորը՝ իմ ուղեւորութեան մասին: Ապրիլի 26-ին ակադեմիայի մեծ սրահում եղաւ իմ հիմնական զեկուցումը, 3 ժամից աւելի տեւողութեամբ: Հաւաքուած էր մեծ թուով բազմութիւն. այնուհետեւ ելոյթներ ունեցայ հեռուստացոյցով, ռատիոյով եւ այլն: Էլ չնայած այն բոլորին, ժողովուրդի հետաքրքրութիւնը դէպի սփիւռք կատարած իմ ճամբորդութիւնը՝ ոչ մի կերպ չի նուազում: Դա ինձ շատ ուրախացնում է»(46):

Կապուտիկեան իր համառօտ յիշողութիւնները անմիջապէս կը ղրկէ Պէյրութի *Զարթօնք*ին(47), զոր կ'արտատպէ *Արեւ*(48): Իսկ 1964-ին ստուար հատորի մը մէջ կ'ամփոփէ ընդլայնուած տարբերակը՝ *Քարաւանները դեռ քայլում են* (Երեւան, Հայաստան Հրատարակչութիւն, 530 էջ)(49): Վերջինս կարելի է համարել հայ գրականութեան ուղեգրութեան սեռի ամենահաճելի կարդացուող նմոյշներէն մէկը:

Ասկէ զատ, Կապուտիկեան իր հետ տարած էր Գալուստեան Ազգային Վարժարանի աշակերտներու գունաւոր գեղանկարներ, զորս կը յանձնէ *Պիոներ* մանկական ամսագիրին: *Պիոներ* կը հրատարակէ անոնցմէ քանի մը



Սիլվա Կապուտիկեան՝ Աշոտ Զօրեանի վրձինով

հատ(50).

1. Շանթ Աւետիսեան (12 տարեկան), *Եգիպտուհի*:
2. Սօնա Զօրայեան (11 տարեկան), *Փոր-Սայիտի պատերազմը*:
3. Սեդա Չաթալեան (12 տարեկան), *Պատասխան Հազկերտին*:



Սիլվա Կապուտիկեան Բուրգերուն եւ Սֆինքսին առջեւ

4. Սօնա Աճէմեան (11 տարեկան), *Եգիպտական գիւղ*:
5. Ժիրայր Բաբազեան (11 տարեկան), *Գոհար Գասպարեան Գահիրէի օփերային մէջ*:
6. Նուարդ Թրայեան (12 տարեկան), *Վարդանանց ժողովը*:

(Շար. 5)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

42. Վ. Թ[որիկեան], «Սիլվա Կապուտիկեանի երեկոյ», *Արեւ*, 15 Մարտ 1963, թիւ 13.460:

43. *Արեւ*, 28 Մայիս 1963, ԽԹ. տարի, թիւ 13.521:

44. *Արեւ*, 20 Յունիս 1963, ԽԹ. տարի, թիւ 13.541:

45. *Արեւ*, 18 Փետրուար 1964, ԽԹ. տարի, թիւ 13.744: Ա. Լ. Չիլ, «Սիլվա Կապուտիկեանի երեկոյ», *Արեւ*, 4 Մարտ 1964, ԽԹ. տարի, թիւ 13.757:

46. «Նամակ Սիլվա Կապուտիկեանէն», *Արեւ*, 26 Յունիս 1963, ԽԹ. տարի, թիւ 13.546:

47. «Աշխարհիս ամենամեծ քաղաքն է Երեւանը...», *Զարթօնք*, 7 Յուլիս 1963, ԻԶ. տարի, թիւ 236 (7668) – 14 Յուլիս 1963, ԻԶ. տարի, թիւ 242 (7672):

48. *Արեւ*, 22 Յուլիս 1963, ԽԹ. տարի, թիւ 13.568 – 23 Օգոստոս 1963, ԽԹ. տարի, թիւ 13.595:

49. Եգիպտոսին վերաբերող հատուածները կ'արտատպէ *Արեւ*՝ 29 Մարտ 1965, Ծ. տարի, թիւ 14.083 – 26 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.128:

50. *Պիոներ*, Նոյեմբեր 1963, 35-րդ տարի, թիւ 11:

1 ԱՐՑԱԽԻՑ ԲՌՆԻ ՏԵՂԱՀԱՆՈՒԱԾ ՇՈՒՐՋ 11 ՀԱԶԱՐ ՄԱՐԴ Է ԱՐՏԱԳԱՂԹԵԼ

Ստեփանեանը:

Արցախում 2023-ի սեպտեմբերեան մարտական գործողութիւնների հետեւանքով աւելի քան 100 հազար հայեր ստիպուած լքեցին իրենց տները, ընդհանուր առմամբ, ագրեսիայի հետեւանքով աւելի քան 200 մարդ զոհուեց: 181 զինծառայող ճանաչուել է զոհուած, 11-ը՝ անհետ կորած: Ադրբէջանում, ըստ հայաստանցի իրաւապաշտպանների, հիմա 23 հայ է պահւում, նրանց թւում՝ Արցախի նախկին ղեկավարները:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՄ ՈՉ ՄԻ ՍԽԱԼ ԲԱՆ ՉԵՆՔ ԱՐԵԼ. ՎԱՐՉԱՊԵՏ

Ռուսաստանի հետ յարաբերութիւններում Հայաստանը ոչ մի սխալ բան չի արել: Այդ մասին յայտարարել է Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը՝ Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութեան անդամների հետ Ապրիլի 3-ի հանդիպման ժամանակ անդրադառնալով Հայաստան-Ռուսաստան յարաբերութիւններին:

Վարչապետի խօսքով՝ ռուս գործընկերները չեն կարող ցոյց տալ մի տեղ եւ ասել, որ Հայաստանն ունեցել է պարտաւորութիւն եւ այն չի կատարել:

«Այնինչ, մենք կարող ենք ցոյց տալ եւ ցոյց ենք տալիս, բարձրացնում ենք լեգիտիմ հարցեր եւ ակնկալում լեգիտիմ հարցերի բովանդակային պատասխաններ: Քանի դեռ այդ պատասխանը չի հնչել, ուրիշ ինչ էլ ասուի, հարցը չի լուծուելու», - եզրափակել է Հայաստանի վարչապետը:

## ԱՅՍՕՐՈՒԱՅ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆԸ ՆՇԱՆԱԿՈՒՄ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԸՆԴԼԱՅՆՈՒՈՂ ԳՈՐԾԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ ԱՄՆ-Ի ԵՒ ԵՄ-Ի ՀԵՏ. ՓԱՇԻՆԵԱՆ

Մենք հաւատարիմ ենք մնում Ադրբէջանի հետ յարաբերութիւնների կարգաւորմանը՝ հիմնուած միմեանց ինքնիշխանութեան եւ տարածքային ամբողջականութեան փոխադարձ ճանաչման վրայ՝ համաձայն 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագրի, Միացեալ Նահանգների պետքարտուղարի ու Եւրայանձնաժողովի նախագահի հետ Ապրիլի 5-ի հանդիպումից առաջ յայտարարել է Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

«Հայաստանը նաեւ լիովին հաւատարիմ է Ալմա-Աթայի հռչակագրի հիման վրայ սահմանների սահմանազատմանը եւ տարածաշրջանային բոլոր հաղորդակցութիւնների ապաշրջափակմանը, որը հիմնուած է երկրների ինքնիշխանութեան եւ իրաւազօրութեան, հաւասարութեան եւ փոխադարձութեան սկզբունքների լիարժէք յարգման վրայ», - նշել է Փաշինեանը:

Նա ընդգծել է, որ այսօրուայ բարձր մակարդակի երկխօսութիւնը նշանակում է Հայաստանի ընդլայնուող գործընկերութիւնը Միացեալ Նահանգների եւ Եւրամիութեան հետ:

Հայաստանի վարչապետը յաւելել է. «Այս նպատակին հասնելու համար մենք ներկայացրել ենք Խաղաղութեան Խաչմերուկ նախաձեռնութիւնը, որի նպատակն է խթանել կապակցուածութիւնը եւ երկխօսութիւնը հարեւան երկրների հետ, եւ անդին: Աւելի լայն տարածաշրջանում սիներգիան ուժեղացնելու համար մենք ձգտում ենք ինտեգրել մեր նախաձեռնութիւնը ԵՄ Գլոբալ Դարպասների (Global Gateway) ռազմավարութեան հետ եւ ակնկալում ենք մեր գործընկերների աջակցութիւնն այս հարցում»:

Նիկոլ Փաշինեանն ընդգծել է նաեւ, որ Հայաստանը զգալի առաջընթաց է գրանցել ժողովրդավարութեան ապահովման ուղղութեամբ:

«Հայաստանի Հանրապետութիւնը վերահաստատում է արդարադատութեան եւ հանրային հատուածի բարեփոխումներն առաջ մղելու իր յանձնառութիւնը՝ աւելի ուժեղ, աւելի ապահով եւ առաջադէմ երկիր կառուցելու համար», - ընդգծել է վարչապետը:

3

## ՌԱՍՄՈՒՍԷՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՎԱՐԱԾ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՀԱՄԱՐՁԱԿ Է ՀԱՄԱՐՈՒՄ

Դանիայի նախկին վարչապետ եւ ՆԱՏՕ-ի նախկին գլխաւոր քարտուղար Անդերս Ֆոգ Ռասմուսէնը համոզուած է, որ Հայաստանը ժողովրդավարութիւն է անհաւանական բարդ աշխարհաքաղաքական հարեւանութեամբ, եւ վարչապետ Նիկոլ Փաշինեանի կառավարութիւնը համարձակ որոշում է կայացրել՝ փորձելով դիվերսիֆիկացնել Հայաստանի արտաքին քաղաքականութիւնը եւ շարժուել դէպի Արեւմուտք:

Այս մասին Ռասմուսէնն ասել է Մարտի 27-ին իր կողմից ղեկավարած «Հայաստանի բարեկամներ ցանց» բարձր մակարդակի խմբի զեկոյցի հրապարակումից յետոյ:

«Աշխարհի ժողովրդավարական երկրները եւ յատկապէս Եւրամիութիւնը պէտք է գործեն՝ աջակցելու Հայաստանին այս առանցքում», - ընդգծել է նա:

Անդրադառնալով Լեռնային Ղարաբաղում տեղի ունեցած իրադարձութիւններին՝ նա նշել է.

«Այս աջակցութիւնն էլ աւելի կարեւոր է դարձել 2023 թուականին Լեռնային Ղարաբաղի էթնիկ հայ բնակչութեան դէմ Ադրբէջանի յարձակումից եւ ադրբէջանական ուժերի կողմից բխող շարունակական սպառնալիքից յետոյ:

«Ռուսաստանի անօրինական ներխուժումն Ուկրաինա ցոյց տուեց, որ Եւրամիութիւնը պէտք է շատ աւելին անի իր անմիջական հարեւանութեամբ գտնուող ժողովրդավարութիւններին պաշտպանելու համար»:

3

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՆ *ՋԱՀԱԿԻՐ*Ի 57-58-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐԸ

*Ջահակիր*ի յաջորդական հինգ Յաւելուածներով կը ներկայացուին եգիպտահայ գաղութի հովիւ, Եգիպտահայ Թեմի Առաջնորդական Փոխանորդ Սահակ Քհնյ. Շաքարեանի (1894, Զէյթուն – 1976, Գահիրէ) սեփականութիւնը եղած չորս երաժշտական ձեռագիրներու ամբողջական պատճէնները, գրուած Հայ Արդի Ձայնագրութեամբ (Լիմոնճեանի ձայնանիշեր)։ Բոլորն ալ Շաքարեանէն ետք անցած են Եդուարդ Յակոբեանին, իսկ վերջինի մահէն ետք ունեցած տարբեր ճակատագիրներ։




Լոյս տեսան շարքի առաջին երկու հատը.

1. *Պատարագի երգեր*, Ա. մաս, Յաւելուած ԾԷ. (57), 496 էջ։
2. *Պատարագի երգեր*, Բ. մաս, Յաւելուած ԾԸ. (58), 436 էջ։

Կը ներկայացնէ մէկ ձեռագիր մը՝ բաժնուած երկու մասերու։ Կը պարունակէ Պատարագի երգեր, մեղեդիներ, զանձեր, սրբասացութիւններ, եւ այլն, զորս 1914-1917-ին Երուսաղէմի մէջ ընդօրինակած է Շաքարեան։

Ան կարեւոր նիւթ կը տրամադրէ հայ եկեղեցական երգեցողութեան Երուսաղէմի տարբերակներու ուսումնասիրութեան տեսանկիւնէն։

### *GREEK DIPLOMATIC LIFE*-Ն ԱՆԴՐԱԴԱՐՁԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏԻ ԱԹԷՆՔ ԵՒ ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐԻ ԵՐԵՒԱՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԵՐԻՆ

*Greek Diplomatic Life* ամսագրի մարտեան համարում լոյս է տեսել ծաւալուն յօդուած՝ նուիրուած Յունաստանի վարչապետ Կիրիակոս Միցոտակիսի հրաւէրով Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի Փետրուարի 27-ին Աթէնք կատարած աշխատանքային այցին եւ հանդիպումներին։ Յօդուածը վերնագրուած է՝ «Յունաստանը եւ Հայաստանն ընդլայնում են իրենց համագործակցութիւնը»։

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ Յունաստանում Հայաստանի դեսպանութեան Ֆէյսբուքի էջը տեղեկացնում է, որ նոյն համարում է տպագրուել նաեւ ընդարձակ նիւթ Մարտի 4-ին Յունաստանի ազգային պաշտպանութեան նախարար Նիկոս Դենդիասի Հայաստան կատարած պաշտօնական այցի եւ հանդիպումների վերաբերեալ։

Ըստ աղբիւրի՝ *Greek Diplomatic Life* անգլալեզու տպագիր ամսագիրը լոյս է տեսնում 1978 թ-ից ի վեր եւ ներկայացնում է ամսուայ կարեւորագոյն դիւանագիտական, մշակութային, տնտեսական, եւ հասարակական իրադարձութիւնները Յունաստանում։ Այն տարածւում է Յունաստանի պետական հաստատութիւններում, զինահետազօտական կառոյցներում եւ նաեւ դիւանագիտական կորպուսի շրջանակներում։

2➻ ՌԱՄՄՈՒՍԷՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ

Ռասմուսէնը համոզմունք է յայտնել, որ Եւրոպան հնարաւորութիւն ունի աջակցելու Հարաւային Կովկասում կայուն ժողովրդավարութեանը եւ կայուն խաղաղութեանը։

«Այսօրուայ զեկոյցը ուրուագծում է այն շօշափելի քայլերը, որոնք կարող են եւ պէտք է ձեռնարկուեն՝ ի վերջոյ յանգեցնելով Հայաստանի անդամակցութեանը Եւրամիութեանը», - եզրափակել է Ռասմուսէնը։

2➻ ԱՅՍՕՐՈՒԱՅ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆԸ ՆՇԱՆԱԿՈՒՄ...

Նա նաեւ անդրադարձել է Լեռնային Ղարաբաղից աւելի քան 100 հազար տեղահանուածների կարճաժամկէտ եւ երկարաժամկէտ կարիքների հասցէագրմանը եւ նշել. «Մեր հաւաքական ջանքերը պէտք է կենտրոնանան փախստականների արժանապատիւ կեանքը վերականգնելու հնարաւորութիւն տալու վրայ բնակարանային եւ տնտեսական ակտիւացման քաղաքականութիւնների միջոցով»։

*Հայաստանի վարչապետի, Միացեալ Նահանգների պետքարտուղարի ու Եւրայանձնաժողովի նախագահի հանդիպումն առաջինն է նման ձեւաչափով, եւ հանդիպման մեկնարկին ղեկավարները յայտարարեցին, որ դրա օրակարգում են լինելու Հայաստանի տնտեսական դիմացկունութեան ամրապնդմանն ու բարեփոխումներին վերաբերող հարցեր։*

ԽՈՀԵՐ

## ՍՓԻՒՌՔ, ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ի՞նչ է փոլքլորը՝ եթէ ոչ համայնքի, գիւղի, ժողովուրդի հաւաքական յիշողութիւն։

Բնիկ մշակոյթները՝ որոնք նախորդած են քաղաքակրթութիւն կոչուածին, հիմնուած են հաւաքական յիշողութեան վրայ, յիշողութիւնը կրկնելով, կրկնապատկելով, մեղմացնելով, յարմարցնելով, առասպելականացնելով, գեղարուեստականացնելով, թատերականացնելով, քանզի յիշողութիւնը կ'արտայայտուի միջոցներու ընդմէջէն, կերպաւորումներով, ան մաս չի կազմեր գաղափարաշտ վերացականութիւններու։

Քաղաքակրթութիւնները ամբողջութեամբ հիմնուած են հաւաքական յիշողութեան վրայ։

Հաւաքական յիշողութիւնը տարբեր իմաստներով կարելի է ընկալել։ Ամենապարզ ձեւով կարելի է ըսել՝ որ անցեալի ներգրաւումն է մարդու գիտակցութեան մէջ, անցեալ՝ որ կրնայ սկսիլ հազարաւոր տարիներ առաջ եւ վերջանալ այսօր, վերջապէս հանգրուանելու համար ներկայի մէջ, ներկան դարձնելով բովանդակալից։

Հաւաքական յիշողութիւնը կը կազմուի ու կը փոխանցուի բանաւոր եւ գրաւոր, այլեւ երկուքի միախառնումով։ Ընդհանուր բաժանումով, բանաւորը բնորոշ է փոլքլորին, գրաւորը՝ քաղաքակրթութեան։ Անշուշտ, խնդիրը աւելի բարդ է ու ընդարձակ, բայց այս հակիրճ բնութագրութիւնը կարեւոր է նիւթիս հասնելու համար։

Արդի հասկացողութեամբ որեւէ ազգ ունի իր յիշողութիւնը, այլեւ այդ յիշողութիւնը, կամ յիշողութիւններու ամբողջականութիւնը, կը կազմէ ազգը։ Գրաւոր պատմութիւնները ուրիշ բան չեն՝ եթէ ոչ հաւաքական յիշողութիւններ։ Ժողովուրդի, գրականութեան, մշակոյթի, արուեստի պատմութիւնները բոլորն ալ յիշողութիւններու գրաւոր արձանագրութիւններ ու փոխանցումներ են։

Հայերը ունին այս բոլորը։ Բայց այս հաւաքական յիշողութիւնը կապուած է Հայաստանի եւ յարակից հասկացողութիւններու հետ։ Սփիւռքի կամ սփիւռքներու հաւաքական հանրային յիշողութիւն պարզապէս չկայ։

Ինչ որ կը սորվինք դպրոցներուն մէջ՝ այստեղ թէ Հայաստանի մէջ, Հայաստանի պատմութիւնն է։ Յստակ ըլլանք։ Հայաստանի պատմութիւն չի նշանակեր միայն քանակով գծուած սահմաններէ ներս։ Կիլիկիոյ հայկական պետութեան պատմութիւնն ալ Հայաստանի պատմութիւն է, այն առումով՝ որ ան կապուած է բուն Հայաստանի այս անգամ բացակայութեան հետ։ Հայաստանով է թելադրուած հայկական Կիլիկիան։ Օսմանեան հայերուն պատմութիւնը Հայաստանի պատմութիւն է, քանի որ մէկ կողմէ՝ պատմական Հայաստանի հողեր էին, միւս կողմէ եւ աւելի կարեւորը՝ ընկալումներու մէջ ան մնացած էր Հայաստան ու հայրենիք, իսկ պոլսահայ մտաւորութիւնը ինքզինք կը զգար հայրենիքի մէջ եւ վերադարձ դէպի հայրենիք հասկացողութիւնը կը հասկնար իբրեւ վերադարձ դէպի Պոլիս կամ Արեւմտահայաստան։ Մինչդեռ Ֆաթիմեան Խալիֆայութեան հայերուն պատմութիւնը Հայաստանի պատմութիւն չէ, յետադարձ ակնարկով զայն կրնանք դիտել Սփիւռքի պատմութեան ծիրէն ներս՝ սփիւռքահայ պատմութիւն։ Միեւնոյնն է, Ֆաթիմեան հայերուն պատմութիւնը հայոց պատմութիւններուն կամ հայ ժողովուրդի պատմութիւններուն մէջ չկայ, եւ եթէ կայ՝ նշումէ կամ հակիրճ տեղեկատուութենէ անդին չի կրնար անցած ըլլալ։ Առանձին նիւթ է, Ֆաթիմեան հայերուն նիւթն է։

Բաբկէն Յարութիւնեանի *XIX-XX դարերի հայ թատրոնի տարեգրութիւն* եռահատորեակը (Երեւան, 1980, 1980 եւ 1981) իբրեւ առանցք ունի Պոլիս-Թիֆլիս-Պաքու-Երեւան եւ շրջակայքը։ Հայաստանի թատրոնի տարեգրութիւնն է ան, նոյնիսկ եթէ Հայաստանի գծուած սահմաններէն դուրս են անոնք։ Բայց տակաւին Պաքու-Թիֆլիս-Պոլիսը սփիւռքներ չէին կրնար համարուիլ, գոնէ ԺԹ. դարուն։

Նոյնն է Բարսամեան-Յարութիւնեանի *Հայ երաժշտութեան պատմութիւնը* (Երեւան, 1968)։

Ասիկա բնական է, հասկնալի եւ լիովին ընդունելի։

Հայ պատմութիւններուն մէջ Սփիւռքի կամ սփիւռքներու պատմութիւն չկայ եւ չի կրնար ըլլալ, քանի որ Սփիւռքի ո՛ր գաղութի մասին պէտք է խօսուի, իսկ ամենուն մասին միաժամանակ խօսիլը պարզ անկարելիութիւն մըն է։ Սփիւռքները ունին իրենց առանձին պատմութիւնները, կապուած կամ չկապուած Հայաստանի հետ, բայց ոչ երբեք իբրեւ Հայաստանի փոխանորդներ, ինչպէս էր Կիլիկիան կամ կորսուած Արեւմտահայաստանը։

Ոչ-Հայաստանի պատմութիւնները կ'ափոփուին զանազան խորագիրներու տակ. *Պատմութիւն հայ գաղթականութեան* (Ալպօյաճեան), *Եգիպտահայ մշակոյթի պատմութիւն* (Եափուճեան), *The Armenians in the Medieval Islamic World* (Սեդա Տատոյեան), եւլն.։

Քանի որ Հայաստանը աղբիւրն է՝ աւելի ամուր, աւելի հիմնական, աւելի երկարատեւ քան Սփիւռքը, Հայաստանի պատմութիւնը սփիւռքահայու մօտ պիտի մշակէ հայկական յիշողութիւնը ընդհանրապէս։ Գիտցուած երեւոյթի մը մասին կրկնել աւելորդ է։ Աւելորդ է նաեւ շեշտել անոր անխուսափելի արժեշտութիւնը։ Համահայկական յիշողութիւն մըն է ան՝ որ կը պահպանէ ազգի մը ինքնագիտակցութիւնը եւ ինքնութեան գիտակցութիւնը։

Բայց անընդհատ կը խօսինք Սփիւռքի մասին, ապա խօսեցանք սփիւռքներու մասին։ Բառը կայ՝ գրեթէ եզրոյթի ամրագրութեամբ, այլեւ բառի միջոցով Սփիւռքը քիչ մը աւելի դարձաւ ինքնուրոյն միաւոր, մինչդեռ ատուհճանաբար Սփիւռքը ինքը դատարկուեցաւ ներիմաստներէ, պարզապէս որովհետեւ սփիւռքներու իւրաքանչիւր միաւոր (եգիպտահայ, լիբանանահայ, ֆրանսահայ, եւլն.) չստեղծեց իր սեփական յիշողութիւնը։

Իսկ յետոյ կը խօսինք նաեւ սփիւռքներու կորստեան ու անհետացումի մասին։ Ինչպէ՞ս կարելի է յարատեւել առանց յիշողութեան։ Սփիւռքը կ'ուզէ յարատեւել առանց յիշողութեան։ Առանց *իր* սեփական յիշողութեան։ Ճիշդ է, չկայ եւ չի կրնար ըլլալ համասփիւռքեան յիշողութիւն, բայց կրնայ ըլլալ իւրաքանչիւր գաղութի յիշողութիւն։

Մինչ Հայաստանի պատմութիւնները մաս կը կազմեն ամբողջ աշխարհի հայ դպրոցներու դասընթացքներուն, այսինքն՝ ենթադրաբար համատարած են հայութեան մէջ, տուեալ գաղութի մը պատմութեան իրազեկութիւնը սեփականութիւն է լոկ ընտրեալ մտաւորականութեան մը, մտաւորականութեան փոքր մասի մը՝ որ անձամբ ճգնած է հասնիլ այդ պատմութեան։ Աշխարհի գրեթէ բոլոր գաղութահայերը շատ քիչ բան գիտեն իրենց սեփական գաղութի անցեալի մասին։

Հայաստանի պատմութեան նման, դպրոցներուն մէջ յանձնարարելի է սերտել տուեալ գաղութի պատմութիւնը։ Պատմութիւններ՝ որոնք չեն գրուած, առաւել եւս չկան դասագիրքեր, չկան ուսուցիչներ։ Այս բոլորը չկան, որովհետեւ չկայ գիտակցութիւն սեփական յիշողութեան նկատմամբ։ Չկան, բայց գիտակցութեան պարագային կրնան ստեղծուիլ։

Սփիւռքի գաղութը կայ՝ ինչպէս որ կայ, զայն պէտք է ընկալել իր ամբողջականութեան մէջ, իր սեփական տինամիզմին մէջ, թաւալքի իր տրամաբանութեան մէջ։

Իւրաքանչիւր Սփիւռք միքրօ պատմութիւն մըն է՝ Հայաստանի մաքրօ պատմութեան համատեղ։ Առանց այդ միքրօ գիտակցութեան՝ գաղութի մը պահպանութեան մասին խօսիլը աւելորդ է։ Չի նշանակեր, որ սեփական գաղութի պատմութեան հանրայնացումով անպայմանօրէն պիտի պահպանուի գաղութը։ Կան նիւթական գործօններ՝ որոնք աւելի ուժեղ են՝ քան յիշողութիւնը։ Բայց առանց յիշողութեան՝ միանշանակօրէն չկայ Սփիւռքը։

Նկատի չունիմ նեղ մտաւորական դասակարգի մը կատարած եւ նոյն դասակարգին հասցէագրուած ուսումնասիրութիւնները։

Նկատի չունիմ յատկապէս վերջերս ➻ 4

# ՔԱՂԱԿԻՐ

## 3 ՍՓԻՒՌՔ, ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹԻՒՆ

տարբեր գաղութներու մասին սփիւռքեան հայագիտութեան հրատարակած հատորները, իւրաքանչիւր հատորը պարփակելով մեծաքանակ գրողներու յօդուածներ: Կրնամ հաստատել, որ այդ գրողներուն 90 տոկոսը իր գաղութին մասին շատ քիչ տեղեկութիւն ունի՝ բացի իր գրածէն: Ուրիշ հարց՝ որ իր գրածը փրոֆեսիոնէլ է, ճիշդ է, իրական է: Կրնամ հաստատել՝ որ մեծամասնութիւնը մտահոգուած չէ գաղութային յիշողութեամբ, այլ կը միտի ուղղահայեաց յիշողութեան վերածելու նախ եւ առաջ իր ստեղծածը, իր գործունէութիւնը, կամ իր գիտցածը: Արդիւնքը, կը կրկնեմ, փրոֆեսիոնէլ է, բայց փրոֆեսիոնալիզմը տակաւին յիշողութիւն չէ, *կենդանի* յիշողութիւն չէ, յիշողութեան կենդանացումը չէ:

Գիտնալն ալ անկատար հասկացողութիւն մըն է: Գիտելիքը (գիտցուածը) յիշողութիւն չէ տակաւին, եթէ չդրուի առօրեայ կիրարկութեան մէջ՝ մամուլ, ձեռնարկ, դպրոցական նիւթ:

Եգիպտահայ գաղութի կիրարկութեան մէջ, օրինակ, գրեթէ գոյութիւն չունին այնտեղ երկար տարիներ կամ ամբողջ կեանք մը գործած շատ կարեւոր գրողներ՝ Մառի Պէյլէրեան, Սուրէն Պարթեւեան, Տիրան Քէլէկեան, Շահան, Օննիկ եւ Մաննիկ Պէրպէրեաններ, Միքայէլ Կիւրճեան, Արսէն Երկաթ, Զարուհի Ծաղկունի, երաժիշտներ՝ Վաղարշակ Սրուանձտեան, Ղազարոս Ղազարոսեան, Երուանդ Ալեքսանեան, Տիգրան Չէյթունցեան, բանասէր-պատմաբաններ՝ Արշակ Ալպօյաճեան, Աւետիս Եափուճեան, Տիգրան Գէորգեան, նշած ըլլալու համար լոկ քանի մը անուններ:

Կը կրկնեմ, այս անունները կը գտնուին քանի մը գիրքերու մէջ, պարբերաբար ու պատահաբար կը յիշուի մէկը կամ միւսը, բայց մաս չեն կազմեր եգիպտահայ կենդանի յիշողութեան, տեղ չունին հաւաքական ներգրաւուածութեան մէջ:

Համահայկական յիշողութեամբ կը պահպանես հայը, կարեւոր չէ թէ ուր բնակի ան, կարեւորութիւն չտալով՝ թէ աշխարհի որ ծայրը կը բնակի, անտեսելով տեղը՝ իբրեւ կազմաւորիչ գործօն: Տեղական յիշողութեամբ կը պահպանես Սփիւռքը: Երկուքն ալ կարեւոր են: Մէկը միւսէն կարեւոր: Առաջինը՝ կայ, երկրորդը՝ չկայ: Հիմա ուրիշ հարց՝ թէ ի՛նչ գաղափարախօսային ծրարումի մէջ կայ առաջինը: Նիւթէս դուրս է ասիկա:

Յիշողութեան փոխարէն այսօր կը գործածուի անոր ձեւազեղուած եւ նուազեցուած տարբերակը՝ աւանդոյթ, որմէ՝ աւանդոյթի պահպանութիւն, եւ ապա՝ աւանդոյթի պահապաններ: Սփիւռքի մէջ ամէն տեղ են աւանդոյթ պահպանող անձերը, որոնք ինքնակոչ պահպանումներով ինքզինքնին կը դարձնեն ազգասէր, հայրենասէր, նուիրեալ, եւլն.: Մինչ յիշողութիւնը շատ լայն ըմբռնում մըն է, ան կը բովանդակէ բնաբան (context), պատմական շարժում, իրերու շաղկապում, գիտելիքի ներգրաւուածութիւն եւ գործադրութիւն, սեփական ու համայնքային փորձառութիւն: Աւանդոյթը, գոնէ այն ձեւով զոր կ'ուզենք հասկնալ ու ներկայացնել, կառչած կը պահենք իրերու եւ դէպքերու հետ:

Յիշողութիւնը իրադարձային է, աւանդոյթի մեր ստեղծած տեսակը՝ դէպքային:

Աւանդոյթ բառով կը կարծենք չափորոշած ըլլալ մեր ինքնութիւնը յատուկ ընտրուած անջատ տարրերու մէջ՝ երգ, պար, տարազ, արտասանութիւն, եւ անոնցմէ պարտադրաբար ընտրուած քանի մը ֆէթիշականացուած անուններու, որմէ աւելի կ'օգտուի յիշեալ անունը ենթադրաբար պահպանողը քան նոյնինքը անունը: Մինչդեռ յիշողութիւնը անչափորոշելի տարրերու իրերահիւսումն է, հակաֆէթիշական դրսեւորումներով:

Մինչ աւանդոյթի բացարձակացումը կը խանգարէ արդիականացումը, յիշողութիւնը՝ բացարձակ դառնալու անկարող, համահնչիւն է արդիականութեան:

Աւանդոյթը յիշողութեան առարկայապաշտ ամրացումն է անցեալի մէջ, մինչդեռ յիշողութիւնը անցեալն է ներկայի մէջ եւ ներկան անցեալի մէջ: Աւանդոյթի ամրագութեամբ պէտք կ'ունենանք արդիականացում հասկացողութեան: Կ'ունենանք երկու միաւորներ՝ աւանդոյթ եւ արդիական: Մէյ մը որ ունեցանք երկու առերեւութապէս անջատ միաւորներ, արդէն կարելի կ'ըլլայ խաղալ անոնց միջեւ՝ աւանդոյթն աւելի կարեւոր է արդիականէն կամ հակառակը, աւանդոյթը կը խանգարէ արդիականացումը, արդիականութիւնը կ'աղաւաղէ աւանդոյթը, յետոյ կուգան աւելի խելօք մարդիկ եւ կը պահանջեն հաւասարակշռել աւանդոյթն ու արդիականութիւնը, առանց իմանալու թէ ուր կանգ կ'առնէ աւանդոյթը եւ ուր կը սկսի արդիականը:

Սփիւռքը՝ իր հիմնահոսանքով, այլընտրանքով եւ այլ շարժումներով, մերժեց յիշողութիւնը, մինչ տիրող հիմնահոսանքը կառչեցաւ աւանդոյթին, մերժեց իր բովէն անցընել արդիական համաշխարհային շարժումները:

## 1 ՀԱՅԱՍՏԱՆ-ԵՄ-ԱՄՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԻՆ ՄԱՍԻՆ

հարցերու շուրջ:

Ըսաւ, որ Հայաստանի ակնկալիքն է ունենալ այն՝ ինչ այսօր ունին Վրաստանը, Մոլտովան եւ Ուքրաինան, այսինքն՝ ԵՄ անդամութեան թեկնածուի կարգավիճակ:

«Այդ կարգավիճակն ենք փորձում ստանալ, որ 2031 կամ 2032 թ.-ին, եթէ չեմ սխալւում նշաձող է սահմանուած եւրոպական հերթական ընդլայնման համատեքստում, դիտարկուի նաեւ մեր անդամ լինելու հնարաւորութիւնը», - *JAMnews*-ի հետ զրոյցին ըսաւ ան:

Չբացառեց՝ որ տեղի ունենայ վիզաներու ազատականացումի գործընթացք, Հայաստանի քաղաքացիները կարելիութիւն ունենան ԵՄ երկիրներ այցելել առանց մուտքի վիզայի: Շեշտեց՝ որ ԵՄ-ը կը թոյլատրէ նաեւ օրինաչափութեան յանգեցնել Հայաստանի շուկայական տնտեսութիւնը, որպէսզի «Հայաստանում արտադրուած ցանկացած ապրանք համապատասխանի եւրոպական չափանիշներին եւ կարողանայ մուտք գործել եւրոպական շուկաներ»:

Ըստ Սիմոնեանի՝ Հայաստանի յառաջիկայ տարիներու ռազմավարական խնդիրը պիտի ըլլայ ԵՄ անդամ դառնալ. «Զարգացման հեռանկարը բերելու է լիակատար անդամակցման՝ ԵՄ մուտք գործելուն եւ հիւսիսատլանտեան անվտանգային համակարգի մասը կազմելուն: Այլ ճանապարհ չկայ»:

Ըսաւ՝ որ այս պահուն որպէս պետութիւն գոյութիւն ունենալու եւ ինքզինք պաշտպանելու այլ կարելիութիւն չունի Հայաստանը:

Հետաքրքրուեցանք՝ որ եւրոպական ամբողջարկումի (integration) ճանապարհին ԱՄՆ-ը եւ ԵՄ-ը պատրա՞ստ են չէզոքացնել Ռուսաստանէն եկող վտանգները: «Այս այցը հէնց չէզոքացման միտուած քաղաքականութեան արդիւնք է», - պատասխանեց քաղաքագէտը:

Իր գնահատութեամբ՝ Հայաստանը ունի լիակատար ազատագրուելու եւ իր ինքնիշխանութիւնը ապահովելու «պատմական շանս»: «Այդ շանսն օգտագործել է պէտք, այլապէս բոլոր տեսակի քննարկումներն անտեղի կը լինեն», - կը կարծէ Սիմոնեան:

Պրիւքսէլի հանդիպումը, ըստ իրեն, ոչ թէ միանուագ քայլ է, այլ ռազմավարութեան մաս: Կը կարծէ՝ որ շարունակական բնոյթ կը կրէ: Զայն որակեց իբրեւ աննախադէպ: Շեշտեց՝ որ այս պարագային պիտի չըլլայ «վերադասի եւ ստորադասի» յարաբերութիւն, ինչպէս Հայաստան-Ռուսաստանի պարագան է:

«Ռուսաստանն ինչ-ինչ իրողութիւններով պայմանաւորուած գուցէ եւ չճանաչէր մեր ինքնուրոյնութիւնը, մեզ օբիեկտի կարգավիճակում դիտարկէր եւ աճուրդի հանէր: Այս ձեւաչափի յարաբերութիւններում նմանատիպ քաղաքականութիւնը բացառւում է, որովհետեւ շեշտը դրուելու է մեր ինքնուրոյնութեան վրայ: Եւ մեր տաղանդով է պայմանաւորուած լինելու՝ որքանով դիմակայուն, դիմադրողունակ եւ մրցունակ կը լինենք իբրեւ ժողովուրդ, որը պետութիւն է կայացնում տարածաշրջանում», - ամփոփեց Գուրգէն Սիմոնեան:

**Արեւելահայերէնէ արեւմտահայերէնի փոխադրութիւն՝ Ա.**

*Յ.Գ. - Դէպի Արեւմուտք թեքումը ընտրութիւն չէր Հայաստանի համար: Վերջին քանի մը տարիներու Ռուսաստանի վերաբերմունքն ու դիրքորոշումներն էին այդպէս թելադրողները: Ռուս-թրքական եւ ռուս-ազրպէյճանական նոր դաշինքներու հետեւանքով Հայաստանի ալ աւելի ստրկացումը եւ գաղութացումը Ռուսաստամնի կողմէ, Հայաստանի մերժումը միութենական հանրապետութիւն դառնալու Փութինի առաջարկին, ՀԱՊԿ-ի անգործութիւնը Հայաստանի նկատմամբ, դաշինքային համաձայնագրութեամբ Հայաստանի սահմանները պաշտպանող ռուս սահմանապահներուն անտարբերութիւնը՝ երբ Ազրպէյճան կը գրաւէր արդէն Հայաստանի ինքնավար տարածքները (այն տարածքները՝ զորս ռուս սահմանապահները ՊԷՏՔ էր պաշտպանէին՝ ըստ ստորագրուած համաձայնագիրի), Ռուսաստանի մերժումը Հայաստանին մատակարարել այն զէնքերը՝ որոնց գնումին համար Հայաստան արդէն փոխանցած է միլիոնաւոր տոլլարներ, Արեւմուտքի եւ նոյնիսկ Իրանի հետ ազատ առեւտուր կատարելու փորձերուն կտրուկ եւ վճռական արգելումները Ռուսաստանի կողմէ, այս բոլորը Հայաստանին կը մղէին մէկ քայլ եւս առաջ երթալ եւ դառնալ Պելառուս ու Լուքաշենքօ: Հայաստան մերժեց դիմելու այս վերջին քայլին:*

*Պրիւքսէլեան գիշերը՝ Ապրիլ 6-ը դեռ չլուսաւորուած, ազրպէյճանական զինուժը «ոչ նպատակային եւ անկանոն» կրակ բացաւ միաժամանակ Տաւուշի, Գեղարքունիքի եւ Սիւնիքի հայկական դիրքերուն ուղղութեամբ: Ապրիլ 6-7-ին ազրպէյճանցիները կրակ բացին Խոզնավարի (Սիւնիքի մարզ), Արաւուսի (Սիւնիքի մարզ) եւ Սոթքի (Գեղարքունիքի մարզ) հատուածի հայկական դիրքերուն ուղղութեամբ:*

*Ռուսաստան պատժեց Հայաստանին Ազրպէյճանի ձեռքով: Այս յարձակումները տեղի պիտի չունենային՝ եթէ չըլլար Ապրիլ 5-ի Պրիւքսէլը: Բայց կէտ մը եւս պէտք է յստակ ըլլայ: Անկախ ասկէ, յետագային ինչ որ ալ պատահի Հայաստանի դէմ, պիտի պատահի՝ անկախ Հայաստանի եւրոպական թեքումէն: Այլեւ այս թեքումը լոկ պատճառաբանութիւն առաջ պիտի նետուի որոշուած գործողութիւններ կատարելու համար: Յետագայ ենթադրեալ գործողութիւններ Հայաստանի դէմ տեղի պիտի ունենան՝ նոյնիսկ եթէ Հայաստան որոշէ դառնալ Պելառուս: Ռուս-ազրպէյճանական սերտագոյն յարաբերութիւնները եւ ռուս-թրքական փոխհասկացողային յարաբերութիւնները ամէն բանէ աւելի ուժեղ են:*

*Խաղաղութեան պայմանագիր կոչուածը պատրանք մըն է, երբ 2015-էն ի վեր Ռուսաստան կը զինէ Ազրպէյճանը պատերազմական դրութիւնը կենդանի պահելու համար, երբ առանց պատերազմական դրութեան Ռուսաստան տեղ պիտի չունենայ Հարաւային Կովկասի մէջ, երբ Ազրպէյճանի միապետը դժուարութիւն պիտի ունենայ կառավարել իր սեփական ժողովուրդը՝ առանց պատերազմի եւ թշնամութեան պատումին:*

*Ամէն մարդ գիտէ՝ որ ՆԱԹՕ եւ Եւրամիութիւն լուծումներ չեն Հայաստանի համար, ոչ ալ աւելի «մաքուր» են Ռուսաստանէն: Բայց Ռուսաստանը արդէն դարձած է ուղղակի սպառնալիք, դարրելով նոյնիսկ ձայն մը ըլլալէ Հայաստանի համար: Արեւմուտքը լոկ ձայն մըն է Հայաստանի համար, բայց անխուսափելի ձայն մը:*

*Երբ տկար ես, պէտք ունիս լծորդներու: Հայաստան տկար է եւ ռուսական լծորդը արդէն չի գործեր: Պէտք է ուժեղանալ, կ'աղաղակեն հայրենասէրները: Չմտածելով՝ որ մէկ զէնքի փոխարէն Ազրպէյճան ընդունակ է գնել տասնապատիկ աւելին: Հայաստանի 2,5 միլիոն ժողովուրդը ազգ-բանակի վերածելով Ազրպէյճան իր 10 միլիոնը կը վերածէ նոյնի: Արտասահմանեան հայերու ներգրաւումին դիմաց (քանի՞ սփիւռքահայ Հայաստան պիտի երթայ պատերազմելու համար. դուն կ'երթա՞ս) Ազրպէյճան դիւրութեամբ կրնայ ներգրաւել իսլամական արմատական խումբեր:*

*Ի՞նչ ընել: Զայներ գտնել Արեւմուտքի մէջ: Միակ ստիպողական ճանապարհը՝ առայժմ:*

*Ա.*

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1964 ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ԱՊՐԻԼ 2024 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٦٤ الخميس ٢٥ أبريل ٢٠٢٤


## ԼՈՒԾՈ՞ՒՄ ԹԷ ՄԻԱԿՈՂՄԱՆԻ ԶԻՋՈՒՄ. ԵՐԵՒԱՆ-ՊԱՔՈՒ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԻՆ ՇՈՒՐՋ

**JAMnews**

**Ի՞նչ համաձայնած են Երեւանը եւ Պաքուն**

Ապրիլ 19-ին տեղի ունեցաւ սահմանազատումի յանձնաժողովներուն 8-րդ հանդիպումը, ուր Հայաստան եւ Ազրպէյճան նախնական համաձայնութիւն ձեռք բերին սահմանագիծի առանձին հատուածներու շուրջ: Խօսքը մասնաւորապէս Տաւուշի մարզին յարակից չորս ոչ-միջերկրային (ոչ-անկլաւային) գիւղերուն մասին է՝ Բաղանիս, Ոսկեպար, Կիրանց, Բերքաբեր: Երեւան եւ Պաքու կը համաձայնին սահմանագիծի այդ հատուածները համապատասխանեցնել ԽՍՀՄ փլուզումի պահուն գոյութիւն ունեցող իրաւաբանօրէն հիմնաւորուած միջհանրապետական սահմանին: Ազրպէյճան կը համաձայնի սահմանազատումի գործընթացին համար առաջնորդուիլ 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագիրով: Նախապէս Հայաստան կը պնդէր՝ որ սահմանազատումը իրականացուի Ալմա-Աթայի հիման վրայ, բայց Պաքուէն դրական արձագանգ չէր ստանար:

Արդիւնքներուն մասին աւելի ուշ կը յայտարարէ Հայաստանի Արտաքին Գործոց Նախարարութիւնը: [Կրկնութենէ խուսափելու համար զանց կ'առնենք ԱԳՆ-ի յայտարարութիւնը, զոր մանրամասնութեամբ կարելի է կարդալ աջ կողմի սիւնակին վրայ, Ա.]:

Վարչապետի աշխատակազմը կը պարզաբանէ այս յայտարարութիւնը նշելով՝

1. Երկու յանձնաժողովները քարտէզի վրայ վերարտադրեցին չորս գիւղերուն միջեւ Խորհրդային Միութեան ժամանակ գոյութիւն ունեցած սահմանները,

2. Յաջորդ քայլով պէտք է ճշդուին այդ սահմանները եւ արտայայտուին նաեւ գետինի վրայ,

3. Գործընթացի քարտէզագրական հիմքը ԽՍՀՄ ժամանակաշրջանի իրաւական հիմնաւորում ունեցող ամենաթարմ տեղագրական քարտէզներն են, որոնք կազմուած են նման իրաւասութիւն ունեցող մարմիններու կողմէ:

**«Առաջին անգամ սեղանի շուրջ հարց ենք լուծել». Փաշինեան**

Անդրադառնալով սահմանազատումի գործընթացին վերաբերեալ Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ ձեռքբերուած համաձայնութեան, Հայաստանի վարչապետը ըսաւ՝ թէ պէտք չէ զայն թերագնահատել:

«Շատ կարեւոր է արձանագրել, որ, ըստ էութեան, առաջին անգամ Հայաստանը եւ Ադրբէջանը սեղանի շուրջ լուծել են հարց: Իհարկէ, դա ձեռքբերում է ե՛ւ Ադրբէջանի համար, ե՛ւ էական ձեռքբերում է Հայաստանի համար», - յայտարարեց Փաշինեան:

Վարչապետի գնահատութեամբ՝ համաձայնութեան իրականացումը մէկ աստիճանով պիտի բարձրացնէ Հայաստանի ինքնիշխանութիւնը:

Ան ըսաւ, թէ իրենց ստորագրութիւններով Երեւանը եւ Պաքուն՝

1. Հաստատեցին փոխադարձ տարածքային ամբողջականութեան ճանաչումը,

2. Հաստատեցին, որ սահմանազատումի գործընթացին մէջ ոչ թէ նոր սահման պիտի ստեղծուի, այլ պիտի վերարտադրուի Խորհրդային Միութեան փլուզումի պահուն տէ իւրէ իրաւական նշանակութիւն ունեցող սահմանը:

Ըստ Փաշինեանին՝ Ոսկեպար եւ Աշաղը Ասկիպարա գիւղերը Խորհրդային Միութեան ժամանակ եղած են իրարու մէջ, Կիրանց եւ Խեյրեմլի գիւղերը շատ մօտ եղած են: Համոզուած է՝ որ բոլոր հարցերը լուծելի են.

«Եթէ յանկարծ սահմանազատման գործընթացում կը պարզուի, որ ինչ-որ տների, հողամասերի հետ կապուած խնդիր կայ, մենք մեր բոլոր քաղաքացիների իրաւունքներին տէր կը կանգնենք: Եթէ նման անհրաժեշտութիւն լինի, մենք նոյն բնակավայրում նոր տներ կը կառուցենք»:

Այս որոշումը, ըստ անոր, էականօրէն պիտի նուազեցնէ ապահովութեան վտանգները ինչպէս Բաղանիս-Ոսկեպար-Կիրանց հատուածին, նոյնպէս սահմանի ողջ երկայնքով:

«Հիմնարար սկզբունք ենք որդեգրել յետագայ սահմանազատման ողջ գործընթացի համար, ինչը նշանակում է, որ կարող ենք արդէն իսկ ձեռքբերուած պայմանաւորուածութիւնների համաձայն նստել ու բոլոր վիճայարոյց հարցերը բանակցութիւնների սեղանի շուրջ լուծել», - նկատեց ան:

Շեշտեց՝ որ սահմանազատումի հարցերով յանձնաժողովները քննարկեցին նաեւ սահմանային ապահովութեան հարցեր եւ կ'աւելցնէ՝ «պէտք է երկուստեք ապահովենք, որ սահմանի երկու կողմերում մարդիկ ապահով ապրեն»:

**Քաղաքացիները փակ կը պահեն դէպի Վրաստան տանող ճանապարհը**

Որոշումէն քանի մը ժամ ետք, Տաւուշի մարզի շարք մը բնակավայրերու բնակիչներ Կիրանց գիւղի հատուածին փակեցին Հայաստան-Վրաստան միջպետական ճանապարհը: Հայաստանէն Վրաստան երթեւեկութիւնը կ'իրականացուի այլընտրանքային ճանապարհով:

Ճանապարհը փակած գիւղացիները ձեռքբերուած համաձայնութիւնը կը համարեն Հայաստանի կողմէ «միակողմանի զիջում»: Կը պնդեն՝ որ առաջարկուող սկզբունքներով նըշուած հատուածներու սահմանազատումը կրնայ ապահովութեան վտանգներ ստեղծել մարզի շարք մը բնակավայրերու համար: Ի դէպ, այս նոյն կարծիքը ունին նաեւ երկիրի ընդդիմադիր գործիչները:

Ապրիլ 22-ին, Երեւանի կառավարութեան շէնքին մէջ տեղի կ'ունենայ Տաւուշի չորս համայնքներու ղեկավարներուն եւ մարզային իշխանութիւններուն հանդիպումը փոխվարչապետ Մհեր Գրիգորեանի հետ: Բնակիչները կը շարունակեն փակ պահել ճանապարհը:

**Ռուս սահմանապահները դուրս կու գա՞ն Տաւուշի մարզէն**

«Ռուսական յենակէտերն այնտեղ յայտնուել են մի իրադրութեան բերումով եւ այն, ինչ տեղի է ունենում հիմա, իհարկէ, իրադրութեան էական փոփոխութիւն է: Եւ այդ փոփոխութիւնը պէտք է իր ազդեցութիւնն ունենայ բոլոր ուղղութիւններում», - լրագրողներու հետ զրոյցին յայտարարեց Հայաստանի վարչապետը:

Այսպէսով Նիկոլ Փաշինեան անուղղակիօրէն հաստատեց՝ թէ սահմանազատումէն եւ սահմանագծումէն ետք ռուս սահմանապահները դուրս կու գան Տաւուշի մարզէն:

«Դա նշանակելու է՝ առաջնագիծ

↳ 4

## ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԻ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ 8-ՐԴ ՆԻՍՏԸ

Հայաստանի եւ Ազրպէյճանի սահմանին Ապրիլ 19-ին տեղի ունեցաւ երկու երկիրներուն միջեւ պետական սահմանի սահմանազատումի եւ սահմանային ապահովութեան հարցերով յանձնաժողովի եւ պետական սահմանի սահմանազատումի պետական յանձնաժողովի 8-րդ հանդիպումը՝ փոխվարչապետներ Մհեր Գրիգորեանի եւ Շահին Մուսթաֆաեւի նախագահութեամբ:

Հայաստանի Արտաքին Գործոց նախարարութիւնը կը տարածէ յայտարարութիւն.




Տաւուշ-Ղազախ հատուածի առաջին սահմանային սիւնը, տեղադրուած Ապրիլ 23-ին

«Սահմանազատման գործընթացի սկզբնական փուլում Կողմերը նախնական համաձայնեցրել են սահմանագծի առանձին հատուածները, անմիջականօրէն Բաղանիս (ՀՀ) – Բաղանիս Այրում (ԱՀ), Ոսկեպար (ՀՀ) – Աշաղը Ասկիպարա (ԱՀ), Կիրանց (ՀՀ) – Խէյրումլի (ԱՀ)՝ եւ Բերքաբեր (ՀՀ) – Կըզըլ Հաջիլի (ԱՀ) բնակավայրերի միջեւ՝ Խորհրդային Միութեան փլուզման պահի դրութեամբ գոյութիւն ունեցող իրաւաբանօրէն հիմնաւորուած միջհանրապետական սահմանին համապատասխանեցնելու նպատակով:

«Որոշել են, որ սահմանագծի տուեալ հատուածների նկարագրութիւնը կազմուելու է հաշուի առնելով տեղանքում գեօդեզիական չափումների արդիւնքում կատարուած կօորդինատների յստակեցումը, որը կը ձեւակերպուի համապատասխան Արձանագրութիւն-նկարագրութեամբ, ինչը պէտք է համաձայնեցուի ու ստորագրուի Կողմերի միջեւ մինչեւ 2024թ. Մայիսի 15-ը:

«Համաձայնել են, որ Կողմերը կը դիմեն իրենց Կառավարութիւններին՝ սահմանագծի համաձայնեցուած հատուածներում իրենց սահմանապահ ծառայութիւնների միաժամանակեայ եւ զուգահեռ տեղակայման համար միջոցներ ձեռնարկելու նպատակով: Համաձայնել են նաեւ, որ մինչեւ սահմանազատման գործընթացի ամբողջական աւարտը, Արձանագրութիւն-նկարագրութիւնում նշուած համաձայնեցուած սահմանագծի հատուածները կը համարուեն սահմանազատուած:

«Զուգահեռաբար պայմանաւորուածութիւն են ձեռք բերել աւարտին հասցնել Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան միջեւ պետական սահմանի սահմանազատման եւ սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովի եւ Ադրբէջանի Հանրապետութեան եւ Հայաստանի Հանրապետութեան միջեւ պետական սահմանի սահմանազատման պետական յանձնաժողովի համատեղ գործունէութեան մասին կանոնակարգի նախագծի համաձայնեցման շուրջ աշխատանքները մինչեւ 2024թ. Յուլիսի 1-ը եւ մեկնարկել դրա ներպետական համաձայնեցման ու հաստատման գործընթացը՝ Կողմերի՝ պետութիւնների օրէնսդրութեամբ սահմանուած կարգով եւ պահանջների համաձայն:

«Կողմերը պայմանաւորուածութիւն են ձեռք բերել, որ սահմանազատման գործընթացում կ'առաջնորդուեն Ալմա Աթայի 1991թ. հռչակագրով: Կողմերը պայմանաւորուել են նաեւ տուեալ հիմնարար սկզբունքն ամրագրել Կանոնակարգի նախագծում (եթէ յետագայում ՀՀ եւ ԱՀ միջեւ խաղաղութեան եւ միջպետական յարաբերութիւնների հաստատման մասին Համաձայնագրով կը նախատեսուեն այլ կարգաւորումներ, ապա կանոնակարգի համապատասխան դրոյթները կը համա-

↳ 3

# ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ
## (Ծննդեան 105-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

### Բ. ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԸՆԿԱԼՈՒՄՆԵՐ
### 1. ՄՏԱՒՈՐ ԴԻՄԱՒՈՐՈՒՄ

Կապուտիկեան կու գար գաղութ մը՝ որ ամբողջութեամբ կը վերահսկուէր աւանդական կուսակցութիւններուն կողմէ: Ինչպէս տեսանք, ինք հրաւիրեալն էր Ռամկավար Կուսակցութեան միաւորներուն, որոնց միջոցով կը ներգրաւուէին Դաշնակցութիւնն ու Հնչակեանները:

Ժամանումէն առաջ եգիպտահայ մամուլը կը սկսի մտաւորապէս տրամադրել ինքզինքը եւ կուսակցական ընթերցողը:

Ռամկավար-Հնչակեան պլոքի եւ Դաշնակցութեան միջեւ յարաբերութիւնները այդ ժամանակ կը գտնուէին ամենացած աստիճանի վրայ, որ անպայմանօրէն իր արձագանգը պիտի գտնէր մամուլին մէջ, արտայայտուելով կուսակցական վերնախաւին տրամադրութիւնները Կապուտիկեանի նկատմամբ, յատուկ շեշտադրութեամբ առաջ նետելով նաեւ միջկուսակցական խօսոյթը:

Այսպէս, *Արեւ*ի խմբագրապետ Էտմոն Կոտալազեան անստորագիր խմբագրականով եւ յօդուածով կը նախապատրաստէր Կապուտիկեանի գալուստը այդ ժամանակուայ համար իրեն յատուկ չափազանցեալ ոճաբանական արտայայտութիւններով:

Գահիրէէն առաջ Կապուտիկեան կը գտնուէր Պէյրութ: Արձագանգելով Պէյրութի ելոյթներուն, խմբագրապետը պիտի գրէր. «Սիլվա Կապուտիկեանի շունչով մեզի խօսեցաւ մեր դարաւոր հայրենիքը, իր զրկանքներով ու թռիչներով, իր տառապանքներով ու երջանկութեամբ»(51):

Քանի մը գովաբանական խօսքեր եւս, եւ Կապուտիկեանին նուիրուած խմբագրականին մնացած մասը ամենաուժեղ յարձակում մըն է հակառակ կուսակցութեան վրայ: Խմբագրապետը դժուար մարսած է այն պահը՝ որ Պէյրութի մէջ Կապուտիկեան ընդունած է Դաշնակցական կառոյց այցելելու հրաւէրը(52):

Յաջորդ նախապատրաստական գրութեան մէջ, խմբագրապետը արդէն կը կեդրոնանայ Եգիպտոս կատարելիք այցելութեան վրայ, օգտագործելով ամենավառ արտայայտութիւններ.

«Կու գայ՝ իր ձայնին շերտերը անմիջականօրէն հաղորդելու մեր հոգիներուն,

«Կու գայ՝ իր նայուածքին պայծառութեամբ լուսաւորելու մեր աչքերը,

«Կու գայ՝ շնչելու մեր մթնոլորտին մէջ ու շնչել տալու մեզի ի՛ր մթնոլորտը,

«Կու գայ՝ վերջապէս, իր տաք շունչին մէջ ի մի ձուլելու սփիւռքի եւ հայրենիքի զոյգ հատուածներուն բաղձանքները, երազները, կեանքը»(53):

Միւս կողմէ, Կապուտիկեանի առնչութեամբ Դաշնակցական մամուլը կը կանգնէր քիչ մը ինքնապաշտպանական դիրքի վրայ: Ան կը գտնուէր երկընտրութեան առջեւ: Եգիպտոս այցելողը համոզուած Համայնավար մըն էր 1948-էն ի վեր անդամ Համայնավար Կուսակցութեան: Իսկ Դաշնակցութեան անհանդուրժողականութիւնը եւ գրեթէ թշնամութիւնը Համայնավարութեան նկատմամբ բացայայտ իրողութիւն մըն է: Անմիջապէս նկատենք, որ Ռամկավար Ազատականութիւնը եւս իր սկզբունքներով կատարեալ հակահամայնավար մըն է՝ ունենալով պուրժուա լիպերալ ուղղութիւն, բայց իր դիրքաւորումը Խորհրդային Հայաստանի նկատմամբ շրջանցել եւ մոռցնել տուած է այս խորքային խզումը: Այդպէս չէր Դաշնակցութեան պարագան: *Յուսաբեր* օրաթերթի Փետրուար 16-ի խմբագրականը կը ներկայացնէ մէկ օր առաջ ժամանած Կապուտիկեանին.

«Կենարար այդ Լո՛յսն էր ահա, զոր երկու մահասփիւռ խորշակներ, վերջին յիսնամեակին, փորձեցին վտարաբար սպաննել մեր երկրին ու հոգիներուն մէջ, երկու «իզմ»եր ուզեցին հնաւանդ հայոց հայրենիքը անհուն դամբարանի մը վերածել հայ ժողովուրդին համար եւ լոյսին հետ փշրել նաեւ «կանթեղ»ը Հայ Ոգիին, - առաջինը թուրանիզմն է կամ թուրքիզմը, երկրորդը կոմունիզմն է կամ ստալինիզմը:

«Առաջինը ամայացուց Հայաստան աշխարհի երեք չորրորդը եւ չորս հովերուն ցրուեց հայութեան երկու երրորդը, առաջին մէկ երրորդը սրախողխող նահատակելով՝ գեհենային բարբարոսութեամբ:

«Երկրորդը ջանաց իր լրումին հասցնել առաջինին բեմադրած արհաւիրքը տռամը, - քառասուն տարի շարունակ մահուան աղջամուղջին մէջ գալարեց հայոց հայրենիքը, քառասուն տարի շարունակ մահասարսուռ անձկութիւն մը պտրտցուց հայրենաբնակ հայ ժողովուրդի սրտին եւ հոգիին մէջ»(54):

Մէկ կողմ ձգենք Յեղասպանութիւնն ու սթալինեան Համայնավարութիւնը նոյն զամբիւղին մէջ նետելու անյարմարութիւնը, մէկ կողմ ձգենք նաեւ այն հանգամանքը՝ որ Յեղասպանութիւնը ուղղակիօրէն կը թիրախաւորէր հայերը, մինչդեռ Սթալինի կուլաքները կը բովանդակէին Խորհրդային Միութեան բոլոր ազգերը, այստեղ կարեւորը այն է՝ որ Համայնավարութեան պախարակումով խմբագրականը մէջտեղ նետած կ'ըլլայ ճիշդ այն պահը, այն գաղափարը՝ որ արգիլուած է Համայնավար Կուսակցութեան անդամ Սիլվա Կապուտիկեանի համար:

Ապա խմբագրականը կամաց-կամաց կը կառուցէ հայութեան յարութեան գաղափարը սթալինիզմէն, մոռցնել կու տայ Համայնավարութիւնը, եւ դիտել կու տայ հայերուն ջանքը վերականգնելու հայաստեղծ Հայաստանն ու հայրենիքը, ուրկէ այսօր Եգիպտոս կու գայ Կապուտիկեան, «պայծառ ու լուսանոյշ ճառագայթ մը, որ կը բխի հայաստեղծ հայրենիքի եւ հայրենակերտ հայութեան սրտէն»(55):

Խորհրդային Հայաստանի դիտարկումին մէջ, խմբագրականը դիտաւորեալ կ'անջատէ Համայնավարութիւնը Հայաստանէն՝ առաջինը վատ, երկրորդը լաւ հակադրութեամբ: Պարզապէս երկուքը իրարմէ կը հեռացնէ ժամանակաշրջանի առումով, Համայնավարութիւնը վերագրելով Սթալինի շրջանին, Հայաստան-հայրենիքը ներկայի (1963): Անշուշտ, գիտենք որ Համայնավարութիւնը կը տիրէր նաեւ 1963-ին, երբ ամենազօր էր Համայնավար Կուսակցութիւնը Հայաստանի մէջ, Խորհրդային էր Հայաստանը: Խորհրդային Միութեան մակարդակով փոխուած էր վարչակարգը, վերացած էին կուլաքները, երկաթեայ վարագոյրը սկսած էր դառնալ քիչ մը թափանցիկ, տարբերակուած էին Համայնավարութեան ընկալումները, բայց Համայնավարութիւնը այնտեղ էր՝ իր ամբողջ ուժով եւ հզօրութեամբ:

Թէեւ *Յուսաբեր* այս մօտեցումը կը ցուցաբերէր պարագայական պայմաններու մէջ, բայց կարեւոր է ընդունիլ՝ որ Խորհրդային Հայաստանի գնահատումներուն մէջ Համայնավարութեան եւ հայկականութեան՝ Խորհրդայինի եւ Հայաստանի խզումը հիմքն է նաեւ այսօրուայ արուեստաբանութեան եւ պատմագրութեան, արդէն ողջ հայկական տարողութեամբ՝ Հայաստանի մէջ թէ Սփիւռքի: Քանակով քիչ են այն լուրջ ուսումնասիրութիւնները՝ որոնք Խորհրդայինն ու Հայաստանը կը դիտեն տիպլեքթիք կապի մէջ: Խորհրդային էր Հայաստանը, եւ կարելի չէ անջատել Խորհրդայինը Հայաստանէն, բայց կարելի է այս կամ այն ոլորտի մէջ, այս կամ այն ժամանակահատուածի մէջ տեսնել մէկուն կամ միւսին գերադասութիւնը միւսին նկատմամբ, տեսնել երկուքին ալ իմաստափոխութիւնները ժամանակի ընթացքին, բայց ոչ երբեք անոնց խզումը:

Արդ, ինչ որ կը գրէր *Յուսաբեր* կը հանդիսանայ նաեւ այսօրուայ համահայկական տիրապետեալ գաղափարախօսութիւնը եւ գերիշխող պատումը Խորհրդային Հայաստանի գնահատումին համար, արդէն կուսակցութենէն բոլորովին անդին:

Ժամանակագրական առումով հայկականութեան յաջորդումը Համայնավարութեան առկայ է *Յուսաբեր*ի նոյն թիւին մէջ հրատարակուած Բենիամին Թաշեանի յօդուածին մէջ՝ նուիրուած Կապուտիկեանին: Այստեղ Թաշեան կը յիշեցնէ՝ որ Կապուտիկեան ժամանակին եղած է Համայնավարութեան խօսնակը. «Բանաստեղծուհին, տասնեակ մը տարիներ առաջ, «Իմ հարազատները» կը կոչէր պատգամախօսը, Կրեմլը, Կոլխոզի դաշտերը, Կոմունիզմի գինուորը, Մոսկուան եւ իր Կարմիր հրապարակը: Եւ ասիկա ընելուն համար ստալինեան մրցանակ կը ստանար»(56): (Արամ Խաչատրեան եւս ստացած էր Սթալինի մրցանակ... *Գայեանէ* պալէին համար:)

Բայց այս յիշեցումը լոկ փոքր մաս մըն է Թաշեանի յօդուածին՝ որ արդէն այսօրուայ Կապուտիկեանին կը դնէ զուտ ազգային դաշտի վրայ: Յօդուածը կը սկսի.

«Ես այն տպաւորութիւնը ունիմ, որ Սիլվա Կապուտիկեանի բերնով «Երեւանն է խօսում»: Իր աչքերով «Երեւանն է տեսնում»: Իր ականջով «Երեւանն է լսում» եւ իր հոգիով «Երեւանն է զգում»:

«Չեմ հաւատար, չեմ ուզեր հաւատալ, թէ Սիլվա Կապուտիկեանի բերնով նաեւ վարչակարգն է «խօսում»:

«Չեմ հաւատար, չեմ ուզեր հաւատալ նոյնպէս, թէ հայրենի կռունկները ուրիշ բան չունին մեզի բերելիք, բայց եթէ վար առնուած արձաններուն դժխեմ պատգամը»:

Յօդուածը կը վերջանայ հայրենասիրական լաւատեսութեամբ.

«Երբ «Երեւանն է խօսում», մեզի պիտի թուի, թէ Մայր Հայրենիքն է խօսում, հայ ժողովուրդն է խօսում:

«Երբ «Երեւանն է խօսում», պիտի կարենանք զգալ, թէ մեր սիրտն է խօսում»(57):

Թաշեանի առարկած Համայնավարութիւն-ազգային յաջորդականութիւնը ճիշդ է Կապուտակեանի կենսագրութեան մէջ, քանի մը վրիպեալ կէտերով:

Նախ, Կապուտիկեան միակը չէր: Նաիրի Զարեան, Գէորգ Էմին եւ շատ ու շատ ուրիշներ եւս ճիշդ նոյնը ըրած էին, Սթալինի ժամանակ՝ քոմսոմոլ, ձնհալի ժամանակ՝ ազգային: Երկրորդ, ձնհալի ազգայինը վերէն թելադրուած ազգային մըն էր, արտօնութեամբ, ուղղորդութեամբ եւ վերահսկողութեամբ Համայնավար Կուսակցութեան նոր առաջնորդներուն, որոնք նպատակ ունէին Համայնավարութեան մէջ տեղաւորել ազգայինը՝ յատուկ չափանիշերով եւ սահմաններով: Նոր ազգայնականութիւնը բնաւ անջատուած չէր Խորհրդային Համայնավարութենէն:

Քաղաքականութենէն անդին, յօդուածի նախաբանին եւ վերջաբանին մէջտեղը Բենիամին Թաշեան կը խօսի շատ բաներու մասին, կը փորձէ կապել ոգին, երազն ու իրականութիւնը՝ այս բոլորը առնչելով Կապուտիկեանի հետ, կը սահմանէ բանաստեղծութիւնը իբրեւ ոչ-քաղաքական ոլորտ, կը գովերգէ Կապուտիկեանի բանաստեղծութիւնը, ի միջի այլոց, գրելով.

«Միայն արուեստ չէ իր ունեցածն ու տուածը, այլ նաեւ զգացում է, յուզում է, սէր է, կարօտ է ու ապրում»(58):

Մէկ խօսքով, Կապուտիկեան անձի եւ բանաստեղծի շուրջ ստեղծելով դրական տիպար, յօդուածը, խմբագրականին հետ միասին, ճամբայ կը հարթէ Դաշնակցութեան միաւորներէն ներս փառաւորապէս եւ արժանաւորապէս ընդունելու Համայնավար Կուսակցութեան անդամը, որ տեղի պիտի ունենար Յուսաբերի մէջ, Փետրուար 27-ին:

Եթէ կուսակցութենէն դէպի բանաստեղծուհի շարժող ընթացքը այսպիսով կը գտնէր իր լուծումը, տրամաբանօրէն պէտք է կայանար նաեւ հակառակը՝ բանաստեղծուհիէն դէպի կուսակցութիւն վերաբերումը, որ պիտի բացայայտուէր ձեռնարկին օրը եւ անկէ ետք: Աստր մասին՝ ստորեւ:

Կապուտիկեանի գալուստի լուրը հայերը կը հասցնեն նաեւ Գահիրէի արաբերէն, ֆրանսերէն, անգլերէն եւ յոնարէն լրագիրներուն: Փետրուար 12-ի թիւին մէջ *Ալ-Ահրամ* կը գրէ.

«ԱՄՀ-ի հայ գաղութին հրաւէրին ընդառաջելով, յառաջիկայ Ուրբաթ առաւօտ Պէյրութէն գալով Գահիրէ կը հասնի Հայաստանի առաջին բանաստեղծուհին՝ Սիլվա Կապուտիկեան:

«Սիլվա հեղինակն է *Բանաստեղծական հատընտիր երկեր* հատորին որ այս տարուան սկիզբը երեւցաւ Մոսկուայի հրատարակչատանց մէջ եւ երեք օրուան մէջ ծախուեցաւ 50 հազար օրինակով:

«Սովետ գրագէտներու միութիւնը անցեալ տարի Սիլվայի գրական գործունէութեան 25-ամեակը տօնեց:

«Իր բանաստեղծութիւնը կը յատկանշուի ջերմութեամբ, խորութեամբ, սիրոյ զգացումներով եւ հայրենասիրութեամբ:

«Հայ համայնքը ի պատիւ իրեն ընդունելութիւն-հանդէս մը կազմակերպած է որ տեղի պիտի

↪ 4

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ԶԱՀԱԿԻՐ*Ի 59-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՁԱՅՆԱԳՐԵԱԼ ՇԱՐԱԿԱՆ

Լոյս տեսաւ *Զահակիր*ի Ծթ. (59) Յաւելուածը, որ կը ներկայացնէ Սահակ. Քհնյ. Շաքարեանի ձեռագիրներու շարքին երրորդ հատորը՝ *Ձայնագրեալ Շարական* (476 էջ):


ՍԱՀԱԿ ՔՀՆՅ. ՇԱՔԱՐԵԱՆԻ
ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԷՆ
Գ.

ՁԱՅՆԱԳՐԵԱԼ ՇԱՐԱԿԱՆ

Հրատարակութեան պատրաստեց՝
ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ԶԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ Ծթ. (59)

ԳԱՀԻՐԷ
2024

Ան կը հանդիսանայ երկու ձեռագիրներէ բաղկացած Շարակնոցի Ա. մասը (Շարակնոցի առաջին կէսը ամբողջութեամբ), անյայտ թուականով, վայրով եւ ձեռագիրով: Բ. մասը չգտնուեցաւ:

1

## ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԻ...

պատասխանեցուեն տուալ Համաձայնագրով սահմանուած սկզբունքներին):

«Պայմանաւորուել են, Կողմերի կողմից Կանոնակարգի հաստատումից յետոյ, համաձայնեցնել հերթականութիւնը եւ շարունակել սահմանի բոլոր մնացած հատուածների սահմանազատման գործընթացը՝ ներառեալ անկլաւների եւ էքսկլաւների հետ կապուած հարցերով»:

Հանդիպումէն ետք կը ստորագրուի արձանագրութիւն:

Այս համաձայնութեան կ'արձագանգէ ԵՄ: Հարաւային Կովկասի հարցերով Եւրամիութեան յատուկ բանագնաց Թոյվօ Քլաար կը նշէ. «Յուսադրող լուրեր կան Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ սահմանային յանձնաժողովներուն աշխատանքի, իրաւական փաստաթուղթերու եւ 1991 թուականի Ալմա-Աթայի համաձայնագիրի հիման վրայ սահմանազատումի գործընթացը սկսելու վերաբերեալ», աւելցնելով՝ որ Եւրամիութիւնը լիովին կ'աջակցի բանակցային գործընթացին:

Ուաշինկթոն կ'ողջունէ 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագիրին շուրջ Երեւանի եւ Պաքուի համաձայնութեան մասին յայտարարութիւնը՝ որպէս երկու երկիրներուն միջեւ սահմանազատումի հիմք, Թուիթըրի իր էջին վրայ Ապրիլ 20-ին կը գրէ ԱՄՆ պետական քարտուղար Անթոնի Պլինքէն: Ան ասիկա կարեւոր քայլ կը համարէ կայուն եւ արժանապատիւ խաղաղութեան համաձայնագիրի կնքումին համար:

Նոյնպէս Թուիթըրի էջին վրայ Եւրոպական Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլ կ'արձանագրէ. «Ջերմօրէն կ'ողջունենք Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ 1991 թուականի Ալմա Աթայի հռչակագիրի վերաբերեալ համաձայնագիրը՝ որպէս երկու երկիրներուն միջեւ սահմաններու սահմանազատումի հիմք: Սահմաններու սահմանազատումը, որ հիմնուած է իւրաքանչիւր երկիրի տարածքային ամբողջականութեան միանշանակ ճանաչումին վրայ, եղած էր նաեւ Պրիւքսէլի քննարկումներուն հիմնական տարրը եւ կը ծառայէ որպէս էական քայլ դէպի բնականացում եւ ողջ տարածաշրջանի խաղաղ բացում»:

Գերմանիոյ Արտաքին Գործոց Նախարարութիւնը Թուիթըրի մէջ կը յայտարարէ՝ որ Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ սահմանազատումի վերաբերեալ 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագիրին շուրջ համաձայնութիւնը կը վերացնէ խաղաղութեան համաձայնագիրի ճանապարհին հիմնական խոչընդոտը, նշելով՝ որ Պեռլին պատրաստ է հնարաւոր աջակցութիւն ցուցաբերել կայուն խաղաղութեան ճանապարհին:

ՄԱԿ-ի գլխաւոր քարտուղար Անթոնիօ Կութերէշ կ'ողջունէ Ապրիլ 19-ին պետական սահմանի սահմանազատումին վերաբերեալ Երեւանի եւ Պաքուի ձեռք բերած համաձայնութիւնը:

Թուրքիոյ Արտաքին Գործոց Նախարարութիւնը կը տարածէ յայտարարութիւն՝ ողջունելով հանդիպումին ընդունուած որոշումը:

Նորվեկիան կ'ողջունէ սահմանազատումի աշխատանքներու յառաջընթացի յուսադրիչ լուրը, Թուիթըրի էջին վրայ կը գրէ Նորվեկիոյ Արտաքին Գործոց Նախարարութեան պետական քարտուղար Էյվին Վատ Փետերսոն:

Ռուսաստանի Արտաքին Գործոց նախարար Սերկէյ Լաւրով կ'ողջունէ ձեռք բերուած համաձայնութիւնը եւ ՀԱՊԿ-ի անունով կ'ըսէ՝ որ Յունիսէն սկսեալ, երբ վերջացած կ'ըլլայ սահմանազատումը, ՀԱՊԿ պիտի պաշտպանէ Ոսկեպար, Կիրանց, Բաղանիս եւ Բերքաբեր գիւղերը, ինչպէս նաեւ այդ գիւղերու օդային տարածքին պիտի գործարկուի ՀԱՊԿ Հակաօդային Պաշտպանութեան (ՀՕՊ) միասնական համակարգը: 4

ԽՈՀԵՐ

## ԵՐԲ ԺԹ. ԴԱՐՈՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԽՄԲԱԳԻՐԸ Կ'ՈՒՆԿՆԴՐԷ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ...

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Բերուելիք երկու օրինակները կապ չունին իրարու հետ: Երկու խմբագիրներն ալ կապ չունին իրարու հետ: Երկու ժամանակակից խմբագիրներ, որոնք, ինչպէս կարելի է ենթադրել, չէին ախորժիր իրարմէ: Բնաւորութիւններն ալ տարբեր էին: Յարութիւն Ալփիար՝ *Փարոս*ի խմբագիր, երգիծագիր լրագրող մը՝ որոշ փափկանկատութիւններով: Սմբատ Բիւրատ՝ *Փիւնիկ*ի խմբագիր, սլացիկ արտայայտուող մը՝ երբեմն խոժոռ ու յանդուգն, բայց ամէն պարագայի առանց փափկանկատութիւններու:

**ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱԼՓԻԱՐ**

Գահիրէի Քոնթինանթալ պանդոկ (Grand Continental): Առաջնակարգ պանդոկ, ճոխութիւն, շքեղութիւն, հարստութիւն, դրամ: ԺԹ.-Ի. դարերու սահմանագլուխին ան կը գտնուէր Գահիրէի ուժային կեդրոնին մէջ՝ ըստ յետարդիապաշտներուն, կամ մշակութային կեդրոնին՝ ըստ մշակութասէրներուն, կամ դրամատիրական-առեւտրային կեդրոնին՝ ըստ ձախերուն, դիմացը ունենալով Խտիվալ Օփերայի Թատրոնը եւ Էզպէքիէի հռչակաւոր ու գեղեցկագոյն պարտէզները: Մրցակցութիւն մը կար իր եւ քիչ մը վարը գտնուող Շեփըրտս պանդոկին միջեւ:


Գահիրէի Քոնթինանթալ պանդոկը

Էզպէքիէ թաղամասն էր, Եգիպտոսի հարուստ վերնախաւի «սեփականութիւնը» նկատուող տարածութիւնը, բոլոր խանութներուն անունները օտար՝ յատկապէս ֆրանսերէն եւ իտալերէն, ոչ մէկ արաբերէն տառ:

Արտայայտիչ են այդ շրջանի բազմաթիւ լուսանկարները: Իրենց առօրեայ զգեստով՝ կոկիկ բաճկոններով եւ փափիյոններով շրջագայող խրոխտ տղամարդիկ, եւ «Ֆելլահ» հագուած արաբ ծառաներ, կառապաններ, բարապաններ, որոնք ենթադրուած է սպասարկեն ու ենթարկուին առաջիններուն: Չկայ միջին դասակարգ: ԺԹ. դարու Քոնթինանթալ պանդոկի լուսանկար մը՝ զոր կը ներկայացնեմ *Զահակիր*ի ընթերցողներուն, կրնայ աղօտ գաղափար մը տալ երեւոյթին մասին:

Այդ ժամանակ մեծ պանդոկները դասական նուագահանդէսի սրահ ունէին, մեծ դաշնակով: 1898 Փետրուար 9-ին, Քոնթինանթալի սրահին մէջ երգահանդէս կու տայ սոփրանօ Mademoiselle Marie Marcelle, որուն բուն անունն է Մարի Մսերեանց, ինչպէս կ'իմանանք *Փարոս*էն: Մարսէլ-Մսերեանցի ով ըլլալը չկրցայ պարզել: Ինչպէս այդ ժամանակուայ սովորութիւնն էր, նուագահանդէսին կը մասնակցին այլ արուեստագէտներ՝ Օր. Հանրիէթ Մարկիւլի, Տէր եւ Տիկին Պրաքալէ, Պր. Ֆարտուլի:

Մսերեանց կ'երգէ՝ Viviani: *Je crois en toi*. Verdi: *Un ballo in maschera*, Aria. Anton Rubinstein: Romance. Ponchielli: *La Gioconda*, Aria. Stutzman: *Chanson russe*. Verdi: *La forza del destino*, Aria(1):

Յարութիւն Ալփիար ներկայ էր երգահանդէսին: Ահաւասիկ իր «քննախօսական»-ը նոյնութեամբ եւ ամբողջութեամբ.

«*Տիբլօմաթիք սուարէ*ի մը կատարեալ երեւոյթը ունէր չորեքշաբթի գիշերուան նուագահանդէսը ուր երգեց Օր. Մառի Մսերեանց կամ Մատմուազէլ Մարի Մարսէլ, ինչպէս որ կ'ուզէր:

«*Քօնթինանթալ*ին հանդէսի յատուկ սրահը իր մէջ կը պարունակէր Գահիրէի եւրոպացի բարձր դասուն crêmeը: Գոհարի, ադամանդի, մետաքսի, մերկ ուսերու, խարտեաշ եւ ալւոր գլուխներու, յղկուն ուսերու, գեղեցիկ դէմքերու, ծանր անձնաւորութիւններու, թեթեւ mondainներու, *Ֆրաք*ի, *քլաք*ի, ծաղկի կուտակում մը, որուն աշխարհիկ բոյրը կը գինովցնէ՝ առանց խմելու եւ երազել կուտայ աչքդ բաց:

«Ամէն բան կար այդ սրահին մէջ, բացի... հայերէ:

«Հայ երգչուհին՝ գրեթէ բոլորովին օտարազգի ունկնդիրներ ունեցաւ որոնք թերեւս դժգոհ չի մնացին եկած ըլլալնուն համար, որովհետեւ ատիկայ առիթ մըն էր զիրար գտնելու, ֆլիրթելու, խօսելու եւ սրտի բանակցութիւններ կնքելու:

«Օրիորդ Մսերեանց գեղեցիկ շրջահայեցութեամբ մը չէր ուզած իր հայ ըլլալը հասկցնել, եւ ասոր համար անունը փոխելով Maire Marcelle ըրած էր:

«Ազգութիւններ կան որ դիւցազնութիւն մը կ'արժեն»(2):

Չհասկցանք եթէ երգչուհին լաւ էր թէ վատ:

Շքեղ ու բազմապիսի զգեստները տուեալ դասակարգի ուժի ցուցադրութիւններն էին՝ զորս կ'երգիծաբանէ Ալփիար: Արդիական դասակարգը ուժի փոխարէն պիտի անուանէր նորաձեւութիւն, haute couture, եւ ասիկա ենթադրուած չէ որ վատ բան համարենք, հոգ չէ թէ անոր ետեւը պահուըտած են արտադրական գերշահոյթները, հոգ չէ անոր միջոցով ստոյգ սահմանագծուած եւ սահմանազատուած են դասակարգերը, հոգ չէ այդ սահմանագծումին բարձր կողմը անցած փոքրաթիւ հասարակութեան ալ աւելի ենթարկումը դրամին ու դրամամոլութեան:

Ալփիարի ուշադրութենէն չի վրիպիր նաեւ նուագահանդէսին ներկայ գտնուած դասակարգին ընկերային պահուածքը՝ զիրար գտնել, խօսիլ, այլեւ սիրախաղել ֆրանսական տեսակով՝ ֆլիրթել (flirter): Ընտրեալ դասակարգ, ընտրելախաւ, վերնախաւ, ուժային դասակարգ, ուր դասակարգային անդամներուն միջեւ եղած ազնուակերպ յարաբերութիւնները աւելի կարեւոր են քան իրենց եւ կատարողներուն միջեւ եղած հաղորդականութիւնը: Նուագահանդէսներու վաղեմի խնդիրն էր ասիկա: Հանդիսատես՝ որուն համար նուագահանդէսը ընկերային միջայր մըն է, ընկերայինը ըլլալով կատարումէն աւելի բարձր, կամ երկուքն ալ ներկայանալով հաւասար ներթափանցումով: Միւս կողմէ՝ արուեստի բիւրեղապաշտութիւնը, ինչ որ արդէն կար այդ ժամանակ, բայց այսօրուայ դրութեամբ դարձած է անվիճարկելի օրէնք, ուր նուագահանդէսը ընկերային միջավայր մը չէ, այլ կատարողակեդրոն եւ բեմակեդրոն հաւաքում մը:

Վերջապէս, երգչուհիին անուանափոխութիւնը Քոնթինանթալի համար՝ ֆրանսական անունի որդեգրութեամբ: Ուժային նոր մակարդակի ցուցադրութիւն մը՝ Գահիրէի ուժային կեդրոնի մը մէջ, քանզի «կրթուած» ֆրանսացին դժուար է համեմատել «լեռնցի» հայուն հետ: Այդպէս էր այդ ժամանակուայ ֆրանսական ընկալումը ասիացիներուն: Ամբողջարկում (integration) այդ ընտրելախաւին մէջ: Ընտրելախաւին տեսանկիւնէն՝ դրական քայլ մը: Հայերուս համար՝ ազգուրացութիւն: Հոգ չէ՝ եթէ Թագուհի Ամարղանեան եւ Վաղինակ Ազնաւուրեան ինքնակամ կը դառնան Լուսին Ամարա եւ Շարլ Ազնաւուր. անոնք հայ ժողովուրդին «պարծանքն» են Մեթրոփոլիթըն Օփերայի եւ Օլիմփիայի մէջ յաջորդաբար: Ալփիար երգիծանքով ասիկա կը համարէ «գեղեցիկ շրջահայեցութիւն»:

**ՍՄԲԱՏ ԲԻՒՐԱՏ**

1899 Մարտ 11-ին Սմբատ Բիւրատ ներկայ կ'ըլլայ Գահիրէի Ընթերցասիրաց ընկերութեան նուագահանդէսին: Կը նուագեն Էնրիքօ 4

# ՑԱՆԱԿԻՐ

## 3 ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԻ...

Ապրիլ 22-ին ՆԱԹՕ եւս կ՚ողջունէ սահմանազատումին հիմքը 1991-ի Ալմա-Աթայի հռչակագիրը դնելու համաձայնութիւնը: «Գլխաւոր սկզբունքը երկու երկիրներուն տարածքային ամբողջականութիւնը ճանչնալն է», - Թուիթըրի էջին վրայ կ'արձանագրէ Հարաւային Կովկասի եւ Կեդրոնական Ասիոյ հարցերով ՆԱԹՕ-ի գլխաւոր քարտուղարի յատուկ ներկայացուցիչ Խաւիէր Քոլոմինա:

Արաբական Միացեալ Էմիրութիւնները յայտարարութիւն կը հրապարակէ Արտաքին Գործոց Նախարարութեան կայքին վրայ, ուր համաձայնութիւնը կը համարէ նշանակալի քայլ, որ կարող է ամրապնդել երկխօսութեան կամուրջները եւ նպաստել կովկասեան տարածաշրջանի կայունութեան: Մասնաւորապէս նշուած է՝ որ ԱՄԷ-ն կ'ողջունէ չորս գիւղերու տարածքի սահմաններուն սահմանազատումին եւ սահմանագծումին համաձայնութիւնը: ԱՄԷ կը հետեւի երկու երկիրներուն միջեւ վստահութիւն կառուցելու եւ խաղաղութիւն ամրապնդելու գործընթացին, յոյս յայտնելով՝ որ այս նշանակալի քայլը կ'ամրապնդէ հաղորդակցութեան եւ երկխօսութեան կամուրջները եւ կը նպաստէ խթանելու կովկասեան տարածաշրջանի կայունութիւնը եւ կառուցողական համագործակցութիւնը:

Սլովենիոյ ԱԳՆ-ը Թուիթըրի էջին վրայ կը նշէ. «Սլովենիան կ'ողջունէ Հայաստանի եւ Ազրպէյճանի՝ 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագիրի հիման վրայ սահմանը սահմանազատելու համաձայնութիւնը եւ կը շնորհաւորէ երկու կողմերուն կայուն խաղաղութեան ուղղուած այս քայլին կապակցութեամբ»:

Իրանի Արտաքին Գործոց Նախարարութեան խօսնակ Նասէր Քանանի Ապրիլ 23-ին կը յայտարարէ՝ թէ Իրանը կ'ողջունէ համաձայնութիւնը: IRNA գործակալութեան փոխանցումով, ան ըսած է՝ թէ ինքնիշխանութեան եւ տարածքային ամբողջականութեան փոխադարձ յարգանքի շրջանակի մէջ սահմանային հարցերը խաղաղ մեթոտներով լուծելու երկու երկիրներու ջանքերուն շարունակութիւնը անհրաժեշտ է Հարաւային Կովկասի մէջ ամուր խաղաղութիւն եւ կայունութիւն հաստատելու համար:

Քաթարի Արտաքին Գործոց Նախարարութիւնը կ'ողջունէ համաձայնութիւնը, յայտարարելով՝ որ Քաթարը յոյս ունի, որ նախնական համաձայնութիւնը ճանապարհ կը հարթէ երկու կողմերուն միջեւ առկախ խնդիրները լուծել՝ երկխօսութեան եւ խաղաղ միջոցներով:

Ապրիլ 23-ին, Տաւուշ-Ղազախ հատուածին կը տեղադրուի առաջին սահմանային սիւնը:

## 1 ԼՈՒԾՈ՞ՒՄ ԹԷ ՄԻԱԿՈՂՄԱՆԻ ԶԻՋՈՒՄ. ԵՐԵՒԱՆ-ՊԱՔՈՒ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԻՆ ՇՈՒՐՋ

չունենք, ունենք սահման, իսկ սահմանը խաղաղութեան նշան է: Հայաստանի եւ Ադրբէջանի սահմանապահները, իրար հետ փոխգործակցելով, ինքնուրոյն ի վիճակի են լինելու իրականացնել սահմանի պահպանութիւնը»:

Ըստ Փաշինեանին՝ երկու երկիրներու սահմանապահ ծառայութիւններուն ղեկավարները կապի մէջ են իրարու հետ եւ համաձայնութիւններ ձեռք կը բերեն նշուած ծառայութիւնը իրականացնելու շուրջ:

Վարչապետի գնահատութեամբ՝ սահմանի այդ հատուածի պաշտպանութեան ապահովումը «բոլորովին ուրիշ խնդիր է»:

«Այստեղ խնդրում եմ սադրանքների չտրուել: Մենք հիմա մեր պաշտպանական պլանները չենք փոխելու սեղաններին եւ տեսախցիկների առաջ ցոյց տանք: Բայց մեր ակնկալիքը եւ մեր ընկալումն այն է, որ մենք խաղաղութեան ենք գնում: Սա նաեւ խաղաղութեան գործընթացի համար շատ կարեւոր անկիւնաքար է», - պարզաբանեց ան:

**Փորձագիտական կարծիք**

Քաղաքագէտ Ռուբէն Մեհրաբեան ուշադրութեան կը հրաւիրէ՝ որ նոյն օրը, երբ կը համաձայնեցուէր համատեղ յայտարարութիւնը, Մեծ Եօթնեակը ուղերձ հասցէագրեց Երեւանին եւ Պաքուին:

«Այդ ուղերձում յատուկ շեշտւում էր Ալմա-Աթայի հռչակագիրը եւ 1991 թ.-ի սահմանները, որի հիման վրայ էլ պէտք է կայանան յետագայ համաձայնութիւնները Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ: Ժամեր անց Բաքուն այդ դրոյթներն ընդունեց», - 1in TV-ի հաղորդումին մէջ ըսաւ ան:

Ըստ իրեն՝ սահմանազատումին համաձայնութիւնը նաեւ արդիւնք եւ հետեւանք է տակաւին Ապրիլ 5-ի պրիւքսէլեան հանդիպումէն առաջ կայացած Պլինքէն-Ալիեւ հեռախօսազրոյցին: Մեհրաբեանի խօսքով՝ Ուաշինկթոն «չափազանց կոշտ ձեւակերպումներով կարգի էր հրաւիրել Ալիեւին», որմէ ետք Պաքուն յայտարարեց՝ որ կը ճանչնայ Ալմա-Աթայի հռչակագիրը, վերահաստատեց իր հաւատարմութիւնը այդ, ինչպէս նաեւ Փրակի քառակողմ հանդիպումին ստորագրուած յայտարարութեան:

Շեշտեց՝ որ Ազրպէյճանը, ըստ էութեան, ընդունած է՝ թէ երկու երկիրներուն միջեւ կայ սահման, զոր պէտք է վերարտադրել քարտէզի եւ գետինի վրայ:

Ռուբէն Մեհրաբեան ըսաւ՝ որ 1991-ի Ալմա-Աթայի հռչակագիրը այլեւս «ունիվերսալ բնոյթ» կը ստանայ Հայաստան-Ազրպէյճան 1000 քիլոմեթրանոց սահմանի իւրաքանչիւր մեթրին համար:

«Կարեւորը սկզբունքն էր, որի հիման վրայ այն, ինչ տալու է, պէտք է տրուի, եւ այն ինչ վերցնելու է, պէտք է վերցուի», - նշեց ան:

Քաղաքագէտի գնահատութեամբ՝ կան կասկածներ, որ երբ կարգը գայ տէ իւրէ Հայաստանին պատկանող տարածքները վերադարձնելուն, «Բաքուի էնտուզիազմը կը մարի»:

«Մենք որեւէ իլիուզիա չունենք Ադրբէջանի գործելակերպի վերաբերեալ, նաեւ գիտենք, որ «բերանները մի բան զցենք, սուս մնան» սկզբունքը Բաքուի պարագայում չի աշխատում: Նրանք սուս կը մնան 2-3 օր, որից յետոյ կը գան նոր բան ուզելու եւ բերանները բաց», - պարզաբանեց ան:

Միւս կողմէ նկատեց՝ որ եթէ նման ցանկութիւն ունենան, կը բախուին խոչընդոտի՝ շնորհիւ այն սկզբունքին, որուն տակ ստորագրած են.

«Այդ դէպքում նրանք կոնֆլիկտ կ'ունենան ոչ մեզ հետ, որն առանց այդ էլ ունեն, այլ միջազգային հանրութեան հետ»:

Շեշտեց՝ որ ասկէ անդին կայ Ազրպէյճանի նկատմամբ ահագնացող ճնշում, որ նկատելի է տարբեր դատական ատեաններուն մէջ, տարբեր կեդրոններու արձագանգներուն մէջ: Բաց աստի, Պաքուն ձեռք բերած է «կանոնները խախտող կողմի համբաւ», որ, իր կարգին, կը բարդացնէ երկիրին դիրքաւորումը միջազգային յարաբերութիւններուն մէջ:

Մեհրաբեան անդրադարձաւ նաեւ սահմանազատումին նկատմամբ Մոսկուայի դիրքորոշումին: Ռուսաստանը, ըստ իրեն, կը փորձէ ցոյց տալ՝ թէ «քանի որ դելիմիտացիա եւ դեմարկացիա արուած չի, հայ-ադրբէջանական սահմանը շարժուն է, խեղճ ՀԱՊԿ-ը ոնց իմանար՝ որն է իր պատասխանատուութեան գօտին:

«Չկայ նման բան, Լաւրովը իր ցանկութիւնն է յայտնում, որովհետեւ միայն այդպիսի պատկերացումն է, որ Ռուսաստանին թողնելու է այդ սահմանագլխին»:

Մեհրաբեանի դիտարկումով՝ Հայաստան պէտք է ձեռնարկէ երկու շատ կարեւոր քայլեր՝

1. Հրատապ կարգով լուծարքի ենթարկէ ռուսական ներկայութիւնը հայ-ազրպէյճանական սահմանին,

2. Ետ կանչէ իր ստորագրութիւնը 2020 Նոյեմբեր 9-ի եռակողմ յայտարարութենէն:

Ըստ իրեն՝ ռուսական ուժերը սահմանին ընելիք չունին, իսկ յայտարարութիւնը արդէն մեռած է: Ուստի պէտք է զայն դնել ապակիի տակ եւ թողուլ պատմութեան թանգարանին մէջ, որ սերունդները տեսնեն եւ իմանան՝ «անցած 30 տարում ինչ թերմացքի հետ ենք գործ ունեցել»:

***Արեւելահայերէնէ արեւմտահայերէնի փոխադրութիւն՝ Ա.***

## 3 ԵՐԲ Ժ.Թ. ԴԱՐՈՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԽՄԲԱԳԻՐԸ

Սանթիրի (դաշնակ), Ժ. Փենտարի (ջութակ), կ'երգեն Յ. Օհանեան, Ա. Օրօվէց:

Եւ ֆոնոկրաֆով կը հնչէ անյայտ կտոր մը.

«Դադարներու պահուն *Ֆօնօկրաֆ* մը նուագեց շատ... սիրուն եղանակներ, որչափ կարելի է սիրուն կոչել ձագարի մը բերնէն թափած տկար ու կերկեր ճռճռոցները որոնք սակայն Ամերիկացի ելեքտրագէտին պատիւ բերելու հանգամանքը չունէին բնաւ»(3):

Չագար՝ ուրեմն cylinder ձայնագրութեան մասին է խօսքը: Բիւրատի նկարագրած «ճռճռոցները» ճիշդ են: Այդպէս էր: Այսօր ալ շատեր չեն ախորժիր այդ ժամանակի ձայնագրութիւններէն, նոյն ճռճռոցներուն համար, այնքան բիւրեղ է արդի լսողութիւնը եւ հոգին, մինչ խնդիր չկայ քաղաքի յարատեւ ժխորը դադրեցնելու առօրեայ լսողութեան բաղադրիչը: Ուրիշներ՝ անոնցմէ մէկը ըլլալով ես, կը սիրեն զանոնք ունկնդրել, քանի որ այնտեղ ոչ միայն հնաբոյր հմայք մը կայ՝ անցեալը, անցեալի հաճոյքը, այլ գիտակցութիւնը՝ որ առանց անոնց, ձայնագրուած կատարողական արուեստը պիտի յաւէրժ մնար անյայտ: Այդ ճռճռոց ձայնագրութիւններուն շնորհիւ անթիւ արուեստագէտներ փրկուեցան կորուստէ, ինչպէս պիտի սիրենք ըսել: Կորուստէ փրկուիլուն ալ պիտի ունենայ իր լսողական զիջումները ճռճռոցներու տեսքով: Իսկ վստա՞հ ենք՝ որ այսօրուայ բարձրորակ (high quality) մաքրամաքուր թուային ձայնագրութիւնները եւ iTune-երը բնական կը հնչեն: Չկա՞ն այնտեղ արհեստականօրէն աւելցուած ձայնային բիւրեղացումներ եւ որակի սրումներ: Կան: Բայց արհեստական «աւելին» միշտ բնական կ'ուզէ ըլլալ: Իսկ բնական «պակաս»ը՝ անբնական:

1. «Երեկոյթներ», *Փարոս*, 2 Փետրուար 1898, Ա. տարի, թիւ 72, էջ 3: «Օր. Մսերեանցի նուագահանդէսը», *Փարոս*, 5 Փետրուար 1898, Ա. տարի, թիւ 73, էջ 3:

2. Յ. Ա., «Քրօնիկ», *Փարոս*, 12 Փետրուար 1898, Ա. տարի, թիւ 75, էջ 1-2:

3. «Տեղական լուրեր», *Փիւնիկ*, 1 Ապրիլ 1899, Ա. տարի, թիւ 1, էջ 13:

## 2 ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

(Ծննդեան 105-ամեակին առիթով)

ունենայ յառաջիկայ Կիրակի Ճարտարագէտներու սրահին մէջ:

«Սիլվա պիտի այցելէ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ հայկական վարժարանները, ուր երկսեռ աշակերտութեան առջեւ պիտի խօսի ու արտասանէ իր բանաստեղծութիւններէն»(59):

Փետրուար 14-ի լրագիրները՝ *Ալ-Կումհուրիյա*, *Le Journal d'Égypte*, *Le Progrès égyptien*, *The Egytian Gazette* եւ *Ֆոս* կ'արձագանգեն Կապուտիկեանի ժամանումը եւ կը հրատարակեն անոր լուսանկարը(60):

(Շար. 6)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

51. «Խմբագրական. Հայրենի շունչով (Սիլվա Կապուտիկեանի շրջապտոյտին առիթով)», *Արեւ*, 9 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.433:

52. «Հայրենի շունչով (Սիլվա Կապուտիկեանի շրջապտոյտին առիթով)», *Արեւ*, 9 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.433:

53. «Սիլվան», *Արեւ*, 12 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.435:

54. «Աւելի լոյս (բանաստեղծուհի Ս. Կապուտիկեանի այցելութեան առիթով)», *Յուսաբեր*, 16 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 269:

55. Անդ:

56. Բ. Թաշեան, ««Երեւանն է խօսում»», *Յուսաբեր*, 16 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 269:

57. Անդ:

58. Անդ:

59. «Հայաստանի առաջին բանաստեղծուհին Գահիրէի մէջ», *Արեւ*, 13 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.436:

60. «Եգիպտահայ գաղութին յուզումը Սիլվա Կապուտիկեանի ժամանման առիթով», *Արեւ*, 14 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.437:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1965 ՀԻՆԳՇԱԲԹԻ 9 ՄԱՅԻՍ 2024 ՀԱՏԸ ԶԵՐՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٦٥ الخميس ٩ مايو ٢٠٢٤


## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՏԱՐԱԾՈՒՄԸ ԱՓՐԻԿԷԻ ՄԷՋ

**ՎԱԿՆԵՐ ԽՈՒՄԲԸ ԵՒ ԱՓՐԻԿԷԻ ԶՕՐԱԲԱՆԱԿՆԵՐԸ**

Արտասահմանեան յատուկ գործողութիւններու համար, 2014-ին Վլատիմիր Փութինի Մոսկուան կը ստեղծէ վարձկաններու տխրահռչակ Վակներ խումբը, անոր գլուխը կարգելով օլիկարք Եւկենի Փրիկոժին: Մինչեւ այսօր, խումբը տարբեր չափերով գործած է չորս ցամաքամասերու վրայ՝ Եւրոպա, Ափրիկէ, Հարաւային Ամերիկա եւ Ասիա: Էական դեր խաղացած է 2022-ի ռուսական արշաւանքին Ուքրաինայի դէմ:

Ի՞նչպէս կը գործէր Վակները: Ափրիկէի պարագային, Վակներ կարողութիւն ունէր ինքնաֆինանսաւորուիլ, առանց դրամական բեռ ըլլալու Ռուսաստանի վրայ: Ան իրաւասութիւն ունէր ուղղակիօրէն (առանց Մոսկուայի միջնորդութեան) իւրացնել հանքանիւթերէն եկած հսկայ եկամուտները, հարստացնելով Փրիկոժինի եւ քանի մը օլիկարք առաջնորդներու գրպանները եւ բարձր վարձատրելով վարձկանները: Միաժամանակ, նիւթաթեքնիքական եւ ռազմական առումով ամբողջապէս կապուած ըլլալով Մոսկուային, իր գործողութիւններուն համար լիապէս ենթարկուած կը մնար կեդրոնի հրամաններուն:

Վակները Քրեմլինի գործիքն է: Ապահովութիւն, ռազմական աջակցութիւն եւ տնտեսական ծառայութիւններ մատակարարելու պիտակներուն տակ ան կը մտնէ ափրիկեան երկիրները, բուն նպատակ ունենալով դիւրացնել ռուսական նուաճողականութիւնը քաղաքական, տնտեսական եւ ռազմական ոլորտներու մէջ, ինչպէս նաեւ հարուածել Եւրոպայի եւ Ամերիկայի շահերը այնտեղ: Իր նպատակներուն հասնելու համար Վակներ կ'իրականացնէ զաղտնի գործողութիւններ, ապատեղեկատուական արշաւներ, քարոզարշաւներ, գործակալական զինուորագրումներ, ցանցային յարաբերութիւններ ռազմական, տնտեսական եւ քաղաքական առաջնորդներու հետ:

2023 Յունիսին մակերես կ'ելլեն խորքային անհամաձայնութիւններ եւ շահերու բախումներ Փրիկոժինի եւ Փութինի միջեւ, Փրիկոժին կ'ըմբոստանայ, Փութին կը լռեցնէ զինք եւ անմիջապէս օդանաւի արկածի տեսքով կը հրամայէ անոր սպանութիւնը: Պատմութիւնը իր մանրամասնութիւններով յայտնի է բոլորին:

2023 Դեկտեմբերին Վակներ խումբի ափրիկեան զանգուածը արդէն վերանուանուած էր Ափրիկէի Զօրամասեր (African Corps), իր նոր ղեկավարով:

**ՍՈՒՏԱՆ, ԼԻԲԻԱ, ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ԱՓՐԻԿԷ...**

2017-ին, Սուտանի նախագահ Օմար Ալ-Պաշիր այցելելով Մոսկուա կը ստորագրէ համաձայնագիրներու շարք մը Ռուսաստանի հետ: Աչքի կը զարնեն երկու համաձայնագիրներ: Մէկը մենաշնորհային համաձայնութիւն մըն է սուտանական Հանքային Նախարարութեան եւ ռուսական M-Invest ընկերութեան միջեւ, M-Invest-ը ըլլալով Վակներ խումբի եւ Փրիկոժինի դիմակը կամ դուստր ընկերութիւնը: Սուտան կը հանդիսանայ Ափրիկէի ոսկիի երրորդ ամենամեծ արտադրողը: Երկրորդ համաձայնագիրով Ռուսաստան պիտի հիմնէր իր ռազմածովային կայանը Փոր Սուտանի մէջ Կարմիր Ծովուն վրայ: Անմիջապէս Վակներ կը մտնէ Սուտան եւ կը սկսի իր քաղաքական եւ ռազմական աջակցութիւնը նախագահ Օմար Ալ-Պաշիրին: Վակներ-Սուտան յարաբերութիւնները կը շարունակուին 2019 Ապրիլի յեղաշրջումէն ետք, երբ իշխանազուրկ դարձաւ Ալ-Պաշիր: Ապա Վակներ աջակից կը կանգնի 2021-ի ռազմական յեղաշրջումին: Ռուսաստանի կողմէ ոսկիի տիրապետութիւնը կը շարունակուի մինչեւ այսօր, իսկ ծովային կայանի համաձայնագիրը տակաւին կը մնայ ուժի մէջ:

2018-ին Վակներ խումբը կը մարզէ ՄԱԿ-ի կողմէ չճանաչուած՝ Լիպիոյ անօրինական ռազմական հրամատար Խալիֆա Հաֆթարի զօրքերը, երկիրին արեւելքը կեդրոնացած ուժ մը՝ որ ինքզինք կը ներկայացնէ իբրեւ Լիպիոյ ղեկավար: Հաֆթար-Մոսկուա յարաբերութիւնները կը շարունակուին մինչեւ այսօր: Փութինի նպատակը եղած է տիրանալ Լիպիոյ քարիւղի դաշտերուն եւ Լիպիոյի տարածքը օգտագործել ներխուժելու համար:

2018-ին Վակներ կը մտնէ Կեդրոնական Ափրիկէի Հանրապետութիւն, պաշտպանելու նախագահ Ֆօսթէն-Արքանժ Թուատէրան ապստամբներու յարձակումէն մայրաքաղաքին վրայ: Փոխարէնը, Վակների դուստր ընկերութիւնները կը ստանան անսահման իրաւունքներ եւ վերահսկողութիւն Նտասիմայի ոսկիի շքեղ հանքին վրայ, ինչպէս նաեւ քաղաքական իշխանութիւն երկիրի տարածքին վրայ:

2018-ին Վակներ կը մտնէ Մատակասքար, 2019-ին Մոզամպիք: Այսինքն՝ Մոսկուա կը մտնէ Մատակասքար եւ Մոզամպիք:

**ՍԱՀԷԼԻ ՇՐՋԱՆ**

Ժամանակն էր արդէն ներխուժել Սահէլի շրջանը:

Սահէլի շրջանը Ափրիկէն կիսող գօտին է, որ կը տարածուի Ատլանտեան Ովկիանոսէն մինչեւ Կարմիր Ծով: ՄԱԿ-ի կողմէ ընդունուած Սահէլեան երկիրներն են՝ Սենեկալ, Կամպիա, Մօրիթանիա, Կինէա, Մալի, Պուրքինա Ֆասօ, Նիժէր, Չատ, Քամերուն եւ Նիժերիա: Ունի աշխարհագրական կարեւորութիւն, տիրելով անոր՝ կը դիւրանայ վերահսկողութիւնը Ափրիկէի վրայ՝ հիւսիս եւ հարաւ: Ունի հանքային շատ հարուստ պաշար:

Ան, ուրիշ շատ ափրիկեան երկիրներու նման, «աւանդապէս» եղած է Ֆրանսայի ափրիկեան գաղութատիրական սեփականութիւնը: 1960-ականներու ապազաղութացումէն ետք, Ֆրանսա շարունակած է իր յետգաղութատիրական ուժեղ ազդեցութիւնը քանեցնել այնտեղ, ազդեցութիւն մը՝ միախառնուած ընդհանուր Եւրոպայի, ԱՄՆ-ի եւ ՆԱՏՕ-ի շահերու հետ:

**Մալի**

Սահէլի զաւթումը կը սկսի Մալիով, երբ 2021 Մայիսին Վակների աջակցութեամբ մալիական ռազմախումբը կը հասնի իշխանութեան, որ կը ճամբէ ֆրանսական զօրքերը եւ Ֆրանսայի դեսպանը, եւ կը տարածէ ռուսական դրօշակը: Իշխող ռազմախումբը իր գոյութեան համար մեծապէս կը յենուի Վակների վրայ: Փոխարէնը Ռուսաստան կը յափշտակէ երկիրը, յատկապէս ոսկիի եւ այլ հանքեր:

**Պուրքինա Ֆասօ**

Պուրքինա Ֆասօ, 2022 Սեպտեմբերին քափիթէն Իպրահիմ Թրաօրէ յեղաշրջումով իր ձեռքը կը վերցնէ իշխանութիւնը: 2023 Փետրուարին կը հրամայուի ֆրանսական զօրքերուն լքել երկիրը, կը ճամբուի Ֆրանսայի դեսպանը, ֆրան-

↳ 4

ՌՈՒՍԱՍՏԱՆ

## ՓԱՇԻՆԵԱՆ-ՓՈՒԹԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ



Մայիս 8-ին, Քրեմլինի մէջ տեղի ունեցաւ ԵԱՏՄ խորհուրդի յաջորդական նիստ-գագաթնաժողովը, նախագահութեամբ Նիկոլ Փաշինեանի: Երթեւեկութեան ենթակառուցուածքներու զարգացումի բնաբանին մէջ Փաշինեան անդրադարձաւ «Խաղաղութեան խաչմերուկ» նախագիծին:

Գագաթնաժողովէն ետք տեղի ունեցաւ Նիկոլ Փաշինեանի եւ Վլատիմիր Փութինի աւելի քան մէկ ժամ տեւած առանձին հանդիպումը: Հանդիպումի հրապարակային հատուածին մէջ Ռուսաստանի նախագահը ըսաւ.

«Յարգելի Նիկոլ Վովայի, եւս մէկ անգամ շատ ուրախ եմ Ձեզի ողջունելու Մոսկուայի մէջ:

«Մենք ունեցանք յոբելինական գագաթնաժողով, լրացաւ ԵԱՏՄ-ի տասնամեակը, բոլոր երկիրներուն՝ ներառեալ Ռուսաստանի եւ Հայաստանի համար դրական նշանակութիւն ունի համագործակցութիւնը այդ միջազգային կազմակերպութեան շրջանակին մէջ: Հայաստանի համար զգալի եղած է ԵԱՏՄ երկիրներուն հետ առեւտրական շրջանառութեան աճը, 2015 թուականէն ի վեր աւելնալով 14 անգամ: Ինչ կը վերաբերի երկկողմ յարաբերութիւններուն, անոնք եւս յաջողութեամբ կը զարգանան:

«Մենք նախ եւ առաջ ուշադրութիւն կը դարձնենք տնտեսական համագործակցութեան: Նախորդ տարուայ ընթացքին առեւտրական շրջանառութեան աճը եղած է զգալի, ձեր կողմէ մեր երկիր կատարած արտահանումի աճին

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄԵՆՔ ԴԵՌ ՀԱՊԿ ԱՆԴԱՄ ԵՆՔ, ԲԱՅՑ ՉԵՆՔ ՈՒԶՈՒՄ ՉԱՇԽԱՏՈՂ ՄԵԽԱՆԻԶՄԻ ՄԱՍ ԼԻՆԵԼ. ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆ

Հայաստանի արտաքին գործերի նախարար Արարատ Միրզոյեանը շեշտել է, որ Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան մեխանիզմները պէտք է աշխատեն, Հայաստանը չի ցանկանում մաս կազմել չաշխատող մեխանիզմի: *Արմէնպրէս*ի փոխանցմամբ Միրզոյեանն այս մասին ասել է Al-Jazeera-ին տուած հարցազրոյցում:

«Գիտէք, որ վերջին մի քանի տարիների ընթացքում մի քանի անգամ ներխուժումներ են եղել Հայաստանի Հանրապետութեան ինքնիշխան տարածք, եւ մենք Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան անդամ ենք, որի առաքելութիւնն է պաշտպանել անդամ երկրների ինքնիշխան տարածքները եւ սահմանները: Այսպիսով, երբ այդ ներխուժումները տեղի ունեցան, մենք չտեսանք պատշաճ գործողութիւն այն կազմակերպութեան կողմից, որին մենք անդամակցում ենք: Եւ պէտք է նաեւ յիշել, որ ՀԱՊԿ-ը ռազմաքաղաքական դաշինք է, որը, ինչպէս ասացի, կոչուած է պաշտպանելու անդամ երկրների սահմանները: Պատշաճ արձագանքի բացակայութիւնը հարցեր առաջացրեց հայ հասարակութեան մէջ, եւ մենք չենք ուզում մաս կազմել չաշխատող մեխանիզմի: Մենք դեռ ՀԱՊԿ անդամ ենք, բայց պէտք է աշխատենք, որպէսզի բոլոր մեխանիզմները, որոնք սահմանուած են, գործեն, եւ դրա անհրաժեշտութիւնը կայ», - ասել է Արարատ Միրզոյեանը:

# ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

## (Ծննդեան 105-ամեակին առիթով)

**Հ. ԱԻԱԳԵԱՆ**

**2. ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԽՕՍՔԸ**

Այցելութեան կեդրոնը՝ Կապուտիկեանի խօսքն էր: Իր կենդանի խօսքը վարակիչ էր, ազդեցիկ: Սահուն եւ անսայթաք խօսող մը, կ’արտայայտուէր առանց կարդալու, ուղղակիօրէն հաղորդակցելով հանդիսատեսին հետ: Հայերէնի ուսուցիչս՝ ողբ. բանասէր Տիգրան Գէորգեան, 1990-ականներուն տակաւին կը յիշէր Կապուտիկեանի խօսքի հմայքը, յիշեցնելով՝ որ իր խօսքը ունէր գրաւոր գիրի կատարելութիւն: Եգիպտահայ քննախօսները յաճախ նշեցին այդ խօսքին գրաւչութիւնը:

Օննիկ Ալեքսանեանի ջանքերով ձայնագրուած Կապուտիկեանի ճառերը՝ որոնք 1963-1964-ին քանի մը անգամ սփռուեցան գաղութահայ ձեռնարկներու մէջ (տե՛ս վերը), գոյութիւն չունին այսօր: Բայց այդ ճառերուն սղագրութիւնները երբեմն հրատարակուեցան *Արեւ*ի մէջ, կարեւոր պատկերացում տալով բովանդակութեան մասին:

Յուսաբերի ճառը եւս ձայնագրուեցաւ ակումբին կողմէ եւ *Յուսաբեր*ի յաջորդական չորս թիւերու մէջ հրատարակուեցաւ(61): Ամբողջութեամբ հրատարակուած միակ ճառն է ասիկա: Ասոր մասին Կապուտիկեան պիտի յիշէր իր ուղեգրական յուշերուն մէջ. «Յուսաբերի սրահում ասած խօսքս ձայնագրուեց եւ յետագայում արդէն Երեւան գտնուելիս, ես սփիւռքի թերթերում կարդացի դրա բառացի տպագրութիւնը: Չնայած ոճական անհարթութիւններին, կարծես թէ վատ չէր ստացուել»(62): Նկատի ունի իր խօսքը, այլ ոչ թէ գրառումին մակարդակը:

Տպագրուած բնագիրներուն մասին կարելի է երկար խօսիլ: Ընդունուած, տարածուած եւ երբեմն նախասահմանեալ նիւթեր՝ հայրենիք, Հայաստան, ներգաղթ, հայեցի Սփիւռք, եւլն., պիտի դառնային իր խօսքին առանցքը: Անոնք, միաժամանակ, խօսքեր են՝ զորս գաղութահայ հանդիսատեսը պիտի ուզէր լսել, այլեւ յաճախ վարժուած էր լսել եւ սիրեց զանոնք կրկին լսել, բայց այս անգամ գրական մեծ վաստակ ունեցող դէմքի մը կողմէ եւ արտասանուած գրական գեղեցիկ ու բարձրակիրթ ոճով:

Ահաւասիկ այս գաղափարներէն քանի մը հատ.

**Հայրենասիրութիւն**

Հայրենասիրութիւնը կը վսեմացնէ մարդուն, հայերուս համար հայրենասիրութիւնը հայրենասիրութենէն աւելի բան մըն է.

«Հայրենասիրութիւնը, դա մի զգացում է որ հարստացնում է մարդու ոգին, եւ ահա՛ մեր հայութիւնը ինչքան էլ ապրում է բարեկարգ, այնուամենայնիւ չի ուզում միայն գոհանալ նիւթական հարստութեամբ եւ ուզում է իր հոգին լեցնել նաեւ հոգեւոր հարստութեամբ:

«Հայրենասիրութիւնը նրբացնում է մարդուն. նրան սովորեցնում է ուրախ ժամին տխրիլ իր ժողովրդի վշտով, եւ տխուր ժամին ուրախանալ իր ժողովրդի ուրախութիւններով:

«Հայրենասիրութիւնը առաքինութիւն է: Նա չի թողնում մարդուն բթանալ: Նամանաւանդ հայի համար, հայրենասիրութիւնը եղել է ապրելու ձեւ»(63):

**Հայրենիք**

Միայն հայրենիքի մէջ կրնանք պահել մեր գոյութիւնը: *Արաքս* կը նկարագրէ.

«Ան [Կապուտիկեան, Հ.Ա.] արտայայտուեցաւ նաեւ օտարութեան դիմողներու մասին եւ ըսաւ թէ, միմիայն Հայրենիքի հարազատ հողին վրայ է որ մենք կրնանք պահել մեր գոյութիւնը եւ հոն է որ հաստատ եւ ապահով է մեր զաւակներու ապագան:

«Անոնք որ մեծ ակնկալութիւններով այս երկրէն մեկնած էին, մեծ մասով դեռ անգործ են եւ վերադառնալ կը փափաքին, եթէ իրենց միջոցները ներեն: Քանիներ յուսահատական նամակներ կը գրեն. դեռ ուրիշներ կան, որ հակառակ այս բոլորին մեկնիլ կ’ուզեն»(64):

**Հայկականը ուրիշ է**

Մեր կերտածը ուրիշ է, անոր նմանը չկայ աշխարհի մէջ.

«[Ա]շխարհում ոչ մի տեղ այդ կործանուած Բաալբեկները, Ակրոպոլները, Լուքսորեան այդ ամբողջ զանձերը չեն բարձրացրել եւ չեն վերակենդանացրել ինչպէս մեզ մօտ՝ Հայաստանում, աշխարհում ոչ մի ընկած հնամենի դասական խոյակ չի բարձրացել վերեւ, ինչպէս մեր Զուարթնոցի խոյակները, որոնք մենք մեր ուսերի վրայ առած բարձրացրինք եւ կանգնեցրինք մեր շէնքերի վրայ»(65):

**Հայ ժողովուրդը՝ տառապանքէն դէպի վերածնունդ**

Օտարի (դուրսի) պատճառով տառապելու եւ ինքնարժէքի (ներսի) միջոցով վերածնելու հականշումը՝ իբրեւ հայ ինքնութեան գնահատում.

«Այն խօսքը, որ ես ասացի թէ լոյս ըրէք որպէսզի կարենամ ձեզ տեսնել, պատահական չէ. որովհետեւ գիտեմ որ այստեղ նստած են ինձ համար շատ հարազատ մարդիկ եւ պիտի տեսնեմ շատ հարազատ դէմքեր, իմ ժողովրդի՝ աշխատաւոր մարդկանց դէմքերը, շատ անապատներ անցած, տառապած, այնուամենայնիւ իրենց յոյսը եւ հաւատքը չկորսըւած իմ հարազատ քոյր ու եղբայրներին, եւ այս սրահը ինձ հարազատ է ոչ միայն դրա համար, այլեւ այն բանի համար որ ես այստեղ Արաբական Միացեալ Հանրապետութեան դրօշի կողքին տեսնում եմ իմ հարազատ Սովետական Հայաստանի դրօշը:

«Երկար ու տառապալի ճանապարհ է անցել մեր ժողովուրդը, մինչեւ որ հասել է այս դրօշին: Հազարամեակների տառապալից ճանապարհ: Այդ հազարամեակները եղել են անընդհատ զրկանքների, օտար զաւթիչների յարձակման, թոհ ու բոհի, արեան ու աւերի տարիներ, բայց այդ դարերի ընթացքում մեր ժողովուրդը երբեք էլ չի հաշտուել իր ճակատագրի հետ, անընդհատ մաքառումներով կտրել է ճանապարհներ որպէսզի հասնի իր ազատութեանը, գտնէ իր ինքնուրոյնութիւնը, որպէսզի կարողանայ իր հողին վրայ ինքն էլ ապրել»(66):

**Հինն ու նորը**

Նորը վերակենդանացումն է անցեալին.

«Մեր Երեւանը մեզ համար միայն Երեւան չէ, այլ ունի նաեւ ուրիշ խորհուրդ, նա մեզ համար նաեւ վերակենդանացումն է մեր անցեալի, մեր կործանած մայրաքաղաքների, - Դուինի, Արտաշատի, Անիի: Փոքրիկ մանուկը, որ աշխարի է գալիս, մեզ համար միայն մանուկ չէ, այլ նա մի պատասխան է ճակատագրին, այն ճակատագրի, որ նախատեսում էր, որ իբր թէ աշխարհում պիտի միայն մի հայ մնայ, այն էլ թանգարանում դնելու համար: Իսկ հիմա, երբ որ աշնակցի, սասունցի հարսը բերում է 14 որդի, այդ պատասխանն է ճակատագրին, որ պէտք է մենք ապրենք, պէտք է բազմանանք, պէտք է յարատեւենք»(67):

**Հայեցի Սփիւռք**

Հեռաւոր ափեր, մեծագոյն դժուարութիւններ՝ իբրեւ բացասական գործօններ, բայց հայերէն լեզուի պահպանութիւն՝ իբրեւ դրական գործօն: Դարձեալ հակադրութիւններու միջոցով ինքնութեան գնահատում.

«Երկու ամիս է ես շրջում եմ մեր սփիւռքի ամենաստուար հատուածի բոլոր շրջանակների մէջ, հանդիպում եմ ե՛ւ անձնական ծանօթների ե՛ւ անծանօթների, լսում եմ նրանց, ինքս եմ ասում իմ խօսքը, եւ ամէն տեղ հաւասարապէս ես բերում եմ իմ հիացմունքի խօսքը հանդէպ մեր արտահայաստանի ժողովրդին՝ ա՛յն բանի համար որ չնայած մեծագոյն դժուարութիւնների, չնայած շատ ու շատ խոչընդոտների, իմ ժողովուրդը կարողանում է պահպանել իրեն այդ հեռաւոր ափերի վրայ, կարողանում է իր մանուկներին դաստիարակել հայեցի ոգիով, եւ նրա շրթերին հաղորդել մեր լեզուն եւ ջանալ որպէսզի անթառամ պահի այդ լեզուն նրանց շրթներին, ինչքան որ աղմկոտ լինեն փողոցները, ինչքան որ հրապուրիչ լինեն օտար երգի եւ օտար խօսքի ազդեցութիւնները»(68):

**Գրողը՝ քաղաքացի**

Գրողի քաղաքացիութեան մասին.

«Հայ գրողը միշտ էլ քաղաքացի է եղել: Որովհետեւ նա չի կարողացել անտարբեր նայել իր ժողովրդին, իր տառապող ժողովրդին: Որովհետեւ նա, աւելի՛ քան իր արուեստը, իր բանաստեղծութիւնը, իր երաժշտութիւնը, լցուած է եղել իր ժողովրդի ճակատագրով եւ շատ պահեր, շատ հոգեկան ուժ, որով նա կարող էր ստեղծել, ստեղծագործել, նուիրել է այդ կնճռոտ հարցերի լուծմանը. այդպէս է եղել Աբովեանը, այդպէս է եղել Նալպանդեանը, այդպէս է եղել Րաֆֆին, Պատկանեանը, Վարուժանը, թերեւս Մեծարենցն է, որ մի քիչ հեռու է եղել այդ հարցերից եւ եղել է բնութեան քնքուշ երգիչ: Բայց բնորո՛շը հայ գրողի համար նաեւ քաղաքացի լինել է: Որովհետեւ այդպէս է եղել եւ մինչեւ հիմա էլ մենք շարունակում ենք քաղաքացի մնալ եւ մեր պարտքն է մնալ քաղաքացի ու մղել մեր ժողովրդին միշտ դէպի առաջ, համախմբել նրան, ներշնչել նրան եւ նրան համախմբել մեծ գաղափարների շուրջը, որպէսզի նա կարողանայ պահպանել իրեն եւ պահպանուել»(69):

Ի դէպ, այս միտքը կ’արտասանէր ի պատասխան Բենիամին Թաշեանի *Յուսաբեր*ի յօդուածին (Փետրուար 16) նուիրուած Կապուտիկեանին: Այնտեղ Թաշեան կը գրէր.

«Բանաստեղծին մէջ, բանաստեղծութեան մէջ ամենէն քիչ պէտք է խօսի քաղաքականութիւնը: Ամենէն քիչ պէտք է լսուի «հրապարակախօս ձայն»ը: Ամենէն քիչ պէտք է իշխէ անցաւորը: Հակառակ պարագային՝ մեզի տրուածը կը դառնայ կ’ըլլայ «պոլիտիկա»:

«Բանաստեղծութիւնը «պոլիտիկա» չէ, «ապոլիտիկա» է:

«Ժամանակին եւ պայմաններուն տրուած տուրքը ժամանակին եւ պայմաններուն հետ կը մոռցուի: Բայց կը մնայ միշտ *ոգի*ն»(70):

Անշուշտ Թաշեան նկատի ունի Կապուտիկեանի «նախազգային» շրջանը, որուն մասին վերը յիշատակուեցաւ («Մտաւոր դիմաւորում»): Բայց նաեւ ակնարկում մըն է ընդհանրապէս բանաստեղծութեան արժէքին, զոր Թաշեան կ’ուզէ անպայմանօրէն տեսնել ապաքաղաքական վիճակի մէջ, արուեստը արուեստի համար սկզբունքով:

Կապուտիկեան իր պատասխանին մէջ «քաղաքականութիւն» բառը չի գործածեր, քանի որ Խորհրդային Միութեան մէջ մտաւորական (կամ ոչ-մտաւորական) անհատը իրաւունք չունէր քաղաքականութեամբ զգաղելու, իրաւունք չունէր քաղաքականութիւն քննարկելու: Կապուտիկեան այդ բառը կը փոխարինէ «քաղաքացի»-ով, ընդունուած բառը այդ ժամանակուայ:

Ասկէ զատ, Թաշեան աւելի նկատի ունի բանաստեղծութիւնը քան բանաստեղծը, մինչ Կապուտիկեան կը պատասխանէ կանգ առնելով աւելի բանաստեղի վրայ:

**Եգիպտահայ գաղութի արժէքը**

Վերջապէս, կարեւոր էր եգիպտահայ գաղութի գովաբանութիւնը՝ իբրեւ արժէքաւոր մտաւորականներ եւ արուեստագէտներ արտադրած գաղութ.

«Ես ահա մի քանի օր է ձեր գաղութում եմ, եգիպտահայութեան մէջ, ես գիտեմ, որ եգիպտահայ գաղութը եղել է մեր նշանաւո՛ր եւ ամենաուժեղ գաղութներից մէկը, այստեղ մենք ունեցել ենք մշակոյթի անզուգական գործիչներ, այստեղ է աշխատել Թէքէեանը, Արփիար Արփիարեանը, Օտեանը, Ալեքսանդրիայում է եղել Լեւոն Շանթը եւ ուրիշ շատ ու շատ գործիչներ:

«Հիմա՛ էլ այս գաղութը պահում է իր աւանդութիւնները: Գրականութեան գործիչների հետ միասին այստեղ մենք ունենք նկարիչների մի հրաշալի սերունդ, որոնց անունները, - Ալեքսանդր Սարուխան, Կոճամանեան, Կարապետեան, Սամսոնեան եւ, վերջապէս, Զօրեան, - դուրս են եկել Եգիպտոսի սահմաններից եւ յայտնի են ոչ միայն մեր հայրենիքում, այլեւ աշխարհում: Սա հպարտութիւն կարող է բերել ե՛ւ մեզ, ե՛ւ ձեզ:

«Ես կ’ուզենայի, քանի որ այստեղ այսքան շատ հասարակութիւն է հաւաքուած, խօսել այն կենարար ազդեցութեան մասին, որ ունեցաւ 1947-48 թուի ներգաղթը, չնայած իր թերութիւններին, յատկապէս մեր՝ հայկական արուեստի համար, որ, յանձին եգիպտահայ ներգաղթողների, մենք հիմա ունենք շատ նշանաւոր անուններ, ինչպիսին է երգիչ Միհրան Երկաթը, երգչուհի Արմինէ Թիւթիւնճեանը, ինչպիսին է աշխարհահռչակ Գոհար Գասպարեանը»(71):

**Ընդունուածը**

Դժուար չէ տեսնել, որ խօսուածը կը գտնուի ընդունուած եւ տարածուած պատումի սահմաններուն մէջ, հայրենասիրութեան եւ ազգայնականութեան ուժեղ շեշտադրութեամբ, պարուրուած գաղափարախօսային յարմարաւէտութեամբ:

Արդարեւ, Կապուտիկեանի խօսքին կենդա- ↳ 4

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐ*Ի 60-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ

Լոյս տեսաւ *Ջահակիր*ի Կ. (60) Յաւելուածը՝ *Համբարձում Չէրչեան՝ Գառնիկ Բապուչճեանի ընդօրինակութեամբ* (377 էջ), որ կը ներկայացնէ Սահակ. Քհնյ. Շաքարեանի ձեռագիրներու շարքին չորրորդ հատորը:

Պարտիզակցի Գառնիկ Բապուչճեանի 1893 թուականի ընդօրինակութիւնն է Համբարձում Չէրչեանի ձայնագրած զանազան շարականներու եւ Յարութեան Հարցերուն:


ՍԱՀԱԿ ՔՀՆՅ. ՇԱՔԱՐԵԱՆԻ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԷՆ
Դ.

ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՉԷՐՉԵԱՆ՝
ԳԱՌՆԻԿ ԲԱՊՈՒՉՃԵԱՆԻ
ԸՆԴՕՐԻՆԱԿՈՒԹԵԱՄԲ

Հրատարակութեան պատրաստեց՝
ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Կ. (60)

ԳԱՀԻՐԷ
2024

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՈՐՔԱՆ ԳՈՅՔԻ ՈՒ ԳՈՒՄԱՐԻ ԲՌՆԱԳԱՆՁՄԱՆ ՊԱՀԱՆՋ Է ՆԵՐԿԱՅԱՑՈՒԵԼ ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԻՆ, ԾԱՌՈՒԿԵԱՆԻՆ ՈՒ ԳԱԳԻԿ ԽԱՉԱՏՐԵԱՆԻՆ

Գլխաւոր Դատախազութիւնն ապօրինի գոյքի բռնագանձման պահանջով 71 հայց է ներկայացրել Հակակոռուպցիոն Կոմիտէ, որոնցից երեքը Ապրիլի 29-ին խորհրդարանում ներկայացրեց դատախազ Աննա Վարդապետեանը:

Այսպէս, երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանից եւ նրան փոխկապակցուած 7 անձից պահանջւում է վերադարձնել 25 միաւոր անշարժ գոյք, 5 տրանսպորտային միջոց, մասնակցութիւն հայաստանեան եւ արտասահմանեան 16 իրաւաբանական անձում, աւելի քան 4 մլն դոլարի աւանդ արժեթուղթ, շուրջ 10 մլրդ դրամին համարժէք փոխառութիւնների պահանջի իրաւունք, աւելի քան 35 մլրդ դրամ:

Պետական Եկամուտների Կոմիտէի նախկին նախագահ Գագիկ Խաչատրեանից ու նրան փոխկապակցուած անձանցից յօգուտ Հայաստանի շուրջ 200 միաւոր անշարժ գոյքի բռնագանձման պահանջ է դրուել, դրանցից 56-ը, ըստ դատախազի, Երեւանի կենտրոնում են:

Ֆինանսների նախկին նախարար Խաչատրեանին պահանջւում է բռնագանձել 13 տրանսպորտային միջոց, մասնակցութիւն հայաստանեան ու արտասահմանեան 29 իրաւաբանական անձում, աւելի քան 1,4 միլիոն դոլարի աւանդ եւ արժեթուղթ, աւելի քան 23 միլիոն դոլարին համարժէք փոխառութիւնների պահանջի իրաւունք, աւելի քան 23 միլիարդ դրամ:

Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան առաջնորդ, նախկին պատգամաւոր Գագիկ Ծառուկեանից ու նրան փոխկապակցուած անձանցից յօգուտ Հայաստանի պահանջւում է բռնագանձել 79 անշարժ գոյք, 42 տրանսպորտային միջոց, չնոյնականացուած 8 տրանսպորտային միջոցների ձեռքբերման արժէք 349 միլիոն դրամի չափով, զիջուած պահանջի իրաւունքի գումար՝ շուրջ 33,5 միլիոն դրամ:

Բացի այդ, դատախազութիւնը պահանջում է, որ Գագիկ Ծառուկեանից բռնագանձուի 10 անշարժ գոյքի շուկայական արժէք, 39 իրաւաբանական անձում բաժնեմաս ու բաժնետոմս, աւելի քան 63,3 միլիարդ դրամին համարժէք փոխառութիւնների պահանջի իրաւունք, 12 ֆիզիկական ու իրաւաբանական անձանց տրամադրուած փոխառութիւնների գումարի չափ աւելի քան 16,8 միլիարդ դրամին համարժէք ու աւելի քան 86 միլիարդ 480 միլիոն դրամի բռնագանձման պահանջ:

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ՆՇԵՑ, ԹԷ Ո՞ՐՆ Է ՀԱՄԱՐՈՒՄ ԻՐ ԱՄԵՆԱՄԵԾ ԱՆՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը իր կառավարման տարիներին ամենամեծ անյաջողութիւնը համարում է 44-օրեայ պատերազմը: Վարչապետն այս մասին ասած Մայիսի 7-ի հրաւիրուած մամուլի ասուլիսի ժամանակ՝ պատասխանելով *Արմենպրէս*ի հարցին, թէ ո՞րն է համարում իր ամենամեծ անյաջողութիւնը:

Վարչապետը բացատրեց, թէ ինչո՞ւ հնարաւոր չեղաւ խուսափել 44-օրեայ պատերազմից:

«Լեռնային Ղարաբաղի հետ կապուած իրադրութիւնը փակուղային էր 2018 թուականի դրութեամբ: Ի՞նչով էր արտայայտւում այդ փակուղին, որովհետեւ 2018 թուականի առկայ կէտից առաջ գնալու համար անհրաժեշտ էր իրականացնել հետեւեալ քայլերը. առաջինը՝ եօթ շրջանների վերադարձ, երկրորդ՝ ԼՂ-ի ընթացիկ կարգավիճակի լուծարում, արձանագրումն այն բանի, որ ԼՂ-ն միայն հայերի կողմից կառավարուող կամ ինքնակառավարուող տարածք չէ, այլեւ ինչքան հայերի կողմից է կառավարւում, այնքան էլ կառավարւում է ադրբէջանցիների կողմից, սրա արդիւնքով՝ Լեռնային Ղարաբաղից հեռացած ադրբէջանցիների վերադարձի երաշխիքների ստեղծում, յաջորդը՝ ԼՂ-ի կարգավիճակի որոշման անորոշ յետաձգումն էր: Եւ, եթէ նոյնիսկ այս ամէնն արուէր, պատերազմը շարունակում էր մնալ անխուսափելի», - ասաց Փաշինեանը՝ յաւելելով, որ չէր երեւում, թէ ինչ էր լինելու յետոյ:

Չորս տարուայ բոլոր դետալները գծելու արդիւնքում վարչապետը եկել է այն եզրակացութեան, որ պատերազմն անխուսափելի էր երկու դէպքում էլ:

ԽՌՀԵՐ

## ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՀԵՐՔՈՒՄԻՆ ՀԵՐՔՈՒՄԸ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

*Ապրիլ 24 մըն ալ անցաւ: Նորէն բաւական պոռացինք, պահանջեցինք, ցոյցեր ըրինք, Ցեղասպանութիւնը շահարկեցինք ի նպաստ ներքաղաքական եւ կուսակցական առաւելութիւններու, մէկն ու միւսը վարկաբեկեցինք՝ Ցեղասպանութեան բարձրաձայնումը տեղաւորուած չգտնելով մեր սահմանած հռետորաբանութեան մէջ, քանզի Ցեղասպանութիւնն ալ հռետորաբանեցինք: Եւ դարձեալ աղմուկ թրքական իշխանական հերքումին դէմ:*

*Հերքումին հարցը: Ութ տարի առաջ,* Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը *(Ջահակիր, Յաւելուած Դ., 2016), գիրքիս «Երկու խօսք»-ը կը սկսէի հերքումի անդրադարձումով, զոր պատեհ կը գտնեմ արտատպել նոյնութեամբ.*

Մարդկային կենդանի կենսագրութեան մէջ ոչինչ կայ վերջնական, վճռական, բացարձակ ու անթափանցելի: Ասկէ պատեհապաշտները պիտի ծագեցնեն հետեւեալ հարցումը՝ կասկածելի՞ է ուրեմն հայոց ցեղասպանութիւնը: Հարցադրումը պարզապէս անհասկնալի է, քանի որ նմանապէս կարելի է հարցնել՝ կասկածելի՞ են արդեօք Խորենացին, Շեքսփիրը, Պեթհովէնը, Կոմիտասը, կասկածելի՞ են արդեօք Աւարայրի եւ Սարդարապատի Ճակատամարտները կամ Ֆրանսական յեղափոխութիւնը:

Բայց, իրապէս, ինչպէ՞ս կրնանք «փաստել» այս բոլոր անձերուն եւ գործողութիւններուն գոյութիւնները: Շատ դիւրին է բարձրաձայնել, օրինակ, որ Աւարայրի ճակատամարտը Եղիշէի հնարածն է՝ փոխան Մամիկոնեաններու վարձատրութեան (այսօրուան բառապաշարով՝ կաշառքին): Քիչ մը աւելի դժուար, բայց անկարելի չէ «փաստել» որ Կոմիտաս հայերուն կողմէ ստեղծուած զեղծարարութիւն մըն է, իր ձեռագիրները դիտաւորեալ կեղծուած են հայերուն կողմէ, իր գործերը անծանօթի մը կողմէ այստեղէն-այնտեղէն ընդօրինակուած բանագողութիւններ են՝ մանաւանդ ժողովրդական եղանակներէ, եւ այլն, եւ այլն: Եւ եթէ Կոմիտասը հերքողը (անձ, կազմակերպութիւն, պետութիւն) իր տրամադրութեան տակ ունենայ լրատըւական հզօր մեքենայ եւ հանրային կարծիքին վրայ իշխելու կարողութիւն, զայն իրապէս կրնայ վերածել մտացածին գոյութեան: Այս թատերագրութիւնը, անշուշտ, որեւէ ըմբռնումէ եւ հասողութենէ վեր է, բայց, հաւատացէ՛ք, կարելի է: Ճիշդ այնպէս, ինչպէս կարելի եղած է մէկ ու կէս միլիոն հայերու ծրագրուած սպանութեան հերքումը՝ ուժային խումբերու կողմէ: Եթէ Կոմիտասի՝ մէկ անձի մը, գոյութեան հերքումը իրապէս որեւէ ըմբռնումէ վեր է, մէկ ու կէս միլիոն անձերու ոչնչացումին հերքումը դադրած է ըմբռնումէ վեր ըլլալէ: Նոյնիսկ մենք՝ հայերս, մեծ ջանք թափելով հերքել այս հերքումը, հետեւաբար՝ ցեղասպանութեան հերքում հասկացողութիւնը անընդհատ կրկնելով, հերքումին գաղափարը դադրեցուցած ենք ըմբռնումէ վեր դասելէ:

Մանաւանդ, ընդունելով ՄԱԿ-ի ցեղասպանական հռչակագիրը՝ կազմուած ընդամէնը հինգ (միայն հինգ) կէտերէ, կը փորձենք հայկական ցեղասպանութիւնը «փաստել»-ու համար (կամ անոր հերքումը հերքելու համար)՝ այդ ահռելի փորձառութիւնը նսեմացնելով, կմախքայնացնելով եւ ճղճիմացնելով տեղաւորել հինգ (միայն հինգ) նախասահմանեալ կէտերու մէջ: Հինգ կէտ եւ ոչ թէ վեց, հարիւր, հազար կամ անհաշուելի: Եւ ճիշդ այս է որ կը կոչուի վճռականութիւն: Վճռականութիւն ո՛չ թէ որովհետեւ ցեղասպանութիւնը գործուած է եւ կը պնդենք որ ան գործուած է, այլ որովհետեւ այդ անսահմանելին (Մարք Նշանեանի բառն է) կ'ուզենք սահմանել հինգ հակիրճ, չափագրուած ու կտրուկ կէտերու ընդմէջէն: Ցեղասպանութիւնը կը դառնայ վճռական: Մինչդեռ ցեղասպանութիւն մը՝ ժողովուրդի մը կենդանի փորձառութիւնը, անկարելի ու անհնար է մեկնաբանել հինգ կէտերով, ոչ ալ կէտեր աւելցնելով: Ցեղասպանութեան անսահման ենթակայականութիւնը վերածելով առարկայական հինգ կէտերու, որոշած կ'ըլլանք անոր վճռականութիւնը:

Աւարայր, Սարդարապատ, հայոց ցեղասպանութիւն, Խորենացի, Կոմիտաս շրջանցած են ըլլալ-չըլլալու «գիտական» սահմանները եւ դարձած համընդհանուր ու համակեցական մտածողութեան մը բաղադրիչները, իրենց իմաստները ստանալով գոյապաշտական (existential), գոյաբանական (ontological), բնեբեւութապաշտական (phenomenological), մարդաբանական (anthropological), մշակութաբանական (culturological), փիլիսոփայական փոխկապակից կեցութիւններէ եւ ոլորտներէ: Ցեղասպանութեան պարագային հինգ կէտերը կը սպաննեն այս իմաստային ոլորտները, կը խզեն անոնց փոխկապակցութիւնը: Իսկ եթէ այս բոլորը (գոյապաշտութիւն, գոյաբանութիւն եւ միւսները) շատոնց արդէն կը հանդիսանան հայոց ցեղասպանութեան մեկնաբանութիւններուն եւ վերլուծութիւններուն հիմքը, եթէ այս բոլորին միջոցով արտայայտուած իմաստները շատոնց արդէն դարձած են կարելիութիւններ, ուրեմն արդէն ինքնաբերաբար «փաստուած» է հայոց ցեղասպանութիւնը: Ցեղասպանութեան «փաստ»-ը կը գտնուի այս իմաստներու կարելիութեան մէջ: Եթէ այս իմաստները կարելիութիւններ են, ուրեմն ցեղասպանական իրադարձութիւնը իրականութիւն մըն է (բնականաբար մեծ վերապահութեամբ գործածելով «իրականութիւն» բառը՝ զայն չշփոթելու համար անոր տրուած առօրեայ գռեհկացուած ու իմաստազրկուած իմաստին հետ):

Ի՞նչ արժէք կը ներկայացնէ ուշադրութիւն դարձնել ուժային դիրքերէ հրահրուած «հերքում»-ներուն վրայ: Հերքումէն կարելի է վախնալ՝ եթէ ան կարողանայ իր մէջ ընդունիլ յիշեալ իմաստային շերտաւորումները: Բայց քանի որ հերքումը կեղծ իրականութեան մը պատկերումն (representation) է, ան չէ մտած, եւ չի կրնար մտնել այդ իմաստային շերտերէն ներս: Վտանգն այն է, որ հերքումին հերքումով, հայերը եւս ներդրում կրնան ունենալ ցեղասպանութեան ապաիմաստաւորումին: Հերքումին հերքումը նոյնպէս կը սպաննէ յիշեալ իմաստները, հարցը վերադարձնելով զէռոյի դրութեան: Եւ տակաւին կրնայ յառաջանալ հերքումի (թրքական կողմ) հերքումին (հայկական կողմ) հերքումը (վերստին թրքական կողմ)...:

# ՋԱՀԱԿԻՐ

## ՓԱՇԻՆԵԱՆ-ՓՈՒԹԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ

շնորհիւ: Առեւտրական շրջանառութիւնը մեր երկիրներուն միջեւ կազմած է աւելի քան եօթը միլիառ տոլլար. երբեք նման ծաւալ չէ եղած մեր առեւտրատնտեսական կապերուն մէջ: Անշուշտ ոչ միայն առեւտրական շրջանառութեան աճի հետ կապուած հարցեր կան, այլ տարածաշրջանի ապահովութեան, որոնց մասին բաց կերպով պիտի չքննարկենք, բայց կարելիութիւն կայ ԵԱՏՄ աշխատանքի հարթակով խօսիլ մեր յարաբերութիւններու ամբողջ համալիրին շուրջ, ներառեալ՝ տարածաշրջանի ապահովութեան հարցերը:

«Շատ ուրախ եմ Ձեզ տեսնելու, բարի գալուստ»:

Իր հերթին, Հայաստանի վարչապետը նշեց.

«Շնորհակալութիւն յարգելի Վլադիմիր Վլադիմիրի: Առաջին հերթին թոյլ տուէք շնորհակալութիւն յայտնել ջերմ հիւրընկալութեան եւ Եւրասիական Տնտեսական Բարձրագոյն Խորհրդի նիստը բարձր մակարդակով կազմակերպելու համար: Վերջին անգամ մենք հանդիպել ենք Դեկտեմբերին, այս ընթացքում, իհարկէ, կուտակուել են հարցեր, որոնք պէտք է քննարկել: Իհարկէ, տնտեսական հատուածն արդէն քննարկել ենք նիստի ընթացքում, եւ վստահ եմ, որ այժմ կը քննարկենք երկկողմ յարաբերութիւնների կարեւորագոյն հարցերը, տարածաշրջանային հարցերը:

Ես եւս ուրախ եմ Ձեզ տեսնել»:

## ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

նի հնչերանգը առաջ պիտի անցնէր բուն եւ ուղղակի բովանդակութենէն: Նոյնիսկ, պիտի ըսէի, Կապուտիկեանի տպագրած ուղեգրութիւնը՝ *Քարաւանները դեռ քայլում են*, շատ աւելի հետաքրքրական կը կարդացուի քան իր խօսքերուն սղագրուած ու գրառուած բնագիրները, շնորհիւ դէպքերու հրաշալի շարահիւսութեան եւ գրական շարժիչ զօրութեան:

Բայց, միեւնոյնն է, Կապուտիկեանի կենդանի խօսքը մնաց ամենէն ներգործիչը:

(Շար. 7)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

61. «Ս. Կապուտիկեանի խօսքը (խօսուած Համազգայինի ընդունելութեան առիթով)», *Յուսաբեր*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 285. 11 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 286. 13 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 287. 13 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 288:

62. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 24 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.126:

63. «Սիլվա Կապուտիկեանի առաջին մեծ ելոյթը», սղագրեց Վ. Թորիկեան, *Արեւ*, 21 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 13.443:

64. Բաբէլ, «Խորհրդածութիւններ բանաստեղծուհի Սիլվա Կապուտիկեանի ժամանման առթիւ», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777):

65. «Ս. Կապուտիկեանի խօսքը (խօսուած Համազգայինի ընդունելութեան առիթով)», *Յուսաբեր*, 11 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 286:

66. «Սիլվա Կապուտիկեանի ճառը Հայկական Ընթերցասրահին մէջ», *Արաքս*, 23 Փետրուար 1963, ԼԸ. տարի, թիւ 7 (1777):

67. «Ս. Կապուտիկեանի խօսքը (խօսուած Համազգայինի ընդունելութեան առիթով)», *Յուսաբեր*, 11 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 286:

68. «Սիլվա Կապուտիկեանի խօսքը եգիպտահայութեան», սղագրեց՝ Վ. Թ[որիկեան], *Արեւ*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.455:

69. «Ս. Կապուտիկեանի խօսքը (խօսուած Համազգայինի ընդունելութեան առիթով)», *Յուսաբեր*, 12 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 287:

70. Բ. Թաշեան, «Երեւանն է խօսում», *Յուսաբեր*, 16 Փետրուար 1963, ԽԸ. տարի, թիւ 269:

71. «Ս. Կապուտիկեանի խօսքը (խօսուած Համազգայինի ընդունելութեան առիթով)», *Յուսաբեր*, 13 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 288:

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՏԱՐԱԾՈՒՄԸ ԱՓՐԻԿԷԻ ՄԷՋ

սական զօրքերուն կու գան փոխարինել Վակների վարձկանները եւ կը տարածուի ռուսական դրօշակը: 2024 Յունուարին ռուսական զօրակազմ մը կու գայ Պուրքինա Ֆասոյի մայրաքաղաք Ուակատուկու, նշանաւորելով Ափրիկէի Զօրամասերուն (Վակների փոխանորդը) պաշտօնական տեղադրութիւնը այնտեղ:

**Նիժէր**

Յուլիս 2023, ռազմական յեղաշրջում Նիժերի մէջ: Միապետ բռնակալ՝ զօրավար Ապտուրահաման Չիանի կը վերցնէ իշխանութիւնը: Յեղաշրջումին կը նախորդեն ուղղորդուած ցոյցեր, ուր ամբոխը կը վանկարկէ՝ «երկար կեանք Ռուսաստանին» եւ «անկում Ֆրանսային, երկար ապրի Փութինը»:

Կը վտարուին ֆրանսական զօրքերը եւ Ֆրանսա կը փակէ իր դեսպանատունը: Վակնէր խումբի առաջնորդ Եւկենի Փրիկոժին իր անձնական շնորհաւորութիւնները կը ղրկէ Չիանիին: Ֆրանսացի զօրքերուն կը փոխարինեն ռուսական Վակնէր խումբի հազարաւոր վարձկաններ, կը բարձրանայ Ռուսաստանի դրօշակը: Վակնէր իր ձեռքը կը վերցնէ տակաւին տկար առաջնորդին ամրացումը եւ ուժեղացումը:

Յեղաշրջումէն անմիջապէս ետք, Նիժէր եւ Ռուսաստան կը համաձայնին զարգացնել իրենց ռազմական կապերը: 2023 Դեկտեմբերին ռուսական պատուիրակութիւն մը կ'այցելէ Նիժէր եւ 2024 Յունուարին Նիժէրի վարչապետ Ալի Մահաման Լամին Զէյն կ'երթայ Մոսկուա՝ ամրացնելու ռազմական եւ տնտեսական կապերը:

2023 Սեպտեմբերին, ռուսական վերահսկողութեան տակ անցած Սահէլեան երեք երկիրները՝ Մալի, Պուրքինա Ֆասօ եւ Նիժէր կը կազմեն Սահէլի Պետութիւններու պաշտպանական դաշնակցութիւնը, եւ 2024 Յունուարին միակողմանիօրէն կը յայտարարեն իրենց հեռացումը Արեւմտեան Ափրիկէի Պետութիւններու Տնտեսական Համայնքէն (ECOWAS):

**Չատ**

Հակաֆրանսական եւ ռուսամէտ քարոզչութենէ ետք, Չատի նախագահ զօրավար Մահամադ Իտրիս Տեպի 2024 Յունուարին կ'այցելէ Քրեմլին եւ ջերմ հանդիպում կ'ունենայ Փութինի հետ: Նախապէս արեւմտամէտ երկիր մը, իր սլաքը այժմ կը դարձնէ դէպի Ռուսաստան:

**ԴԻՏԱՐԿՈՒՄ ՄԸ**

Ռուսաստանի աստիճանական ներխուժումը Ափրիկէ, ինչպէս ներկայացուեցաւ վերը, անշուշտ ունի իր այլազան երեսակները, որոնց ներկայացումը դուրս է նիւթէս: Երեւոյթն ալ բացարձակ չէ, քանի որ Ափրիկէի մէջ տակաւին կը գործեն Ֆրանսայի, Եւրոպայի, ԱՄՆ-ի, Չինաստանի, Իսրայէլի եւ այլոց շահերը, որոնք բոլորը միասին սեւ Ափրիկէն վերածած են անկայուն խառնարանի՝ ենթակայ բոցավառուելու որեւէ պահու, դիւրացնելու համար իրենց շահերուն յառաջմղումը: Ռուսաստանի ներկայութիւնն ալ նոր չէ, բայց 2017-էն ստացած է նոր թափ ու յարձակողականութիւն, որ անշեղօրէն կը շարունակուի հակառակ ռուս-ուքրաինական պատերազմին: Իմփերիալիսթական երկիրներու պատերազմ մըն է որ կ'ընթանայ Ափրիկէի մէջ, մինչ մեր ուշադրութիւնը ուղղորդուած է դէպի Ուքրաինայի եւ Կազայի պատերազմները:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

Գրութեանս նպատակն էր ցոյց տալ Ռուսաստանի յաւելեալ ուժեղացումը եւ իր ազդեցութեան համաշխարհայնացումը: Ռուսաստան նաեւ կ'ընդլայնի այլ ուղղութիւններով՝ դէպի Ասիա եւ Հարաւային Ամերիկա: Ասկէ զատ, երբ ուքրաինական պատերազմը ժամանակին հարցադրումներու դուռ կը բանար Ռուսաստանի յետագայ կարողութեան մասին, այսօր կարելի է բաւական վստահութեամբ ըսել՝ որ Ուքրաինայի արեւելքը, իր կազի հսկայ դաշտերով, պիտի մնան Ռուսաստանի ձեռքը, որոնց միջոցով քանի մը տարիէն ան պիտի յաջողի առաւել սուղ պայմաններով պարտադրել իր կամքը Արեւմուտքին վրայ: Այստեղ նաեւ կրնայ տկարանալ Ազրպէյճանի արժէքը Ռուսաստանի համար:

Համոզուած եմ՝ որ այսօր ունինք հզօրացող Ռուսաստան մը, հզօրացում մը, որ ինչպէս բոլոր իմփերիալիսթական երկիրները, ձեռք կը բերուի զանգուածային սպանութիւններու, չարձանագրուած ցեղասպանութիւններու, պատերազմներու, ահաբեկչութիւններու եւ ուրիշներու կործանումի հիման վրայ:

Այս է Հայաստանի սերտագոյն եւ համաձայնագրային դաշնակիցին իրական պատկերը: Ռուսաստանի յարաբերութիւնը Հայաստանի հետ տիրակալ-գաղութ հիմքի վրայ է, երբ Ռուսաստան գրաւած է Հայաստանի տնտեսութեան բանալիներուն գրեթէ ամբողջութիւնը, մինչ քաղաքական բոլոր որոշումները պէտք է անցնին Մոսկուայի բովէն (*Ջահակիր*, թիւ 1952-1953): Քրեմլինն էր որ արգիլեց Հայաստանին՝ բանալի ձեռնարկութիւններու առումով գործարքներ ունենալ Իրանի հետ, ինչպէս նաեւ խափանեց Իրանի հետ կազի խողովակի լիարժէք կառուցումը՝ Հայաստանի վրայ պարտադրելով կազի մենատիրութիւն (նոյն տեղը): Քրեմլինն էր որ արգիլեց Հայաստանին Եւրամիութեան հետ առեւտրական համաձայնագիր կնքել Սերժ Սարգսեանի ժամանակ (նոյն տեղը): Քրեմլինն էր որ 2023-ին տապալեց Պաքու-Ստեփանակերտ հանդիպումները Սոֆիայի եւ Պրաթիսլաւայի մէջ (*Ջահակիր*, թիւ 1958): Քրեմլինն էր որ վառ պահեց, եւ տակաւին կը փորձէ վառ պահել, հայ-ազրպէյճանական պատերազմական դրութիւնը՝ 1994-ի զինադադարէն ետք: Քրեմլինն էր՝ որ խախտեց Նոյեմբեր 9-ի յայտարարութիւնը եւ չպաշտպանեց Լաչինն ու արցախցիները, վերջիններս երկար ամիսներ թողելով սովի եզրին: Քրեմլինն է որ խոչընդոտող դեր կը խաղայ բանալու Հայաստան-Թուրքիա ճանապարհը, շահագործելով ռուս-թրքական սերտաճող յարաբերութիւնները (*Ջահակիր*, թիւ 1962): Եւ ուրիշ շատ բաներ: Ռուսաստանը՝ մէկ կողմ:

Միւս կողմը կայ նոյնպէս հզօր ու հզօրացող Թուրքիան: Տեղական զինային արդիւնաբերութիւն մը ստեղծելու Թուրքիոյ երկարատեւ փափաքը արդէն հասած է իր լրումին եւ պետութիւնը աւելի ու աւելի առիթներ կը փնտռէ տարածուելու իր սահմաններէն դուրս: Թուրքիա կը հանդիսանայ աշխարհի ամենակարեւոր զէնք արտադրող երկիրներէն մէկը: Նպատակին կը հասնի պրետորական ռազմականութեամբ, հասարակութեան ռազմականացումով (*Ջահակիր*, թիւ 1876):

Կայ աշխարհին տիրող Իսրայէլը իր կործանիչ զէնքերով եւ բանակավարական աջակցութեամբ Ազրպէյճանի մէջ (*Ջահակիր*, թիւ 1754)

Այս է աշխարհաքաղաքական շրջապատը, որուն մէջ շրջափակուած ու մխրճուած կը մնայ Հայաստան: Հայաստանի ներկայ դիւանագիտութեան հասցէին կատարուած որեւէ գնահատութիւն եւ քննադատութիւն կարեւոր է նախ եւ առաջ նկատի առնէ ընդհանուր ու մեծ պատկերը: Հայաստան, ուրիշ շատ երկիրներու նման, ՉԻ ԿՐՆԱՐ մինակը առաջ երթալ այս ոչ-մարդակեդրոն եւ գերազանցապէս հակամարդկային աշխարհին մէջ: Պէտք է անկարելի ընտրութիւններ կատարէ այս կեդրոններուն միջեւ, իրականացնէ ճեղքումներ: Ըսելը՝ դիւրին է: Գործադրութիւնը՝ դժուար, երբեմն՝ անհնար:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1966 ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՄԱՅԻՍ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٦٦ الخميس ٢٣ مايو ٢٠٢٤


## ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐՈՒ ԱՄԵՆԱՇԱՏ ԳՈՐԾԱԾՈՒՈՂ ԵՒ ՇԱՀԱԳՈՐԾՈՒՈՂ ԲԱՌԸ՝ ՍԱՀՄԱՆ

Աշխարհի մէջ կատարուած բոլոր քաղաքական եռուզեռները մարդակերտ պատնէշներու արդիւնքն են, պատնէշներ՝ որոնց մէջ մարդը կը կարծէ զգալ ապահով, ապահովութիւն կը զգայ՝ շնորհիւ պատնէշներուն, մարդը մարդէ բաժնելով, մարդը մարդէ պաշտպանելով, պատնէշներ՝ իրական եւ մտացածին:

Քանի մը ամիս է արդէն ամէն ժամ կ'առնչուինք, կը լսենք ու կը կրկնենք մէկ բառ մը՝ «սահման», արտայայտուած երկու բարդ բառերու միջոցով՝ «սահմանազատում» եւ «սահմանագծում»: Եւ ամէն բան կը դառնայ այդ բառին շուրջ, մէկ կողմէ՝ ապահովութիւն (անվտանգութիւն), կայունութիւն, խաղաղութիւն, միւս կողմէ՝ հայրենասիրութիւն, ազգայնականութիւն: Երկու կողմերը չեն կրնար հանդիպիլ իրարու, քանի որ չկայ միջին: Ինչո՞ւ համար սահմանը՝ մարդկային, կենդանական, կենսաբանական այդ գեղեցիկ հասկացողութիւնը պիտի հասնէր անվիճելի վճռականութեան:

Մէկ կողմ ձգենք կենդանին: Սահմանը այն է՝ որ կը գտնուի մարդուս մէջ իր գոյութենէն ի վեր: Այն միջոցն է՝ որուն ընդմէջէն մարդիկ հաղորդակցած են իրարու ամէն մակարդակով: Ան ճկուն է, փոփոխական, կ'որոշէ մարդկային յարաբերութիւններուն աստիճանն ու որակը, կ'ապահովէ մարդուն եւ դիմացինին ապահովութիւնը: Գիր-գրականութեան դարաշրջանի եւ նոր ժամանակներու համար մարդկային սահմանը մէկն է երկխօսութեան յատկանիշներէն, սեփական իրողութիւնները արտայայտելու հենքը՝ դիմացինը յարգելու սկզբունքին վրայ:

Քաղաքակրթութիւն կոչուածը, որ սկսաւ 7000 տարի առաջ, մարմին առաւ պատերու մէջ, պատսպարեալ տարածութիւններէ ներս՝ հիմնականապէս տաճարներու եւ պալատներու մէջ: Անկասկած քաղաքակրթութիւնը կապուած է թեքնոլոժիք յառաջացումի եւ մտաւոր զարգացումի հետ՝ իբրեւ դրական գործօններ, բայց նաեւ կապուած է պատերով բաժանումներու եւ դասակարգային վերադասութեամբ ու ստորադասութեամբ աշխատանքային բաժանումի վրայ: Դասակարգայինը չէ նիւթս: Նիւթս պատերն են: Մարդկային բնածին սահմանը փոխուեցաւ մարդակերտ քարով՝ պատով: Քար՝ փոխանակ փորձառութեան, փորձառութիւն՝ որ վերափոխուելով դաւանանքի ստեղծեց քարէ պատը, պատ որ դաւանափոխելով դաւանանքը զայն դարձուց ֆեթիշական կուռքի: Պատէն անդին գտնուողը մնաց բացակայ:

Քարէ պատը իր կարգին ազդեց մարդկային հասկացողութեան վրայ, մարդկային սահմանը հաւասարեցաւ պատի խստութեան, չորութեան, կարծրութեան:

Սահմաններ ստեղծուեցան պետութիւններուն միջեւ: Այս պարագային «սահման» բառը համազօր չէ մարդկային վերոյիշեալ սահմանին, այլ համազօր է պատին, ան չկառուցուած պատ մըն է: Ազգային պետութեան (nation state) կազմաւորումէն ետք, պետական սահմանները դարձան աննախադէպօրէն բիրտ, անզիջողական: Կարծէք ամէն երկիր վաղը պիտի յարձակի միւսին վրայ՝ եթէ չըլլան սահմաններ:

Ենթադրեալ համաշխարհայնացումի (globalization) ծիրէն ներս կատարուեցաւ համաշխարհային հասկացողութեան ճիշդ հակառակը՝ արգելափակուեցաւ մարդոց ազատ շրջանառութիւնը մէկ երկիրէն միւսը, սահմանափակուեցաւ մարդոց իրաւունքը ընտրելու իրենց կեցավայրը: Սահմաններու անունով, սահմանը սահմանի համար կարգախօսին տակ, անհամար մարդիկ կոտորուեցան, ընտանիքներ քայքայուեցան, համայնքներ վերացան, ընկերային յարաբերութիւններ ոչնչացան:

Սահմանը՝ իբրեւ առողջարար երեւոյթ, վերածուեցաւ իշխանականօրէն կործանարար գործիքի:

Սահմանը՝ իբրեւ ինքնասահմանումի միջոց, վերածուեցաւ պետական ինքնապաշտպանութեան հիմնարկի:

Սահմանը՝ իբրեւ հաղորդակցային եղանակ, վերածուեցաւ միջզանգուածային խզումի մեքենայի:

Պատային սահմաններու մէջ տեղաւորուած խմբաւորումները ոչ միայն ինքզինքնին սահմանեցին ու սահմանափակեցին, այլեւ սահմանեցին պատերէն դուրս գտնուողները իբրեւ Այլ, եւ այդ Այլի միջոցով՝ մեծ մասամբ զայն հեռացնելով, վանելով, չընդունելով, թշնամացնելով կամ տարաշխարհիկ դարձնելով, փորձեցին սահմանել ինքզինքնին:

Երեւակայական պատեր կառուցեցինք նաեւ բարոյականութեան անունով:

Ստեղծեցինք գաղափարախօսութիւնը՝ որ ոչ այլ է քան պատերով շրջապատուած գաղափար, գաղափար՝ որ պատերու մէջ ամրանալով եւ սեղմուելով դարձած է գաղափարախօսութիւն:

Ազգային սահմաններու պատճառով է որ եղաւ հայոց Ցեղասպանութիւնը, եւ ցեղասպանեալներս չկրցանք ինքզինքնիս սահմանել առանց ցեղասպանական հռչակագիրի հինգ կէտերու գաղափարական սահմաններուն:

Սահմանը համազօր դարձաւ ազգային իմաստներու՝ ազգայնականութիւն, հայրենասիրութիւն, ինչպէս նաեւ ազգային նշաններու՝ պետական հիմն, դրօշակ. իմաստն ու նշանը խառնուեցան իրարու, իմաստը ստացաւ նշանի ուղղաձիգ մեղկութիւն:

Եւ եկանք հասանք այսօր, երբ հայերն ու ազէրիները սահմանները կը գատեն իրարմէ՝ սահմանազատում, եւ սահման կը գծեն՝ սահմանագծում, պատ-սահմանի հասկացողութեան ամենէն աւելի խստաբարոյ, ազգայնաբարոյ, մտաւոր-քաղաքական-տնտեսական ծայրայեղութեան եւ մրցակցային յարձակողականութեան դարաշրջանին:

Հայաստանի եւ Ազրպէյճանի սահմանը կը կազմէ շուրջ հազար քիլոմեթր, որ պիտի սահմանազատուի-սահմանագծուի փուլ առ փուլ, իւրաքանչիւր փուլ իր բանակցութիւններով, խնդիրներով, բախումներով եւ համաձայնութիւններով, ընկերակցութեամբ արդէն կարծրատիպ դարձած ներհայկական պոռթկումներու՝ հող «յանձնելու», այլ ոչ կարգաւորելու տրամաբանութեամբ, ճիշդ այնպէս ինչպէս 44-օրեայէն առաջ հայրենասէրները կը մեղադրէին իշխանութիւնները՝ թէ Արցախը պիտի յանձնեն Ազրպէյճանին, պիտի յանձնեն կամովին, ինչու չէ նաեւ սիրով եւ հաճոյքով (սէրն ու հաճոյքը իմ հնարանս է, անշուշտ, բայց կամովինը՝ ոչ):

Ապրիլ 19-ին տեղի ունեցաւ սահմանազատումի յանձնաժողովներուն 8-րդ հանդիպումը: Առաջին անգամ ըլլալով Ազրպէյճեան համաձայնեցաւ սահմանազատումի հիմք ընդունիլ Հայաստանի ժամանակէ մը ի վեր առաջարկած Ալմա-Աթայի 1991 թուականի հռչակագիրը, այսինքն, գոնէ տեսականօրէն, Խորհրդային Միութեան փլուզումի պահուն գոյութիւն ունեցող իրաւաբանօրէն հիմնաւորուած միջհանրապետական սահմանները: Ազրպէյճեան միանշանակօրէն կը մերժէր Ալմա-Աթան, փոխարէնը անընդհատ խօսելով այլ քարտէզներու մասին, այդ քարտէզներն ալ անընդհատ փոխելով: Ապրիլ 19-ին Ալմա-Աթայի սկզբունքին ընդունումը մեծապէս ողջունուեցաւ Արեւմտեան երկիրներուն, Եւրամիութեան եւ Միացեալ Նահանգներուն կողմէ: Միահամուռ այս ընդունելութիւնը աննախադէպ երեւոյթ մըն էր: Այս ողջունումը տեղի պիտի չունենար՝ եթէ ԵՄ-ԱՄՆ չունենային ներգրաւուածութիւն կատարուածին մէջ: Ապրիլ 19-ի համաձայնութեան նախորդած էր Հայաստանի եւ ԵՄ-ԱՄՆ-ի միջեւ ուժեղ բանակցութիւններու շղթայ մը, որուն գագաթնակէտն էր Պրիւքսէլի Ապրիլ 5-ի Հայաստան-ԵՄ-ԱՄՆ բարձր մակարդակով հանդիպումը, եւ որուն նախորդեցին ու յաջորդեցին Ազրպէյճանի եւ Ռուսաստանի միաժամանակեայ սուր քննադատութիւնները եւ որուն անմիջապէս յաջորդեցին Ազրպէյճանի կրակոցները Տաւուշի, Գեղարքունիքի եւ ↳ 4

### ՀԱՅԱՍՏԱՆ

## ՏԱՒՈՒՇԵԱՆ ՀԱՆՐԱՀԱՒԱՔ

Մայիս 9-ին, Երեւանի Հանրապետութեան Հրապարակին վրայ տեղի ունեցաւ «Տաւուշը յանուն հայրենիքի» հանրահաւաքը Բագրատ Արքեպիսկոպոս Գալստանեանի առաջնորդութեամբ:

*Epress.am* (https://epress.am/2024/05/09/lats-say-its-a-holy-movement.html) կ'ուրուագծէ այս եկեղեցաքաղաքական շարժումին պաշտօնապէս միացած կամ աջակցութիւն յայտնած խմբաւորումներուն եւ յայտնի դէմքերուն երեւցող մասը՝ Դաշնակցութեան բոլոր կառոյցները, Հանրապետականներուն երիտասարդական թեւը, Ռուսաստանի Հայերուն Միութիւնը, Ռուբէն Վարդանեանի հիմնած Ապրելու Երկիր կուսակցութիւնը, դարաբաղեան զօրավար Վիտալի Բալասանեան, Ռոբերտ Քոչարեանի ժամանակ արտաքին գործոց նախարար Վարդան Օսկանեան, Ղարաբաղ Կոմիտէի անդամ եւ նախկին պաշտպանութեան նախարար Վազգէն Մանուկեան՝ որ կ'առաջնորդէր Հայրենիքի Փրկութեան նախընտրական շարժումը, երգչուհի Սիրուշօ եւ իր պատգամաւոր ամուսինը, բանտը նստած նախկին կրթութեան նախարար Արմէն Աշոտեան, ՀՀԿ-ական Էդուարդ Շարմազանով, նախկին պաշտպանութեան նախարար Արշակ Կարապետեան, Դոն Պիպօ, Դոգ, օլիգարք Գագիկ Ծառուկեան, նախկին ԴԱՀԿ պետ Միհրան Պօղոսեանի նորաստեղծ կուսակցութիւնը, նախկին այլախոհ Պարույր Հայրիկեան, նախկին քաղաքապետ Արտաշէս Գեղամեան, ԱրմՔոմեդիի Նարեկ Մարգարեան, Մասիսի համայնքապետ Դաւիթ Համբարձումեան, նախկին ԱԱԾ-ական Արթուր Վանեցեան, շօու պիզնէսի մէկ մասը ↳ 2

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԸ ՀԱՄԱՐԵՑ ՄԵԾ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Տաւուշի եւ Ղազախի սահմանագիծի չորս գիւղերուն հայ-ազրպէյճանական սահմանազատումը վարչապետ Փաշինեանը Մայիս 16-ի կառավարութեան նիստին համարեց «մեծ յաջողութիւն», աւելցնելով՝ որ այսպէսով շատ կարեւոր անկիւնաքար դրուեցաւ Հայաստանի ինքնիշխանութեան եւ անկախութեան յետագայ զարգացումին համար:

Հայաստանի եւ Ազրպէյճանի սահմանազատումի յանձնաժողովները Մայիս 15-ին ստորագրեցին ԽՍՀՄ ԶՈՒ գլխաւոր զօրամասի 1976 թուականի քարտէզի համաձայն Բաղանիս – Բաղանիս Այրում, Ոսկեպար – Աշաղը Ասկիպարա, Կիրանց – Խէյրումլի, եւ Բերքաբեր – Կըզըլ Հաջիլի բնակավայրերուն միջեւ սահմանագիծի համաձայնեցումի մասին արձանագրութիւնը:

«Մեր հանրապետութիւնն անկախութիւնից ի վեր առաջին անգամ ունի պաշտօնապէս դելիմիտացուած սահման, որը այս փաստով էականօրէն մեծացնելու է անվտանգութեան եւ կայունութեան մակարդակը ոչ միայն նշուած գիւղերի ↳ 3

# ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

## (Ծննդեան 105-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**3. ՅՈՒՍԱԲԵՐԻ ՀԱՐՑԸ**

«Մտաւոր դիմաւորում»-ի մէջ անդրադարձայ *Յուսաբեր*ի կանխամտածուած կերպով կառուցած խօսոյթը՝ օրինականացնելու համար Կապուտիկեանի ընդունումը սեփական սրահին մէջ: Իսկ ի՞նչ էր Կապուտիկեանի վերաբերմունքը: Չէ՞ որ Համայնավար Կուսակցութեան անդամին համար կարեւոր էր որ տեղ մը, պահ մը, ցոյց տար դիրքաւորումը:

Որ Կապուտիկեան յատուկ կարեւորութիւն տուաւ Փետրուար 27-ին Յուսաբերի մէջ արտասանելիք ճառին, պարզ կը դառնայ իր յուշերէն: Փետրուար 25-ին գացած էր Լուքսոր եւ կրնար հանգիստ վերադառնալ 27-ի առաւօտեան ու հասնիլ հանդիսութեան: Բայց ուզեց անպայմանօրէն Գահիրէ ըլլալ 26-ի գիշերը.

«Հիւրանոցի տնօրէնութիւնը մեզ տոմսով կարող է ապահովել միայն վաղը [Փետրուար 27] առաւօտեան, սակայն ինձ հարկաւոր է Գահիրէ մեկնել այս երեկոյ [Փետրուար 26]: Վաղը Յուսաբերի սրահում բազմամարդ հանդիպում ունեմ, ուրեմն լաւ է, որ այսօր հասնեմ Գահիրէ, գիշերը հանգիստ քնեմ, որպէսզի երեկոյի համար ուժ ունենամ»(72):

Ելոյթը կ'անցնի սպասուածէն աւելի յաջողութեամբ, հանդիսատեսը բազմիցս կ'ընդմիջէ խօսքը բուռն ծափահարութիւններով: Բայց Կապուտիկեան չէ կրցած մարսել *Յուսաբեր*ի Փետրուար 16 թուակիր վերոյիշեալ խմբագրականը, ուր Խորհրդային Հայաստանի առաջին քառասուն տարիները կը ներկայացուէին իբրեւ աղջամուղջ: Կապուտիկեան ճիշդ այս կէտն ալ ելակէտ կ'ընդունի Յուսաբերի ճառին մէջ՝ ճշդելու համար իր դիրքաւորումը.

«[Հ]ենց վերջերս կարդացած եմ մի քանի տողերը *Յուսաբեր*ում, - «Քառասուն տարուան մղձաւանջ» - ես, օրինակ, չէի գրի: Որովհետեւ, եթէ քառասուն տարին եղել է մղձաւանջ, ապա ի՞նչպէս են ստեղծուել այս արժէքները: Ուրեմն, նախադասութիւնների մէջ պէտք է քննադատէք, ի հարկ է, ձեզնից ոչ ոք չի պահանջում գաղափարական զիջումներ, բայց տեսէք իրականութիւնը այնպէս, ինչպէս որ կայ: Որովհետեւ դա առաջին հերթին օգտակար է մեր ժողովրդի համար: Որովհետեւ հայրենիքը, թիկունքում հայրենիք ունենալու զգացումը, հաւատը դէպի հայրենիքի ներկան, ապագան անհրաժեշտ է ո՛չ միայն մեզ՝ հայրենիքում ապրողներին, այլեւ աւելի՛ քան անհրաժեշտ է սփիւռքի ժողովրդին, որովհետեւ այդ զգացումը, ա՛յդ հաւատը, ա՛յդ հպարտութիւնը օգնում է, որպէսզի նա հաստա՛տ քայլի ուրիշ ափերի վրայ, որպէսզի նա իր ճակատը շիտա՛կ պարզի աշխարհին, որպէսզի հպա՛րտ լինի, եւ դրանով իսկ հաստատ զգայ այն մեծ յորձանքին դէմ, որ գալիս է նրան կլանելու»(73):

Դարձեալ պէտք չէ խորանալ «աղջամուղջ-մղձաւանջ»-էն մինչեւ հայրենասիրական հպարտանքի տանող բառային ուղեգիծին մէջ, բայց այսպիսով Կապուտիկեան առ նուազն պահպանած կ'ըլլայ իր հաւատարմութիւնը կուսակցական պատկանելութեան հանդէպ:

Անկախ ամէն բանէ, Յուսաբերի հանդիսութիւնը քանի մը կողմերով իւրայատուկ երեւոյթ էր եգիպտահայ կուսակցական պատմութեան մէջ: Երգիծագիր Խորէն Տէտէեան հրաշքի նման բան մը կը համարէ՝ որ քառասուն տարուայ կուսակցական թէժ պայքարէ ետք, Յուսաբերի հանդիսութեան ընթացքին Համազգայինի ատենապետը շնորհակալութիւն յայտնէ Հայ Գեղարուեստասիրաց Միութեան՝ Կապուտիկեանը Գահիրէ հրաւիրելու նախաձեռնութիւնը ստանձնած ըլլալու համար, իսկ *Արեւ* պատշաճօրէն նկարագրէ Յուսաբերի հանդիսութիւնը եւ քաղուածք կատարէ *Յուսաբեր* օրաթերթի խմբագիրի ելոյթէն(74):

Իրապէս, պահը ուշադրութեան արժանի է, բայց պիտի մնար այդպէս՝ չանցնելով պահու դրութենէն անդին:

**4. ՏՆԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔ ԲԱՆԱՍԷՐՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ**

Փետրուար 27-ի Յուսաբերի հանդիսութեան ընթացքին Կապուտիկեան կ'արտասանէ իր հեղինակած *Մտորումներ ճանապարհի կէսին* բանաստեղծութենէն հատուածներ: *Յուսաբեր* օրաթերթը՝ որ արդէն հրատարակած էր Կապուտիկեանի ամբողջ խօսքը, գեղեցիկ գաղափարը կ'ունենայ ձայներիզէն գրառել նաեւ բանաստեղծութիւնը, որ նախապէս տպագրուած էր Երեւանի մէջ: Հետաքրքրականը այն է՝ որ արտասանածին եւ նախապէս տպագրուածին միջեւ տեղ-տեղ կան տարբերութիւններ: *Յուսաբեր* իր հրատարակութեան համար կը հիմնուի տպագրուածին վրայ՝ ճշդօրէն հետեւելու համար կէտադրութեան եւ տողաբաժանումներուն, միաժամանակ փակագիծերու մէջ կ'աւելցնէ արտասանութեան մէջ տեղ գտած տարբերութիւնները(75): Այս տարբերութիւնները կրնան բանասիրական ուսումնասիրութեան մը հետաքրքրական նիւթ դառնալ:

**5. ԽԱՆԴԱՎԱՌՈՒԹԵԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ**

Յօդուածիս սկիզբը կը նշէի՝ որ Սիլվա Կապուտիկեան հանդիսացաւ եգիպտահայ գաղութէն ներս երբեւէ ամենախանդավառ ընդունելութիւն գտած այցելու մտաւորականը կամ արուեստագէտը:

«Սիլվա Կապուտիկեան եկաւ ու անցաւ փոթորիկի մը նման...», նշեց Հրաչ Գալըճեան(76):

Իսկ Միքայէլ Կիւրճեան նկարագրեց. «Մեր գաղութին տժգոյն երկինքին վրայ Սիլվա երեւցաւ յանկարծ գիսաւորի մը պէս, լուսաճաճանչ, շլացուցիչ: Երեւցաւ եւ անհետացաւ. բայց, մինչ գիսաւորները, պահ մը խաւարը փարատելէ յետոյ՝ կ'անցնին կ'երթան զայն վերստին ձգելով իրենց ետեւ՝ աւելի թանձր, Սիլվայի բերած լուսավառութիւնը պիտի չմարի շուտով, որովհետեւ արձակուեցաւ գերազօր հոգիէ մը ընկալուչ հոգիներու, որոնք զայն պիտի պահեն գուրգուրանքով, սպասելով ուրիշ գիսաստղի մը երեւումին...»(77):

Հրաչ Գալըճեան զանգատեցաւ՝ որ Կապուտիկեանի նուիրուած ձեռնարկներուն մէջ եգիպտահայերը շատ աւելի ճառեր խօսեցան քան հիւրը, առաջիններուն թիւը հաշուելով 72, երկրորդը՝ 28: Ըստ իրեն, ասկէ զանգատեցաւ նաեւ Կապուտիկեան.

«Գրեթէ առանց բացառութեան երկու-երեք ճառ պայթեցուցին խեղճ Սիլվայի գլխուն՝ լսելու համար ճառ մը իրմէն...: Այն աստիճանի, որ սրահի մը մէջ, երբ արդէն ժամը 11-ը քառասուն վայրկեան կ'անցնէր, մեծ բանաստեղծը քովինին հակելով՝ հարցուց.

- Չգիտեմ թէ ես եկած եմ զիրենք լսելու, թէ իրենք եկած են զիս լսելու»(78):

Բայց պէտք է նկատել՝ որ եգիպտահայ ճառախօսներուն մղումը արտայայտուելու բանաստեղծուհիին առջեւ եւս նշան մըն է յառաջացած ընդհանուր ցնծագին մթնոլորտին, մթնոլորտ՝ որուն մէջ ամէն ոք կ'ուզէր իր ներկայութիւնը ապահովել:

Կապուտիկեանի մեկնումէն անմիջապէս ետք, եգիպտահայ մամուլին մէջ կը յայտնուին բանաստեղծուհիին ձօնուած հինգ ինքնագիր բանաստեղծութիւններ, գրուած անոր այցելութեան տպաւորութեան տակ, քանի մը հատը արտասանուած Կապուտիկեանի առջեւ: Միքայէլ Ս. Կիւրճեան կը գրէ *Հայկական աչքեր*(79), Վարդունի [Վարդան Վրդ. Աշքարեան]՝ *Ողջոյնի խօսք Սիլվա Կապուտիկեանին*(80), Բաբէլ [Բաբէլ Հաճընլեան]՝ *Յաւէ՜տ սիրելի Սիլվային*(81), Տ. Յ. Գառնիկ՝ *Բարո՜վ եկար*(82), եւ աշուղ Յարութիւն Ֆիլեան՝ *Զօներգ*(83):

Ասիկա՝ գրական վերնախաւի մակարդակով: Ժողովրդական մակարդակով, 1963-1964-ին ծնած բազմաթիւ աղջիկներ կ'անուանուին Սիլվա: Այնքան սիրելի դարձած էր Կապուտիկեան:

Ինչո՞ւ այսքան սէր եւ խանդավառութիւն: Պատճառները կարելի է փնտռել Կապուտիկեանի անձի եւ տուեալ ժամանակահատուածի առանձնայատկութիւններուն մէջ.

1. Կապուտիկեանի բանաւոր խօսքի գրաւչութիւնը, թովչանքը, կանացի հռետորաբանութիւնը եւ հրապարակային հնչականութիւնը:

2. Խօսքին մատչելիութիւնը գաղութահայութեան զանազան խաւերուն, միաժամանակ անոր համատեղելիութիւնը գործող ու տիրապետող երեք կուսակցութիւններու ազգային-հայրենասիրական գաղափարախօսութիւններուն հետ:

2. Եգիպտահայ մակարդակով բեմական այդպիսի վարժ, սահուն, հարթ, բնական եւ տիրապետեալ խօսքի բացակայութիւնը, որ իւրայատուկ հնչերանգ պիտի տար Կապուտիկեանին:

3. Եգիպտահայերը շատոնց ծանօթ էին Կապուտիկեանին՝ որ առասպելական հմայք մը ստացած էր երկաթեայ վարագոյրին ետեւէն: Անձի երեւումով կը կազմաքանդուէր առասպելական տիպարը եւ հին պատկերին կու գար փոխարինել անվիճարկելի ↳ 4

# ԵՐԵՒԱՆՆ ՈՒ ԲԱՔՈՒՆ ՊԱՅՄԱՆԱՒՈՐՈՒԵԼ ԵՆ ՇԱՐՈՒՆԱԿԵԼ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՀԱՐՑԵՐԻ ՇՈՒՐՋ, ՈՐՏԵՂ ԿԱՆ ՏԱՐԱՁԱՅՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Մայիսի 11-ին Ղազախստանում աւարտուեցին Հայաստանի եւ Ադրբէջանի արտգործնախարարների բանակցութիւնները:

Ըստ Հայաստանի Արտգործնախարութեան հաղորդագրութեան՝ երկօրեայ քննարկումների արդիւնքում կողմերը պայմանաւորուել են շարունակել բանակցութիւնները բաց հարցերի շուրջ, որտեղ դեռ կան տարաձայնութիւններ:

Անհամաձայնութիւնների մասին երկու երկրների արտգործնախարարութիւնները փակագծեր չեն բացել:

Նշւում է, որ Արարատ Միրզոյեանն ու Ջէյհուն Բայրամովը ողջունել են սահմանազատման հարցում առաջընթացը եւ այդ ուղղութեամբ ձեռք բերուած պայմանաւորուածութիւնները, շարունակել են «Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան եւ միջպետական յարաբերութիւնների հաստատման վերաբերեալ» երկկողմ համաձայնագրի նախագծի շուրջ քննարկումները:

Հանդիպման մասին նոյնաբովանդակ հաղորդագրութեամբ է հանդէս եկել նաեւ պաշտօնական Բաքուն: ↳ 3

# ՏԱՒՈՒՇԵԱՆ ՀԱՆՐԱՀԱՒԱՔ

1 ↳

Նազենի Յովհաննիսեան, Միհր Արմենիա, Արսէն Գրիգորեան, Շուշան Պետրոսեան, Սոֆի Միխէյեան, Ալլա Լեւոնեան, Անդրէ, Շպրոտ եւ ուրիշներ, նախկին պաշտպանութեան նախարար եւ գործող պատգամաւոր Սէյրան Օհանեան եւ այլն:

Ժամը 18.40-ին հրապարակի հարթակէն կը հնչեցուի վերջնագիրը՝ մէկ ժամ ժամանակ Նիկոլ Փաշինեանին յօժարակամ հրաժարական տալու համար: Հրաժարական տեղի չ'ունենար: Վերջնաժամկէտը կ'երկարաձգուի 15 վայրկեան: Նորէն հրաժարական տեղի չ'ունենար:

Կ'որոշուի յաջորդ օրերը շարունակել հանրահաւաքները:

Հանրահաւաքներուն օգտագործուած բառային կորիզն էր՝ Ազգ, Հայ, Հայաստան, Հայրենիք, Աստուած:

Մայիս 12-ի հաւաքի ընթացքին արքեպիսկոպոսի առաջադրած պահանջները կը համառօտագրէ *Epress.am*. «Նա շարադրեց իշխանափոխութիւնից յետոյ գալիք անցումային կառավարութեան անելիքները: Կրկնուեցին բեմում կանգնած դիւանագէտների առաջարկները, խօսուեց բարձրագոյն կրթութիւն ունեցող խելացի մարդկանց մասին, որոնք պէտք է համալրեն նոր իշխանութիւնը, խօսուեց ընտանեկան եւ հոգեւոր արժէքների մասին, երկար խօսուեց սփիւռքի մասին, խօսուեց Ադրբէջանում պահուող գերիների, Հայաստանում բանտարկուած «պրոֆեսիոնալների», գնաճի, ակադեմիական քաղաքի, ծնելիութեան, էկոնոմիկայի, բնապահպանութեան, Հայաստանի պահուստների, կրթութեան, պսակադրութեան, եկեղեցու, քաղաքական հաշտութեան եւ մնացած ամէն ինչի մասին»:

Իրազեկ Քաղաքացիների Միաւորումը օդապատկերահանումի միջոցով կ'իրականացնէ հանրահաւաքներու մասնակցողներուն հաշւարկը: Մայիս 9-ին կը հաշուէ շուրջ 31.700 մարդ, Մայիս 10-ին՝ 11.300: Հաւաքները կը շարունակուին՝ օրէ օր նուազող քանակով: Մարտ 12-ի մասնակիցները բացայայտօրէն արտայայտեցին իրենց յուսախաբութիւնը: Փորձ կատարուեցաւ անցնելու անհնազանդութեան գործողութիւններու:

Մայիս 18-ին, «քաղաքական գործիչներու» փակ հանդիպումէ ետք կ'որոշուի վարչապետի թեկնածու կարգել Բագրատ Արք. Գալստանեանին: Երբ Սրբազանին լրագրող մը հարցուց՝ թէ արդեօք կ'ընդունի՞ պաշտօնը, պատասխանեց՝ եթէ ժողովուրդը ուզէ, Աստուած կամենայ եւ Վեհափառը օրհնէ...:

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐ*Ի 61-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԼԻՄՈՆՃԵԱՆԻ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ


ՍԱՀԱԿ ՔՀՆՅ. ՇԱՔԱՐԵԱՆԻ
ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԷՆ
Է.

ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԼԻՄՈՆՃԵԱՆԻ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ՝ ՄԵՐԿԵՐ ՄԵԼԻՔԻ ԸՆԴՕՐԻՆԱԿՈՒԹԵԱՄԲ, ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԵԱՄԲ

Հրատարակութեան պատրաստեց՝
ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԿԱ. (61)

ԳԱՀԻՐԷ
2024

Լոյս տեսաւ Սահակ Քհնյ. Շաքարեանի երաժշտական ձեռագիրներուն վերջին հատորը՝ *Համբարձում Լիմոնճեանի աշխատութիւնները՝ Մերկեր Մելիքի ընդօրինակութեամբ, թարգմանութեամբ եւ ծանօթագրութեամբ*, Յաւելուած ԿԱ. (61), 305 էջ:

Մերկեր Մելիք այս կոթողային աշխատանքը կատարած է Գահիրէի մէջ՝ 1917-1920-ին: Ձեռագիրը կը բովանդակէ Համբարձում Լիմոնճեանի հայատառ թրքերէն տեսական աշխատութեան հայերէն թարգմանութիւնը (Լիմոնճեանի թրքերէն բնագիրը կորսուած է), ինչպէս նաեւ Լիմոնճեանի յօրինած հայերէն երգերուն բառերն ու նոթագրութիւնները:

Առաջին անգամ ըլլալով հրապարակ կու գան Լիմոնճեանի տեսական եւ յօրինողական աշխատութիւններուն ամբողջականութիւնը:

ԵԱՀԿ

## «ՄԵՆՔ Կ՚ԱՋԱԿՑԵՆՔ ՀԱՅԱՍՏԱՆԻՆ ՈՒ ԱԴՐԲԷՋԱՆԻՆ՝ ՀԱՄԱՊԱՐՓԱԿ ՈՒ ԿԱՅՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳՐԻՆ ՀԱՍՆԵԼՈՒ ՀԱՐՑՈՒՄ». ԵԱՀԿ ՆԱԽԱԳԱՀ

ԵԱՀԿ գործող նախագահ, Մալթայի արտաքին ու եւրոպական հարցերի եւ առեւտրի նախարար Եան Բորգը Մայիսի 13-ին ժամանել է Երեւան: Նախ առանձնազրոյց է ունեցել արտգործնախարար Արարատ Միրզոյեանի հետ, ապա կայացել նախարարների ընդլայնուած կազմով հանդիպումը:

«Մենք կ՚աջակցենք Հայաստանին ու Ադրբէջանին, որպէսզի կարողանանք համապարփակ ու կայուն խաղաղութեան համաձայնագրին հասնել», - յայտարարեց Եան Բորգը:

Բորգին հիւրընկալել է Հայաստանի Հանրապետութեան վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

Վարչապետը ողջունել է պարոն Բորգի այցը Հայաստան:

Ինչպէս տեղեկանում ենք Հայաստանի վարչապետի աշխատակազմի տարածած հաղորդագրութիւնից, Նիկոլ Փաշինեանը եւ Եան Բորգը քննարկել են Հայաստանի կառավարութեան եւ ԵԱՀԿ-ի միջեւ համագործակցութեանն առնչուող հարցեր, մտքեր փոխանակել Հարաւային Կովկասում տեղի ունեցող զարգացումների շուրջ: Վարչապետն անդրադարձել է Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ յարաբերութիւնների կարգաւորման գործընթացին:

Եան Բորգն ընդգծել է ԵԱՀԿ ողջ տարածաշրջանում կայուն խաղաղութեանը եւ հակամարտութիւնների կարգաւորմանն աջակցելու եւ խթանելու հարցում կազմակերպութեան յանձնառութիւնը, ԵԱՀԿ մանդատին համապատասխան կազմակերպութեան գործիքակազմի արդիւնաւէտ կիրառումը՝ ի նպաստ տարածաշրջանային կայունութեան ու անվտանգութեան ապահովման:

Քննարկուել են Հայաստանի եւ Մալթայի միջեւ բազմոլորտ համագործակցութեանը եւ կապերի յետագայ զարգացմանը վերաբերող հարցեր: Կարեւորուել է երկկողմ բարձր մակարդակի փոխայցելութիւնների կազմակերպումը:

2 ➩

## ԵՐԵՒԱՆՆ ՈՒ ԲԱՔՈՒՆ ՊԱՅՄԱՆԱՒՈՐՈՒԵԼ ԵՆ ՇԱՐՈՒՆԱԿԵԼ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Մայիսի սկզբին Արարատ Միրզոյեանը *Ալ-Ջազիրա*յին տուած հարցազրոյցում ասել էր, թէ Ալմա-Աթայի հռչակագրի հիման վրայ միմեանց տարածքային ամբողջականութեան ճանաչման հարցում Երեւանն ու Բաքուն դեռ համաձայնութիւն չունեն:

Մայիսի 10-ին Արարատ Միրզոյեանը յայտարարել էր, որ Հայաստանը պատրաստ է ոչ միայն խաղաղութեան պայմանագիր ստորագրել Ադրբէջանի հետ, այլեւ առաջ գնալ տրանսպորտային ուղիների ապաշրջափակման հարցում:

Ջէյհուն Բայրամովը յայտարարել էր, որ համատեղ ջանքերով արդէն աւարտին են հասցւում սահմանային սիւների տեղադրման աշխատանքները Տաւուշի հատուածում: Բայրամովի խօսքով՝ վերջին բանակցութիւններից յետոյ կարեւոր տարր է Ապրիլի 19-ին ստորագրուած արձանագրութիւնը, որով հայ - ադրբէջանական պետական սահմանի որոշակի հատուածի սահմանազատման գործընթացին սկիզբ դրուեց:

1 ➩

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԸ ՀԱՄԱՐԵՑ ՄԵԾ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

հատուածում, այլեւ ընդհանրապէս ամբողջ Հայաստան-Ադրբէջան սահմանի երկայնքով», - ասաց նա:

Խօսելով Բաղանիս - Ոսկեպար ճանապարհի մասին, ուրկէ՝ կ՚անցնի դէպի Վրաստան միջպետական ճանապարհը, վարչապետը ըսաւ՝ որ սահմանազատումի հետեւանքով ան պիտի ըլլայ Հայաստանի տարածքին մէջ:

Կիրանցի մէջ կը յառաջանայ ճանապարհի տեղափոխումի խնդիր, զոր կը նախատեսուի լուծել յառաջիկայ 2-3 ամիսներուն: Սահմանազատուած սահմանի երկայնքով շուտով պիտի տեղակայուին սահմանապահներ, Կիրանցի «առաւել զգայուն հատուածում» սահմանապահները պիտի տեղակայուին աւելի ուշ՝ «որոշ մանրամասների լրացուցիչ ճշգրտումից» յետոյ:

## ԵՐԲ ՓՈՔՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՄԻԱՆԱՅ ՄԵԾԻՆ

ԼԱՄԻԱԱ ԱԼՄԱՏԱԹԻ

Եգիպտոսի Ֆրանսական Հիմնարկը (Institut Français d'Egypte) կազմակերպեց Կազայի մասին լուսանկարչական ցուցահանդէս մը: Պաղեստինահայ Գեղամի (1915-1981) լուսանկարները շատ բան կը բացայայտեն արուեստագէտին եւ պաղեստինեան ներերկիրին (enclave) մասին:

Համակուիլ լուսանկարի մը հմայքով, ձգտիլ վերծանել սակաւ ծանօթ կամ անյայտ դէմքի մը խորհուրդը՝ ծածկազերծելու համար լքեալ կեանքի մը պահերը եւ ջնջուած կեանքի մը հետքերը: Այսպէս կը դատէ հանրութիւնը այցելելով Գեղամ Ճղալեանի լուսանկարներուն ցուցահանդէսը, կազմակերպութեամբ ԵՖՀ-ի եւ իր թոռան Գեղամի:

ԵՖՀ-ի մուտքին դրուած սեւ-ճերմակ հարիւրաւոր լուսանկարները հանրութեան կը մատուցանուին՝ կարծէք զանազան պատմութիւններ յիշատակելու համար: Բացառիկ հնարք մը՝ լուսանկարը կ՚որսայ պահեր, յիշատակներ եւ զգացումներ, մինչ հաղորդելով ձայնազուրկներուն պատմութիւնները, վաւերագրելով վտանգի եզրին գտնուող աւանդոյթները, կամ պատմութիւնը՝ զոր կը փորձենք ոչնչացնել կամ զեղծել:

Այսպէս, ցուցահանդէսը կը համախմբուի չորս նիւթերու շուրջ: Առաջին երկուքը՝ «Սթուտիօ» եւ «Կազայի պահը», կը գծագրեն Գեղամ Ճղալեանի նշանակալի դիմադրողականութիւն արտացոլող ուղին. փրկուած ըլլալով 1915-ի հայոց ցեղասպանութենէն, ան հաստատուած է Արեւելքի մէջ եւ որոշած հաստատուիլ Պաղեստին: Եւ Կազայի մէջ կը բանայ քաղաքի առաջին լուսանկարչական սթուտիոն՝ Photo Kegham: Այս նիւթին միջոցով կը բացայայտուի Գեղամի հասարակա-քաղաքական ներգրաւուածութիւնը եւ կը բիւրեղանայ իր յարաբերութիւնը Կազայի հետ: Կը ներառնէ տարբեր առիթներով քաշուած լուսանկարներ՝ քրիստոնեայ կամ իսլամ ամուսնութեան հանդիսութիւններ, դիմակահանդէս մը, հանդիպումներ Հասան Ալ-Պաննայի եւ երիտասարդներու խումբի միջեւ:

Երրորդ նիւթը՝ «Ընտանեկան ալպոմ», կը քաղէ ընտանեկան արմատներէն, միաժամանակ լուսարձակի տակ դնելով 20-րդ դարու կէսերու Կազայի ընկերա-աշխարհագրական բովանդակութիւնը: Ընտանեկան հաւաքոյթներու լուսանկարներն ու բացօթեայ շրջագայութիւնները կը վերագծեն Գեղամի ընկերական եւ ընտանեկան տարողութիւնը:

Չորրորդ առանցքն է «Զում զանգ»-ը, որ 2021-ին տեղի ունեցած է կրտսեր Գեղամի եւ լուսանկարչային արխիւիսթ Մարուան Ալ-Թարազիի միջեւ՝ Գահիրէ եւ Կազա: Ալ-Թարազիի մօտ գտնուող լուսանկարներուն վերարտադրութիւնը առանձնապատկերներու (սքրինշոթերու) միջոցով, կը բացայայտէ Գեղամի արխիւներուն հասնելու դժուարութիւնը: Իրականութեան մէջ, ասոնք պիտի հանդիսանային միակ հետքերը հաւաքածոյի մը՝ որ երբեւէ անհետացաւ Ալ-Թարազիի եւ իր ամբողջ ընտանիքի սպանութեամբ իսրայէլական ուժերուն կողմէ 2023 Հոկտեմբերին:

**Մանրամասնութիւններու բազմազանութիւն**

Առանձնապէս հետաքրքրական են նկարներուն ընկերաբանական եւ պատմական կողմերը, քանզի մանրամասնութիւններու բազմազանութեան ընդմէջէն կը բացայայտեն մարդոց այդ ժամանակուայ ապրելակերպը՝ լուսանկարուելու համար ընտրուած վայրը, ընտանիքի աւագի կամ ամբողջ ընտանիքի պատկերը, կազացիներուն զգեստները, եւլն.: Շատ տեսանելի են նաեւ ընկերային դասակարգումները: Իրականութեան մէջ այս նկարները կը կրեն բազմաթիւ ցուցիչներ, որոնք, 1940-ականներէն սկսեալ, ցոյց կու տան տեսարանի զարգացումները, օրինակ՝ գաղթականներու ճամբարներուն առաջին լուսանկարները, երկաթգիծերը Գահիրէի եւ Կազայի միջեւ՝ որոնք այլեւս գոյութիւն չունին, ապրելակերպը եւ ընկերային սովորութիւնները՝ յատկապէս սգոյ արարողութիւնները, ամուսնական տօնախմբութիւնները… Ասոնցմէ զատ, ցուցադրուած են նաեւ արուեստագէտին գործածած լուսանկարչութեան գործիքները, հին լուսանկարչական սարքերը եւ նեկաթիֆները: Ցուցադրութեան կ՚ընկերանայ ձայնագրեալ պատկերագրութիւն մը՝ որ կը հաւաքէ Գեղամին ծանօթ մարդոց վկայութիւնները: Զանոնք ձայնագրած է իր թոռը 2021-ին:



Գեղամ Ճղալեանի լուսանկարչական սթուտիոն Կազայի մէջ:

Գեղարուեստական ղեկավար եւ տեսողական արուեստներու փրոֆեսոր, Գեղամի թոռը միշտ հետաքրքրուած է լուսանկարչութեամբ: 2006-ին մշակեց ուսումնական շրջանաւարտութեան ծրագիրը Երուսաղէմի եւ Բեթղեհէմի լուսանկարչութեան մասին, մանաւանդ որ իր մայրը պաղեստինուհի է: Ասկէ զատ, միայն 2018-ին է որ բացաւ Գեղամ մեծհօրմէ ժառանգած երեք կարմիր տուփերը, ուր ամփոփուած են մօտ հազար լուսանկարներու նեկաթիֆներ: Եւ այսպէս սկսաւ իր մեծհօր իսկական յայտնագործումը՝ որուն երբեք չէ հանդիպած եւ որուն ճանչցած է ընդամէնը այստեղ-այնտեղ տարածուած պատմութեան փշրանքներուն միջոցով:

Ի՞նչ չափանիշով ընտրած է ցուցադրուած լուսանկարները: «Անշուշտ գեղագիտական կողմը ունի իր կարեւորութիւնը, քանի որ խօսքը ցուցահանդէսի մասին է: Բայց նաեւ մօտեցումն է որ իր ազդեցութիւնը ունեցաւ: Ընտրեցի աւելի տիպաբանական մօտեցում քան ժամանակագրական, վերախմբաւորելով շարք մը լուսանկարներ՝ որոնք կը թուին նկարուած ըլլալ նոյն բնաբանին մէջ, կամ մերձաւոր բնաբաններու մէջ՝ մէկ պատում մը վերականգնելու նպատակով», կը բացատրէ Գեղամ, որ նախընտրեց լուսանկարներուն կցել ոչ թուական եւ ոչ ճշգրտութիւն: Երկիմաստութիւն մը՝ սնուցանուած զգացական եւ կարօտաբաղձային լիցքով: «Ուրեմն հարցը կը վերաբերի մարդկային առճակատումին լուսանկարներուն հետ, խոկումի՝ ընդհատուած պատմութեան մասին, եւ անաւարտ արխիւի՝ որքան ժամանակ որ ան կը մնայ չդասաւորուած», կ՚ընդգծէ ան, հաստատելով որ իր մեծհօր տեսապակիի մէջէն է որ յայտնաբերեց Կազան: «Իմ հետազօտութիւններուս կեդրոնը կը գտնուի Գեղա-

➩ 4

# ՔԱՂԱԿԻՐ

## 3 ԵՐԲ ՓՈՔՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՄԻԱՆԱՅ ՄԵԾԻՆ

մը, մարդ՝ որ կանգնած է տեսապակիի, իր լուսանկարչական ժառանգութեան եւ իր պատմութեան եռեւ», կ'ըսէ ան: Եւ այսպէս է որ ի յայտ կու գայ Կազայի պատմութիւնը՝ Գեղամի անձնական պատմութեան եռեւ, իւրայատուկ պատմութիւն մը՝ որ կը դիմադրէ փճացումը, ժամանակը եւ մոռացութիւնը: Այս պատճառով ան չուզեց կարգ մը վնասուած լուսանկարներու վրայէն ջնջել ժամանակի ազդեցութիւնը, կարծես ըսելու համար՝ թէ ժամանակը կը թողու իր հետքերը, բայց միշտ այնտեղ է լուսանկարը: «Իբրեւ լուսանկարիչ, Գեղամ կը յաւակնէր ոչ միայն իր թեքնիքով այլեւ մարդկային տարողութեամբ, իր կապով Կազայի հետ եւ հեռանկարով անոր հանդէպ, հակառակ իր հայ ըլլալուն»:

Բացի պատմական փաստաթուղթ ըլլալէ, լուսանկարչութիւնը կը մնայ փաստագրութեան միջոց մը: Եւ Գեղամին լուսանկարները պարզ պատկերներ չեն: Աւելի են: Պատկերին ետեւը կը գտնուի նաեւ այս երեւակայականը՝ որ կը վերականգնէ պակասը, բացական, ընդհատուած պատմութիւնը պաղեստինցիներուն եւ հայերուն:

(Ցուցահանդէսը կայացաւ 26 Ապրիլ – 12 Մայիսին, Եգիպտոսի Ֆրանսական Հիմնարկ, Մունիրա, Մատրասաթ Ալ-Հոքուք Ալ-Ֆրենսէյա:)

***Al-Ahram Hebdo***

8-14 Մայիս 2024, էջ 24

*Ֆրանսերէնէ թարգմանեց՝ Հ. Ա.*

## 2 ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

հիասքանչութիւնը:

4. Եգիպտահայութիւնը պէտք ունէր դուրս գալ իր ինքնաբաւ ներկուսակցական միջավայրէն եւ ունկնդիր ըլլալ իրմէ դուրս գտնուող սիրուած դէմքի մը ազդեցիկ խօսքին:

**ՅԵՏԳՐՈՒԹԻՒՆ**

Կարելի՞ է այսօր անհատ մը եգիպտահայութեան մէջ ստեղծէ նոյն խանդավառութիւնը՝ ինչ Կապուտիկեանը: Պատասխանը միանշանակօրէն՝ ո՛չ: Պատճա՞ռ: Նուաղումը կարելի համայնքայնութեան, որ գլխաւոր միջոցն է կազմաւորելու հաւաքականութիւնը եւ բարձրացնելու ենթակայի մասնակցողական արժէքը: Առանց հաւաքականութեան, առանց հաւաքականութեան անդամներէն իւրաքանչիւրի գիտակցութեան իր սեփական ինքնարժէքին, չկայ հաւաքական խանդավառութիւն: Այս բոլորը կայի՞ն 1963-ին: Առ նուազն կային զանոնք ի պէտս կեանքի կոչելու կարելիութիւնները:

(Վերջ 8)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

72. «Քարաւանները դեռ քայլում են (հատուածներ Սիլվա Կապուտիկեանի արտասահմանեան ուղեգրութենէն)», *Արեւ*, 14 Մայիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.118:

73. «Ս. Կապուտիկեանի խօսքը (խօսուած Համազգայինի ընդունելութեան առիթով)», *Յուսաբեր*, 13 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 288:

74. Խորէն Տէտէեան, «Սիլվան եւ մենք», *Արարս*, 9 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 9 (1779):

75. «Մտորումներ ճանապարհի կէսին (հատուածներ)», *Յուսաբեր*, 14 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 289. 15 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 290:

76. Հրաչ Գալըճեան, «Սիլվայի մեկնումէն ետք խորհրդածութիւններ...», *Արարս*, 9 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 9 (1779):

77. Միքայէլ Ս. Կիւրճեան, «Սիլվա Կապուտիկեան (տպաւորութիւններ)», *Արեւ*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.455:

78. Հրաչ Գալըճեան, «Սիլվայի մեկնումէն ետք խորհրդածութիւններ...», *Արարս*, 9 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 9 (1779):

79. *Արեւ*, 9 Մարտ 1963, ԽԸ. տարի, թիւ 13.455:

80. Անդ:

81. *Սասառնակ*, 9 Մարտ 1963, 49-րդ տարի, թիւ 9:

82. *Արարս*, 9 Մարտ 1963, ԼԸ. տարի, թիւ 9 (1779):

83. *Սասառնակ*, 16 Մարտ 1963, 49-րդ տարի, թիւ 10:

## 1 ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐՈՒ ԱՄԵՆԱՇԱՏ ԳՈՐԾԱԾՈՒՈՂ ԵՒ ՇԱՀԱԳՈՐԾՈՒՈՂ ԲԱՌԸ՝...

Սիւնիքի (Ապրիլ 5-6), ապա Խոզնավարի, Արաւուսի եւ Սոթքի հայկական դիրքերուն ուղղութեամբ (Ապրիլ 6-7): Անկարելի է հաւատալ որ կրակոցները կատարուած ըլլան առանց Ռուսաստանի ուղղակի դրդումով:

Նկատի առնելով այս բոլորը, այսինքն՝ Ապրիլ 5-ի եւ 19-ի մերձաւոր ժամկէտները, Արեւմտեան արձագանգները՝ որոնք չէին կրնար հնչել առանց նպատակի, Ռուսաստան-Ազրպէյճան միանման պոռթկումները, Ռուսաստանի հովանաւորութեամբ Ազրպէյճանի կրակոցները, կարելի է դիւրութեամբ հետեւցնել՝ որ Ալմա-Աթայի նկատմամբ Ապրիլ 19-ի ազրպէյճանական համաձայնութիւնը եղած է Հայաստան-ԵՄ-ԱՄՆ բանակցութիւններուն շնորհիւ, ԵՄ-ԱՄՆ մասնակի ճնշումի մը արդիւնքով Ազրպէյճանի վրայ:

Մոսկուան դժգոհ է: Մայիս 7-ին Ռուսաստանի ցկեանս նախագահ Վլատիմիր Փութինի երդմնակալութեան օրն է: Փաշինեան հրաւէր չունի ներկայ գտնուելու համար: Եթէ ունենար՝ վստահաբար ներկայ պիտի չգտնուէր: Մայիս 8-ին ԵԱՏՄ խորհուրդի յաջորդական նիստ-գագաթնաժողովն է Քրեմլինի մէջ, որուն ներկայ կը գտնուի եւ կը նախագահէ Նիկոլ Փաշինեան: Այս բոլորը կարեւոր չեն: Կարեւորը, գագաթնաժողովէն ետք, Փութինի հրաւէրով տեղի կ'ունենայ իր եւ Փաշինեանի առանձին հանդիպումը, որ կը տեւէ աւելի քան մէկ ժամ: Լրատուական պաշտօնական յայտարարութիւնները կ'ըլլան դրական եւ լաւատեսական բայց խորքին մէջ բան մը չըսող: Առանձին հանդիպումի մասին ոչ մէկ տեղեկութիւն կը սփռուի: Հանդիպումին բուն բովանդակութիւնը մեզի համար պիտի մնայ անյայտ, բացի եթէ Փաշինեան իր վարչապետական շրջանը լրացնելէ ետք որոշէ օր մը խօսիլ կամ գրել անոր մասին: Բայց Փութինի հրաւէրով յատուկ հանդիպումի դէպքն ինքնին շատ բան մտածել կրնայ տալ: Վերջապէս, Ապրիլ 19-ի համաձայնութեամբ դուրս մնացած է Ռուսաստանը, իր դերակատարութիւնը զիջելով Արեւմուտքին:

Ապրիլ 19-ը պահի մը արտայայտութիւնն է: Յաջողութիւն մըն է Հայաստանի համար, միայն տուեալ պահի տրամաբանութեան մէջ: Տակաւին շատ երկար ճամբայ կայ անցնելիք, համակ անորոշութիւններով եւ հաւանական նոր բախումներով: Խօսքը 1000 քիլոմեթր սահմանազատում-սահմանագծումի մասին է, 2021 եւ 2022 թուականներուն Հայաստանի սահմաններէն ներս բռնագրաւեալ հողերու մասին է, եւլն., եւլն., միջավայրի մը մէջ, ուր Ռուսաստան ամենամեծ օգտուողն է հակամարտային կացութեան շարունակութենէն, քանի որ ասիկա միակ միջոցն է ապահովելու իր ցաքրիկ ներկայութիւնը Հարաւային Կովկասի մէջ: Ապրիլ 19-ը Արեւմուտք-Ռուսաստան պայքարի նշանագիծ մըն էր՝ պատ-սահմանի իրական թէ երեւակայական հովանիին տակ: Ապրիլ 19-ը նաեւ Հայաստան-Արեւմուտք դիւանագիտութեան արգասիքն էր:

Ալմա-Աթայի սկզբունքէն զատ, իբրեւ գործընթացի գործնական սկիզբ՝ ի՞նչ համաձայնութիւն կնքուեցաւ Ապրիլ 19-ին: Կը համաձայնին սահմանագծել Տաւուշի շրջանին յարակից չորս գիւղերը՝ Հայաստանի Բաղանիս – Ազրպէյճանի Բաղանիս-Այրում, Հայաստանի Ոսկեպար – Ազրպէյճանի Աշաղը Ասկիպարա, Հայաստանի Կիրանց – Ազրպէյճանի Խեյրմլի, Հայաստանի Բերքաբեր – Ազրպէյճանի Կըզըլ Հաջիլի:

Փաստօրէն, Հայաստանը Ազրպէյճանին կը վերադարձնէ յիշեալ չորս ազերիական գիւղերը: Ազրպէյճան իր ներքին լսարանին համար ասիկա կը ներկայացնէ իբրեւ իր յաջորդական յաղթանակներէն մէկը, երբ Արտաքին Գործոց Նախարարութեան խօսնակի մակարդակով կը յայտարարէ. «Հայաստան համաձայնեցաւ վերադարձնել ազրպէյճանական չորս գիւղերը, զորս գրաւած էր 1990-ականներուն սկիզբը»:

Ի դէպ, այս ազերիաբնակ գիւղերը այսօր անմարդաբնակ աւերակներ են, Հայաստան զանոնք գրաւած էր ապահովութեան նկատառումներով:

Վարչապետ Նիկոլ Փաշինեան կը յայտարարէ, թէ այս չորս գիւղերը՝ Բաղանիս Այրում, Աշաղը Ասքիփարա, Խեյրիմլի եւ Կըզըլ-Հաջիլ, տէ իւրէ Հայաստանի տարածքին մէջ չեն գտնուիր՝ ըստ Ալմա-Աթայի հռչակագիրին:

Յետոյ վարչապետի աշխատակազմը նրբութիւն մը կ'աւելցնէ. «Ադրբէջանը ստանում է իրեն պատկանող երկուսուկէս գիւղ, որովհետեւ Կըզլ Հաջըլի գիւղի տարածքն ամբողջութեամբ, Աշաղը Ասկիպարա գիւղի տարածքի մի զգալի մասը մինչ այս էլ եղել է Ադրբէջանի տիրապետութեան ներքոյ»:

Սահմանագծումի ընթացքը սկսած է, որմէ ետք, տուեալ տարածութեան վրայ, երկու կողմերուն բանակները պիտի վերանան եւ փոխարինուին սահմանապահներով: Այսինքն, պիտի վերանայ մարտական դրութիւնը այնտեղ, բան մը՝ որուն կը տենչար Հայաստան: Մայիս 18-ին, հայկական առաջին սահմանապահները եկած են Կիրանց:

Հաղորդավար Պետրոս Ղազարեան իր Ֆէյսպուքի էջին վրայ (Մայիս 15) կը յիշեցնէ, որ 2014 թուականի աշխարհագրութեան դասագիրքին մէջ դպրոցականներուն կը սորվեցնեն՝ որ Հայաստանը 29,743 քառակուսի քիլոմեթր է, որուն մէջ չկան չորս (կամ երկու ու կէս) գիւղերը, ճիշդ այն թիւը՝ զոր կը ներկայացնէ վարչապետը այսօր: Անշուշտ, ասիկա միակ թիւը չէ, Սփիւռքի եւ Հայաստանի դասագիրքերու մէջ նշուած են թէ՛ աւելին եւ թէ պակասը: Բայց տուեալ պարագան, ներկայ պայմաններուն մէջ, կարեւոր բան մը ունի ըսելիք:

Կատարուածը լոկ փոքր ու նախնական քայլ մըն է դէպի ենթադրեալ խաղաղութեան համաձայնագիրի մը յետագայ ստորագրութիւնը, խաղաղութիւն մը՝ որ տակաւին շատ հեռու է տեսանելի ըլլալէ: Տակաւին շատ խնդիրներ կան: Ճիշդ նոյն Ալմա-Աթայի հիմքով, Ազրպէյճանը շուրջ 200 քառակուսի մեթր գրաւեալ տարածք ունի Հայաստանէն ներկայ սահմանազատումի վայրէն դուրս: Անկէ պիտի քաշուի՞ կամաւոր: Մենք Աղդամը կամաւոր տուի՞նք Ազրպէյճանին:

Յայտնի չէ՝ թէ ԵՄ-ԱՄՆ յետագային ինչ միջոցներ կրնան ձեռնարկել Ազրպէյճանին մղելու ընդունիլ համաձայնութեան վերջնագիրը, թէ ուր կը վերջանան Արեւմուտքին շահերը, եւ յայտնի չէ թէ ինչ դեր պիտի յաջողի խաղալ Ռուսաստանը, պիտի ըսէի, հարցը ձախողեցնելու, կամ գոնէ մինչեւ վերջ չտանելու առումով:

Ամէն բան սահմանի համար: Ոչ թէ մարդկային բնազդին բնորոշ ազատ սահմանի համար, քանի որ մարդկային մտաւոր-հոգեւոր ազատագրութեան համար ոչ ոք կը պայքարի, այլ պատ-սահմանի համար: Եւ այս տեսակ սահմանի անունով երկու ներհայկական չհանդիպող պատումներ, մէկ կողմէ՝ հայրենիք, հայրենասիրութիւն, դաւաճան, փրկիչ, միայն մենք եւ վերջ, միւս կողմէ՝ կոչ ոէալ փոլիթիքի, արտաքին բանակցութիւններու, դիւանագիտական կողմնորոշումներու, քաղաքական ճկունութեան:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1967 ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ՅՈՒՆԻՍ 2024 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. — عدد رقم ١٩٦٧ الخميس ٦ يونيه ٢٠٢٤


## ՀԵՏԵՒԵԼՈՎ ՖՈԼՔ-ՌՈՔ ՀՈՍԱՆՔԻՆ. ՀԱՅ ԵՐԱԺԻՇՏՆԵՐՈՒ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ ՄԸ ԿԸ ԿՈՂՄՆՈՐՈՇԷ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԻՒՆԸ, ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՊԱՀՊԱՆՈՒԹԻՒՆԸ

ԱՐՓԻՆԷ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

Երեւանի կեդրոնը գտնուող Թոնլաբ սթուտիոյի պատանի երաժիշտներու խումբը կը գտնուի ձայնագրութեան տաղաւարին մէջ: Սթուտիոյի մէջէն կ'արձագանգէ թմբուկներուն ուժեղ բախիւնը, որուն խոր եւ հնչեղ երանգին թրթռումները կենսուժով կը համակեն սենեակը:

«Տղաքը խորապէս ոգեւորուած են ձայնագրելու իրենց առաջին երգը՝ նախքան երկամեայ պարտադիր զինուորական ծառայութեան մեկնիլը», - կը բացատրէ սթուտիոյի համահիմնադիր եւ Ռոզէն Թալ (Rozen Tal) հայկական յառաջդիմական ռոք (progressive rock) խումբի թմբկահար Նարեկ Թովմասեան:

Հայաստանի մէջ 18-27 տարեկան տղոց համար պարտադիր է երկամեայ զինուորական ծառայութիւնը: 1990-ականներէն ի վեր կռուած ըլլալով երկու պատերազմներ դրացի Ազրպէյճանի հետ, նոր կռիւի մը վտանգը անընդհատ կը նշմարուի երկիրին մէջ, յատկապէս անցեալ Սեպտեմբերէն սկսեալ՝ երբ Պաքուի ուժերը վերագրաւեցին Լեռնային Ղարաբաղը, միջազգայինօրէն Ազրպէյճանի մաս ճանաչուած խնդրայարոյց ներերկիր (enclave) մը, հրահիրելով աւելի քան 100 հազար էթնիք հայերու ելքը տեղամասէն:

Բայց եւ այնպէս, ինչպէս կ'արտացոլէ Թոնլաբի տրամադրութիւնը, Հայաստանի երիտասարդ սերունդին ստեղծագործական ոգին կը մնայ բարձր: Սթուտիոն՝ որ Ապրիլ 6-ին նշեց իր բացումի մէկ տարին, ստեղծագործական կեդրոն մը դարձաւ բազմաթիւ երիտասարդ երաժիշտներու համար՝ հիւրընկալելով նուագահանդէսներ, ձայնագրելով նոր երաժշտութիւն եւ կազմակերպելով բարեսիրական ձեռնարկներ Լեռնային Ղարաբաղէն տեղափոխուած մարդոց համար:

32-ամեայ Նարեկը երաժշտութեան ուսուցիչ է Երեւանի դպրոցի մը մէջ: Ան կ'ըսէ՝ թէ մեծ տարբերութիւն նկատած է իր աշակերտներուն եւ իր սերունդի երաժիշտներուն միջեւ: «Այս նոր սերունդը չէ ապրած յետխորհրդային շրջանը՝ նոյն ուժգնութեամբ ինչ մենք: Իրենց մատչելի եղած է նոր գրականութիւնն ու երաժշտութիւնը: Իրենց յօրինած երգերը կը գերազանցեն նոյն տարիքի մեր բոլոր յօրինումները», հպարտութեամբ կ'ըսէ ան:

Ռոզէն Թալի առաջնորդ երգիչ եւ կիթառահար Արմէն Եղիզարեան համաձայն է այս կարծիքին, աւելցնելով՝ որ կ'երազէ տեսնել հայկական այլընտրանքային երաժըշտութեան նուաճումը համաշխարհային ժողովրդականութիւն: «Նոր սերունդը հրաշալի է: Հայկական երաժըշտութիւնը կը զարգանայ, եւ շատ հետաքրքրական է տեսնել թէ ուր պիտի երթայ»:

**Քայլ ընել**

Կազմուած 2015-ին, իր առաջին տարիներուն Ռոզէն Թալ տաժանելի պայքար մղեց: Ըստ Արմէնին, տեղական երաժշտական արդիւնաբերութիւնը կը տառապէր աղբիւրներու եւ մասնագէտներու պակասէն, յատկապէս երբ կարգը կու գար արտադրութեան: Առաւել եւս, բաւական վհատեցուցիչ էր ռոք երաժշտութեան նկատմամբ եղած քննադատական ընդունելութիւնը:

Թէ՛ Արմէն եւ թէ Ռոզէն Թալի պասիսթ Յարութիւն Ասրեան կու գան Հայաստանի երկրորդ մեծ քաղաքէն՝ Գիւմրիէն: Իբրեւ անձկացող երիտասարդ ռոք երաժիշտներ՝ երկար մազով եւ նորաձեւութեան յատուկ զգացողութեամբ, անոնք ընդունուեցան թերահաւատութեամբ եւ նոյնիսկ մարմնական դիմադրութեամբ, փողոցի կատարումները երբեմն յանգելով բռնձքամարտի: Այսօր, անոնք ծիծաղով կը նային անցեալի այդ մարտահրաւէրներուն, բացատրելով հայ հասարակութեան աւանդական միտումը ռոք երաժիշտները պիտակաւորելու «ոչ-քրիստոնեայ» եւ «անբարոյական», մօտեցում մը՝ զոր կը վերագրեն սեռի հետ ունեցած ծանօթութեան պակասի: (Ըստ երաժիշտներուն, կացութիւնը աստիճանաբար կը բարելաւուի քանի որ կը զարգանան ռոք երաժշտութեան ընկալումները):

Գիւմրին եւս դրականօրէն ազդեց խումբին վրայ, քանի որ ան հանդիսացած է Հայաստանի ամենահռչակաւոր ռոք խումբերէն մէկուն՝ Բամբիռի հայրենի քաղաքը: Հիմնուած 1970-ականներուն, Բամբիռ գործած է աւելի քան 40 տարիներ եւ ընդգրկած սերունդներ. հիմնադիր անդամներուն որդիները այսօր մաս կը կազմեն խումբին: Խումբին անդամները ոչ միայն ներշնչեցին, այլ նաեւ դաստիարակեցին Ռոզէն Թալը, ուղղելով եռանուագի երաժշտական ճանապարհը:

Նմանապէս, Ռոզէն Թալ ստանձնեց հայ երաժիշտներու յաջորդ սերունդը դաստիարակելու պարտականութիւնը, անոնց տրամադրելով Թոնլաբի ստեղծագործական տարածութիւնը, որ շատերու համար դարձաւ պատսպարան:

Սթուտիոյի մէջ ձայնագրող պատանիներուն նման, Ռոզէն Թալի անդամները եւս իրենց ասպարէզի սկիզբը մեկնեցան պարտադիր զինուորական ծառայութեան: 2017-ին, երբ Արմէն կը ծառայէր Լեռնային Ղարաբաղի մէջ, խումբը հրաւիրուեցաւ նուագելու Ծաղկաձոր հանգստեան քաղաքի Էպիկ ռոք փառատօնին: Իր նկարագրութեամբ «պատմական» որոշումով, բանակի հրամանատարութիւնը արտօնեց Արմէնին մեկնիլ փառատօնին մասնակցելու համար, Հայկական Ռոք Ընկերակցութենէն նամակ մը ստանալէ ետք: «Երկու օրուայ մէջ քշեցինք 10 ժամ երթալ-գալ, բայց փառատօնին մաս կազմելը եղաւ իմ կեանքիս ամենէն անմոռանալի փորձառութիւններէն մէկը», կը վերյիշէ Արմէն աչքերը շողշողացնելով:

2018-ի Թաւշեայ Յեղափոխութիւնը շրջադարձային եղաւ խումբին համար: Հակակառավարական ցոյցերը, ղեկավարութեամբ ընդդիմադիր քաղաքական գործիչ Նիկոլ Փաշինեանի, ստիպեցին վարչապետ Սերժ Սարգսեանին հրաժարիլ: Ատկէ ի վեր իշխանութեան գլուխ եկան Փաշինեան եւ իր Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութիւնը:

Ընդդիմադիր ցուցարարներուն գերակշիռ մասը աշակերտներ եւ երիտասարդ չափահասներ էին: Յեղափոխութեան ընթացքին ժամանակակից, այլընտրանքային երաժշտութիւնը եւս դեր խաղաց: Որդան Կարմիր հայկական այլընտրանքային մեթալ խումբը ներշնչեց յեղափոխութեան ամենէն ժողովրդական կարգախօսը՝ «Քայլ արա, մերժիր Սերժին»: Ռոք, ճազ եւ ելեկտրոնական երաժշտութիւնը լեցուցին փակուած պողոտաներն ու փողոցները: Յեղափոխութեան գլխաւոր դէմքերէն մէկը՝ քաղաքի աւագանիի անդամ դարձած տիճէյ Էդուարդ Աղաջանեան, յետագային դարձաւ Ազգային Ժողովի պատգամաւոր:

Թաւշեայ Յեղափոխութեան ոգին յոյս ներշնչեց Ռոզէն Թալի անդամներուն՝ թէ նոր կառավարութիւնը պիտի քաջալերէ Հայաստանի այլընտրանքային երաժշտական տեսարանը: Նարեկ կը յիշէ յեղափոխութեան առաջին տարեդարձը իբրեւ նոր երաժշտութեամբ յատկանշուող տօնակատարութիւն, խոստմնալից ֆոլք, ռոք եւ ճազ խումբերով՝ որոնք կու գային փոխարինել հին փոփ արուեստագէտները: «Դժբախտաբար, ինչպէս աւելի ուշ տեսանք, շարժումը չշարունակուեցաւ: Միակ տարին էր երբ հրաւիրուեցանք նուագելու նման մեծ իրադարձութեան», հառաչեց ան:

Այսուհանդերձ, երաժիշտները կ'ըսեն թէ այս շրջանը վճռորոշ եղաւ ընդլայնելու իրենց ունկնդիրները: Օրինակ, յեղափոխութեան տարեդարձին, երբ Ռոզէն Թալ կը նուագէ Արմաւիր փոքր քաղաքին մէջ, խումբը հեգնելու համար յատուկ եկած որոշ երիտասարդներ կը համակւին կատարուածով եւ վերջապէս կը սկսին պարել:

↳ 4



## ՄԻՐԶՈՅԵԱՆԸ ԵՒ ԲՈՐԷԼԸ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ՀԱՅԱՍՏԱՆ-ԵՄ ԳՈՐԾԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՆՈՐ ՕՐԱԿԱՐԳԻ ԿԵԱՆՔԻ ԿՈՉՄԱՆ ՔԱՅԼԵՐԸ

Մայիսի 25-ին հեռախօսազրոյց է կայացել Հայաստանի արտգործնախարար Արարատ Միրզոյեանի եւ Եւրոպական Յանձնաժողովի փոխնախագահ, Եւրամիութեան Արտաքին Գործերի ու Անվտանգութեան Քաղաքականութեան հարցերով բարձր ներկայացուցիչ Ժոզէպ Բորէլի հետ:

Հայաստանի արտգործնախարարութեան լրատուականի փոխանցմամբ՝ զրուցակիցները քննարկել են հարցերի լայն շրջանակ:

Հայաստանի եւ Եւրոպական Միութեան միջեւ խորացող գործընկերութեան համատեքստում երկուստեք ընդգծուել է թէ՛ արդէն իսկ ձեւաւորուած համագործակցութեան ծրագրերի իրականացման, թէ՛ լրացուցիչ ուղղութիւններով նոր հանգրուանի հասնելու կարեւորութիւնը: Այս համատեքստում անդրադարձ է կատարուել Ապրիլի 5-ի բրիւսէլեան հանդիպման արդիւնքներով մշակուած «Հայաստանի դիմակայունութեան եւ աճի» ԵՄ ծրագրին, ինչպէս նաեւ առաջիկայում Հայաստան-ԵՄ գործընկերութեան նոր օրակարգի կեանքի կոչման ուղղութեամբ իրականացուող քայլերին:

Միրզոյեանն ընդգծել է նաեւ Հայաստան-ԵՄ մուտքի արտօնագրերի ազատականացման շուրջ երկխօսութեան մեկնարկի վերաբերեալ վերջնական որոշման կայացման կարեւորութիւնը:

Անդրադարձ է կատարուել օրակարգի առաջիկայ միջոցառումներին եւ անելիքներին:

Միրզոյեանը եւ Բորէլը մտքեր են փոխանակել տարածաշրջանային հարցերի շուրջ: Նախարար Միրզոյեանը ներկայացրել է Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ յարաբերութիւնների կարգաւորման գործըն-

↳ 4

## ԲԱՂԱՆԻՍ, ՈՍԿԵՊԱՐ, ԿԻՐԱՆՑ, ԲԵՐՔԱԲԵՐ ԳԻՒՂԵՐԻ 16 ՄԼՆ ԴՐԱՄ ԾՐԱԳՐԻ ՇԱՀԱՌՈՒՆԵՐԻՆ ԿԸ ՅԱՏԿԱՑՈՒԻ ԵՒՍ 5 ՄԼՆ ԴՐԱՄ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը Մայիսի 25-ին այցելել է Տաւուշի մարզ: Վարչապետը նախ եղել է Ոսկեպարի Սուրբ Աստուածածին եկեղեցում, որից յետոյ պատասխանատուները տեղում ներկայացրել են սահմանազատումից յետոյ ԱԱԾ Սահմանապահ Ծառայութեան ծառայողների տեղակայման աշխատանքների ընթացքը:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ յաջորդիւ Նիկոլ Փաշինեանն այցելել է Բաղանիսի հատուածում տեղակայուած Ազգային Անվըտանգութեան ծառայութեան Սահմանապահ ուղեկալ, ծանօթացել ծառայութեան ընթացքին եւ ուղեկալում առկայ պայմաններին: Նշուել է, որ ուղեկալը ժամանակաւոր կառոյցում է տեղակայուել, առաջիկայում նախատեսւում է կառուցել ուղեկալի նոր շէնք:

Այնուհետեւ վարչապետը եղել է Կիրանցում կառուցուող նոր դպրոցում, ծանօթացել շինաշխատանքների ընթացքին, որից յետոյ զրուցել բնակիչների հետ:

↳ 4

# ՊԱՐՈՅՐ ԱՐՄԷՆԵԱՆ
## Եգիպտահայ դաշնակահարը՝ որ ասուպի պէս եկաւ ու անցաւ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

1930 Յունիսին էր, երբ Լիպարիտ Նազարեանցի ուշադրութիւնը կը գրաւէր պատանի դաշնակահար մը՝ Պարոյր Արմէնեան:

Քոնթինանթալ պանդոկին մէջ Նազարեանց ներկայ կը գտնուի եգիպտաբնակ իտալացի ծանօթ դաշնակահար եւ մանկավարժ Էթթորէ Փուլյիզիի (Ettore Puglisi) աշակերտներուն տարեկան ունկնդրութեան: 14 նուագողներէն 7-ը հայ են, կը տեղեկացնէ Նազարեանց, եւ իր քննախօսականին մէջ կ'անդրադառնայ անոնցմէ երեքին՝ Անժէլ Գարաքըզեան, Պարոյր Արմէնեան եւ Մարի Աճէմեան:

Արմէնեան կը նուագէ Շուպերթի լա պեմոլ մաժոր Էմփրոմթիւ (երկ 90, թիւ 4). «Ապա Պարոյր Արմէնեան: Հարիւր տարի է ի վեր գրեթէ ամէն օր նուագուող կտոր մըն էր ընտրած ան (կամ իր ուսուցիչը). Շուբերդի Impromptu-ներէն մին (as-dur). դժուարին, սիրուն, բայց արդէն ջախջախուած այն աստիճան, որ մարդ յաճախ կը դժուարանայ առարկայօրէն դատել նուագողի մասին: Բայց Արմէնեան կրցաւ մասամբ մոռցնել այդ պարագան: Հնչեղ ու գեղեցիկ *թօն*ը, յստակ թեքնիքը եւ գիտակից երանգաւորումը գրաւական են որ վարպետ դասատուի մը ղեկավարութեամբ տաղանդաւոր պատանին կրնայ լաւ երաժիշտ դառնալ»(1):

Կ'անցնի մէկ տարի՝ 1931 Մայիս 17, Քոնթինանթալ պանդոկ, դարձեալ Փուլյիզիի աշակերտներու ունկնդրութիւն: 15 աշակերտներէն 9-ը հայ են, 9 հայ աշակերտներէն 8-ը՝ օրիորդ, մէկը՝ տղայ, Պարոյր Արմէնեան, որ կը նուագէ երեք կտորներ.

1. Վեպէր՝ Ռոնտօ տօ մաժոր (Սոնաթ թիւ 1, չորրորդ մաս):

2. Պրամս՝ Էթիւտ թիւ 2, Վեպէրի տօ մաժոր Ռոնտոյի հիման վրայ:

3. Մենտելսոն՝ *Վարիասոն սերիէօզ* (Variations sérieuses):

Շատ մեծ յառաջընթաց մը մէկ տարի առաջուայ Շուպերթէն:

*Արեւ*ի Յ. Փ.-ն պիտի արձանագրէր. «Պ. Պ. Արմէնեան, համակրելի եւ դեռ պատանի, բայց արդէն իսկ արուեստագէտի մը խոր հասկացողութեամբ եւ հուժկու արտայայտութեամբ մտովի նուագեց Վեպէրի եւ Վեպէր-Պրահմսի Տօ Մաժ. Րօնտօները, ինչպէս նաեւ Մէնտէլսոնի Վարիասիօնները, երկար եւ կնճռոտ կտորներ, ներկաներուն բացառիկ գնահատանքին արժանանալով»(2):

*La Bourse égyptienne* օրաթերթը Մայիս 19-ի թիւին մէջ հանդէս կու գայ դրուատանքով. «Պ. Արմէնեան իսկապէս բացառիկ ձիրքեր ունի: Վեպէրի երկու Րոնտօներուն մէջ արժեցուց ան իր արդէն իսկ զարգացած թեքնիքը մինչ Մենտէլսոնի լուրջ վարիասիոններուն մէջ, ան ապացուցուց երաժշտական հազուագիւտ իմացականութիւն մը»(3):

Բայց Արմէնեանի ամենէն աւելի գնահատողը, ամենէն համակողմանի դիտողը պահպանողական մտածող Լիպարիտ Նազարեանցն է: Դաշնակահարի երկրորդ ունկնդրութիւնը շարժած է մտաւորականին միտքերը.

«Պարոյր Արմէնեան ա՛լ աւելի հաստատեց այն համոզումը, զոր կազմած էի իր մասին անցած տարի: Ան ծնեալ երաժիշտ է. ինչ որ կուտայ՝ անհնարին է ձեռք բերել սորվելով ու վարժուելով. իր ամբողջ էութիւնը համակած ունակութիւն մըն է ատիկա, որ մղում կուտայ արտայայտման միջոցներուն: Իսկ ասոնց յատկանիշերն են՝ ճշտութիւն, յստակութիւն եւ զուսպ, ազնուական չափաւորութիւն: Անըմբռնելի է՝ որ այս անգամ եւս Պարոյր Արմէնեանը հանդէս եկաւ գերազանցապէս *թեքնիք*ի կտորով մը: Զարմացնե՞լ կ'ուզեն ունկնդիրները: Ի՞նչ պէտք կար հարկադրելու այդ պատանին որ նոյն կտորը (Վեբերի Rondo-ն) նուագէր երկու տարբեր եղանակներով. ցոյց տալու համար իր մատներու ճարտարութիւնը եւ սահունութի՞ւնը: Գիտենք որ ան ատկէ աւելին ալ կրնայ, բան մը որ ապացուցեց Մենդելսոնի *Variations sérieuses*ով: Ու ձախող ընտրութիւն մըն ալ աս: Վարիասիոնները երբեք չեն կրնար ցոյց տալ նուագողին ամբողջ կարողութիւնը. երաժշտութեան մէջ այդ ձեւը, կարելի է ըսել, նոյնն է, ինչ որ բանաստեղծութեան մէջ քառեակները. կարճ շունչով արտայայտուած զատ զատ գաղափարներ ու տրամադրութիւններ: Հոտ երաժիշտը ոչ միայն չի կրնար հասնիլ իր ներշնչման գագաթնակէտին, այլեւ մօտենալ անոր: Այդ է պատճառը որ վարիասիոնները մեծ մասով արտաքին փայլ միայն ունին եւ ըստ այնմ ալ ազդելու նպատակին կը ծառայեն:

«Մինչ Արմէնեանէն մենք ուրիշ բան կ'ուզէինք լսել վասնզի ուրիշ ակնկալութիւններ ունինք իրմէ...»(4):

Գործերուն քննադատութիւնը ինքնին գովասանքըն է Արմէնեանի դաշնակահարական կարողութիւններուն, այն կարողութիւնները՝ որոնք, ըստ Նազարեանցի, չեն կրցած բացայայտուիլ յիշեալ գործերուն պատճառով: Պիտի չքննարկեմ թեքնիք-երաժշտութիւն կտրուկ հակադրութեան միտումը, մանաւանդ Վեպէրի, Վեպէր-Պրամսի եւ Մենտլսոնի յիշեալ գործերուն նկատմամբ, որոնց գեղեցիկ երաժշտականութիւնը կարելի չէ ըմբոշխնել առանց արագավազ մատնային թեքնիքի ներթափանցային զուգորդութեան: Բայց կարեւորը Նազարեանցի վաղ համակրանքն է Արմէնեանին հանդէպ, որ շուտով պիտի բացայայտէր իր արդարացումը:

Նոյն նուագահանդէսին կը նուագէ Պարոյրին կրտսեր քոյրը՝ Հիլտա Արմէնեան, ներկայացնելով Մոցարթի տօ մինոր Քոնչերթոյին առաջին մասը:

Կ'անցնի մէկ ու կէս տարի՝ 1932 Դեկտեմբեր 27, Հելիոպոլսոյ Փալաս Օթէլի սրահ (այսօրուայ նախագահական նստավայր-պալատը), Փուլյիզիի աշակերտներու ձմեռուայ եղանակի ունկնդրութիւն:

Ներկայ էր Նազարեանց: Արմէնեան եւ իր դասընկերուհի Մարի Աճէմեան այլեւս ընելիք չունին Եգիպտոսի մէջ, միայն Եւրոպայի մէջ կրնան զարգանալ անոնք, կը պնդէ ան.

«Պ. Փուլյիզիի՝ իբրեւ դասատուի մասին ուրիշ ատեն արդէն խօսած ենք այս էջերուն մէջ: Վերջին նուագահանդէսը եկաւ անգամ մըն ալ համոզելու, որ ան ճիշդ ըմբռնումը ունի երաժշտական արուեստին եւ գիտէ հաղորդել զայն նաեւ իր աշակերտներուն: Անհրաժեշտ ժուժկալութիւն, ճշգրտութիւն, խոհականութիւն, աւելի խորք՝ քան լայնք – ասոնք են իր գլխաւոր յատկանիշները:

«Այդպէս նաեւ իր աշակերտներէն անոնք, որ գեղարուեստական անհատականութիւն կը ներկայացնեն: Այդ կարգին կը պատկանին մեր հին ծանօթները՝ Օր. Օր. Ա. Գարագըզեան, Հ. Արմէնեան, Մ. Աճէմեան եւ Պ. Պ. Արմէնեան: Ասոնք ամէնքն ալ քանի մը ամսուան ընթացքին զգալի կերպով հասունցած են: Մանաւանդ վերջին երկուքը: Կը թուի թէ անոնք շուտով հոս այլեւս ընելիք պիտի չունենան: Երաժշտական կրթութիւնը միայն դասատուէն չէ (որքան ալ լաւ լինի ան) որ կը ստացուի, անհրաժեշտ է նաեւ միջավայրը, երաժշտութեամբ թաթաւուն մթնոլորտը, ուր հետաքրքրուողին ականջը լեցուէր մեծ արուեստագէտներու նուագով: Իսկ այդ կարելիութիւնը կրնան ընձեռնել միայն եւրոպական կեդրոնները: Օր մը Օր. Աճէմեանին եւ Պ. Արմէնեանին միջոց պիտի չտրուի՞ կատարելագործելու իրենց գեղեցիկ արուեստը...»(5):

1933 Մարտ 12, Էմփերիալի սրահ, Société de musique-ի կազմակերպած ցերեկային նուագահանդէսը, ուր Արմէնեան կը նուագէ Մենտելսոնի սոլ մինոր թիւ 1 Քոնչերթոն, Մաէսթրօ Է. Իզաեայի նուագախումբին նուագակցութեամբ: Արմէնեանի առաջին հրապարակային (ոչ-աշակերտական) ելոյթն էր ասիկա: *La Bourse égyptienne* իր նուագին մէջ կը գտնէ ուժգնութիւն եւ ճարտարութիւն.

«Գալով Պարոյր Արմէնեանի, դեռ երիտասարդ, ան օրքէսթրի ընկերակցութիւնով դաշնակի վրայ, Մենտէլսոնի Քօնսէր ան սօլ մինէօռ նուագածութեամբը երեւան բերաւ առաջնակարգ երաժշտագէտի մը խառնուածքը: Պ. Արմէնեան, որուն նուագելու ճարտարութիւնը եւ ուժգնութիւնը մեզ յափշտակեց, կրնայ արդարացիօրէն հպարտանալ այն մեծ յաջողութեամբը, զոր ան ունեցաւ իր առաջին հրապարակային փորձին մէջ:

«Աւելցնենք միանգամայն թէ Պ. Արմէնեան ցոյց տուաւ դաշնակահարի զգայուն ժէսթ մը, որ կը վկայէ անոր թէ՛ համեստութիւնը եւ թէ զգացումներուն ազնուութիւնը:

«Ծափահարուած իր ունկնդիրներէն, ան փափաքեցաւ իր յաջողութեանց ընկերացնել իր պատուական եւ արժէքաւոր Բրոֆէսէօրը՝ Մաէսթրօ Էթթորէ Փուկլիզի եւ այս վերջնոյն հետ է որ ան բեմ վերադարձաւ, ողջունելու...»(6):

Կրնա՞ր Լիպարիտ Նազարեանցի ուշադրութենէն վրիպիլ Արմէնեանի այս նոր վերելքը.

«Պարոյր Արմէնեան նորոյթ մը չէ հանրութեան համար: Տեղական հայ եւ օտար մամուլը առիթ ունեցած է խօսելու այդ պատանի դաշնակահարի մասին, երբ ան կը մասնակցէր իր դասատու պրոֆեսոր Պուլյիզիի կողմէ կազմակերպուած աշակերտական նուագահանդէսներուն: Այն ատեն արդէն Արմէնեան ուշադրութեան առարկայ եղած էր, ու կը սպասուէր պատեհութեան մը՝ լսելու զինքը աշակերտական շրջանակէ տարբեր պայմաններու մէջ:

«Անցեալ Մարտին Արմէնեան հանդէս եկաւ Մենդելսոնի *սոլ մինէօր* կոնցերտով, զոր նուագեց Իմպերիալ թատրոնի մէջ պ. Է. Իսայայի նուագախումբին ընկերակցութեամբ:

«Նուագուելիք կտորին ընտրութիւնը ընդհանուր առումով յաջող էր եւ, ըստ երեւոյթին, ոչ պատահական: Անշուշտ, նուագողին ուսուցիչը ուրիշներէ աւելի լաւ գիտէր իր սանին խառնուածքն ու կարողութիւնը եւ ըստ այնմ ալ ընտրած է կտորը»(7):

Նազարեանց այս անգամ գոհ ըլլալով Մենտելսոնի Քոնչերթոյի ընտրութենէն, կ'անցնի կտորի մանրամասն նկարագրութեան՝ ըստ իր ընկալումներուն, որմէ ետք կը վերադառնայ կատարումին.

«Այս վարպետին [իմա՝ Մենտելսոնին, Հ. Ա.] մէկ գործն էր ահա որ նուագեց պ. Արմէնեան, եւ իր նուագին մէջ երեւան եկան հեղինակի յատկութիւնները՝ թէ դրական եւ թէ բացասական: Այդ, անշուշտ, արժանիք մըն է, վասնզի ցոյց կուտայ ճիշդ ըմբռնումը նուագուած կտորին: Այսպէս, եթէ երկրորդ մասին մէջ Արմէնեան յաջողեցաւ երեւան հանել ամբողջ թախծոտ մեղեդիականութիւնը, վերջին մասին լոկ ձեւական կիրքը կրնար հնարաւորութիւն տալ իրեն՝ ցուցնելու միայն իր թեքնիքին փայլը:

«Արմէնեանի համար այդ նուագահանդէսը տեսակ մը հրապարակային քննութիւն էր, որմէ ան պատուով ելաւ. մոռնալու չէ, որ պատանի երաժիշտը առաջին անգամ ոտք կը դնէր իսկական նուագահանդէսներու բեմը, այն ալ նուագախումբի մը հետ: Այս պայմաններու տակ եւ միայն Մենդելսոնի կոնցերտի հիման վրայ դժուար պիտի լինէր դատել Արմէնեանի կարողութեան եւ յատկութեանց մասին: Բարեբախտաբար առիթ ներկայացաւ անգամ մըն ալ լսելու զինքը Պէրպէրեան վարժարանի ցերեկոյթին, Բախէն եւ Շօպէնէն իր նուագած կտորները ա՛լ աւելի ամրապնդեցին այն կարծիքը զոր կազմած էի իր մասին: Գուցէ օր մը զգամ թէ սխալեր եմ. բայց հիմա ինձի կը թուի, թէ վիպապաշտները ու նաեւ քնարերգակները (օրինակ Շուբերտ) աւելի հարազատ են իր հոգիին, քան Բախ: Իրաւ է այս հեղինակի *Անգլիական սիւիտ*ի առաջին մասը Արմէնեան նուագեց անթերի մաքրութեամբ. իրաւ է, անոր Ֆուգայի տարբեր ձայներուն զուգահեռ վարումը զարմանալի էր իրեն պէս տակաւին անփորձ երաժիշտի մը համար: Բայց նորէն Շօպէնի Բալլադն էր, որ Մենդելսոնի կոնցերտի Ադաջիոյի պէս կը խօսէր իր սրտէն:

«Պարոյր Արմէնեան ունի աչքառու երաժիշտ մը դառնալու բոլոր տուեալները. լաւ հիմնական դըպրոց, փափուկ ու ծորուն հնչիւն, հիանալի թեքնիկ եւ, որ գլխաւորն է, չափի եւ կշռոյթի զգացում: Այս ամէնին աւելցնելու է նաեւ որ ան երաժշտականօրէն անհատականութիւն մըն է արդէն, զգայուն եւ միեւնոյն ժամանակ խոհական»(8):

(Շար. 1)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Լիպարիտ Նազարեանց, «Երաժշտութիւնը մեր մէջ», *Յուսաբեր*, 28 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 74, էջ 1:

2. Յ. Փ., «Բրօֆ. Է. Բուլեիզիի աշակերտաց տարեկան նուագահանդէսը», *Արեւ*, 19 Մայիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3742, էջ 2:

3. «Երաժշտական ունկնդրութիւն մը», *Յուսաբեր*, 21 Մայիս 1931, ԺԷ. տարի, թիւ 41, էջ 3:

4. Լիպարիտ Նազարեանց, «Երաժշտական աշխարհէն», *Յուսաբեր*, 6 Յունիս 1931, ԺԷ. տարի, թիւ 55, էջ 2:

5. Լիպարիտ Նազարեանց, «Փրոֆ. Փուլյիզիի աշակերտներուն նուագահանդէսը», *Յուսաբեր*, 2 Յունուար 1932, ԺԷ. տարի, թիւ 233, էջ 3:

6. «Մաէսթրօ Իզաեայի 11-րդ նուագահանդէսը», *Արեւ*, 17 Մարտ 1933, ԺԷ. տարի, թիւ 4308, էջ 3:

7. Լ. Նազարեանց, «Արուեստի աշխարհէն», *Յուսաբեր*, 14 Ապրիլ 1933, ԺԹ. տարի, թիւ 11, էջ 2:

8. Անդ, էջ 2:

ԳԱՀԻՐԷ

# ՋԱՀԱԿԻՐԻ 62-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ ԵՒ ՊԱՅԾԱՌ ԵՐԿԱԹԻ ԱՆՏԻՊ ՅՈՒՇԵՐԸ




Լոյս տեսաւ Ջահակիրի ԿԲ. (62) Յաւելուածը՝ Պայծառ Երկաթ, *Գողտրիկ յուշեր ու սուր փշեր կամ Մի դերբուկ ճանապարհ*, տեքստը կազմեց եւ ծանօթագրեց Արծուի Բախչինեանը, 262 էջ։

Թատերագրուհի, դերասանուհի, բանաստեղծուհի, արձակագրուհի, հասարակական գործիչ Պայծառ Երկաթի (1889, Չօմաքլու – 1988, Երեւան) անտիպ յուշերը գուրգուրանքով պահած է իր թոռնուհին՝ Հայաստանի յայտնի պարուհի Աննա Մարիկեան։ Հարցազրոյցի համար Մարիկեանին կ'այցելէր բանասիրական գիտութիւններու թեկնածու Արծուի Բախչինեան, որ յայտնաբերելով ձեռագիրը զայն կը յանձնէ տպագրութեան, կատարելով խմբագրական անհրաժեշտ աշխատանքը եւ աւելցնելով իր ծանօթագրութիւն-ները։

Յուշերը կը կարդացուին սահունութեամբ եւ մեծ հետաքրքրութեամբ։ Անոնք կը բովանդակեն Տիկ. Պայծառի կեանքը Չօմաքլուի, Պոլսոյ եւ Ատապազարի մէջ, համեմուած տեղական բարքերու նկարագրութիւններով։ Ապա՝ Եղեռնի տարագրութիւն, պատահական փրկութիւն, վերադարձ Պոլիս եւ, ի վերջոյ, քէմալականներու ներխուժումին հետեւանքով գաղթ դէպի Աղեքսանդրիա։ Յուշերը կանգ կ'առնեն այստեղ, չկայ եգիպտական շրջանը, որ այլապէս արժանի է բանասիրական ուսումնասիրութեան։

Պայծառ Երկաթ երկրորդ կարաւանով 1948-ին կը ներգաղթէ Հայաստան։ Մայրն է յայտնի պարիթոն Միհրան Երկաթի։

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՆԱԽՆԻՆԵՐԻ ՈՍԿՈՐՆԵՐՈՎ ԵՒ ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ԱՆՃԱՐ ԽՈՐՀՐԴԱՆԻՇԵՐՈՎ

ՍԱՄՈՒԷԼ ՄԵԼԻՔՍԵԹԵԱՆ

Այս ամէնուն մէջ ամենազաւեշտալին այն է՝ որ ինչպէս ալ ըլլայ սահմանազատումը Ոսկեպար-Կիրանց հատուածին մէջ, սահմանը պիտի անցնի նոյն ուրուագիծերով՝ ինչ ներկայ գործընթացի պարագային։ Այդ շրջանին մէջ ուրիշ սահման չէ եղած եւ յետխորհրդային երկիրներուն միջեւ իրականացուած օրինակները չեն ճանչնար ուրիշ սահմանազատումի օրէնքներ։

Հետեւաբար, Կիրանցի բնակիչները պիտի առնչուին նոյն խնդիրներուն՝ որոնք կան հիմա, երբ որ ալ տեղի ունենայ այդ ընթացքը՝ մէկ, տասը, քսան տարիներ ետք։ Եւ փոխանակ այդ խնդիրներուն համար լուծումներ առաջարկուին, մարդոց հիմնաւորուած մտավախութիւնները եւ դժգոհութիւնները կ'օգտագործուին իբր Հայաստանը փրկելու, արժանապատիւ խաղաղութեան եւ այլ վերացական ու կարգախօսային խօսոյթներուն սպասարկելու համար, որոնք հիմնուած են աւանդական հասարակութիւններուն այնքան բնորոշ «փրկութեան» ու յաջորդական «վերջնական» լուծումներու տրամաբանութեան վրայ։

Կիրանցի համար բոլոր այս լուծումները լաւագոյն պարագային պիտի տան նոյն արդիւնքները, բայց, անկասկած, հայրենիքը պիտի փրկուի։ Կան, անշուշտ, աւելի բարդ եւ հնարամիտ լուծումներու առաջարկներ կամ ձեւապաշտական քննադատութիւններ, բայց անոնք բոլորը նոյնպէս զուրկ են ճշգրտութենէ եւ ընդհանուր են։ Բոլորին հիմքը «մօտաւոր» պատկերացումներն են, ինչպէս նաեւ իրականութեան նկատմամբ որոշակի օրինաչափ պահանջներ՝ շրջադարձ ինչ-որ ցանկալի կէտի եւ իրավիճակի (տարբեր, բայց միշտ վերացական ձեւակերպումներով, էական եզրոյթներով, որոնք բացատրութեան կարիք չունին եւ ենթադրաբար հասկնալի են բոլորին), եւ վարկածային թէզեր՝ որոնք տրամաբանական եւ տեղին կը հչեն, բայց միայն այդ վերացական դաշտին մէջ։

Հրդեհի պայմաններու մէջ անոնց իրականացումը կը նմանի լուծումի մը, երբ կանգնիս հրդեհին քովը եւ հաշուելու զայն մարելու համար քանի լիթր ջուր եւ քանի հրշէջ պէտք են, մինչդեռ մօտակայքը ոչ ջուր կայ, ոչ ալ հրշէջ։

Հայկական քաղաքական միտքը քաղաքական պայքարը կը պատկերացնէ միայն փրկութեան եւ ազգային-ազատագրական շարժումի տրամաբանութեամբ, այսինքն՝ միշտ վախճանաբանական (eschatological) բնոյթի հարցումներ կու տայ։ Ճիշդ այս է պատճառը՝ որ կարեւոր են զգացումները, խորհրդանիշերը, այլ ոչ թէ լուծումներու ազդեցիկութիւնը։ Քայլը ինքնարժէք կ'ըլլայ՝ եթէ ունենայ որոշակի բարոյական բովանդակութիւն եւ, ենթադրաբար, նաեւ հասցնէ անխուսափելի դրական արդիւնքի։ Հայոց պատմութեամբ հետաքրքրուող այդ մարդոց համար, հայոց պատմութիւնը հիմնականին մէջ որոշակի մտաղացի անցքերով անցած քանի մը օրինակներու պահարան է։

Արդոնցի յայտնի մամիկոնեաններ-բագրատունիներ երկընտրանքին մէջ անոնք միշտ կ'ընտրեն մամիկոնեանները, սակայն զանոնք զինելով ոչ թէ ժամանակին յարիր զէնքով (ի վերջոյ, կարեւորը ոգին է), այլ նախնիներու ոսկորներով եւ միջնադարեան անշունչ ու անճար խորհրդանիշերով։ Անոնք գիտեն եւ յաճախ կը բերեն Սարդարապատի օրինակը, բայց կը լռեն աւելի մեծ ծաւալներու եւ թէժութեան Ղարաբիլիսայի մասին, որովհետեւ այնտեղ այլ էր արդիւնքը։

Անշուշտ, նման մտածելակերպը անյաջողութիւնները նոյնպէս կը վերագրէ բարոյական գործօններուն՝ դաւաճաններուն, հակազգային տարրերուն, «թուրքամէտներուն» եւ այլն։ «Թուրքը» այդ նիւթին համար գլխաւոր զինուորագրութեան գործիքն է, եւ անոնք ինչքան շատ կը փորձեն վախցնել «թուրքով», այնքան աւելի շատ կը բարոյալքեն մարդոց եւ կը գովազդեն «թուրքերուն»։ Նաեւ յիշելով պայքարի յաջող օրինակները, երբեք չեն մտածեր յաջորդ քայլի մասին, կարծես այստեղ կը վերջանայ ամէն բան։ Բաւական է այսօր եւս մէկ յաղթանակ տանիլ, եւ վաղը բոլոր հարցերը պիտի լուծուին, արժանապատուութիւնը պիտի վերականգնուի, եւ մենք պիտի հասնինք մեր վերջնական նպատակին՝ «թուրքի» դէմ կատարեալ յաղթանակին։

Արդեօք հայոց պատմութեան մէջ քի՞չ են օրինակները՝ երբ յաղթանակներուն յաջորդած են պարտութիւններ։ Իսկ համաշխարհային պատմութեա՞ն մէջ։ Կամ հակառակը։ Եւ արդեօ՞ք միայն ռազմական յաղթանակները եղած են պետութիւններու զարգացումին դրդապատճառը, այլ ոչ նաեւ պարտութիւնները եւ անոնց պատճառները հասկնալու եւ գիտակցելու փորձերը։ Յաջորդ քայլի մասին մտածելը, իրականութեան բարդութեան ընկալումը, պետութիւններուն յարաբերութիւնները ազգ-ամբոխներու յարաբերութիւններուն չխառնելը, ծանր պահերուն սառնութեամբ դատելը՝ այս բոլորը «լեւոնականութիւն» [Վերագրելի Լեւոն Տէր-Պետրոսեանին, Զ.] է, զգուշաւորութիւնը եւ հաշուարկը՝ վախկոտութիւն։ Հայաստանը ոչ առաջին, ոչ երկրորդ եւ ոչ ալ երրորդ անգամն է որ կը յայտնուի այս իրավիճակին մէջ, եւ ամէն անգամ նոյն թեթեւամտութիւնը, տգիտութիւնը եւ իրականութեան գեղարուեստական ընկալումը կը հասցնեն նոյն արդիւնքներուն։

Որեւէ խնդիրի մասին մօտաւոր, աղօտ, հակասական պատկերացում, բայց նոյն հիմքի վրայ միշտ «ազգանպաստ» լուծում, զգացումներու այնպիսի փոթորիկ՝ որ անկարելի կը դարձնէ ճիշդ նման պահերու համար խիստ անհրաժեշտ եւ արժէքաւոր սառնասիրտ դատողութիւնը, ազատ հանրային խօսքը եւ բանավէճի կարիքը, չկարողանալով ապահովել «ազգանպաստ» լուծում։ Եւ նաեւ քարոզչութիւն, սուտեր եւ ապատեղեկատուութիւն, երբ ամէն պարագայի խոցելի վիճակի մէջ գտնուող մարդիկ՝ որոնք, ըսենք, իրենց ամբողջ կեանքը օգտուած են Վանաձոր-Ալաւերդի-Բագրատաշէն-Թիֆլիս մայրուղիէն, կը մտածեն՝ որ Ոսկեպարի շրջանի այս գործընթացի հետեւանքով պիտի կտրի Վրաստանի եւ Հայաստանի կապը, կամ որ պիտի յանձնուին Տաւուշի հայկական գիւղերը, կամ իբր Ջիլիզա գիւղը՝ որ արդէն կը գտնուի հայ-վրացական սահմանին եւ երբեք վիճելի չէ եղած, պիտի յանձնուի Վրաստանին, եւ այլն։

Իրականութեան նման խեղաթիւրումի հետեւանքով, մարդիկ պատրաստ չեն ընկալելու բարդ լուծումները եւ, քանի որ կը հեռանան իրականութենէն, յետագային եւս ընդունակ պիտի չըլլան հասկնալու կատարուածին իրական պատճառները։

*Ֆէյսպուքի անձնական էջ, 8 Մայիս։*

*Արեւելահայերէնէ արեւմտահայերէնի փոխադրութիւն՝ Զ.։*

ԽՈՀԵՐ

# ՆԱՄԱԿ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱՅԷՆ...

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Դէպքը պատահած է 120 տարի առաջ, *բոզմոփոլիթ* քաղաք Աղեքսանդրիոյ մէջ։ Դէպքը վերածուած է բնագիրի։ Բնագիր մը, որ իր կուռ շարադրութեամբ կը տեղեկացնէ շատ բան՝ ամէն բան։ Այս առումով անյայտ գրողը վարպետ մըն է։ Վարպետ մըն է՝ երրորդ կողմի աչքերով շարադրելու այդ ժամանակուայ միջկուսակցական տրամաբանութիւնը։ Աւելի ճիշդ՝ անտրամաբանութիւնը, երբ տուեալ ձեռնարկի մը համար անպատշաճ երգի մը ներառումին խնդիրը կը լուծուի երկրորդ անպատշաճ երգի մը ընդգրկումով, որմէ ետք այս լուրը անմիջապէս կը տարածուի համայնքի անդամներուն միջեւ, որոնք մտահոգուած ըլլալով իրենց մարմնական ապահովութեամբ, ներկայ չեն գտնուիր ձեռնարկին, մինչ անտրամաբանութեան ենթադրեալ հետեւանքը կանխելու համար Ազգային Իշխանութիւնը կը հրաւիրէ ծպտեալ ոստիկանութիւն։ Փառք Աստուծոյ, ամէն բան կը վերջանայ խաղաղ, եւ մարդիկ տուն կը վերդառնան բաւարարուած սիրտով եւ հանգիստ միտքով։

Այսպէս, Գահիրէի *Լուսաբեր* երկօրեան իր 1905 Մարտ 11 թիւին մէջ կը հրապարակէ Աղեքսանդրիայէն ղրկուած 1905 Փետրուար 9 թուակիր նամակ մը, զոր կ'արտատպեմ ամբողջութեամբ.

«Տեղական ազգային պայքարը մղելու համար Հնչակեան եւ Դրօշակեան կուսակցութեան [Հ. Յ. Դաշնակցութեան, Հ.Ա.] անդամները անհատապէս գործելու սկսած էին։ Վերջերս այդ պայքարին կուսակցական գոյն տալու ճիգեր կ'ըլլան։ Վարդանանց տօնախմբութեան առթիւ երգուելու համար տեղւոյս վարժարանին մէջ [Պօղոսեան Ազգային Վարժարան, Հ.Ա.] Անդրանիկի անուան շինուած երգ մը կը սորվեցնեն. ասոր համար ուսուցչական մարմինին դէմ բողոք կ'ըլլայ, առարկուելով թէ իբրեւ սուրբ եւ հերոս ընդունուած նախատակներու տօնին հետ Անդրանիկի անունին խառնուիլը գայթակղութիւն կրնայ պատճառել։ Տիար Շէրիտճեան եւ Տիար Պերճ Օհանեան, իբրեւ Հոգաբարձուներ կը միջամտեն եւ խոհեմութիւն կը յորդորեն։ Տիար Շէրիտճեան կ'ըսէ թէ «քանի որ Անդրանիկը դեռ ողջ է, ի՞նչ վերաբերութիւն ունի Վարդանանց նահատակութեան հետ»։ Իր կողմէն կ'առաջարկէ որ հանդէսին մէջ Դաշնակցական եւ Հնչակեան մէյմէկ երգեր երգուին, եւ խնդիրը վերջացած համարուի։ Ըստ այսմ, այսօր, եկեղեցւոյն [Ս. Պօղոս Պետրոս եկեղեցի, Հ.Ա.] աւարտումէն ետքը հանդէսը տօնուեցաւ։ Բացումը եղաւ Անդրանիկի երգով. փակումը Հնչակի երգով։ Ազգային Հոգաբարձութիւնը ծպտեալ ոստիկաններ բերել տուած էր։ Ժողովուրդի մեծամասնութիւնն ալ բացակայ էր վախնալով որ կռիւ տեղի պիտի ունենայ»։

Մեկնաբանութիւնները՝ ընթերցողին։

# ՋԱՀԱԿԻՐ

## ՄԻՐԶՈՅԵԱՆԸ ԵՒ ԲՈՐԷԼԸ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ՀԱՅԱՍՏԱՆ-ԵՄ...

1

թացում վերջին զարգացումները: Անդրադառնալով երկու երկրների միջեւ սահմանազատման գործընթացին եւ համապատասխան յանձնաժողովների միջեւ գրաւոր պայմանաւորուածութիւններին՝ Արարատ Միրզոյեանը շեշտել է գործընթացը 1991թ. Ալմա-Աթայի հռչակագրի հիման վրայ շարունակելու անհրաժեշտութիւնը, ինչպէս յայտարարուել է նաեւ երկու երկրների ղեկավարների մակարդակով: Ներկայացնելով խաղաղութեան պայմանագրի նախագծի շուրջ քննարկումները՝ Հայաստանի արտաքին քաղաքական գերատեսչութեան ղեկավարը շեշտել է, որ հնարաւոր կը լինի հասնել վերջնական համաձայնութեան ձեռք բերուած պայմանաւորուածութիւնները նաեւ պայմանագրի նախագծում արտացոլելու միջոցով, ասուած է հաղորդագրութիւնում:

## ԲԱՂԱՆԻՍ, ՈՍԿԵՊԱՐ, ԿԻՐԱՆՑ, ԲԵՐՔԱԲԵՐ ԳԻՒՂԵՐԻ՝

1

Նիկոլ Փաշինեանը հանդիպել է նաեւ Բաղանիսի եւ Ոսկեպարի բնակիչներին, անդրադարձել Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ սահմանազատման գործընթացին, պատասխանել հնչեցուած հարցերին, որոնք վերաբերել են ենթակառուցուածքներին, հնարաւոր խնդիրներին ու դրանց լուծումներին: Վարչապետը նշել է, որ կառավարութիւնը կը հասցէագրի բոլոր խնդիրները եւ դրանց կը տրուեն անհրաժեշտ լուծումներ:

Հայաստանի վարչապետն անդրադարձել է սահմանամերձ բնակավայրերում անհատական բնակելի տուն կառուցելու նպատակով կառավարութեան կողմից 16 մլն դրամ յատկացնելու ծրագրին: Նրա խօսքով՝ քննարկումների արդիւնքում որոշում է կայացուել, որ Բաղանիս, Ոսկեպար, Կիրանց, Բերքաբեր գիւղերի այն բնակիչներին, որոնք կը դառնան 16 մլն դրամ ծրագրի շահառու, եւս 5 մլն դրամ կը յատկացուի, այդ թւում՝ արդէն ծրագրից օգտուողներին: Վարչապետը յոյս է յայտնել, որ Հայաստանի կառավարութեան ձեռնարկած քայլերի արդիւնքում կեանքն այդ գիւղերում կը զարգանայ, մարդիկ նոր տներ կը կառուցեն:

Նիկոլ Փաշինեանի խօսքով՝ տեղի ունեցածը մեծ յաջողութիւն է, եւ Կառավարութեան նպատակներից է ստեղծել անվտանգութեան երաշխիքներ սահմանազատման միջոցով: Վարչապետը նշել է, որ ամէն ինչ արուելու է գործընթացը շարունակելու համար:

Նիկոլ Փաշինեանը ծանօթացել է նաեւ Կիրանցի նոր կառուցուող ճանապարհի եւ Կիրանց-Աճարկուտ գործող ճանապարհի հիմնանորոգման աշխատանքների ընթացքին: Վարչապետը կարեւորել է որակեալ եւ ժամանակին իրականացումը եւ պատասխանատուներին տուել յանձնարարականներ:

## ՀԵՏԵՒԵԼՈՎ ՖՈԼՔ-ՌՈՔ ՀՈՍԱՆՔԻՆ. ՀԱՅ ԵՐԱԺԻՇՏՆԵՐՈՒ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ ՄԸ ԿԸ ԿՈՂՄՆՈՐՈՇԷ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԻՒՆԸ...

1

**«Իսկական հայկական երաժշտութիւն»**

«Երբ երաժիշտ մը կը նուագէ իւրայատուկ եւ իրեն պատկանող տեղական երաժշտութիւն, ամէն բան կը դառնայ աւելի հետաքրքրական», կ'ըսէ Սեւադա Համբարչեան, Կաթիլ ինտի-ֆոլք խումբի գլխաւոր երգիչ:

Հիմնուած 2017-ին, Կաթիլը դարձաւ Հայաստանի ամենայաջող այլընտրանքային խումբերէն մէկը: Իր ամենաժողովրդական երգը՝ *Կ'ուզիմ*, ունեցաւ աւելի քան երեք միլիոն դիտորդներ Եութիւպի վրայ:

*Կ'ուզիմ*ը ժողովրդական երգ մըն է Համշէնէն՝ այսօրուայ հիւսիսարեւելեան Թուրքիոյ Սեւ Ծովուն վրայ գտնուող պատմական հայկական բնակավայր մը: Այնտեղ ապրող այսօրուայ համշէն ժողովուրդը շառաւիղն է հայերուն՝ որոնք 15-րդ դարու վերջաւորութեան տարածաշրջանի օսմանեան գրաւումէն ետք աստիճանաբար դաւանափոխուեցան սիւննի իսլամի: Կաթիլի մատուցումը վերակենդանացուց ոչ միայն ինքնին ժողովրդական երաժշտութիւնը այլեւ համշէնահայ բարբառը:

«Երբ մեր *Կ'ուզիմ* երգը լայնօրէն տարածուեցաւ Եութիւպի վրայ, մարդիկ զայն ձայնագրեցին իրենց երեխաներու ձայներով եւ ղրկեցին մեր Ֆէյսպուքի էջին վրայ: Սրտաշարժ էր: Ցոյց կու տայ թէ մենք կը պահպանենք մշակութային ժառանգութիւնը եւ կը դարձնենք թրենտային», կ'ըսէ Սեւադա:

Խումբին առաքելութիւնը կ'արձագանգէ հռչակաւոր հայ երաժիշտ Կոմիտասի գործը, որ ԺԹ. դարու վերջաւորութեան եւ Ի. դարու սկզբնաւորութեան, աւանդական երաժշտութեան հաւաքագրումը, դասակարգումը եւ ուսումնասիրութիւնը բարձրացուց աքատեմական մակարդակի: Ազգագրաերաժշտագիտութեան առաջամարտիկ, Կոմիտաս ճամբորդեց հեռաւոր գիւղեր՝ ուր հազուագիւտ էին օտար երաժշտութեան ազդեցութիւնները, ապահովելու համար տեղական երաժշտութեան հաւաքագրումը եւ պահպանութիւնը իր բնատիպ վիճակով:

Հայ երաժշտութիւնը տառապեցաւ Խորհրդային Միութեան ճնշիչ քաղաքականութեան տակ: 1920-1930-ականներուն, Խորհրդային հանրապետութիւններու ազգային կերտումի ջանքերը կը ձգտէին մշակել մշակոյթներ՝ «ձեւով ազգային եւ բովանդակութեամբ ընկերվարական»: Ըստ երաժշտագիտուհի Մարինա Ֆրոլովա-Ուօքըրի, ասիկա ուշադրութիւնը տեղափոխեց գիւղականէն դէպի քաղաքային, քանի որ իշխանութիւնները երկրորդական կարեւորութիւն տուին ֆոլքլորիք երաժշտութեան եւ փորձեցին ազգային երաժշտական մշակոյթներ ստեղծել ԺԹ. դարու Ռուսաստանի երաժշտական ազգայնականութեան տիպարով:

«Խորհրդային հայերը նոյնիսկ այլեւս չէին գիտեր ինչ է հայկական երաժշտութիւնը որովհետեւ ինչ որ կը ցուցադրուէր հեռատեսիլէն մաս կը կազմէր Խորհրդային քարոզչութեան», կ'ըսէ Կաթիլի հարուածահար (percussionist) Գրիգոր Դաւթեան:

Արդարեւ, այսօր կը գտնուի բնատիպ հայկական երաժշտութեան աճող պահանջ: Ըստ Կաթիլի անդամներուն, ասիկա հաստատուած է յատկապէս Ազըրպէյճանի հետ հակամարտութեան ժամանակ: «Դիւրին չէ նուագահանդէսներ տալ պատերազմող երկիրի մը մէջ: Մեր ունկնդիրը իրապէս մտահոգուած է երկիրի կացութեամբ, եւ երբ պատերազմ կայ, չես կրնար պարզապէս երաժշտութիւն նուագել եւ ձեւացնել ոչինչ կը պատահի», կ'ըսէ փայտեայ փողայիններ նուագող Գրիգոր Քարտաշեան:

Այս բնաբանին տակ, սեփական տան մէջ հայկական երաժշտութեան յառաջմղումը խումբին անդամները կը նկատեն իբրեւ միջոց՝ պահպանելու ոչ միայն իրենց մշակութային ժառանգութիւնը այլեւ երկիրը: «Մեր կարճաժամկէտ նպատակն է իրական, զուտ հայկական երաժշտութիւնը լսելի, ճանաչելի եւ սիրելի դարձնել Հայաստանի մէջ եւ յետոյ աշխատիլ անոր միջազգային ճանաչումին ուղղութեամբ», կ'աւելցնէ Գրիգոր:

**Հայաստանէն դէպի Տիեզերք**

Էլիզա Բաղդիյեան եւ Լուսինէ Մլքէ-Գալստեան 2017-ին հիմնեցին Տիեզերք խումբը: Հակառակ երիտասարդ տարիքնուն, անոնք արդէն կը շրջագային Եւրոպա եւ հայկական մշակոյթը կը հասցնեն օտար ունկնդիրներուն: Իրենց նորագոյն նուաճումն է KITFEST-ի (ներառական թատերական փառատօն Գերմանիոյ մէջ) լաւագոյն երաժշտութեան մրցանակը, զոր ստացան Հայաստանի ժամանակակից պարի Միհր թատրոնի ներկայացումին առնչութեամբ յօրինած երաժշտութեան համար:

Տիեզերք խումբը ծնունդ առած է Մխիթար Սեբաստացի Կրթահամալիրի երաժշտական աշխատանոցին մէջ, երեւանեան դպրոց մը՝ որ ծանօթ է իր դասաւանդումի նորարար մեթոտներով: Էլիզա եւ Լուսինէ աստիճանաբար սկսան նուագել դպրոցէն դուրս եւ այն ջերմ ընդունելութեան զոր արժանացան տեղական ըմպելարաններու (պար) եւ գինետուներու ունկնդիրներուն կողմէ, իրենց քաջալերեց կեդրոնանալու խումբին վրայ: «Աշխարհին հետ հաղորդակցուելու մեր պահանջին պատճառով Տիեզերքը երբեք շահութաբեր ծրագիր չէ եղած, որուն շնորհիւ դիւրութեամբ գտանք մեր ունկնդիրը», կ'ըսէ Էլիզա:

Լուսինէ եւ Էլիզա ինքզինքնին չեն սահմանափակեր մէկ սեռով: Անոնց նուագացանկը կը բովանդակէ ֆոլքլորիք երգեր եւ ինքնաստեղծ յօրինումներ: Տիեզերք խումբը վերջերս հրաւիրուեցաւ աջակցելու Հայաստանի Հանրային Ռատիոյի Ոսկի Ֆոնտին, որ կը պարփակէ շուրջ 100 հազար թուայնացած ձայնագրութիւններ: Յուրախութիւն իրենց, Հայաստանի Հանրային Ռատիոյի պետը Էլիզային եւ Լուսինէին պարգեւեց լրիւ ստեղծագործական ազատութիւն, առանց խոչընդոտի ընդունելով երգերուն նիւթերը՝ հասարակական անարդարութենէն սկսեալ մինչեւ սրտաբեկութիւն: «Բարեբախտաբար, անոնք խիստ բաց էին նոր երաժշտութեան նկատմամբ: Մեր երգերը ձայնագրեցին առանց նոյնիսկ որեւէ ցուցում տալու, որ մեզի համար թէ՛ հաճելի էր եւ թէ անսպասելի», կ'ըսէ Լուսինէ:

Նոյնիսկ 2020-ի համաշխարհային համաճարակի արգելափակումը չկրցաւ Տիեզերքին արգիլել հայ երաժշտութիւնը փոխադրել ընդարձակ աշխարհ: Իրենց հանգստաւէտ տան մէջ նստած, Էլիզա եւ Լուսինէ նախաձեռնեցին մշակութային փոխանակութիւն եւ սկսան հեռակայ ուսուցանել իբրեւ Առցանց Երգչախումբ անունով զուիցերիական ծրագիրի մաս: Այս համագործակցութիւնը ճամբայ հարթեց իրենց առաջին միջազգային նուագահանդէսին Ցիւրիխի մէջ 2021 Օգոստոսին, նշանաւորելով առաջին հայ արուեստագէտներու մասնակցութիւնը Զուիցերիոյ մեծագոյն արուեստի փառատօնին՝ Zürcher Theater Spektakel:

«Մենք 10 վայրկեան անցուցինք բացատրելու համար ինչպէս արտասանել Տիեզերք բառը», կը յիշէ Լուսինէ, աւելցնելով՝ որ իրենք շատ ուրախ էին իրենց միջազգային սիրահարներուն առնուազն մէկ հայերէն բառ սորվեցուցած ըլլալու համար:

«Հրաշալի է թէ ինչպէս երաժշտութիւնը կը միացնէ մարդոց», կ'ընդհատէ Էլիզա: «Մարդիկ իրապէս կը զգային մեր երգածը՝ առանց բառ մը հասկնալու: Անհաւատալի է»:

Ցիւրիխէն ետք, Տիեզերք նուագահանդէսներ կու տայ Լեհաստանի եւ Միացեալ Նահանգներու մէջ, փորձառութիւններ՝ որոնք կ'ամրացնեն կատարողներուն հաւատքը երաժշտութեան տիեզերական ուժին նկատմամբ: «Արուեստը միակ բանն է՝ որ ոչ մէկ սահման ունի, կապուած է ոչ մէկ լեզուի կամ այլ բանի հետ», կը շեշտէ Լուսինէ: «Երաժշտութիւնը յատկապէս կը միացնէ բոլորին: Կը կարծեմ որ մարդիկ շատ միանման են, մենք բոլորս կը զգանք նոյն զգացումները»:

Կաթիլի եւ Ռոզէն Թալի անդամներուն նման, Լուսինէ եւ Էլիզա խորապէս տեղեակ են Հայաստանի փոխուող քաղաքական եւ հասարակական տեսարանէն: Ճգնաժամի պահերուն անոնք կը պայքարին իրենց կրկնակի դերերով իբրեւ արուեստագէտներ եւ աշխոյժ քաղաքացիներ: Հետեւաբար, իրենց յաջորդ ծրագիրին համար, խումբին անդամները կը մտադրեն հաւաքել Լեռնային Ղարաբաղի երգերը, հայ բնակչութեան վտարումէն ետք պահպանելու համար տարածաշրջանի մշակութային ժառանգութիւնը:

«Շարունակական ռազմական հակամարտութիւններու ընդմէջէն պէտք է իմաստ գտնենք մեր գեղարուեստական նկրտումներուն համար», կ'ըսէ Լուսինէ: «Նախապէս, մեր երաժշտութիւնը կը հոլովէր մեր անձնական պատումներուն շուրջ: Հիմա, 2020-ի պատերազմին եւ անոր հետեւանքներուն լոյսին տակ, կը ստանայ աւելի ընդարձակ հեռանկար»:

«Մենք ենք մեր երգերը» ծրագիրը կը ձգտի որսալ մարդոց զգացումները գաղթի եւ յետպատերազմեան իրականութեան յարմարուելու մասին: Այս առումով, խումբին անդամները կը ծրագրեն ճամբորդել Հայաստանի գիւղերն ու քաղաքները, ուր վերահաստատուած են Լեռնային Ղարաբաղի գաղթականները: «Իբրեւ անարդարութեան ժամանակները ապրող արուեստագէտներ, կ'ուզենք մեր երաժշտութեան միջոցով պատմել զոհերուն պատմութիւնները», կ'ըսէ Լուսինէ:

*The Beat* (*Meduza*-ի առցանց հրապարակում)
5 Ապրիլ 2024
*Անգլերէնէ թարգմ.՝ Ա.*

*Յ.Գ. – Սփիւռքի աւանդապաշտ գերիշխող ու տիրող հայագիր հատուածը պատրա՞ստ է հրաւիրելու Ռոզէն Թալը, Կաթիլը, Տիեզերքը, Միհր թատրոնը, եւ զանոնք ընդունելու սեփական տարածութիւններուն վրայ, յանուն յառաջդիմութեան, մտաբացութեան, նորամուծութեան, ազատագրեալ թռիչքաւորումի...:*

*Ա.*

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1968 ՀԻՆԳՇԱԲԹԻ 20 ՅՈՒՆԻՍ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٦٨ الخميس ٢٠ يونيه ٢٠٢٤

# ԶԷՆՔԻ ԳԱՂՏՆԻ ԳՈՐԾԱՐՔԸ՝ ՈՐՈՒՆ ՊԱՏՃԱՌՈՎ ՓՈՒԹԻՆ ԿՈՐՍՆՑՈՒՑ ԴԱՇՆԱԿԻՑ ՄԸ

ԿԱՊՐԻԷԼ ԿԱՒԻՆ

ԵՐԵՒԱՆ, Հայաստան – Ըստ POLITICO-ի արտահոսած փաստաթուղթերուն՝ Պելառուսը ժամանակակից զէնքեր յանձնեց Հայաստանի ոխերիմ թշնամիին, հակառակ որ երկու երկիրները ենթադրաբար դաշնակիցներ են Ռուսաստանի կողմէ առաջնորդուող պաշտպանական պայմանագիրին:

Գաղտնի փաստաթուղթերը նոր լոյս կը սփռեն այս շաբաթուայ Հայաստանի որոշումին վրայ, երբ յայտարարեց դուրս գալ ռազմական դաշնակցութենէն: Կտրուկ շրջադարձ մը՝ որ պիտի տկարացնէ ռուս նախագահ Վլատիմիր Փութինի հեղինակութիւնը նախկին խորհրդային երկիրներուն մէջ:

Հայաստանը՝ նախկին Խորհրդային հանրապետութիւնը, տասնամեակներ շարունակ յոյսը Մոսկուայի վրայ դնելէ ետք, ներկայիս կը գտնուի դէպի Արեւմուտք պատմական շրջադարձ կատարելու շեմին, պաշտպանութեան համար իր հայեացքը աւելի ուղղելով դէպի Եւրոպա եւ ՆԱԹՕ:

Հարաւային Կովկասի տարածքին վրայ, Ասիան եւ Եւրոպան կցող ռազմավարական կէտին, Հայաստանը կը գտնուէր Ազըրպէյճանի հետ դառն հակամարտութեան մէջ, որ յաճախ կը վերածէր լայնածաւալ պատերազմի:

2018-2022-ի ընթացքին Ազըրպէյճանին յառաջացեալ ռազմական սարքեր տրամադրելու Պելառուսի (Ռուսաստանի հաւատարիմ դաշնակիցը) որոշումը՝ որ առաւելութիւն պիտի պարգեւէր երկարամեայ հակառակորդին, Հայաստան պիտի ընդունէր իբրեւ դառն դաւաճանութիւն:

Թէ՛ Պելառուսը եւ թէ Հայաստանը անդամներ են Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ)՝ 2002-ին կազմուած եւ Մոսկուայի առաջնորդութեամբ գործող յետխորհրդային ռազմական դաշնակցութիւն մը: Տեսականօրէն, յարձակումի պարագային անդամները պարտաւոր են պաշտպանել իրարու: 1999-ին Ազըրպէյճան հեռացած էր նախընթաց դաշինքէն:

Յունիս 12-ին Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան յայտարարեց՝ որ իր կառավարութիւնը պիտի սկսի դաշինքէն դուրս գալու ընթացքը, պատճառաբանելով՝ որ անոր անդամները «չեն իրագործեր իրենց համաձայնագրային պարտականութիւնները, այլ Ազըրպէյճանի հետ պատերազմ կը ծրագրեն մեզի դէմ»:

Այժմ, նամակներու, դիւանագիտական արձանագրութիւններու, վաճառքի հաշուեցոյցերու եւ արտահանումի անձնագիրներու աւելի քան մէկ տասնեակ գաղտնի փաստաթուղթերու հաւաքածոյ մը՝ զոր տեսաւ POLITICO, կը վկայեն Պելառուսի աշխոյժ աջակցութիւնը Ազըրպէյճանի զինուած ուժերուն 2018-2022-ի ընթացքին, մինչ լարուածութիւնը Հայաստանի հետ հասած էր գագաթնակէտին: Առաջարկըւող ծառայութիւնները կը պարունակէին հին հրետանիի արդիականացում, ինչպէս նաեւ ելեկտրոնային պատերազմի եւ անօդաչու համակարգերու համար նոր սարքերու հայթայթում:

Փաստաթուղթերը կը բովանդակեն պելառուսական պետութեան զէնքերու արտահանումի գործակալութեան նամակները՝ հասցէագրուած իր սեփական ռազմարդիւնաբերական ընկերութիւններուն: Նամակները կը պարունակեն հրետանին թիրախաւորող նորագոյն սարքերու ապսպրանքներ Ազըրպէյճանի համար, ինչպէս նաեւ երկու երկիրներուն միջեւ նամակագրութիւն մը՝ համաձայնելու համար անօդաչուներու դէմ գործածուող Groza-S շարժական կայաններուն գնումը Ազըրպէյճանի զինուած ուժերուն համար:

Մեր կողմէ ղրկուած մեկնաբանութեան խնդրանքները անպատասխան մնացին թէ՛ ազըրպէյճանական եւ թէ պելառուսական կառավարութիւններէն:

**«Այս տեսակ բարեկամներու հետ»**

Հրետանին եւ անօդաչուները լայնօրէն գործածուեցան վերջին տարիներու Ազըրպէյճանի եւ Հայաստանի մարտերուն մէջ, ներառեալ Լեռնային Ղարաբաղի տարածքին համար տեղի ունեցած 2020-ի պատերազմին, տարածք մը՝ որ կը գտնուի Ազըրպէյճանի միջազգայինօրէն ճանաչուած սահմաններուն մէջ բայց, Խորհրդային Միութեան անկումին յաջորդած դաժան հակամարտութենէն ի վեր, կը կառավարուէր այնտեղ գտնուող հայ ժողովուրդին կողմէ իբրեւ չճանաչուած պետութիւն: Անցեալ Սեպտեմբերի ազըրպէյճանական յարձակումը վերջ դրաւ տարածքի տէ ֆաքթօ անկախութեան եւ պատճառ հանդիսացաւ 100 հազար բնակիչներուն զանգուածային արտագաղթին:

POLITICO-ի տրամադրութեան տակ յայտնըւած դիւանագիտական գրագրութիւններէն մէկուն մէջ կ'ըսուի՝ որ պելառուսական ձեռնարկութիւնները աշխոյժ դեր կը խաղան «վերականգնելու Ազըրպէյճանի ապագրաւեալ տարածութիւնները, ինչպէս նաեւ [այնտեղ] արտահանելու պելառուսական ապրանքներն ու ծառայութիւնները»:

Սեպտեմբեր 2022-ին ազըրպէյճանական ուժերը ներխուժեցին Հայաստանի Հանրապետութեան բուն տարածքէն ներս, գրաւելով ռազմավարական բարձունքներ: Իր ժամանակին Հայաստանը դիմեց ՀԱՊԿ-ին աջակցութեան համար, բայց յետագային մեղադրեց զայն իր պարտականութիւններուն մէջ թերանալու համար, երբ դաշինքը առաջարկեց ընդամէնը ղրկել փաստահաւաք պատուիրակութիւն մը: Ասկէ ի վեր, Հայաստանի առաջնորդ Փաշինեան համաձայնութիւն կնքեց ընդլայնելու ԵՄ դիտորդական առաքելութիւնը երկու նախկին Խորհրդային հանրապետութիւններու լարուած սահմանին եւ համատեղ զինուորական վարժանքի համար հրաւիրեց ԱՄՆ-ի ջոկատներ:

Երեւանի Ժողովրդավարութեան եւ Ապահովութեան Տարածաշրջանային Կեդրոնի ռազմական վերլուծող Էդուարդ Առաքելեան հաստատեց, որ արտահոսուած փաստաթուղթերը կը վերաբերին ռազմական սարքաւորումներու՝ զորս վերջին տարիները Ազըրպէյճան գործածեց ըլլայ Լեռնային Ղարաբաղի մէջ կամ բուն Հայաստանի Հանրապետութեան դէմ:

«Այս սարքը աւերիչ ազդեցութեամբ գործածուեցաւ հայկական ջոկատներու դէմ եւ տրամադրուած է երկիրի մը կողմէ՝ որ ենթադրուած է ըլլալ Հայաստանի դաշնակից մը», ըսաւ ան: «Զեւական առումով, ասիկա ամբողջական խախտումն է ՀԱՊԿ դաշինքին բայց, ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԸՆԴԴԻՄԱԴԻՐՆԵՐՈՒ ՎԱՐՉԱՊԵՏԻ ԹԵԿՆԱԾՈՒԹԻՒՆԸ

Տաւուշը Յանուն Հայրենիքի շարժումը կը շարունակէ իր գործողութիւնները: Շարժումին առաջնորդն է Բագրատ Արքեպիսկոպոս Գալստանեան, որ կը ներկայանայ իբրեւ ընդդիմութեան վարչապետի թեկնածու, իր իսկ խօսքով՝ Ամենայն Հայոց Կաթողիկոսի օրհնութեամբ: Շարժումին յայտարարուած նպատակը մէկ բան է՝ Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի հրաժարականը:

Ինչպէս միշտ, Իրազեկ Քաղաքացիների Միաւորում հասարակական կազմակերպութիւնը օդապատկերահանումի միջոցով իրականացուց շարժումի վերջին հանրահաւաքներու մասնակիցներուն քանակային հաշուարկումը: Յունիս 9-ի Հանրապետութեան Հրապարակի հաւաքին՝ շուրջ 15,400 մարդ, Յունիս 10-ի Բաղրամեան-Դէմիրճեան խաչմերուկի հաւաքին՝ 2100, Յունիս 12-ին նոյն տեղը՝ 3400, Յունիս 17-ին նոյն տեղը՝ 4000:

Յունիս 12-ին, Խորհրդարանի շէնքին մէջ Փաշինեան կը մասնակցէր պիւտճէի կատարողականի քննարկումին եւ ապա պատգամաւորներուն հետ հարցուպատասխանին: ԱԺ դիմաց կը հաւաքուին Փաշինեանի հրաժարականը պահանջող շարժումին անդամները, որոնք կ'որոշեն արգիլել վարչապետին ելքը Խորհրդարանի շէնքէն: Ոստիկանական մեծաթիւ ուժեր կը հասնին Բաղրամեան-Դէմիրճեան խաչմերուկ: Հարցուպատասխանը չէր աւարտած, երբ ցուցարարները կը բարձրանան ճաղավանդակներուն վրայ եւ կը մտնեն ԱԺ շէնքին յարակից Սիրահարներուն պարտէզը, անկէ ԱԺ շէնք մտնելու մտադրութեամբ: Ոստիկանութիւնը կ'արձագանգէ լուսաձայնային նռնակներով: Յետոյ մէջտեղ կ'ելլէ, որ Փաշինեանը իր սովորական ուղիով լքած է ԱԺ-ն: Կը հաղորդուի 101 քաղաքացիական անձերու եւ ոստիկաններու թեթեւ եւ միջին ծանրութեամբ վիրաւորեալներու մասին (85-ը շուտով դուրս կը գրուին):

## ՅԱՋՈՐԴ ՏՐԱՄԱԲԱՆԱԿԱՆ ՔԱՅԼԸ ՊԻՏԻ ԸԼԼԱՅ ԴՈՒՐՍ ԳԱԼ ՀԱՊԿ-ԷՆ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏ

Յաջորդ տրամաբանական քայլը պիտի ըլլայ դուրս գալ ՀԱՊԿ-էն, Յունիս 13-ին Ազգային Ժողովի մէջ յայտարարեց վարչապետ Նիկոլ Փաշինեան:

«2021-2026 թուականի կառավարութեան ծրագրում չենք ասել, որ մնալու ենք ՀԱՊԿ անդամ», - ըսաւ ան:

«Հնարաւոր է մէկ ամիս, հնարաւոր է մէկ տարի, հնարաւոր է երեք տարի յետոյ» տեղի ունենայ ան, աւելցուց վարչապետը:

Յունիս 12-ի Ազգային Ժողովի հարցուպատասխանին Փաշինեան ըսած էր. «Մեղաւորը նրանք ենք, ովքեր ձեւաւորել են մի հատ փուչիկ դաշինք, որի անդամները, պարզուեց, գնացել, Ադրբէջանի հետ պլանաւորել են մեր դէմ պատերազմը», - յայտարարեց Փաշինեան:

## ՀԱՅԱՍՏԱՆ-ԱՄՆ ՌԱԶՄԱՎԱՐԱԿԱՆ ԵՐԿԽՕՍՈՒԹԵԱՆ ՆԻՍՏ

Յունիս 11-ին Երեւանի մէջ կայացաւ Հայաստան-Միացեալ Նահանգներ ռազմավարական երկխօսութեան ամփոփիչ նիստը:

Այս նպատակով Երեւան կը ժամանէ ԱՄՆ Եւրոպայի եւ Եւրասիոյ հարցերով փոխ պետական քարտուղար Ճէյմս Օ'Պրայնի գլխաւորած պատուիրակութիւնը:

Տեղի կ'ունենայ Հայաստանի արտաքին գործոց նախարար Արարատ Միրզոյեանի եւ Օ'Պրայնի հանդիպումը: ԱՄՆ ունի մեծ ներուժ՝ նպաստելու Հարաւային Կովկասի մէջ հաստատել կայուն եւ արժանապատիւ խաղաղութիւն, կը յայտարարէ Միրզոյեան: Իր կողմէ Օ'Պրայն կը շեշտէ՝ թէ Ուաշինկթոն կ'աջակցի տարածաշրջանին մէջ տեւական խաղաղութիւն հաստատելու ջանքերուն:

Օ'Պրայն հանդիպում կ'ունենայ վարչապետ Նիկոլ Փաշինեանի հետ: Անոնք կը խօսին Հայաստան-Ազըրպէյճան խաղաղութեան պայմանագիրին շուրջ ընթացող քննարկումնե- ↳ 4

# ՊԱՐՈՅՐ ԱՐՄԷՆԵԱՆ

## Եգիպտահայ դաշնակահարը՝ որ ասուպի պէս եկաւ ու անցաւ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

Յօդուածի վերջաւորութեան յիշատակուած Պախի *Անգլիական սիւիթ*երէն մէկուն առաջին մասը եւ Շոփէնի Պալլատներէն մէկը Արմէնեան նուագած է Պէրպէրեան Վարժարանի կազմակերպած գեղարուեստական ցերեկոյթին՝ Ապրիլ 9, Օփերայի Արքայական Թատրոն:

Անահիտ Նաւասարդ՝ յայտնի մտաւորական-գործիչ Կարապետ Նաւասարդի դուստրը եւ նկարիչ Օննիկ Աւետիսեանի յետագայ կինը, որ շրջան մը յաջողութեամբ փորձած է վարել գրական ինքնուրոյն գործունէութիւն, արձանագրեց՝ որ «դեռատի Պարոյր Արմէնեան, Բրօֆ. Բիւլիէգիի տաղանդաւոր աշակերտը, […] գիտցաւ ըմբռնել Պախը ու անոր խորութիւն թափանցել»(9):

Նոյն ելոյթին առիթով, *Սավուար* լրագիրի քննադատ Ռոպէր Պլում կը կրկնէ Նազարեանցի այլապէս արտայայտած կարծիքը՝ թէ Արմէնեան «ալ ոչինչ ունի սորվելիք Եգիպտոսի մէջ», աւելցնելով՝ որ անոր նուագը «նշանակելի պարզութիւն մը ունի»(10):

1933 Ապրիլ 22, Ֆրանսական Լիսէի սրահ, Դպրոցասէր Տիկնանց Ընկերութեան տարեկան նուագահանդէս, ղեկավարութեամբ Փրոֆ. Փուլյիզիի: Արմէնեան կը նուագէ Մենտելսոնի թիւ 1 Քոնչերթոն, նուագախումբի ուղեկցութեամբ: Անստորագիր հայ քննախօսը կը գրէ.

«Բայց օրուան *քլու*ն հանդիսացաւ անտարակուսելիօրէն երիտասարդ եւ դաշնակահարի արուեստին մէջ յայտնութիւն մը եղող Պ. Պարոյր Արմէնեան:

«Պ. Արմէնեան նուագախումբի մասնակցութեամբ մը առանց նօթատետրի անընդհատ նուագեց Մէնտէլսօնէն Մօլթօ Ալլէկրօի, Անտանդէի եւ Բրէսթօ-Ալլէկրօ Մօլթօի յոյժ դժուարին եւ երկարաշունչ կտորները՝ հանդիսականները խանդավառ ծափահարութեանց մէջ, անգամ մը եւս երեւան հանելով տաղանդաւոր հայ երիտասարդին յաջողութիւնը»(11):

1934 Մայիս 26, Ամերիկեան Համալսարանի սրահ, հրապարակային հանդէս Հ. Բ. Ը. Միութեան 28-րդ տարեդարձին առիթով, որուն կը մասնակցի Արմէնեան:

1934 Մայիս 27, Քոնթինանթալ պանդոկի սրահ, Փրոֆ. Էթթորէ Փուլյիզիի աշակերտներուն տարեկան ունկնդրութիւնը: 15 աշակերտներէն 9-ը՝ հայ(12): Արմէնեան կը նուագէ երեք Շոփէններ՝ Փրէլիւտ, Նոքթիւրն ֆա տիէզ, եւ Պալլատ թիւ 4(13): *Արեւ* կը գնահատէ.

«Հիմա պէտք ենք խօսիլ երիտասարդ Պարոյր Արմէնեանի մասին որմով այլ առիթներով զբաղած ենք: Առջի կիրակի օր ճակատուեցաւ Շօբէնի ծայրայեղ դժուարութիւններով լի յօրինումներուն հետ: Պէմօլով Բրէլիւտին մէջ եւ ֆա տիէզով Նօգթիւրնին մէջ ինքնատիպ արտայայտող մը եղաւ, հաւատարիմ հեղինակին դիտումներուն, առանց ծայրայեղութեանց մէջ իյնալու:

«Չորրդ Պալլատը մեծամեծ դժուարութիւններ կը թագցնէ՝ նուագումին եւ թէքնիքին մէջ, ինչպէս նաեւ դիւթական յստակութեամբ արտաքին ձեւերուն մէջ: Պ. Արմէնեան ի յայտ բերաւ Շօբէնի դժուարին գործին հանդէպ կատարեալ հասկացողութիւն մը, եւ հպումի ու շեշտի շատ գեղեցիկ այլազանութեամբ մը կրցաւ պատկերացնել զանազան ֆազերը: Ժողովուրդին կողմէ յամառ կերպով կանչուած՝ ստիպուեցաւ քանիցս ներկայանալ՝ իր վարպետին կողքին»(14):

Կարգը Նազարեանցինն է.

«Այս կիրթ ու շնորհալի երիտասարդէն – կամ, թերեւս, աւելի ճիշդ լինէր ըսել՝ պատանիէն – հեռու է ամէն շինծու կեցուածք ինչպէս իր նուագի ձեւին, այնպէս ալ էութեան մէջ. եւ Պարոյրի այդ յատկութիւնը՝ իր զուտ երաժշտական կարողութիւններէն ոչ նուազ՝ թովչութիւն կը հաղորդէ իր նուագին:

«Արդէն քանի մը անգամ առիթ ունեցած եմ խօսելու այս էջերուն մէջ Պարոյրի մասին: Ու վերջին նուագահանդէսը նոր ապացոյց մըն էր, որ ան, շարունակելով յառաջդիմել, ի յայտ կը բերէ միշտ նորանոր ու միշտ աւելի բարձր գեղարուեստական արժանիքներ. իր հարուածը դարձեր է աւելի առնական, հնչիւնը աւելի լեցուն ու կայուն, եւ նուագը կատարելապէս անբռնազբօս:

«Իր նուագածն էր՝ երեք կտոր Շոպէնէն – մէյմէկ Նախերգան, Գիշերային եւ Գեղօն: Առաջինի մէջ կարելի էր լսել զարմանալի, թափանցիկօրէն յստակ piano մը. իսկ Գիշերայինի մէջ նուագը ուղղակի կը խօսէր: Եւ ի՜նչ զուսպ, ազնուական չափաւորութիւն. շատ դիւրին է Շոփէնի վիպականութենէն իյնալ քաղցրացատիր զգացիկութեան մէջ եւ ձանձրալի դառնալ. բայց Պարոյրը միշտ ալ մնաց այդ երկու տրամադրութիւնները իրարմէ բաժնող գծէն անդին»(15):

Նոյն օրը Հիլտա Արմէնեան կը նուագէ Պախի *Իտալական Քոնչերթօ*ն:

Արմէնեան կը նուագէ Այծեմնիկ Տիկնանց Միութեան Ժ. տարելիցի տօնակատարութեան, 1935 Յունուար 20, Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիըլ Հոլ(16):

Եկեղեցւոյ Հոգաբարձութեան եւ Տիկնանց Խնամակալութեան կազմակերպած կրօնա-ազգային երգահանդէսը տեղի կ'ունենայ 1935 Փետրուար 10-ին, Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիըլ Հոլին մէջ(17), ուր Արմէնեան կը նուագէ Շոփէնի Էթիւտը՝ երկ 10 թիւ 3, եւ Վալսը՝ երկ 12(18):

*Արեւ*ի աշխատակից (յետագային՝ խմբագրապետ) Յակոբ Արամեան կ'արձանագրէ. «Երիտասարդ եւ տաղանդաւոր դաշնակահար Պ. Պ. Արմէնեան, զոր այնքան հազուադէպ կերպով կը տեսնենք բեմի վրայ՝ ունի արդէն իսկ լայն ժողովրդականութիւն մը եւ արժանացաւ որոտընդոստ ծափերու՝ նուագելով Շօբէնէն երկու կտորներ: Բեմին վրայ եւ հասարակութեան դէմ առ դէմ զտնուելու վարժութիւնը կը պակսի իրեն դեռ, եւ այդ զգալի է երբ դաշնակին կը մօտենայ եւ երբ կը հեռանայ անկէ: Բայց երբ դաշնակին առջեւ է բազմած՝ կ'իշխէ, կը տիրապետէ այլեւս, թէ՛ ստեղնաշարին եւ թէ այդ ստեղնաշարէն քաղուած դաշնակութեան հեղեղներուն հանդէպ հիացիկ, սրտատրոփ հասարակութեան»(19):

1935 Մայիս 12, Լիսէ Ֆրանսէի սրահ, երգահանդէս ի նպաստ Գահիրէի Մխիթարեան Վարժարանի շինութեան: Արմէնեան կը հնչեցնէ Շոփէնի Պալլատ թիւ 1-ը՝ «իրեն յատուկ ինքնավստահութեամբ ու յափշտակութեամբ եւ խանդավառօրէն ծափահարուեցաւ»(20):

Փուլյիզի որոշեր է աշակերտական խմբային ունկնդրութիւններու փոխարէն, լաւ աշակերտներուն առիթ տալ անհատաբար ելոյթ ունենալ: Լիպարիտ Նազարեանց գոհ է այս նոր ձեւէն. «Եւ այդ շատ աւելի լաւ է: Արդարեւ, երբ հանդէսի մը կը մասնակցին շուրջ երկու տասնեակ անձեր, անոնցմէ իւրաքանչիւրը կրնայ մէկ կտոր միայն նուագել, ու որքան ալ մեծ ու բարդ ըլլայ այդ կտորը՝ անոր հիման վրայ կարելի է միայն հեռաւոր գաղափար կազմել նուագողի ընդունակութեանց եւ երաժշտական զարգացման – ըմբռնումի ու թեքնիքի – աստիճանի մասին: Խնդիրը, սակայն, կը փոխուի, երբ հնարաւորութիւն կը տրուի ամբողջ ժամ մը կամ մէկ ու կէս ժամ լսել միեւնոյն նուագողը տարբեր հեղինակներու երկերուն մէջ. այդ պարագային ունկնդիրը բազմակողմանի եւ ամբողջական ծանօթութիւն կ'ունենայ անոր մասին»(21):

Այս ծիրին մէջ, եղանակի առաջին նուագահանդէսը 1937 Մարտին Փուլյիզի կը յատկացնէ իր աւագ աշակերտ Պարոյր Արմէնեանին: «Այդ տղան հասակ նետեց մեր աչքին առջեւ, ու մենք կարելիութիւն ունեցանք հետեւելու անոր զարգացման ամբողջ ընթացքին», դիտել կու տայ Նազարեանց եւ կը շարունակէ. «Շուպերթի Էնփրոմթիւէն (as dur), որուն մէջ առաջին անգամ լսեցինք զինքը շուրջ եօթը տարի առաջ, մինչեւ Պեթհովէնի *Ափասիոնաթա* սոնաթը, զոր ան նուագեց վերջին անգամ, երկար ճամբայ մըն է դժուարութիւններով լեցուն: Ու կը թուի թէ Պարոյր յաղթահարած է զանոնք առանց ճիգի, վասնզի հակառակ որ իր «կողմնակի» զբաղումները, դժբախտաբար կը կլանեն գրեթէ իր ամբողջ ժամանակը, ան ներկայացաւ ունկնդիրներուն իբրեւ հասուն երաժիշտ»(22):

Կը նուագէ Պեթհովէնի *Ափասիոնաթա* Սոնաթը, Շոփէնի թիւ 2 Սքերծոն սի պեմոլ մինոր, Շոփէնի երեք Փրելիւտներ, եւ Սեզար Ֆրանքի *Փրելիւտ, քորալ եւ ֆիւկը*:

1937 Մայիս 8, Ամերիկեան Համալսարանի սրահ, հանդէս Հ. Բ. Ը. Միութեան 31-րդ տարեդարձին առիթով: Կը նուագէ Շոփէնի թիւ 2 Սքերծոն(23):

1938 Մայիս 28, Ամերիկեան Համալսարանի սրահ, Փուլյիզիի աշակերտներուն նուագահանդէսը, մասնակցութեամբ բազմաթիւ աշակերտներու, ի տարբերութիւն նախորդ տարուայ անհատական ելոյթներուն(24):

Պարոյր եւ Հիլտա Արմէնեաններ կը մասնակցին նուագախումբի նուագակցութեամբ, նուագավար՝ Եգիպտոս հաստատուած իտալացի Մաէսթրօ Փոմփէօ Մինաթթօ:

Պարոյր կը նուագէ Պեթհովէնի թիւ 3 Քոնչերթօն եւ չ'ուշանար Նազարեանցի արդէն պարտադիր դարձած հիացական մեկնաբանութիւնը.

«Նուագահանդէսի «գամը» անտարակոյս Պեթհովէնի do mineur քոնչերթօն էր, որ նուագախումբի ընկերակցութեամբ նուագեց Պարոյր Արմէնեան:

«Կ'ըսուի, թէ սովորաբար գաղափարն ու ոճը իրար կը պատճառաբանեն: Այդպէս չէ սակայն, Պեթհովէնի քով: Հոտ գաղափարը – այս պարագային՝ բնաբանը (theme) – խտացուած արտայայտութիւնն է այն ամէնի, ինչ որ կ'ուզէ ըսել հեղինակը. ուրիշ խօսքով՝ սկիզբն ու էութիւնը այն ամէնի, ինչ որ ի յայտ կուգայ մշակման ու ոճի միջոցով, որոնք այդպէսով ենթակայ են գաղափարին: Պարոյր լաւապէս ըմբռնած էր հանճարեղ երգահանի այդ յատկութիւնը. եւ այդ երեւան կուգար ոչ միայն իր նուագէն, ուր ան կարծես բնազդաբար կը ցայտեցնէր բնաբանները, այլեւ իր սեփական *քատանս*էն, որ յաջող համադրութիւնն էր Պեթհովէնի գաղափարական յղացումներուն: Պարոյրի քով մասնաւոր յիշատակութեան արժանի է հոգեկան առոգութիւնը, զոր ան կը դնէր *քանթիլէն*ի մէջ եւ այդպէսով խոյս կուտար զգայնոտութենէ եւ ողբերգականութենէ, որոնք այնքան օտար են Պեթհովէնին: Տրամաթիք բախումներ, այո՛, բայց ոչ մէկ տեղատուութիւն, ոչ մէկ ընկրկում: Ու լսողի հոգին կը խայտայ զի ան վստահ է վերջնական յաղթանակին»(25):

Ասկէ ետք իր անունին չենք հանդիպիր մամուլին մէջ: Հաւանաբար ունեցած է այլ ելոյթներ՝ որոնք չեն արձանագրուած:

(Շար. 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

9. Անահիտ Կ. Նաւասարդ, «Գեղարուեստական ցերեկոյթի մը առթիւ», *Արեւ*, 15 Ապրիլ 1933, ԺԷ. տարի, թիւ 4333, էջ 3:

10. «Պէրպէրեան Վարժարանի ցերեկոյթը (օտար մամուլի արձագանգը)», *Արեւ*, 22 Ապրիլ 1933, ԺԷ. տարի, թիւ 4338, էջ 3:

11. «Դպրոցասէր Տիկնանց Ընկ.եան նուագահանդէսը», *Արեւ*, 25 Ապրիլ 1933, ԺԷ. տարի, թիւ 4340, էջ 3:

12. Լ. Ն., «Արուեստի աշխարհէն. Պրոֆ. Է. Պուլյիզիի աշակերտներու նուագահանդէսը», *Յուսաբեր*, 16 Յունիս 1934, Ի. տարի, թիւ 63, էջ 2:

13. «Բրօֆ. Բուլեիզիի աշակերտներուն նուագահանդէսը», *Արեւ*, 4 Յունիս 1934, ԺԹ. տարի, թիւ 4681, էջ 3:

14. Անդ, էջ 3:

15. Լ. Ն., «Արուեստի աշխարհէն. Պրոֆ. Է. Պուլյիզիի աշակերտներու նուագահանդէսը», *Յուսաբեր*, 20 Յունիս 1934, Ի. տարի, թիւ 66, էջ 3:

16. *Արեւ*, 19 Յունուար 1935, ԺԹ. տարի, թիւ 4875, էջ 3:

17. *Արեւ*, 7 Փետրուար 1935, ԺԹ. տարի, թիւ 4891, էջ 3:

18. Յայտագիր:

19. Հրահատ [Յակոբ Արամեան], «Եկեղեցական երաժշտահանդէսը», *Արեւ*, 14 Փետրուար 1935, ԺԹ. տարի, թիւ 4897, էջ 3-4:

20. Ա., «Կիրակի օրուան երգահանդէսը», *Յուսաբեր*, 14 Մայիս 1935, ԻԱ. տարի, թիւ 36:

21. Լ. Ն., «Պ. եւ Հ. Արմէնեաններու նուագահադէսները», *Յուսաբեր*, 18 Մարտ 1937, ԻԲ. տարի, թիւ 294:

22. Անդ:

23. Բ., «Բարեգործականի հիմնադրութեան 31-րդ տարեդարձը տօնուեցաւ ժողովրդային մեծ խանդավառութեամբ», *Արեւ*, 14 Մայիս 1937, ԻԱ. տարի, թիւ 5583, էջ 3:

24. «Երաժշտական աշխարհէն», *Յուսաբեր*, 26 Մայիս 1938, ԻԴ. տարի, թիւ 46: «Հայկ. յաջողութիւն մը», *Արեւ*, 2 Յունիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5904, էջ 1: Լ. Ն., «Հայ դաշնակահար քառեակը», *Յուսաբեր*, 2 Յուլիս 1938, ԻԴ. տարի, թիւ 77:

25. Լ. Ն., «Հայ դաշնակահար քառեակը», *Յուսաբեր*, 2 Յուլիս 1938, ԻԴ. տարի, թիւ 77:

ԳԱՀԻՐԷ

# ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐԻ* 63-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵՐԿԱԹ ԸՆՏԱՆԻՔԻ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՇՐՋԱՆԻՆ




Լոյս տեսաւ *Ջահակիրի* ԿԳ. (63) Յաւելուածը՝ *Պայծառ Երկաթ եւ ընտանիք (Եգիպտոսի շրջան՝ 1923-1948)*, 76 էջ:

Քէմալականներէն խոյս տալով, 1923-ին իր ընտանիքին հետ Աղեքսանդրիա կը հաստատուէր Պայծառ Երկաթ (1889, Չօմաքլու – 1988, Երեւան), այնտեղ ծաւալելով թատերական (դերասանութիւն, բեմադրութիւն եւ թատերագրութիւն), գրական (արձակ եւ բանաստեղծութիւն) եւ հասարակական շատ կարեւոր գործունէութիւն:

Աւագ զաւակը՝ Մարի Մարիքեան-Երկաթ, եղած է դաշնակահարուհի, ինչպէս նաեւ վերակազմած ու վարած Տիգրան Երկաթի քառաձայն երգչախումբը:

Երկրորդ զաւակը՝ Արփինէ Աճէմեան-Երկաթ, եղած է մեներգչուհի (սոփրանօ), իր մեներգային մասնակցութիւնը բերած աղեքսանդրահայ ձեռնարկներուն:

Երրորդ եւ վերջին զաւակն է յայտնի պարիթոն Միհրան Երկաթ: Փոքր տարիքէն ցուցաբերած է յատուկ սէր ու տաղանդ երգի եւ բեմի նկատմամբ, Էթթորէ Քորտոնէի ձեռքին տակ ստացած երգչային մասնագիտական կրթութիւն, մասնակցած բազմաթիւ հայկական եւ տեղական ձեռնարկներու եւ երգահանդէսներու՝ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի բեմերուն վրայ մարմնաւորելով Ռիկոլեթթոյի, Ամոնասրոյի եւ Մօսիի դերերգները:

Պայծառի եղբայրը՝ Մկրտիչ Գալֆայեան, Սֆինքս գրչանունով երգիծական բանաստեղծութիւններ կը հրատարակէր *Սաւառնակի* մէջ:

Վերջապէս, Մարի Երկաթի դուստրը՝ Աննա Մարիքեան, Հայաստանի ապագայ յայտնի պարուհին, երեխայ տարիքէն ցուցաբերած է պարելու յատուկ ընդունակութիւն, գրաւելով մտերիմներուն եւ աղեքսանդրահայութեան ուշադրութիւնը:

Պայծառ Երկաթ, դուստրերը եւ եղբայրը 1948-ին Բ. կարաւանով ներգաղթած են Հայաստան, Միհրան Երկաթ ներգաղթած է 1947-ին Ա. կարաւանով:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՔԱՂԱՔԸ, ԱՆՀԱՏՆԵՐԸ, ԹԱՆԳԱՐԱՆԸ. ԱՆԻԻ ՊԵՂՈՒՄՆԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

### ԱԼՄԱՍՏ ՄՈՒՐԱԴԵԱՆ

Հարիւրամեակներ շարունակ արեւելեան մի քաղաքի մասին գրուել են բազմաթիւ ձեռագիր գրքեր: Այս քաղաքը յայտնի էր որպէս պաշտամունքային նշանաւոր կենտրոն: Այդտեղ էին կենտրոնացուած նաեւ ռազմական, հարկերի ու տուրքերի գանձման, շինարարական, դրամա-վաշխառուական գործառոյթները, իջեւանատները, ջրաղացները, արդիւնագործական ձեռնարկութիւնները: Բագրատունեաց արքունիքի նստավայր Անին յայտնի էր նաեւ իր մանրանկարչութեան դպրոցով: Իսկ թագաւորական արքունիքն ու կաթողիկոսարանն ունէին իրենց թանգարանները, որտեղ մեծ տեղ էին գրաւել ձեռագրերը:

961-ին Հայաստանի մայրաքաղաք հռչակուած Անին եղել է երկրի քաղաքական, մշակութային եւ հոգեւոր կենտրոնը: Արհեստների, առեւտրի, եկեղեցիների, պալատների, իջեւանատների քաղաք էր Անին, նաեւ կարեւոր խաչմերուկ՝ Արեւելքի եւ Արեւմուտքի միջեւ: Անին նշանաւոր է իր հարիւրաւոր վիմական արձանագրութիւններով: Արձանագրութիւններ, որոնց հետքերով աւելի քան քսան տարի շարժւում էին ժամանակի խոշոր հայագէտները: Անիի մասին տեղեկութիւններ են պահպանուել հայկական, վրացական, բիւզանդական, արաբական աղբիւրներում: Ընդարձակ վկայութիւններ են թողել միջնադարեան հայ պատմիչներ Ստեփանոս Տարօնեցին (Ասողիկ), Արիստակէս Լաստիվերցին, Սամուէլ Անեցին, Մատթէոս Ուռհայեցին, Մխիթար Այրիվանեցին, Վարդան Բարձրբերդցին, Կիրակոս Գանձակեցին եւ ուրիշներ:

1904 թուականին Անիի աւերակներում պեղումներ սկսեց իրականացնել անուանի հայագէտ Նիկողայոս Մառը, որի յայտնաբերած հնագիտական գտածոներով յետագայում թանգարան բացուեց: Մինչ այդ քաղաքը գրեթէ չէր պեղուել: Մառին հետաքրքրում էին ոչ միայն հին հայկական ձեռագրերը, այլեւ հնագիտական յուշարձաններն ու առաջին հերթին միջնադարեան մայրաքաղաք Անին: Մառը ձեռնարկել է Հայաստանի միջնադարեան մայրաքաղաքի պեղման աշխատանքները, որն ընդմիջումներով տեւել է աւելի քան 25 տարի:

Ականաւոր արեւելագէտ Նիկողայոս Մառի գլխաւորած արշաւախմբի կազմում էին նաեւ անուանի այլ հայագէտներ՝ Յ. Օրբելին, Թ. Թորամանեանը, Ա. Քալանթարը, Ն. Ադոնցը եւ ուրիշներ: Պեղումների արդիւնքում յայտնաբերուել է հսկայական նիւթական եւ հոգեւոր մշակութային ժառանգութիւն: Իսկ ահա կորստից փրկուած Անիի հաւաքածուն կարող էք այժմ տեսնել Հայաստանի պատմութեան թանգարանում:

Նիկողայոս Մառի քանամեայ պեղումները երեւան բերեցին Անիի նիւթական մշակոյթի բազմաթիւ նիւթեր, որոնք մեծ դեր խաղացին միջնադարեան Հայաստանի սոցիալ-տնտեսական կեանքի ուսումնասիրութեան գործում:

Անիի տարածքում գտնուած արձանագրութիւնները եւս կարեւոր աղբիւր են միջնադարեան Հայաստանի սոցիալ-տնտեսական եւ քաղաքական պատմութեան ուսումնասիրութեան համար: Արձանագրութիւնները 1906 թուականից հաւաքել ու հետազօտել է անուանի արեւելագէտ, հայագէտ Յովսէփ Օրբելին: Նրա հաւաքած արձանագրութիւնները հրատարակուեցին 1966 թուականին, *Դիւան հայ վիմագրութեան* մատենաշարի պրակով, որի մէջ ընդգրկուած են շուրջ 250 արձանագրութիւններ: Մառի պեղումները հնարաւո- ↳ 4

# ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱԾԱՆԻ

- Շատ անուշ է, տակը փուշ է:
- Մունջ կատուն շատ մուկ կը բռնէ, քանզ խօսունը:
- Ծառի տակին պառկելուն՝ բերանդ տանձ չի ընկնի:
- Անամօթ մարդի երեսին թքեցին, ասեց՝ անձրեւ ա գալիս:
- Գող, սիրտը դող:
- Կատուն օր միսին չիասնի, փի՜ւֆ հոտած է, կ'ըսէ:
- Անունը կայ, ինքը չկայ:
- Աչք ունի, լոյս չունի:
- Խօսքով փիլաւ չեփուիր:
- Գնաց թափելէն, եկաւ ժողվելէն:
- Մարդը քուն, մեղքը զարթուն:
- Ամէն բանի վերջն է գոզելի:
- Աչքդ բաց, մեղքդ լաց:
- Փողը հաշիւ ա սիրում:
- Աշխարհի շինողն ու քանդողը լեզուն է:
- Երեք չափէ, մէկ կտրէ:
- Ջրի բերածը, ջուրը կը տանի:
- Մի վախենա վարար գետից, վախեցիր մարմանդ գետից:
- Աշխարհին արօտ, մենք մէջը կարօտ:

ԽՈՀԵՐ

# ՕԳՆՈՒԹԻՒՆ ԲՆԱԿԱՆ ԱՂԷՏԻ ԶՈՀԵՐՈՒՆ՝ ԱՊԱՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Մայիս 26՝ ջրհեղեղ Հայաստանի Լոռի եւ Տաւուշ մարզերուն մէջ, Դեբէդ, Աղստեւ եւ Տաշիր գետերու վարարումին հետեւանքով: Չորս մարդկային զոհեր: Աղէտը բաւական մեծ է: Մինչեւ երկրորդ յարկ հասնող ջուրեր, վնասուած շէնքեր, ջուրի տակ թաղուած փողոցներ, ցամաքային կապերու խզում, ճանապարհներու եւ կամուրջներու փլուզում, կազի, ելեկտրականութեան, համացանցի եւ հեռախօսի խափանումներ, անանցանելի ճանապարհներ, երկաթուղիի վնասուածք, անասուններու կորուստ:

Կը յայտարարուի արտակարգ իրավիճակ եւ կը ձեւաւորուի յատուկ գործողութիւններու մասնախումբ: Հետեւանքներու գնահատումին համար Մայիս 30-ին Հայաստան կը դիմէ ԵՄ եւ ՄԱԿ:

Տուժողները մարդիկ են: Միջին եւ ցած դասակարգերու մարդիկ: Օլիկարքներ չեն՝ որ իրենց ձայնը անցընեն լրատուամիջոցներէն եւ աշխատին զոհուածութեան սիրելի գաղափարին վրայ: Օրապահիկը վաստակող մարդիկ են, չարքաշ աշխատողներ, որոնք կորսնցուցին հող, ունեցուածք, անասուն, որոնց վերականգնումը պիտի տեւէ տարիներ, եթէ երբեւէ վերականգնուին:

Հակառակ կառավարութեան կողմէ ներդրուելիք հսկայական գումարներուն, չլսեցինք օլիկարքական կամ սփիւռքեան նուիրատուութիւններ կամ կարողներու ուղղակի նիւթական մասնակցութիւն ի նպաստ տուժողներուն: Կարողը ի՞նչ պիտի ստանար իր նուիրատուութեան փոխարէն: Ընդհանրապէս, նուիրատուները պէտք է փայլին իրենց հայրենասիրութեամբ: Ի՞նչ հայրենասիրութիւն կայ այստեղ, բնական կլիմայական աղէտի զոհ դարձածներուն օգնելով:

Եւ տակաւին կը խօսինք միայն նիւթականի մասին: Հապա տուժածներուն հոգեկա՞ն վիճակը: Հոգեկան աջակցութիւնը հայրենասիրութիւն չէ: Մեծահարուստի մը միանուագ կլորիկ դրամն է հայրենասիրութիւնը, դրամ՝ որուն տիրացած է դասակարգային շահագործումի շնորհիւ եւ կը ներկայացնէ իր գերշահոյթի յաւելեալ արժէքի գրեթէ աննշան մասը:

Ի՞նչ բան է հայրենասիրութիւնը: Հո՞ղ թէ մարդ: Պիտի առարկուի՝ երկուքն ալ, հողն ու մարդը: Այսօրուայ մեր տեսած հայրենասիրութիւնը հողն է մարդէն առաջ, յաճախ նաեւ առանց մարդու: Մարդը, եթէ յիշատակուի, կը դառնայ լոկ հայրենասիրական շահագործումի առարկայ՝ հողի հայրենասիրութեան համար: Իսկ երբ հողի հայրենասիրութիւն չկայ, մարդն ու մարդկային զոհը կը դառնան ապահայրենասիրական իրեր:

Հողի համար պատերազմներ տեղի կ'ունենան՝ հայրենասիրական կանչերով, մարդու համար՝ ոչ: Պատերազմներուն մէջ ահռելի քանակութեամբ մարդիկ կը մեռնին. հոգ չէ, կարեւորը հողն է:

Ղարաբաղի հարցով շեշտը միշտ դրուած է տարածքի, հողի վրայ: Հայաստանի եւ Սփիւռքի մէջ տեղեակ անգամ չէինք ղարաբաղցիի կեանքի ներքին ծալքերուն, ապրելակերպին, գիւղերու առօրեային: Խօսքը ուսումնասիրութիւններու մասին չէ: Խօսքը հանրային իրազեկութեան մասին է: Ուսումնասիրութիւններու մեծամասնութիւնն ալ յուշարձաններու եւ եկեղեցիներու մասին է, բայց ոչ այդ նոյն եկեղեցիին մէջ աղօթող մարդուն: Եկեղեցիով կրնանք փաստել որ տուեալ հողը մերն է, մարդով՝ չենք կրնար:

Երբ 100 հազար ղարաբաղցիներ ստիպուած գաղթեցին տարածքէն՝ հողէն, մեր առաջին ուշադրութիւնը պէտք է ըլլար մարդը՝ գաղթական մարդը, որ կորսնցուց ամէն բան, անցաւ հոգեկան ցնցումէ եւ ցկեանս պիտի չկրնայ բաժնուիլ յիշողութեան տառապանքէն: Բայց դարձեալ առաջին ուշադրութիւնը եղաւ հողի բայց ոչ մարդու կորուստը: Մեծամեծները եւ ենթադրեալ ընդդիմութեան ղեկավարները խումբեր կազմեցին Ղարաբաղը վերազատագրելու կամ միջազգային ատեաններու միջոցով օրէնքի ուժով զայն ետ վերադարձնելու համար (երբ 30 տարի այդ նոյն օրէնքը չգործեց հայերուն օգտին, շնորհիւ մեծ տէրութիւններու շահերուն), բայց այդ նոյն մեծամեծերէն ոչ մէկը գնաց գործնականապէս դիմաւորելու եւ օգնելու գաղթականներուն՝ բուն տուժողներուն: Հայրենասիրութեան կէտ մը չունէին վաստակելիք անոնց օգնելով: Իրական օգնութիւնը եկաւ նշանակալի քանակութեամբ կամաւորներէ, որոնք անգնահատելի աշխատանք տարին գաղթականներու յատկապէս նախնական ընդունելութեան եւ տեղաւորումի տեսանկիւնէն: Անոնք մնացին անանուն, չփառաբանուեցան լրատուամիջոցներէն, քանզի հայ մարդու օգնութիւնը հայրենասիրութիւն չի նկատուիր: Հողի վերադարձի պահանջն է հայրենասիրութիւնը:

Մայիս 26-ի ջրհեղեղի զոհերը կը բնակին հայկական հողերու վրայ: Ազգային պետութեան բնորոշ վիճելի տարածքներ չեն այդ հողերը, որպէսզի շարժեն մեր հայրենասիրու- ↳ 4

# ՁԱՅՆԱԿԻՐ

## ՀԱՅԱՍՏԱՆ-ԱՄՆ ՌԱԶՄԱՎԱՐԱԿԱՆ ԵՐԿԽՕՍՈՒԹԵԱՆ ՆԻՍՏ

1

րուն եւ Ալմա-Աթայի հռչակագիրի հիման վրայ սահմանազատումի գործընթացին մասին:

Կը կայանայ Հայաստան-Միացեալ Նահանգներ ռազմավարական երկխօսութեան երկրորդ նիստը, որմէ ետք Հայաստանի եւ Միացեալ Նահանգներու կառավարութիւնները հանդէս կու գան համատեղ յայտարարութեամբ:

ԱՄՆ կը վերահաստատէ իր աջակցութիւնը Հայաստանի ինքնիշխանութեան, անկախութեան, ժողովրդավարութեան եւ տարածքային ամբողջականութեան՝ 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագիրին համապատասխան:

Պատուիրակութիւնները կը քննարկեն աւելի սերտ համագործակցութեան միջոցով փոխադարձ բարգաւաճումի, տնտեսական եւ ուժանիւթային աճի խթանումին ուղղուած համատեղ ջանքերը՝ ըստ Պրիւքսէլի 2024 Ապրիլ 5-ի Հայաստան-ԵՄ-ԱՄՆ բարձր մակարդակով համատեղ հանդիպումի քննարկումներուն:

Մասնակցողները կ'ընդգծեն ԱՄՆ աջակցութեան կարեւոր դերը Հայաստանի պաշտպանութեան ոլորտի վերափոխութեան եւ իրաւապահ համակարգի զարգացումի նախաձեռնութիւններուն մէջ, որոնց նկատմամբ ԱՄՆ նպատակ ունի շարունակել իր աջակցութիւնը խորհրդատուական ծրագիրներով, բանակային շփումներով, Միջազգային Ռազմական Կրթական եւ Ուսուցողական (IMET) ծրագիրի միջոցով մասնագիտական ռազմական կրթութեան հնարաւորութիւններով եւ Քանզասի ազգային պահակազօրի հետ երկարաժամկէտ պետական համագործակցութեան ծրագիրով:

Այսպէս, կարելի է ըսել, պրիւքսէլեան խոստումները կը սկսին մարմին ստանալ:

## ՁԵՆՔԻ ԳԱՂՏՆԻ ԳՈՐԾԱՐՔԸ՝ ՈՐՈՒՆ ՊԱՏՃԱՌՈՎ ՓՈՒԹԻՆ ԿՈՐՍՆՑՈՒՑ ԴԱՇՆԱԿԻՑ ՄԸ ...

1

գործնական առումով, մենք միշտ իրազեկ էինք որ դաշինքը աւելի աջակից է Ազրպէյճանին»:

Թէեւ թուղթի վրայ Հայաստանի դաշնակից մըն է, Պելառուսի նախագահ Ալեքսանդր Լուքաշենքօ Ազրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւին բնութագրած է իբրեւ «մեր մարդը» եւ ըսած՝ որ «սխալ» կ'ըլլայ եթէ ՀԱՊԿ-ը ընդդիմանայ անոր: Իր կարգին, 2022-ին Ալիեւ ըսած է՝ թէ «մենք ՀԱՊԿ-ի մէջ աւելի ընկերներ ունինք քան Հայաստան»:

Արդարեւ, ըստ մասնագէտներու, Պելառուսը – Մոսկուայի ամենամերձ դաշնակիցներէն մէկը – հազիւ թէ գործէ առանց Քրեմլինի լռելեայն աջակցութեան: «Ասիկա իրապէս ցոյց կու տայ՝ որ Վլատիմիր Փութինի նման ընկերներ ունեցողները պէտք չունին թշնամիներու», ըսաւ Ժողովրդավարութիւններու Պաշտպանութեան Հիմնադրամի հետազօտող Իվանա Ստրատներ:

«Ծիծաղելի է կարծել՝ որ այս փոխանցումները կրնային տեղի ունենալ առանց Մոսկուայի իրազեկութեան, եւ թէ Ռուսաստան չէր կրնար կանգնեցնել զանոնք եթէ ուզէր», աւելցուց ան: «Մոսկուայի համար չկայ հաւատարմութիւն, ամէն բան կը դառնայ սեփական ապահովութիւնը պահպանելու շուրջ, նոյնիսկ եթէ ան կը կատարուի իր սեփական դաշնակիցներու հաշուին»:

Յունիս 12-ին Փաշինեան կը բարձրաձայնէ իր մեղադրանքները: Յաջորդ օրը, Արտաքին Գործոց Նախարարութեան մէջ Պելառուս հանդիպումի կը հրաւիրէ Հայաստանի դեսպանը: Շուտով դեսպանը ետ կը կանչուի Երեւան եւ Պելառուսի դեսպանը կը վերադառնայ Մինսք, իբրեւ նշան երկու պետութիւններու միջեւ դիւանագիտական յարաբերութիւններու խզումին:

**POLITICO**
**13 Յունիս 2024**
Անգլերէնէ թարգմ.՝ Ա.

*Յ.Գ. – Մայիս 15-ին ՀԱՊԿ-ի անդամ երկիր Պելառուսի նախագահ Ալեքսանդր Լուքաշենքօ կը գտնուի Պաքու: Մայիս 16-ին ջերմագոյն հանդիպում կ'ունենայ Ալիեւի հետ: Ըստ պաշտօնական յայտարարութեան, երկու երկիրներու պատուիրակութիւններուն ընդլայնուած կազմով հանդիպումին Լուքաշենքօ կ'ըսէ Ալիեւին. «Յիշեցի մեր զրոյցը պատերազմէն առաջ, Ձեր ազատագրական պատերազմէն առաջ, երբ ճաշասեղանին շուրջ երկուքս միասին փիլիսոփայօրէն կը քննարկէինք: Այդ ժամանակ մենք եզրակացուցինք՝ որ կարելի է յաղթել պատերազմին: Ասիկա կարեւոր է, շատ կարեւոր է պահել այդ յաղթանակը, եւ երրորդ՝ մենք համաձայնեցանք, Դուք այդ ժամանակ շօշափեցիք այդ նիւթը, որ պատերազմէն ետք կը սկսի ամենածանր շրջանը, երբ պէտք կ'ըլլայ վերակենդանացնել ձեր ազատագրած հողերը: Եւ հիմա եկած է այդ դժուար ժամանակը, երբ անհրաժեշտ է վերակենդանացնել այդ հողերը, վերադարձնել մարդոց: Յաղթեցինք, յաղթանակը պահեցինք, հիմա պէտք է վերակենդանացնել: Ասիկա կարճ է ժամանակի, մեծ աշխատանքի, հինգ տարուայ, թերեւս տասը տարուայ մէջ դժուար ըլլայ ամէն բան ընել»:*

*Մայիս 17-ին Լուքաշենքօ կ'այցելէ «ազատագրուած» տարածքներ՝ Ֆիզուլի եւ Շուշի:*

*Պաքու այցելութեան ընթացքին Մինսքին կը տրուի Աղդամի բնակավայրերէն մէկուն կառուցումը՝ 420 ընտանիքի համար նախատեսուած գիւղատնտեսական քաղաք մը: Ասիկա միայն սկիզբն է, Ալիեւին նուէրը Լուքաշենքոյի զինային առեւտուրին: Լուքաշենքօ Ալիեւին կը հռչակէ Կովկասի ներկայ պատասխանատուն:*

*Կարելի՞ է տակաւին մնալ ՀԱՊԿ-ի մէջ: Ա.*

## ՕԳՆՈՒԹԻՒՆ ԲՆԱԿԱՆ ԱՂԷՏԻ ԶՈՀԵՐՈՒՆ...

3

թիւնը: Հողերը աւերուեցան, հոգ չէ: Այդ հողերը մերն են: Հայրենասիրական վիճելիութիւն չկայ որպէսզի ազդուինք հողերու աւերումէն: Նոյնիսկ հողը չյուզեց մեզի: Ալ ուր մնաց մարդը:

Հայրենասիրութիւնը, որ ինքնին լաւ բան մըն է եթէ կապուի հաւաքական փորձառութեան հետ, ստացած է սեւեռացուած ու բեւեռացուած կէտերու նշանակութիւն:

Ուրեմն, հայրենասիրութիւնը, իր ստացած ներկայ տեսքով, պէտք է տեղաւորուի չափի, ֆէթիշացած բառի, միակութեան, անվիճելիութեան սահմաններուն մէջ: Օրինակ՝

Արարատ բարձրանալը հայրենասիրութիւն է, ճամբուն վրայ կարօտեալ հայու մը օգնելը՝ ոչ.

Արարատ բարձրանալը պատմական Հայաստանի հայրենասիրական պատումն է, պատմական Հայաստանի մեկնողական վերլուծութիւնը՝ ոչ.

Պատմական Հայաստանը վերստանալու համար զինեալ պայքարի գաղափարը հայրենասիրութիւն է, իրական Հայաստանի իրական բնակչութեան կարիքները հոգալը՝ ոչ.

Քառակուսի մեթրով չափուող հողը հայրենասիրութիւն է, չափի չենթարկուող մարդը՝ ոչ.

Պատերազմը հայրենասիրութիւն է, ռէալփոլիթիքը՝ ոչ.

Պատերազմը հայրենասիրութիւն է, խաղաղութիւնը՝ ոչ.

Մեծահարուստի մը բարեսիրական միանուագ նուիրատուութիւնը հայրենասիրութիւն է, կամաւորներու օրեր եւ ամիսներ տեւած մարդասիրական աշխատանքը՝ ոչ.

«Դաւաճան», «հերոս» բառերուն արտասանութիւնը հայրենասիրութիւն է, իրադարձութիւններու համակողմանի վերլուծութիւնը՝ ոչ.

Հայոց Ցեղասպանութիւնը աշխարհի ամենացեղասպանութիւն անուանելը հայրենասիրութիւն է, Հայոց Ցեղասպանութիւնը ցեղասպանութեան, աղէտի, բնաջնջումի, պատերազմի դարաւոր եւ տարածական բնաբանին մէջ դիտելը՝ ոչ.

Բացառիկութիւնը հայրենասիրութիւն է, բազմազանութիւնն ու այլազանութիւնը՝ ոչ.

Եւ այլն, եւ այլն:

Ի՞նչ մնաց: Մայիս 26-ի աղէտեալներուն օգնելը հայրենասիրութիւն չէ:

## ՔԱՂԱՔԸ, ԱՆՁԱՆԵՐԸ, ԹԱՆԳԱՐԱՆԸ. ԱՆԻԻ ՊԵՂՈՒՄՆԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

3

րութիւն տուեցին պարզել քաղաքի ընդհանուր պատկերը, փողոցների համակարգը, ջրմուղի հիմնական ուղղութիւնները, բացուեցին հնագոյն պարիսպները, հրապարակները, բնակելի թաղամասերը, հիւրատները, կործանուած բազմաթիւ եկեղեցիներն ու մատուռները, մեծատունների շքեղ ապարանքների մնացորդները, արհեստաւորների գործատները, հասարակ ժողովրդի հիւղակները եւ այլն:

1910 թուականին Նիկողայոս Մառը հարց բարձրացրեց Անիում գիտահետազօտական ինստիտուտ հիմնելու մասին գաղափարը, որը երկար պայքարից յետոյ յաջողութեամբ լուծուեց 1917 թուականի ամռանը: Ինստիտուտի նիւթագիտական հիմք ստեղծելու նպատակով Մառը Պետրոգրադից Թիֆլիս ուղարկեց Անիի արխիվը՝ հնագիտական հաշուետուութիւններ, օրագրեր, լուսանկարներ: Իսկ 1910-ականներին թուրքական զօրքի քաղաք մտնելու պահին հնագէտ Ա. Քալանթարը, մի քանի լռոեցի զինուորների հետ, Անիի թանգարանային առարկաների մի մասը կարողացաւ փրկել: Այժմ դրանք պահւում են Հայաստանի պատմութեան թանգարանում:

**Պեղումների արդիւնքում կատարուած բացայայտումները**

1892 թուականին՝ Բախտաղեկի եկեղեցին,

1893 թուականին՝ Հռոմ իշխանուհու տոհմական եկեղեցին,

1904 թուականին՝ քաղաքի չքաւորական թաղամասերը եւ Անիի գլխաւոր փողոցի մի մասը,

1905-06 թուականներին՝ զուարթնոցատիպ Գրիգոր Լուսաւորիչ (Գագկաշէն) տաճարը,

1907-08 թուականին՝ միջնաբերդի պալատական շինութիւնները,

1909 թուականին Առաքելոց եկեղեցու շրջակայքը,

1909-11 թուականներին՝ քաղաքի փողոցները: 1910 թուականին ուսումնասիրուեցին «Սմբատաշէն» պարիսպները,

1913 թուականին պատճէնահանուեցին որմնանկարները, 1914-17 թուականներին հետազօտուեցին քարայրերը, բնակելի տներ եւ այլ յուշարձաններ:

**Անիի շուրջ վերջին բացայայտումները**

Հետաքրքիր է, որ օրինակ տարիներ առաջ, ըստ թուրքական *Հիւրիէթ Դէյլի Նիւզի*՝ Անի քաղաքում յայտնաբերուել են ստորգետնեայ գաղտնի կառոյցներ: Պատմաբան, հնագէտ Սեզայ Եազըջիի խօսքով՝ յայտնաբերուել են ստորգետնեայ ջրամատակարարման գաղտնի խողովակաշարեր, լայն միջանցքներ, խճճուող թունէլներ, վանականների խցեր, աղօթատեղիներ: Նա յայտնել է, որ Անիի աւերակների տակ եկեղեցու գոյութեան մասին առաջինը յիշատակել է Գիւրջիեւը, բայց տարիներ անց իտալացի հնագէտների խումբը հաստատեց ստորգետնեայ եկեղեցու գոյութիւնը: Իսկ մինչ Գիւրջիեւը շատ ճանապարհորդներ նշել են, որ Անիում բնակչութեան զգալի մասը ապրել է քարանձաւներում եւ քարէ տներում:

Թունէլների երկարութիւնը 500 մետրից աւելին է: Ստորգետնեայ քարանձաւների ու կառոյցների մեծ մասը ծառայել է որպէս բնակատեղի:

Յիշենք, որ Անիի աւերակները 2012 թուականին ներառուել են ԻՒՆԵՍԿՕ-ի համաշխարհային մշակութային ժառանգութեան ժամանակաւոր ցանկում, իսկ 2016 թ. Յուլիսի 15-ին՝ ԻՒՆԵՍԿՕ-ի համաշխարհային մշակութային ժառանգութեան ցանկում:

**Cultural.am**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1969 ՀԻՆԳՇԱԲԹԻ 4 ՅՈՒԼԻՍ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٦٩ الخميس ٤ يوليه ٢٠٢٤


# ՀԱՅԱՍՏԱՆԸ՝ ՖՐԱՆՍԱ-ՌՈՒՍԱՍՏԱՆ-ԱԶԸՐՊԷՅՃԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԽԱՉԱՁԵՒՈՒՄԻՆ ՄԷՋ

**ՖՐԱՆՍԱ-ՌՈՒՍԱՍՏԱՆ**

Ռուս-ուքրաինական պատերազմի սկիզբէն ի վեր, ՆԱԹՕ-ի սահմաններէն ներս Ֆրանսայի ձայնը եղած է մեղմօրէն վճռական՝ մղելու համար Արեւմուտքը աջակցիլ Ուքրաինային։ Վերջերս, սակայն, վերացաւ այդ համեմատական մեղմութիւնը եւ ձայնը դարձաւ խիստ, պահանջատիրական եւ մեծապէս թշնամական։ Ֆրանսա-Ռուսաստան առճակատումը վերածուեցաւ հանրային կարծիքի եւ զրաւեց լրատուամիջոցներու առաջնագիծ լուրերուն կարգը։

Ֆրանսան մերժեց Ռուսաստանի մասնակցութիւնը Նորմանտիի Վայրէջքային (Débarquement de Normandie) գործողութեան 80-ամեակին նուիրուած Յունիս 6-ի տօնակատարութեան, որուն մասնակցեցան աշխարհի շատ առաջնորդներ, ներառեալ Ուքրաինայի նախագահ Զելենսքի։

Մայիսի վերջերը կը տեղեկացուի՝ որ Փարիզ պատրաստ է ռազմական մարզիչներ ղրկել Ուքրաինա։ Ուքրաինական բանակի գլխաւոր հրամանատար՝ ժեներալ-գնդապետ Օլեքսանտր Սիրսքի կը յայտարարէ, որ ստորագրուած է համաձայնագիր, արտօնելու համար ֆրանսացի ռազմական խորհրդատուներու առաջին խումբին այցելութիւնը ուքրաինական վերապատրաստութեան կեդրոններ։

Ենթադրելի է, որ մարզիչներուն հետ, եւ անոնց քօղին տակ, Ֆրանսա ուղարկէ նաեւ յատուկ պատրաստուած ռազմախումբեր կամ վարձկաններ։ Փետրուարին Փարիզի մէջ կայացած համագումարներէն մէկուն մէջ, Ֆրանսայի նախագահ Էմմանուէլ Մաքրոն չի բացառեր Արեւմտեան խումբերու տեղադրումը գործնական հողի վրայ Ռուսաստանի դէմ կռուելու նպատակով։

Յունիս 6-ին Մաքրոն կը յայտարարէ՝ որ Ֆրանսա Ուքրաինային պիտի ղրկէ Միրաժ 2000 ռազմական օդանաւեր, իբրեւ Ֆրանսայի ռազմական ուղղակի աջակցութիւնը Ուքրաինային։

Այս բոլորը, անշուշտ, չ՚անցնիր առանց Մոսկուայի եւ հայերուս շատոնց ծանօթ Տիկ. Զախարովայի հակայարձակողական յայտարարութիւններով եւ ելոյթներով։

Ինչո՞ւ այս սրումը։

Առերեւութապէս Ֆրանսան է նախայարձակը։ Ուքրաինական հողի վրայ, ճիշդ է, Ֆրանսան է հրահրողը։ Բայց, իրականութեան մէջ, Ֆրանսա կը պատասխանէ Ափրիկէի վրայ Ռուսաստանի կատարած յաջորդական յարձակումներուն, որոնք կը թիրախաւորեն ֆրանսական գաղութատիրական շահերը այնտեղ։

*Ջահակիրի* Առաջնորդող յօդուած մը (թիւ 1965) կ՚ուրուագծէր Ռուսաստանի տարածումը Ափրիկէի մէջ, յատկապէս Ափրիկէի առանցքային Սահէլի Շրջանը, որմէ պիտի դիւրանայ յետագայ տարածումը ցամաքամասի հիւսիսին ու հարաւը։

Ափրիկէի ռուսական զաւթումը սկսած էր ուքրաինական պատերազմէն առաջ, բայց նոր թափ ստացաւ պատերազմէն ետք։ Փաստօրէն, ֆրանսական շահերն են որոնք կամաց-կամաց կ՚անցնին Ռուսաստանի ձեռքը, Ֆրանսան է որ կը հեռացուի վերազաւթեալ տարածքներէն, իր տեղը զիջելով Ռուսաստանին։

Ֆրանսան «աւանդական» գաղութատէրն է Ափրիկէի։ Ափրիկէն կը նշանաւորէ Ֆրանսայի հզօրութիւնը, ռազմական բացառիկութիւնը, եւ հիմա այս յատկութիւնները Ռուսաստան կը զրաւէ Ֆրանսայէն։

Երկու գաղութատիրական, նոր-գաղութատիրական եւ ծայրայեղօրէն իմփերիալիսթական երկիրներ՝ Ֆրանսա եւ Ռուսաստան, որոնք իրարմէ ոչ մէկ բանով տարբերած են ու կը տարբերին իրենց արտաքին յարձակողական քաղաքական նկրտումներուն մէջ, այժմ կը մաքառին իրարու դէմ։

Ֆրանսայի բացարձակ շահն է Ուքրաինայի պատերազմի միջոցով տեսնել տկարացած Ռուսաստան մը, Ափրիկէի կորուսեալ շահերը վերականգնելու հեռանկարով, թէեւ, դիտելով այսօրուան կացութեան, հազիւ թէ կարելի ըլլայ ենթադրել յետագայ հնարաւոր տկարացող Ռուսաստան մը։ Մանաւանդ որ Եւրոպան ալ սկսած է «յոգնիլ» ուրիշի համար (Ուքրաինայի) հակամարտելէ Ռուսաստանի դէմ եւ արդէն կարելի է տեսնել մեղմացումի կոչեր Եւրամիութենէն ներս, ի դէմս Ֆրանսայի ամբարձումին։

**ՖՐԱՆՍԱ-ԱԶԸՐՊԷՅՃԱՆ**

2023 Յուլիսին, Ազըրպէյճան Պաքու հրաւիրած էր անդրծովեան ֆրանսական տարածքներու՝ Մարթինիքի, Կուիէնի, Նոր-Քալետոնիայի եւ Ֆրանսական Փոլինեզիայի ակախականները (անջատողականները)։ Այս համագումարէն ետք կը ծնի «Պաքուի նախաձեռնողական խումբ»-ը, որուն նպատակն է աջակցիլ ազատագրութեան եւ հակագաղութատիրութեան շարժումներուն։

2023-ի վերջերը, ֆրանսական ներքին գործերու գործակալութիւնը յայտնաբերեց իբրեւ լրագրողներ ներկայացող երկու ազըրպէյճանցի կիներ, որոնք Նումէա (Նոր-Քալետոնիայի մայրաքաղաքը) գացած էին տեղւոյն վրայ հետեւելու Ֆրանսայի Զինուած Ուժերու նախարար Սեպաստիէն Լըքորնիւի այցելութեան։ Հիմնուելով գործակալական ծառայութիւններու ներսէն եկած աղբիւրներու վրայ, *Europe 1* կը նշէ՝ որ այս երկու կիները կը հանդիսանային Պաքուի լրտեսական ծառայութիւններուն մօտիկ անձեր։

*Radio France*-ի հետախուզական միաւորի քննութիւնը կը բացայայտէ Նումէայի անկախականներու այս տարուայ Մարտ 28-ի ցոյցին պատկերները, ուր կ՚երեւան Ազըրպէյճանի դրօշակը եւ պաստառ մը հետեւեալ գրութեամբ. «Փութին, բարի գալուստ Քանաքիի մէջ» (Քանաքի կը հանդիսանայ Նոր-Քալետոնիայի էթնօ-քաղաքական անուանումը)։

Ապրիլի կէսերուն, Նոր-Քալետոնիայի Խորհրդարանի նախագահի անունով Ազըրպէյճան կու գայ անկախական-անջատողական պատգամաւոր մը եւ կը ստորագրէ համագործակցութեան յուշագիր Ազըրպէյճանի Խորհրդարանին հետ, մասնաւորապէս մշակոյթի եւ կրթութեան բնագաւառներուն համար։

Ֆրանսայի ներքին գործերու եւ անդրծովեան տարածքներու նախարար Ժերալտ Տարմանի, Ապրիլի վերջերը Ֆրանսայի Ազգային Ժողովի օրէնսդրական յանձնախումբին առջեւ տուած բացատրութեան մէջ, Ազըրպէյճանի հակաֆրանսական դիրքաւորումը կը բացատրէ հայկական գործօնի առկայութեամբ, յատկապէս Հայաստանի նկատմամբ Ֆրանսայի վերջերս ցոյց տուած աջակցութեան. «Ազըրպէյճան կը փորձէ քալետոնեան ծրարը օգտագործել, պատասխանելու համար Ֆրանսայի բռնած դիրքորոշումին հայկական կոտորածին նկատմամբ ազըրպէյճանական իշխանութիւններուն կողմէ, ինչպէս նաեւ հայերուն նկատմամբ Ֆրանսայի ցուցաբերած պաշտպանութեան»։

Մայիս 13-ին Նոր-Քալետոնիայի մէջ կը բռնկին մեծածաւալ եւ վայրագ ցոյցեր, ի պատասխան Ֆրանսայի կողմէ որդեգրուելիք նոր սահմանադրական խնդրայարոյց կարգին՝ որ պիտի սահմանափակէ ընտրութեան իրաւունք ունեցող բնիկներուն քանակը։ Ցոյցերը, տարբեր չափերով, կը շարունակուին մինչեւ այսօր։

Մայիս 16-ին, *France 2*-ի հարցակէն, Ժերալտ Տարմանի կ՚ըսէ. «Ասիկա ցնորք չէ, այլ իրականութիւն։ [...] Կը ցաւիմ, որ Քալետոնիացի անջատողական առաջնորդներէն մաս մը գործարք կնքած է Ազըրպէյ-

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆ ԿԸ ՃԱՆԱՉԷ ՊԱՂԵՍՏԻՆԻ ՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Յունիս 21-ին, Հայաստանի Արտաքին Գործոց Նախարարութիւնը կը տարածէ պաշտօնական յայտարարութիւն.

«Գազայում տիրող աղէտալի հումանիտար իրավիճակը եւ շարունակուող ռազմական հակամարտութիւնն այսօր միջազգային քաղաքական օրակարգի՝ կարգաւորում պահանջող առաջնային խնդիրներից մէկն է։ Հայաստանի Հանրապետութիւնը կտրականապէս մերժում է զինուած հակամարտութեան ընթացքում քաղաքացիական ենթակառուցուածքների թիրախաւորումը, քաղաքացիական բնակչութեան դէմ բռնութիւնները եւ քաղաքացիական անձանց պատանդառումն ու գերեվարումը եւ միանում է առանց նախապայմանների նրանց ազատ արձակման միջազգային հանրութեան պահանջներին։

«Հայաստանի Հանրապետութիւնը միացել է ՄԱԿ-ի ԳԱ-ի բանաձեւերին, որոնք կոչ են անում անյապաղ հրադադար հաստատել Գազայում։ Աւելին, Հայաստանի Հանրապետութիւնն անկեղծօրէն շահագրգռուած է Մերձաւոր Արեւելքում խաղաղութեան եւ կայունութեան հաստատմամբ, հրեայ եւ պաղեստինցի ժողովուրդների միջեւ տեւական հաշտութեան կայացմամբ։ Միջազգային տարբեր հարթակներում մենք մշտապէս հանդէս ենք եկել պաղեստինեան հարցի խաղաղ եւ համապարփակ կարգաւորման օգտին եւ պաշտպանում ենք իսրայէլա-պաղեստինեան հակամարտութեան լուծման՝ «երկու պետութիւն» սկզբունքը։ Համոզուած ենք, որ դա միակ ճանապարհն է երաշխաւորելու, որ պաղեստինցիներն ու իսրայէլցիները կարող են իրականացնել իրենց օրինական ձգտումները։

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՄ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԵԽ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ԱՆԴԱՄՆԵՐՆ ԱՅՑԵԼԵԼ ԵՆ ԳՈՐԻՍ, ԽԱՉԻԿ ԵՒ ԵՐԱՍԽ ՀԱՄԱՅՆՔՆԵՐ

Հայաստանում Եւրոպական Միութեան դիտորդական առաքելութիւնն ընդունել է Եւրոպական Խորհրդի ճգնաժամային կառավարման քաղաքացիական ասպեկտների կոմիտէի պատուիրակութեանը։

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին նշուած է Հայաստանում Եւրոպական Միութեան դիտորդական առաքելութեան X-ի միկրոբլոգում տարածուած գրառման մէջ։

«Մեծ պատիւ է ընդունել Եւրոպական Խորհրդի ճգնաժամային կառավարման քաղաքացիական ասպեկտների կոմիտէի պատուիրակութեանը։ Այսօր [Յունիսի 27-ին] պատուիրակները հանդիպեցին Եւրոպական Միութեան դիտորդական առաքելութեան անձնակազմի հետ եւ միացան պարեկային խմբերին՝ Գորիսում, Խաչիկում եւ Երասխում՝ աւելին իմանալու Հայաստանում ԵՄ դիտորդական առաքելութեան աշխատանքի եւ տեղում տիրող իրավիճակի մասին», - նշուած է գրառման մէջ։

# ՊԱՐՈՅՐ ԱՐՄԷՆԵԱՆ
## Եգիպտահայ դաշնակահարը՝ որ ասուպի պէս եկաւ ու անցաւ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

Տարիներ ետք՝ 1945 Նոյեմբեր 24-ին, Ամերիկեան Համալսարանի սրահին մէջ, Հ. Բ. Ը. Միութեան հիմնարկութեան 39-րդ տարեդարձի հրապարակային հանդէսին Արմէնեան կը նուագէ Շոփէնի Սքերծոն (հաւանաբար՝ թիւ 2)(26):

Նուագեց «մեծ վարպետութեամբ», կը գրէ *Յուսաբեր*(27), իսկ *Արեւ* կ'արձանագրէ ելոյթին յաջողութիւնը. «Պ. Պարոյր Արմէնեան տաղանդաւոր դաշնակահար մը ըլլալու անվիճելի ձիրքով օժտուած, սակայն համեստ սիրողի մը աստիճանին վրայ քողածածուկ մնացած լաւ դաշնակահար Շոբէնիսթ մը՝ մեզի հրամցուց Շոբէնի Սքէրծօն: Անվերջ ծափահարութիւններ զինք բեմ վերակոչեցին եւ ան գոհացում տուաւ ժողովուրդին, նուագելով նաեւ ուրիշ կտոր մը»(28):

«Պ. Արմէնեան լաւ էր դաշնակի մէջ, թէպէտ աւելին կը սպասուէր իրմէ», կը նշէ *Սաւառնակի* խմբագիր Երուանդ Մսրլեան(29): Տակաւին պէտք է հասկնալ ինչ կը նշանակէ «աւելին կը սպասուէր»:

Արմէնեան այլեւս կը հեռանայ հանրութեան աչքէն:

Յետագային, Եւգենեա Արիստակեան-Կովկասեան իր յուշերուն մէջ պիտի յիշէր. «Ունենք եւ մի ուրիշ տաղանդաւոր դաշնակահար՝ Արմէնեան անունով, որը շատ զգայուն նուագող է, բայց, դժբախտաբար, նա զոհեց դաշնակը՝ վաճառականութեամբ զբաղուելով»(30):

Արիստակեան Եգիպտոսէն Հայաստան ներգաղթած է 1948 Օգոստոսի Բ. կարաւանով, հետեւաբար իր տեղեկութիւնը կը վերաբերի այդ թուականէն առաջ:

Ամէն պարագայի, հակառակ հանրային ասպարէզէն հեռանալուն, Պարոյր Արմէնեան կը շարունակէ երեւալ մտերիմ շրջանակներու մէջ, լրատուական տեսողութենէն հեռու:

Ձեռքիս տակ ունիմ Հելիոպոլսոյ իր բնակարանին մէջ 1955 Մայիս 29-ին տրուած սալոն-մենահամերգին յայտագիրը (տես լուսանկարը), ուր մէկ կտորի մը նուագածութեամբ կը մասնակցի իր 13-ամեայ զաւակը՝ Րաֆֆի.

1. Մոցարթ, Սոնաթ տօ մաժոր, դաշնակ՝ Րաֆֆի Արմէնեան:
2. Պեթհովէն, Սոնաթ տօ մինոր, երկ 111:
3. Պրամս, 3 Ինթերմեծծոներ, երկ 119:
4. Շոփէն, Սքերծօ, թիւ 3:

Կը նշանակէ՝ պահպանած է իր մատներուն թարմութիւնն ու սահունութիւնը:

1959-ին իր անունը կը գտնենք իբրեւ կնքահայր (հովանաւոր) Հելիոպոլսոյ Մխիթարեան նորակերտ վարժարանի հիմնարկէքին առիթով բեմին առջեւը շարուած սուրբերու անունները կրող ութ մարմարապատ խորանարդ քարերէն մէկուն, եգիպտահայ մեծահարուստ անուններու հետ միասին(31):

Ընդհանուր առմամբ, ինչպէս կ'երեւի նախընթացէն, Պարոյր Արմէնեանի տաղանդին մասին գրեթէ անտեղեակ պիտի մնայինք առանց Լիպարիտ Նազարեանցի քննախօսականներուն: Նազարեանց ի սկզբանէ հաւնեցաւ Արմէնեանին նուագը, որոշեց հետեւիլ անոր զարգացումին եւ անպայմանօրէն արձանագրել սեփական տպաւորութիւնները: Ինչպէս այլ առիթով նշած եմ, Նազարեանց կը քննախօսէր՝ երբ ըսելիք ունէր: Կը գրէր՝ երբ իր միտքն ու հոգին շարժած ըլլային: Եւ այս անկեղծութեան շնորհիւ իրազեկ դարձանք Պարոյր Արմէնեանի տաղանդին:

**ՐԱՖՖԻ ԱՐՄԷՆԵԱՆ**

1942 Յունիս 4-ին Գահիրէի մէջ կը ծնի Պարոյրի զաւակը՝ Րաֆֆի, յետագայ զանատահայ յայտնի նուագավարը: Րաֆֆի նոյնպէս կ'աշակերտէ Էթթորէ Փուլիզիին, ինչպէս նաեւ տեսական-երաժշտական դասեր կ'ընդունի Փոմփէօ Մինաթթոյէն:

Վերը տեսանք 13 տարեկանին իր մասնակցութիւնը հօրը սալոնին, նուագելով Մոցարթի տօ մաժոր Սոնաթը:

Իսկ 16 տարեկան պատանին արդէն նուագախումբի հետ կը կատարէ Մոցարթի թիւ 23 լա մաժոր Քոնչերթոն (K.488) ամբողջութեամբ:

1958 Մայիս 24, Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիըլ Հոլ, Հելիոպոլսոյ Մխիթարեան Վարժարանի Տիկնանց Խնամակալութեան տարեկան ձեռնարկ-նուագահանդէս, Գահիրէի Ռատիոկայանի Նուագախումբին մասնակցութեամբ, նուագավար Ֆրանց Լիչաուէր (Franz Litschauer): Յայտագիրին մէջ կը նուագուին յաջորդաբար.


PROGRAMME

MOZART . . . Sonate en do maj.
RAFFI ARMENIAN

BEETHOVEN . Sonate en do min. op. 111
B. ARMENIAN

INTERVALLE

BRAHMS . . . 3 Intermezzi op. 119

CHOPIN . . . . Scherzo No. 3 op. 39
B. ARMENIAN

Héliopolis, le 29 Mai 1955

29 Մայիս 1955, Արմէնեաններու Հելիոպոլսոյ բնակարանի սալոն-նուագահանդէսին յայտագիրը:

1. Մոցարթ, *Կախարդական սրինգ*, նախերգանք:
2. Մոցարթ, Քոնչերթօ թիւ 23 դաշնակի համար (երեք մասեր), դաշնակահար՝ Րաֆֆի Արմէնեան:
3. Արամ Խաչատրրեան, Քոնչերթօ ջութակի համար (երեք մասեր), ջութակահար՝ Էտիթ Պերչինկէր (Edith Bertschinger):
4. Սմեթանա, Սէմֆոնիք Փոէմ թիւ 2՝ *Իմ հայրենիքս* (Vltava – Die Moldau)(32):

Րաֆֆիի գործած տպաւորութիւնը կ'ըլլայ բացառիկ: Նախ, *Արեւ* կը թողու անստորագիր արձագանգ մը.

«Պատանին Րաֆֆի, որ հազիւ 16 տարին թեւակոխած է, ցոյց տուաւ մատներու զարմանալի ճկունութիւն մը, հաւասարակշռուած նուագածութիւն, կատարեալ հասկացողութիւն մը եւ այս բոլորը հանդարտ ու տիրական կեցուածքով մը որ ջերմ գնահատանքին արժանացաւ ներկայ հասարակութեան եւ խանդավառ ծափահարութիւններով մէկ քանի անգամ բեմ հրաւիրուեցաւ:

«Րաֆֆի Արմէնեան օժտուած է արուեստագէտի գեղեցիկ յատկութիւններով, ոչ միայն երաժշտութեան այլ մինչեւ իսկ նկարչութեան մէջ: Զարմանալի չէ ասիկա: Ըլլա՛յ իր հայրը՝ Պ. Պարոյր Արմէնեան, ըլլայ հօրաքոյրը՝ Տիկին Ժիրայր Թօփալեան, երկուքն ալ եղած են եւ են՝ արժէքաւոր դաշնակահարներ»(33):

Ապա հանդէս կու գայ *Արեւի* եռանդուն աշխատակից (յետագայ խմբագրապետ) Աւետիս Եափուճեան, որ արդէն ստանձնած էր օրաթերթին մտաւոր բովանդակութեան արտադրութեան բեռը՝ Էտմոն Կոտալազեանի իննամեայ խմբագրապետութեան *մտաւոր* բացակայութեան պայմաններուն մէջ. «Այս քոնչերթոյին մենակատարն էր պատանի Րաֆֆի Արմէնեան, որ այդ երեկոյ առաջին անգամն ըլլալով լայն հասարակութեան մը առջեւ բեմ կուգար, եւ առաջին անգամն ըլլալով նաեւ արժանավայել յաղթանակ մը կ'ապահովէր: Րաֆֆի Արմէնեան, ինչպէս Հայր Բ. Ֆէրհաթեան իր շնորհակալական խօսքին մէջ ըսաւ, կը խոստանայ հայկական երկնակամարին վրայ իբրեւ փայլուն աստղ մը երեւան գալ»(34):

Նուագահանդէսի նկարագրութեան համար *Յուսաբեր* կ'առանձնացնէ Րաֆֆին, անոր ելոյթին նուիրելով յօդուածին ամբողջութիւնը.

«Կ'ուզեմ անդրադառնալ Մխիթարեան վարժարանի ի նպաստ Մայիս 24-ին տրուած նուագահանդէսին, որ անցաւ շատ փայլուն եւ որուն ներկայ եղաւ հայ եւ օտար ընտրեալ բազմութիւն մը:

«Նուագահանդէսին կը մասնակցէր եգիպտական ռատիոկայանի նուագախումբը, ղեկավարութեամբ Ֆրանց Լիթշաուէրի, իբր մենակատար ունենալով Րաֆֆի Արմէնեանը եւ Էտիթ Պերչինկըրը:

«Մեծ յայտնութիւն մը եղաւ Րաֆֆի Արմէնեան, որուն առաջին հրապարակային նուագահանդէսն էր ասիկա հայ հասարակութեան համար: Հակառակ իր երիտասարդ տարիքին հազիւ 16 տարեկան, մենք զտնուեցանք արդէն իսկ կատարեալ եւ հասուն դաշնակահարի մը դիմաց, որ նուագեց Մոցարթի թիւ 23 հիանալի քոնչերթոն, անթերի կերպով:

«Իր ինքնայատուկ տաղանդը, կազմուած արժէքաւոր ուսուցիչ փրոֆ. Էթորէ Փուլիէզիի ճարտար ղեկավարութեան տակ, տուաւ իր առաւելագոյնը, հանդարտ, վստահ եւ հաւասարակշռուած հասկացողութեամբ արտայայտեց հեղինակին հոգին, ճկուն թեքնիքով եւ զինք հնչականութեամբ: Լիովին տուաւ անոր նուրբ զգացումներն ու զուարթ թռիչքները եւ արժանացաւ խոր գնահատանքի ու բուռն ծափերու:




24 Մայիս 1958, Էուըրթ Մեմորիըլ Հոլի մէջ Րաֆֆի Արմէնեանի կատարած Մոցարթի թիւ 23 Քոնչերթոյին սկաւառակը:

«Այլեւս նուագը ոչ մէկ զաղտնիք ունի Րաֆֆիին համար, որուն առջեւ կը բացուին նոր հորիզոններ:

«Արմէնեան մականունը նորութիւն մը չէ մեզի համար: Իր հայրը եւ հօրաքոյրը, որոնք նոյն ուսուցիչին փայլուն աշակերտները եղած են, արժէքաւոր դաշնակահարներ են այսօր եւ կը շարունակեն փայլիլ աւելի մտերմիկ շրջանակներու մէջ:

«Կը շնորհաւորենք Արմէնեան ընտանիքը: Ուրախ ենք, որ մեզի տուին առիթը՝ գնահատելու Րաֆֆին, որուն կը մաղթենք նոր եւ փայլուն յաջողութիւններ, զինքը աւելի յաճախ լսելու յոյսով»(35):

Րաֆֆիի հօրմէն աւելին պահանջած Երուանդ Մսրլեան այս անգամ լիովին բաւարարուած է զաւակի նուագով.

«Տաղանդաւոր դաշնակահար Րաֆֆի Պետրոսեանէն յետոյ, ահաւասիկ, տաղանդաւոր պատանի Րաֆֆի մը, որ յայտնութիւն մը եղաւ Մայիս 24-ի Շաբաթ երեկոյ, Իւըրթ Մէմօրեըլ Հօլի մէջ՝ Մխիթարեան վարժարանի ի նպաստ տրուած Նուագահանդէսին, մասնակցութեամբը Գահիրէի ռատիոյի օրքեսթրի խումբին, զոր կը ղեկավարէր Մօ. Լիչաուէր:

«Մեր համակրելի Րաֆֆին որ 16 տարեկան է դեռ, իբր մենակատար կատարեալ հասկացողութեամբ նուագեց Մոցարթի թիւ 23 քօնչերթօյի դաշնակի բաժինը, արժանանալով երաժշտասէր հասարակութեան բուռն ծափահարութեանց:

«Պատանին Րաֆֆի, այժմէն իսկ թափանցած ըլլալով երաժշտական նրբութիւններուն եւ լաւ թեքնիքի մը, կարելի է նախատեսել որ եթէ ան ինքզինքը նուիրէ երաժշտական աշխարհին, վստահաբար փայլուն ապագայ մը կրնայ ապահովել»(36):

Նուագահանդէսի Մոցարթի Քոնչերթոն կը ձայնագրուի եւ անձնական նախաձեռնութեամբ Լօզանի մէջ կը վերածուի 33 շրջանով (33⅓ rpm) սկաւառակի, սահմանափակ արտադրութեամբ: Համարձակ ու անսայթաք կատարում մը Րաֆֆիի կողմէ, միշտ երաժշտութիւնը յառաջ մղող, վազող մատներու մետաղեայ առոգանութեամբ: Կ'արժէ մասնագիտական սթուտիոյի միջոցով մաքրել սկաւառակը եւ տարածել խոստալիկով:

1959-ին Րաֆֆի Արմէնեան կը մեկնի Վիեննա երաժշտական կրթութեան համար, ապա Լոնտոն եւ կրկին Վիեննա, եւ 1959-ին վերջնականապէս կը հաստատուի Գանատա, դառնալու համար երկիրի ամենակարեւոր նուագավարներէն մէկը:

* * *

Արմէնեաններու եգիպտական կենսագրութիւնը մէկն է այն գեղեցիկ արտայայտութիւններէն որ իմաստաւորած է եգիպտահայ եւ եգիպտական մշակութային կեանքը, հաւասարակշռելով եգիպտահայն ու եգիպտականը, միաժամանակ պատկանելով մէկուն եւ միւսին:

(Վերջ 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

26. *Յուսաբեր*, 20 Նոյեմբեր 1945, ԼԱ. տարի, թիւ 195: *Արեւ*, 21 Նոյեմբեր 1945, Լ. տարի, թիւ 8188, էջ 2:

27. Դ. Շ., «Հ. Բ. Ը. Միութեան հանդէսը», *Յուսաբեր*, 30 Նոյեմբեր 1945, ԼԱ. տարի, թիւ 204:

28. Ներկայ մը, «Հ. Բ. Ը. Միութեան հանդէստօնախմբութիւնը», *Արեւ*, 30 Նոյեմբեր 1945, Լ. տարի, թիւ 8196, էջ 1:

29. «Բարեգործականի 39-ամեակի երեկոյթը», *Սաւառնակ*, 29 Նոյեմբեր 1945, 28-րդ տարի, թիւ 1, էջ 16:

30. Եւգենեա Արիստակեան, *Յուշեր գաղութահայ կեանքից*, տեքստի կազմող, առաջաբանի եւ ծանօթագրութիւնների հեղինակ՝ Արծուի Բախչինեան, *Զահակիր*, Յաւելուած ԻԵ., 2019, էջ 214:

31. «Մխիթարեան նորակերտ վարժարանի հիմնարկէքի տպաւորիչ հանդիսութիւնը», *Արեւ*, 24 ↳ 4

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐ*Ի 64-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՈՐ Կ'ԱՄՓՈՓԷ ՊԱՅԾԱՌ ԵՐԿԱԹԻ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾԵՐԸ




Լոյս տեսաւ *Ջահակիր*ի յաջորդական Յաւելուածը՝ Պայծառ Երկաթ, *Գրական մտորումներ (Եգիպտահայ մամուլէն)*, Յաւելուած ԿԴ. (64), 144 էջ:

Մինչեւ Հայաստան ներգաղթը 1948-ին, Պայծառ Երկաթ բանաստեղծութիւններ եւ զանազան բովանդակութեամբ արձակ գրութիւններ հրատարակած է Աղեքսանդրիոյ *Արաքս*ի եւ Գահիրէի *Արեւ*ի մէջ: 1948-էն ետք քանի մը բանաստեղծութիւններով յատուկ աշխատակցած է *Արաքս*ին եւ *Ջահակիր*ին, միաժամանակ *Արաքս*, *Արեւ* եւ *Ջահակիր* իր գործերը արտատպած են խորհրդահայ աղբիւրներէ: Անոնք չեն ամփոփուած հեղինակային ժողովածուի մէջ:

Ներկայ հատորը կ'ամփոփէ եգիպտահայ մամուլին մէջ լոյս տեսած Պայծառ Երկաթի գրութիւնները, ընդգրկելով թէ Եգիպտոսի եւ թէ Հայաստանի շրջանները:

## ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
## ԱՐԱՔՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ 20-ԱՄԵԱԿ

Գահիրէի Ազգային Առաջնորդարանի երկսեռ-քառաձայն սիրողական (ինքնագործ) Արաքս երգչախումբը 21 Նոյեմբեր 2023-ին դարձաւ 20 տարեկան: Երգչախումբին գործունէութեան այս հանգրուանային 20-ամեակը այլ կերպ չէր կրնար տօնախմբուիլ քան յոբելենական երգահանդէսով մը: Ան տեղի ունեցաւ Ուրբաթ, 24 Մայիս 2024-ին Հելիոպոլսոյ Պըլըքտանեան հանդիսասրահին մէջ՝ հովանաւորութեամբ Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Սրբազան Եպս. Մնացականեանին եւ կազմակերպութեամբ Գահիրէի Ազգային Առաջնորդարանին: Երգչախումբը հանդէս եկաւ ղեկավարութեամբ խմբավար Միհրան Ղազելեանին, որուն Գահիրէի մէջ գործունէութեան 20-ամեակն էր նոյնպէս:

Գլխաւորութեամբ Առաջնորդ Սրբազան Հօր, համերգին ներկայ էին Հոգշ. Տ. Ղուկաս Աբեղայ Հոխանեան, Աղեքսանդրիոյ Առաջնորդական փոխանորդ Արժ. Տ. Գրիգոր Քահանայ Մուրատեան, Հայաստանի դեսպանատան հիպատոսական անձնակազմը, Գահիրէի Պատկ. Թեմական Ժողովի Ատենապետ Տ. Գէորգ Երզնկացեան, Գահիրէի Պատ. Քաղաքական Ժողովի Ատենապետ Տ. Վահէ Բլատեան, Աղեքսանդրիոյ Պատ. Քաղաքական Ժողովի ատենապետ Տ. Տիգրան Ալեքսանեան, Ազգային զոյգ Իշխանութիւններու եւ համայնքային կազմակերպութիւններու անդամներ, Արաքսի մշտական համակիրներ, ինչպէս նաեւ ընդհանրապէս երգչախմբային արուեստը գնահատող հայրենակիցներ:

Համերգը սկսելէ առաջ բացման խօսքով հանդէս եկաւ երգչախումբի անդամներէն Նորա Քէօհնէլեան: Ապա բեմ բարձրացաւ Արաքս երգչախումբը, որուն համար այս երեկոյթը ոչ թէ պարզապէս տօնական համերգ մըն էր, այլ նախ եւ առաջ համերգային հաշուետուութիւն մը: Համերգին Արաքս կը ներկայանար երգացանկային նոր ու տօնական ծաղկեփունջով մը, ուր աւանդական եւ սեպուհ մեր երգերու կողքին կը ներկայացուէին համաշխարհային խմբերգային արուեստի դասական եւ ժամանակակից գոհարներ: Առաջին անգամ՝ մեներգերով հանդէս կու գային նաեւ Արաքսի նոր եւ հեռանկար խոստացող ձայներ՝ հանդիսատեսի ծափերով ստանալու իրենց բեմական-մեներգեցողական «մկրտութիւնը» եւ ակնկալելով անոնց քաջալերանքն ու ջերմութիւնը:

Արդարեւ, տօնական այս համերգին համար պատրաստուած էր աննախադէպ ճոխ ու բազմազան յայտագիր մը (16 երգահաններու 18 ստեղծագործութիւն), որ կ'ընդգրկէր 14 խմբերգ, 3 մեներգ եւ մէկ զուգերգ: Խմբերգային եւ մեներգային կատարումներով, հայերէնէն բացի, հնչեցին երգեր արաբերէն, անգլերէն, գերմաներէն, սպաներէն, փորթուկալերէն, չինարէն եւ յունարէն:

Համերգը սկսաւ Արամ Խաչատրեանի *Գարուն-Երեւան* երգի երգչախմբային կատարումով, որուն հետեւեցաւ Էտուարտ Էլկարի *Land of Hope and Glory* երգը, ապա երգչախումբը շարունակեց իր կատարումները՝ յաջորդաբար հնչեցնելով Օմար Խայրաթի *Ֆիհա հակա հելուա*, Կոմիտասի *Էսօր Ուրբաթ է* եւ *Երեւան պաղ եմ արել* երգերը: Ապա զուգերգով հանդէս եկան պարմանուհիներ Կրեթա Էսմէրեան եւ Մարալ Մանուկեան՝ կատարելով համշէնահայ երգահան Մաղրուֆ Քիպարի *Կարմի* երգը: Հետեւեցաւ Ֆրանց Շուպերթի *Ständchen* (Գիշերերգ) խմբերգը, եւ ապա Խաչատուր Աւետիսեանի *Հայոց հովիկը*: Այնուհետեւ Նաթաշա Բախչանեան չինարէն լեզուով կատարեց *Լուսինը կը ներկայացնէ սիրտս* երգը: Համերգի առաջին բաժինը եզրափակուեցաւ Օսվալտօ Ֆառէսի *Quizas* (Գուցէ) երգի խմբերգային կատարումով:

Համերգի երկրորդ բաժինը սկսաւ Խաչատուր Աւետիսեանի *Ծաղկած բալենին* երգով՝ պարմանուհի Նատա Ղազարեանի մենակատարութեամբ, որուն հետեւեցաւ Ալեքսէյ Հեքիմեանի *Եասամանի ծառի տակ* երգի երգչախմբային կատարումը: Այնուհետեւ Րաֆֆի Սարկաւագ Պօղոսեան հանդէս եկաւ Էտկար Յովհաննիսեանի *Արփա-Սեւան* երգով: Համերգը շարունակուեցաւ Ալեքսէյ Հեքիմեանի *Բարի արագիլ*, Ֆրանք Փըրսըլ - Փոլ Մորիայի *I will Follow Him*, Առնօ Բաբաջանեանի *Կիրակի*, Խորխէ Պէնի *Mas que nada* (Բայց ոչինչ) եւ Միքիս Թէոտորաքիսի *Յարդարէ անկողինը քո* եւ *Սիրթաքի* խմբերգերով: Համերգը աւարտեցաւ Ստեփան Շաքարեանի *Հայկական ժողովրդական երգերի շարանով*:

Արաքս երգչախումբի այս ելոյթը հանդիսատեսը դիմաւորեց մեծագոյն ոգեւորութեամբ: Հակառակ ժամանակի ընթացքին երգչախմբային կազմի նշանակալի փոփոխութեան, սոյն ելոյթով Արաքս վերստին կը հաստատէր, որ միասնական, նուիրեալ եւ հետեւողական աշխատանքով կարելի է կերտել երգչախմբային անշփոթելի դիմագիծ ու հաւաքական անհատականութիւն:

Սոյն համերգին համար պատրաստուած էր նաեւ նկարազարդ գեղատիպ գրքոյկ մը, որ կը ներկայացնէր ոչ միայն օրուան յայտագիրն ու երգչախումբին անդամներուն ցանկը, այլ նաեւ Արաքս երգչախումբին քսանամեայ գործունէութեան ամբողջական տարեգրութիւնը:

Համերգի աւարտին խօսք առաւ երգչախումբի ստեղծման ակունքներուն կանգնած Առաջնորդ Սրբազան Հայրը՝ արտայայտելով իր գնահատանքն ու քաջալերանքը: Ան հակիրճ անդրադարձաւ խումբին ստեղծման պատմութեան եւ անոր անցած 20-ամեայ ստեղծագործական ուղիին եւ իր ուրախութիւնը, գոհունակութիւնն ու շնորհաւորանքները փոխանցեց խումբին հին եւ նոր բոլոր անդամներուն՝ յատկապէս շեշտելով, թէ երգչախումբը միշտ ալ արդարացուցած է Ազգային Իշխանութեան ակնկալութիւնները՝ դրսեւորելով անհրաժեշտ պատասխանատու գիտակցութիւն եւ վերաբերմունք իր իւրաքանչիւր ելոյթին: Ան մասնաւորապէս վեր առաւ խմբավար Միհրան Ղազելեանին վճռորոշ ու պատասխանատու դերը երգչախումբի գրանցած յաջողութիւններուն մէջ՝ անոր եւ խումբին յղելով նորանոր յաջողութիւններու իր սրտագին բարեմաղթանքները: Ապա Քաղաքական Ժողովի ատենապետ Տ. Վահէ Բլատեան մաէսթրոյին յանձնեց յիշատակի եւ գնահատանքի յուշանուէր մը՝ եգիպտահայ համայնքէն ներս անոր 20-ամեայ գործունէութեան եւ Արաքս երգչախումբի հիմնադրութեան 20-ամեակին առիթներով:

Անառարկելի է, թէ հայ երգն ու երաժշտութիւնը մեր ինքնութեան անբաժանելի մասերն են: Ըլլալ կրողը այդ ինքնութեան կը նշանակէ հաւատարիմ մնալ մեր ժառանգութեան: Արաքս, այսօր, ոչ միայն կրողն է այդ ժառանգութեան, այլ իր անդամներու անձնանձիր նուիրումով այդ ժառանգութիւնը արժանիօրէն բեմ հանող ու մեր ունկնդրին փոխանցողը:

Գործունէութեան 20-ամեայ ճամբայ անցած Արաքս երգչախումբը, շնորհիւ համայնքային երաժշտա-կատարողական թէ՛ փորձառու եւ թէ՛ սկսնակ ուժերու համախմբումին եւ շնորհիւ երաժշտա-կատարողական նպատակամէտ գործունէութեան, այսօր, իրաւամբ կը հանդիսանայ եգիպտահայութեան մշակութային հարստութիւններէն մին, եւ իր դիմատրած իւրաքանչիւր հանգրուան պարզապէս հերթական հարթակ մըն է կատարողական արուեստի ասպարէզէն ներս նոր ծրագրերու, նոր գաղափարներու եւ նոր թռիչքներու համար՝ յանուն հայ երաժշտական մշակոյթի յարատեւումին աշխարհացրիւ հայութեան նեղոսեան այս ափերուն վրայ:

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

ԽՈՀԵՐ

## ԵՐԲ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԴԱՌՆԱՅ ԱՆՏԱՐԲԵՐ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Հասարակութիւն-անհատ յարաբերութիւնը փիլիսոփայութեան եւ հասարակագիտութեան բարդ հարցերէն է, որուն մէջ խորանալը չէ նպատակս: Գրութիւնս արձանագրութիւնն է պարզագոյն դիտարկութիւններու վրայ հիմնուած ընդհանուր տպաւորութիւններու:

Հասարակութիւն-անհատ ամենայաջող նմոյշներէն են համայնքային հասարակութիւնները, որոնք ինքնակազմակերպուած են մարդկային բնածին օրէնքներով, եւ որոնց անդամները կը յարաբերակցին չգրուած ծածկագիրերով: Երեւանի Կոնդ թաղամասը նմոյշ մըն է այս տեսակ հասարակութեան, որ, ինչպէս բոլոր ինքնակազմակերպուած համայնքները, պէտք է աստիճանաբար ոչնչացուին նէօլիպերալ տնտեսական քաղաքականութիւններուն պատճառով՝ արդիականացումի անունին տակ: Ծածկագրուած հասարակութեան պէտք է փոխարինէ պետական օրէնքով սահմանուած կարգը, օրէնք՝ որ կը ծառայէ հարուստին եւ իշխանականին, օրէնք՝ որ կրնայ գործել միայն մարդոց համայնքային յարաբերութիւնները խզուելէ եւ մարդը դրացիին հանդէպ անհաղորդ բջիջ մը վերածուելէ ետք:

Հասարակութիւնը, արդարեւ, կրնայ ճնշիչ գործիք դառնալ անհատին վրայ, երբ տարուած նախապաշարումներէ, կարծրատիպերէ եւ յետադիմական գաղափարներէ, կ'արգիլէ անհատին ազատ մտասլացքը, թռիչքը եւ մարմնական ազատութիւնը:

Ասկէ զատ, կան բազմաթիւ օրինակներ, երբ տուեալ հասարակութեան մը մէջ արտադրող եւ համագործակցող անձ մը տեղափոխուելով ուրիշ հասարակութիւն՝ կը դառնայ անյագ կլանող: Կրնայ պատահիլ հակառակը:

Բայց ամենէն տպաւորիչը, որուն դրդապատճառով հաւանաբար գրուեցաւ «Խոհեր»-ս, այն է՝ երբ չկայ հասարակութիւն, ան անխօս է, անձայն, անտարբեր ամէն բանի նկատմամբ, բայց կան ղեկավար անհատներ, որոնք ամէն բան են՝ վերահսկող, ձայնարկող, որոշող, հրամայող, իւրացնող, բաշխող, պատժող: Այստեղ արդէն հանդէս կու գան ղեկավարամերձ անհատներ, որոնք կը կարողանան խօսեցնել տալ իրենց մասին, կը յաջողին իրենց անձին շուրջ ստեղծել առասպելանման պատկերներ, ինքզինքնուն կը վերագրեն չկատարուած յաջողութիւններ, եւ այս բոլորը՝ հասարակութեան քար անտարբերութեան դիմաց: Հետաքրքրական է հետեւիլ այս անձերուն անցած ուղին՝ անյայտութենէ դէպի ինքնափառաբանութեան ծայրագոյն աստիճան: Կ'արժէ լսել անոնց խօսքերը, որոնք հմայիչ են, պճուճազեղ, անհաւատալիօրէն գեղացկաշուք: Երբ անհաւատալին կը դառնայ հաւատալի, երբ բառերը կը դառնան անիրական եւ կը սպաննեն ամէն հնարաւոր միտք ու մտածողութիւն, գիտցէ՛ք, որ մեռած է հասարակութիւնը:

ՋԱՀԱԿԻՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ՝ ՖՐԱՆՍԱ-ՌՈՒՍԱՍՏԱՆ-ԱԶԸՐՊԷՅՃԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԽԱՉԱՁԵՒՈՒՄԻՆ ՄԷՋ

1

ճանի հետ»:

Ֆրանսան պաշտօնապէս կը մեղադրէ Ազրպէյճանը՝ ընդդիմադիրները հովանաւորած ըլլալու համար:

Յստակ է, որ Ազրպէյճան դեր խաղացած է անդրծովեայ Ֆրանսան տկարացնելու համար: Ինքնաբո՞ւխ գործած է ան: Ազրպէյճան ունի՞ կարողութիւն ինքնուրոյնաբար հասնելու հեռաւոր ցամաքամասեր: Առաւել եւս, ան ունի՞ մեծ տէրութիւններուն արտօնութիւնը՝ ինքնուրոյնաբար գործելու արտասահմանի մէջ: Մինչեւ վերջ Թուրքիոյ, Ռուսաստանի եւ Իսրայէլի տիրութեան տակ մեծցած Ալիեւի իշխանութիւնը իրաւունք ունի՞ գործել առանց այս երկիրներէն մէկուն արտօնութեան: Հազիւ թէ: Փութինը ողջունող Մարտ 28-ի ցոյցի պաստառը բաւական խօսուն է այս առումով:

Ռուսաստան, Ազրպէյճանի ձեռքով, կը շարունակէ այն ինչ որ ինք կը կատարէ Ափրիկէի մէջ Վակնէր Խումբի (նախապէս) եւ յատուկ զօրագունդերու (ներկայիս) միջոցով: Փութինի պատերազմն է ասիկա Ֆրանսայի դէմ, մինչ Ազրպէյճան եւս կը բանեցնէ իր շահերը՝ փորձելով հարուածել Հայաստանին զէնք ու աջակցութիւն խոստացող Ֆրանսային: Ազրպէյճանի շահը նաեւ ամբողջապէս համահունչ է Ռուսաստանի շահին, որ կը հետապնդէ հեռացնել Ֆրանսան եւ Արեւմուտքը Հարաւային Կովկասէն:

**ՖՐԱՆՍԱ-ՀԱՅԱՍՏԱՆ**

Մինչ Ռուսաստան կը գրաւէ ֆրանսական շահերը Ափրիկէի եւ անդրծովեան երկիրներու մէջ, մինչ Ֆրանսա կ'ուժեղացնէ իր հռետորաբանութիւնը Ռուսաստանի դէմ եւ կը բարձրացնէ Ուքրաինայի ռազմական օգնութեան մակարդակը, մինչ Հայաստանը ճորտացնելէ ետք Ռուսաստանը կը լքէ զայն եւ սերտ դաշնակցութիւն կը կազմէ Ազրպէյճանի հետ՝ դառնալով Հայաստանի չյայտարարուած թշնամիներէն մէկը, նշանակալիօրէն կը բարելաւուին Ֆրանսա-Հայաստան պաշտօնական յարաբերութիւնները՝ դէպի Արեւմուտք քաղաքական այլընտրանք փնտռելու Հայաստանի շուրջ երկու տարի տեւած բանակցութիւններէ ետք:

2023 Հոկտեմբեր 23-ին Փարիզի մէջ պաշտօնական հանդիպում կը կայանայ Հայաստանի Պաշտպանութեան Նախարար Սուրէն Պապիկեանի եւ Ֆրանսայի Զինուած Ուժերու նախարար Սեպաստիէն Լըքորնիւի միջեւ, որուն ընթացքին կը քննարկուի պաշտպանութեան բնագաւառի հայ-ֆրանսական համագործակցութիւնը: Ապա Ֆրանսայի Զինուած Ուժերու Նախարարութեան մէջ տեղի կ'ունենայ երկկողմ համագործակցութեան մասին փաստաթուղթերու ստորագրութիւն:

Փետրուար 21-ին երկօրեայ պաշտօնական այցելութեամբ Փաշինեան կ'այցելէ Փարիզ, Փարիզի Փանթէոնին մէջ Միսաք Մանուշեանի աճիւններու վերայուղարկաւորութեան արարողութեան ծիրէն ներս, եւ նոյն օրը կը հանդիպի Ֆրանսայի նախագահ Էմմանուէլ Մաքրոնին:

Փետրուար 22-ի *France 24*-ի հարցազրոյցին, Փաշինեան կը յայտարարէ՝ որ Հայաստան կը սառեցնէ ՀԱՊԿ-ի անդամակցութիւնը:

Նոյն օրը Հայաստան կը հասնի Ֆրանսայի դրկած պաշտպանութեան սարքաւորումներուն առաջին խմբաքանակը՝ մինչեւ 250 քմ. հեռաւորութեան վրայ ինքնաթիռներ յայտնաբերող երեք ռատարներ եւ գիշերային տեսողութեան հեռադիտակներ:

Փետրուար 23-ին պաշտօնական այցելութեամբ Երեւան եկած է Սեպաստիէն Լըքորնիւ, որ կը հանդիպի վարչապետին եւ կը ստորագրէ ռազմական կարեւոր նոր համաձայնագիրներ: Առաջին անգամն է՝ որ Ֆրանսայի Զինուած Ուժերու նախարար մը կ'այցելէ Հայաստան:

Մարտ 6-ին հայկական կողմը կը յայտարարէ՝ որ պաշտօնական նամակով դիմած է Ռուսաստանին, Զուարթնոց միջազգային օդակայանէն հեռացնելու ռուս սահմանապահները:

Յունիս 18-ին Սուրէն Պապիկեան Փարիզի մէջ կը հանդիպի Սեպաստիէն Լըքորնիւին: Այցելութեան ընթացքին, Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութեան եւ ֆրանսական ռազմարդիւնաբերական KNDS ընկերութեան միջեւ կը կնքուի ռազմաթեքնիքական համագործակցութեան համաձայնագիր: Լըքորնիւ Թուիթէրի էջին վրայ կ'արձանագրէ. «Կը շարունակենք Հայաստանի հետ ամրապնդել պաշտպանական ոլորտի մեր յարաբերութիւնները: Իմ պաշտօնակից Սուրէն Պապիկեանի հետ հանդիպումը՝ Eurosatory-ի շրջանակին մէջ, ջերմ էր եւ արդիւնաւէտ: Նոր կարեւոր սկիզբ մը՝ համաձայնագիր կնքելով CAESAR հրետանային համակարգ ձեռքբերելու համար»:

Ֆրանսա-Հայաստան նոր յարաբերութիւնները գրեթէ կատղեցուցած են Ռուսաստանը, քանի որ կրնայ նուազիլ Քրեմլինի ազդեցութիւնը Հարաւային Կովկասի մէջ, միաժամանակ, անցանկալիօրէն Հայաստանը դուրս բերել մեկուսացումէ: Իսկ Ազրպէյճան, ինչպէս միշտ, կը սկսի իր աղաղակները՝ Հայաստանին ներկայացնելով իբրեւ պատերազմի տենչացող պետութիւն, մինչ ինք կը շարունակէ զէնքերու բազմաքանակ գնումները ամէն տեղէ:

Ռուսաստան-Ազրպէյճան աղմուկը՝ հասցէագրուած ըլլալով նախ եւ առաջ Ֆրանսային, կը մղէ Եւրոպական Խորհրդարանի բոլոր խմբակցութիւններէն խումբ մը պատգամաւորներու Յունիս 28-ին հանդէս գալ համատեղ յայտարարութեամբ:

Պատասխանելով Հայաստանի դէմ յարձակումներուն, յայտարարութիւնը կը նշէ. «Ռուսաստանի եւ Ազրպէյճանի կողմէ Հայաստանի հասցէին հնչած մեղադրանքները՝ թէ ան հակամարտութիւն կը հրահրէ Հարաւային Կովկասի մէջ, անգամ մը եւս կը փաստեն՝ որ երկու երկիրներուն միջեւ առկայ է դաւադրութիւն, որ տակաւին 2023 Սեպտեմբերին պատճառ հանդիսացաւ Լեռնային Ղարաբաղի աւելի քան 140 հազար հայերու էթնիք զտումին»:

Գալով Ֆրանսային հասցէագրուած մեղադրանքներուն, յայտարարութիւնը կը շեշտէ. «Ասիկա չի կրնար ընդունելի ըլլալ Եւրամիութեան կողմէ, եւ շատոնց ժամանակը եկած է պատժամիջոցներ կիրառել բռնապետական Ալիեւի վարչակարգին դէմ՝ տարածաշրջանային խաղաղութիւնն ու ապահովութիւնը խաթարող իր ապակառուցողական գործողութիւններուն եւ մարդու իրաւունքներու ոտնահարումին համար: Մենք խստօրէն կը դատապարտենք Պաքուի եւ Մոսկուայի պաշտօնական յայտարարութիւնները եւ կոչ կ'ուղղենք Եւրոպական Յանձնաժողովին եւ Արտաքին Գործողութիւններու Եւրոպական Ծառայութեան (EEAS) անյապաղ արձագանգել այս իրավիճակին»:

Այս ամէնը՝ փոքրիկ Հայաստանի՞ մը համար...:

* * *

Կը գտնուինք անվերջանալի պատերազմի տրամաբանութեան մէջ համաշխարհային մակարդակով: Կ'ապրինք միջազգային յարաբերութիւններու յարաշարժ փոփոխութեան դարաշրջանը՝ անսպասելի ցնցումներով, անտրամաբանական տրամաբանութիւններով, անբնական համագործակցութիւններով, անհամատեղելի համատեղութիւններով, անօրինաչափ համաձայնութիւններով, անհամաձայն օրինաչափութիւններով, որոնք բոլորը կը ձեւաւորուին ու կը ձեւափոխուին զինարտադրական հսկայ պետութիւններուն կողմէ: Դիւրին չէ բանակցիլ անոնց հետ:

Ա.

## ՀԱՅԱՍՏԱՆ ԿԸ ՃԱՆԱՉԷ ՊԱՂԵՍՏԻՆԻ ՊԵՏՈՒԹԻՒՆԸ

1

«Ելնելով վերոնշեալից եւ վերահաստատելով իր հաւատարմութիւնը միջազգային իրաւունքին եւ ժողովուրդների հաւասարութեան, ինքնիշխանութեան ու խաղաղ համակեցութեան սկզբունքներին՝ Հայաստանի Հանրապետութիւնը ճանաչում է Պաղեստինի պետութիւնը»:

Այսպէս, Հայաստան կը դառնայ ՄԱԿ-ի 193 անդամ երկիրներուն 145-րդը՝ որ կը ճանաչէ Պաղեստինի անկախութիւնը: Նկատի առնելով 145 թիւը, կարելի է ըսել՝ որ ասիկա նոյնիսկ բաւական ուշացած ճանաչում մըն է, մանաւանդ որ Հայաստանի նախկին յուշարար Ռուսաստանը շատոնց կատարած է այդ քայլը:

Կարեւոր է նշել՝ որ Կազայի վրայ Իսրայէլի Հոկտեմբեր 2023-ին սկսած յարձակումի բնաբանին տակ, այս տարուայ Ապրիլէն սկսեալ, ՄԱԿ-ի 9 անդամ երկիրներ կը ճանաչեն Պաղեստինը՝ Պարպատոս, Ճամայքա, Թրինիտատ եւ Թոպակօ, Պահամաներ, Իռլանտիա, Նորվեկիա, Սպանիա, Սլովենիա եւ Հայաստան:

Յունիս 21-ին, Պաղեստինի Ազգային Վարչակազմի նախագահ Մահմուտ Ապպասի գրասենեակը շնորհակալութիւն կը յայտնէ Հայաստանին՝ Պաղեստինի պետութիւնը ճանաչելու համար:

Յունիս 25-ին, Պաղեստինի նախագահ Մահմուտ Ապպաս հեռախօսազրոյց կ'ունենայ Հայաստանի նախագահ Վահագն Խաչատուրեանի հետ, երախտագիտութիւն յայտնելով Երեւանի պաշտօնական որոշումին համար: Պաղեստինեան Wafa լրատուական գործակալութեան տեղեկութեան համաձայն, Ապպաս հետեւեալը ըսած է Խաչատուրեանին. «Ձեր իմաստուն որոշումը, որ կը համապատասխանէ միջազգային օրէնքին, միջազգային օրինականութեան սկզբունքին եւ ՄԱԿ-ի բանաձեւերուն, յառաջաքայլ մըն է պաղեստինեան ժողովուրդի իրաւունքի ճանաչումին ուղղութեամբ՝ տնօրինելու 1967-ի սահմաններու հողերը, անհրաժեշտաբար վերջ տալու իսրայէլական բռնագրաւումը՝ ինքնորոշումի, ինքնիշխանութեան եւ անկախութեան հիման վրայ, ինչպէս նաեւ անխուսափելիօրէն յարգելու պաղեստինցիներուն արժանապատուութիւնը, մարդկայնութիւնը եւ ազատութիւնը»:

Յունիս 21-ին յայտարարութիւն կը հրապարակէ Թուրքիոյ Արտաքին Գործոց Նախարարութիւնը՝ հաւանութիւն յայտնելով Հայաստանի որոշումին:

Յունիս 22-ին իր ողջոյնը կ'արտայայտէ Իրաքի Արտաքին Գործոց Նախարարութիւնը:

Եգիպտոսի Արտաքին Գործոց Նախարարութիւնը եւս Յունիս 22-ին կ'ողջունէ այս քայլը, գնահատելով Հայաստանի դերը Պաղեստինեան Հարցին աջակցելու համար: Եգիպտոսի ԱԳՆ-ի յայտարարութեան մէջ, ի միջի այլոց, գրուած է. «Եգիպտոսի Արաբական Հանրապետութիւնը այս որոշումը կը դիտէ իբրեւ աջակցութիւն պաղեստինեան ժողովուրդի օրինական իրաւունքներուն, վերջացնելու համար իսրայէլական բռնագրաւումը եւ հաստատելու անկախ պետութիւն՝ ըստ 1967-ի սահմաններուն, Արեւելեան Երուսաղէմը ընդունելով իբրեւ մայրաքաղաք»:

*Եգիպտոս կատարած իր պաշտօնական այցելութեան ընթացքին, Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան Մարտ 5-ին հանդիպում կ'ունենար Եգիպտոսի նախագահ Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսիի հետ եւ կը կարգադրէր Հայաստանի կողմէ Կազա ղրկուելիք մարդասիրական օգնութեան մեքանիզմները* (Ջահակիր, *թիւ 1961): Շուտով Եգիպտոսի տարածքով Կազա կը ղրկուէր 29,94 թոն մարդասիրական օգնութիւն* (Ջահակիր, *թիւ 1963): Խորհրդանշական քայլ մը Հայաստանի կողմէ, որ կը հետապնդէր քաղաքական նպատակներ, յատկապէս Իսրայէլ-Ազրպէյճան ռազմական դաշնակցութեան բնաբանին տակ:*

---

## ՊԱՐՈՅՐ ԱՐՄԷՆԵԱՆ

### Եգիպտահայ դաշնակահարը՝ որ առւպի պէս...

2

Ապրիլ 1959, ԽԴ. տարի, թիւ 12.273, էջ 3:

32. *Արեւ*, 21 Մայիս 1958, ԽԴ. տարի, թիւ 11.989, էջ 4: *Յուսաբեր*, 21 Մայիս 1958, ԽԴ. տարի, թիւ 41:

33. «Րաֆֆի Արմէնեան», *Արեւ*, 28 Մայիս 1958, ԽԴ. տարի, թիւ 11.995, էջ 4:

34. Ա. Ե., «Մխիթարեան Տիկնանց Խնամակալ Մարմնի տարեկան ձեռնարկը», *Արեւ*, 30 Մայիս 1958, ԽԴ. տարի, թիւ 11.997, էջ 4:

35. Ա., «Հայ տաղանդաւոր պատանին՝ Րաֆֆի Արմէնեան», *Յուսաբեր*, 4 Յունիս 1958: ԽԴ. տարի, թիւ 53:

36. «Րաֆֆի Պ. Արմէնեան. Նոր յայտնութիւն մը երաժշտական աշխարհի մէջ», *Սաւառնակ*, 7 Յունիս 1958, 44-րդ տարի, թիւ 20, էջ 5:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1970 ՀԻՆԳՇԱԲԹԻ 18 ՅՈՒԼԻՍ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٧٠ الخميس ١٨ يوليه ٢٠٢٤

# ԿՈՂՄԵՐԸ ՄՕ՞Տ ԵՆ ԱՐԴԵՕՔ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐԻ ՍՏՈՐԱԳՐՈՒԹԵԱՆ

ՌՈՒԶԱՆՆԱ ՍՏԵՓԱՆԵԱՆ

Պաշտօնաթող դիւանագէտները կը խօսին «մտացածին յայտարարութիւններու» եւ Ազըրպէյճանի «թողութեան» մասին, Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութիւնը կը կարեւորէ գործընթացի շարունակականութիւնը:

Հակառակ Միացեալ Նահանգներու պետական քարտուղար Անթոնի Պլինքէնի լաւատեսութեան՝ թէ Հայաստան եւ Ազըրպէյճան շատ մօտ են վերջնական համաձայնութեան, Յուլիս 10-ին Ուաշինկթոնի մէջ կայացած Անթոնի Պլինքէն – Արարատ Միրզոյեան – Ճէյհուն Պայրամով եռակողմ հանդիպումի ընթացքին ձեռք բերուած ճշգրիտ համաձայնութեան կամ արդիւնքի մասին ոչ մէկ յայտարարութիւն հնչեց:

Հայաստանի եւ Ազըրպէյճանի Արտաքին Գործոց նախարարութիւնները ընդամէնը արձանագրեցին «խաղաղութեան եւ միջպետական յարաբերութիւններու հաստատումին վերաբերեալ պատմական պայմանագիր կնքելու ուղղութեամբ Հայաստանի եւ Ազըրպէյճանի կողմէ արձանագրուած յառաջընթացը» եւ նշեցին՝ թէ համաձայնած են շարունակել աշխատանքները:

Ինչպէ՞ս կրնան կողմերը շատ մօտ ըլլալ խաղաղութեան համաձայնագիրի ստորագրութեան, եթէ պաշտօնական Պաքուն անընդհատ կը պնդէ՝ որ համաձայնագիր պիտի չստորագրուի մինչեւ Հայաստան չփոխէ իր Սահմանադրութիւնը:

Ազըրպէյճանի Արտաքին Գործոց նախարարը Հայաստանի մայր օրէնքը փոխելու պահանջը բարձրացուց նաեւ Յուլիս 10-ին Ուաշինկթոնի մէջ՝ ՆԱԹՕ-ի գլխաւոր քարտուղարի Կովկասի հարցերով ներկայացուցիչի հետ ունեցած հանդիպումին:

Արդեօք Յուլիս 10-ի հանդիպումին քննարկուեցա՞ւ Հայաստանի Սահմանադրութիւնը փոխելու Պաքուի պահանջը, արդեօք կը գտնուի՞ որեւէ լուծում թէ ոչ՝ յստակ չէ:

Հայաստանի Արտաքին Գործոց նախարար Արարատ Միրզոյեան Թուիթըրի իր էջին վրայ ընդամէնը վերահաստատեց՝ որ Հայաստան ունի քաղաքական կամք Ազըրպէյճանի հետ ամենասեղմ ժամկէտներու մէջ աւարտին հասցընելու եւ կնքելու խաղաղութեան համաձայնագիրը:

**«Մտացածին յայտարարութիւններ», «թողութիւն Ազըրպէյճանի համար»**

«Որեւէ նորութիւն այդ յայտարարութիւններում չտեսայ, որովհետեւ ամիսներ շարունակ այդ յայտարարութիւնները արւում են, մասնաւորապէս՝ այն մասին, որ կողմերը շատ մօտ են», - *Ազատութիւն ռադիոկայան*ին ըսաւ Հայաստանի նախկին Արտաքին Գործոց փոխնախարար Աւետ Ադոնց:

Ըստ Ադոնցի, Արեւմտեան հարթակներէն հնչող լաւատեսական յայտարարութիւնները ձեւական բնոյթ կը կրեն՝ նկատի առնելով Սահմանադրութիւնը փոխելու Պաքուի պահանջը եւ իրականութեան մէջ գոյութիւն ունեցող իրավիճակը:

«Այդ նախապայմանը, աւելի քան վստահ եմ, եւ ըստ ադրբէջանական կողմի յայտարարութիւնների, դուրս չի եկել՝ Սահմանադրութիւնը պիտի փոխուի էստեղ, Հայաստանի սուվերէն տարածքի մի մասը գտնւում է օկուպացիայի տակ, այսօրուայ դրութեամբ ռազմագերիներ են՝ Արցախի ռազմաքաղաքական ղեկավարութիւնը ներառեալ, գտնւում Բաքւում, այսօրուայ դրութեամբ, այնուամենայնիւ, Սիւնիքը ադրբէջանցիները կոչում են Արեւմտեան Զանգեզուր, եւ այս պայմաններում խօսել, որ Ադրբէջանն ու Հայաստանը մօտ են համաձայնութեանը խաղաղութեան պայմանագրի շուրջ, սա ես կարծում եմ, որ մի քիչ ֆիկտիւ [մտացածին, Ա.] բնոյթ է կրում», - յայտարարեց նախկին Արտաքին Գործոց փոխ-նախարարը:

Ի՞նչ ստացաւ հայկական կողմը Ուաշինկթոնի եռակողմ հանդիպումէն. ըստ պաշտօնաթող դիւանագէտ Ձինիկ Աղաջանեանի՝ ոչինչ:

«Հայկական կողմը ես չեմ կարծում որեւէ բան դրանից քաղում է՝ բացի երեւի թէ հերթական աւելի սրուած արձագանքը մեր ռազմավարական դաշնակցից [Ռուսաստանէն, Ա.], որից նրանք ճեպընթաց գնացքի արագութեամբ հեռանում են», - ըսաւ Աղաջանեան *Ազատութիւն ռադիոկայան*ին:

Փոխարէնը, շուրջ 30 տարուայ դիւանագիտական փորձառութիւն ունեցող դեսպանի համոզումով, Յուլիս 10-ի հանդիպումէն միաւորներ քաղեց Ազըրպէյճանը: Ձինիկ Աղաջանեանի կարծիքով՝ վերադառնալով բանակցութիւններու ուաշինկթոնեան հարթակ, զոր շուրջ մէկ տարի է կը պոյքոթէր Պաքու, Ազըրպէյճան փոխարէնը կը փորձէ թողութիւն ստանալ եւ անպատիժ մնալ շարք մը հարցերու մէջ:

«Դա կոչում եմ ինդուլգենցիա [թողութիւն, Ա.] առաջիկայ իր գործողութիւնների համար, որը կը լինի թէ՛ ընդդիմադիր դաշտի տապալումը Ադրբէջանում ընտրութիւնների ժամանակ, թէ՛ մինչ այդ իրականացրած յանցագործութիւնների՝ կոնկրէտ Հայաստանի, հայերի եւ Արցախի հանդէպ, եւ այսօր իսկ իրականացուող մշակութային ջարդի քաղաքականութիւնը, այսինքն՝ ցեղասպանութեան վերջին քայլի իրականացումը, որով էթնիկ բնակչութեան հետքերն են՝ պատմական եւ մշակութային հետքերն են ոչնչացւում, դրա իրականացման համար չդատապարտուելու առումով ինդուլգենցիա է ստացել եւ նա փորձում է դա ամրագրել», - *Ազատութիւն ռադիոկայան*ին ըսաւ Աղաջանեան:

Նկատի առնելով ներկայ իրողութիւնները, պաշտօնաթող դիւանագէտները խաղաղութեան պայմանագիրի ստորագրումը կարելի չեն համարեր մինչեւ Նոյեմբեր՝ COP29-ի Պաքուի մէջ կայանալիք համաժողովը:

«Այս իրավիճակում փաստաթուղթ ստորագրելը, որը խաղաղութեան մասին է, ես չեմ պատկերացնում՝ ինչպէս կարող է այն համապատասխանի իրականութեանը եւ գետնի վրայ տիրող իրավիճակին», - նշեց Ադոնցը:

«Եթէ ինչ-որ մի փաստաթուղթ էլ, որը այս պահի դրութեամբ, դատելով նոյն Ալիեւի խօսքերից, գնում է զուտ ընդամէնը սկզբունքներ նշելու, այսինքն՝ դատարկ թուղթ է իրականում լինելու՝ իրենից ոչինչ չներկայացնելով, եթէ ինչ-որ մի թուղթ էլ ստորագրուի, ապա ↳ 4

ԱՄՆ

# ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԱԴՐԲԷՋԱՆԸ ՇԱՏ ՄՕՏ ԵՆ ՎԵՐՋՆԱԿԱՆ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԵԱՆ ՀԱՍՆԵԼՈՒՆ. ԲԼԻՆՔԷՆ



10 Յուլիս 2024, Ուաշինկթոն. Անթոնի Պլինքէնի (մէջտեղը), Արարատ Միրզոյեանի (աջին) եւ Ճէյհուն Պայրամովի (ձախին) եռակողմ հանդիպումը:

Յուլիսի 10-ին Վաշինգտոնում տեղի է ունեցել Հայաստանի եւ Ադրբէջանի արտգործնախարարներ Արարատ Միրզոյեանի եւ Ջէյհուն Բայրամովի հանդիպումը՝ ԱՄՆ պետքարտուղար Էնթոնի Բլինքէնի նախաձեռնութեամբ եւ մասնակցութեամբ:

Հանդիպումից յետոյ Հայաստանի եւ Ադրբէջանի ԱԳՆ-ները հրապարակել են հետեւեալ հաղորդագրութիւնը. «Կողմերը նշել են խաղաղութեան եւ միջպետական յարաբերութիւնների հաստատման վերաբերեալ պատմական պայմանագրի կնքման ուղղութեամբ Հայաստանի եւ Ադրբէջանի կողմից գրանցուած առաջընթացը եւ համաձայնել են շարունակել աշխատանքները: Կողմերը երախտագիտութիւն են յայտնել ԱՄՆ պետքարտուղարին հանդիպումը հիւրընկալելու համար»:

Հանդիպման մեկնարկին իր ելոյթում ԱՄՆ պետքարտուղարն ասել է, որ Հայաստանն ու Ադրբէջանը շատ մօտ են վերջնական համաձայնութեան հասնելուն:

«Վերջին մէկուկէս տարուայ ընթացքում Հայաստանն ու Ադրբէջանը շատ կարեւոր աշխատանք են կատարել բանակցութիւնների եւ խաղաղութեան համաձայնագրի կնքման ուղղութեամբ: Սա երկարաժամկէտ եւ արժանապատիւ գործընթաց է եւ բացառիկ հնարաւորութիւն է երկու երկրների, տարածաշրջանի, ինչպէս նաեւ ԱՄՆ-ի հետ իրենց յարաբերութիւնների համար: Այս գործընթացի ընթացքում Միացեալ Նահանգները ձգտել է օգնել եւ աջակցել կողմերին՝ ↳ 4

# ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐԸ ԿՈՂՄԵՐԻՑ ՊԱՀԱՆՋՈՒՄ Է ԾԱՆՐ ՓՈԽԶԻՋՈՒՄՆԵՐ. ՄԻԼԼԷՐ

Վաշինգտոնում Հայաստանի, Ադրբէջանի արտգործնախարարների եւ ԱՄՆ պետքարտուղարի եռակողմ հանդիպման ժամանակ կողմերն առաջընթաց գրանցել են, բայց համաձայնագիր դեռ չկայ, Յուլիսի 15-ի ճեպազրոյցի ժամանակ յայտարարել է ԱՄՆ պետդեպարտամենտի խօսնակ Մեթիու Միլլէրը, շեշտելով՝ Վաշինգտոնը չի հանգստանայ մինչեւ համաձայնութիւն չլինի:

Թէ ինչ առաջընթացի մասին է խօսքը, Միլլէրը չի մանրամասնել: Սակայն նշել է, որ Երեւանն ու Բաքուն երկար ճանապարհ են անցել ու անհաւանական առաջընթաց գրանցել:

«Խաղաղութեան համաձայնագիրը շատ մեծ նշանակութիւն կ'ունենայ այդ երկու երկրների եւ տարածաշրջանի համար՝ բերելով խաղաղութիւն, կայունութիւն, տարածաշրջանին անվտանգութիւն», - ասել է խօսնակը, շեշտելով՝ Վաշինգտոնը շարունակում է ջանքեր գործադրել խաղաղութեան պայմանագրի առաջ մղման հարցում:

«Մենք իսկապէս կարծում ենք, որ գործարքը հնարաւոր է, բայց այն կողմերից պահանջում է որոշ բարդ ընտրութիւններ եւ ծանր փոխզիջումներ: Վաշինգտոնը կը շարունակի կողմերին մղել դէպի վերջնական համաձայնութեան հաստատում եւ տարաձայնութիւնների հարթեցում», - ասել է Միլլէրը:

# ՀԱՄԱՌՕՏ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ *ԱՐԵՒ* ԼՐԱԳԻՐԻ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

1915 Մայիս 11-ին Վահան Թէքէեան կը հիմնէր *Արեւ* երկօրեան, որուն հետ իր անունը կապուած պիտի մնար մինչեւ իր վախճանը 1945 Ապրիլ 4-ին:

*Զահակիր*ի երկու Յաւելուածներ՝ ԿԵ. (65) եւ ԿԶ. (66), կը ներկայացնեն Թէքէեանի տուեալ շրջանի Եգիպտոսի կենսագրութիւնն ու գրութիւնները, ճշդելով նաեւ *Արեւ*ի բազմաթիւ մատենագրական տուեալներ:

Ստորեւ կը ներկայացնեմ զիրքերէն քաղուած ցանկեր՝ կապուած *Արեւ*ի մատենագրութեան հետ: Զանց կ'առնեմ աղբիւրները, բացատրութիւնները եւ ծանօթագրութիւնները, որոնք արձանագրուած են Յաւելուածներուն մէջ:

*Արեւ*ը եղած է երկօրեայ (1915-1922), օրաթերթ (1922-2005), երկօրեայ (2005-2008), եռօրեայ (2008-2016), շաբաթաթերթ (2016-էն մինչեւ այսօր):

**ԽՄԲԱԳԻՐ**

*Արեւ*ի խմբագիրները մատենագրելու ամենախնդրական շրջանը կը հանդիսանայ 1915-1945-ը, այսինքն, լրագիրի հիմնադրութենէն մինչեւ Վահան Թէքէեանի վախճանը:

Թէքէեան զանազան պատճառներով կարճ եւ երկար ժամկէտներով բացակայած է Եգիպտոսէն եւ *Արեւ*էն: Հետեւաբար, կարեւոր է նախ եւ առաջ պարզել Թէքէեանի խմբագրած ճշգրիտ թիւերը:

Կուսակցական լրագիր դառնալէ քիչ մը ետքը, 1921 Մայիսէն մինչեւ 2011 Մայիս *Արեւ* չէ նշած խմբագիրներուն անունները, իսկ մինչեւ 1921 թուական իր խորագրային հատուածին մէջ յիշատակած է երկու անուններ՝ Թէքէեան (1915-1920) եւ Միքայէլ Ս. Կիւրճեան (1920-1921), երբ իրականութեան մէջ Թէքէեան բազմիցս բացակայելով լրագիրէն խմբագրութիւնը կը ստանձնէր Կիւրճեան:

Ահաւասիկ 1915-1945 թուականներուն խմբագիրները.

**Վահան Թէքէեան**, 11 Մայիս 1915, Ա. տարի, թիւ 1 – 6 Սեպտեմբեր 1916, Բ. տարի, թիւ 51 (207):

**Միքայէլ Կիւրճեան**, 8 Սեպտեմբեր 1916, Բ. տարի, թիւ 52 (208) – 22 Յունուար 1917, Բ. տարի, թիւ 109 (265):

**Վահան Թէքէեան**, 24 Յունուար 1917, Բ. տարի, թիւ 110 (266) – 2 Մայիս 1917, Բ. տարի, թիւ 151 (307):

**Միքայէլ Կիւրճեան**, 4 Մայիս 1917, Բ. տարի, թիւ 151 (307) – 28 Մայիս 1917, Գ. տարի, թիւ 8 (318):

**Վահան Թէքէեան**, 30 Մայիս 1917, Գ. տարի, թիւ 9 (319) – Սեպտեմբեր 1917-ի սկիզբ:

**Միքայէլ Կիւրճեան**, Սեպտեմբեր 1917-ի սկիզբ – 1 Մայիս 1918, Գ. տարի, 152 (462):

**Վահան Թէքէեան**, 3 Մայիս 1918, Գ. տարի, 153 (463) – 3 Յունիս 1918, Դ. տարի, թիւ 9 (475):

**Միքայէլ Կիւրճեան**, 5 Յունիս 1918, Դ. տարի, թիւ 10 (476) – 2 Օգոստոս 1918, Դ. տարի, թիւ 35 (501):

**Վահան Թէքէեան**, 5 Օգոստոս 1918, Դ. տարի, թիւ 36 (502) – 6 Դեկտեմբեր 1918, Դ. տարի, թիւ 89 (554):

**Միքայէլ Կիւրճեան**, 9 Դեկտեմբեր 1918, Դ. տարի, թիւ 90 (555) – 8 Դեկտեմբեր 1922, Ը. տարի, թիւ 96 (1159) (երկօրեայի վերջին օրը):

**Յովհաննէս Յակոբեան**, 11 Դեկտեմբեր 1922, Թ. տարի, թիւ 1 (1160) (օրաթերթի առաջին օրը) – 17 Յունիս 1927, ԺԴ. տարի, թիւ 2535:

**Վահան Թէքէեան**, 18 Յունիս 1927, ԺԴ. տարի, թիւ 2536 – 1 Հոկտեմբեր 1927, ԺԴ. տարի, թիւ 2625:

**Փոխանորդ**, 3 Հոկտեմբեր 1927, ԺԴ. տարի, թիւ 2626 – 10 Հոկտեմբեր 1927, ԺԴ. տարի, թիւ 2633, կամ 11 Հոկտեմբեր 1927, ԺԴ. տարի, թիւ 2633:

**Վահան Թէքէեան**, 11 Հոկտեմբեր 1927, ԺԴ. տարի, թիւ 2633, կամ 12 Հոկտեմբեր 1927, ԺԴ. տարի, թիւ 2634 – 21 Յուլիս 1928, ԺԵ. տարի, թիւ 2874:

**Առժամեայ խմբագրական մարմին**, 23 Յուլիս 1928, ԺԵ. տարի, թիւ 2875 - 9 Նոյեմբեր 1928, ԺԵ. տարի, թիւ 2968:

**Վահան Թէքէեան**, 10 Նոյեմբեր 1928, ԺԵ. տարի, թիւ 2969 – 5 Յուլիս 1929, ԺԶ. տարի, թիւ 3167:

**Խմբագրական մարմին**, 6 Յուլիս 1929, ԺԶ. տարի, թիւ 3168 – Նոյեմբեր 1929-ի սկիզբ:

**Օննիկ Մահտեսեան եւ Յովհաննէս Մէքսէնեան**, Նոյեմբեր 1929-ի սկիզբ – Մարտ 1930:

**Օննիկ Մահտեսեան (աջակցութեամբ Միքայէլ Նաթանեանի)**, Մարտ 1930 – 16 Յունուար 1931, ԺԶ. տարի, թիւ 3639:

**Վահան Թէքէեան**, 17 Յունուար 1931, ԺԶ. տարի, թիւ 3640 – 30 Յունիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3778:

**Օննիկ Մահտեսեան եւ Յակոբ Փափազեան**, 2 Յուլիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3779 – 31 Հոկտեմբեր 1931, ԺԷ. տարի, թիւ 3883:

**Օննիկ Մահտեսեան (աջակցութեամբ Միքայէլ Նաթանեանի)**, 1 Նոյեմբեր 1931, ԺԷ. տարի, թիւ 3884 – 31 Յունուար 1932, ԺԷ. տարի, թիւ 3960:

**Յովհաննէս Պօղոսեան**, 2 Փետրուար 1932, ԺԷ. տարի, թիւ 3961 – 31 Օգոստոս 1935, Ի. տարի, թիւ 5063 (թերեւս քանի մը թիւ եւս խմբագրած ըլլայ):

1934 Յուլիսի սկիզբէն մինչեւ Սեպտեմբեր 4 Պօղոսեան բացակայած է Եգիպտոսէն: Յայտնի չէ ով փոխարինած է զինք իբրեւ խմբագրապետ:

**Վահան Թէքէեան**, 2 Սեպտեմբեր 1935, Ի. տարի, թիւ 5064 (թերեւս խմբագրապետութիւնը ստանձնած ըլլայ քանի մը թիւ ետք) – 4 Ապրիլ 1936, Ի. տարի, թիւ 5245:

**Յովհաննէս Պօղոսեան**, 6 Ապրիլ 1936, Ի. տարի, թիւ 5246 – 31 Մայիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5902:

**Վահան Թէքէեան**, 1 Յունիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5903 – 9 Յունուար 1940, ԻԵ. տարի, թիւ 6395:

**Յակոբ Արամեան (ժամանակաւոր փոխանորդ Թէքէեանի)**, 10 Յունուար 1940, ԻԵ. տարի, թիւ 6396 – 19 Փետրուար 1940, ԻԵ. տարի, թիւ 6429:

**Վահան Թէքէեան**, 20 Փետրուար 1940, ԻԵ. տարի, թիւ 6430 – 3 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6466:

**Յակոբ Արամեան**, 4 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6467 – 13 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6475:

**Վահան Թէքէեան եւ Յակոբ Արամեան**, 15 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6476 – 27 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6487:

**Յակոբ Արամեան**, 30 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6488 – 7 Յունիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6521:

**Վահան Թէքէեան**, 8 Յունիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6522 – 9 Նոյեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6652:

**Յակոբ Արամեան**, 11 Նոյեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6653 – 20 Դեկտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6687:

**Վահան Թէքէեան**, 21 Դեկտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6688 – 30 Մայիս 1941, ԻԶ. տարի, թիւ 6820 (կամ քանի մը թիւ առաջ):

**Յակոբ Արամեան**, 31 Մայիս 1941, ԻԶ. տարի, թիւ 6821 (կամ քանի մը թիւ առաջ) – 18 Յուլիս 1941, ԻԶ. տարի, թիւ 6862:

**Վահան Թէքէեան**, 19 Յուլիս 1941, ԻԶ. տարի, թիւ 6863 – 30 Մայիս 1942, ԻԷ. տարի, թիւ 7126:

**Յակոբ Արամեան**, 1 Յունիս 1942, ԻԷ. տարի, թիւ 7127 – 10 Յուլիս 1942, ԻԷ. տարի, թիւ 7161:

**Վահան Թէքէեան**, 11 Յուլիս 1942, ԻԷ. տարի, թիւ 7162 – 19 Սեպտեմբեր 1942, ԻԷ. տարի, թիւ 7221 (կամ քանի մը թիւ ետք):

**Յակոբ Արամեան**, 21 Սեպտեմբեր 1942, ԻԷ. տարի, թիւ 7222 (կամ քանի մը թիւ ետք) – 6 Նոյեմբեր 1942, ԻԷ. տարի, թիւ 7261:

**Վահան Թէքէեան**, 7 Նոյեմբեր 1942, ԻԷ. տարի, թիւ 7262 – 4 Սեպտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7514:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՓԱՇԻՆԵԱՆԸ ՀԵՌԱԽՕՍԱԶՐՈՅՑ Է ՈՒՆԵՑԵԼ ԻՐԱՆԻ ՆՈՐԸՆՏԻՐ ՆԱԽԱԳԱՀԻ ՀԵՏ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը հեռախօսազրոյց է ունեցել Իրանի նորընտիր նախագահ Մասուդ Փեզեշքիանի հետ, յայտնում է վարչապետի մամուլի խօսնակ Նազելի Բաղդասարեանը:

Փաշինեանն Իրանի նախագահին շնորհաւորել է ընտրութիւններում տարած յաղթանակի առիթով:

Զրուցակիցները վերահաստատել են իրենց հաւատարմութիւնը նախկինում միջպետական մակարդակում ձեռքբերուած պայմանաւորուածութիւններին:

Փաշինեանն ու Փեզեշքիանը պայմանաւորուել են առաջիկայ պատեհ առիթով հանդիպել:

ԹՈՒՐՔԻԱ

## ԷՐՏՈՂԱՆ ՉԻ ԲԱՑԱՌԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՍԱՀՄԱՆԻ ԲԱՑՈՒՄԸ

Թուրքիոյ նախագահ Ռեճէփ Թայիփ Էրտողան չի բացառեր՝ որ Երեւանի եւ Պաքուի միջեւ խաղաղութեան պայմանագիրի կնքումէն ետք, Թուրքիա կրնայ բանալ Հայաստանի հետ սահմանը: Ան այս կարծիքը արտայայտեց լրագրողներուն՝ ՆԱԹՕ-ի գագաթնաժողովէն վերադարձի ճանապարհին:

«Իսկ ինչու չքննարկել այդ հարցը: Նախապէս ասոր մասին մենք արդէն ամէն բան ըսած էինք Փաշինեանին: Հիմա մենք պէտք է ամէն բան ընենք խաղաղութեան համար: Մենք յոյս ունինք՝ որ շուտով Ազըրպէյճանի եւ Հայաստանի միջեւ ձեռք կը բերուի ամուր խաղաղութիւն, որուն ամբողջ սիրտով կ'աջակցի Թուրքիան», - յայտարարեց Էրտողան:

Բայց ան չմոռցաւ յիշեցնել նաեւ Զագեզուրի Միջանցքը, որուն բացումը համարելով լիարժէք խաղաղութեան եզրափակիչ փուլ: «Զանգեզուրի միջանցքի բացումը այս համաձայնագիրի վերջնական քայլն է: Մենք կը ցանկանք՝ որ այդ ճանապարհի առնչութեամբ անյապաղ կայացուին դրական որոշումներ: Հիմա դրական ազդակներ կու գան տարածաշրջանէն եւ մենք յոյս ունինք՝ որ ի վերջոյ անոնք լաւ նորութիւններ կը բերեն», - կը յայտարարէ Էրտողան:

Էրտողան կը նշէ նաեւ՝ որ Իրանի նոր նախագահ Մասուտ Փեզեշքիանի հետ տակաւին չէ քննարկած Զանգեզուրի Միջանցքի հարցը: «Ես միայն զինքը շնորհաւորեցի ընտրութիւններուն յաղթանակելու համար: Զանգեզուրի Միջանցքը ռազմավարական ճանապարհ է, որ օգուտ կը բերէ բոլորին, յատկապէս Ազըրպէյճանին, Հայաստանին եւ Իրանին: Իրան եւ Ազըրպէյճան կը զգան՝ որ իրենց համար աւելի դիւրին կ'ըլլայ երբ միջանցքը գործէ եւ երկաթուղին բանեցուի»:

ԱՄՆ

## ՄԱԿՐՈՆԸ ԷՐԴՈՂԱՆԻ ՀԵՏ ԶՐՈՅՑՈՒՄ ԿԱՐԵՒՈՐԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԵՋԱՆԻ ՄԻՋԵՒ ՀՆԱՐԱՒՈՐԻՆՍ ԱՐԱԳ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ ԿՆՔԵԼՈՒ ՀԱՆԳԱՄԱՆՔԸ

Ֆրանսիայի նախագահ Էմանուէլ Մակրոնը Վաշինգտոնում կայացած ՆԱՏՕ-ի գագաթնաժողովի շրջանակներում Յուլիսի 11-ին իր թուրք գործընկեր Ռեջէփ Թայիփ Էրդողանի հետ հանդիպման ընթացքում կարեւորել է Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ հնարաւորինս արագ խաղաղութեան պայմանագիր կնքելու անհրաժեշտութիւնը: *Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ այդ մասին յայտնում է Ֆրանսիայի նախագահի պաշտօնական կայքը:

Անդրադառնալով այդ հարցին՝ Էմանուէլ Մակրոնը, մասնաւորապէս, վերահաստատել է իր աջակցութիւնը Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ ընթացող երկխօսութեանը՝ հնարաւորինս արագ խաղաղութեան պայմանագրի կնքման նպատակով: Նա նշել է, որ դա կարող է նոր էջ բացել տարածաշրջանում:

Ֆրանսիայի նախագահը նաեւ վերահաստատել է Թուրքիայի հետ դրական երկկողմ օրակարգը զարգացնելու իր երկրի պատրաստակամութիւնը:

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐ*Ի 65-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻՆ

Լոյս տեսաւ *Ջահակիր*ի ԿԵ. (65) Յաւելուածը՝ *Վահան Թէքէեանի* Արեւ*ի շրջանը (1915-1945), Ա. հատոր, Կենսագրական ժամանակագրութիւն*, 89 էջ:




1915-ին Թէքէեան կը հիմնէր *Արեւ* լրագիրը, որուն հետ մեծ ու փոքր ընդհատումներով կապուած կը մնար մինչեւ իր մահը 1945-ին:

Ա. եւ Բ. հատորները կը ներկայացնեն Վահան Թէքէեանի 1915-1945 թուականներու Եգիպտոսի կենսագրութիւնն ու հրատարակած յօդուածները, առանցք ունենալով *Արեւ* լրագիրը:

Ա. հատորը կը ներկայացնէ Թէքէեանի տուեալ շրջանի կենսագրութեան ժամանակագրութիւնը, հիմնուելով մեծ մասամբ *Արեւ*ի մէջ արձանագրուած մեծաքանակ տեղեկութիւններուն վրայ:

Յիշեցնենք՝ որ 2019-ին լոյս տեսած Յաւելուած ԻԲ.-ը եւս նուիրուած էր Թէքէեանին եւ *Արեւ*ին՝ *Վահան Թէքէեանի յօդուածները* Արեւ *լրագիրին մէջ. հնարաւորութի՞ւն թէ դիմադրութիւն* (124 էջ):

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՎԵՐՋԻՆ 5 ՏԱՐԻՆԵՐԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՂԵԼ ԵՆ ԶԳԱԼԻ ԶԱՐԳԱՑՈՒՄՆԵՐ, ՈՐՈՆՔ ԲԵՐԵԼ ԵՆ ԱՒԵԼԻ ՇԱՏ ԱԶԱՏԱԿԱՆԱՑՈՒՄ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՀԱՄԱՐ. ՍԱՄԱՆԹԱ ՓԱՈՒԷՐ

USAID-ին ժողովրդավարութեան հետ կապուած հարցադրմանը մօտենում է գլոբալ տեսանկիւնից՝ ամբողջ աշխարհում արձանագրելով զգալի յետընթաց ժողովրդավարական գործընթացներում, որովհետեւ վիճարկւում են ընտրութիւնների արդիւնքները, դրանք կասկածի տակ են դրւում նաեւ Միացեալ Նահանգներում, քաղհասարակութիւնն ամենուր գնալով աւելի շատ ճնշումների է ենթարկւում, մարդիկ որոշ երկրներում նոյնիսկ չեն կարող քննադատել կառավարութեանը՝ վախենալով բանտարկութիւններից:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ այդ կարծիքը մամլոյ ասուլիսում յայտնեց ԱՄՆ-ի Միջազգային Զարգացման Գործակալութեան (USAID) կառավարիչ Սամանթա Փաուէրը՝ անդրադառնալով մեր երկրում ընթացող ժողովրդավարական գործընթացներին:

«Ես այստեղ չեմ եկել դրսից այցելուի տեսանկիւնից գնահատականներ տալու հայաստանեան ժողովրդավարական գործընթացի բաղադրիչներին, սակայն աւելի գլոբալ համայնապատկերի մէջ վերջին հինգ տարիների ընթացքում Հայաստանում եղել են զգալի զարգացումներ, որոնք բերել են աւելի շատ ազատականացում քաղաքացիների համար: Մասնաւորապէս, երբ խօսում ենք կոռուպցիայի դէմ պայքարի մասին: Այստեղ առկայ է աւելի շատ թափանցիկութիւն: Մեր գործակալութեան մօտեցումը հետեւեալն է. մենք չենք սատարում որեւէ անձի կամ կառավարութեան, այլ դիտարկում ենք այն, թէ ինչ ↳ 4

## ԲԱՐՁՐ ԵՆՔ ԳՆԱՀԱՏՈՒՄ ՄԵՐ ԵՐԿՈՒ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԻՋԵՒ ԱՌԿԱՅ ԱՌԱՆՁՆԱՅԱՏՈՒԿ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ. ՓԱՇԻՆԵԱՆԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ Է ՄԱԿՐՈՆԻՆ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը շնորհաւորական ուղերձ է յղել Ֆրանսիայի նախագահ Էմանուէլ Մակրոնին՝ Յուլիսի 14-ի ազգային տօնի առթիւ: Ուղերձում ասուած է.

«Մեծարգոյ պարոն նախագահ, թանկագին Էմանուէլ,

«Հայ ժողովրդի եւ անձամբ իմ անունից ջերմօրէն շնորհաւորում եմ Ձեզ եւ եղբայրական Ֆրանսիայի ժողովրդին ազգային տօնի՝ Յուլիսի 14-ի կապակցութեամբ:

«235 տարի առաջ այս օրը համաշխարհային պատմագրութեան մէջ ամրագրուեց ոչ միայն որպէս ազատութեան, հաւասարութեան եւ եղբայրութեան արժէքների գերակայութեան համար ֆրանսիացի ժողովրդի արդար պայքարի, այլեւ համամարդկային արժէքների, մարդու իրաւունքների եւ ժողովրդավարութեան յաղթանակի օր:

«Ոգեշնչուելով համամարդկային նշանակութիւն ունեցող այդ բարձր արժէքներից՝ Հայոց Ցեղասպանութիւնից փրկուած եւ Ֆրանսիայում ապաստանած բազմաթիւ հայորդիներ ստեղծագործել, արարել եւ նոյնիսկ իրենց կեանքն են նուիրաբերել յանուն Ֆրանսիայի, նրա ազատութեան եւ նրա դաւանած արժէքների: Այս համատեքստում ցանկանում եմ իմ երախտագիտութիւնը յայտնել Ֆրանսիայում պետական ամենաբարձր մակարդակով հայազգի զաւակներին արժանին մատուցելու համար, որոնց թւում էր Դիմադրութեան Շարժման հերոս Միսաք Մանուշեանը, ում աճիւնն ընթացիկ տարուայ Փետրուարին Ձեր որոշմամբ տեղափոխուեց Պանթէոն:

«Բարձր ենք գնահատում մեր երկու պետութիւնների միջեւ առկայ առանձնայատուկ յարաբերութիւնները, որոնք խարսխուած ↳ 4

## ՀԻՒՐԵՐԸ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ ԵՆ ԻՐԵՆՑ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԱԿՈՒՄ ԱՐՈՒԵՍՏԻ ՈԼՈՐՏՈՒՄ ԻՐԱԿԱՆԱՑՈՒՈՂ ԾՐԱԳՐԵՐԸ

Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարի տեղակալ Դանիէլ Դանիէլեանն ընդունել է Փարիզի փոխքաղաքապետ, ՀԲԸՄ Ֆրանսիայի գրասենեակի տնօրէն Անուշ Թորանեանին եւ արուեստի ու մշակոյթի հարցերով պատասխանատու Մանոն Զեյդլէրին:

Դանիէլ Դանիէլեանը ողջունել է հիւրերին եւ կարեւորել հայ-ֆրանսիական յարաբերութիւնների կայացումը նաեւ մշակոյթի տարբեր ոլորտներում պատանիների ու երիտասարդների կարողութիւնների զարգացմամբ:

ԿԳՄՍ նախարարի տեղակալը ներկայացրել է պետական աջակցութեամբ իրականացւող կրթամշակութային ծրագրերը եւ ընթացակարգերը՝ յատկապէս ընդգծելով դրանցում կրթութեան եւ մշակոյթի փոխկապակցման առաջնահերթութիւնը:

Դանիէլ Դանիէլեանն առանձնակի ուշադրութիւն է հրաւիրել «Մեկնարկ» տաղանդի զարգացման եւ «Քոյր դպրոցներ» ծրագրերի վրայ:

«ԿԳՄՍ նախարարութեան աջակցութեամբ իրականացուող «Քոյր դպրոցներ» ծրագիրը ներհամայնքային երաժշտական կեանքն աշխուժացնելու, երաժիշտ պատանիների միջեւ երկխօսութեան կայացման միտումն ունի: Ծրագրի շնորհիւ ապահովւում են երաժշտական եւ արուեստի դպրոցների միջեւ փորձի փոխանակումը, ստեղծագործա- ↳ 4

ԽՈՀԵՐ

## ՀԱՅՐԵՆԱԹՈՂ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ես՝ Գահիրէի մէջ հանգիստ նստած, վերջին անձն եմ որ իրաւունք ունիմ մեղադրելու Հայաստանէն հեռացողները: Թէեւ իրաւունքս է մեկնաբանել, փնտռել պատճառները: Պատճառները կրնան ունենալ զանազան երեսակներ, բայց կը համախմբուին մէկ նիւթի շուրջ՝ աւելի լաւ ապրիլ: Այդ «աւելի լաւ»-ը կրնայ ըլլալ զուտ նիւթական (դրամական եկամուտի բարելաւում), կամ ասպարէզային (օրինակ՝ արուեստագէտ մը, որ կը կարծէ անտեսուած ըլլալ իր երկիրին մէջ, կամ կը ձգտի տիրանալ «միջազգային» համբաւի), կամ դասակարգային (ենթադրաբար արտասահմանի մէջ ինքզինքը աւելի «բարձր» զգալ), կամ խուսափում պատերազմէ եւ հնարաւոր մահէ:

Բայց «Խոհեր»-ուս մտահոգութիւնը պատճառներու որոնումն ալ չէ: Այլ այն հայրենասիրական պաթոսը՝ զոր յաճախ կ'արտածորէ ընդմիշտ մեկնողներուն ձայնաւոր մասը, յատկապէս քիչ թէ շատ համբաւ ունեցող երաժիշտները, արուեստագէտները, գրողները, մարզիկները: Երեւոյթը բաւական տարածուած է այսօր եւ կարելի չէ անտեսել:

Հարցը խօսիլն է, խօսիլ՝ բարձր ձայնով, լսելի՝ մամուլով, հեռատեսիլով եւ առցանց: Հարցը ուռուցիկ ու փքուն խօսքն է՝ թէ Հայաստանը միշտ իր սիրտին մէջն է, իր սիրտը միշտ կը բաբախէ Հայաստանով, Հայաստանը իր օրրանն է, ներշնչումի համար պարբերաբար կ'այցելէ Հայաստան, մէկ օր անգամ չի կրնար ապրիլ առանց Հայաստանի մասին մտածելու, եւլն., եւլն.: Այսպէս խօսողները շատ են: Պիտի չնշեմ անուններ:

Խօսքեր, անվերջանալի խօսքեր, գեղեցիկ խօսքեր: Հայրենասիրական խօսքեր: Խօսքերով կը դառնան հայրենասէր: Եւ այդտեղ ալ կը վերջանայ հայրենասիրութիւնը:

Եթէ այս ամէնն է՝ ինչո՞ւ հեռացար Հայաստանէն: Որովհետեւ որոշած ես ապրիլ ուր որ կը գտնուիս հիմա: Ոչ ոք կրնայ քննադատել որոշումդ: Որոշած ես դառնալ սփիւռքահայ: Ոչ ոք կրնայ մերժել սփիւռքահայ հասկացողութիւնը: Թէեւ կարելի է, եւ *պէտք է*, խնդրականացնել այս ամէնը:

Հայաստանը թողելէ ետք չկա՞յ արդեօք հայ ապրելու ուրիշ կերպ քան Հայաստանի հանդէպ խօսքային սիրոյ յուզմունքները: Անշուշտ՝ կայ: Բայց կը պարզուի՝ որ այս ուրիշ կերպը դժուարընկալ է: Այսինքն, դժուարընկալ է՝ որ սփիւռքահայը իր հայութիւնը արտայայտէ ապրելակերպի փորձառութեան մէջ: Նախ, ինչպէս աշխարհի ռեւէ մարդ, կրնայ իր ազատ կամքով ընտրել ազգութիւնը մշակութային հենքի վրայ, այսինքն, եթէ կ'ուզէ հայ չըլլալ՝ իր ընտրութիւնն է: Բայց եթէ կը փափաքի շարունակել մնալ հայ, կարեւոր է որ ընդունի հայկականութեան բնածին յատկութիւնները, որմէ ետք բնածինութիւնը ներգրաւէ իր սեփական ճիգով մշակած միտքի, մտածողութեան եւ գիտելիքի մէջ: Եւ զգայ Սփիւռքի տուեալ գաղութը՝ իր ներկայ գոյութեամբ ու յատկանիշներով, իր յիշողութեամբ եւ ապագայի հեռանկարով:

Յօրինուած եւ արդիւնաբերուած հայրենասիրութենէն անցնինք բնական ու տոհմային հայրենասիրութեան, զայն մաս դարձնելով քաղաքակրթութեան նշանային մշակոյթի *անկեղծ* արտայայտութեան (ի՞նչ է քաղաքակրթութիւնը՝ եթէ ոչ նշանային մշակոյթ): Կը բաւէ արդիւնաբերական հայրենասիրութեան յառաջացուցած մարմնական եւ մտաւոր աւերները:

ՀԱՅԱՍՏԱՆ

## «ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ» ԱՌԱՐԿԱՆ ԱՆՈՒԱՆԱՓՈԽՈՒԵՑ «ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ»

Կառավարութիւնը Յուլիսի 11-ի նիստին հաստատեց «Հայոց պատմութիւն» առարկան «Հայաստանի պատմութիւն» անուանմամբ վերափոխելու նախագիծը:

«Առարկայի ներկայիս անուանումը չի ներառում կամ յստակ չի ներկայացնում պետականութեան գաղափարը, ուստի «Հայաստանի» բառն անհրաժեշտ է ամրագրել՝ առարկայի անուամբ շեշտադրելով պետականութեան, դրա կարեւորման գաղափարը սովորողների մօտ ամրապնդելու, սերնդի մէջ պետականութեան ընկալումը սերմանելու նպատակով: Պատմութեան ուսուցանումը առաջին հերթին պիտի միտուած լինի ժամանակակից Հայաստանի դիրքից պատմական իրադարձութիւնների վերլուծութեանն ու ներկայացմանը: Այսպիսով, պատմութեան ուսուցանման միջոցով Հայաստանի գոյութիւնը կը ներկայացուի պատմական իրադար- ↳ 4

# ՃԱՌԱԿԻՐ

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԱԴՐԲԷՋԱՆԸ ՇԱՏ ՄՕՏ ԵՆ...

Եւրամիութեան եւ Եւրոպայի բազմաթիւ գործընկերների հետ միասին: Այսօր հնարաւորութիւն է ստեղծուել ամփոփելու առաջընթացը, որ ձեռք է բերուել: Կարծում եմ, որ երկու երկրները շատ մօտ են վերջնական համաձայնութեան հասնելուն, դրան Միացեալ Նահանգները վճռականօրէն կ'աջակցի: Շնորհակալ եմ այսօրուայ հանդիպման համար, որպէսզի նորից գնահատեմ, թէ որտեղ ենք եւ տեսնել, թէ էլ ինչ կարող է անել Միացեալ Նահանգները օգնելու հասնել համաձայնութեան», - նշել է Բլինքէնը:

## ՀԱՄԱՌՕՏ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ *ԱՐԵՒ* ...

**Յակոբ Արամեան**, 6 Սեպտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7515 – 24 Սեպտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7531 (կամ 1-2 թիւ առաջ):

**Վահան Թէքէեան**, 25 Սեպտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7532 (կամ 1-2 թիւ առաջ) – 25 Սեպտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7532 (կամ քանի մը թիւ ետք):

**Յակոբ Արամեան**, 27 Սեպտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7533 (կամ քանի մը թիւ ետք) – 28 Նոյեմբեր 1944, ԻԹ. տարի, թիւ 7888 (կամ քանի մը թիւ առաջ):

**Վահան Թէքէեան**, 29 Նոյեմբեր 1944, ԻԹ. տարի, թիւ 7889 (կամ քանի մը թիւ առաջ) – 30 Դեկտեմբեր 1944, ԻԹ. տարի, թիւ 7916:

**Յակոբ Արամեան**, 2 Յունուար 1945, ԻԹ. տարի, թիւ 7917 – 1947:

(Շար. 1/2)

## ԲԱՐՁՐ ԵՆՔ ԳՆԱՀԱՏՈՒՄ ՄԵՐ ԵՐԿՈՒ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԻՋԵՒ ԱՌԿԱՅ ԱՌԱՆՁՆԱՅԱՏՈՒԿ ....

են դարերի փորձութիւնները յաղթահարած եւ թրծուած անկեղծ բարեկամութեան, ինչպէս նաեւ քաղաքակրթական ու արժէքային ամուր հիմքերի վրայ: Այդ յարաբերութիւնների բնոյթի եւ բովանդակութեան մասին են փաստում բարձրաստիճան քաղաքական սերտ երկխօսութիւնն ու բոլոր ոլորտներում դինամիկ զարգացող փոխգործակցութիւնը՝ հնարաւորութիւն տալով նախանշել մեր պետութիւնների միջեւ ռազմավարական համագործակցութեան զարգացման ուղիները:

«Առանձնայատուկ շնորհակալութիւն եմ յայտնում Հայաստանի առջեւ ծառացած մարտահրաւէրների յաղթահարման համար հայ ժողովրդի կողքին կանգնելու, մեր տարածաշրջանում երկարատեւ խաղաղութեան եւ կայունութեան հասնելու ուղղութեամբ շարունակական ջանքեր գործադրելու Ձեր վճռական յանձնառութեան եւ անմիջական ղեկավարութեան համար:

«Օգտուելով առիթից՝ վերահաստատում եմ պետական այցով այս տարուայ Սեպտեմբերին Հայաստանում Ձեզ հիւրընկալելու իմ հրաւէրը:

«Վերստին շնորհաւորելով եւ Ձեզ յղելով խաղաղութեան, զարգացման ու բարգաւաճման լաւագոյն մաղթանքներ Ֆրանսիայի միասնականութիւնը եւ հերոսական պատմութիւնը խորհրդանշող տօնական այս օրուայ առթիւ՝ խնդրում եմ ընդունել, պարոն նախագահ, խորին յարգանքիս հաւաստիքը:

«Եղբայրաբար՝ Նիկոլ Փաշինեան»:

## ՀԻՒՐԵՐԸ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ ԵՆ ԻՐԵՆՑ...

կան համագործակցութեան հարթակների ձեւաւորումը: Կարծում եմ՝ հրաշալի կը լինի ծրագրի շրջանակն ընդլայնել երկրի սահմաններից դուրս համագործակցային կապեր հաստատելով արտերկրի երաժշտական դպրոցների հետ», - ասել է Դանիէլ Դանիէլեանը: Նա նաեւ ներկայացրել է «Մեկնարկ» ծրագրի մասնակից հայ պատանիների ձեռքբերումները միջազգային հեղինակաւոր տարբեր մրցոյթներում:

Հիւրերը ներկայացրել են իրենց գործունէութեան շրջանակում արուեստի ոլորտում իրականացուող ծրագրերը. նախանշուել են համագործակցութեան հնարաւորութիւնները: Ըստ Անուշ Թորանեանի՝ հայաստանաբնակ պատանիների կարողութիւնների զարգացման ուղղութեամբ կարող են համատեղ ծրագրեր իրականացնել երաժշտութեան եւ նորաձեւութեան ոլորտներում:

Քննարկուել են նաեւ Փարիզում անցկացուող «Հայաստանի աւան» փառատօնի կազմակերպման, Հայաստանից մասնակիցների ներգրաւմամբ հայկական մշակոյթի տարբեր ոլորտների ընդգրկման, փառատօնի աշխարհագրութեան ընդլայնման վերաբերեալ տարաբնոյթ հարցեր:

## ԿՈՂՄԵՐԸ ՄՕ՞Տ ԵՆ ԱՐԴԵՕՔ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐԻ ՍՏՈՐԱԳՐՈՒԹԵԱՆ

նրանք դա բերելու հասցնելու են հէնց այդ COP29-ի ընթացքում, որպէսզի դրանից նաեւ քաղաքական լրացուցիչ դիվիդենտներ քաղեն եւ նաեւ նուաստացման գործընթաց իրականացնեն մեր պետութեան ղեկին նստած անձի հանդէպ, քանի որ նրանք պնդելու են, որ դա իրականացուի Բաքւում», - ընդգծեց Աղաջանեան:

Զինիկ Աղաջանեան նաեւ կը բացառէ՝ թէ ամերիկեան կողմը Յուլիս 10-ի բանակցութիւններուն մէջ կրնար ճնշում գործադրել Ազրպէյճանի վրայ՝ Հայաստանի Սահմանադրութիւնը փոխելու պահանջէն հրաժարելու համար:

***ՔՊ-ն կը կարեւորէ գործընթացի շարունակականութիւնը***

Իշխող Քաղաքացիական Պայմանագիրը կը կարեւորէ Ուաշինկթոնի եռակողմ հանդիպումը: Խորհրդարանի Արտաքին Յարաբերութիւններու Յանձնաժողովի նախագահ Սարգիս Խանդանեան կը կարեւորէ գործընթացի շարունակականութիւնը, առանց խօսելու ճշգրիտ արդիւնքներու մասին:

«Երեկուայ [Յուլիս 10] վաշինգտոնեան հանդիպումից պաշտօնական հաղորդագրութիւններից աւելին չեմ կարող ասել, նոր է տեղի ունեցել հանդիպումը: Շատ կարեւոր է, որ տեղի է ունեցել հանդիպում, որովհետեւ պրոցեսի շարունակականութեան ապահովումը առանցքային է այս գործընթացում», - *Ազատութիւն ռատիոկայան*ին ըսաւ Խանդանեան:

Միրզոյեան եւ Պայրամով Ուաշինկթոնէն առաջ երկկողմ ձեւաչափով բանակցած էին Մայիսին, Ալմաթիի մէջ: Շուրջ երկու տարուայ բանակցութիւններուն ընթացքին, կողմերը արդէն փոխանակած են խաղաղութեան համաձայնագիրի նախագիծի 10 տարբերակներ:

***Ազատութիւն ռատիոկայան***

Արեւելահայերէնէ արեւմտահայերէն փոխադրութիւն՝ Ա.

## ՎԵՐՋԻՆ 5 ՏԱՐԻՆԵՐԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՂԵԼ ԵՆ ԶԳԱԼԻ ...

կարող է ԱՄՆ-ն անել՝ ուժեղացնելու կառոյցներն ու ինստիտուտները, զսպանակներն ու հակակշիռները՝ պաշտպանելու այն դաշտը, որտեղ հնչում են նաեւ քննադատութիւններ՝ կապուած ժողովրդավարական գործընթացներում առկայ որոշ երեւոյթների հետ», - ասաց ԱՄՆ-ի Միջազգային Զարգացման Գործակալութեան կառավարիչը:

Եւս մէկ անգամ անդրադառնալով Հարաւային Կովկասում խաղաղութիւն հաստատելու հեռանկարին՝ Փաուէրը շեշտեց, որ պէտք է լուծել բոլոր խնդիրները, որպէսզի Հարաւային Կովկասում լինի տեւական խաղաղութիւն: Նա նշեց, որ Հայաստանում գտնուելու ընթացքում կենտրոնացել է հնարաւորութիւնների ու առաւելութիւնների վրայ, որոնք կարեւոր են Հայաստանի եւ Ադրբէջանի ժողովուրդների համար:

«Ադրբէջանում անցկացուած վերջին հարցումների համաձայն՝ խաղաղութեան գործընթացի նկատմամբ լայն աջակցութիւն կայ նաեւ այնտեղ: Մենք Ադրբէջանի իշխանութիւններին կոչ ենք անում յարգել մարդու իրաւունքները, մարդավայել վերաբերմունք ցուցաբերել Լեռնային Ղարաբաղից բանտարկեալների նկատմամբ, իրականացնել արդար դատաքննութիւն: Այդ հարցերի լուծումը նոյնպէս կ'ապահովի առաջընթաց բանակցութիւններում», - եզրափակեց ԱՄՆ-ի Միջազգային Զարգացման Գործակալութեան կառավարիչը:

## «ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ» ԱՌԱՐԿԱՆ ԱՆՈՒԱՆԱՓՈԽՈՒԵՑ «ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ»

ձութիւնների եւ գործընթացների տրամաբանական շղթայի ներքոյ՝ նախորդող շրջանում տարբեր ձեւաչափերով հայկական պետութեան գոյութեան ժամանակահատուածներում շեշտադրելով պետութեան գաղափարի կարեւորութիւնը եւ պետականութեան ներքին աւանդոյթը», - ասուած է որոշման հիմնաւորման մէջ:

Ըստ գործադիրի՝ «Հայոց պատմութիւն» առարկայի անուանումը «Հայաստանի պատմութիւն» անուամբ փոխելով՝ «առարկայի դասագրքի անուանումն արդէն իսկ սովորողի մօտ պարտաւորութիւն եւ սկզբունքներ կ'արմատաւորի պետականութիւն ունեցող երկրի քաղաքացի ձեւաւորուելու գործընթացում»:

Նախագծի քննարկման ժամանակ վարչապետ Նիկոլ Փաշինեանն ասել է. «Ինչո՞ւ ենք այս որոշումը ընդունում, որովհետեւ մենք մեր ռազմավարութեան հիմքում եւ մեր քաղաքականութիւնների հիմքում դնում ենք պետականութիւնը, անկախութիւնը, ինքնիշխանութիւնը: Մենք պէտք է, ընդհանուր առմամբ, արձանագրենք, որ պետութիւնը բոլորովին ուրիշ մտածողութիւն եւ մշակոյթ է, պետութիւնը բոլորովին ուրիշ հայեցակէտ է: Մենք պէտք է ուժ ունենանք խոստովանելու եւ առերեսուելու, որ այդ մտածողութիւնը միշտ չէ եւ ամենուր չէ, որ հասանելի է մեզ հէնց այսօր հէնց այս դահլիճում տեղի ունեցող քննարկումներում եւ որոշումներում: Մենք, իմ գնահատմամբ, մի պրոցեսի մէջ ենք, որ հիմա փորձում ենք, ըստ էութեան, բարձրանալ դէպի պետական ընկալման աշտարակ, որտեղից աշխարհը եւ կեանքը երեւում է բոլորովին այլ կերպ»:

Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարար Ժաննա Անդրէասեանը, անդրադառնալով նախագծի վերաբերեալ մտահոգութիւններին, վստահեցրել է՝ բովանդակութիւնը չի կրճատուելու. «Որոշ շրջանակների մօտ կար տպաւորութիւն, թէ առարկան վերանուանելով՝ մենք բովանդակութեան իմաստով որեւէ բան դուրս ենք թողնելու եւ օրինակ մեր երեխաներն այլեւս չեն ուսումնասիրելու մեր պատմութեան ինչ-որ դրուագներ կամ կտորներ: Ուզում եմ եւս մէկ անգամ յստակ ասել, որ բովանդակային տեսանկիւնից ամբողջ բովանդակութիւնը շարունակելու է մնալ կրթական ծրագրի մաս, եւ այս իմաստով՝ բովանդակութեան կտորների դուրս թողման մասին պնդումներն ուղղակի կապ չունեն իրականութեան հետ: Այն, ինչ փոխւում է՝ այդ դէպքերի, իրադարձութիւնների եւ իրողութիւնների ներկայացման ձեւն է, վերագնահատումն է հէնց այն մեթոդաբանութեան դիրքերից, որոնց մասին դուք խօսեցիք»:

*Յ. Գ. «Խոհեր»-ը երեք ամիս առաջ համառօտակի անդրադարձած էր «Հայաստանի պատմութիւն» եւ «Հայոց պատմութիւն» հարցին (Զախակիր, թիւ 1963):*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1971 ՀԻՆԳՇԱԲԹԻ 1 ՕԳՈՍՏՈՍ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٧١ الخميس ١ أغسطس ٢٠٢٤


## ՌՈՒՍ-ԹՐՔԱԿԱՆ ԱՐՏԵՐԿՐԵԱՅ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Սուրիոյ, Լիպիոյ եւ Նիժէրի մէջ Թուրքիա եւ Ռուսաստան մշակած են յատուկ յարաբերութիւններ, զորս ճիշդ կ՚ըլլայ բնութագրել՝ բարեկամական թշնամութիւն, թշնամական բարեկամութիւն, համաձայնեցուած թշնամութիւն, կամ հակառակորդային դաշնակցութիւն:

Թուրքիա-Ռուսաստան շրջածիրին մէջ յայտնուած Հայաստանի համար այս յարաբերութիւնները էական նշանակութիւն ունին:

**ՍՈՒՐԻԱ**

Երկար տարիներ է արդէն Թուրքիա գլխաւոր հովանաւորն է սուրիացի իսլամիստ ապստամբներուն, իսկ Ռուսաստան՝ Պաշշար Ալ-Ասատի իշխանութեան:

Լոնտոնաբնակ թուրք հետազօտող եւ լրագրող, թրքական-սուրիական-քրտական հարցերու մասնագէտ, այցելու անդամ Եւրոպայի Խորհուրդի Արտաքին Յարաբերութիւններու (ECFR), BBC News-ի թղթակից, Քամպրիճի տոքթորականի թեկնածու՝ Կիւնէյ Եըլտըզ, 2021-ին պիտի արձանագրէր կարեւոր բացայայտում մը.

«2016 Դեկտեմբերին, Վլատիմիր Փութին եւ Ռեճէփ Էրտողան Ղազախստանի մայրաքաղաք Աստանան կ՚ընտրեն իբրեւ նոր վայր Սուրիոյ խաղաղութեան բանակցութիւններուն համար: Այսպէս ընելով, անոնք ընթացքի մէջ կը դնեն խաղ-ծրագիր մը՝ որուն միջոցով Մոսկուա եւ Անքարա կը վերահսկեն Սուրիոյ պատերազմող կողմերը եւ իրենց իշխանութեան տակ կ՚առնեն հակամարտութիւնը: Աստանայի գործընթացը ուշադրութեան կեդրոնէն կը վերացնէ Վիեննայի եւ Ժընեւի մէջ հաստատուած միջազգային միջնորդութեան մեքանիզմները: Թուրք-ռուսական համագործակցութիւնը նաեւ աւելի կը զսպէ Իրանի ազդեցութիւնը, քանի որ Թուրքիոյ պաշտպանութեան տակ գտնուող ապստամբներուն ու հաւատարմատարներուն եւ Ասատի վարչակարգին միջեւ լարումները կը լուծուին Անքարա-Մոսկուայի երկկողմանի բանակցութիւններուն միջոցով, այլ ոչ Աստանայի մէջ:

«2019-ին, Ուաշինկթոնի վրայ ճնշում գործադրելու Անքարայի յաջող արշաւը՝ պակսեցընելու համար սուրիացի քիւրտերուն յատկացուող օգնութեան քանակը, նպաստաւոր էր Մոսկուային, որուն համար Միացեալ Նահանգներ եւ գործընկերութեան ներկայութիւնը արեւելեան Սուրիոյ մէջ շատ աւելի վիճարկելի էր քան Թուրքիոյ ներկայութիւնը Սուրիոյ հիւսիս-արեւմուտքը: 2016-ին Ռուսաստան կանանչ լոյս տուաւ Թուրքիոյ՝ ներխուժելու Սուրիա: Փոխադարձաբար Անքարան, ըստ էութեան, դիւրացուց Սուրիոյ վարչակարգին տիրանալու ապստամբներուն վերահսկողութեան տակ գտնուող ամենակարեւոր քաղաքին՝ Հալէպին»(1):

Փութին եւ Էրտողան իրենց միջեւ բաժնեցին Սուրիան, մինչ Դամասկոսի մէջ կը գործէ Ասատի տկարացած, գրեթէ ձեւական վարչակարգը:

**ԼԻՊԻԱ**

Լիպիոյ արեւմուտքը կը գտնուի մայրաքաղաք Տրիպոլիի պաշտօնական կառավարութիւնը ղեկավարութեամբ Ֆայէզ Սարաժի եւ 2021-էն ի վեր՝ Մոհամէտ Ալ-Մենֆիի: Ասիկա միջազգային հանրութեան կողմէ ընդունուած կառավարութիւնն է, թէեւ աստիճանաբար կը դառնայ մեկուսացած: Արեւմուտքը եւ այս կառավարութիւնը կը գտնուի Թուրքիոյ ուղղակի ազդեցութեան տակ, իր կողմէ Սուրիայէն փոխադրած իսլամիստ վարձկաններուն միջոցով:

Համաձայն Անգլիոյ մէջ գործող SOHR-ի (Մարդու Իրաւունքներու Սուրիական Դիտորդական Խումբ) տեղեկութիւններուն, SADAT Միջազգային Պաշտպանական Խորհրդատըւութեան միջոցով Թուրքիա, Սուրիոյ հիւսիս-արեւմուտքը իր տիրապետած տարածութիւններէն, հազարաւոր վարձկաններ փոխադրած է Լիպիա՝ կազմելու համար իր իշխանութիւնը այնտեղ, ինչպէս նաեւ բաւարար քանակութեամբ ալ Լեռնային Ղարաբաղ՝ 44-օրեայ պատերազմին համար: Ընկերութիւնը կը դիտուի իբրեւ Անքարայի գաղտնի զէնքը Հիւսիսային Ափրիկէի եւ Միջին Արեւելքի մէջ(2):

Մինչդեռ Լիպիոյ արեւելքը՝ Կիրենայկա (Պարքա), ուր տեղադրուած է Մարեշալ Խալիֆա Հաֆթարի ինքնակոչ Լիպիական Ազգային Բանակը, կը գտնուի ռուսական ազդեցութեան տակ, քիչ ժամանակ առաջ՝ Փրիկոժինի Վակնէր Խումբի միջոցով, հիմա, երբ չկայ Վակնէրը, ռուսական յատուկ զօրախումբերու:

Թուրքիա եւ Ռուսաստան երկու կողմերուն տուած են զինային եւ խորհրդակցական ռազմական աջակցութիւն, իսկ ներկայիս, հակասականօրէն, իրենց ներկայութեամբ հաւասարակշռած են կողմերը եւ զսպած քաղաքացիական պատերազմի վերաբռնկումը, թէեւ իրենց իսկ ներկայութիւնը Լիպիոյ մէջ ուղղակի արդիւնքն էր նախկին քաղաքացիական պատերազմին: Ինչո՞ւ Թուրքիան եւ Ռուսաստանը քաջալերեն քաղաքացիական պատերազմը՝ եթէ իւրաքանչիւրը իր տիրապետած տարածութեան վրայ կը վերահսկէ քարիւղի դաշտերը, կարեւոր ռազմավարական ելումուտ ունի Միջերկրական Ծովուն վրայէն, ռազմական դաշնակցութիւններ կը կնքէ կառավարութիւններուն հետ:

**ՆԻԺԷՐ**

SOHR կը տեղեկացնէ նաեւ՝ որ 2023-ին աւելի քան հազար սուրիացի վարձկաններ SADAT-ի միջոցով այս անգամ փոխադրուեցան Նիժէր, պաշտօնական վարկածով՝ թրքական շահերն ու ծրագիրները պաշտպանելու համար: Ըստ համաձայնութեան, անոնք պէտք է վճարուին ամսական 1500 ամերիկեան տոլլար, իսկ մահուան պարագային ընտանիքին պէտք է տրուի 50 հազար տոլլար: Վարձկանները հիմնականապէս կ՚երթան դրամի համար, քանի որ սուրիական պատերազմի հետեւանքով տեղափոխուած ըլլալով իրենց բնակավայրերէն, դարձած են տնազուրկ, ագործ, ընտանիքով կ՚ապաստանին վրաններու տակ(3):

BBC արաբական ծառայութիւնը կը բացայայտէ՝ որ Թուրքիոյ միջոցով Նիժէր ղրկուած վարձկանները ինքզինքնին կը գտնեն նաեւ ռուսական հրամանատարութեան տակ՝ կռուելով ճիհատիսթ խումբերու դէմ(4): Ասիկա կարելի չէ տեղի ունենալ առանց ռուս-թրքական սերտ համաձայնութեան:

Ռուսաստանի տարածումը Ափրիկէի մէջ, ներառեալ Նիժէրի, ներկայացուցած էր ↳ 4

## ԱԴՐԲԷՋԱՆԸ ՍՊԱՌՆՈՒՄ Է «ԻՐ ՈՂՋ ԶԻՆԱՆՈՑՈՎ», ՀԱՅԱՍՏԱՆՆ ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ Է՝ «ՄԱՐՏՈՒՆԱԿ ԲԱՆԱԿ ՈՒՆԵՆԱԼՆ ԻՐ ԻՆՔՆԻՇԽԱՆ ԻՐԱՒՈՒՆՔՆ Է»

Հայաստանին էսկալացիոն հռետորաբանութեան մէջ ներքաշելու փորձերն անընդունելի են, յայտարարում է Արտգործնախարարութեան խօսնակ Անի Բադալեանը՝ արձագանքելով Ադրբէջանի պաշտպանութեան նախարարութեան Յուլիսի 25-ի յայտարարութեանը եւ որակելով այն «անհասկանալի»:

Պաշտօնական Երեւանն ընդգծում է, որ Հայաստանի վարչապետի աշխատակազմի դիւանագիտական խողովակներով եւ հրապարակայնօրէն արուած առաջարկները սահմանային միջադէպերի եւ/կամ դրանց մասին տեղեկութիւնների հետաքննութեան՝ Հայաստան-Ադրբէջան համատեղ մեխանիզմ ստեղծելու մասին շարունակում են անարձագանք մնալ Ադրբէջանի կողմից: «Նման մեխանիզմի գործարկումը հնարաւորութիւն կը տար պարզաբանել ցանկացած իրավիճակ եւ կը կանխարգելէր իրականութեանը չհամապատասխանող տեղեկութիւնների տարածումը», - նշուած է հաղորդագրութիւնում:

Ադրբէջանի ռազմական գերատեսչութիւնը պնդել է, թէ վերջին շրջանում հայկական ուժերն իբր ծանր զինատեսակներ են կիրառել Քելբաջարի եւ անօդաչու սարք՝ Թովուզի ուղղութեամբ, ապա շարունակել է. - «Եթէ նման սադրիչ գործողութիւնները չդադարեն, ապա ինքնապաշտպանութեան նպատակով Ադրբէջանի Զինուած Ուժերի զինանոցում գտնուող բոլոր միջոցների կիրառմամբ համապատասխան քայլեր կը ձեռնարկուեն»:

Բաքուն նաեւ քննադատել է արեւմտեան պետութիւններին Հայաստանի հետ ռազմական համագործակցութիւնը խորացընելու համար. - «Միացեալ Նահանգների կողմից Հայաստանում անցկացուած զօրավարժութիւնները, Ֆրանսիայի կողմից Հայաստանին մահաբեր զէնքերի տրամադրումն ու ԵՄ կողմից՝ Խաղաղութեան Եւրոպական Հիմնադրամի քօղի ներքոյ Երեւանին 10 միլիոն եւրոյի ռազմական օգնութեան տրամադրումը, ոգեշնչում են օկուպացիոն Հայաստանին, որպէսզի նոր սադրանքների դիմի եւ Ադրբէջանի դէմ հերթական պատերազմին նախապատրաստուի»:

Հայաստանի կառավարութիւնը շարունակում է հաւատարիմ մնալ խաղաղութեան օրակարգին եւ չի շեղուելու այս ռազմավարութիւնից, ի պատասխան՝ ընդգծել է Հայաստանի ԱԳՆ խօսնակը:

Անդրադառնալով Հայաստանի Զինուած Ուժերի բարեփոխումներին, սպառազինութեան եւ տեխնիկայի ձեռքբերմանը, հայկական արտաքին քաղաքական գերատեսչութեան խօսնակը նշել է, որ մարտունակ բանակ ունենալը ցանկացած երկրի ինքնիշխան իրաւունքն է, եւ Հայաստանը պաշտպանութեան ու անվտանգութեան ոլորտում իր միջազգայնօրէն ճանաչուած տարածքի պաշտպանութիւնից դուրս որեւէ այլ նպատակ չունի. - «Բանակի բարեփոխումների գործընթացում Հայաստանի Հանրապետութիւնը գործում է բացառապէս միջազգային իրաւունքի շրջանակներում»:

«Նաեւ յիշեցնում ենք, որ Հայաստանի Հանրապետութիւնը դիւանագիտական խողովակներով եւ հրապարակային Ադրբէջանին առաջարկել է սպառազինութիւնների վերահսկման փոխադարձ մեխանիզմ ստեղծել եւ համապատասխան պայմանագիր կնքել, ինչը նոյնպէս Ադրբէջանը թողել է անպատասխան: Չնայած սրան, նաեւ այս առաջարկն է շարունակում մնալ ուժի մէջ», - ասուած է Անի Բադալեանի հաղորդագրութիւնում:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԳՆ-Ն ԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԻ ԱՌԹԻՒ ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ Է ԵԳԻՊՏՈՍԻՆ

Հայաստանի Արտաքին Գործերի Նախարարութիւնն Յուլիսի 23-ի Ազգային Տօնի առթիւ շնորհաւորական ուղերձ է յղել Եգիպտոսի ժողովրդին:

Այս մասին ասւում է ԱԳ նախարարութեան X-ի միկրոբլոգում կատարուած գրառման մէջ:

«Սրտանց շնորհաւորում ենք Եգիպտոսի բարեկամ ժողովրդին՝ Ազգային Տօնի առթիւ: Եգիպտոսին մաղթում ենք բարգաւաճում եւ շարունակական զարգացում՝ փոխադարձ շահերի բոլոր հնարաւոր ուղղութիւններով ակնկալելով հայ-եգիպտական համագործակցութեան ամրապնդում», – ընդգծել է ԱԳ Նախարարութիւնը:

# ՀԱՄԱՌՕՏ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ *ԱՐԵՒ* ԼՐԱԳԻՐԻ

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

Եթէ զանց առնենք հիւանդութեան, ծեծի, կարճատեւ ճամբորդութեան եւ արձակուրդի պատճառով Թէքէեանի ժամանակաւոր բացակայութիւնները *Արեւ*էն, ընդհանուր գիծերով, իբրեւ հիմնական մատենագրական տուեալ, լրագիրին 1915-1945-ի խմբագրապետերը կը դասաւորուին այսպէս.

**Վահան Թէքէեան**, 1915-1917

**Միքայէլ Կիւրճեան,** 1917-1918

**Վահան Թէքէեան**, 1918

**Միքայէլ Կիւրճեան**, 1918-1922

**Յովհաննէս Յակոբեան**, 1922-1927

**Վահան Թէքէեան**, 1927-1929

**Օննիկ Մահտեսեան եւ Յովհաննէս Սէքսէնեան**, 1929-1930

**Օննիկ Մահտեսեան**, 1930-1931

**Վահան Թէքէեան**, 1931

**Օննիկ Մահտեսեան եւ Յակոբ Փափազեան**, 1931

**Օննիկ Մահտեսեան**, 1931-1932

**Յովհաննէս Պօղոսեան**, 1932-1935

**Վահան Թէքէեան**, 1935-1936

**Յովհաննէս Պօղոսեան**, 1936-1938

**Վահան Թէքէեան**, 1938-1943

**Յակոբ Արամեան**, 1943-1944

**Վահան Թէքէեան**, 1944

**Յակոբ Արամեան**, 1945-1947

*Արեւ*ի խմբագրապետերը մինչեւ այսօր.

**Պետրոս Տեփոյեան**, 1947-1948

**Նուպար Պէրպէրեան**, 1948-1958

**Էտմոն Կոտալազեան**, 1958-1967 (1958-ի փոխարէն սխալմամբ կը նշուի 1959)

**Աւետիս Եափուճեան**, 1967-1973

**Ալիս Տեփոյեան**, 1973-1974 (այս անունը անիրաւաբար դուրս մնացած է տարածուած ցանկերէն)

**Աւետիս Եափուճեան**, 1974-1990

**Յովհաննէս Տէր Պետրոսեան**, 1990-2003

**Ասպետ Արթինեան**, 2003-2018

**Շաքէ Մարգարեան**, 2018-2019

**Սեւան Սեմէրճեան**, 2020 - մինչեւ այսօր

**ԵՆԹԱԽՈՐԱԳԻՐ**

**Ազգային շաբերու օրկան**, 11 Մայիս 1915, Ա. տարի, թիւ 1 – 29 Ապրիլ 1921, Զ. տարի, թիւ 151 (911):

[**Առանց ենթախորագիրի**], 4 Մայիս 1921, Է. տարի, թիւ 1 (912) – 8 Դեկտեմբեր 1922, Ը. տարի, թիւ 96 (1159):

**Ժողովրդական օրաթերթ**, 11 Դեկտեմբեր 1922, Թ. տարի, թիւ 1 (1160) – 29 Յուլիս 1924, Ժ. տարի, թիւ 197 (1656):

**Օրաթերթ**, 9 Օգոստոս 1924, Ժ. տարի, թիւ 1657 – 31 Մարտ 1926, ԺԲ. տարի, թիւ 2162:

**Օրաթերթ ազգային-գրական-քաղաքական**, 1 Ապրիլ 1926, ԺԲ. տարի, թիւ 2163 – 30 Յունիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3778:

**Օրաթերթ քաղաքական, գրական եւ տնտեսական**, 2 Յուլիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3779 – 16 Մարտ 1935, ԺԹ. տարի, թիւ 4923:

**Քաղաքական, գրական եւ տնտեսական օրաթերթ**, 19 Մարտ 1935, ԺԹ. տարի, թիւ 4924 – 31 Դեկտեմբեր 1973, ԾԸ. տարի, թիւ 16.710:

**Օրաթերթ**, 2 Յունուար 1974, ԾԸ. տարի, թիւ 16.711 – 3 Փետրուար 2015, 99-րդ տարի, թիւ 26261:

[**Առանց ենթախորագիրի**], 6 Փետրուար 2015, 99-րդ տարի, թիւ 26262 – 26 Յունուար 2016, 100-րդ տարի, թիւ 26352:

**Թերթ**, 29 Յունուար 2016, 100-րդ տարի, թիւ 26353 – մինչեւ այսօր:

**ՀԱՍՑԷ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՏՆՕՐԷՆՈՒԹԵԱՆ**

**16, Ապու Տարտար փողոց, Աղեքսանդրիա**, 11 Մայիս 1915, Ա. տարի, թիւ 1 – 29 Յուլիս 1924, Ժ. տարի, թիւ 197 (1656):

**1, Տուպրէ փողոց, Գահիրէ**, 9 Օգոստոս 1924, Ժ. տարի, թիւ 1657 – 29 Յունիս 1926, ԺԲ. տարի, թիւ 2237:

**32, Քանթարէթ Ալ-Տէքքա փողոց, Գահիրէ**, 30 Յունիս 1926, ԺԲ. տարի, թիւ 2238 – 19 Մայիս 1928, ԺԵ. տարի, թիւ 2820:

**9, Զաքի փողոց, Գահիրէ**, 21 Մայիս 1928, ԺԵ. տարի, թիւ 2821 – 2 Հոկտեմբեր 1935, Ի. տարի, թիւ 5090:

**19, Տուպրէ փողոց, Գահիրէ**, 4 Հոկտեմբեր 1935, Ի. տարի, թիւ 5091 – 13 Յուլիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5939:

**2, Տուպրէ փողոց, Գահիրէ**, 14 Յուլիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5940 – 21 Մայիս 1956, ԽԲ. տարի, թիւ 11.380:

**3, Տուպրէ / Սոլիման Հալապի փողոց, Գահիրէ**, 22 Մայիս 1956, ԽԲ. տարի, թիւ 11.381 – 31 Յունուար 2012, 96-րդ տարի, թիւ 25974 (1960-ին Տուպրէ փողոցին անունը եգիպտական կառավարութիւնը կը փոխէ՝ Սոլիման Հալապի փողոց, հետեւաբար, 18 Փետրուար 1960, ԽԵ. տարի, թիւ 12.525-էն սկսեալ *Արեւ* կը յիշատակէ նոր անունը):

**10, Մընուֆ փողոց (Կոկանեան Սրահ), Հէլիոպոլիս**, 3 Փետրուար 2012, 96-րդ տարի, թիւ 25975 (փոխադրուած՝ աւելի կանուխ) – մինչեւ այսօր:

**ԱՐՏՕՆԱՏԷՐ**

**Լեւոն Մկրտիչեան**, 11 Մայիս 1915, Ա. տարի, թիւ 1 – 23 Նոյեմբեր 1923, Թ. տարի, թիւ 291 (1450):

**Յակոբ Փափազեան**, 24 Նոյեմբեր 1923, Թ. տարի, թիւ 292 (1451) – 17 Յուլիս 1924, Ժ. տարի, թիւ 188 (1647):

**Տիգրան Հաճընլեան**, 18 Յուլիս 1924, Ժ. տարի, թիւ 189 (1648) – 28 Օգոստոս 1942, ԻԷ. տարի, թիւ 7202:

**Լեւոն Կոկանեան**, 31 Օգոստոս 1942, ԻԷ. տարի, թիւ 7204 (թէեւ իր անունը նշանակուած է յիշեալ թուականէն սկսեալ, բայց իրականութեան մէջ փոփոխութիւնը կատարուած է ամիսներ առաջ) – 1 Ապրիլ 1950, ԼԵ. տարի, թիւ 9517 (Լեւոն Կոկանեան մահացած է 1949 Նոյեմբեր 26-ին, բայց իր անունը շարունակուած է նշանակուիլ մինչեւ յիշեալ թուականը):

**Արմենակ Լեւոն Կոկանեան**, 3 Ապրիլ 1950, ԼԵ. տարի, թիւ 9518 – 28 Դեկտեմբեր 1956, ԽԲ. տարի, թիւ 11.566:

**Վահէ Վահրամ Աւագեան**, 29 Դեկտեմբեր 1956, ԽԲ. տարի, թիւ 11.567 – 25 Նոյեմբեր 1961, ԽԷ. տարի, թիւ 13.068:

**Էօժէն Բաբազեան**, 27 Նոյեմբեր 1961, ԽԷ. տարի, թիւ 13.069 – 21 Յուլիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.176 (Էօժէն Բաբազեան մահացած է 1963 Դեկտեմբեր 9-ին, բայց անունը շարունակուած է յիշատակուիլ մինչեւ յիշեալ թուականը):

**Կարապետ Աւետիս Տեմիրճեան**, 22 Յուլիս 1965, ԾԱ. տարի, թիւ 14.177 – 26 Օգոստոս 1972, ԾԷ. տարի, թիւ 16.308:

**Հայ Ազգային Հիմնադրամ**, 28 Օգոստոս 1972, ԾԷ. տարի, թիւ 16.309 – մինչեւ այսօր:

**ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԻՒՆ**

[**Անհատական նախաձեռնութիւն**], 11 Մայիս 1915, Ա. տարի, թիւ 1 – 2 Յուլիս 1920, Զ. տարի, թիւ 23 (783):

**Հրատարակութիւն Ռամկավար Կուսակցութեան Եգիպտոսի Շրջանակին**, 5 Յուլիս 1920, Զ. տարի, թիւ 24 (784) – 14 Յունուար 1921, Զ. տարի, թիւ 107 (867):

**Հրատարակութիւն Հայ Ռամկավար Կուսակցութեան Եգիպտոսի Շրջանակին**, 16 Յունուար 1921, Զ. տարի, թիւ 108 (868) – 29 Ապրիլ 1921, Զ. տարի, թիւ 151 (911):

**Պաշտօնաթերթ Հայ Ռամկավար Կուսակցութեան Եգիպտոսի Շրջանակին**, 4 Մայիս 1921, Է. տարի, թիւ 1 (912) – 5 Հոկտեմբեր 1921, Է. տարի, թիւ 66 (977):

**Պաշտօնաթերթ Ռամկավար Ազատական Կուսակցութեան Եգիպտոսի Շրջանակին**, 7 Հոկտեմբեր 1921, Է. տարի, թիւ 67 (978) – 30 Յունիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3778:

**Օրկան Ռամկավար Ազատական Կուսակցութեան Եգիպտոսի Շրջանակին**, 2 Յուլիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3779 – 16 Նոյեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4514:

[**Կը ջնջուի Կուսակցութեան նշումը, միշտ մնալով Եգիպտոսի Ռամկավարներուն խօսնակը**], 17 Նոյեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4515 – մինչեւ այսօր:

(Վերջ 2)

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՌՈՒՍ-ՀԱՅԿԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ «ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ ՊԱՀԸ». ԻՆՍՏԻՏՈՒՑԻՈՆԱԼ ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԳԱՅԹԱԿՂՈՒԻ՞

**ՎԱՀՐԱՄ ԱԹԱՆԵՍԵԱՆ**

Ռուսաստանի նախագահի խօսնակ Պեսկովի ներկայացմամբ՝ Հայաստանը ինքնիշխան երկիր է, ինքն է փոխգործակցութեան առաջնահերթ ուղղութիւններ ընտրում: Հայաստանը մեզ համար եղբայրական երկիր է, յարգանքով ենք վերաբերւում նման որոնումներին, միայն չէինք ցանկանայ, որ այդ որոնումներն իրականացուէին այն ռեժիմում, որ մի ժամանակ ընտրեց Կիեւի վարչախումբը, ասել է նա:

Նոյն օրը՝ Յուլիսի 25-ին, սակայն, Ռուսաստանի ԱԳՆ պաշտօնական ներկայացուցիչ Զախարովան հայ-ամերիկեան համատեղ զօրավարժութիւնները գնահատել է որպէս «անվտանգութեան բնագաւառում Ռուսաստանի հետ հանրապետութեան (Հայաստանի) համագործակցութեան մեխանիզմների փլուզում»:

Քաղաքական ձեւակերպումների առումով, կարծես, Պեսկովը փորձել է որոշակիօրէն սրբագրել Զախարովայի բացայայտ սպառնալիքները, բայց գործնականում «ստացուել է՝ ինչպէս միշտ»: Ուկրաինայի ընտրութեան հետեւանքների յիշեցումն ասուածի վկայութիւն է:

Ընդ որում, աչքի է զարնում, որ Պեսկովը եւ Զախարովան ՀԱՊԿ-ի մասին ոչինչ չեն ասում: Մոսկուան ակնարկում է, որ ՀԱՊԿ-ը «դադարե՞լ» է, թէ արձանագրում, որ Հայաստանին այլեւս այդ կառոյցի անդամ չի դիտարկում: Ըստ էութեան, որ տարբերակն էլ ազդակ համարենք, գետնի վրայ իրողութիւնը չի փոխւում: Ռուսաստանի մեսիջը նոյնն է: «Հարաւային Կովկասը եղել է, կայ ու պիտի մնայ որպէս մէկ-միասնական սուբռեգիոն»:

Հայ-ամերիկեան զօրավարժութիւններին անդրադարձել է թուրքական *Հիւրիէթ*ը: Թուրք մեկնաբանի գնահատմամբ՝ Միացեալ Նահանգները «ձգտում է սեպել Աստանայի գործընթացը»: Խօսքը սիրիական կամ մերձաւորարեւելեան կարգաւորման Ռուսաստան-Թուրքիա-Իրան համաձայնութիւնների մասին է, որ, երեւում է, փորձ է արւում ադապտացնել նաեւ Հարաւային Կովկասում՝ 3+3 ձեւաչափով:

4

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՄ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԵԱՆ ՂԵԿԱՎԱՐԸ ՄԱՍՆԱԿՑԵԼ Է ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԻՒՆԻՑ ՏՈՒԺԱԾ ԽՄԲԵՐԻ ԿԱՐԻՔՆԵՐԻ ԼՈՒԾՄԱՆ ՄԱՍԻՆ ՄԻՋՈՑԱՌՄԱՆԸ

Հայաստանում Եւրոպական Միութեան դիտորդական առաքելութեան ղեկավար Մարկուս Ռիտերը մասնակցել է *Խաղաղութեան երկխօսութիւն* հասարակական կազմակերպութեան կողմից կազմակերպուած՝ Հայաստանում հակամարտութիւնից տուժած խմբերի կարիքների քարտէզագրման եւ լուծման վերաբերեալ միջոցառմանը:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին նշուած է ԵՄ առաքելութեան x-ի միկրոբլոգում կատարուած գրառման մէջ:

«Առաքելութեան ղեկավարը մասնակցել է *Խաղաղութեան երկխօսութիւն* հասարակական կազմակերպութեան կողմից կազմակերպուած՝ Հայաստանում հակամարտութիւնից տուժած խմբերի կարիքների քարտէզագրման եւ լուծման վերաբերեալ միջոցառմանը: Առաքելութեան ղեկավարը համապարփակ ակնարկ է ներկայացրել Հայաստանում մարդու անվտանգութեան բարձրացման գործում Եւրոպական Միութեան առաքելութեան ներդրման մասին», - նշուած է գրառման մէջ:

ԲԱՔՈՒ

## ԱԼԻԵՒ. «ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ ԵՐԿԿՈՂՄ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՄ ԲՈԼՈՐ ՀԱՐՑԵՐԸ ԼՈՒԾՈՒԵԼ ԵՆ»

Իլհամ Ալիեւն անդրադարձել է Բաքու-Մոսկուա յարաբերութիւններին, ընդգծել՝ արդէն տեւական ժամանակ է՝ Ռուսաստանի հետ երկկողմ յարաբերութիւններում բոլոր հարցերը լուծուել են:

«Ռուսաստանի հետ երկկողմ յարաբերութիւններում լուծում պահանջող հարցեր պարզապէս չկան, եւ արդէն բաւական ժամանակ է: Եւ սկզբունքօրէն, նոյնիսկ դաշնակցային համագործակցութեան մասին հռչակագրի ստորագրումից առաջ մենք բոլոր հարցերը լուծում էինք փոխըմբռնման, փոխադարձ յարգանքի, փոխադարձ շահերի հաշուառման հիման վրայ եւ հաշուի առնելով մեր ժողովուրդների յարաբերութիւնների դարաւոր պատմութիւնը», - ասել է Իլհամ Ալիեւը:

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐ*Ի 66-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻՆ




Լոյս տեսաւ *Ջահակիր*ի ԿԶ. (66) Յաւելուածը՝ *Վահան Թէքէեանի* Արեւ*ի շրջանը (1915-1945), Բ. հատոր, Յօդուածներ եւ գրութիւններ*, Յաւելուած ԿԶ. (66), 514 էջ:

Բ. հատորը կը ներկայացնէ *Արեւ*ի մէջ Թէքէեանի հրատարակած ստորագրեալ եւ անստորագիր բոլոր յօդուածներուն եւ գրութիւններուն մատենագիտութիւնը, նախ ներկայացուած ժամանակագրական յաջորդականութեամբ, եւ ապա վերախմբաւորուած ըստ մամուլի բաժիններուն:

Առաջին անգամ ըլլալով կը ճշդուին եւ մանրամասնօրէն կը ներկայացուին տուեալ շրջանի *Արեւ*ի խմբագիրներուն անուններն ու թուականները:

*Արեւ*ի անստորագիր խմբագրականներուն հեղինակային հարցը մնացած էր չուսումնասիրուած: Հետեւաբար, անհրաժեշտ եղաւ որոշել Թէքէեանի խմբագրութեամբ լոյս տեսած *Արեւ*ի թիւերը, ճշդելու համար անստորագիր խմբագրականներուն հեղինակութիւնները:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿԱՅԱՑԱՒ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐՐՈՐԴ ՖՈՐՈՒՄԸ

Յուլիսի 1-ին, երրորդ տարին անընդմէջ տեղի ունեցաւ ամենամեայ *Ժողովրդավարութեան հայկական ֆորումը*՝ կազմակերպուած Freedom House միջազգային իրաւապաշտպան կազմակերպութեան եւ Իրազեկ Քաղաքացիների Միաւորում հասարակական կազմակերպութեան կողմից:

Ինչպէս նախկինում, այս անգամ եւս ֆորումն անցկացուեց բարձր մակարդակով՝ Հայաստանի վարչապետի, Հայաստանում հաւատարմագրուած օտարերկրեայ դեսպանների, պետական բարձրաստիճան պաշտօնեաների, քաղհասարակութեան կազմակերպութիւնների եւ լրատուամիջոցների ներկայացուցիչների մասնակցութեամբ:

Ֆորումի ընթացքում տեղի ունեցան տարբեր թեմաներով հինգ պանէլային քննարկումներ, այդ թւում՝ Արցախի հայաթափման վերաբերեալ *Ինչո՞ւ Լեռնային Ղարաբաղում հայեր չկան* զեկոյցի ներկայացումը:

Ամփոփելով ֆորումի արդիւնքները՝ փակման խօսքով հանդէս եկան ԻՔՄ ծրագրերի համակարգող Դանիէլ Իոաննիսեանը եւ Հայաստանում Freedom House-ի ներկայացուցիչ Անդրանիկ Շիրինեանը:

Շնորհակալութիւն յայտնելով ֆորումի ↳ 4

## ԱՋԵՐՆ ԸՆԴԴԷՄ ՁԱԽԵՐԻ, ԿԱՆԱՅՔ ԸՆԴԴԷՄ ՏՂԱՄԱՐԴԿԱՆՑ. ԿԱ՞Յ ՆՄԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՄԵԴԻԱ ՀԱՐԹԱԿՆԵՐՈՒՄ

ՍԱՄՈՒԷԼ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

Մի կէս տարի առաջ հրապարակուել էր հետաքրքիր սոցիոլոգիական հետազօտութիւն, որն իրականացուել էր մի քանի տասնեակ երկրներում: Ըստ դրա վերջին տասը տարում 18-24 տարեկան կանանց շրջանում ակտիւ զարգանում է լիբերալիզմը, տարածւում են ֆեմինիստական գաղափարները: Իհարկէ, երկրից երկիր դրանք կարող են տարբերուել, սակայն տենդենցը ակնյայտ կայ:

Միւս կողմից, տասը տարուայ ընթացքում նոյն տարիքի՝ երիտասարդ տղամարդիկ, դարձել են աւելի պահպանողական: Նրանք առաջ են անցել նախկինում պահպանողականների դրօշակիր համարուող 55-65 տարեկաններից: Այսինքն, եթէ գոյութիւն ունէր տարածուած ընկալում, որ ամէն նոր սերունդ գոնէ մի քիչ աւելի լիբերալ է, ապա հիմա երիտասարդ տղամարդկանց մօտ դիտարկւում է պահպանողականութեան ամրապնդում:

Հայաստանում իհարկէ բարդ է այսքան միանշանակ դատել, թէ ինչպիսին է իրավիճակը: Օրինակ, այն պատճառով, որ հրապարակային սոցիոլոգիան մեր երկրում շատ սակաւ է եւ յաճախ ուղղուած է միայն քաղաքական ներկայ իրավիճակը ներկայացնելուն: Բացի դրանից, պատերազմը, ներքաղաքական «գրեթէ-պատերազմը» շատ ուժեղ ազդում են հանրային կարծիքների վրայ՝ առաջին պլան բերելով պահպանողականութիւնը որպէս արտաքին ազրեսորի դէմ պայքարի միասնականութեան դրսեւորում: Պահպանողականութիւնը, հայրենասիրութիւնը, ազգային արժէքները Հայաստանում քաղաքական պայքարի հիմնական միջոցներից են: Ինչը շատ անորոշ է դարձնում իրական պատկերը, քանի որ շատ յաճախ իրական կարծիքները չեն արտայայտըւում՝ հանրային ճնշման վտանգի տակ:

Ներհայաստանեան տրամադրութիւնների վրայ ազդում են նաեւ արտաքին քաղաքական գործօնները: Օրինակ, Ռուսաստան-Արեւմուտք ներկայ հակամարտութեան քարոզչական նարատիւներում ակնյայտ երեւում է նոյն բեւեռացումը: Ըստ հիմնական կողմերի քարոզչական թէզերի, Արեւմուտքը զինում է Ուկրաինական բանակը յանուն լիբերալ արժէքների յաղթանակի: Իսկ Ռուսաստանը ↳ 4

ԱՄՆ

## ԱՄՆ-ՈՒՄ ԿԵԱՆՔԻՑ ՀԵՌԱՑԵԼ Է ՕՊԵՐԱՅԻՆ ԵՐԳՉՈՒՀԻ ԱՆՆԱ ՆՇԱՆԵԱՆԸ

Յուլիսի 24-ին ԱՄՆ-ում կեանքից հեռացել է օպերային երգչուհի, մեներգչուհի Աննա Նշանեանը, որ իր բազմամեայ գործունէութեամբ նշանակալի ներդրում է ունեցել Ալ. Սպենդիարեանի Անուան Օպերայի եւ Բալէտի Ազգային Ակադեմիական Թատրոնի կեանքում:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ այս մասին յայտնում է օպերային թատրոնը:

Աննա Նշանեանը թատրոնում սկսել է աշխատել 1959 թուականից՝ հանդէս գալով բազմաթիւ օպերային դերերգերով՝ Ա. Յարութիւնեանի *Սայեաթ-Նովա* (Իշխանուհի Աննա), Ա. Տիգրանեանի *Դաւիթ Բէկ* (Շուշան), *Անուշ* (Անուշ), Տ. Չուխաճեանի *Արշակ Երկրորդ* (Օլիմպիա), Վերդիի *Տրաւիատա* (Վիոլետա), Վերդիի *Օթելլօ* (Դեզդեմոնա) եւ այլն:

Երգչուհին արժանացել է Հայաստանի վաստակաւոր արտիստի կոչման, ինչպէս նաեւ պարգեւատրուել է ԽՍՀՄ շնորհակալագրական պատուոգրով եւ Հայաստանի Մշակոյթի Նախարարութեան ոսկէ մեդալով:

1980 թուականին տեղափոխուել է ԱՄՆ, որտեղ շարունակել է համերգային գործունէութիւնը եւ արժանացել մի շարք ամերիկեան պարգեւների, այդ թւում՝ Famous Opera Singer կոչման:

*Յ. Գ. Աննա Նշանեան ծնած է Գահիրէ, ուր ստացած իր նախնական եւ մասնագիտական կրթութիւնը, բազմաթիւ ելոյթներ ունեցած եգիպտահայ ձեռնարկներու եւ ներկայացումներու:* Ջահ.

ԽՈՀԵՐ

## ԲԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ՝ ԾԱՅՐԸ ԾԱՅՐԻՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Բանասիրութիւնը, ինչպէս բազմաթիւ այլ բնագաւառներ, մարդկային տարերք է, կեանքի ընթացք, մտածելակերպ, գրելու եւ ստեղծելու կիրք: Ան իրաւունք չունի ըլլալ պահի ծնունդ:

Բանասէրը տարիներու ընթացքին կը կուտակէ իր ատաղձը՝ հիմնուած իր անձնական պրպտումներուն վրայ, կազմելով թղթածրարներ, իսկ հիմա՝ համակարգիչային ֆայլեր, որոնց բովանդակութիւնն ու ծաւալը աստիճանաբար կը բազմանան եւ կը մշակուին, դառնալով այն՝ ինչ կը կոչուի անձնական արխիւ:

Որոշ շրջան մըն է արդէն Հայաստանի թէ Սփիւռքի մէջ տեղի կ'ունենայ շատ արագ եւ մակերեսային բանասիրութեան տեսակ մը՝ զոր կարելի է կոչել «ծայրը ծայրին բանասիրութիւն»: Ասիկա կ'արտայայտուի քանի մը երեւոյթներու մէջ.

1. Երբ գրողին համար բանասիրական նիւթը սկսի եւ վերջանայ տուեալ յօդուածով՝ որ ենթադրուած է կոչուիլ «ուսումնասիրութիւն»: Ձեւով մը նիւթին վերտառութիւնը հասած է իրեն՝ ինք գտած, կամ մէկը յուշած կամ առաջարկած, առանց նախապէս մէկ էջ աղբիւր ունենալու անոր մասին: Տուեալ ժամանակի մը ընթացքին պէտք է վերջացնէ ու յանձնէ յօդուածը: Նիւթին համար, աւելի ճիշդ՝ յօդուածին համար ուր պիտի երեւայ իր ստորագրութիւնը իբրեւ բանասէր, ամէն ճիգ կը գործադրէ բաներ մը հաւաքելու՝ ինչ որ կրնայ, ինչ որ մատչելի է իրեն, սահմանափակ քանակութեամբ լրագիրներ թերթելով՝ քանի որ ժամանակը թոյլ չի տար ամբողջական թերթումներ կատարելու, եւ հաւաքածը քով-քովի դնելով կը կազմէ յօդուած:

Արագ արդիւնք, արագ երեւում՝ վտանգաւոր հետեւանքներով: Վտանգաւոր՝ քանի որ ենթադրաբար բանասիրուած նիւթը ինքը պիտի դառնայ աղբիւր յետագայ բանասիրութեան համար: Իսկ մեր հայերուս վերաբերմունքը աղբիւրներու նկատմամբ երբեմն բաւական տկար է, կը բաւէ որ աղբիւր «յայտնաբերած» ըլլանք: Առանց ստուգելու աղբիւրներուն արժանահաւատութիւնը, ամբողջ մատենագիտութիւններ կը կազմուին: Կ'առարկես այնտեղ տեղ գտած սխալներուն, պատասխանը կ'ըլլայ նոյնը՝ այդպէս էր աղբիւրը: Եւ կը ստեղծուին աղբիւրները:

2. Երբ արհեստական նիւթեր կը հնարուին բանասիրելու համար: Օրինակ, երբ կը բանասիրուի ամենէն նողկալի, ամենէն անդէմ «բանաստեղծ» մը՝ ոչ թէ տուեալ նիւթի մը ամբողջականութեան անհրաժեշտութեան պարտադրանքով, այլ ինքնին իբրեւ ամբողջական նիւթ՝ գիտ մը ըրած ըլլալու փափաքէն տարուած: Բանասիրութիւնը հասած կ'ըլլայ սնանկութեան եզրին, քանի որ վերջացած կ'ըլլան բանասիրական խօսքը, միտքը, որակը, արժէքը:

3. Ձեռագրական բանասիրութիւնը կամ ձեռագիրի խմբագրութիւնը: Ոմանք՝ ոչ-մտաւորականներ, կ'ըսեն՝ ընդօրինակութիւն: Ըստ էութեան, ընդօրինակութիւն չէ: Աշխարհի որեւէ ձեռագիր չի կրնար տպագիրի «կատարելութիւնը» ունենալ: Ան պէտք է վերջնականացուի տպագիր դառնալու համար, որուն համար խմբագիրը պէտք է իրազեկ ըլլայ գրողի (ձեռագիրի հեղինակի) լեզուական եւ մտաւոր յատկութիւններուն, ներառեալ կէտադրական համոզումներուն: Խմբագրութիւն է կատարուածը: Խմբագրութեան մաս կը կազմեն նաեւ ծանօթագրութիւնները, որոնց համար դարձեալ կարեւոր է հեղինակի եւ շրջապատի մասին իրազեկութիւն:

Բայց, ահաւասիկ, քանի մը տասնամեակ է որ ձեռագրական խմբագրութիւնը իջած է ընդօրինակութեան մակարդակին:

Յաճախ սկսած է պատահիլ, որ մէկը պատահաբար գտնէ յայտնի կամ կիսայայտ անձի մը ձեռագիրը, անձ մը՝ որուն կենսագրութեան եւ գործունէութեան մասին իրազեկ չէ, չունի տուեալներ անոր մասին, անտեղեակ է անոր գրական առանձնայատկութիւններուն եւ մտաւոր համոզումներուն: Բայց անուանի անձի մը ձեռագիրին խմբագիրը ըլլալու մարմաջը զինք կը մղէ դառնալ անոր «խմբագիր»-ը, ունենալ վերին ձեռքը ձեռագիրին նկատմամբ: Ձեռագիրը չի յանձներ մասնագէտին, այլ իր գիտցած-չգիտցած գիտելիքով կը տպագրէ զայն, դառնալով խմբագիր:

Խմբագիրի անտեղեակութիւնը անպայման ի յայտ կու գայ նախաբանին եւ բռնազբօսիկ ծանօթագրութիւններուն մէջ: Ըսելու, բացատրելու, աւելցնելու նիւթ չունի: Ի յայտ կու գայ նաեւ ձեռագրական վրիպակները սրբագրելու պարագային, երբ, փոխանակ սրբագրութիւնները կատարելու ըստ հեղինակի այլապէս յայտնի նախասիրութիւններուն, կը կատարէ ըստ ընդօրինակողի իր սեփական քմահաճոյքին:

Ձեռագիրին կ'երթան, չեն սպասեր որ գայ ան: Ձեռագիր խմբագրողը սովոր պիտի ըլլայ արխիւային պրպտումներու՝ արխիւային կեդրոններու մէջ, ուր անպայման բաներ մը գտած պէտք է ըլլայ: Աշխարհի հայկական արխիւները լեփ-լեցուն են անտիպ արժէքաւոր ձեռագիրներով: Պէտք է երթալ անոնց, ոչ իբրեւ թոշակառու տարիքաւորի մը պարապ ժամերու ծածկոյթ, այլ կեանքի տեւողութեան հաճոյք, կիրք եւ համոզում: ↳ 4

# ՋԱՀԱԿԻՐ

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## FITCH-Ը ՀԱՍՏԱՏԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԱՐԿԱՆԻՇԸ «BB-» ՄԱԿԱՐԴԱԿՈՒՄ՝ ԿԱՅՈՒՆ ՀԵՌԱՆԿԱՐՈՎ

Fitch միջազգային վարկանիշային գործակալութիւնը հաստատել է Հայաստանի՝ արտարժոյթով եւ ազգային արժոյթով երկարաժամկէտ պարտաւորութիւնների թողարկման սուվերէն «BB-» վարկանիշը՝ «կայուն» հեռանկարով։

*Արմենպրէսի* հաղորդմամբ՝ այս մասին նշուած է միջազգային վարկանիշային գործակալութեան հրապարակած զեկոյցում։

Գործակալութիւնը նշում է, որ Հայաստանի «BB-» վարկանիշն արտացոլում է մէկ շնչին ընկնող եկամուտների եւ կառավարման ցուցանիշները, որոնք համադրելի են գործընկերների, աճի ուժեղ հեռանկարներին եւ մակրոտնտեսական քաղաքականութեան կայուն շրջանակին։ Միաժամանակ վարկանիշի բարձրացմանը խանգարում են բիւջէի զգալի դեֆիցիտը, ֆինանսական հատուածի բարձր դոլարայնացումը, ինչպէս նաեւ աշխարհաքաղաքական ռիսկերը։

Գործակալութիւնն, անդրադառնալով Հայաստանի տնտեսական բարձր աճին, ընդգծել է, որ այն շարունակւում է՝ Ռուսաստանից, Բելառուսից, Ուկրաինայից եւ այժմ՝ Լեռնային Ղարաբաղից ուժեղ ներքին միգրացիայի շնորհիւ։

«Իրական ՀՆԱ-ն 2023 թուականին աճել է 8,7%-ով եւ 2024 թուականի առաջին եռամսեակում կազմել է 9,2%՝ տարեկան։ Ակնկալւում է, որ զբօսաշրջութեան ու տեղեկատուական եւ կապի տեխնոլոգիաների ոլորտները կը լինեն աճի կարեւոր շարժիչ ուժեր, Ամուլսարի ոսկու հանքի շահագործման մեկնարկը 2025 թուականից դրական կը լինի արտահանման եւ աճի համար», - նշուած է գործակալութեան զեկոյցում, որտեղ կանխատեսւում է, որ 2024 թուականին Հայաստանի տնտեսական աճը կը կազմի 6%, 2025 թուականին՝ 5,5%, իսկ 2026 թուականին՝ 5,1%։

## ԿԱՅԱՑԱՒ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐՐՈՐԴ ՖՈՐՈՒՄԸ

3

բանախօսներին, մասնակիցներին ու հիւրերին՝ կազմակերպիչները վստահութիւն յայտնեցին, որ մէկ տարի անց կրկին կը հրաւիրեն քննարկելու Հայաստանում ժողովրդավարութեան առաջմղման աշխատանքները՝ Ժողովրդավարութեան հայկական արդէն չորրորդ ֆորումի շրջանակներում։

Յիշեցնենք, որ *Ժողովրդավարութեան հայկական ֆորումը* անցկացւում է 2022 թուականից։

## ԲԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ՝ ԾԱՅՐԸ ԾԱՅՐԻՆ

3

4. Սփիւռքը վերջերս դիմեց «ամբողջական» գործերու հրատարակութեան կամ «ամբողջական» կենսագրութեան տեսակին՝ հայագիտական ամենաբարձր աստիճանով։

Բարդ են այս ամբողջականները։ Ամբողջ ըլլալու համար անհրաժեշտ է թերթել ամբողջը, ունենալ ամբողջը, կամ գոնէ ձգտիլ անոր։ Կիսատ թերթումով ամբողջ չի գոյանար, բացի եթէ ենթական ինքը իր մասին ամբողջական նիւթեր աւանդած է։

Եթէ անհատ մը՝ մինակ, անօգնական, առանց ուղեցոյցի, առանց խորհրդատուութեան դիմէ «ամբողջական»-ի եւ վրիպումներ կատարէ, բոլորովին հասկնալի է։ Բայց անհասկնալի է, երբ այդ «ամբողջական»-ը կատարէ մեծ հիմնարկ մը՝ հիմնուելով պատահաբար ձեռք բերուած թղթածրարի մը բովանդակութեան վրայ, կամ թերթելով մամուլի լոկ շրջան մը կամ շրջաններ՝ ենթադրութիւններու հիման վրայ։ Արդիւնք գործունէութեան ժամանակագրութիւն մը մեծաքանակ բացթողումներով եւ թուականի սխալներով, եւ ամբողջական գործերու հրատարակութիւն մը՝ 20-30 տոկոս բացթողումներով։ Երբ այսպէս վարուողը «մեծ» հիմնարկ մըն է, ուրեմն կը զոհուինք շատ լուրջ խնդիրի առջեւ։

Ծայրը ծայրին բանասիրութիւն՝ հոչակի, հատորի, շնորհանդէսի եւ բարեկամի մը կողմէ գրուած գրախօսականի համար։

* * *

Առանց պատճառով յառաջացած է առեւտրականացուած բանասիրութիւն մը, որ բաւական յաջողութիւն գտած է հայերուս մէջ ամենաբարձր մակարդակով, յաձախ շուքի մէջ ձգելով իրական, յարատեւ, նուիրեալ բանասէրը որ կը սիրէ աշխատիլ անաղմուկ, անշշուկ, նուիրեալ համոզումով։

## ՌՈՒՍ-ԹՐՔԱԿԱՆ ԱՐՏԵՐԿՐԵԱՅ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1

*Ջահակիր* շուրջ երեք ամիս առաջ (թիւ 1965)։ Հիմա արդէն Աֆրիկէն պարարտ հող կը հանդիսանայ թուրք-ռուսական յարաբերութիւններու գործադրութեան համար։

* * *

Առնք կացութիւններ են՝ որոնք մակերես ելած են։ Դեռ որքան անյայտ կէտեր պէտք է գոյութիւն ունենան ռուս-թրքական ներկայ յարաբերութիւններուն մէջ։

Այս յարաբերութիւնները, անկասկած, տարբեր կողմերով կ'ազդեն Հայաստանի նկատմամբ վարուող քաղաքականութեան վրայ։

Օրինակ, գիտնալով յարաբերութիւններու այս տեսակը, յետադարձ ակնարկով դժուար չէ ենթադրել, որ Ղարաբաղի 44-օրեան՝ իր Նոյեմբեր 9-ի ելքով, համաձայնեցուած գործողութիւն մըն էր Ռուսաստանի եւ Թուրքիոյ միջեւ, իրենց միջեւ ոչ-բարեկամական, այլ մրցակցային հենքով։ Միակ խնդիրը այն էր՝ որ Ռուսաստան ռազմավարական ամենամերձաւոր համաձայնագրային դաշնակիցն էր Հայաստանի։

Ուրիշ օրինակ մը։ Մինչ Հայաստանի վրայ վերին ձեռքը տակաւին կը պատկանի Ռուսաստանին, Հայաստան, ի միջի այլոց, կը փորձէ ճեղքումներ կատարել դէպի Թուրքիա։ Թէեւ Հայաստանի հետ կարգաւորումի գլխաւոր պայմաններէն մէկը Թուրքիա կը դնէ Հայաստան-Ազրպէյճան ենթադրեալ խաղաղութեան ստորագրութիւնը, բայց ռուս-թրքական յարաբերութիւնները կրնան յուշել՝ որ այս առումով Ռուսաստան եւս ունի իր ձայնը թրքական կողմին վրայ։ Ռուսաստանի համար անբաղձալի է Հայաստանի բացումը դէպի Թուրքիա, քանզի պիտի տկարացնէ իր ազդեցութիւնը Հայաստանի վրայ։

Եւ տակաւին ինչքան բաներ՝ որոնք անյայտ պիտի մնան մեզի։

Ա.

1. Güney Yıldız, 'Turkish-Russian Adversarial Collaboration in Syria, Libya, and Nagorno-Karabakh', *SWP Comment*, March 2021, No. 22.

2. 'Pro-Turkey Syria mercenaries head to Niger to earn cash', SOHR, 18 May 2024, https://www.syriahr.com/en/333879/

3. Անդ։

4. 'Leaving Syria's civil war to be a mercenary in Africa,' BBC Arabic, 17 July 2024, https://www.bbc.com/news/articles/cjer5ewr34jo9

## ՌՈՒՍ-ՀԱՅԿԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ «ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ ՊԱՀԸ». ԻՆՍՏԻՏՈՒՑԻՈՆԱԼ ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԳԱՅԹԱԿՂՈՒԻ՞

2

Մոսկուայի Քաղաքական եւ Ռազմական Հակամարտութիւնների Ուսումնասիրութիւնների Կենտրոնի ղեկավար Կլինցեւիչը ասել է, որ Ռուսաստանը «մօտ ժամանակներս Հայաստանի վերաբերեալ որոշում կ'ընդունի»։ Փաստը, որ Պեսկովը Հայաստանի մասին խօսել է ռուս-ադրբէջանական խորհրդատուութիւններից յետոյ եւ այն համատեքստում, որ Ուկրաինայի հարցում Մոսկուան առաջադրած խնդիրները կը լուծի կամ պատերազմով, կամ բանակցութիւնների միջոցով, արդէն իսկ չափազանց զգաստացնող է։

Կիեւի օրինակի յիշեցումը, հաւանաբար, պէտք է գնահատել նաեւ այն իրադարձութիւնների կտրուածքով, երբ Եանուկովիչը պաշտօնանկ արուեց։ Ղրիմի անեքսիայի հիմնաւորումն այդ «պետական յեղաշրջումն է»։ Կլինցեւիչը Հայաստանում «զանգուածային անկարգութիւններ» է կանխատեսել։ Նա համարում է, որ Հայաստանում մեծամասնութիւնը Ռուսաստանի հետ դաշնակցային յարաբերութիւնների պահպանման եւ խորացման կողմնակից է, իսկ իշխանութիւնն արեւմտամէտ։

Ռուսաստանի սպառնալիքները մենք ընկալում ենք որպէս ազդակ «որ Ադրբէջանը պատերազմ կը սկսի»։ Ոչ ոք այդ սցենարը չի կարող բացառել, բայց մեծ է նաեւ ներքին դիմակայութիւն սադրելու հաւանականութիւնը։ Մոսկուայի եւ «մանաւանդ» Բաքուի համար դա իդէալական կը լինէր։ Չկայ արտաքին միջամտութիւն, հայերն իրենք են հեռացնում «սորոսական» իշխանութեանը եւ վերադառնում «պատմական փորձով արդարացուած ընտրութեան»։

Ըստ երեւոյթին, պատահական չէ, որ Պեսկովը «մտահոգութիւններ» է հնչեցրել մի պահի, երբ Հայաստանում ԵՄ անդամակցութեան հանրաքուէի նախաձեռնութեան ստորագրահաւաք է սկսուել։ «Ճշմարտութեան պահ» է, իհարկէ, առաջին հերթին իշխանութեան եւ ՔՊ կուսակցութեան համար, բայց պատասխանատուութեան մի շատ զգալի բաժին էլ ծանրանում է ինստիտուցիոնալ ընդդիմութեան ուսերին։ Յամենայն դէպս, նրա սկզբունքային որոշումը կարող է չէզոքացնել Երեւանում «անտի-մայդանի» ծրագիրը։ Ինստիտուցիոնալ ընդդիմութիւնը կը գայթակղուի, թէ՞ ներքաղաքական իրադրութիւնից վեր կը կանգնի։

## ԱՋԵՐՆ ԸՆԴԴԷՄ ՁԱԽԵՐԻ, ԿԱՆԱՅՔ ԸՆԴԴԷՄ ՏՂԱՄԱՐԴԿԱՆՑ...

3

իր ողջ քարոզչական մեքենան ամբողջ աշխարհում աշխատացնում է, որպէսզի ներկայացնի Ռուսաստանը եւ անձամբ Պուտինին որպէս ազգային, ընտանեկան արժէքների միակ անկոտրուն պահապան։ Նոյնիսկ ամերիկեան ներքաղաքական պայքարը Քամալա Հարիսի եւ Դոնալդ Թրամփի միջեւ նոյն Հայաստանում (եւ ոչ միայն), ընկալւում է որպէս նոյն երկու բեւեռների պայքար։

Եթէ դիտարկենք հայաստանեան սոցիալական ցանցերը, որքան դա իհարկէ հնարաւոր է, ապա պարզ է, որ գերակշռող բովանդակութիւնը երկու մասի է բաժանւում՝ քաղաքականութիւնը եւ ընդհանրապէս ապաքաղաքաղաքական զուարճանքը, կենսական դրսեւորումները եւ զանազան գովազդ։ Եթէ դուրս հանենք այս երկու բովանդակային հատուածները, ապա կը նկատենք, որ խնկալէս հիմնական ու թէժ պայքարը այսօր մղւում է լիբերալիզմի եւ պահպանողականութեան միջեւ։ Ընդ որում, գնալով, աւելի է բեւեռականացւում եւ տարածւում բոլոր ոլորտների վրայ։

Ես դեռ յիշում եմ տարիները, մի քանի տարի առաջ, երբ հայկական ֆորումներում հիմնական պատերազմները վարւում էին «կարմիր խնձորի» թեմաների շուրջ, թէ մինչեւ ամուսնութիւն սեռական կեանք կայ, թէ ոչ։ Եւ ում համար կայ։ Հիմա գրեթէ կամայական թեմա վերածւում է պատերազմների նրա շուրջ, թէ չափից շատ «զարգացածներն» են կործանում երկիրը, թէ «խաւարամիտնե-րը»։

Վատն այն է, որ այս թեմայի շուրջ ազդեցիկ գնալով աճում է։ Բեւեռները դառնում են անզիջող եւ ազդում սոցիալական ցանցերում գրեթէ կամայական թեմայի քննարկման վրայ, ինչն էլ բերում է հանրային կարծիքի, աւելի շուտ, հանրային կարծիքի մասին ընկալումների ձեւաւորման։

Հաշուի առնելով այն, որ Հայաստանում քաղաքականութիւնը կորցրել է գրեթէ բոլոր յատկանիշները բացի պոպուլիզմից, դա նաեւ նշանակում է, որ այս ամէնը կտրուկ ազդեցութիւն է ունենում նաեւ քաղաքական պայքարի վրայ։ Ու նաեւ, թւում է թէ հեռաւոր, բայց արդէն բաւականին մօտ ընտրութիւնների վրայ։

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1972 ՀԻՆԳՇԱԲԹԻ 15 ՕԳՈՍՏՈՍ 2024    ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.    عدد رقم ١٩٧٢ الخميس ١٥ أغسطس ٢٠٢٤

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԹՈՒՐՔԻՈՅ ԲԱՆԱԳՆԱՑՆԵՐՈՒՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՍԱՀՄԱՆԻՆ. Ի՞ՆՉ ՀԱՄԱՁԱՅՆԵՑԱՆ

**JAMnews**

Հայ-թրքական սահմանին՝ Մարգարա-Ալիճան անցակէտին, Յուլիս 30-ին հանդիպում ունեցան Հայաստանի եւ Թուրքիոյ յատուկ ներկայացուցիչներ Ռուբէն Ռուբինեան եւ Սերտար Քըլըչ: Պաշտօնական Երեւանի հաղորդումով՝ կողմերը վերահաստատեցին նախորդ հանդիպումներու ընթացքին ձեռքբերուած համաձայնութիւնները: Զանոնք իրագործելու ժամկէտներուն մասին, սակայն, ոչինչ յայտնեցին: Խօսքը մասնաւորապէս կը վերաբերի սահմանի բացումին՝ երրորդ երկիրներու քաղաքացիներուն համար:

Ասիկա Ռուբինեան-Քըլըչ հինգերորդ հանդիպումն էր: Վերջին հանդիպումը կայացած էր 2022 Յուլիսին, Վիեննայի մէջ: Երկու տարուայ ընդհատումէ ետք, կողմերը համաձայնեցան գնահատել թեքնիքական կարիքները՝ որոնք կարելի կը դարձնեն գործարկել Ախուրիկ-Աքիաքա երկաթուղիի սահմանային անցակէտը, ինչպէս նաեւ փոխադարձաբար դիւրացնել վիզայի ընթացակարգերը դիւանագիտական/պաշտօնական անձնագիրներ ունեցողներուն համար:

Հայ-թրքական բանակցութիւններուն վերականգնումը քաղաքագէտ Ռոբերտ Ղեւոնդեան նախ եւ առաջ կը պայմանաւորէ Թուրքիա-Ազրպէյճան յարաբերութիւններուն մէջ ճեղքուածքի յառաջացումով: Ըստ իրեն, պատճառն այն է՝ որ 2020 թուականի 44-օրեայ պատերազմէն ետք, Անքարան չստացաւ իր ակընկալածը: Գալով Ռուբինեան-Քըլըչ համաձայնութիւններուն, ան նկատեց՝ որ կողմերը սկսած են քննարկել նաեւ երկաթուղային հաղորդակցութիւնը վերականգնելու կարելիութիւնները: Ըստ իրեն՝ եթէ անոնք կեանքի կոչուին եւ ինչ-որ ուղղութեամբ յառաջընթաց արձանագրուի, «շարունակութիւնը շատ արագ է լինելու»:

Թուրքիա պաշտօնապէս ճանչցած է Հայաստանի Հանրապետութիւնը 1991 Դեկտեմբեր 24-ին: Երկու երկիրներուն միջեւ, սակայն, դիւանագիտական յարաբերութիւններ չեն հաստատուած մինչեւ այսօր: 1993-էն ի վեր փակ է ցամաքային սահմանը: Ան քանի մը ժամով բացուեցաւ 2023 Փետրուարին, երբ հայկական բեռնատարները օգնութիւն հասցուցին երկրաշարժէն տուժած աղէտի գօտի:

Հայ-թրքական կարգաւորումի մասին խօսակցութիւնները աշխուժացան Արցախի երկրորդ պատերազմէն ետք: Թէեւ յարաբերութիւններու կարգաւորումին գործընթացը կ'ընթանայ երկկողմ ձեւաչափով, թրքական կողմը ամէն առիթի կը յայտարարէ՝ որ Երեւանի հետ ունեցած բանակցութիւններուն օրակարգը կը համակարգէ Պաքուի հետ:

**Վերջին զարգացումները**

Հայ-թրքական յարաբերութիւններու կարգաւորումի գործընթացի յատուկ ներկայացուցիչներ Ռուբէն Ռուբինեան եւ Սերտար Քըլըչ նախապէս ունեցած էին չորս հանդիպումներ, բոլորն ալ 2022 թուականին: Առաջին հանդիպումը կազմակերպուած էր Մոսկուայի մէջ, միւս երեքը՝ Վիեննա: Հանդիպումներէն ետք կողմերը սովորաբար կը յայտարարէին՝ որ «համաձայնած են շարունակել լիարժէք կարգաւորումին ուղղուած բանակցութիւնները՝ առանց նախապայմաններու»:

Չորրորդ՝ 2022 Յուլիս 1-ի հանդիպումէն ետք, սակայն, յայտարարուեցան ճշգրիտ համաձայնութիւններ, մասնաւորապէս՝ «սկսիլ Հայաստան-Թուրքիա ուղիղ օդային բեռնափոխադրումներու իրականացում» եւ «երրորդ երկիրներու քաղաքացիներուն համար ապահովել Հայաստան-Թուրքիա ցամաքային սահմանը հատելու հնարաւորութիւն»:

2023 Յունուարին, Հայաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան խօսնակը յայտնեց՝ որ վերացած է ուղիղ օդային բեռնափոխադրումներուն արգելքը: Մինչեւ այսօր, սակայն, սահմանը բանալու ուղղութեամբ որեւէ յառաջընթաց չէ արձանագրուած:

Մէկ ամիս առաջ Ռուբէն Ռուբինեան լրագրողներուն ըսած էր՝ թէ «այս համաձայնութեան իրագործումին ուղղութեամբ քայլեր չտեսանք թրքական կողմէն»:

**Հայկական կողմը անցակէտի նորոգումը աւարտած է 2023-ին**

Հայ-թրքական սահմանի Մարգարայի անցակէտի հիմնարար նորոգումը ամբողջութեամբ վերջացած է: Ըստ Պետական Եկամուտներու Կոմիտէին, շինարարական աշխատանքները տեւած են շուրջ վեց ամիս եւ վերջացած 2023 Նոյեմբերին:

«Կառուցուել են սպասարկման սրահ, խորը զննման անգար, բեռների ձեւակերպման համար նախատեսուած տաղաւարներ եւ պահեստ, աւտօկայանատեղիներ, ընդարձակ հրապարակ եւ միջազգային չափանիշներին համահունչ այլ ենթակառուցուածքներ», - աւելի վաղ հաղորդած էր Արտաքին Գործոց Նախարարութիւնը:

Քանի մը օր առաջ՝ Յուլիս 26-ին, Արմաւիրի մարզ կատարած այցելութեան ծիրին մէջ, անցակէտ կ'այցելէ Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան: Ան կը յայտնէ՝ որ Մարգարայի անցակէտի վերանորոգումը արժած է մէկ միլիարտ դրամ:

**Փորձագիտական կարծիք**

Քաղաքագէտ Ռոբերտ Ղեւոնդեանի խօսքով՝ հայ-թրքական յարաբերութիւններու կարգաւորումին գործընթացը թէեւ ցանկութենէ շատ աւելի դանդաղ կ'ընթանայ, բայց կարեւոր է՝ որ կ'ընթանայ:

«Եթէ սկսուի, դրանից յետոյ ձնագնդի էֆեկտով տարածուելու է, շատ աւելի արագ են լինելու միւս կարգաւորումները», - *JAMnews*-ի հետ զրոյցին ըսաւ ան:

Սակայն չմատնանշեց ճշգրիտ ժամկէտներ: Չի կարծեր՝ որ ձեռքբերուած համաձայնութիւնները կեանքի կը կոչուին մինչեւ Նոյեմբեր՝ ԱՄՆ նախագահական ընտրութիւնները: Ըստ Ղեւոնդեանի՝ միայն այդ ժամանակ «ամէն ինչ աւելի առարկայական կը դառնայ»:

Չի բացառեր՝ որ վիզայի ընթացակարգերը դիւրացնելէ ետք սահմանը բացուի երրորդ երկիրներու եւ դիւանագիտական անձնագիրներ ունեցողներու համար: Կ'ըսէ՝ անոր կրնայ յաջորդել նաեւ ցամաքային ճանապարհով բեռներու տեղափոխումի թոյլտուութիւն:

Քաղաքագէտը Հայաստանի ԱԳՆ-ի հրապարակած հաղորդագրութենէն կ'ենթադրէ՝ որ կողմերը սկսած են քննարկել նաեւ 4

# ՀԱՅԱՍՏԱՆ-ԵՄ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՈՐԵՒԷ ԿԱՊ ՉՈՒՆԵՆ ԱՆԴԱՄՈՒԹԵԱՆ ԹԵԿՆԱԾՈՒԹԵԱՆ ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՀԵՏ. ՍՏԱՆՕ

Հայաստան-Եւրամիութիւն բանակցութիւնները որեւէ կապ չունեն անդամութեան թեկնածութեան հնարաւորութիւնների հետ: *Ազատութիւն ռադիոկայան*ի հետ հարցազրոյցում այս մասին ասել է Եւրամիութեան արտաքին յարաբերութիւնների խօսնակ Պետէր Ստանոն:

«Սա իրականում որեւէ կապ չունի պոտենցիալ անդամութեան թեկնածութեան գործընթացի հետ: Բանակցութիւնները ԵՄ-Հայաստան գործընկերութեան օրակարգի շուրջ արտացոլում են երկու կողմի փոխադարձ ցանկութիւնն ու կամքը՝ աւելին անելու միասին, սակայն հիմնուած ներկայիս յարաբերութիւնների վրայ: Իսկ ներկայիս յարաբերութիւնները սահմանուած են Համապարփակ եւ Ընդլայնուած Գործընկերութեան համաձայնագրով», - նշել է նա:

# ԱՐԱՅԻԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՆ ՈՒՂԵՐՁ Է ՅՂԵԼ ՍԻՆՋԱՐԻ ԵԶԴԻՆԵՐԻ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԼԻՑԻ ԿԱՊԱԿՑՈՒԹԵԱՄԲ

Ազգային փոքրամասնութիւնների հարցերով խորհրդի նախագահ, Վարչապետի աշխատակազմի ղեկավար Արայիկ Յարութիւնեանն Օգոստոսի 3-ին ուղերձ է յղել Սինջարի եզդիների ցեղասպանութեան զոհերի յիշատակի օրուայ կապակցութեամբ: Ուղերձում ասուած է.

«10 տարի առաջ այս օրը ցեղասպանութեան ենթարկուեց Իրաքի Սինջարի շրջանի եզդի բնակչութիւնը: Սպանուեցին հազարաւոր եզդիներ, առեւանգուեցին եւ բռնութիւնների ենթարկուեցին բազմաթիւ կանայք ու աղջիկներ, հարիւր հազարաւորները ստիպուած եղան լքել հայրենի տները եւ բռնել գաղթի երկար ու դժուար ճանապարհը:

Իսլամական Պետութիւն ահաբեկչական խմբաւորման կողմից իրականացուած այս ոճրագործութիւնը ցեղասպանութիւն էր, որը տեղի ունեցաւ միջազգային հանրութեան աչքի առջեւ, եւ որի ընթացքում թիրախաւորուեցին ոչ միայն մարդկային համայնքները, այլ նաեւ վերջիններիս ինքնութեան մաս կազմող պատմամշակութային ժառանգութիւնը՝ ոչնչացուեցին եւ հողին հաւասարեցուեցին այդ համայնքների քաղաքակրթական ներկայութեան մասին վկայող սրբավայրերն ու յուշարձանները: Հայաստանը մշտապէս բարձրաձայնել է այս ծանր յանցանքների մասին, եւ աշխարհում առաջին երկրներից էր, ով դատապարտեց եզդի ժողովրդի հանդէպ իրականացուած ոճրագործութիւնները՝ դրանք ճանաչելով որպէս ցեղասպանութիւն:

Զանգուածային վայրագութիւնների, այդ թւում՝ ցեղասպանութիւնների եւ մարդկութեան դէմ յանցանքների կանխարգելումը կարեւոր յանձնառութիւն է Հայաստանի համար՝ բարոյական մի պարտաւորութիւն, որ բխում է մեր սեփական պատմութիւնից եւ հայ ժողովրդի վերապրած փորձառութիւնից: Մենք հաստատակամ ենք շարունակելու այս ուղղութեամբ հետեւողական ջանքերը: Դրանց դրսեւորումներից են, օրինակ, Միաւորուած Ազգերի Կազմակերպութեան շրջանակներում Հայաստանի կողմից նախաձեռնուող բանաձեւերը, որոնցից վերջինը՝ *Ցեղասպանութեան կանխարգելում* վերտառութեամբ, այս տարուայ Ապրիլին միաձայն ընդունուեց ՄԱԿ-ի Մարդու Իրաւունքների Խորհրդի կողմից: Այս բանաձեւերը գործողութեան կոչեր են, որոնց նպատակն է միջազգային հանրութեան ուշադրութիւնը հրաւիրել կանխարգելիչ մեխանիզմների ամրապնդմանը, որպէսզի նման յանցանքներն այլեւս չկրկնուեն: Պատահական չէ, որ այս տարուայ Ապրիլին Հայաստանն Իրաքից յետոյ դարձաւ աշխարհում առաջին պետութիւնը, որը որոշում կայացրեց Օգոստոսի 3-ը պաշտօնապէս հռչակել որպէս եզդիների ցեղասպանութեան յիշատակի օր: Երեւանի սրտում տեղակայուած է Եզդի ժողովրդի անմեղ զոհերի յուշարձան-կոթողը: Այս ամէնն արտացոլում է մեր խորը յարգանքն ու կարեկցանքը բարեկամ եզդի ժողովրդի հանդէպ, ում զաւակները Հայաստանի Հանրապետութեան նուիրեալ քաղաքացիներ են՝ իրենց ջանքերով մեծապէս նպաստելով Հայաստանի պետականութեան կայացմանն ու զարգացմանը:

Սինջարի եզդիների ցեղասպանութեան 10-րդ տարելիցի կապակցութեամբ մեր զօրակցութիւնն ենք յայտնում մեր 4

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲԵՐ

**(1888-1902)**

Հ. ԱՒԱԳԵԱՆ

Լոյս տեսաւ եգիպտահայ թատրոնի սկզբնաւորութեան նուիրուած *Ջահակիր*ի Յաւելուածը, որ եգիպտահայ թատրոնի պատմութիւնն է մինչեւ 1902 թուական։ Գիրքէն նոյնութեամբ կ'արտատպեմ այդ շրջանի թատերախումբերուն ցանկը, զանց առնելով աղբիւրները եւ ծանօթագրութիւնները։

**1. ԱՆՂՆՈՒԷՐ ԹԱՏԵՐԱՍԻՐԱՑ ԽՈՒՄԲ (1888-1889)**

Կազմուած է 1888-ին, Աղեքսանդրիա։ Տուած է թրքերէն լեզուով երկու բարեգործական ներկայացումներ, 1888-ի վերջերը եւ 1889 Յունուար 21-ին։ Երկրորդին ներկայացուցած է Ֆիլիփ Տիմանուարի եւ Ատոլֆ տ'Աննըրիի *Ծերունի տասնապետ* թատրերգութիւնը եւ *Համեստութեան վարձատրութիւն* կատակերգութիւնը, մասնակցութեամբ Սիրանոյշի։

**2. ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐՈՒ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1889)**

Կը յիշատակուի Հայ Երիտասարդներու Թատերախումբի միակ ներկայացում մը բարեգործական նպատակով 1889 Ապրիլ 14-ին, Գահիրէի Խտիվալ Օփերայի Թատրոնին մէջ, ուր թրքերէն լեզուով կը բեմադրէ *Տարեգ կամ անպիտան* հինգ արար թատրերգութիւնը, որուն կը յաջորդէ կատակերգութիւն մը։

**3. ՊԷՆԿԼԵԱՆ (ՊԷՆԼԵԱՆ) ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1896-1903)**

Սերովբէ Պէնկլեանի Պոլսոյ մէջ հիմնած Պէնկլեան Թատերախումբը Եգիպտոս կ'այցելէ 1885, 1888, եւ 1894-ին, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ ներկայացնելով Տիգրան Չուխաճեանի, Ժաք Օֆընպախի, Շարլ Լըքոքի, Էտմոն Օտրանի եւ Ահմէտ Միտհաթի օփերէթները, բոլորն ալ թրքերէն լեզուով։

Չորրորդ եւ վերջին այցելութիւնը կայացած է 1896-ին՝ Պանք Օթթոմանի դէպքէն անմիջապէս ետք։ Պէնլեան ընտանիքը այլեւս չի վերադառնար Պոլիս եւ վերջնականապէս կը հաստատուի Եգիպտոս, իսկ Պէնլեան Թատերախումբը զանազան կազմերով կը շարունակէ իր գործունէութիւնը Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ մինչեւ Սերովբէ Պէնլեանի մահը 1903-ին Աղեքսանդրիոյ մէջ։ 1896-1897 թատերաշրջանին տակաւին կարողանալով ներկայացնել օփերէթներ, երգիչ դերակատարներու մեկնումով թատերախումբը աւելի կը դիմէ թատերական (ոչ-երաժըշտական) ողբերգութիւններու եւ կատակերգութիւններու՝ թրքերէն եւ հայերէն լեզուներով։

**4. ՀԱՅ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ կամ ՀԱՅ ԴԵՐԱՍԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1898)**

Հայ Թատերական Ընկերութիւնը եւ Հայ Դերասանական Ընկերութիւնը փոխադարձ անուանումներով կը յիշատակուին չորս անգամ 1898 Յունուարէն մինչեւ Մայիս։

Ընկերութենէ աւելի դերասանական խումբ մը ըլլալու է, որ կը յիշատակուի ելոյթ ունեցած ըլլալ երեք անգամ։

1898 Յունուար 30, Գահիրէի Ապու Խալիլ թատրոնին մէջ Հայ Դերասանական Ընկերութիւնը ի նպաստ Սերովբէ Պէնլեանի կը ներկայացնէ *Մոնթէ Քրիսթօ* թատրերգութիւնը։

1898 Մարտ 25, Օփերայի Խտիվալ Թատրոնին կայացած թատերական եւ երաժշտական երեկոյթին Հայ Թատերական Ընկերութիւնը կը մասնակցի բեմադրելով թրքերէն երեք թատրերգութիւններ՝ *Չընկըրաք* (կատակերգութիւն), *Զէյպէք* (երգախառն կատակերգութիւն) եւ *Զօր Նիքեահ* (կատակերգութիւն)։

1898 Ապրիլ 23, Գահիրէ, Հայ Թատերական Ընկերութիւնը կը բեմադրէ Սերովբէ Պէնլեանի *Սաւուղ* պատմական երգախառն թատրերգութիւնը, խաղարկութեամբ հեղինակին։

Իսկ 1898 Մայիս 15-ին Ապու Խալիլ թատրոնին մէջ, ի նպաստ Դերասանական Ընկերութեան կատակերգակ Հ. Վարժապետեանի կը բեմադրուի *Մետէան*, Երանուհի Գարագաշեանի խաղարկութեամբ։

**5. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1900)**

1900-ին Թովմաս Ֆասուլեաճեան Գահիրէի մէջ կը հիմնէ Արեւելեան Թատերախումբը, նպատակ ունենալով «արթնցնել թմրած զգացումները, որպէսզի իրականանայ անցեալ երազը որ ի Պոլիս կը փայլէր երբեմն 40 տարիներ առաջ, Արեւելեան թատրոն անուան տակ»։

Թատերախումբը կ'ունենայ ընդամէնը երկու ներկայացումներ։

Առաջինը՝ 1900 Յունուար 21, Գահիրէի Եգիպտական Թատրոն, Վիքթոր Հիւկոյի *Արքայն [կը] զբօսնու* թատրերգութիւնը, թրքերէն թարգմանութեամբ Ֆասուլեաճեանի, մասնակցութեամբ Պէնլեան Թատերախումբի անդամներու, դերակատարներ՝ Ֆասուլեաճեան (Թրիպուլէ), Մարի Պէնլեան (Պլանշ), Շաւարշ Շիշմանեան (Ֆրանսուա Ա.), Բ. Սիրունեան (Պարոն տը Սէն-Վալիէ), Երուանդ Պէնլեան (Սալթապատիլ), բեմադրութիւն՝ Ֆասուլեաճեան։

Ներկայացումը կը կայանայ ի նպաստ Գահիրէի Լսարան-Ընթերցատան։

Երկրորդը՝ 1900 Փետրուար 4, Եգիպտական Թատրոն, Տիմանուարի եւ Ատոլֆ տ'Աննըրիի *Տոն Սէզար տը Պազան* թատրերգութիւնը թրքերէն թարգմանութեամբ, խաղարկութեամբ ու բեմադրութեամբ Ֆասուլեաճեանի, եւ մասնակցութեամբ Պէնլեան Թատերախումբին։

**6. ՀԱՅ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԽՈՒՄԲ կամ ՖԱՍՈՒԼԵԱՃԵԱՆ-ՊԷՆԼԵԱՆ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1900)**

Թովմաս Ֆասուլեաճեանի եւ Սերովբէ Պէնլեանի համակիր անդամները միանալով կը կազմեն Ֆասուլեաճեան-Պէնլեան Թատերախումբը, որ այլապէս յիշուած է նաեւ Հայ Թատերական Խումբ անունով, 1900 Մարտ 2, Գահիրէի Նոր Թատրոն Եգիպտականին մէջ հայերէն լեզուով ներկայացնելու համար Սմբատ Բիւրատի *Պատերազմ ընդդէմ պարսից քաջին Վարդանայ Մամիկոնէի* երգախառն ողբերգութիւնը, դերակատարներ՝ Շաւարշ Շիշմանեան (Վարդան Մամիկոնեան), Բ. Սիրունեան (Յազկերտ արքայ պարսից), Վ. Բալուեան (Յովսէփ Կաթողիկոս), Երուանդ Պէնլեան (Վասակ Սիւնի), Մելքիսեդեկ (Ներշապուհ Արծրունի), Նաշիտ (Դենպետ), Ղազարեան (Վահրամ զինակիր), Մարի Պէնլեան (Տիկ. Զարուհի Մամիկոնեան եւ Օր. Շուշանիկ), Վրոյր, (Զանգակ երէց), Տէյիրմէնճեան (Միհրներսեհ Վզրուկ), Միսաքեան (Սահակ Եպիսկոպոս Ռշտունեանց), Սիւզանդ (Մովկան Մոգպետ), Գարագաշ (Սմբատ)։

**7. ՖԱՍՈՒԼԵԱՃԵԱՆ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1900)**

Ֆասուլեաճեան Թատերախումբը կու գայ փոխարինելու Արեւելեան Թատերախումբը եւ Ֆասուլեաճեան-Պէնլեան Թատերախումբը։ Անոր առաջին ելոյթը տեղի կ'ունենայ 1900 Ապրիլ 7-ին, Խտիվալ Օփերայի Թատրոնին մէջ, թրքերէն լեզուով ներկայացնելով Շեքսփիրի *Օթելլո*ն եւ թրքական կենաքէ մէկ արար կատակերգութիւն մը, դերակատարներ՝ Պերճիկ, Սմբատ Թէրզեան, Թովմաս Ֆասուլեաճեան, բեմադրիչ՝ Թովմաս Ֆասուլեաճեան։

Ապրիլի վերջին շաբաթը նոյն թատրոնին մէջ կը ներկայացնէ *Խելագար կինը*։

1900 Նոյեմբերին նախատեսուած էին չորս ներկայացումներ Թովմաս Թէրզեանի *Սանդուխտ կոյսը* (հայերէն), *Սիպերիայի կալանաւորները* (թրքերէն), *Անմեղ զոհեր* (հայերէն), եւ *Լէտոնի սուրհանդակը* (թրքերէն)։ Կը ներկայացուին երեքը, յայտնի չէ որ մէկն է ջնջուած։

**8. ԽՈՒՄԲ ՄԸ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐ (1902)**

Թատերախումբի մը անունը չէ ասիկա, այլ պարզապէս խումբ մը երիտասարդներ հաւաքուելով կը կազմեն թատերախումբ մը եւ 1902 Փետրուար 2-ին Գահիրէի Եգիպտական Թատրոնին մէջ կը բեմադրեն *Գայլ Վարդան* 5 արար հայերէն ողբերգութիւնը եւ զաւեշտ մը։

**9. ՀՐԱՉԵԱՅ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1902)**

Գահիրէի երիտասարդներէ կազմուած թատերախումբ։ Կը յիշուի երկու ներկայացումներով Գահիրէի Եգիպտական Թատրոնին մէջ՝ 1902 Մարտ եւ 1902 Յունիս 15։ Երկրորդ ներկայացումի թատրերգութիւնն էր՝ *Վանայ հայդուկները*, հայերէն լեզուով։

**10. ՀԱՅ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1902)**

Քանի մը դերասաններ եւ սիրող երիտասարդներ միանալով, 1902 Յունիս 9-ին Աղեքսանդրիոյ մէջ կը կազմեն Հայ Արեւելեան Թատերախումբը, նպատակ ունենալով ամիսը երկու անգամ ներկայացումներ տալ հայերէն եւ թրքերէն լեզուներով, ներկայացնելով ընտիր թատերախաղեր դիւրամատչելի գիներով։

Կ'ունենայ միակ ներկայացում մը 1902 Օգոստոս 8-ին, Աղեքսանդրիոյ Փիրամիտ Թատրոնին մէջ,*Միրոյ զոհեր* հայերէն թատրերգութեամբ։

Թատերախումբը կ'ենթարկուի հայ մամուլի ուժեղ յարձակումին եւ կը դադրի գոյութիւն ունենալէ։

## ՀԱՅԱՍՏԱՆ

## *ԻՆՉՈ՞Ւ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂՈՒՄ ՀԱՅԵՐ ՉԿԱՆ.* ՀՐԱՊԱՐԱԿՈՒԵԼ Է ԶԵԿՈՅՑԻ ԱՄՓՈՓԱԳԻՐԸ

Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի (ՀՔԱՎ) գրասենեակը եւ գործընկեր կազմակերպութիւնները հրապարակել են *Ինչո՞ւ Լեռնային Ղարաբաղում հայեր չկան* զեկոյցի ամփոփագիրը (https://freedomhouse.org/sites/default/files/2024-06/DDF_FH-REPORT_06.2024.pdf):

Զեկոյցը փաստում է, թէ ինչպէս է Լեռնային Ղարաբաղի բնակչութիւնն Ադրբէջանի կողմից միտումնաւոր ենթարկուել պարբերական յարձակումների, շրջափակման եւ աhաբեկման, ինչի հետեւանքով Լեռնային Ղարաբաղի հայ բնակչութեան հիմնարար իրաւունքները կոպտօրէն խախտուել են՝ զրկելով վերջինիս տարրական կենսապայմաններից:

Զեկոյցը համատեղ պատրաստուել է Freedom House-ի, International Partnership for Human Rights-ի, Ժողովրդավարութեան Զարգացման Հիմնադրամի, Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակի, Իրաւունքի Զարգացման եւ Պաշտպանութեան Հիմնադրամի, Իրաւունքների Պաշտպանութիւն Առանց Սահմանների եւ Truth Hounds կազմակերպութիւնների կողմից:

Փաստահաւաք առաքելութեան ընթացքում հաւաքագրուած խորքային վկայութիւնների եւ բաց աղբիւրներում առկայ տուեալների հիման վրայ կատարուած վերլուծութիւնը թոյլ է տալիս եզրակացնել, որ Ադրբէջանը միտումնաւոր եւ հաշուարկուած գործողութիւնների միջոցով ենթարկել է Լեռնային Ղարաբաղի հայ բնակչութեանը բռնի տեղահանման եւ էթնիկ զտման:

Վկաների հետ երեք հարիւր երեսունից աւել խորքային հարցազրոյցների ընթացքում արձանագրուել են Ադրբէջանի իշխանութիւնների կողմից մարդու իրաւունքների, միջազգային մարդասիրական իրաւունքի եւ միջազգային քրէական իրաւունքի նորմերի կոպտագոյն խախտումներ:

Փաստահաւաք առաքելութիւնը պարզել է՝ կան բաւարար ապացոյցներ եզրակացնելու, որ Ադրբէջանի իշխանութիւնների գործողութիւնները հանդիսանում են յանցագործութիւններ համաձայն Միջազգային Քրէական Դատարանի Հռոմի կանոնադրութեան, ներառեալ 7-րդ յօդուածի (մարդկութեան դէմ յանցագործութիւններ) եւ 8-րդ յօդուածի (պատերազմական յանցագործութիւններ), եւ համապատասխանում են բնակչութեան բռնի տեղահանման սահմանմանը, ինչպէս նաեւ նախկին Հարաւսլաւիայի հակամարտութեան համատեքստում ՄԱԿ-ի փորձագէտների կողմից սահմանուած էթնիկ զտումների չափանիշներին:

Զեկոյցի ամփոփագրի շնորհանդէս-քննարկումը տեղի է ունեցել Յուլիսի 1-ին, Freedom House-ի կողմից համակազմակերպուող երրորդ ամենամեայ *Ժողովրդավարութեան հայկական ֆորում*ի շրջանակում:

Զեկոյցի ամբողջական տարբերակը հասանելի կը լինի 2024 թ. Սեպտեմբերին:

## ՅՈՒԼԻՍԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ Է ԱՅՑԵԼԵԼ 237 ՀԱԶԱՐ 603 ԶԲՕՍԱՇՐՋԻԿ

Յուլիս ամսին Հայաստան է այցելել 237 հազար 603 զբօսաշրջիկ, նախորդ տարուայ Յուլիսին զբօսաշրջային այցելութիւնների թիւը կազմել էր 255 հազար 706:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ 2024 թուականի Յուլիսին դէպի Հայաստան զբօսաշրջային այցելութիւնների թիւը ներկայացրել է Զբօսաշրջութեան Կոմիտէն:

2024 թ. Յունուար-Յուլիս ամիսներին դէպի Հայաստան առաւել շատ զբօսաշրջային այցելութիւններ գրանցուել են Ռուսաստանից (42%), Վրաստանից (13%) եւ Իրանից (8%), չորրորդ տեղում ԱՄՆ-ից (2.5%) այցելութիւններն են, հինգում՝ Հնդկաստանից (2.3%):

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐ*Ի 67-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԹԱՏՐՈՆԻ




Լոյս տեսաւ *Ջահակիր*ի Կէ. (67) Յաւելուածը՝ *Եգիպտահայ թատրոնի սկզբնաւորութիւնը (1885-1902)* (102 էջ):

Կ'ընդգրկէ 17 տարուայ ժամանակաշրջան մը՝ սկսած Պէնկլեան Թատերախումբի Եգիպտոս կատարած առաջին այցելութենէն (1885) մինչեւ Սեդրակ Պէնկլեանի մահը Աղեքսանդրիոյ մէջ: 1885-էն առաջ տեղեկութիւններ չկան:

Կը պատմէ Պէնկլեան Թատերախումբի չորս այցելութիւնները Եգիպտոս՝ 1885, 1888, 1894 եւ 1896: Վերջին այցելութենէն ետք Պէնկլեան ընտանիքը հաստատուած է Եգիպտոս:

Գիրքը կ'անդրադառնայ Թովմաս Ֆասուլեաճեանի եգիպտական տարիներուն (1899-1901), կը ներկայացնէ Պէնկլեան-Ֆասուլեաճեան դժուար յարաբերութիւնները:

Եգիպտահայերէ կազմուած առաջին թատերախումբը կը յիշատակուի Անձնուէր Թատերասիրաց Խումբը 1888-ին:

Սկզբնական շրջանին այցելու թէ տեղական խումբերուն ներկայացումները կ'ըլլային թրքերէն լեզուով: Անցումը հայերէնի կ'ըլլայ աստիճանաբար եւ երկար տեւողութեան ընթացքին:

Յիշատակուած են Եգիպտոս այցելած նշանակալի քանակութեամբ յայտնի դերասաններու անուններ՝ Սիրանոյշ, Երանուհի Գարագաշեան, Յարութիւն Ալեքսանեան, Մարտիրոս Մնակեան, Դաւիթ Թրեանց, Միքայէլ Չափրաստ, Գոհարիկ Շիրինեան, եւ ուրիշներ:

Գիրքը կը վերջանայ «Ժամանակագրութիւն» եւ «Թատերախումբեր» բաժիններով:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՈՒՍՈՒՄԸ ՇԱՐՈՒՆԱԿԵԼ ՑԱՆԿԱՑՈՂ ՍՓԻՒՌՔԱՀԱՅԵՐԻ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆԸ ՇԱՐՈՒՆԱԿՒՈՒՄ Է. ՅԱՅՏԵՐԻ ԸՆԴՈՒՆՈՒՄԸ ԲԱՑ ԿԸ ԼԻՆԻ ՄԻՆՉԵՒ ՕԳՈՍՏՈՍԻ 23-Ը

ԳԱՅԵԱՆԷ ԳԱԲՐՈՅԵԱՆ

Սփիւռքից հայաստանեան բուհերում սովորելու համար յայտ է ներկայացրել 228 դիմորդ, որոնք հիմնականում դիմել են բակալաւրի կրթական աստիճանի համար: Ընդունելութիւնը շարունակւում է, յայտերի ընդունումը բաց կը լինի մինչեւ Օգոստոսի 23-ը:

*Արմենպրէս*ի հետ զրոյցում այս մասին ասաց Հայաստանի ԿԳՄՍ նախարարութեան արտաքին կապերի եւ Սփիւռքի վարչութեան Սփիւռքի հետ կապերի բաժնի պետ Կարէն Մնացականեանը՝ նշելով, որ ընդունելութիւնը իրականացւում է ոչ միայն բակալաւրիատի, այլ նաեւ մագիստրատուրայի եւ ասպիրանտուրայի աստիճանների համար:

«Այս տարի ընդունելութիւնը մեկնարկել է Յունիսի 15-ից, իսկ վերջնաժամկէտը Օգոստոսի 23-ն է: Քննութիւնները, որոնք սփիւռքի դիմորդների համար անցկացւում են պարզեցուած կարգով, լինելու են Օգոստոսի 30-ից Սեպտեմբերի 5-ն ընկած ժամանակահատուածում: Կրթական հաստատութիւններում ձեւաւորուելու են յանձնաժողովներ, որտեղ իրականացնելու են գիտելիքների ստուգում, եւ, երբ դիմորդը յաղթահարում է դրական շեմը, հրամանագրւում եւ հնարաւորութիւն է ստանում սովորել Հայաստանում իր նախընտրելի թէ՛ մասնաւոր, թէ՛ պետական, թէ՛ միջազգային բուհերում», - նշեց Կարէն Մնացականեանը:

↳ 4

## ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻՑ ՀԱՆՈՒԵԼ Է ՏԱՐԱԾԱՇՐՋԱՆԱՅԻՆ ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ ՎԵՐԱԲԵՐՈՂ ՅՕԴՈՒԱԾԸ. ԱԳՆ

Երեւանի ու Բաքուի փոխադարձ համաձայնութեամբ խաղաղութեան համաձայնագրի նախագծից հանուել է տարածաշրջանային հաղորդակցութիւններին վերաբերող յօդուածը, *Ազատութեան*ն ասել է Հայաստանի ԱԳՆ մամլոյ խօսնակ Անի Բադալեանը:

«Պէտք է ընդգծենք, որ դրանց արդիւնաւէտ ապաշրջափակումը շարունակում է մնալ տարածաշրջանում խաղաղութեան եւ տնտեսական զարգացման՝ Հայաստանի տեսլականի եւ առաջմղուող օրակարգի կարեւոր մաս: Այն լաւագոյնս արտացոլուել է Հայաստանի կառավարութեան կողմից ներկայացուած *Խաղաղութեան խաչմերուկ*՝ ծրագրում հիմնուելով յայտնի սկզբունքների՝ ինքնիշխանութեան եւ իրաւազօրութեան յարգման, ինչպէս նաեւ փոխադարձութեան ու հաւասարութեան վրայ», - նշել է Բադալեանը:

Աւելի վաղ *Ազատութեան*ը տուած հարցազրոյցում Ալիեւի յատուկ յանձնարարութիւններով յանձնակատար էլչին Ամիրբէկովն ասել էր, որ կողմերն, ըստ նրա, փոխադարձաբար ընդունելի տարբերակ են գտել նաեւ Ադրբէջանը Նախիջեւանին միացնող ճանապարհի հարցում, որը Բաքւում Զանգեզուրի Միջանցք են կոչում տարիներ շարունակ:

«Մենք հասկացանք, որ մենք չենք կարող տեսանելի ապագայում աւարտին հասցնել խաղաղութեան համաձայնագիրը, եթէ Սահմանադրութեան խնդրից բացի եւս մեկ տարաձայնութիւն թողնենք՝ հաղորդակցութեան ուղիների բացումը: Ուստի, երկկողմ համաձայնութեամբ որոշեցինք այս պարբերութիւնը հանել խաղաղութեան պայմանագրից ու դրան վերադառնալ յետագայ փուլում», - նշել է Ամիրբէկովը, յաւելելով. - «Երբ խաղաղութեան պայմանագիրը ստորագրուի, երկու պատուիրակութիւնները կամ երկու երկրները կարող են վերսկսել քննարկումները՝ գտնելու իրենց համար ընդունելի բանաձեւ Ադրբէջանի եւ Նախիջեւանի միջեւ հաղորդակցութիւնը վերաբացելու համար»:

***Ազատութիւն ռադիոկայան***

## ԼՈՅՍ Է ՏԵՍԵԼ XXI ԴԱՐԻ ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐԻ 5-ՐԴ ՀԱՏՈՐԸ

Արմաւ հրատարակչութիւնը լոյս է ընծայել XXI դարի հայ գրականութեան մատենաշարի 5-րդ հատորը *Չայն թատերական* (Դրամատուրգիա) խորագրով:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ գրքում զետեղուած է երեսունվեց հեղինակի դրամատուրգիական ստեղծագործութիւն:

Բազմազան են բարձրացուած թեմաներն ու խնդիրները, տարբեր զեղարուեստական կառոյցներ կան ու ներժանրային տեսակներ՝ մոնոդրամա, փոքր դրամա, կատակերգութիւն, ֆարս, ողբերգութիւն, պատմական դրամա եւ այլն: Հեղինակներին միաւորում է մեկ կարեւոր հանգամանք՝ նրանք բոլորն էլ հայ թատրոնին են նուիրուած եւ հարուստ նիւթ են տալիս:

Մատենաշարի համադրողը Հրանտ Մարգարեանն է (Գիտութիւնների դոկտոր եւ պրոֆեսոր), կազմողն ու խմբագիրն Արմէն Աւանեսեանն է:

ԽՈՀԵՐ

## ԲԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ՝ ԱՂԲԻՒՐՆԵՐՈՒ ԽՏՐԱԿԱՆՈՒԹԵԱՄԲ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Աղբիւրներու ընտրութիւնը կը հանդիսանայ բանասիրութեան ամենակարեւոր հենքերէն մէկը: Աղբիւր՝ ըլլայ գիրք, մամուլ թէ ձեռագիր:

Մէկ կողմ ձգենք ձեռագիրը: Առանձին հարց է: Խօսինք տպագիրի մասին:

Այսօր, առցանց տեղադրումներու շնորհիւ, համեմատաբար դիւրացած է տպագիր աղբիւրներու հասանելիութիւնը: Հայերուս պարագային, Հայաստանի Ազգային Գրադարանը շարունակաբար կը տեղադրէ մեծ քանակութեամբ գիրք եւ մամուլ՝ ազատ բեռնումի համար: Ժամանակ մըն է որ կը գործէ նաեւ Համահայկական Թուանշային Գրադարանը: Բնականաբար, մեծաքանակ գիրքեր պիտի մնան անտեղադրելի, հեղինակային իրաւունքի եւ այլ պատճառներով:

Որոնումի ճանապարհին, բանասէրին ակամայաբար կրնան վրիպիլ աղբիւրներ: Ամբողջական աղբիւր հասկացողութիւն գոյութիւն չունի: Կը պատահի նաեւ՝ որ բանասէրը իրազեկ կ'ըլլայ աղբիւրի մը մասին, բայց զանազան պատճառներով անկարող կ'ըլլայ հասնիլ անոր:

Մինչեւ այստեղ՝ խնդիր չկայ:

Խնդիրը կը սկսի՝ երբ տպագիր աղբիւրը դիտաւորեալ դուրս կը մղուի: Դուրս կը մղուի զիտակցաբար, հաճոյքով, նկատի ունենալով միայն ու միայն հեղինակը իբրեւ անձ:

Դասակարգային ինքնաբաժանում մը կայ հայ մտաւորականներուն միջեւ, որ, անշուշտ, ոչ միայն հայկական է, բայց ափ մը հայերուս համար դարձած է չափէն աւելի սեւեռուն եւ ինքնակեդրոն:

Պետական ակադեմականը կողմնակի աչքով կը դիտէ անկախ մտաւորականին: Կոչում, տքքորական, փրոֆեսորութիւն կրողը ինքզինքին տուած է դասակարգի վիճակ եւ իրաւունք շնորհած անտեսել իր տեսանկիւնէն ստորադասի աշխատութիւնը:

Կան ոչ սակաւաթիւ դէպքեր, երբ ակադեմականը ստիպուած կ'ըլլայ դիմել ստորադասի մէկ աշխատութեան, քանի որ վերջինիս արժէքը այլեւս ինքնապարտադրած է ինքզինք: Ակադեմականը, միեւնոյնն է, կը խուսափի անձի անունէն, նշելով աղբիւրը՝ առանց հեղինակին: Ալ չեմ խօսիր ակադեմական մակարդակով բանագողութեան մասին: Անշուշտ, քիչ չեն նաեւ պարկեշտ ակադեմականները՝ բանասիրութեան նուիրեալներ, որոնք զերծ են դասակարգային բարդոյթէն:

Կայ անգլիագիրներուն խնդիրը: Բաւական ցայտուն դարձած է անգլիագիր մտաւորականներու փոքր, բայց դրամ եւ իշխանութիւն ունեցող հատուածի մը վերաբերմունքը հայագիր Սփիւռքին նկատմամբ, որուն համար Սփիւռքը ընդամէնը հում նիւթ է, ստորադաս գոյութիւն, յետարդիապաշտական տեսութիւններու կոյր վերարտադրութեան պարարտ հող: Եւ այնքան մեծամտութեամբ կը խօսի ու կը գրէ հայագիր սփիւռքահայերուս մասին, որ կրնայ միայն ժպիտ յառաջացնել: Ժպիտը կը վերածուի ողբերգութեան, երբ իրազեկ կ'ըլլանք, որ սփիւռքահայ վերնախաւի ներկայացուցիչներ՝ մտաւորական քօղին տակ պատսպարուած, կը ձգտին դէպի այդ անգլիագիրները, անոնց «ուսումնասիրութիւններուն» մէջ իրենց անունը արձանագրուած տեսնելու բուռն տենչանքով տարուած: Այս անգլիագիր վերադաս խաւը պիտի չգործածէ հայագիր սփիւռքահայի մը յօդուածը կամ ուսումնասիրութիւնը իբրեւ աղբիւր, նոյնիսկ եթէ այնտեղ ճիշդ իր նոյն բաժնեքը կան: Կը շեշտեմ՝ խօսքը բոլոր անգլիագիրներուն մասին չէ բնաւ, այլ փոքր հատուածներու՝ որոնք ունին դրամ եւ իշխանութիւն, հետեւաբար, բարձրագոռ են եւ լսելի:

Սփիւռքերու միջեւ յարաբերութիւնները եւս դասակարգային են երբեմն: Որոշ արեւմտեան խումբերու մօտ կարելի է հանդիպիլ արեւելապաշտական (orientalist) մօտեցում Արեւելքը ապրող հայրենակիցներուն նկատմամբ: Եթէ ոչ արեւելապաշտութիւնը իր ամբողջութեան մէջ, գոնէ անկէ ընտրեալ տարրեր: Բանասիրութիւնը ազդուած է այս մօտեցումէն:

Ուրիշ խնդիր մըն է ուսուցիչ-աշակերտ յարաբերութիւնը: Ուսուցիչին պէտք է յարգել, հասկցանք, բայց պէտք չէ սրբացնել: Սրբացնելով ուսուցիչին, անոր տուած կ'ըլլանք դասակարգային անձեռնմխելիութիւն՝ ուզածին պէս վարուելու աշակերտի աշխատանքներուն հետ: Ընդհանրապէս, ուսուցիչը կը սիրէ աշակերտին յաւերժ տեսնել իր շուքին տակ, իր տիրոյթին տակ, իր հովանաւորութեան տակ: Երբ աշակերտը կ'ընդունի այդպէս ըլլալ, ան կը դառնայ ուսուցիչի սիրելին, իր գրութիւնները առանց նախապաշարումներու կը ծանօթագրուին անոր աշխատութիւններուն մէջ: Եթէ աշակերտին գիտելիքը եւ կարողութիւնը կ'անցնին ուսուցիչին սահմանները, ուսուցիչը պարզապէս կ'անտեսէ զինք, եւ ծայրագոյն պարագային կը դիմէ յարձակումի, նոյնիսկ եթէ աշակերտը պահպանած ըլլայ յարգանքի եւ երախտագիտութեան սահմանները: Որքան հաճելի է տեսնել այն իրական ուսուցիչները՝ որոնք կը

↳ 4

ՋԱՀԱԿԻՐ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ
### ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2023-2024 ուսումնական տարեշրջանի Գ. Երկրորդականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

**Գիտական Ճիւղ**

| | |
|---|---|
| Տանիէլ Մակէտ Ալպէրդ | 91.34% |
| Ժիրայր Հրայր Տրդատեան | 90.37% |
| Էտի Ժորժ Ջերտելեան | 86.71% |
| Ատրիանօ Ճօնի Գումրույեան | 67.32% |
| Մարիա Պետրոս Մովսէսեան | 63.66% |
| Նարէ Վարուժ Չիլինկիրեան | 62.44% |

**Գրական Ճիւղ**

| | |
|---|---|
| Տեսիլ Քրիս Սիմոլեան | 87.07% |
| Սարին Շահէ Լուսարարեան | 80.85% |
| Սդելլա Մակտի Պարէի | 74.02% |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

### 1 ԱՐԱՅԻԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՆ ՈՒՂԵՐՁ Է ՅՂԵԼ...

երկրի եզդի քաղաքացիներին եւ աշխարհասփիւռ եզդի ժողովրդին: Սինջարի եզդի բնակչութեան ցեղասպանութիւնը դատապարտելով եւ անմեղ զոհերի յիշատակը վառ պահելով՝ մենք մեր համերաշխութեան եւ հանդուրժողականութեան ուղերձն ենք յղում մեր եզդի համայնքին եւ, իրապէս, միջազգային ողջ հանրութեանը, որպէսզի աշխարհում ոչ մի ժողովուրդ այլեւս իր կրօնի, լեզուի, մշակոյթի կամ ինքնութեան համար չբնաջնջուի»:

### 3 ԲԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ՝ԱՂԲԻՒՐՆԵՐՈՒ ...

ներգրաւուին իրենց աշակերտներուն ձեռքբերումներով, առանց ինքզինքնին պարտադրելու իբրեւ ի վերուստ հսկողներ:

Կայ կուսակցական մեծամտութիւնը Սփիւռքի մէջ, երբ բանասէրը զինուորագրեալ կուսակցական է: Բնազդաբար կ’անտեսուի միւս կուսակցութեան բանասէրին աղբիւրները:

Այս դասակարգային վերադասումներէն ետք կու գայ անձնականը: Անձնական արհամարհանքը բանասէր գործընկերոջ նկատմամբ: Հայերուս մէջ շատ ուժեղ է այս անձնականը: Երբեմն՝ հիւանդագին:

Ընդհանրապէս, հայութեան պարագային փոխվերացումներն ու փոխանտեսումները չափազանց շատ են, քանի որ բաւական շատ են միակ «ճշմարտութեան» տէր անձերը:

Քանի մը օր առաջ Եու-Թիւպի վրայ կը դիտէի Մեդիամաքսի (Կարմիր Թել) հարցազրոյցը թարգմանիչ Արտաշէս Էմինի հետ (8 Օգոստոս), ուր թարգմանիչը կ’ըսէր. «Երբ Thomas Pynchon թարգմանեցի [հայերէնի], ռուսերէնը [ռուսերէն թարգմանութիւնը] նայում էի, բայց հիմնականում ուղղելու համար: Այդ ուղղումները յետոյ հաւաքեցի, ուղարկեցի թարգմանիչներին [Ռուսաստանում], որոնք երկրորդ հրատարակու-թեան մէջ ամէն ինչ հաշուի առան, նոյնիսկ ծանօթագրութիւններում անունս գրել են, ***որը հայ իրականութեան մէջ աննախադէպ բան է***» (ընդգծումը իմս է, Հ.Ա.):

Շուրջ երկու ու կէս տարի առաջ «Խոհեր» քննադատած էր հայագիր գիրքերու «Շնորհակալիք»-ներու դիտաւորեալ բացթողումները (*Ջահակիր*, թիւ 1905): Հեղինակի հոգեբանական անկարողութիւնը՝ յիշատակելու իրեն օգնած գործընկերոջ անունը:

Տեղի ունեցածը անբնական է:

## 1 ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԹՈՒՐՔԻՈՅ ԲԱՆԱԳՆԱՑՆԵՐՈՒՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՍԱՀՄԱՆԻՆ. Ի՞ՆՉ ՀԱՄԱՁԱՅՆԵՑԱՆ

երկաթուղային հաղորդակցութեան վերականգնումի հնարաւորութիւնները.

«Դեռեւս ԽՍՀՄ ժամանակներից երկաթգիծը կայ: Շատ աւելի հեշտ եւ էժան է այն աշխատացնել, քան կառուցել նոր երկաթգիծ: Դա նոյնիսկ շատ աւելի հեշտ եւ էժան է, քան նոր աւտօճանապարհների կառուցումն ու օգտագործումը», - պարզաբանեց ան:

Ռուբինեան-Քըլըչ հաղորդակցութեան երկու տարուայ դադարը Ռոբերտ Ղեւոնդեան կը պայմանաւորէ աշխարհաքաղաքական իրավիճակով՝ Թուրքիա-Ազըրպէյճան փոխյարաբերութիւններ, ռուս-ուքրաինական պատերազմ եւ այլն.

«Հայ-թուրքական յարաբերութիւններում ջերմացումը պայմանաւորուած է Թուրքիայի եւ Ադրբէջանի միջեւ յարաբերութիւնների որոշակի ճեղքուածքով, ինչը, հաւանաբար, կապուած է այն բանի հետ, որ Անկարան չի ստանում այն, ինչ յոյս ունէր ստանալ 2020 թ. 44-օրեայ պատերազմի արդիւնքում»:

Քաղաքագէտը պատահական չի համարեր՝ որ վերջերս Էրտողանը յիշատակեց այն փաստը, թէ Թուրքիան է Լեռնային Ղարաբաղ մտնողը: Պատճառը, ըստ իրեն, այն է՝ որ Թուրքիա, փաստացի ըլլալով «հակամարտող եւ յաղթող կողմ», գետինի վրայ ոչ մէկ ձեռքբերում ունի:

Կը թուարկէ՝ Ազըրպէյճանի հետ տնտեսական կապերը նոյնն են ինչ նախկին ժամանակները, երկիրին մէջ թրքական ռազմակայաններ չեն տեղադրուիր, նոյնն են նաեւ Նախիջեւանի հետ յարաբերութիւնները:

«Թուրքիան փաստացի որեւէ նկատելի ձեռքբերում չունի պատերազմից յետոյ: Նոյնիսկ տարածաշրջանում չէ: Միակ կէտը որտեղ նրանք կային, Աղդամն էր [ռուս-թրքական մոնիթորինկի կեդրոնը], այժմ այնտեղ էլ չկան, կենտրոնը լուծարուեց», - նշեց ան:

«Մենք պէտք է ուժեղ ըլլանք: Ինչպէս մենք մտանք Ղարաբաղ, ինչպէս մտանք Լիպիա, նոյնպէս կը վարուինք անոնց [Իսրայէլի] հետ: Չկայ բան մը՝ զոր մենք չենք կրնար ընել», - նշած էր Թուրքիոյ նախագահը: Ի պատասխան, Ազըրպէյճանի Պաշտպանութեան Նախարարութիւնը յայտարարած էր՝ որ Թուրքիա եւ Փաքիսթան քաղաքական աջակցութիւն ցուցաբերած են Ազըրպէյճանին, որուն համար Իլհամ Ալիեւ բազմիցս շնորհակալութիւն յայտնած է անոնց, եւ յաւելած՝ «Լեռնային Ղարաբաղի մէջ այլ երկիրներու զինուորականներ չեն յայտնուած»:

Ղեւոնդեանի դիտարկումով՝ նոյնիսկ այդ պայմաններուն մէջ, Պաքու ունի գործիքակազմ Անքարայի վրայ որոշակի ազդեցութիւն գործելու համար:

«Հարցն այն է, որ այդ գործիքակազմն այլեւս այն արդիւնաւէտութիւնը չի ունենայ, ինչ ունէր նախկինում: Եթէ, իհարկէ, Ադրբէջանը կտրուկ չփոխի իր քաղաքականութիւնն ու որոշակի հարցերում դէմ չգնայ Ռուսաստանի ցանկութիւններին եւ չընդունի Թուրքիայի առաջարկները», - պարզաբանեց ան:

Քաղաքագէտի գնահատութեամբ՝ Ազըրպէյճան, ամենայն հաւանականութեամբ, Մոսկուայի դրդումով չ’ուզեր Հայաստանի վերահսկողութեան տակ գտնուող ճանապարհ ստանալ եւ «միջանցք»՝ Հայաստանով անցնող, բայց կը պահանջէ արտատարածքային ճանապարհ: Մինչդեռ Թուրքիոյ ձեռնտու կ’ըլլար նոյնիսկ այդ տարբերակը:

«Այն տարբերակին, որը պահանջում է Ադրբէջանը, չեն համաձայնում Հայաստանն, Իրանը եւ Արեւմուտքը: Իսկ այն տարբերակին, որն ընդունելի կը լինի Թուրքիայի համար եւ աւելի մեղմ Հայաստանի համար, Բաքուն չի համաձայնում», - ամփոփեց Ղեւոնդեան:

*Արեւելահայերէնէ արեւմտահայերէն փոխադրութիւն՝ Ա.*

## 3 ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՈՒՍՈՒՄԸ ՇԱՐՈՒՆԱԿԵԼ ՑԱՆԿԱՑՈՂ ՍՓԻՒՌՔԱՀԱՅԵՐԻ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆԸ ՇԱՐՈՒՆԱԿՒՈՒՄ Է.

Խօսելով առհասարակ սփիւռքից դիմորդների քանակից՝ նա ընդգծեց, որ 2023 թուականին ունեցել են 1000 եւ աւելի սփիւռքահայ դիմորդներ:

Այս տարուայ համար վերջնական պատկեր Մնացականեանը դժուարացաւ ներկայացնել՝ նշելով, որ դեռ մօտաւոր երեք շաբաթ ժամանակ կայ դիմումներն ընդունելու համար, եւ պատկերը կարող է փոխուել: Ըստ նրա՝ նախորդ տարուայ համեմատ տարբերութիւնը մեծ չի լինի:

Մնացականեանը նշեց՝ դիմորդները հիմնականում Վրաստանից են՝ Ջաւախքից, եւ Ռուսաստանից:

Խօսելով սփիւռքի ուսանողների կողմից ամենապահանջուած մասնագիտութիւններից՝ նա ասաց, որ վերջին տարիներին առաւել շատ դիմում են բժշկական մասնագիտութիւնների համար. դիմում են նաեւ տնտեսագիտական, ծրագրաւորման եւ տեխնիկական մասնագիտացումների համար:

Մնացականեանը խօսեց նաեւ փոփոխութիւնների մասին՝ նշելով, որ մի քանի օր առաջ հաստատուել է դիմելու նոր կարգը, որի արդիւնքում միւս տարի ընդունելութեան քննութիւնները իրականացուելու են բացառապէս առցանց եղանակով, իսկ այս տարի իրականացուելու է հիբրիդային տարբերակը:

«Այս տարի փոփոխութիւն է կատարուել նաեւ միջին մասնագիտական կրթութեան օրէնքում, ըստ որի Հայաստանի դպրոցներն աւարտած ազգութեամբ հայ, բայց Հայաստանի քաղաքացիութիւն չունեցող դիմորդները սփիւռքահայերի համար նախատեսուած կարգով չեն կարող դիմել հայկական միջին մասնագիտական կրթական հաստատութիւններ՝ ուսումնարաններ եւ քոլէջներ: Այս փոփոխութեան արդիւնքում այս տարի միջին մասնագիտական հաստատութիւններում դիմումները մի փոքր քիչ են», - ասաց ԿԳՄՍՆ արտաքին կապերի եւ սփիւռքի վարչութեան սփիւռքի հետ կապերի բաժնի պետը:

Մնացականեանը նշեց՝ ծրագրի շրջանակում ունեն 70 պետպատուէրի տեղեր, որոնք նախատեսուած են մշակութային եւ հայագիտական մասնագիտութիւնների համար:

«Գաղափարը նրանում է, որ սփիւռքից դիմորդները պետութեան օժանդակութեամբ կարողանան կրթութիւն ստանալ, յետ գնալ եւ համայնքները զարգացնել՝ սովորելով մանկավարժական գիտելիքներ, պատմութիւն, հայոց լեզու եւ գրականութիւն, հայագիտութիւն եւ ազգային երգ պար ու թատրոն», - նշեց նա:

Բաժնի ղեկավարը շեշտեց՝ ընդունելութեան համար կայ փաստաթղթերի ցանկ, որին սփիւռքի դիմորդները կարող են ծանօթանալ ԿԳՄՍ նախարարութեան համապատասխան յայտարարութեան մէջ: Ըստ նրա՝ ամէն տարի նախարարի հրամանից յետոյ յայտարարութիւնը հրապարակւում է, որտեղ նկարագրուած են թէ՛ ժամկէտները, թէ՛ փաստաթղթերի ցանկը:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1973 ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ՕԳՈՍՏՈՍ 2024 ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٧٣ الخميس ٢٩ أغسطس ٢٠٢٤


## ՓՈՒԹԻՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԱԶԸՐՊԷՅՃԱՆ Կ'ԱԶԴԱՐԱՐԷ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԱԶԴԵՑՈՒԹԵԱՆ ՆՈՒԱԶՈՒՄԸ ՀԱՐԱՒԱՅԻՆ ԿՈՎԿԱՍԻ ՄԷՋ

ՃՈՇՈՒԱ ՔՈՒՉԵՐԱ

Վեց տարուայ մէջ կատարելով իր առաջին այցելութիւնը Ազըրպէյճան, Ռուսաստանի նախագահ Վլատիմիր Փութին սքանչացաւ մայրաքաղաք Պաքուի այսքան զարգացումով։ «Պիտի ըսէի՝ օվասիս մըն է տարածաշրջանին մէջ», ըսաւ ան Օգոստոս 19-ին՝ ազըրպէյճանցի գործընկեր Իլհամ Ալիեւի հետ ունեցած հանդիպումին։

Սակայն տեղին նախադասութիւն մըն էր։

Վերջին քանի մը տարիներուն, Ազըրպէյճան ռուս առաջնորդին համար իրապէս դարձաւ ամենէն հիւրընկալ վայրը Հարաւային Կովկասի խռովալից տարածաշրջանին մէջ։ Հայաստանը արագօրէն կը շրջի ընդդէմ իր երբեմնի ռուս դաշնակիցին, իսկ Վրաստանը, հակառակ իր ներկայ սեփական ճգնաժամին Արեւմուտքի հետ, Փութինի համար կը մնայ խորապէս անբարեացակամ տարածութիւն մը։

Միաժամանակ, իր տան մէջ Փութին գործ ունի Քուրսքի տարածք ներխուժած ուքրանական ռազմական ուժի գլխացաւին հետ, զոր ռուսական բանակը չկրցաւ ետ մղել։

Պաքուի մէջ, ժպտադէմ Ալիեւը իր նստավայրին մէջ գրկախառն դիմաւորեց Փութինը, իսկ առաջին տիկին եւ փոխ-նախագահուհի Մեհրիպան Ալիեւա համբուրեց զինքը։ Փութին հիացաւ զինք ընդունող «ընտանեկան մթնոլորտով»։

Բայց Ալիեւի հիւրասիրութիւնը ունի իր սահմանները, եւ Պաքու կը խաղայ բազում կողմերով՝ իբրեւ լաւ հաստատուած բազմաշերտ արտաքին քաղաքականութեան մաս։ Արդարեւ, թերեւս ասիկա լաւագոյնն է զոր Փութին կրնայ ստանալ 2024 թուականի Կովկասէն։

Ժպիտներէն եւ գրկախառնումներէն անդին, Ազըրպէյճան կը ձգտի Ռուսաստանը դուրս մղել տարածաշրջանային քաղաքականութիւններէն, որոնց մէջ, մինչեւ վերջերս, Մոսկուան ներգրաւուած էր խորապէս։

Տասնամեակներ շարունակ, Ռուսաստանը՝ Միացեալ Նահանգներու եւ եւրոպական երկիրներու հետ, առանցքային դեր խաղաց Ազըրպէյճանի եւ Հայաստանի միջեւ հակամարտութիւնը լուծելու դիւանագիտական ջանքերուն։ Բայց Ազըրպէյճան, կարծելով որ հակամարտութիւնը կարգաւորելու գործընթացը արտաքին ուժերուն համար դարձած է տարածաշրջանին մէջ իրենց ազդեցութիւնը գործադրելու միջոց, վերջին ամիսները կրցաւ այս գործընթացէն դուրս մղել Ռուսաստանը եւ միւս արտաքին ուժերը եւ խաղաղութեան պայմանագիրին վրայ Հայաստանի հետ աշխատիլ դէմ-դիմաց։

Ռուսաստան յետքայլ մը եւս կատարեց, երբ Ազըրպէյճան վերջերս յայտարարեց նաեւ որ համաձայնագիրի բանակցութիւններէն կը հանէ վիճելի հարցը՝ հարաւային Հայաստանէն անցնող երթեւեկային կապը Ազըրպէյճանի հիմնական տարածքի եւ արտերկիր Նախիջեւանի միջեւ, որ յայտնի է իր ազըրպէյճանական անուանումով՝ Զանգեզուրի Միջանցք։

Թէեւ այդ ճանապարհը կարեւոր նշանակութիւն ունի Ազըրպէյճանի համար, ան նաեւ առիթ մըն է Ռուսաստանին նոր դիրք գրաւելու տարածաշրջանին մէջ։ Հայաստան եւ Ազըրպէյճան սկզբնապէս համաձայնած էին որ այդ ճանապարհը վերահսկէ Ռուսաստանի Ապահովութեան Դաշնային Ծառայութիւնը, եւ Մոսկուան տակաւին յոյսեր կը տածէ որ այդ կէտը ամրագրուի վերջնական համաձայնութեան մէջ։ Այս իմաստով, խաղաղութեան բանակցութիւններուն մասին Փութինի մեկնաբանութիւնները Պաքուի մէջ հնչեցին քիչ մը աղիողորմ։

«Եթէ մենք կարողանանք բան մը ընել որպէսզի Ազըրպէյճանի եւ Հայաստանի միջեւ ստորագրենք խաղաղութեան համաձայնագիրը, ապարտենք սահմանի սահմանազատումը եւ սահմանագծումը, ինչպէս բազմիցս խօսած ենք, ապաշրջափակենք լոժիսթիքները եւ տնտեսութիւնը, շատ ուրախ պիտի ըլլանք», ըսաւ Փութին։

Ուրիշ՝ նոյնիսկ առաւել բարդ խնդիրներ, չյիշատակուեցան։

Մասնաւորաբար, ռուս բարձրաստիճան պաշտօնատար մը յայտարարեց՝ որ Մոսկուան յոյս ունի Ղարաբաղի մէջ հիւպատոսարան բանալ, այն տարածութիւնը՝ որ եղած է Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ երկարատեւ հակամարտութեան կեդրոնը։ Այժմ Ազըրպէյճան ամբողջապէս կը վերահսկէ տարածքը, երբ 2023 Սեպտեմբերի յարձակումէն ետք փախստական դարձաւ 100 հազար էթնիք հայերու ամբողջ բնակչութիւնը։ Բայց Ռուսաստանի ապագայ հիւպատոսութեան մասին լուրը տագնապ յառաջացուց ազըրպէյճանցիներուն մէջ, որոնք այնտեղ տեսան Քրեմլինի թաքուն օրակարգը՝ վերահաստատելու ռուսական, թերեւս նաեւ հայկական, ազդեցութիւնը տարածաշրջանին վրայ։

Փութինի այցելութենէն առաջ, ռուսական ԹԱՍՍ լրատուական գործակալութիւնը հարցազրոյց վարեց Մոսկուայի մէջ Ազըրպէյճանի դեսպան Փոլատ Պիւլպիւլօղլուի հետ, որուն հարցուց այս խնդիրին մասին։

Պիւլպիւլօղլու մեղմօրէն ազդարարեց Ազըրպէյճանի դիմադրութիւնը այդ գաղափարին, տարտամօրէն նշելով որ Ազըրպէյճանի մէջ «հիւպատոսութիւններու համար աշխատանքի դաշտը սահմանափակ է»։ ԹԱՍՍ-ի հարցազրոյցէն ետք, Պիւլպիւլօղլու խօսեցաւ ազըրպէյճանական կառավարութեան յարող Haqqin կայքէջին հետ եւ հրապարակեց նրբերանգուած սրբագրութիւն մը՝ որ կրկին մեղմօրէն կ'ազդարարէ Պաքուի դիմադրութիւնը. «Ես չըսի որ ռուսական հիւպատոսարան կրնայ յայտնուիլ Ղարաբաղի մէջ, այլ ըսի՝ որ այդ հարցը կը գտնուի քննարկումի փուլին մէջ»։

Ալիեւ եւ Փութին իրենց հրապարակային ելոյթներուն մէջ չյիշատակեցին հիւպատոսութեան հարցը։

Միաժամանակ, մինչ երկու առաջնորդները կը հանդիպէին Պաքուի մէջ, քաղաքի այլ հատուածը գտնուող բանտի մը մէջ նստած էր Փութինի երբեմնի խորհրդական Ռուբէն Վարդանեան, Հայաստանի աջակցութիւնը վայելած նախկին Լեռնային Ղարաբաղի չճանաչ- ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՊՈՒՏԻՆԸ ՓԱՇԻՆԵԱՆԻՆ Է ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ ԲԱՔՈՒ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ՏՊԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը Օգոստոսի 23-ին հեռախօսազրոյց է ունեցել Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինի հետ։

Ըստ հայկական կողմի՝ Պուտինը Փաշինեանին տեղեկացրել է Օգոստոսի 18-19-ին Ադրբէջան կատարած իր այցի տպաւորութիւնների մասին։

Զրուցակիցները պայմանաւորուել են առաջիկայ պատեհ առիթով հանդիպել Հայաստան-Ռուսաստան երկկողմ օրակարգի հարցեր քննարկելու համար։

Ռուսական կողմն, իր հերթին, նշում է, որ Հայաստանի ու Ռուսաստանի ղեկավարները քննարկել են հայ-ադրբէջանական յարաբերութիւնների կարգաւորման հարցեր, այդ թւում՝ հաշուի առնելով Բաքւում Ալիեւի հետ Պուտինի բանակցութիւնները։

Ռուսաստանի նախագահը վերահաստատել է Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան պայմանագրի մշակման, սահմանների սահմանազծման եւ սահմանազատման գործընթացի խթանման, ինչպէս նաեւ տրանսպորտային եւ լոգիստիկ կապերի ապաշրջափակման գործում Մոսկուայի աջակցութեան պատրաստակամութիւնը։

*Պուտինն Օգոստոսի 18-ին էր Բաքւում։ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւի հետ հանդիպման ժամանակ Ռուսաստանի նախագահն ասել էր, որ Մոսկուան ուրախ կը լինէր, եթէ կարողանար ինչ-որ բան անել խաղաղութեան համաձայնագրի ստորագրման համար։ Պուտինը նաեւ տեղեկացրել էր, որ պատրաստւում է Բաքուի բանակցութիւնների արդիւնքների մասին պատմել նաեւ վարչապետ Նիկոլ Փաշինեանին։*

## ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՊԵՏԱԿԱՆՕՐԷՆ ՎԵՐԱՀՍԿՈՒԱԾ ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑՆԵՐԸ ԿԸ ԿԱՆԽԱՏԵՍԵՆ ՀԱՅԱՍՏԱՆ-ԵՄ ՋԵՐՄԱՑՈՂ ԵՐԿԿՈՂՄԱՆԻ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԽԱՓԿԱՆՔԸ

2024 թուականին նախագահ Իլհամ Ալիեւ անընդհատ ըմբոստացաւ Ազըրպէյճանի եւ Կլոպալ Հարաւի հանդէպ Եւրամիութեան ցուցաբերած ենթադրեալ կեղծաւոր վերաբերմունքէն։ Այժմ, Ազըրպէյճանի պետականօրէն վերահսկուած լրատուամիջոցները սկսած են զգուշացնել ԵՄ-ի ջանքերը՝ որոնք ուղղուած են սերտացնելու յարաբերութիւնները Պաքուի ոխերիմ հակառակորդ Հայաստանի հետ։

Երբ Յուլիս 23-ին յայտարարուեցաւ՝ որ ԵՄ-ն բանակցութիւններ պիտի սկսի Հայաստանին շնորհելու առանց վիզայի ճամբորդութեան արտօնութիւններ, յայտնի ազըրպէյճանական լրատուամիջոցներ մեկնութիւններու շարան մը հրապարակեցին՝ պնդելով որ Հայաստանի ձեռնարկումը ԵՄ անդամակցութեան պիտի վերջանայ երկու կողմերու յուսախաբութեամբ։

Յայտարարութենէն անմիջապէս ետք, պաշտօնական Ազերթակ լուրերու գործակալութիւնը հրապարակեց խմբագրական մը՝ *ԵՄ-ն պիտի չյաջողի լուծել իր մեծ խնդիրները փոքրիկ Հայաստանի հետ*, առարկելով՝ որ հայերուն առանց վիզայի արտօնութիւններ տրամադրելը պիտի սրէ միութեան գաղթականութեան մարտահրաւէրները։ Մեկնութեան մէջ կը նշուէր՝ որ իրենց երկիրին մէջ հնարաւորութիւններ չունեցող մեծաքանակ հայեր աշխատանք փնտռելու համար կը մեկնին արտասահման։ Ներկայիս՝ կը մեկնին Ռուսաստան, բայց ասիկա կրնայ շուտով փոխուիլ՝ եթէ ԵՄ շնորհէ առանց վիզայի մուտք, ըստ Ազերթակի յօդուածին։ «Ասիկա բնակչութեան փախուստի համար նոր դուռ պիտի բանայ, երկիրի մը մէջ՝ որ բռնած է դատարկումի ուղին», կը նշէ խմբագրականը։

Report.az-ի կողմէ Օգոստոս 5-ին հրապարակուած ուրիշ մեկնութիւն մը կ'անդրադառնայ գաղթականութեան նիւթին, պնդելով որ ան պիտի սրէ ԵՄ-ի գաղթականութեան խնդիրները, միաժամանակ ժողովրդագրական աղէտ դառնալով Հայաստանի պետութեան համար։ «Բառին բուն իմաստով, Հայաստանի մէջ ոչ մէկ հայ պիտի մնայ, քանի որ պատմութեան ընթացքին այս էթնիք խումբին ներկայացուցիչները ցրուած են» աշխարհի մէջ, կը նշէ մեկնութիւնը, աւելցնելով՝ որ ԵՄ ազատ վիզայի արտօնութիւնները «հաստատապէս պիտի ↳ 2

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԱՆՈՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵՒ ԿՆՈՋ ՔՈՒԷԱՐԿՈՒԹԵԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

*1995 Նոյեմբեր 19-ի Գահիրէի Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւններուն, եգիպտահայ պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով քուէարկելու եւ քուէարկուելու իրաւունք կ՚ունենայ կինը:*

*Երեւոյթը կը կրկնուի 1996 Նոյեմբեր 10-ի Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւններուն:*

*2017 Նոյեմբեր 24-ի Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւններուն, եգիպտահայ պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով Թեմական Ժողովի անդամ կ՚ընտրուին երեք կիներ: 2021 Նոյեմբեր 19-ի մասնակի ընտրութիւններուն անոնց թիւը կ՚աւելնայ չորսի: Միւս կողմէ, Գահիրէի Թեմականը տակաւին կը մնայ առանց կնոջ ներկայութեան:*

*Յօդուածս ընդհանուր ակնարկ մըն է եգիպտահայ կնոջ քուէարկութեան իրաւունքի պատմութեան, որ, իրականութեան մէջ, աւելի պատմութիւնն է կնոջ բացակայութեան:*

**ՊՈԼՍՈՅ ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ**

Մինչեւ 1907 թուական, եգիպտահայութիւնը կառավարող միակ բնագիրն էր 1863-ի Պոլսոյ Ազգային Սահմանադրութիւնը, քանի որ եգիպտահայութիւնը առաջնորդական վիճակն էր Պոլսոյ Պատրիարքութեան:

Օսմանեան Կայսրութեան մէջ, ինչպէս աշխարհի բազմաթիւ երկիրներ, կիները քուէարկել-քուէարկուելու իրաւունք չունէին տակաւին: Թուրքիոյ մէջ կիները առաջին անգամ քուէարկելու գացին 1935-ին: Պոլսոյ Ազգային Սահմանադրութիւնը չէր կրնար այս գիծէն դուրս ելլել, թէեւ տառային արտայայտութեամբ ալ չէր արգիլեր անոնց մասնակցութիւնը:

1863-ի Սահմանադրութիւնը առանձին կէտերով կ՚որոշէր ընտրողներուն եւ ընտրուողներուն պայմանները:

Ընտրողներուն համար 65 եւ 66 Յօդուածները կ՚արձանագրէին.

«Յօդ. 65. Ընտրողական իրաւանց հիմն կը բռնուին՝ Ազգային տուրքը, եւ անձնական արժանիքը:

«Ազգային տուրքը ընտրողութեան իրաւունք տալու համար, պէտք է որ ընտրողը տարին զո՛նէ եօթանասուն ու հինգ ղուրուշ ընդհանուր տուրք վճարէ:

«Ընտրողութեան անձնական արժանեօք իրաւունք ունեցողներն են՝ Արքունի դիւաններուն եւ Տէրութեան ուրիշ պաշտօններուն մէջ գտնուողները. վկայեալ բժիշկները. օգտակար գրքերու հեղինակները. դպրատանց ուսուցիչները, եւ ազգին օգտակար ծառայութիւններ մատուցած անձինք:

«Յօդ. 66. Ընտրողութեան իրաւունք ունին քսան ու հինգ տարին լրացուցած անձինք. սակայն ընտրողը հարկ է որ Օսմանեան Տէրութեան հպատակ ըլլայ»(1):

Տառային արտայայտութեամբ, խօսքը բոլոր սեռերուն մասին է:

Տրամադրութեան տեսանկիւնէն, սակայն, նկատողութեան արժանի կէտեր կան:

Նախ, ըլլայ պոլսահայութեան թէ եգիպտահայութեան մօտ, ընդհանուր սեռով արտայայտուիլը ընդունուած ծածկագրութեամբ կը նշանակէր տղամարդ: Օրինակ՝ դպրոցներու պարագան: Կը նշուէր՝ Պէրպէրեան Վարժարան, մինչդեռ յայտնի էր որ ան եղած էր միայն տղոց համար: Օրիորդներուն համար անպայման կը նշուէր՝ «Աղջկանց վարժարան»: Երկու սեռերուն համար՝ «Երկսեռ վարժարան»: «Երկսեռ» բառը տարածուած էր մանաւանդ իգական սեռի գոյութիւնը արականին քով: Սամուէլին մէջ յաճախ կը հանդիպինք՝ «Երկսեռ հասարակութիւն մը եկած էր ներկայ գտնուիլ հանդէսին», շեշտելու համար կիներուն ներկայութիւնը:

Հետեւաբար, եթէ 1863-ի Սահմանադրութիւնը ընդունէր կնոջ ընտրելու իրաւունքը, անպայմանօրէն նշած պիտի ըլլար «երկսեռ» բառը, որ իսպառ կը բացակայի բնագիրէն:

Կայ նաեւ ուրիշ կէտ մը: Յօդուած 65-ը կը մատնանշէ ընտրելու արժանի մարդոց տեսակները՝ «Արքունի դիւաններուն եւ Տէրութեան ուրիշ պաշտօններուն մէջ գտնուողները. վկայեալ բժիշկները. օգտակար գրքերու հեղինակները. դպրատանց ուսուցիչները, եւ ազգին օգտակար ծառայութիւններ մատուցած անձինք»: Այս ասպարէզներէն ո՞ր մէկուն մէջ կրնային կիներ գտնուիլ: Նոյնիսկ «օգտակար» գիրքը՝ որ հաստատապէս նկատի չունէր գրականութիւնը, տղամարդկային հեղինակութեան արդիւնքն էր: «Օգտակար ծառայութիւններ մատուցած անձինք» ըսելով պիտի հասկնալ բարերարներ, նուիրատուներ, հանրային դէմքեր, հասարակական գործիչներ, որոնք բոլորն ալ տղամարդիկ էին այդ ժամանակ:

«Երկսեռ»-ը կը բացակայի նաեւ ընտրուելու իրաւունք ունեցողներու Յօդուածէն.

«Յօդ. 68. Ընտրելի են Ազգային այն ամեն անհատները, որոնք երեսուն տարին լրացուցած ըլլալով, Օսմանեան հպատակ, Տէրութեան օրինացը տեղեակ, եւ ընտրողութեան իրաւունքէն ըստ 67դ յօդուածոյ զրկուած չեն»(2):

Այս սկզբունքները կիրառելի էին նաեւ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ ընտրութիւններուն համար: Եգիպտոսն ալ, Թուրքիոյ նման, կիներուն ընտրելու իրաւունք չէր տուած տակաւին: Եգիպտոսի մէջ կիները առաջին անգամ ընտրելու իրաւունք ստացան 1956-ին, Կամալ Ապտէլ-Նասէրի յեղափոխական կառավարութեան հրամանով:

**ՎԱՐՉԱԿԱՆ ՀՐԱՀԱՆԳ ՎԻՃԱԿԻՆ ԵԳԻՊՏՈՍԻ**

1896-ի յայտնի գաղթը Թուրքիայէն Եգիպտոս ստեղծեց եգիպտահայութեան նոր դիմագիծը: 1900-ականներու սկիզբը Աղեքսանդրիոյ մէջ ծնունդ առաւ «Սահմանադրական պայքար» անունով յայտնի ժողովրդային շարժումը, ազգային գործերու մէջ օրինականութիւն եւ բարելաւում մտցնելու պահանջով: Շարժումը կ՚ունենայ իր յաջողութիւնները, անկէ 1907-ին կը ծնի Եգիպտոսի Ազգային Կեդրոնական Վարչութեան Խառն Ժողովին կողմէ ընդունուած եւ Պոլսոյ Պատրիարք Մաղաքիա Արք. Օրմանեանի կողմէ վաւերացուած փաստաթուղթը՝ *Վարչական հրահանգ վիճակին Եգիպտոսի* անունով(3), որ կու գար ոչ իբրեւ Եգիպտոսի վիճակի ինքնուրոյն Կանոնագրութիւն կամ Սահմանադրութիւն, այլ իբրեւ 1863-ի Պոլսոյ Ազգային Սահմանադրութեան լրացուցիչ փաստաթուղթ: Ինչպէս Եգիպտոսի Առաջնորդ Մկրտիչ Ծ. Վրդ. Աղաւնունի կը յայտարարէր՝ *Վարչական հրահանգը* հիմնուած էր «Ազգային Սահմանադրութեան ընդհանուր սկզբանց վրայ եւ պատշաճեցուած տեղական հանգամանքներուն»(4):

Փոխոխութիւնը կամ պատշաճեցումը կը բխէր նոյն ինքը Ազգային Սահմանադրութեան ընձեռած կարելիութենէն, քանզի անոր վերջին Յօդուածը (թիւ 99) կու տար սահմանադրական փոփոխութեան կարելիութիւն.

«Յօդ. 99. Ազգային Սահմանադրութեան հիմնական սկզբունքը անփոփոխելի են: Բայց երբ փորձառութեամբ ի՛նչ ինչ տրամադրութեանց փոփոխութիւնը հարկաւոր դատուի, Ընդհանուր Ժողովը՝ Սահմանադրութեան հաստատութենէն հինգ տարի ետքը՝ Վերաքննութեան Յանձնաժողով մը կը կազմէ, Կրօնական եւ Քաղաքական Ժողովներէն երեքական անդամ, չորս Տեսուչ Խորհուրդներէն երկերկու անգամ, եւ ասոնցմէ զատ Ընդհանուր Ժողովոյ մէջէն կամ դրսէն վեց հոգի, ընդ ամենը քսան անդամ ընտրելով: Այս Յանձնաժողովը կը սահմանէ հարկաւոր դատուած փոփոխութիւնները, որ Ընդհանուր Ժողովը վաւերացնելէն ետքը, Բարձրագոյն Դրան կը ներկայացուին, եւ Կայսերական հրամանին համեմատ կը գործադրուին»(5):

Բնականաբար, Եգիպտոսի *Վարչական հրահանգ*ին համար յիշեալ ընթացակարգը եւ Բարձրագոյն Դուռը անկարեւոր կէտեր էին:

*Վարչական հրահանգը* նորութիւն պիտի չմտցնէր կիներու առնչութեամբ, ընտրող-ընտրուողները բնութագրելով իբրեւ «աշխարհական», «անդամ», «մարդ», տեղ մը նոյնիսկ՝ «հայ ուղղափառ եկեղեցւոյ զաւակ»(6), բայց ոչ՝ «որդի»: Միշտ կը պակսէր ընդունուած «երկսեռ»-ը:

Կնոջ քուէարկելու խնդիրը համաշխարհային խօսոյթի մաս սկսած էր դառնալ: 1912 Յունուար 14-ին, Գահիրէի Ապպաս Թատրոնին տեղի կ՚ունենայ Ամանորի հանդէս, որուն ընթացքին կը կայանայ վիճաբանութիւն հետեւեալ նիւթով՝ *Կիներու ընտրական իրաւունք տալը օգտակա՞ր է:* Հաստատող կողմ կ՚արտայայտուին՝ Վ. Չաքըճեան եւ Զ. Գալֆաեան, ժխտող կողմ՝ Յ. Պալեան եւ Յ. Չօպանեան(7): Յաւելեալ տեղեկութիւններ կը պակսին. յայտնի չէ խօսքը եգիպտահա՞յ թէ ընդհանուր կնո՞ջ մասին է, յայտնի չէ խօսողներուն ինքնութիւնները՝ կինե՞ր են թէ տղամարդիկ: Շատ հաւանական է՝ որ խօսքը ընդհանուր կնոջ մասին ըլլայ: Արդ, կնոջ ընտրելու իրաւունքը չէ վրիպած եգիպտահայութեան ուշադրութենէն:

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. *Ազգային Սահմանադրութիւն Հայոց*, Կ. Պոլիս, 1863, էջ 42:
2. Անդ, էջ 43:
3. Կը հրատարակուի Աղեքսանդրիոյ մէջ՝ *Վարչական հրահանգ վիճակին Եգիպտոսի*, Աղեքսանդրիա, Պաշտօնական Հրատարակութիւն Առաջնորդարանին Հայոց Աղեքսանդրիոյ, 1907:
4. Անդ, էջ 3:
5. *Ազգային Սահմանադրութիւն Հայոց*, էջ 54:
6. *Վարչական հրահանգ վիճակին Եգիպտոսի*, էջ 17:
7. «Հանդէս Ամանորի ի յարգանս Գալուստեան Ազգային երկսեռ վարժարանի բարերարներուն», *Լուսաբեր-Արեւ*, 13 Յունուար 1912, Ը. տարի, թիւ 1087, էջ 2:

## 1 ԱԶԵՐՊԷՅՃԱՆԻ ՊԵՏԱԿԱՆՕՐԷՆ ՎԵՐԱՀՍԿՈՒԱԾ...

արագացնեն այդ ընթացքը»:

Report.az կը պնդէ նաեւ՝ որ Եւրոպական Խաղաղութեան Հաստատութեան (European Peace Facility) ծիրէն ներս ԵՄ ռազմական աջակցութեան ընդլայնումը պիտի ներքաշէ Երեւանը նոր եւ աւելի կործանարար պատերազմի մէջ, զգուշացնելով որ Հայաստանը կրնայ դառնալ ուրիշ Ուքրանիա մը, ուր Արեւմուտքը կ՚աջակցի Քիեւին Ռուսաստանի դէմ տարած պատերազմին: Ազըրպէյճանի հանրային հեռատեսիլի ցուցադրած հաղորդագրութիւն մը նոյնիսկ կ՚ենթադրէ՝ որ Հայաստանին դրկուած ԵՄ օգնութիւնը կրնայ յատկապէս օգտագործուիլ հակամարտութիւնը վերսկսելու հիմքեր ստեղծելու համար:

Երեւանի դէպի Արեւմուտք կատարած շրջադարձին գլխաւոր շարժառիթը կը հանդիսանայ Ռուսաստանի աշխարհաքաղաքական խեղդամահութենէն խուսափելու ցանկութիւնը: Բազմաթիւ հայեր այժմ դժգոհ են Ռուսաստանէն՝ Երկրորդ Ղարաբաղեան Պատերազմի ժամանակ ապահովութեան երաշխիքները չկատարելու համար, որուն պատճառով Ազըրպէյճան վերանուաճեց տարածքը:

Մինչ հայերը լքուած կը զգան Ռուսաստանի կողմէ, Ալիեւ եւ իր բազմաթիւ հայրենակիցները դառնացած են ԵՄ-ի կողմէ լքուած ըլլալնուն համար: Տարիներ շարունակ, Ալիեւ ձգտեցաւ եւրոպացիներուն առջեւ մշակել իր կառավարութեան եւ երկիրին նպաստաւոր պատկերը: Օրինակ, մշակութային բնագաւառի բարեգործական նուիրատուութիւնները յաջողեցան որոշ չափով խրախուսել Ազըրպէյճանի դիմագիծը իբրեւ եւրոպականացած պետութիւն, զոր ընդգծեց Ֆրանչիսկոս Պապը Պաքու կատարած 2016-ի այցելութեան ընթացքին:

Բայց Ղարաբաղը վերադարձնելու Ազըրպէյճանի յաջող արշաւէն ետք ԵՄ-Ազըրպէյճան յարաբերութիւնները վայրէջք կատարեցին, մասամբ մղուած Պաքուի ընկալումէն՝ թէ ԵՄ հայանպաստ դիրք կը բռնէ խաղաղութեան բանակցութիւններուն մէջ: Վերջին ամիսները, Ալիեւ կը դատապարտէ Եւրոպայի Խորհուրդը եւ այլ եւրոպական հիմնարկներ, յատուկ թշնամանք դրսեւորելով Ֆրանսայի դէմ:

ԵՄ եւ Հայաստանի միջեւ աճող յարաբերութեան դէմ կատարուած ազըրպէյճանական լրատուային ռմբակոծումին մէջ կարելի է գտնել ԵՄ ենթադրեալ նախապաշարումի հանդէպ դառնութեան նշաններ: Պաքուի մէջ շատեր կը հաւատան՝ որ Հայաստանի Քրիստոնեայ ինքնութիւնը կարեւոր գործօն մըն է Հարաւային Կովկասի մէջ Երեւանի նկատմամբ Պրիւքսէլի դրսեւորած ենթադրեալ նախապատուութեան համար:

«Ցեղապաշտական, կրօնական խտրականութենէն եւ Քրիստոնեայ սնապաշտութենէն է որ Եւրամիութիւնը նման հաւատարմութիւն կը ցուցաբերէ Հայաստանի նկատմամբ, մինչ կը խստացնէ վիզայի համակարգը ափրիկեան եւ իսլամական երկիրներուն համար, որոնց աղբիւրները կը շահագործէ», Ազերթակի խմբագրականը կը քաղէ ալիեւամէտ Հայրենիք Կուսակցութեան փոխնախագահ Եալչըն Հաճիզատէի խօսքերը:

*Eurasinet*, 7 Օգոստոս

Անգլերէնէ թարգմ.՝ Ա.

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒՄ Է ՀԱՐԱՒԱՅԻՆ ԿՈՎԿԱՍԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԲԱՔՈՒԻ ՆԱՐԱՏԻՎԸ

**ՎԱՀՐԱՄ ԱԹԱՆԵՍԵԱՆ**

Ռուսաստանի Արտաքին Գործերի Նախարարութիւնը Հայաստանի պատմութեան 8-րդ դասարանի դասագրքի վերաբերեալ յայտարարութիւն է տարածել, որտեղ մանաւորապէս ասուած է. «Կասկածի տակ դնել ներկայիս Հայաստանի կայացման գործում Ռուսական Կայսրութեան, ապա ԽՍՀՄ-ի եւ Ռուսաստանի յատուկ դերը, նշանակում է հանրայայտ փաստերին դէմ գնալ: Խօսքը մեր ընդհանուր պատմութեան խեղաթիւրման հերթական անսքող փորձի մասին է»:

Ռուսաստանի արտաքին քաղաքական գերատեսչութեան «յուզական արձագանքի» ֆորմալ առիթն այն է, որ դասագրքի մի գլուխ վերնագրուած է «Արեւելեան Հայաստանի բռնակցումը Ռուսաստանին»: Ընդ որում, Ռուսաստանի ԱԳՆ-ն չի հերքում, որ տեղի է ունեցել ռուս-պարսկական պատերազմ, կնքուել Թուրքմենչայի պայմանագիր: Իսկ դա նշանակում է, որ Արեւելեան Հայաստանը գրաւուել է, անջատուել Պարսկաստանից եւ անցել Ռուսական Կայսրութեան տիրապետութեան տակ: Եթէ մի տարածքի մի պետութեան ենթակայութիւնից ռազմական ուժով միւսին անցնելը բռնակցում չէ, ապա ի՞նչ է:

Իսկ եթէ դա ազատագրում է, ապա Ռուսաստանը պէտք է ընդունի, որ Հայաստանը եղել է պետութիւն, Պարսկաստանի կողմից գրաւուել է, դարեր շարունակ պայքարել եւ իր օգնութեամբ վերականգնուել: Ռուսաստանի ԱԳՆ յայտարարութիւնը նման «նոտա» չունի: Բայց դա այնքան էլ էական չէ, շարադրանքը աւելի ենթատեքստային է, քան կարող է ընկալուել առաջին հայեացքից:

Ռուսաստանի ԱԳՆ-ն փաստացի ճանաչում եւ հովանաւորում է Հարաւային Կովկասի քաղաքական պատմութեան Բաքուի նարատիվը, ըստ որի 1991 թուականի Հոկտեմբերի 18-ի պետական անկախութեան վերականգնման մասին սահմանադրական ակտում ձեւակերպուած է. «Ռուսաստանը 1806-1828 թուականներին օկուպացրել է Ադրբէջանը»: Այդ ակտը Ադրբէջանի գործող սահմանադրութեան հիմքն է: ↳ 4

## ԼԱՒՐՈՎԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԿԱՍԿԱԾԻ ՏԱԿ Է ԴՆՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆ-ԱԴՐԲԷՋԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԿԱՐԳԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑՈՒՄ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿԱՌՈՒՑՈՂԱԿԱՆ ՆԵՐԳՐԱՒՈՒԱԾՈՒԹԻՒՆԸ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԳՆ

Ռուսաստանի արտաքին քաղաքական գերատեսչութեան ղեկավարի Օգոստոսի 19-ի յայտարարութիւնը կասկածի տակ է դնում Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ յարաբերութիւնների կարգաւորման գործընթացում Ռուսաստանի Դաշնութեան կառուցողական ներգրաւուածութիւնը: Լրատուամիջոցներից ստացուած հարցմանն ի պատասխան այս մասին յայտարարել է Հայաստանի ԱԳՆ մամուլի խօսնակ Անի Բադալեան՝ անդրադառնալով Ռուսաստանի ԱԳ նախարարի այն յայտարարութեանը, թէ Հայաստանն է սաբոտաժի ենթարկում Սիւնիքի մարզով կոմունիկացիաների ապաշրջափակման պայմանաւորուածութիւնը:

«Հայաստանի վերաբերեալ Ռուսաստանի ԱԳ նախարարութեան զանազան պաշտօնեաների՝ իրականութեանը չհամապատասխանող, ակնյայտօրէն կողմնակալ, յաճախ անյարգալից մեկնաբանութիւնները, ցաւօք, վաղուց արդէն նորոյթ չեն, եւ եթէ նկատել էք, տեւական ժամանակ է, ինչ մենք անգամ չենք անդրադառնում դրանց:

«Այնուամենայնիւ, չենք կարող չասել, որ Ռուսաստանի արտաքին քաղաքական գերատեսչութեան ղեկավարի երէկուայ յայտարարութիւնը ոչ միայն զուտ ափսոսանք է առաջացնում, այլեւ կասկածի տակ է դնում Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ յարաբերութիւնների կարգաւորման գործընթացում Ռուսաստանի Դաշնութեան կառուցողական ներգրաւուածութիւնը:

«Երբեմնի միջնորդական առաքելութիւն ստանձնած, 2020թ. Նոյեմբերի 9-ի յայտա- ↳ 4

ՖՐԱՆՍԱ

## ՈՒՐՈՒԱԳԻԾ ԴԻՄԱՆԿԱՐԻ ՀԱՄԱՐ. ՓԱՐԻԶԻ ՆՈՒՊԱՐԵԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ – 95

**ԱՐԹՈՒՐ ԱՆԴՐԱՆԻԿԵԱՆ**

Դիմանկարային շրջագծից դոյզն-ինչ անհրաժեշտ շեղում՝ վասն հայ գրքի, գրականութեան, մշակոյթի. խորագիրը, որը նպատակամիտուած է արեւմտահայ եւ սփիւռքեան գրականութեան լուսաբանմանը-հանրահռչակմանը, թերեւս նորովի (յայտնի եւ անյայտ՝ յանիրաւի մոռացուած գրողների, բանաստեղծների, հրապարակագիրների, ազգային, հանրային երախտաւորների, որոնք նաեւ գրական, պատմագիտական հակումներ են ունեցել), մեզ «թոյլ է տալիս» համահայկական առումով նշանակալից մի տարելիցի անդրադառնալ, թէկուզեւ այն նպատակային պատճառով, որ «յոբելեարը» Հայ գրքի ու գրատպութեան լիիրաւ օրրան է. կարելի է առանց երկմտելու, թերեւս առաջին անգամ… հռչակել… համասփիւռքեան Մատենադարան, երկրորդը՝ Երեւանի Մեսրոպ Մաշտոցի Անուան Մատենադարանից յետոյ, անշուշտ, չմոռանալով Վենետիկի, Վիեննայի, Երուսաղէմի հայ եկեղեցւոյ միւս նուիրապետական աթոռների գրապահոցները, ինչպէս նաեւ Ե. Չարենցի Անուան Գրականութեան եւ Արուեստի Թանգարանը:

Իսկ ինչով եւ ինչ պատճառաբանութեամբ ենք կարեւորում Նուպարեան Մատենադարանի գոյութիւնը՝ մանաւանդ ուղղակի առընչութիւնը, ինչպէս նշել ենք սոյն խորագրի հետ՝ պատճառը շատ որոշակի է… Նուպարեան Մատենադարանը, որ Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան գրադարանն է միեւնոյն ժամանակ, հիմնադրուել է 1925թ. Պօղոս Նուպար Փաշայի կամեցողութեամբ-օժանդակութեամբ, որի պաշտօնական բացումը տեղի է ունեցել 1929թ. Յունիսի 15-ին. բացման հանդէսի իր ելոյթում արեւմտահայ գրող Տիգրան Կամսարականը նշել է. «Հայ միտքը անդիմադրելի մղումով ձգտում է միշտ դէպի լոյս, դէպի քաղաքակրթութիւն»: Ելոյթ է ունեցել նաեւ Զապէլ Եսայեանը, որը հէնց այդ օրերին մատենադարանի հիմնադիր տնօրէն Արամ Անտոնեանին գրած նամակում նշում է. «Սիրելի՛ պարոն Անտոնեան, հայերէն շարք մը գիրքեր մէկ կողմ դրեր եմ Մատենադարանի համար, որոնց շարքին Վ. Տէրեանի եւ Յովհ. Թումանեանի երկերու ժողովածուն: Արդեօք Ձեզ կը հետաքրքրէ Կլեմանսոյի *Մտածողութիւն երեկոյեան* երկհատոր երկը, որ բաւական սուղ գիրք է եւ գնած եմ, բայց որ հաճոյքով կը տրամադրեմ, եթէ պէտքի կուգայ: Գալով Լինչի *Արմենիա*ին, երկրորդ հատորը դեռ մօտս չէ եւ արդէն անիկա ուրիշ հանգամանքովը լաւ է պահել հաստատութեան մը մէջ, քան թէ իբրեւ ընթերցանութեան տալիք գիրք»:

Հայաստան մեկնելուց առաջ Զապէլ Եսայեանը իր անձնական գրադարանի մեծ մասը նուիրում է Նուպարեան Մատենադարանին, որտեղ պահպանւում են հայերէն, օտարալեզու հնատիպ ձեռագրեր, նոր ժամանակներում հրատարակուած պարբերականներ, հանդէսներ՝ հայերէն եւ եւրոպական մի շարք լեզուներով: Բազմահարուստ ֆոնդերում տասնամեակներ շարունակ պահպանուող հաւա- ↳ 4

ԽՈՀԵՐ

## ԲԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ՝ ԻԲՐԵՒ ԻՄԱՍՏԻ ԿՈՐՈՒՍՏ ԿԱՄ ԻՄԱՍՏԻ ԲՌՆԱԲԱՐՈՒՄ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Գրութիւնս կ՚ուզեմ սկսիլ յիշեցնելով Էտուարտ Սաիտի *Արեւելականութիւն* կամ *Արեւելապաշտութիւն* (Orientalism) հանրայայտ հատորը: Եղածը՝ բանասիրութիւն է: Բանասիրութիւն է՝ *նախ եւ առաջ*: Բանասիրութիւն՝ համակ իմաստներով եւ իմաստներու խաչաձեւում-ներթափանցումներով:

Սաիտի գիրքերը իմաստի որոնումներ են հիմնականապէս: Սաիտը ըլլալով իմաստային բանասիրութեան բացառիկ կրող մը, չի նշանակեր որ բանասիրութիւնը ընդհանրապէս պարտաւոր է մինչեւ ծայր տանիլ իմաստը: Փաստագրութեան յայտնագործումը, յայտնագործութեան գիտակից եւ մեկնողական վերարտադրութիւնը, միանալով իմաստային պրպտումներու արդիւնքներուն, կրնան արտադրել լաւագոյն բանասիրութիւնը:

Եկէք չկարծենք որ արեւմտեան բանասիրութիւնը ամբողջութեամբ կը բովանդակէ իմաստներ: Բայց կարեւոր տոկոս մը այդպէս է, ի տարբերութիւն հայկականէն՝ որուն կարեւոր տոկոս մը հիմնուած է փաստերու մեքենայական վերարտադրութեան վրայ: Հայերէն բանասիրութեան մէկ մասը իմաստէ զերծուած «ուսումնասիրութիւն» է:

Մենք առաջ անցած ենք Արեւմուտքէն՝ փաստերու պանծացումի տեսանկիւնէն, ներմուծելով արհեստական եւ կարծրատիպային կրկնուող «իմաստներ»-ու կոյտեր: Յղկուած, եթէ կարելի է՝ գերյղկուած, ազգայնացուած, նախընտրելի է՝ գերազգայնացուած, եւ ամէն բան հրաշալի է ու կատարեալ: Կը կարդաս այդ տեսակ բանասիրութիւնը եւ կը զարմանաս հայութեան անսխալականութեան, ազնուամտութեան, պատուականութեան եւ վսեմականութեան վրայ: Սփիւռքի մէջ ամբողջ հիմնարկ մը կայ այս գերհայկականութիւնը արտադրող:

Կը ստացուի այնպէս, որ բանասէրին համար առաւելագոյն նպատակ կը դառնայ նիւթի ձեռքբերումը՝ մամուլի տուեալներ, ձեռագիրներ, փաստաթուղթեր, արխիւային նիւթեր, եւ անոնց դասաւորուած գրառումը իբրեւ ուսումնասիրութիւն, վերարտադրելով նիւթին արտաքին պատկերային տեսքը: Բանասիրութեան իմաստը դրուած կ՚ըլլայ նիւթեր ունենալու առաւելութեան վրայ, առանց զանոնք բացայայտելու իրենց գոյացումի այլազան իմաստներուն մէջ:

Բայց չէ՞ որ մարդկային իւրաքանչիւր գործողութիւն եւ մտածողութիւն՝ որմէ բխած է փաստաթուղթը, կապուած է տեղի, ժամանակի, պայմաններու հետ, կրնայ մաս կազմել աւելի մեծ գործողութեան, կրնայ աւելի պզտիկ գործողութեան ուռճացումը ըլլալ, կրնայ հնարուած ըլլալ դիտաւորեալ նպատակներու համար, ձեւակերպուած յատուկ շահերու համար:

Գրական բանասէրին համար, օրինակ, առաւելագոյն նպատակ կը դառնայ վերլուծութիւնը՝ բառեր, նախադասութիւններ, քերականութիւն, գրականագիտական նեղ իմաստներ, բոլորը բխած բնագիրէն եւ *միայն* բնագիրէն: Թէեւ բնագիրի ամբողջական եւ ամենախոր ընթերցանութիւն մը կ՚ըլլայ կատարուածը, բայց հեռու բնագիրի հասարակական իմաստներէն եւ գրողի դիտաւորութիւններէն: Բանասէր-գրականագէտի գիտելիքի ցուցադրութիւն՝ աւելի քան գիտելիքի պարփակուն մեկնաբանութիւն:

Գրողի կենսագրութիւնն ալ պէտք է մտնէ իմաստներու աշխարհին մէջ՝ երբ կարդանք բնագիր մը: Գրողը շատ դիւրութեամբ կրնայ արտադրել բնագիրներ՝ որոնք կը ներկայացնեն իր հակապատկերը: Կրնայ ներկայացնել միտքեր՝ որոնք գեղեցիկ են, դրական, ընկերականօրէն ընդունելի, մինչ իր սեփական կեանքը ըլլայ անոնց հակառակը: Սեփական գիրի եւ կեանքի միջեւ կրնան գոյութիւն ունենալ բազմաթիւ այլ նրբութիւններ, որոնք մեկնաբանելի են միայն կենսագրութեան իրազեկութեամբ: Կենսագրութիւն՝ ոչ իբրեւ ծնաւ-սորվեցաւ-մեռաւ-ի «գիտական» մեթոտ, այլ իբրեւ գործողութիւններու դիտարկում եւ ըմբռնում:

Առարկայապաշտութիւնը՝ իբրեւ ձեռքբերուած նիւթի մարմնաւորում, կը դադրի նոյնիսկ առարկայական ըլլալէ, անոր հանդէպ եղած գերառարկայական, հետեւաբար գերիրական վերաբերմունքին պատճառով:

Մտիկ ըրէք այս տեսակ բանասէրները՝ երբ իրենց հետ ռատիոյի կամ հեռատեսիլի հարցազրոյցներ տեղի կ՚ունենան: Անոնք ըսելիք չունին, բացի այն՝ որ այս արժէքաւոր ձեռագիրը փրկած են, այն կարեւոր նիւթը պեղած են, առաւելագոյնը կարողանալով տեղեկութիւններ շարել իրենց ուսումնասիրութիւններու տուեալներուն մասին:

Բազում անգամներ գրած եմ կուսակցական հարցի մասին, կրկին ու կրկին պիտի շեշտեմ: Աւանդական կուսակցութիւնները եղած են տիրող Սփիւռքի մէջ, արտադրելով գաղափարախօսութիւններ, աւելի քան գաղափարներ, ստեղծելով միջավայրեր՝ գրեթէ պարտադիր, ուր գործած են գրողներն ու արուեստագէտները: Բայց եւ այնպէս, ամբողջ բանասիրութիւն մը կայ սփիւռքահայութեան մասին՝ առանց կուսակցութիւններուն: Չկան մտաւորականներուն խնդրական յարաբերութիւնները կուսակցութիւններուն հետ: Կատարեալ թապու մըն է ասիկա: Բայց նաեւ վտանգաւոր կալուած մը՝ այնտեղ մտնողին համար: Ամբողջ բանասիրութիւն մը կը գործէ այսօր կուսակցութիւններուն «չնեղել»-ու սկզբունքով: Կը կարծէ՞ք որ ենթադրաբար կուսակցութիւններէն հեռու գտնուող անգլիագիր հայագիտութիւնը զերծ է ասկէ: Կուսակցութիւնները լաւ գիտեն այս հարթակը եւ դասախօսական ↳ 4

# ՁԱՅՆԱԿԻՐ

## ՈՒՐՈՒԱԳԻԾ ԴԻՄԱՆԿԱՐԻ ՀԱՄԱՐ. ՓԱՐԻԶԻ ՆՈՒՊԱՐԵԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ – 95

3

քածուները այսօր էլ համալրւում են հայաստանեան եւ սփիւռքեան, ինչպէս նաեւ արտասահմանեան հրատարակութիւններով:

Երկրորդ աշխարհամարտ «տեսած» Մատենադարանը որոշակի կորուստներ անշուշտ կրել է, մանաւանդ երբ Փարիզի գրաւումից յետոյ, գրադարանային արժէքների մի պատկառելի մաս առգրաւուել-տեղափոխուել էր Գերմանիա: 1947թ. որոշ մասը, - իհարկէ յայտնի չէ ինչ ծաւալով, - վերադարձուել է. ներկայումս այն գիտակրթական իւրօրինակ կենտրոն է, ոչ միայն Ֆրանսիայի Պոլ Վալերիի, Սորբոնի եւ միւս համալսարաններում հայագիտութիւն ուսումնասիրող հայ եւ այլազգի ուսանողների, գիտնականների համար:

Ուշարժան է այն հանգամանքը, որ սփիւռքեան պայմաններում, երբ հայ գրականութեան եւ ընդհանրապէս մշակոյթի տարածումը խնդրոյ առարկայ էր, յատկապէս Սփիւռքի գրողների շրջանում՝ գրադարանային համալիրը յուսալի միջոց էր Սփիւռքի եւ հայաստանեան հրատարակութիւններին ծանօթանալու համար՝ գրքերի, օրաթերթերի, հանդէսների եւ արխիւային այլեւայլ վաւերագրերի, որոնցից մեծապէս օգտուել են 30-70-ական թուականներին ապրած գրողները, պատմագէտները. այս մասին իրենց հրապարակումներում բազմիցս նշել են՝ արժեւորելով Նուպարեան Մատենադարանի կատարած դերը հայագիտութեանն ի նպաստ:

Փարիզի Նուպարեան Մատենադարանին, իբրեւ հայ գրքի եւ գրչութեան աշխարհահռչակ գիտական, մշակութային կենտրոնին անդրադառնալ եւ երախտիքով չյիշել երկարամեայ տնօրէն, գրող, հրապարակագիր, պատմագէտ Արամ Անտոնեանին (1879-1951, Փարիզ) առնուազն աններելի է, այն պատճառով, որ նաեւ իր նախաձեռնութեամբ է փրկուել եւ Մատենադարան վերադարձուել ֆաշիստական «գերեվարումից» բազմաթիւ արժէքներ, որը ժամանակին մեծապէս նպաստել է Երեւանի Ե. Չարենցի Անուան Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի գրքերի, ձեռագրերի (պատճէնաւորուած) ֆոնդերի հարստացմանը: Ի վերջոյ նրա դերը իրապէս անգնահատելի է Մեծ Եղեռնի պատմութեան ուսումնասիրութեան առումով. վկայութիւնը՝ *Մեծ ոճիրը* (1921) վաւերագրերի հաւաքածուն է, նաեւ *Աքսորին ճամբուն վրայ* (1920) յուշագրութիւնը: Նա մնացորդաց սերնդի այն հազուագիւտ երախտաւորներից է, որ դեռեւս 1920 թ. տեղափոխուելով Փարիզ, ստանձնել է Հայոց Ազգային Պատուիրակութեան դիւանապետի պաշտօնը, իսկ արդէն 1923թ. Լօզանի կոնֆերանսի ժամանակ կատարել Թուրքիայի նախկին Արտաքին Գործերի նախարար (1913թ.) Գաբրիէլ Նորատունկեանի անձնական քարտուղարի պարտականութիւնները:

Այսպէս կարելի է շարունակել Արամ Անտոնեանի ազգային գործունէութեան թուարկումը՝ բազում փաստեր վկայաբերելով, բայց որ Նուպարեան Մատենադարանի կայացման նրա նպաստաբերութիւնը անժխտելի է՝ տարակոյս չի յարուցում: Այս տարի լրանում է մեծանուն երախտաւորի՝ Արամ Անտոնեանի ծննդեան 145-ամեակը: Այս առթիւ Լուսաբաց հրատարակչութեամբ տպագրուելու է Ա. Անտոնեանի *Մեծ ոճիրը* (արեւելահայերէնի վերածած) վաւերագրերի ժողովածուն:

***Cultural.am***

## ԲԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ՝ ԻԲՐԵՒ ԻՄԱՍՏԻ...

3

հրաւէրներով ու այլ նիւթական դրդումներով կը փորձեն լռեցընել զանոնք, քանի մը կարեւոր բացառութիւններով, անշուշտ:

Վտանգաւոր է, երբ բանասիրութիւնը դառնայ գոյութիւն ունեցող փաստին վճռողականը: Իր այս տեսքով, բանասիրութիւնը ջնջումն է բանասէրի ազատ կամքին, հրաւէրն է ենթարկուելու ուրիշի ստեղծածին՝ ուրիշի փաստաթուղթին:

Հիմնարկներու կողմէ որդեգրուած այս սկզբունքը դիտաւորեալ է: Ուրիշ հարց է անհատները: Բանասէրներուն մէկ մասը համոզուած է՝ որ պէտք է միայն դրական ուղղութիւն արտադրել, այդ դրականը հասկնալով իբրեւ յարմարաւէտութիւն: Յարմարաւէտ դրականութիւնը ըլլալով գեղեցիկ եւ գրաւիչ, դիւրաւ կարելի է կիրառութեան դնել, հոգ չէ թէ բանասիրութիւնը հեռացնէ իրական իմաստներէ:

Ուրիշներ կը գտնուին ընդհանուր ինքնագրաքննութեան թմրեցուցիչ ազդեցութեան տակ, ուր իրենք նոյնիսկ անգիտակից են իրենց կատարածէն: Բանասիրութեան յարմարաւէտացումը դարձած է բնազդ:

Բնականաբար, բանասիրութիւնը պիտի չըլլայ դրականութեան հակառակը, այսինքն՝ ըլլայ բացասական: Բանասիրութիւնը իմաստներ կ'որոնէ գոյութիւն ունեցող բոլոր տուեալներուն ընդմէջէն, խնդրականացնելով այդ տուեալները՝ լայն իրազեկութեան եւ ըմբռնումի հիման վրայ:

Եւ ահաւասիկ իրական իմաստներ գտնելու գլխաւոր մեթոտը՝ խնդրականացումը:

## ՓՈՒԹԻՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԱԶԸՐՊԷՅՃԱՆ Կ'ԱԶԴԱՐԱՐԷ ...

1

ւած Հանրապետուութեան քանի մը պաշտօնատարներէն մէկը, որոնք ձերբակալուեցան երբ անցեալ տարի Ազըրպէյճան վերագրաւեց տարածաշրջանը:

Փութինի այցելութենէն առաջ, Ռուսաստանի Հայերու Միութիւնը կոչ յղած էր իրեն՝ խնդրելով բարձրացնել Ղարաբաղի գերիներուն հարցը: Այս հարցը եւս չյիշատակուեցաւ:

Աւելի դիւրին էր երկու երկիրներուն միջեւ գտնել տնտեսական յարաբերութիւններու ընդհանուր հարթակ: Երբ Ապրիլին Ալիեւ այցելեց Մոսկուա, ուշադրութեան կեդրոնը կը գտնուէր երթեւեկային ցանցի մը ընդլայնումը՝ որ Ռուսաստանը կը կապէ Իրանին եւ Պարսկական Ծոցի նաւահանգիստներուն՝ անցնելով Ազըրպէյճանի տարածքէն: Ծրագիրը էական ռազմավարական կարեւորութիւն ունի Ռուսաստանի համար, որ կը փորձէ իր առեւտրական կապերը վերաուղղել դէպի արեւելք եւ հարաւ, երբ 2022 թուականի Ուքրաինա կատարած լայնածաւալ արշաւանքէն ետք փլուզուեցան Արեւմուտքի հետ յարաբերութիւնները:

Մինչ Ազըրպէյճան եւս կ'օգտուի առեւտուրի ընդլայնումէն, Պաքուի մէջ երկու առաջնորդներուն միջեւ տեղի ունեցած հակիրճ խօսակցութեան ժամանակ Ռուսաստանն էր որ աւելի շահագրգռուած կողմի տեսք ունէր: Երկու երկիրներուն միջեւ ընդհանուր առեւտրական շրջանառութիւնը կը կազմէ «4 միլիառ տոլլարէն քիչ մը աւելի – լաւ թիւ մը», կ'ըսէ Ալիեւ: «Բայց ան չի համապատասխաներ մեր կարողութիւններու ներուժին», կ'աւելցնէ Փութին:

Երբ Օգոստոս 19-ի հանդիպումները վերջացան, կողմերը յայտարարեցին՝ որ համաձայնագիրներ ստորագրեցին սնունդի ապահովութեան եւ աշխատանքի տեսչութեան նման նիւթերու շուրջ: Նոր Ռուս-Ազըրպէյճանական Համալսարան մը պիտի բացուի Պաքուի մէջ եւ երկու երկիրները պիտի սկսին քարիւղատարերու համատեղ արտադրութիւն:

Որոշ ազըրպէյճանցիներու համար, այդ համեստ արդիւնքները բացայայտեցին այցելութեան իրական նպատակը. հնարաւորութիւն մը Փութինի համար՝ ցոյց տալու թէ ունի դաշնակիցներ, երբ իրականութեան մէջ ան մեկուսացած է միջազգայնօրէն:

*RadioLiberty*

Անգլերէնէ թարգմ.՝ Ա.

## ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒՄ Է ՀԱՐԱՒԱՅԻՆ ԿՈՎԿԱՍԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԲԱՔՈՒԻ ՆԱՐԱՏԻՎԸ

3

Ըստ էութեան, Ադրբէջանի սահմանադրութիւնը Հարաւային Կովկասում Հայաստանի եւ հայ քաղաքական ինքնութեան գոյութիւնը չի ճանաչում: Բաքուի քաղաքական խօսոյթը կառուցուած է այն թէզի վրայ, որ Ռուսաստանը «գրաւել է Ադրբէջանը, իրականացրել հայ բնակչութեան ներգաղթ, եւ այդ հիմքի վրայ ստեղծել հայկական ինքնութիւն, իսկ բոլշեւիկեան իշխանութիւնը նրան օժտել է պետականութեամբ»:

Ռուսաստանի ԱԳՆ յայտարարութիւնն, իհարկէ, բաց տեքստով դա չի ասում, բայց ներկայիս Հայաստանի կայացման գործում Ռուսական Կայսրութեան, ԽՍՀՄ-ի եւ Ռուսաստանի «յատուկ դերի» շեշտադրումն այլ բան չէ, քան Ադրբէջանի պետական նարատիվին ակնյայտ աջակցութիւն եւ հովանաւորչութիւն:

Վտանգաւորն այն է, որ այս յայտարարութիւնը կարող է ունենալ քաղաքական հնարաւոր հետեւանքներով յղի ազդակ: Թերեւս դրանով է բացատրւում *Հայոց պատմութիւն* առարկան *Հայաստանի պատմութիւն* փոխարինելու շուրջ հայաստանեան քաղաքական եւ գիտական որոշակի շրջանակների գրեթէ թշնամական վերաբերմունքը:

Կարելի է, գուցէ եւ պէտք է դասագրքերում տալ մի փոքր նուրբ ձեւակերպումներ, բայց խնդիրը մնում է սկզբունքային: Հայաստանն իր պետականութեամբ Ռուսաստանի «ստեղծած» է եւ «յաւերժ պարտական» նրան, թէ՞ Հայաստանի անկախ հանրապետութիւնը նրա քաղաքացիների հաւաքական ձեռքբերումը:

Սա արդէն «ընդհանուր յիշողութեան» կամ «արեւմտեան ինժեներիայի պատուէրով պատմութիւնը խարդախելու» հետ ոչ մի կապ չունի՝ որպէս գիտական կամ նոյնիսկ քաղաքակրթական խնդիր: Ռուսաստանի ԱԳՆ-ն, գուցէ ակամայ, բայց գաղտնիքը մատնել է՝ Արեւմուտքը սատարում է Հարաւային Կովկասում հայ քաղաքական ինքնութեանը եւ Հայաստանի՝ որպէս սուվերէն պետութեանը, իսկ Ռուսաստանը եւ Ադրբէջանը՝ ոչ: Թէ ի՞նչ ընտրութիւն պէտք է կատարի Հայաստանի քաղաքացին, այլեւս բանավէճից դուրս է:

## ԼԱՒՐՈՎԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԿԱՍԿԱԾԻ ՏԱԿ Է ԴՆՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆ-ԱԴՐԲԷՋԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԿԱՐԳԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑՈՒՄ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿԱՌՈՒՑՈՂԱԿԱՆ ՆԵՐԳՐԱՒՈՒԱԾՈՒԹԻՒՆԸ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԳՆ

3

րարութիւնը ստորագրած, դրա հիման վրայ տարածաշրջանում խաղաղապահ զօրախումբ տեղակայած պետութեան ԱԳ նախարարը չի կարող չտեսնել, որ չկայ այդ յայտարարութեան գէթ մէկ առանցքային կէտ, որն անդառնալիօրէն խախտուած չլինի՝ չնայած դրա ներքոյ Ռուսաստանի ստորագրութեանը եւ դրանով նախատեսուած գործընթացներում Ռուսաստանի մասնակցութեանն ու պատասխանատուութեանը: Կարծում ենք նաեւ, որ Ռուսաստանի ԱԳ նախարարը քաջատեղեակ է, որ հրապարակային փաստաթղթերից դուրս՝ Հայաստանը որեւէ այլ պայմանաւորուածութեան մաս չի կազմում, հետեւաբար չի կարող սաբոտաժի ենթարկել դրանք:

«Հարկ ենք համարում ընդգծել նաեւ, որ Հայաստանի Հանրապետութեան կառավարութեան ներկայացրած *Խաղաղութեան խաչմերուկ* նախագիծն արդէն իսկ լայն ճանաչում ունի միջազգային հանրութեան շրջանում, այն մի քանի անգամ ներկայացուել է նաեւ Ռուսաստանի ներկայացուցիչներին: Վերահաստատում ենք, որ դրա շրջանակներում տարածաշրջանային կոմունիկացիաների բացումը հնարաւոր է բառացիօրէն ամէն պահի: *Խաղաղութեան խաչմերուկ* նախագիծը դրական արձագանքի է արժանացել մի շարք միջազգային գործընկերների կողմից, եւ Ռուսաստանի ԱԳՆ գործընկերներին կոչ ենք անում կողմնակալ յայտարարութիւններով սաբոտաժի չենթարկել այն, ոչ էլ Հարաւային Կովկասում խաղաղութեան հասնելու ջանքերը», - նշել է Անի Բադալեանը:

Հայաստանի ԱԳ մամուլի քարտուղարի խօսքով՝ Հայաստանի Հանրապետութեան կառավարութիւնը բազմիցս վերահաստատել եւ հիմա էլ վերահաստատում է իր հաւատարմութիւնը խաղաղութեան օրակարգին եւ իր բաժին աշխատանքը կը կատարի այդ օրակարգը բարեյաջող իրացնելու համար:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1974 ՀԻՆԳՇԱԲԹԻ 12 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٧٤ الخميس ١٢ سبتمبر ٢٠٢٤


## ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՆՈՒԱԶՈՂ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԹՈՒՐՔԻՈՅ ՀԵՏ

ՊԱՀՐՈՒԶ ՍԱՄԱՏՈՎ

*Չահակիր պիտի սկսի թարգմանաբար հրատարակել յօդուածներու շարք մը՝ գրուած ազըրպէյճանցի ընդդիմադիր գրողներու եւ խմբաւորումներու կողմէ, որոնք կ'արծարծեն իրենց երկիրի ներքին եւ արտաքին քաղաքական եւ ընկերային խնդիրները: Ընդդիմադիր ըսելով նկատի չունինք պաշտօնական ենթադրեալ ընդդիմութիւնը՝ որ ալիեւեան վարչակարգի պատկերի աղօտ կրկնօրինակն է, այլ անկախ մտածողութեան ձգտող խումբերը՝ որոնք կը գտնուին իշխանութեան մշտական դիտարկութեան եւ ճնշումին տակ:*

*Յօդուածները՝ որքան որ անյարմարաւէտ են ազըրպէյճանական բռնատիրական-ազգայնական իշխանական պատումին, ենթադրուած են նոյնքան յարմարաւէտ ըլլալ հայկական պատումին: Հակառակ ասոր, նման գրութիւնները հազուագիւտ կ'անցնին հայկական լրատուամիջոցներէն, յատկապէս սփիւռքեան հիմնահոսանքէն, քանի որ անոնց մէջ կարողապէս բացայայտուած կ'ըլլան ազըրպէյճանական հասարակութեան ներքին ծալքերը, մինչդեռ մենք՝ հայերս կ'ախորժինք մեր թշնամին տեսնել ամբողջատիրացուած տիրոյթի սահմաններէն ներս:*

*Ներկայ յօդուածին հեղինակը՝ Պահրուզ Սամատով, Միջազգային Յարաբերութիւններու շրջանաւարտ է Պուտափեշթի Կեդրոնական Եւրոպական Համալսարանէն եւ ներկայիս տոքթորականի ուսանող Փրակի Շարլս Համալսարանի Քաղաքական Գիտութիւններու բաժինի: Ազըրպէյճանի իշխանութիւններուն կողմէ Պաքուի մէջ կը ձերբակալուի Օգոստոս 21-ին, իսկ Օգոստոս 23-ին կը մեղադրուի հայերուն ի նպաստ դաւաճանութեան յօդուածով: Կրնայ դատապարտուիլ 12-20 տարուայ բանտարկութեան:*

*Յօդուածը հրապարակումի յանձնած էր ճիշդ իր ձերբակալութենէն առաջ:*

*Չ.*

Հակառակ երկար ժամանակ ըլլալով «եղբայրական» ազգեր, Իսրայէլ-Կազա պատերազմը կը թուի լարուածութիւններ յառաջացուցած ըլլալ Թուրքիոյ եւ Ազըրպէյճանի միջեւ, ներունականապէս երկու երկիրները մղելով անդառնալիօրէն հեռանալու իրարմէ:

Վերջին ամիսները, անբնականօրէն պաղ էին Ազըրպէյճանի եւ Թուրքիոյ միջեւ յարաբերութիւնները: Դիտորդներուն համար՝ որոնք լսած են երկու երկիրներու դաշնակցութեան հռետորաբանութիւնը – յատկապէս «երկու պետութիւններ» բայց «մէկ ազգ» արտայայտութիւնը – ասիկա կրնայ անակնկալ ըլլալ:

Դիտորդին նաեւ կրնայ զարմացնել՝ որ այս հեռացումին մէջ կարեւոր գործօն հանդիսացած է Թուրքիոյ անվերապահ աջակցութիւնը Պաղեստինին, բաղդատած Ազըրպէյճանի համեմատաբար չէզոք դիրքաւորումին:

Չուշացաւ ասոր օրինակներէն մէկը, երբ Յուլիսի վերջաւորութեան նախագահ Ռեճէփ Թայիփ Էրտողան յայտարարեց 2020 թուականի Լեռնային Ղարաբաղի պատերազմին մէջ Թուրքիոյ խաղացած որոշիչ դերի մասին, յառաջացնելով ազըրպէյճանցիներուն զայրոյթը, թէեւ ոչ-պաշտօնական մակարդակով: Էրտողան իր յայտարարութիւնը կատարեց Իսրայէլ-Պաղեստին հակամարտութեան բնաբանին մէջ, ակնարկելով՝ որ Թուրքիա կրնայ նման դեր ստանձնել այդ հակամարտութեան մէջ, եւ այսպէս Պաղեստինն ու Ազըրպէյճանը դիրքաւորելով իբրեւ հաւասարապէս ճնշուած ազգեր: Էրտողանի յայտարարութիւնը անհանգստութեամբ ընդունուեցաւ, մասամբ որովհետեւ ան փաստացիօրէն կը վիճարկէր պատերազմի մասին Ազըրպէյճանի պատումը եւ իր «մենաշնորհը յաղթանակի նկատմամբ»:

Ոչ միայն Էրտողանի պնդումը, այլեւ Թուրքիոյ աջակցութիւնը պաղեստինեան հարցին զայրացուց Ազըրպէյճանը: Յայտարարութենէն անմիջապէս ետք, Թուրքիա միօրեայ սուգ հռչակեց Համասի առաջնորդ Իսմայիլ Հանէյայի համար, զգացում մը զոր ազըրպէյճանցի հասարակութիւնը ոչ կը կիսէ, ոչ ալ կը հասկընայ:

Մինչդեռ Ազըրպէյճանի եւ Թուրքիոյ միջեւ տարաձայնութիւնները նկատելի են երկու ազգերուն, Ազըրպէյճանի չկամութիւնը միանալու հակաիսրայէլական հռետորաբանութեան դարձաւ աւելի ու աւելի նշանակալի գործօն մը՝ բարձրաձայնելու համար իրենց դժգոհութիւնները:

**Իսրայէլի հանդէպ Ազըրպէյճանի վերաբերմունքին պատմութիւնը**

Բազմաթիւ թուրքերու համար Ազըրպէյճանի դրական վերաբերմունքը Իսրայէլի հանդէպ եւ անոր խիստ սահմանափակ աջակցութիւնը Պաղեստինին – օրինակ՝ որեւէ հանրային իրադարձութեան կամ վիրթիւալ տրամասացութեան (discourse) բացակայութիւնը – յուսահատական է: Բայց Ազըրպէյճանի տարբեր վերաբերմունքի եւ վարքի պատճառները բազմակողմանի են, եւ վերագրելի ոչ միայն բանական սեփական շահերու:

Մինչ այսօրուայ Ազըրպէյճանի տարածքներուն վրայ ապրող ազըրպէյճանցիներուն եւ հայերուն միջեւ թշնամութիւնները սկսած են աւելի քան մէկ դար առաջ, Ազըրպէյճանի մէջ ապրող ազըրպէյճանցիներն ու հրեաները երբեք բացասական զգացումներ չեն կիսած իրարու հանդէպ: Ազըրպէյճանի այսօրուայ հրեայ համայնքը կեդրոնացած է Կարմիր Գիւղին շուրջ, ուր աւելի քան երկու հարիւր տարիներ գոյութիւն ունեցած է Լեռնային Հրեայ համայնքը:

Հրեայ ժողովուրդի եւ Իսրայէլի նկատմամբ մահմետական մեծամասնութիւն կազմող ազըրպէյճանցիներուն ունեցած առանձնայատուկ ջերմութեան ուրիշ պատճառ մըն ալ կապուած է Լեռնային Ղարաբաղի Առաջին Պատերազմին հետ (1988-1994): 1992-ին, էթնիքապէս Լեռնային Հրեայ Ալպերթ Ակարունով մահացաւ պաշտպանելով Շուշի քաղաքը: Այդ տարի տուած հարցազրոյցի մը մէջ, Ակարունովին կը հարցնեն՝ թէ ինչը մղեց զինք «պաշտպանելու ազըրպէյճանական հողերը», հակառակ էթնիքապէս ազըրպէյճանցի չըլլալուն: Ան պատասխանեց որ ինք «կը պաշտպանէ իր հայրենիքը», եւ պատրաստ է կռուիլ «մինչեւ պատերազմի աւարտը»:

Այս դրուագը արժանացաւ լայնատարած ↳ 4

ԹՈՒՐՔԻԱ

## ԵԳԻՊՏՈՍԻ ՆԱԽԱԳԱՀ ՍԻՍԻՆ ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԺԱՄԱՆԵԼ Է ԹՈՒՐՔԻԱ

Եգիպտոսի նախագահ Աբդէլ-Ֆաթահ Ալ-Սիսին Սեպտեմբերի 4-ին առաջին անգամ իր պաշտօնավարման ընթացքում, ժամանել է Թուրքիա:

Սիսիի այցը ազդարարում է երկու երկրների յարաբերութիւններում գրեթէ մէկ տասնամեակ շարունակուած ճգնաժամի աւարտը:

Թուրքիայի եւ Եգիպտոսի յարաբերութիւնները սրուել էին 2013-ին, երբ Եգիպտոսի Զինուած Ուժերը՝ այն ժամանակ Գլխաւոր Շտաբի պետի պաշտօնը զբաղեցնող Ալ-Սիսիի գլխաւորութեամբ հեռացրեցին իսլամիստ նախագահ Մոհամադ Մորսիին, որն Անկարայի մերձաւոր քաղաքական դաշնակիցն էր համարւում:

Բանակցութիւնների ընթացքում Էրդողանն ու Ալ-Սիսին քննարկեցին երկկողմ յարաբերութիւնների զարգացման թեման, մասնակցեցին նաեւ ռազմավարական համագործակցութեան երկկողմ յանձնաժողովի նիստին:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱՍՏԱՏԵՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ՀԱՄԱՏԵՂ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ԿԱՆՈՆԱԿԱՐԳԸ

Հայաստանի կառավարութիւնը հաւանութիւն տուեց «Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան միջեւ պետական սահմանի սահմանազատման եւ սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովի ու Ադրբէջանի Հանրապետութեան եւ Հայաստանի Հանրապետութեան միջեւ պետական սահմանի սահմանազատման պետական յանձնաժողովի համատեղ գործունէութեան մասին» կանոնակարգը վաւերացնելու մասին Հայաստանի Հանրապետութեան օրէնքի նախագծի մասին որոշմանը:

Հարցը հաւանութիւն ստացաւ կառավարութեան Սեպտեմբերի 5-ի նիստում՝ չզեկուցուող հարցերի շարքում:

Ըստ որոշման՝ Հայաստանի Հանրապետութեան սահմանադրական դատարանի կողմից կանոնակարգում ամրագրուած պարտաւորութիւնները Հայաստանի Հանրապետութեան Սահմանադրութեանը համապատասխանող ճանաչելու մասին որոշման դէպքում Հայաստանի կառավարութեան օրէնսդրական նախաձեռնութիւնը սահմանուած կարգով կը ներկայացուի Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողով: ↳ 4

ԱՄՆ

## ԱՄՆ ՄԶԳ-Ն 130 ՄԻԼԻՈՆ ԴՈԼԱՐՈՎ ԱՒԵԼԱՑՆՈՒՄ Է ՀԱՅԱՍՏԱՆԻՆ ՅԱՏԿԱՑՈՒՈՂ ԱՋԱԿՑՈՒԹԵԱՆ ՉԱՓԸ

ԱՄՆ Միջազգային Զարգացման Գործակալութիւնը 130 միլիոն դոլարով աւելացնում է Հայաստանին յատկացուող աջակցութեան չափը: Ինչպէս հաղորդում է *Արմենպրէսը*, համապատասխան նախագիծն ընդգրկուած էր Հայաստանի կառավարութեան Սեպտեմբերի 5-ի նիստի օրակարգում՝ չզեկուցուող հարցերի շարքում, որն արժանացաւ կառավարութեան անդամների հաւանութեանը:

Նշւում է, որ նախագծով նախատեսւում է փոփոխութիւն կատարել Հայաստանի կառավարութեան եւ Ամերիկայի Միացեալ Նահանգների Միջազգային զարգացման գործակալութեան միջեւ 2022թ. Յունիսի 29-ին ստորագրուած դրամաշնորհային համաձայնագրում, համաձայն որի Հայաստանին տրամադրուող ԱՄՆ աջակցութեան ընդհանուր գումարը աւելանում է 130,000,000 ԱՄՆ դոլարով՝ ԱՄՆ ՄԶԳ նախատեսուող ընդհանուր ներդրումը հասցնելով 250,000,000 ԱՄՆ դոլարի:

Լրացուցիչ ֆինանսական յատկացումները նախատեսւում են ուղղել արդիւնաւէտ եւ հաշուետու կառավարման ինստիտուցիոնալացմանը, քաղաքացիական մասնակցու- ↳ 2

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԱՆՈՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵՒ ԿՆՈՋ ՔՈՒԷԱՐԿՈՒԹԵԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

### ՅԵՏԵՂԵՌՆԵԱՆ ՆՈՐ ՎԻՃԱԿ

Մեծ Եղեռնը իրական գետնի վրայ նոր իրականութիւն կը յառաջացնէ եգիպտահայ կառուցւածքին մէջ: Պոլսոյ Պատրիարքութիւնը կը կորսնցնէ իր իշխանութիւնը եւ եգիպտահայ գաղութը ինքնաբերաբար կը դառնայ ինքնավար: 1863 Ազգային Սահմանադրութեան այն կէտերը՝ որոնք կը պահանջէին Պոլսոյ Պատրիարքութեան վաւերացումը, կը դառնան անգործադրելի: Եգիպտահայութիւնը այլեւս չ'ենթարկուիր Պոլսոյ Պատրիարքարանին: Բայց եւ այնպէս, եգիպտահայ գաղութի նոր կանոնագրութիւն չի գրուիր:

Աւելին: 1930-ին, Գահիրէի Հայոց Առաջնորդարանը պաշտօնական հրատարակութեամբ լոյս կ'ընծայէ Եգիպտոսի Ազգային Առաջնորդարանի օրէնքներու եւ կանոններու հատոր մը(8), որ նոյնական եւ ամբողջական վերատպութիւնն է 1863-ի Ազգային Սահմանադրութեան եւ Պոլսոյ մէջ 1872-ին եւ 1874-ին յաջորդաբար հրատարակուած երկու գիրքերու *Սահմանադրական հրահանգ գաւառաց համար* եւ *Կանոնադրութիւն Ազգային Ժողովին*: Հատորը կը վերջանայ 1907-ի Աղեքսանդրիոյ մէջ հրատարակուած վերոյիշեալ լրացուցիչ կանոնագրութեամբ՝ *Վարչական հրահանգ վիճակին Եգիպտոսի*:

Այսինքն, 1930-ին, պաշտօնական եգիպտահայութիւնը տակաւին տեսականօրէն կ'որդեգրէր 1863-ի Ազգային Սահմանադրութիւնը՝ իր անգործադրելի կէտերով, ինչպէս նաեւ անոր եգիպտահայ լրացումը:

Եգիպտահայութիւնը քաջ իրազեկ էր խնդիրին:

1930 Ապրիլին, Մկրտիչ Անդրանիկեան կը գրէ *Արեւի* մէջ.

«Անհամբեր կը սպասենք որ Գահիրէի Թեմական Ժողովի ընտրութիւնները կատարուին, տեսնելու համար թէ կարելի պիտի ըլլա՞յ վերջապէս ունենալ ձեռնհաս անձերէ կազմուած ժողովք մը որ կարող ըլլայ, ոչ միայն եգիպտահայ գաղութին ներքին սովորական գործերը վարելու, այլ նաեւ՝ Աղեքսանդրիոյ Թեմականին գործակցութեամբ՝ պատրաստել գաղութիս վարչական կանոնագիրը (statut personnel) որ խիստ կարեւոր ըլլալով հանդերձ, երկար տարիներէ ի վեր Երեսփոխանական ժողովոյ գրասեղանին վրայ կը սպասէ իր լրացումին, հակառակ եգիպտական կառավարութեան կողմէ եղած պահանջումներուն եւ հակառակ ազգային խնդիրներու մէջ անոր յապաղումէն յառաջ եկած անախորժ վէճերուն:

«Եգիպտաբնակ բոլոր փոքրամասնութիւնները շատոնց ունեցած ու վաւերացնել տուած են իրենց Կանոնագիրը, եւ միայն հայե՛րն են որ աններելի զանցառու-թեամբ մը կառչած կը մնան իրենց խարխլած Սահմանադրութեան»(9):

Շուտով *Արեւի* «Խմբագրական» մը կու գայ երկրորդել Անդրանիկեանին. «Ազգային Սահմանադրութիւնը, որ Թուրքիոյ մէջ եւ թրքահայութեան համար պատրաստուած կանոնագրութիւն մըն էր, եւ որ ուրիշ կարգ մը երկիրներու մէջ եւս գործածութեան դրուած, ժամանակի ընթացքին քաղաքական եւ ընկերային պայմաններու փոփոխութեանց բերմամբ կը դադրէր բաւարար ըլլալէ ու կարօտ՝ սրբագրութեան»(10):

Ստեփան Շահպազ 1930-ին *Արեւի* մէջ հանդէս պիտի գար երկար ու հետաքրքրական յօդուածաշարով, շեշտելով եգիպտահայ նոր սահմանադրութիւն-կանոնագրութեան անհրաժեշտութիւնը(11):

Շահպազ կը պատճառաբանէ.

«Պոլսոյ Ընդհանուր Ժողովը ոչ մէկ հեղինակութիւն ունի այլեւս, իհարկէ, գաղութներու վրայ: Ոչ ալ Պոլսոյ Պատրիարքութիւնը: Իր եւ արտասահմանի հայութեան յարաբերութիւնները, մանաւանդ օրէնսդրական խնդիրներու մէջ, բոլորովին խզուած են:

«Եգիպտահայ գաղութը, ինչպէս նաեւ բոլոր միւս գաղութները ինքնայատուկ «ինքնավար» ազգային կեանք մը ունին: Մէկը միւսէն կախում չունի: Իսկ Էջմիածինը կը մնայ հազիւ թէ հոգեւորական բարձրութիւն մը առանց ոեւէ իշխանութեանց»(12):

Յօդուածաշարին մէջ Շահպազ մանրամասն կը նշէ իր առարկութիւնները եւ փոփոխութեան կէտերը:

Եգիպտահայ ղեկավարութիւնը իրազեկ էր այս խնդիրին, եւ 1930-ին կը կազմէ մասնաւոր յանձնախումբ մը նոր սահմանադրական կանոնագիր կազմելու համար: 1933-ին տակաւին ոչ մէկ արդիւնք արձանագրուած էր(13):

Այս բոլորին մէջ կնոջ քուէարկութեան հարց չի քննարկուիր: Հարցը դուրս է ըմբռնումէ:

Բայց նոյն տարին 1930-ին, Շահպազ հանդէս կու գայ ֆեմինիզմին նուիրուած բանախօսութիւն-յօդուածով, ուր կ'անդրադառնայ կնոջ ընտրել-ընտրուելու հարցին իբրեւ ընդհանուր, այլ ոչ-եգիպտահայ դրոյթ. «Կ'ընդունիմ որ կինը երեսփոխան ըլլայ, բայց զբաղելու համար լոկ շինարարական, ընտանեկան եւ բարոյական, փոքրիկներու, զրկուածներու պաշտպանութեան խնդիրներով: Կինը քաղաքականութենէ եւ քաղաքականութիւնն ալ կնոջմէն հեռու մնալու է»:

Ապա կ'աւելցնէ. «Ամէն երկիր տակաւին ընդունած չէ կնոջ քուէարկութեան իրաւունքը: Այս մասին մեզ կրնանք մոռնալ երբ գիտենք որ ֆրանսուհին ալ նոյն քաղաքակրթական զրկումն ունի: Այս մերժումին պատճառները շատ են ու մենք այժմ ժամանակ չունինք այդ մանրամասնութեանց մէջ մտնելու: Ես կ'ընդունիմ որ կինը ընտրելու եւ ընտրուելու իրաւունք ունենալու է, վերջ ի վերջոյ»(14):

«Մեզ կրնանք մոռնալ» խօսքով Շահպազ հաւանաբար նկատի ունի հայերը կամ եգիպտահայերը: Ըսել կ'ուզէ՝ տակաւին կանուխ է մեզի համար այս հարցով զբաղիլ:

Հանգամանք մը եւս կնոջ մասնակցութիւնը պիտի դարձնէր գրեթէ անկարելի: 1920-ականներուն սկիզբը եգիպտահայ գաղութը Թեմական ընտրութիւններուն համար կը մտնէր կուսակցական-առնական թէժագոյն պայքարի մէջ: Ի տարբերութիւն նախորդ շրջանէն՝ երբ մեծահարուստ անհատին ձեռքն էր վերին խօսքը, 1920-ականներէն սկսեալ Թեմական ուժը անցաւ աւանդական կուսակցութիւններուն՝ մինչ փոխուելով մեծահարուստներուն դերն ու իշխանութեան ձեւը: «Կը կասկածիմ որ ատիկա իսկական պայքարը ըլլայ», 1930-ին դիտել կու տար Ստեփան Շահպազ(15): Այս պայքարին մէջ կուսակցական այրերուն համար տեղ չկար, եւ չէր կրնար ըլլալ, կնոջական հարցը:

1934 Նոյեմբերին Վիքթորիա Արշարունի *Արեւի* մէջ յօդուածաշար կը ստորագրէ եգիպտահայ Սահմանադրութեան մասին, առաջարկելով ընդամէնը բարեփոխութիւններ(16): Հակառակ կին գրող ըլլալուն, կնոջ քուէարկութեան մասին ոչ մէկ նշում կ'արձանագրէ:

### ԵԳԻՊՏԱՀԱՅ ՆՈՐ ՈՒ ՎԵՐՋՆԱԿԱՆ ԿԱՆՈՆԱԳԻՐ

Վերջապէս կը գրուի եւ 1946 Յունուար 30-ին կը վաւերացուի եգիպտահայոց նոր Կազմական Կանոնագիրը(17):

Ի տարբերութիւն 1907 թուականէն, արդէն անհրաժեշտ էր ստանալ եգիպտական պատկան մարմինի վաւերացումը: Արաբերէն բնագիրը 1948-ին կը վաւերացուի Եգիպտոսի կառավարութենէն(18) եւ կը դառնայ իրաւական ուժ ունեցող միակ բնագիրը, փոխարինելով Ազգային Սահմանադրութեան: 1955-ին Յուսաբեր կը հրատարակէ անոր հայերէն թարգմանութիւնը(19):

1956-ի Եգիպտոսի Սահմանադրութեամբ քաղաքացիներու իրաւունքի հարցերը կը յանձնուին պետական դատարաններուն, հետեւաբար, կը վերանան Կազմական Կանոնագիրի «Անձնական իրաւավիճակի յանձնաժողովներ»-ուն յատկացուած 42-54 Յօդուածները(20), մինչ մնացած բոլորը կը մնան անփոփոխ: Նոր Կանոնագիրը նոյն տարին կը վերահաստատուի Կառավարութեան կողմէ(21):

Շատ աւելի ուշ՝ 1990-ականներուն, Նուպար Տպարանէն լոյս կը տեսնէ 1956-ի Կանոնագիրը՝ Յուսաբերի 1955-ի գրեթէ նոյն հայերէն թարգմանութեամբ (բայց ուղղագրական սխալներով), առանց իրաւավիճակի յիշեալ Յօդուածներուն(22): Ահիկա է այսօր գործող եգիպտահայոց կանոնագիրը: (Վստա՞հ ենք որ այսօր կը գործադրուին կանոնագիրին կէտերը:)

Ի՞նչ է կնոջ վիճակը 1948-1956-ի Կանոնագիրին մէջ: Դարձեալ, տառացիօրէն, չկայ կնոջ մերժում:

1979-ին, Վազգէն Բրուտեան կը փորձէ ընթերցել Կանոնագիրը, հաստատելու համար՝ որ եգիպտահայ կինը ունի ընտրելու իրաւունք. «Ըստ Եգիպտահայ Ուղղափառ (Օրթոտոքս) համայնքին մէջ ներկայիս գործածուող Կազմական Կանոնագրին՝ **Եգիպտահայ կինը կրնա՛յ քուէարկել**: Աւելին՝ **կրնայ նաեւ մաս կազմել Թեմական Ժողովներուն, եթէ Կազմական Կանոնագրին տրամադրութիւնները գործադրուին ճշգրտօրէն եւ բծախնդրօրէն**»(23):

Բայց, եթէ նախորդներուն նման, այս Կանոնագիրին մէջ չկայ կնոջ հերքում, չկայ նաեւ ընդունուած կարգին մերժումը՝ կնոջ ուղղակի ընդունումով:

(Շար. 2)


### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

8. *Օրէնք եւ կանոնք Ազգային Առաջնորդարանի Հայոց յԵգիպտոս*, Գահիրէ, Պաշտօնական Հրատարակութիւն Առաջնորդարանին Հայոց Գահիրէի, 1930:

9. Մ. Անդրանիկեան, «Թելադրութիւն մը», *Արեւ*, 7 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 3400, էջ 1:

10. «Խմբագրական. Թելադրութեան մը առթիւ», *Արեւ*, 15 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 3407, էջ 1:

11. Ստեփան Շահպազ, «Մեր սահմանադրութեան բարեփոխութեան անհրաժեշտութիւնը», *Արեւ*, 24 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 3413 – 3 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 3447:

12. Ստեփան Շահպազ, «Մեր Սահմանադրութեան բարեփոխութեան անհրաժեշտութիւնը», *Արեւ*, 28 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 3416, էջ 1:

13. «Խմբագրական. Եգիպտահայ կանոնագրութիւնը», *Արեւ*, 11 Ապրիլ 1933, ԺԷ. տարի, թիւ 4329, էջ 2:

14. Ստեփան Շահպազ, «Ֆէմինիզմը (ամփոփում բանախօսութեան)», *Արեւ*, 3 Փետրուար 1930, ԺԶ. տարի, թիւ 3346, էջ 2:

15. Ստեփան Շահպազ, «Մեր Սահմանադրութեան բարեփոխութեան անհրաժեշտութիւնը», *Արեւ*, 25 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 3414, էջ 1:

16. Վիքթորիա Արշարունի, «Եգիպտահայ Ազգային Սահմանադրութիւնը», *Արեւ*, 10 Նոյեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4817 – 15 Նոյեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4821:

17. Գրիգոր Պամաճեան, *Օրմանեան Սրբազան եւ եգիպտահայ գաղութը 1896-1918*, Գահիրէ, 1973, էջ 91, ծանօթ. 1:

18. Վազգէն Բրուտեան, «Եգիպտահայ կինը կրնա՛յ քուէարկել», *Հոկտեմբեր*, Նոյեմբեր-Դեկտեմբեր 1979, Զ. տարի, թիւ 40-41, էջ 32:

19. *Կազմական Կանոնագիր Հայ Օրթոտոքս համայնքին*, Գահիրէ, Հրատարակութիւն Յուսաբերի, 1955:

20. Վազգէն Բրուտեան, նշ. յօդ.ը, էջ 34:

21. Անդ, էջ 32:

22. *Կազմական Կանոնագիր Հայ Օրթոտոքս համայնքին*, Եգիպտոս [Գահիրէ], Տպարան Նուպար, առանց հրատարակչի, անթուակիր [1990-ականներու առաջին կէս]:

23. Վազգէն Բրուտեան, նշ. յօդ.ը, էջ 32:


ՀԱՅԱՍՏԱՆ

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻՑ ՀԱՅԱՍՏԱՆ ԵԿՈՂ ԶԲՕՍԱՇՐՋԻԿՆԵՐԻ ԹԻՒԸ ՆՈՒԱԶԵԼ Է 23%-ՈՎ

2024 թ. Յունուար-Յուլիս ամիսներին Հայաստան է այցելել շուրջ 1 միլիոն 184 հազար զբօսաշրջիկ: Հայաստանի Զբօսաշրջութեան Կոմիտէի փոխանցմամբ՝ նախորդ տարուայ նոյն ժամանակահատուածի համեմատ այցելութիւնների թիւը նուազել է 6 տոկոսով:

Կոմիտէի միջազգային համագործակցութեան վարչութեան պետի տեղակալ Անուշ Բաբայեանի պարզաբանմամբ՝ նուազման պատճառը Ռուսաստանից Հայաստան զբօսաշրջային այցելութիւնների թուի կրճատումն է: Նախորդ տարուայ Յունուար-Յուլիս ամիսներին շուրջ 500 հազար ռուս զբօսաշրջիկ է Հայաստան եկել, այս տարուայ նոյն ընթացքում՝ 23 տոկոսով պակաս:

«Նշեմ, որ ընդհանուր այցելութիւնների թւում Ռուսաստանից այցելութիւնները կազմում են շուրջ 42 տոկոսը», - *Արմենպրէս*ի տուած հարցազրոյցում շեշտել է Բաբայեանը:

**Ո՞ր երկրներն են բացը լրացնում**

Չնայած նրան, որ ռուս զբօսաշրջիկների թուի նուազում է նկատուել, Ռուսաստանը շարունակել է մնալ ↪ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՄԱՅՆՔԻ ՄԸ ՆԱՀԱՆՋԻ ՊԱՏԿԵՐՆԵՐԸ

**ԲԱԳՐԱՏ ԷՍԴՈՒԳԵԱՆ**

Պոլսոյ Պատրիարքական Աթոռի թափուր մնացած տարիներուն յաճախ ահազանգ հնչեցուցած էինք համայնքային կեանքէ ներս տիրող նահանջի մասին: Թէեւ պոլսահայ համայնքային կեանքէն ներս փտախտը ունի դարաւոր անցեալ, բայց արժէքներու քայքայումը երբեք չէր հասած այն աստիճանին, որուն կը հանդիպինք այսօր:

Ճիշդ է, որ մեր կրթական համակարգը քայքայուեցաւ նոյնինքն թաղականներու եւ ուսուցիչներու տգիտութեան պատճառաւ: Անոնք ամէն առիթով զիջեցան քաղքենիացած ծնողներու տրամաբանութենէն հեռու պահանջներուն դիմաց: Չկրցան պահել հայ դպրոցի առաքելութիւնը եւ դաւաճանեցին մայրենի լեզուով կրթութեան: Հոգեւորականներն ալ անտեսեցին իրենց վերագրուած պարտականութիւնը՝ ի գին առօրեայ շահերու: Մէկ կողմ դրին ժողովուրդի հանդէպ իրենց պատասխանատուութիւնը եւ հարուստներու փողը հնչեցուցին փոխան իրենց չնչին ակնկալութիւններուն:

Մամուլը, որ պէտք էր նկատէր այս բոլորը եւ իր քննադատութիւններով իրազեկ դարձնէր հասարակութիւնը, ան ալ իր կարգին հետեւեցաւ տիրող համակարգի թելադրանքներուն: Այլ խօսքով, չուզեց անբաղձալի կերպար մը դառնալ: Այս բոլորի հետեւանքով հասած ենք ամօթալի հանգրուանի մը: Մեծ խոստումներով մեկնարկած հսկայ շինութիւնները չեն տուած ակնկալուած արդիւնքը: Այս մասին կարելի է օրինակ բերել Գարակէօզեան Խնամակալութեան պատկանող երկնաքեր շէնքը եւ Միխիթարեան Միաբանութեան վիեննական ուխտին պատկանող առեւտուրի կեդրոնը: Այդ երկու շինութիւնները աւարտին շահաւոր դուրս եկողը շինարար ընկերութիւնն էր, որ տիրացաւ այդ կալուածներու մեծագոյն բաժնին:

Միւս կողմէ, Հայ Կաթողիկէ համայնքին պատկանող մի այլ հսկայ շինութիւն կը փտի անտիրութեան մէջ, կուլ տալով նաեւ երբեմնի Սուրբ Յակոբ Հիւանդանոցը: Մինչդեռ վերանշեալ շինութիւններու հիմնադրութեան պահուն խնամակալներ կը խոստանային, թէ աւարտին լուծուած պիտի ըլլայ համայնքային կրթօճախներու բոլոր հոգերը: Հասանք խոստացուած աւարտին, բայց համայնքը տանջող նիւթական խնդիրները շարունակեցին անլուծելի մնալ:

Այս օրերուն կրկին կը տառապինք լսելով, թէ դատարանը սառեցուցած է Աթոռանիստ Մայր Եկեղեցւոյ թաղականութեան դրամատնային հաշիւները: Հազիւ քանի մը շաբաթ առաջ էր, երբ Պիւյիւտերէի թաղականութիւնը կը հրատարակէր Վաքֆներու Ընդհանուր Տնօրէնութեան քննիչներու տեղեկագիրը: Այդ տեղեկագրի համաձայն նախորդ թաղականութիւնը բաւականին ծանր վնասներ պատճառած էր եկեղեցւոյ հիմնարկին՝ իր թերի որոշումներուն հետեւանքով: Հարցականը այն է, թէ այդ թերի որոշումները արդեօք իսկապէս թերացումնե՞ր են, թէ ոչ՝ զեղծարարութիւններ: Այս օրերուն կը խօսուի նման բնոյթով տեղեկագրի մը մասին եւս:

Օրթագիւղի Սուրբ Աստուածածին Եկեղեցւոյ թաղականութիւնն ալ նման բնոյթով հետաքննութիւն մը պատուիրած էր, այս անգամ յատուկ ընկերութեան մը: Այս հետաքննութեան արդիւնքն ալ եկաւ նման բնոյթով: Հոս եւս կը խօսուէր սխալ որոշումներով եկեղեցւոյ սնտուկը վնասելու մասին: Առաջ բերուած օրինակները դարձեալ իրաւ արժանիքէն շատ աւելի ցած գիներով վարձակալութեան մասին էր: Ներկայ թաղականութիւնը այս տեղեկագիրը ուղարկեց Վաքֆներու Ընդհանուր Տնօրէնութեան, որմէ ցարդ արձագանգ մը չէ հասած:

Այս բոլորը փտախտի մը ցոլացումն են, բայց պարտինք նշել թէ սոյն փտախտը շատ աւելի նուազ վնաս է, քան հասարակութեան մատնըւած հիասթափութիւնը: Համայնքային հաստատութիւններու վարչութիւնները ճշդելու համար կատարուած քուէարկութեան հանդէպ ժողովուրդի հետաքրքրութեան բացակայութիւնը շատ աւելի լուրջ խնդիր մըն է:

***Ակօս***

Յ. Գ. *Ասիկա ոչ միայն պոլսահայութեան խնդիրն է: Բազմաթիւ հայ գաղութներ եւս կը բաժնեն նոյն ճակատագիրը: Բայց Պոլսոյ ներսէն բխած քննադատութիւնը, կամ քննադատութեան կարելիութիւնը, ինքնին դրական նշան մըն է, երբ ուրիշ գաղութներու մամուլը չունի այդ կարելիութիւնը:* Ջահ.

## ԿԳՄՍՆ-Ն ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ Է ԿՈՏԱՅՔԻ ՄԱՐԶԱՅԻՆ ԳՐԱԴԱՐԱՆՈՒՄ ԻՐԱԿԱՆԱՑՈՒԱԾ ԱՄԱՌԱՅԻՆ ԾՐԱԳՐԵՐԸ

Ամռան ամիսներին Կոտայքի մարզային գրադարանն ընթերցանութիւնը խթանելու նպատակով իրականացրել է մի շարք միջոցառումներ, այդ թւում՝ ճանաչողական եւ ինտելեկտուալ խաղեր, գրքի շնորհանդէսներ, ցերեկոյթներ՝ նուիրուած արեւմտահայ գրողներին ու արուեստագէտներին: *Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին հաղորդագրութիւն է տարածել Հայաստանի ԿԳՄՍ նախարարութիւնը:

Գրադարանում իրականացուած 22-ից աւելի բազմաբովանդակ միջոցառումների, կրթական բազմազան ծրագրերի արդիւնքում գրանցուել է 1363 նոր ընթերցող, իսկ այցելութիւնների քանակը կազմել է 21502:

Իրականացուել են նաեւ տարաբնոյթ կրթական սեմինարներ՝ ընթերցողների եւ ոլորտի ներկայացուցիչների մասնակցութեամբ:

Շարունակուել է անգլերէնի եւ շախմատի խմբակների գործունէութիւնը, գրադարանում գործող տիկնիկային թատրոնը բեմադրել է *Շունն ու կատուն*, *Չարի վերջը* ներկայացումները եւ հրազդանցի բարերարների աջակցութեամբ շրջել մարզի մի շարք բնակավայրերում:

Ամռանն իրենց մասնագիտական հմտութիւններն ու կարողութիւններն են կատարելագործել գրադարանի աշխատակիցները՝ գրադարանում կազմակերպելով լաւագոյն փորձի փոխանակում: Նրանք մասնակցել են նաեւ Խնկոյ Ապոր անուան ազգային մանկական գրադարանում իրականացուող գրադարանավարների վերապատրաստման դասընթացներին:

## ԲԱՔՒՈՒՄ ԱՒԱՐՏՈՒԵԼ Է ԼՂ ՆԱԽԿԻՆ ՌԱԶՄԱՔԱՂԱՔԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ԴԷՄ ՇԻՆԾՈՒ ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾԻ ՆԱԽԱՔՆՆՈՒԹԻՒՆԸ

Ադրբէջանում Լեռնային Ղարաբաղի նախկին ռազմաքաղաքական ղեկավարների նկատմամբ յարուցուած շինծու քրէական գործի նախաքննութիւնն աւարտուել է, նիւթերն առաջիկայում կը ներկայացուեն դատարան:

*NEWS.ru*-ի հետ զրոյցում Ադրբէջանի գլխաւոր դատախազ Քիամրան Ալիեւը յայտարարել է, որ հիմա քրէական գործի նախաքննութիւնն աւարտուել է, այս պահին գործի նիւթերին «ծանօթանում են ինչպէս մեղադրեալները, այնպէս էլ տուժածները»:

«Այս բոլոր քննչական միջոցառումներն իրականացնելուց յետոյ գործը կ'ուղարկուի դատարան՝ ըստ էութեան քննութեան՝ միջազգային չափանիշներին եւ Ադրբէջանի քրէական իրաւունքին համապատասխան», - ասել է Ալիեւը:

↳ 4

ԽՈՀԵՐ

## ԵՐՋԱՆԻ՞Կ Է ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՄԱՐԴԸ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Հասարակական կեանքը՝ համայնքային իմաստով, ձախողած է դրամատիրական հասարակարգին մէջ: Ակումբի մէջ ընկերներով նստիլը, սրճարանի մէջ ընկերներով զուարճանալը տակաւին համայնքային կեանք չեն: Ժամանց են՝ անցողիկ տրամադրութեամբ: Երջանկութիւն չեն խորքային եւ տեւական իմաստով:

Երբ մտաւորականը, արուեստագէտը կը պայքարի ստանալու համար մրցանակ մը, շքանշան մը, արժանանալու դրական քննախօսականի մը, իր երջանկութիւնը բեւեռացուցած կ'ըլլայ այդ կէտերէն մէկուն շուրջ, որուն ստացումէն եւ զգացմունքային սառեցումէն ետք կը սկսի փնտռել այլ կէտեր: Մինչդեռ գերագոյն երջանկութիւնը պէտք է ըլլար ստեղծագործական ընթացքը՝ յաւերժ շարժումով, շարժումի ուղղութեան քաջ գիտակցութեամբ, անձնական հարթակի տիրապետութեամբ, հեռանկարով բայց առանց նպատակակէտի: Մրցանակային կամ շքանշանային կէտը կրնար փոխարինուիլ՝ եթէ մտաւորական հասարակութիւնը ունենար համայնքային, այլ ոչ հիմնարկային, հաղորդակցութեան մեքանիզմներ, ուր մշտական ստեղծագործականութիւն-հաղորդակցութիւնը պիտի բերէին երջանկութեան կայունութիւն:

Մի կարծէք որ երջանիկ է մեծահարուստը իր դրամով: Մեծահարուստ, այսինքն՝ դրամատէր, այսինքն՝ ցմահ կառչում դրամին եւ կախուածութիւն անկէ: Դրամով՝ իշխանութիւն, հասարակական դիրք, ինքնադիրքաւորում, հետեւաբար՝ ոչ-համայնքայնութիւն, բայց նաեւ կառչում իրի մը՝ որ ոչ հոգեկան վայելք կրնայ պատճառել, ոչ ներքին անդորրութիւն, ոչ ալ համերաշխութիւն ինքն իր հետ: Դրամով կրնայ գնել կին, զաւակ (անշուշտ՝ փոխաբերական իմաստով), ամառանոց, առանձնատուն, բայց որքա՞ն ժամանակ պիտի ունենայ վայելելու այս բոլորը, քանի որ դրամ վաստակելն ինքնին կարօտ է յաւերժ ժամանակի, դրամով պիտի վաստակի աւելի դրամ, ժամանակի մէջ վաստակածը պիտի կրկնապատկէ յաւելեալ ժամանակի մէջ: Ան երբեք հանգիստ պիտի չըլլայ շրջապատին հետ, քանի որ դրամատիրական կուտակումը կը պահանջէ բացասական յարաբերութիւն-մրցակցութիւն ուրիշի հանդէպ, հակառակ հանրային պատկերին մէջ դիտաւորեալ կերպով արմատաւորուած «արդար մրցակցութիւն» գաղափարին՝ իր ողջ արհեստականութեամբ հանդերձ:

Մինչ դրամատէրին կեանքը ցմահ պիտի տնօրինէ դրամը, իր ձեռքին տակ աշխատող պաշտօնեան պիտի ապրի օրապահիկը չկորսնցնելու մտահոգութեամբ: Երջանի՞կ է արդեօք պաշտօնեան՝ որ ամէն օր պէտք է կատարէ իր ղեկավարի հրամանները:

Երջանի՞կ են աշխարհի թիւ 1 նուագախումբը հռչակուած Պեռլինի Ֆիլհարմոնիքի նուագողները: Անոնք կը ներկայանան իբրեւ հասարակական դասակարգ աշխարհի նուագախումբերու նուագողներուն մէջ: Գլխաւոր նուագավարը կ'ընտրուի բոլոր նուագողներու դրական քուէարկութեամբ, մէկ բացասական ձայնը պիտի խափանէ գլխաւորի նշանակումը, հետեւաբար իւրաքանչիւր նուագող կը ներկայանայ իբրեւ կարեւոր ենթակայ (subject): Բայց, միեւնոյնն է, ամէն օր պիտի երթայ փորձի, տառացիօրէն վերարտադրելու համար նուագավարի ցանկութիւն-հրամանները: Այլապէս պիտի հեռացուի աշխատանքէ: Երջանի՞կ է արդեօք ամէն օր ուրիշին հրամանը կատարող երաժիշտը:

Երջանի՞կ են արդեօք արդի բջիջային ընտանիքի ծնողները, երբ ամէն օր «ստիպուած» են իրենց զաւակներուն դիմել՝ «այսինչ բանը մի ըներ», «այնինչ բանին ձեռք չտաս» եւ այլ արգիլող հրամաններով, փոխանակ ժամանակ տրամադրել զրուցելու, հաղորդակցելու եւ միտքեր փոխանակելու անոնց հետ, մինչ զաւակները, ի տես ժխտողականութեան, կը ձգտին բացասական անկախութեան եւ ինքնուրոյնութեան: Եւ այս բոլորը, հակառակ ընտանիքի մասին կատարեալ պատկեր ստեղծելու հրամայականին:

Երջանի՞կ են սփիւռքահայ ղեկավարները՝ որոնք ամէն բան են Սփիւռքի աւանդապէս կառավարուող գաղութներուն մէջ: Առաջին շարք նստիլ, թերթի հարցազրոյց մը տալ, սեփական լուսանկար մը դիտել թերթին մէջ, պաշտօնեաներու եւ պահակներու յոտընկայս բարեւները ընդունիլ, զինուորագրել անդամներ, կը կարծէ՞ք որ երջանիկ կը դարձնեն ղեկավարին:

Երջանիկ՝ ներքնապէս, հոգեւորապէս եւ մտաւորապէս հաւասարօրէն, երջանկութիւն՝ իբրեւ համերաշխութիւն ինքն իր հետ, իր անձին հետ, իր ներաշխարհին հետ, համերաշխութիւն՝ որ կու գայ փոխարինել եսապաշտ ինքնակեդրոնացումը, երջանկութիւն՝ որ կը բխի ներսէն, կը շարժի ներսէն դուրս, այլ ոչ թէ հիմնուած է վերոյիշեալ դուրսէն ներս մտնող դէպքերուն վրայ:

# ՋԱՀԱԿԻՐ

## 1 ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱՍՏԱՏԵՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԵՋԱՆԻ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ...

Սահմանադրական դատարանում կառավարութեան ներկայացուցիչ կը լինի փոխվարչապետ Մհեր Գրիգորեանը։

Հայաստանի կառավարութիւնը Սեպտեմբերի 2-ին հրապարակել է Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ սահմանազատման յանձնաժողովների համատեղ գործունէութեան կանոնակարգը, որն օրերս Հայաստանն ու Ադրբէջանը համաձայնեցրել եւ ստորագրել էին։ Կանոնակարգում նշւում է, որ յանձնաժողովները կը հիմնուեն 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագրի վրայ որպէս Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ պետական սահմանի սահմանազատման գործընթացի հիմնարար սկզբունք (եթէ յետագայում Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան եւ միջպետական յարաբերութիւնների հաստատման համաձայնագրով կը նախատեսուեն այլ կարգաւորումներ, ապա տուեալ հիմնարար սկզբունքը կը համապատասխանեցուի վերը նշուած համաձայնագրով սահմանուած սկզբունքներին)։

## 1 ԱՄՆ ՄԶԳ-Ն 130 ՄԻԼԻՈՆ ԴՈԼԱՐՈՎ ԱՒԵԼԱՑՆՈՒՄ Է

թեանը՝ յանուն ժողովրդավարական համախմբման ամրապնդման, տնտեսական կառավարման ուժեղացմանը, թիրախային ոլորտների մրցունակութեան բարձրացմանը, բնական պաշարների կայուն կառավարման բարելաւմանը։

Փոփոխութեան նախագծի ստորագրումը կը նպաստի Համաձայնագրով սահմանուած հիմնական նպատակների իրականացմանը՝ արդիւնաւէտ եւ հաշուետու կառավարման, ժողովրդավարական ձեռքբերումները պահպանելու, ինչպէս նաեւ տնտեսական մարտահրաւէրները յաղթահարելու ուղղութիւններով։

## 2 ՌՈՒՍԱՍՏԱՆԻՑ ՀԱՅԱՍՏԱՆ ԵԿՈՂ...

Հայաստանի զբօսաշրջային աճն ապահոված երկրների ցանկում։ Այս ցանկում են նաեւ Վրաստանը, Իրանն ու Միացեալ Նահանգները։

Զբօսաշրջութեան Կոմիտէի միջազգային համագործակցութեան վարչութեան պետի տեղակալ Անուշ Բաբայեանի դիտարկմամբ դրանք այն երկրներն են, որոնք Հայաստանի համար հանդիսանում են հիմնական շուկաներ.

«Վերջին տարիներին զբօսաշրջային այցելութիւնների որոշակի աճ է գրանցուել մի շարք այլ երկրներից, այդ թւում Հնդկաստանից, Ֆիլիպիններից եւ Չինաստանից՝ որոշակիօրէն լրացնելով Ռուսաստանից այցելութիւնների նուազման հետեւանքով ձեւաւորուած բացը»։

Հիմնական շուկաներ են դիտարկւում նաեւ եւրոպական երկրները, մասնաւորապէս՝ Ֆրանսիան եւ Գերմանիան։

**Նախաքովիդեան ժամանակաշրջանի համեմատ աճ է գրանցուել**

Միայն Յուլիս ամսին Հայաստան է եկել շուրջ 237,600 զբօսաշրջիկ՝ շուրջ 31 տոկոսով աւելի, քան Յունիս ամսին։ 2023 թ.-ի Յուլիս ամսուայ համեմատ, սակայն, 6-7 տոկոս նուազում է նկատուել։

Անուշ Բաբայեանն ասում է՝ եթէ համեմատական անցկացնենք 2019 թուականի հետ, երբ դեռեւս չկար կորոնավիրուսի համավարակ, ապա կարող ենք արձանագրել, որ գրանցուել է զբօսաշրջային այցելութիւնների թուի աճ՝ շուրջ 21 տոկոսով։

«Միայն 2019 թ.-ի Յուլիս ամսուայ համեմատ զբօսաշրջիկների թիւն այս տարուայ Յուլիսին աճել է շուրջ 17 տոկոսով», - շեշտել է նա։

**Նախընտրելի ուղղութիւններն են Սեւանը, Դիլիջանը, Ծաղկաձորը**

Տուրիստական գործակալութիւնների փոխանցմամբ՝ Հայաստան այցելող զբօսաշրջիկների նախասիրութիւնները փոխուել են։ Ասում են՝ նախկինում ամենապահանջուած ուղղութիւններն էին Նորավանքը, Տաթեւի վանական համալիրը, Խնձորեսկն ու Սատանի կամուրջը։ Այս տարի, սակայն, այլ պատկեր է։

«Զբօսաշրջիկները նախընտրում են դէպի Սեւան, Դիլիջան, Ծաղկաձոր ուղղութիւնները, ինչպէս նաեւ Լոռին, որն այս տարի շատ աւելի ակտիւ է, քան նախորդ տարիներին», - պատմել է գործակալութիւններից մէկի տնօրէնը։

Ըստ զբօսաշրջային գործակալութիւնների՝ վերջին տարիներին բաւականին մեծացել է նաեւ արկածային եւ էքստրեմալ հանգիստ նախընտրող զբօսաշրջիկների թիւը։

*JAMnews*

## 1 ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՆՈՒԱԶՈՂ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԹՈՒՐՔԻՈՅ ՀԵՏ

հասարակական ուշադրութեան, եւ անհուն ազդեցութիւն ունեցաւ ազըրպէյճանական հանրային երեւակայութեան մէջ ձեւաւորելու հրեաներուն պատկերը իբրեւ բարեկամ ազգ, երեւակայութիւն՝ որ կախարդուած է սեւեռուն բարեկամ-թշնամի տարբերութեամբ՝ հիմնուած հակահայկական հակառակութեան վրայ, ինչպէս նաեւ հնազանդութեան պետութեան նկատմամբ՝ իբրեւ սուրբ եւ ապահովութիւն մատակարարող գոյացութիւն։

Նման զգացական զուգորդութիւններուն համատեղ, Իսրայէլ նաեւ նիւթապէս մեծապէս նպաստեց Ազըրպէյճանի ռազմական նուաճումներուն։ Իսրայէլի զէնքերու արտահանումները մեծ դեր խաղացին 2020-ի պատերազմի Ազըրպէյճանի յաղթանակին մէջ եւ 2023-ի Լեռնային Ղարաբաղի բախումներուն, ուր մասնաւորապէս գործածուեցան Իսրայէլի արտադրած պարեկող զինամթերքը (loitering munition)՝ HAROP։ Փոխարէնը, Ազըրպէյճան Իսրայէլին կը հայթայթէ քարիւղ, ինչպէս նաեւ երկիրէն ներս կը ճնշէ Իրանին համակրող Շիա այլախոհները, Արեւմտեան գործընկերներուն նման յենարան ունենալով խսլամական ծայրայեղականութեան ուրուականը։

**Համաթրքական (փանթրքական) հակաքաղաքականութիւն**

Արաբ պետութիւններուն եւ մշակոյթին նկատմամբ վերաբերմունքը նոյնպէս Ազըրպէյճանի դիրքորոշումի գործօն մըն է։ Յատկապէս 2020-ի պատերազմէն ի վեր, պետութեան հանդէպ աշխարհիկ հաւատարմութեան ընկերացման համաթրքական գաղափարները՝ ազըրպէյճանական պետութիւնը թրքական պետութիւն է եւ մաս մըն է թրքական աշխարհին, տեսակէտ մը զոր նախագահ Ալիեւ շեշտեց 2024-ի երդմնակալութեան ելոյթին։ Համաթրքական եւ համազգային թուրանական գաղափարները խոր հետքեր թողած են Ազըրպէյճանի ինքնընկալումին մէջ 1990-ականներէն սկսեալ։

Նման գաղափարներու կողքին, բազմաթիւ ազըրպէյճանցիներ համոզուած են՝ որ արաբները բռնի ուժով իրենց բերին իսլամը, եւ իրենք իրենց կարգին 9-րդ դարուն կռուեցան արաբական նուաճողականութեան դէմ։ Իսլամի նկատմամբ նման տեսակէտ խիստ լուսանցքային է Թուրքիոյ մէջ։ Արդարեւ, Ազըրպէյճանի մէջ այս պատումը կը դասաւանդուէր Խորհրդային ժամանակներէն ի վեր, երբ առաջապէսներու ստեղծումը մաս կը կազմէր բնիկայնացումի (nativisation) եւ հակակրօնական աշխարհիկացումի քաղաքականութեան։ Օրինակ, նորզրադաշտական պաշտամունքի առաջնորդ Պապաքը՝ որ կ'առաջնորդէր արաբներու դէմ դիմադրութեան շարժումը տարածաշրջանին մէջ, Խորհրդային Ազըրպէյճանի դասագիրքերուն, ինչպէս նաեւ 1979-ի յայտնի ֆիլմին մէջ կը ներկայացուէր իբրեւ էթնիք ազըրպէյճանցի, փաստելու համար ազըրպէյճանցիներուն բնիկութիւնը երկրամասին։

Իսրայէլի ի նպաստ Ազըրպէյճանի դիրքորոշումին վերջին պատճառը կրկին մեզի կը տանի Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան։

Բազմաթիւ ազըրպէյճանցիներ համոզուած են՝ որ պաղեստինցիները աջակցած են Հայաստանին, յատկապէս ողբացեալ պաղեստինեան առաջնորդ Եասէր Արաֆաթը, համոզում մը՝ որ հերքուեցաւ։ Այս զուգորդութեան աղբիւրներէն մէկը կը սերի 1970-ական թուականներու Հայաստանի Ազատագրութեան Հայ Գաղտնի Բանակի ներգրաւուածութենէն Իսրայէլի դէմ լիբանանեան գործողութիւններուն։ Տխրահռչակ խումբը գաղտնի յարձակումներ կազմակերպեց թուրք դիւանագէտներու դէմ եւ Ազըրպէյճանի մէջ ճանչցուեցաւ իբրեւ ահաբեկչական կազմակերպութիւն։ Ռազմական կազմակերպութեան առաջնորդներէն մէկը՝ Մոնթէ Մելքոնեան, կռուեցաւ եւ մահացաւ Լեռնային Ղարաբաղի Առաջին Պատերազմին եւ Ազըրպէյճանի կողմէ ամբաստանուեցաւ պատերազմի ոճիրներով։ Հետեւաբար, խումբը առնչուեցաւ արաբ ժողովուրդներուն հետ՝ առանց լրացուցիչ հետաքննութեան։

Այս պատճառներով, բազմաթիւ ազըրպէյճանցիներ ինքզինքնին օտարացած կը զգան Թուրքիոյ պաղեստինեան աջակցութենէն կամ կ'ընդդիմանան անոր։ Իբր հետեւանք, հակամարտութիւնը զգալի փոփոխութիւն յառաջացուց Թուրքիոյ Էրտողանի՝ իբրեւ Ազըրպէյճանի գլխաւոր դաշնակիցի ընկալումին մէջ Լեռնային Ղարաբաղի Պատերազմի աւարտէն ի վեր։

**Պատասխանելով Էրտողանին**

Էրտողանի յայտարարութենէն երկու օր ետք՝ Օգոստոս 1-ին, Ազըրպէյճանի պաշտօնական պետական լրագիրները հրատարակեցին տէ ֆաքթօ պատասխան մը։ Յօդուածի խորագիրն էր՝ «Ղարաբաղի յաղթանակի հեղինակն է Յաղթական Գերագոյն Գլխաւոր Հրամանատարը եւ Ազըրպէյճանի Բանակը»։ Յօդուածը կը նկարագրէ Էրտողանի յայտարարութիւնը՝ օգտագործելով Ազըրպէյճանի մէջ լայնօրէն ընդունուած փոխաբերութիւնը՝ «ջուր լեցնելով հայկական ջրաղացին»։

Յօդուածը կը շեշտէ ժողովուրդի, բանակի եւ Ազըրպէյճանի նախագահի միասնականութիւնը յաղթանակին մէջ։ Հեղինակը նաեւ կը յիշեցնէ ընթերցողներուն Ազըրպէյճանի տուած տարբեր նպաստները Թուրքիոյ, ինչպէս երկրաշարժէն ետք օգնութեան հայթայթումը Քահրամանմարաշ [Մարաշ] քաղաքին, եւ թրքական ընկերութիւններուն հրաւիրումը գործելու Լեռնային Ղարաբաղի մէջ, միաժամանակ շեշտելով որ «եղբայրութիւնը կը պահանջէ փոխադարձ պատասխանատուութիւններ»։ Առաջ կը քաշուի նաեւ այն կէտը՝ որ Ազըրպէյճան զէնքեր գնած է Թուրքիայէն։ Յօդուածը չի քննարկեր Թուրքիոյ ներգրաւուածութիւնը Պաղեստինի մէջ։

Մինչ նման ճեղքեր կը յայտնուին եւ կը սպառնան ընդլայնուիլ, Թուրքիոյ հետ Ազըրպէյճանի կապերը հաւանաբար պիտի մնան գործնապաշտ եւ գործնական, քիչ մը նման ուժանիւթի վրայ հիմնուած Ազըրպէյճանի քաղաքականութեան Եւրամիութեան հետ։ Կը թուի թէ այլեւս չի պահանջուիր «յատուկ եղբայրութիւնը» եւ երկու երկիրները ընտրած են տարբեր ուղիներ։

*OC Media*

*23 Օգոստոս 2024*

Անգլերէնէ թարգմ.՝ Ա.։

## 3 ԲԱՔՒՈՒՄ ԱՒԱՐՏՈՒԵԼ Է ԼՂ ՆԱԽԿԻՆ ՌԱԶՄԱՔԱՂԱՔԱԿԱՆ

Ադրբէջանը հաստատում է իր մօտ 23 հայ գերու առկայութիւնը։ Բաքւում ապօրինի պահուող անձանց թւում են նաեւ Լեռնային Ղարաբաղի նախկին նախագահները՝ Արկադի Ղուկասեանը, Բակօ Սահակեանը, Արայիկ Յարութիւնեանը, ինչպէս նաեւ ԼՂ նախկին պետնախարար Ռուբէն Վարդանեանը, ԱԺ նախագահի պաշտօնը զբաղեցրած Դաւիթ Իշխանեանը, պաշտպանութեան բանակի նախկին հրամանատար Լեւոն Մնացականեանը, ԱԳ նախկին նախարար Դաւիթ Բաբայեանը, պաշտպանութեան նախարարի նախկին տեղակալ Դաւիթ Մանուկեանը, որոնց Ադրբէջանն ապօրինի ձերբակալել եւ կեղծ մեղադրանքներ է առաջադրել 2023 թուականի Սեպտեմբերին Լեռնային Ղարաբաղի դէմ ռազմական ագրեսիայից յետոյ։

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1975 ՀԻՆԳՇԱԲԹԻ 26 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٧٥ الخميس ٢٦ سبتمبر ٢٠٢٤


## ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՄԷՋ ՂԱՐԱԲԱՂԻ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԵՐԱԶՄԷՆ ԵՏՔ ԵՒ ՓՈԽՈՒՈՂ ՆԵՐՔԻՆ ՏՐԱՄԱՍԱՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

**ՊԱՀՐՈՒԶ ՍԱՄԱՏՈՎ**

*Ազըրպէյճանցի գրող Պահրուզ Սամատով, որուն յօդուածներէն մէկը թարգմանեցինք* Ջահակիրի *անցեալ թիւին մէջ, Օգոստոս 21-ին ձերբակալուած էր Պաքուի մէջ դաւաճանութեան յօդուածով: Ան մինչեւ այսօր կը պահուի Ազըրպէյճանի Պետական Ապահովութեան Կեդրոնին մէջ:*

*Սոյն անգլերէն յօդուած-ուսումնասիրութիւնը հրատարակած էր 2021 Դեկտեմբերին, Վրաստանի Քաղաքականութեան Ինսթիթութի (Georgian Institute of Politics)* Policy Brief *հանդէսին մէջ: Բնականաբար, զուտ տեղեկութիւններու առումով նորութիւններ կան այդ թուականէն ի վեր, բայց բովանդակած իմաստները կարեւոր են հասկնալու Ազըրպէյճանի ներքին կուսակցական դաշտը:*

*Ջ.*

**ԱՄՓՈՓՈՒՄ**

Ղարաբաղի Երկրորդ Պատերազմը խորապէս ազդեց Ազըրպէյճանի հասարակութեան եւ ազգային ինքնութեան վրայ: Յետպատերազմական ներքին քաղաքականութեան գլխաւոր ուղղութիւնը թելադրուած էր պատերազմի արդիւնքներուն պատճառած նշանակալի փոփոխութիւններով: Յաղթանակը մեծապէս ամրապնդեց նախագահ Իլհամ Ալիեւի օրինականութիւնը, որ պատերազմէն քանի մը ամիս առաջ երկխօսութեան գործընթաց մը սկսաւ ներքին ընդդիմութեան հետ: Մինչ որոշ կուսակցութիւններ ընդունեցին երկխօսութեան առաջարկը, հիմնահոսանքի ընդդիմութիւնը քննադատաբար մօտեցաւ անոր: Պատերազմէն եւ անոր արդիւնքէն ետք նշանակալիօրէն աւելցաւ ժողովրդական աջակցութիւնը կառավարութեան: Սոյն համառօտագիրը կը վերլուծէ Ազըրպէյճանի քաղաքական կուսակցութիւններուն փոխուող տրամասացութիւնները (discourses), կեդրոնանալով հիմնահոսանքի եւ նոր կուսակցութիւններուն վրայ, միաժամանակ հաշուի առնելով նաեւ յառաջադէմ եւ մեկուսացուած խաղացողները: Այս փոփոխութիւնները կը բովանդակեն հակամարտութեան հետեւանքներուն քննադատական ընկալումը, տարածաշրջանին մէջ ռուսական ներկայութեան քննադատութիւնը եւ աջ փոփիւլիզմը: Համառօտագիրս նաեւ առաջարկութիւններ կը ներկայացնէ ԵՄ-ին եւ ԱՄՆ-ին՝ առնչուելու համար Ազըրպէյճանի ներքին քաղաքական փոփոխութիւններուն:

**ՆԱԽԱԲԱՆ**

1994-ի հրադադարէն ետք երբեք չէր անտեսուած Ղարաբաղի մէջ ուրիշ պատերազմի մը հնարաւորութիւնը: Երկրորդ պատերազմը համահունչ էր ժողովրդական պահանջին՝ Ազըրպէյճանի եւ Հայաստանի միջեւ 2020 Յուլիսի բախումներու ընթացքին տեղի ունեցած մեծ կորուստներէն ետք: Սեպտեմբեր 27-ին կը սկսի բուռն զինուած հակամարտութիւն, որ կը տեւէ մինչեւ Նոյեմբեր 20, երբ Ռուսաստանի միջնորդութեամբ կողմերը կը ստորագրեն հրադադար: Ազըրպէյճան կը վերականգնէ նախապէս գրաւուած եօթը տարածքներուն վերահսկողութիւնը, առաւել Շուշին՝ որ նախքան առաջին պատերազմը (1988-1994) բնակեցուած էր գլխաւորապէս էթնիք ազըրպէյճանցիներով, ինչպէս նաեւ հայաբնակ Հադրութի շրջանը: Վերանորոգելի հնգամեայ ռուսական խաղաղապահ առաքելութիւնը այժմ կը գտնուի Լեռնային Ղարաբաղի հայաբնակ հատուածներուն մէջ: Լեռնային Ղարաբաղի 44-օրեայ պատերազմին արդիւնքը ազդեց ամբողջ տարածաշրջանին վրայ եւ նշանակալի փոփոխութիւններ յառաջացուց Ազըրպէյճանի հասարակական-քաղաքական իրականութեան մէջ: Սոյն համառօտագիրը կը վերլուծէ յետպատերազմական Ազըրպէյճանի ներկայ քաղաքական կերպարանքը, կեդրոնանալով քաղաքական գործիչներու տրամասացութիւններուն եւ միտումներուն վրայ: Այս նշանակալի հասարակական փոփոխութիւնները կենսական նշանակութիւն ունին Ազըրպէյճանի մէջ միջազգային համայնքի եւ հասարակական կազմակերպութիւններու (ՀԿ) յետագայ քայլերուն եւ ռազմավարութիւններուն համար:

**ՄԻԱՍՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԸՆԹԱՑՔԻՆ**

Ղարաբաղի առաջին պատերազմի (1988-1994) տարածքներու կորուստի ցնցումային (traumatic) հարուածը՝ վրէժի եւ Լեռնային Ղարաբաղը վերագրաւելու երազը դարձուց ազըրպէյճանական ազգային համայնքի գերիշխող գաղափարը, անկախ քաղաքական պատկանելութենէ(1): Երկրորդ պատերազմի ընթացքին, Ազըրպէյճան ականատես եղաւ աննախադէպ ազգային միասնութեան: Նախագահ Ալիեւի ժողովրդականութիւնը հասաւ իր գագաթնակէտին. ժողովուրդը ուշադրութեամբ կը հետեւէր անոր ճառերուն, հարցազրոյցներուն եւ թուիթերուն (tweets): Կտրուկ կերպով աճեցաւ աջակցութիւնը նախագահ Իլհամ Ալիեւին եւ ընդդիմադիր կուսակցութիւններն ու քաղաքացիական հասարակութիւնը արտայայտեցին իրենց ուղղակի աջակցութիւնը՝ յանուն ազգային միասնականութեան եւ հայրենիքի: 2020 Սեպտեմբեր 27-ին, 50 կուսակցութիւններ ստորագրեցին համատեղ յայտարարութիւն «Ազըրպէյճանի դէմ հայկական սադրանք»-ի մասին(2), պնդելով՝ որ ռազմական յարձակումը սկսած է հայկական կողմը: Ցուցակը չի բովանդակեր Ժողովրդական Ճակատ եւ Մուսաւաթ հիմնահոսանքային ընդդիմադիր կուսակցութիւնները եւ կ'ընդգրկէ Հանրապետական Այլընտրանքը եւ աջակողմեայ փոփիւլիսթական Ճերմակ Կուսակցութիւնը: Ցուցակի կուսակցութիւններուն մեծամասնութիւնը գործող չէ: Բայց եւ այնպէս, յայտարարութիւնը տարածեց ազգային միասնութեան ուղերձը ներքին եւ արտաքին լսարաններուն համար: Հակառակ որ Ժողովրդական Ճակատը չստորագրեց յայտարարութիւնը, ազգային միասնութեան մթնոլորտին մէջ որոշեց չմեկուսացուիլ եւ ընդունեց նախագահ Ալիեւի դերը յաղթանակին մէջ(3):

Ազըրպէյճանի թուացեալ ազգային միութեան համատեղ, քանի մը աքթիւիսթներ ընդդիմացան պատերազմին, իրենց հանրային ցանցերու (social media) լուսանկարները պիտակելով «Ոչ պատերազմ» վերնագիրով: Հակառազմական տրամասացութիւնը մնաց վիրթիւալ տարածքին մէջ եւ գլխաւորապէս ներառեց հանրային ցանցերու քննադատական գրառումներ եւ հակապատերազմական յայտարարութիւններ: Հակառազմականները դիմագրաւեցին ոտնձգութիւններ, հրապարակային նախատինք եւ սպառնալիք(4): Այս աքթիւիսթներէն շատերը կը պատկանին յառաջադէմ շրջանակներու, ինչպէս ֆեմինիսթներ եւ ձախ թեքումով երիտասարդութիւն: Յատկանշական է՝ որ պետութեան ապահովութեան ծառայութիւնները չհալածեցին զանոնք «հակառազմական» գործողութիւններու համար: Ասիկա կարելի է բացատրել այն իրականութեամբ՝ որ Ազըրպէյճանի պետական ապահովութեան ծառայութիւնները կը ճնշեն այն խումբերը, որոնք կրնան մարտահրաւէր նետել պաշտօնական տրամասացութեան եւ զօրաշարժել ժողովուրդը, օրինակ՝ Ժողովրդական Ճակատ Կուսակցութեան անդամները: Մեկուսացեալ ձայները կ'արժանանան համատարած ատելութեան եւ ոչ մէկ ներուժականութիւն ունին զօրաշարժելու:

Միւս պատճառը այն է՝ որ կառավարութիւնը ցանկութիւն չունէր յաւելեալ բացասական մամուլ դիզել օտար լրատուամիջոցներուն մէջ:

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ՆԱԽԱՏԻՊԻ ԵՒ ԻՐԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

Համաշխարհային Հայկական Երկրորդ Գագաթնաժողովին վարչապետ Նիկոլ Փաշինեան խօսեցաւ հայրենասիրութեան կայսերական նախատիպի (մոդել) մասին եւ ներկայացուց՝ թէ ինչ նպատակ ունի հայրենասիրութեան այդ նախատիպի ներդրումը Հայաստանի մէջ.

«Ես ձեզ կ'ասեմ այնպէս, ինչպէս ասում եմ իմ ընտանիքին. ամենամեծ խնդիրը, որ մենք ունեցել ենք, դա եղել է մեր հայրենասիրութիւնը: Ընդ որում, ասածի մէջ հեգնանք չկայ, սարկազմ չկայ: Ամենամեծ խնդիրը, որ ես ունեցել եմ, եղել է իմ հայրենասիրութիւնը՝ այն ընկալմամբ, որ հայրենասիրութեան այդ մոդէլը մեր հայրենիքի հետ կապ չունի: Ուղղակի դա կայսերական հայրենասիրութեան մոդէլ է, որը գրքերով, ֆիլմերով, տեքստերով, ելոյթներով, կերպարներով, նկարներով ներմուծուել է մեր սոցիալ-հոգեբանութիւն»:

Ըստ վարչապետին՝ հայրենասիրութեան կայսերական նախատիպի նպատակն է՝ որ Հայաստանի անկախ եւ ինքնիշխան պետութիւն գոյութիւն չունենայ.

«Մեր անկախութեան առաջին օրուանից մենք հռչակել ենք մեր անկախութիւնը հայրենասիրութեան այն մոդէլի հիման վրայ, որի համաձայն մենք անկախ պետութիւն պէտք է չունենանք», - ընդգծեց Փաշինեանը: Վարչապետի կարծիքով՝ հայրենասիրութեան կայսերական մոդէլի բովանդակութիւնը նրա համար է, որ Հայաստանն իրական հայրենիք չունենայ, այլ ուղղակի տեսական՝ «պատից կախուած, կենացների ժամանակ»:

↳ 3

## ԵԳԻՊՏԱՑԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐԸ՝ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ԳԱՒԱՌՈՒՄ

Հայաստանի ԿԳՄՍ Նախարարութեան եւ Եգիպտոսի Երիտասարդութեան եւ Սպորտի Նախարարութեան միջեւ «Երիտասարդութեան ոլորտում համագործակցութեան մասին» համաձայնագրի շրջանակներում առաջին անգամ ճանաչողական այցով Հայաստանում են եգիպտացի երիտասարդները:

Եգիպտացի երիտասարդները հիւրընկալուել են 2024 թուականի երիտասարդական մայրաքաղաք Գաւառում:

Երիտասարդներին ուղեկցել են ԿԳՄՍ նախարարութեան աշխատակիցներ ու միջազգային ծրագրերի մասնակցած հայ երիտասարդներ:

Գաւառի համայնքապետարանում նրանք հանդիպում են ունեցել համայնքի ղեկավարի առաջին տեղակալ Գրիգոր Դաշտոյեանի եւ համայնքապետարանի աշխատակիցների հետ:

Ծրագրերի պատասխանատու Յակոբ Սարգսեանը ներկայացրել է Գաւառ համայնքի երիտասարդական քաղաքականութեան առանձնայատկութիւնները, երիտասարդների համագործակցութիւնը համայնքային, պետական եւ միջազգային կազմակերպութիւնների հետ, ինչպէս նաեւ՝ իրականացուող ու նախատեսուող ծրագրերը:

Քննարկուել են նաեւ յետագայ համագործակցութեան եւ համատեղ ծրագրերի իրականացման մասին հարցեր:

Գաւառում Եգիպտոսի երիտասարդական պատուիրակութիւնն այցելել է նաեւ Երիտասարդների Տուն բաց երիտասարդական կենտրոն:

Եգիպտացի եւ հայ երիտասարդները Երեւանում ունեցել են մշակութային ու ճանաչողական այցեր եւ հանդիպումներ:

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԱՆՈՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵՒ ԿՆՈՋ ՔՈՒԷԱՐԿՈՒԹԵԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԱԿԱՆ ՃԱԿԱՏ**

1975 Հոկտեմբեր 26-ին, Գահիրէի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները տեղի կ'ունենան «Համագործակցական ճակատ» անունին տակ, ուր համաձայնեցուած համաչափութեամբ Թեմականի 24 թեկնածուներուն աթոռները կը բաժնուին *Արեւ*ի, *Յուսաբեր*ի եւ *Զահակիր*ի շրջանակներուն միջեւ, այսինքն՝ երեք կուսակցութիւններուն, բայց ոչ կուսակցութիւններէն դուրս(24): Կը վերջանայ աթոռի կուսակցական պայքարը, գոնէ անոր առերեւոյթ կողմը, լրագիրներուն հրահանգ կը տրուի չքննադատել միւս կողմը: Բնականաբար, Թեմականի «համագործակցական» նախասահմանեալ ցանկէն դուրս մնացող անհատները նուազագոյն հաւանականութիւն պիտի ունենային բաւարար քուէներ հաւաքելով Թեմականի անդամ դառնալ, նկատի առնելով կուսակցութիւններուն ունեցած իշխանութիւնը գաղութիս վրայ:

Ուշադրութիւն՝ այս նոր կարգը նոր Կանոնագրութիւն չէ, այլ ամբողջապէս կը գործէ 1956-ի Կանոնագրութեան Յօդուածներու սահմաններուն մէջ:

Նմանատիպ քայլի կը դիմէ Աղեքսանդրիան 1975 Նոյեմբեր 9-ի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւններուն, ուր միասնական ցանկով հանդէս կու գան՝ Յառաջդիմասէր Մշակութային Միութիւն (Դաշնակցութիւն), Անկախներու Համախմբում եւ Տիգրան Երկաթ Մշակութային Միութիւն (Ռամկավար)(25): Նկատողութեան արժանի է Անկախներու Համախմբումը, որ բացակայած է Գահիրէի մէջ: Ան արդիւնքն էր Աղեքսանդրիոյ Թեմականի անկախներու եւ բոլոր կուսակցութիւններու համատեղումի աւանդոյթին, զոր տարիներ առաջ յաջողած էր հաստատել Մարտիկ Զարպհանէլեան՝ կոտրելով միակուսակցական մենատիրութիւնը, եւ որուն պատճառով յաւակնող կուսակցութեան մը մամուլին մէջ 1966-1967-ին ընդունած ամենանողկալի քննադատութիւններու շարք մը: 1975-ի միջկուսակցական յիշեալ համերաշխային համաձայնութիւնը ինքնավերացուց սեփական միակեցական նկրտումները:

Այս սկզբունքը կը գործէ մինչեւ այսօր: Գահիրէ անփոփոխ կը պահէ *Արեւ*ի, *Յուսաբեր*ի եւ *Զահակիր*ի շրջանակներուն սկզբունքը, պատահականօրէն փոխելով միայն վերտառութիւնը՝ «Համագործակցական ճակատ», «Միասնական ճակատ» կամ «Միացեալ ճակատ»:

Աղեքսանդրիոյ պարագային տեղի կ'ունենան որոշ փոփոխութիւններ՝ ըստ աղեքսանդրահայութեան տեղական պայմաններուն: Օրինակ՝ 1984 Մայիս 6-ի ամբողջական ընտրութիւններուն ցանկը կը ստորագրուի՝ «Միջ-Միութենական յանձնախումբ», առանց բաժանումներու(26), 1992 Նոյեմբեր 1-ի ամբողջական ընտրութիւններուն համար կը ներկայացուի՝ «Համերաշխական ընտրական ցանկ», դարձեալ առանց բաժանումներու(27), 1996 Նոյեմբեր 10-ի մասնակի ընտրութիւններու համերաշխական ցանկը կ'արձանագրէ՝ Յառաջդիմասէր Մշակութային Ընկերակցութիւն (Դաշնակցութիւն) եւ Տիգրան Երկաթ Մշակութային Միութիւն (Ռամկավար), ուր արդէն չկայ 1975-ի Անկախներու Համախմբումը(28): Գործուն անկախներ արդէն չկային, չկար Զարպհանէլեան:

1975-ին հաստատուած ըլլալով ընտրական նոր կարգը՝ «համերաշխութիւն» եւ «համագործակցութիւն» անունին տակ, քիչ ետք կը յառաջանայ տղամարդոց եւ կիներուն միջեւ համերաշխութեան հարցը եւ կիներու քուէարկութեան իրաւունքը: Մանաւանդ որ Եգիպտոս 1956-էն ի վեր արտօնած էր կիներու քուէարկութիւնը:

Մարօ Սագայեան *Արեւ*ի մէջ կը վարէր «Կնոջ սիւնակը»: 1979 Նոյեմբեր 11-ի մասնակի ընտրութիւններէն ետք, Դեկտեմբեր 1-ին Սագայեան կը ստորագրէ յօդուած մը՝ «Եգիպտահայ կինը մինչեւ ե՞րբ զրկուած պիտի մնայ քուէարկութեան իրաւունքէն»(29), ուր կիներու մասնակցութեան անհրաժեշտութիւնը կը կապէ ստեղծուած համագործակցային մթնոլորտին. «Գահիրէի թէ Աղեքսանդրիոյ մասնակի ընտրութիւնները համագործակցական եւ համերաշխ մաքուր ոգիով վերջ գտան, այս անգամ եւս նման անցեալի շրջաններուն, առանց որ եգիպտահայ կինը իրաւունք ունենայ ընտրելու եւ ընտրուելու, նման եգիպտացի իր արաբ քրոջը, որ արդէն 1952-ի Յեղափոխութենէն ի վեր իրաւունք ստացած է մուտք գործելու եգիպտական խորհրդարանէն ներս, ընտրելու եւ ընտրուելու»:

Կ'աւելցնէ. «Շատ տարօրինակ կը թուի ինծի, թէ ամենայետամնաց երկիրները նոյնիսկ, կը մտածեն համաձայն ներկայի պահանջքներուն, եւ նոյնիսկ սկսած են ծրագրել մինչեւ երկու հազար թուականը, եւ մենք հայերս, որ ծանօթ ենք միջազգային գաղափարին, որպէս հարուստ անցեալ մը ունեցող կենցաղագէտ, շինարար եւ խելացի ու աշխատասէր ազգ մը, սակայն դժբախտաբար սփիւռքի մէջ, մեր գաղութներէն ներս զգալի է դեռ արեւելեան յետամնաց գաղափարները կնոջ նկատմամբ, ու մնացած ենք տեղքայլի վրայ»(30):

Այդ ժամանակ ասպարէզի վրայ գտնուող Հոկտեմբերեան երիտասարդները ուրախ են Սագայեանի յօդուածով, եւ, ինչպէս վերը տեսանք, Վազգէն Բրուտեան հանդէս կու գայ դրական արձագանգով:

1980 Մարտ-Մայիսին, «Կնոջ սիւնակ»-ի յաջորդական թիւերու մէջ Սագայեան կը փորձէ ընդլայնել նիւթը եւ զրուցելով զանազան կիներու հետ՝ ներկայացնել իւրաքանչիւրի կարծիքը:

Օր. Վանիա Էքսէրճեան համոզուած է՝ որ եգիպտահայ կնոջ չի հետաքրքրեր ընտրութիւնները, այլապէս շատոնց պահանջած պիտի ըլլար իր իրաւունքը: Եգիպտահայ կինը զբաղած է արդուզարդով, պտոյտներով, պարահանդէսներով, շքեղ ճաշասրահներով, այցելութիւններով(31):

Նուպարեան Ազգային Վարժարանի ուսուցչուհի Տիկ. Ալիս Ճիզմէճեան կը պահանջէ քուէարկելու եւ քուէարկուելու իրաւունքը, քանի որ այսօր յեղաշրջուած են կնոջ ապրելակերպն ու մտածելակերպը: Շատ ուշ մնացած ենք արդէն(32):

Տիկիններ Անժէլ Եանըգեան, Ալիս Մարգարեան, Ալիս Մազլումեան եւ Լիւսի Փիլիկեան կը կարծեն՝ «թէ կնոջ պարտականութիւնները շատ են տունէն ներս եւ դուրս, մշակութային զանազան ակումբներու օժանդակութեամբ եւայլն. հետեւաբար քուէարկել եւ քուէարկուիլ ու մաս կազմել ազգային իշխանութեան, պիտի կրկնապատկէ իրենց աշխատանքները, պատասխանատուութիւններն ու մտահոգութիւնները, եւ իրենք բնաւ պատրաստ չեն այդ պատասխանատու պաշտօնը եւս ստանձնելու: Անոնք կը նկատեն, որ աւելի լաւ կ'ըլլայ եթէ իրենց տուներէն ներս աւելի խնամեալ եւ բծախնդրօրէն հոգան իրենց ամուսիններուն եւ զաւակներուն, աւելի երկար ժամանակ տրամադրելով տնային գործերուն: Անոնք աւելցուցին թէ արդէն իրենք գաղութին օգտակար կ'ըլլան այլ կերպով, մշակութային սրահներէն ներս, իրենց ունեցած գործունէութեամբ, մաս կազմելով Տիկնանց յանձնախումբերուն»(33):

Տիկ. Շաքէ Երզնկացեան համաձայն է քուէարկել-քուէարկուելու սկզբունքին, բայց ինք անձամբ չի փափաքիր քուէարկուիլ, քանի որ բազմազբաղութեան պատճառով չ'ուզեր հարցին մօտենալ մակերեսային կերպով(34):

Տիկ. Ալիս Տէփոյեան դէմ է կնոջ քուէարկել-քուէարկուելուն, քանի որ «ազատ ժամանակ ունեցող կիները այլապէս կրնան օգտակար հանդիսանալ կնոջ սրտին եւ մտքին աւելի մօտ եղող գործունէութիւններու մէջ, օրինակ, ուսուցչութիւն, բարեգործական, մշակութային աշխատանքներ, եւ յատկապէս ամբողջական նուիրում իրենց զաւակներու դաստիարակութեանը»(35):

Օր. Անահիտ Խաչերեան կը պաշտպանէ կնոջ քուէարկել-քուէարկուելու սկզբունքը եւ համոզուած է ընդհանրապէս կնոջ եւ տղամարդու հաւասարութեան. «Այսօր քսաներորդ դարու վերջաւորութեան սեմին արդէն եգիպտահայ կինը, նետուելով աշխատանքի ասպարէզ, այր մարդու կողքին կը վայելէ նոյնանման յարգանք ու գնահատանք թերեւս աւելիով, հասած են բարձր դիրքերու, մէկ խօսքով կը վայելեն այր մարդու կողքին ամբողջական հաւասարութիւն մը»(36):

Հակառակ ասոր, բան մը չի փոխուիր տակաւին:

**ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԻՆԸ ԿԸ ՔՈՒԷԱՐԿԷ ԵՒ ԿԸ ՔՈՒԷԱՐԿՈՒԻ**

Միայն 1995-ին է որ եգիպտահայ կինը իրաւունք կը ստանայ քուէարկել-քուէարկուելու:

1995 Նոյեմբեր 19, Գահիրէի Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւններուն առաջին անգամ ըլլալով քուէարկելու եւ քուէարկուելու իրաւունք կ'ունենայ եգիպտահայ կինը: Ասիկա տեղի կ'ունենայ ըստ նախապէս գումարուած Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Թեմական Միասնական Ժողովի որոշումին եւ Եգիպտոսի Ներքին Գործոց Նախարարութեան եւ կրօնական գործոց վարչութեան հաւանութեան:

Ինչպէս սովորութիւն է, եգիպտահայ թերթերուն կը ղրկուի ընտրութեան իրաւունք ունեցողներուն ցանկը: 523 անուններէն 58-ը՝ կիներ, այսինքն՝ 11%-ը(37): Եգիպտահայ կիներ կու տան իրենց քուէները:

(Միջանկեալ նշեմ՝ որ թիւերուն զգուշութեամբ պէտք է մօտենալ: Տուեալ թիւերը եգիպտահայ գաղութի վիճակագրութիւնը չեն ներկայացներ, այլ ընտրելու իրաւունք ունեցող ազգայիններուն այն հատուածը՝ որ անձնապէս ընտրելու փափաք յայտնած է եւ լրացուցած յատուկ պատրաստուած անուանաթերթիկներ: Յաճախ նախորդ ընտրութիւններու անուանացանկին մէջ արձանագրուած անունները մեքենայաբար կը փոխանցուէին յաջորդ ցանկին, նոյնիսկ եթէ անձը վերջնականապէս մեկնած ըլլար Եգիպտոսէն: Գաղութի քանակի յաւելեալ նօսրացումի պայմաններուն մէջ, յետագայ տարիներու ցանկերուն մէջ մեքենայաբար աւելցած են անուններ՝ որոնք օրինականօրէն ընտրելու իրաւունք ունին, բայց անձնապէս չեն ներկայացած անուանաթերթիկ լրացնելու: Այստեղ ոչինչ կայ անօրինական, բայց ուզեցի մատնանշել երեւոյթը՝ պարզապէս այդ ցանկերը չընդունելու համար իբրեւ վիճակագրական տուեալներ:)

Հակառակ կարելիութեան, 1995 Նոյեմբեր 19-ի Գահիրէի Թեմական մասնակի ընտրութեան միջկուսակցական համաձայնեցուած ցանկին մէջ կիներ չեն ընդգրկուիր: Բայց պատմական փաստ է, որ երկու կիներ՝ Արաքսի Խաչերեան-Տէրունեան եւ Հերմինէ Վարժապետեան-Պալեան, ստանալով քանի մը քուէներ, հանդիսացան եգիպտահայ պատմութեան առաջին կիները՝ որոնք երբեւէ քուէ ստացած ըլլան Թեմականի ընտրութիւններուն, թէեւ անբաւարար Թեմականին մաս կազմելու(38):

Ըստ համաձայնութեան, Աղեքսանդրիան նոյնպէս կ'որդեգրէ կիներու քուէարկել-քուէարկուելու սկզբունքը 1996 Նոյեմբեր 10-ի Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւններուն(39): Աղեքսանդրիոյ Յառաջդիմասէր Մշակութային Ընկերակցութեան (Դաշնակցութիւն) եւ Տիգրան Երկաթ Մշակութային Միութեան (Ռամկավար) շրջանակներու համագործական ցանկին մէջ եւս կիներ չեն ընդգրկուիր(40): Յայտնի չէ եթէ անկախ կիներ քուէ ստացած ըլլան(41):

Մեկնաբանութեան կարօտ կէտ մըն է, որ կնոջ ընտրողական իրաւունքը 1995-ին կայացաւ գաղութի քանակային եւ մտաւոր տկարացումի պայմաններուն մէջ, երբ ընտրողական քանակը եթէ օրինական անհրաժեշտութիւն մը չէր, գոնէ ներկայացուցչական պահանջ մըն էր, ինչպէս նաեւ պետական մարմիններու դիմաց գոյատեւումը խորհրդանշելու միջոց:

Կնոջ ընտրելու իրաւունքը Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Թեմականներուն համար կը շարունակուի մինչեւ այսօր:

Սակայն, ի տարբերութիւն Գահիրէէն, Աղեքսանդրիոյ Թեմականին մէջ 2017-ին վերջապէս մուտք կը գործէ կինը:

Կը յայտարարուի՝ որ 2017 Մայիս 5-ին տեղի պիտի ունենան Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովին ամբողջական ընտրութիւնները(42): Համաձայնական դժուարութիւններու հետեւանքով ընտրութիւնները կը յետաձգուին եւ տեղի կ'ունենան Նոյեմբեր 24-ին: Ամբողջ եգիպտահայ պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով Թեմականի համաձայնեցուած ցանկին մէջ կ'ընդգրկուին, հետեւաբար հասկնալիօրէն կ'ընտրուին երեք կիներ՝ Աստղիկ Ալեքսանեան, Թանիա Արթինեան եւ Մայտա Պալեան(43):

Աղեքսանդրահայութեան համար դժուար տարիներ էին (եւ կը շարունակեն ըլլալ), գաղութին քանակը հասած էր նուազագոյնի, հայահոծ գաղութի մը կարիքներուն համաձայն կառուցուած միաւորները սկսած էին դատարկուիլ, մինչդեռ միաւորներու

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՌԱԶՄԱՎԱՐԱԿԱՆ ՈՐՈՇՈՒՄ ԵՆՔ ԿԱՅԱՑՐԵԼ ՄՈԴՈՒԼԵԱՐ ԱՏՈՄԱԿԱՅԱՆ ԿԱՌՈՒՑԵԼՈՒ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ. ՓԱՇԻՆԵԱՆ

Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը կարեւորում է մոդուլեար ատոմակայանի կառուցումը Հայաստանում՝ ինչպէս էներգետիկ հնարաւորութիւնների դիւերսիֆիկացման, այնպէս էլ արտաքին միջավայրի անվտանգութեան տեսանկիւնից:

Անդրադառնալով էներգետիկ անվտանգութեանն ուղղուած Հայաստանի քաղաքականութեան մասին հարցին՝ վարչապետ Փաշինեանը խօսեց նոր ատոմակայանի կառուցման նախագծից:

«Մենք ռազմավարական որոշում ենք կայացրել, որ պէտք է ունենանք փոքր տիպի մոդուլեար ատոմակայան: Մասնագէտները մեզ բացատրեցին, որ մոդուլեար ատոմակայանի հնարաւոր վթարը համարւում է տեղային նշանակութեան միջադէպ: Դա նշանակում է, որ մոդուլային տեխնոլոգիայով կառուցուած ատոմակայանի ներսում եթէ վթար է տեղի ունենում, 500 մետր այն կողմ բնակավայրի բնակչութեանը չեն տարհանում: Այսինքն, տեղային նշանակութեան վթար է լինում, որը միջավայրին չի սպառնում: Սա մեզ համար ակնյայտ դարձրեց, որ պէտք է գնանք այդ ճանապարհով», - Համաշխարհային Հայկական Գագաթնաժողովի ընթացքում ասաց Փաշինեանը:

Նա նշեց, որ մոդուլային ատոմակայանների տեխնոլոգիայի կիրառման փուլին հասել են մի քանի երկիր, որոնց շարքում են Միացեալ Նահանգները, Ֆրանսիան, Ռուսաստանը, Հարաւային Կորէան:

«Ես նախորդ տարի Բրիւսէլում մասնակցեցի միջուկային էներգետիկայի գագաթնաժողովին, որից յետոյ որեւէ կասկած չմնաց, որ այդ տեխնոլոգիան բաւարար չափով հասունացած է, եւ դրա ներդրումն ընդամէնը ժամանակի հարց է: Մենք պէտք է ունենանք մոդուլեար ատոմակայան, որ ե՛ւ Հայաստանի ներսում, ե՛ւ շրջակայ երկրների համար դա որեւէ կերպ չգնահատուի որպէս սպառնալիք», -նշեց վարչապետը:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԳՄՍ ՆԱԽԱՐԱՐԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱԳԱԹՆԱԺՈՂՈՎԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ Է ՍՓԻՒՌՔՈՒՄ ԻՐԱԿԱՆԱՑՈՒՈՂ ԾՐԱԳՐԵՐԸ

Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի Նախարարութեան անելիքներում սփիւռքի հետ ծրագրերը մեծ մաս են կազմում: *Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին յայտարարեց ԿԳՄՍ նախարար Ժաննա Անդրէասեանը Համաշխարհային Հայկական Գագաթնաժողովի *Հայաստանի կայուն զարգացում եւ Սփիւռքի ներուժի ներգրաւում* խորագրով նախարարական պանէլային քննարկմանը:

Ներկայացնելով ԿԳՄՍ նախարարութեան կողմից սփիւռքում իրականացուող կրթական եւ մշակութային ծրագրերը՝ նախարարը նշեց, որ առանձին բաժին զբաղւում է կրթամշակութային ծրագրերով, որոնք իրականացւում են պարբերաբար, զուգահեռաբար գործարկւում նաեւ նորերը:

«Խնդիրները շատ են, եւ համակարգուած աշխատանքի ու տուեալների մեծ կարիք կայ. առաջնային խնդիրներից է թուային շտեմարանի ստեղծումը, որը թոյլ կը տայ ամբողջական եւ համապարփակ պատկերացում ունենալ եւ աւելի թիրախային արձագանքել խնդիրներին: Մեծ ուշադրութիւն ենք դարձնում մարդկային կարողութիւնների զարգացմանը. արդէն տեւական ժամանակ ամէն տարի իրականացւում է սփիւռքի կրթօջախների ուսուցիչների եւ վարչական կազմի վերապատրաստում: Ծրագիրն իրականացուել է նոյնիսկ համավարակի պայմաններում, որը հնարաւորութիւն տուեց գործընթացը տեղափոխել նաեւ թուային տիրոյթ՝ ձեւաւորելով ուսուցիչների ցանցեր: Արդէն իրականացուել է 1000-ից աւելի ուսուցիչների վերապատրաստում. ամէն տարի դրանց աւելանում են նոր երկրներ եւ կրթօջախներ: Վերապատրաստումն իրականացնում է Մանկավարժական Համալսարանը, եւ այս գործընթացին վերաբերում ենք մեծ բծախնդրութեամբ», - ասաց նախարարը:

Ժաննա Անդրէասեանի խօսքով՝ սփիւռքի կրթօջախներին դասագրքերի տրամադրման ամէնամեայ ծրագիրը եւս շարունակուել է համավարակի պայմաններում:

«Այդ ընթացքում առաջ եկան որոշ մարտահրաւէրներ, որոնք իրենց հերթին թոյլ տուեցին գտնել նոր ուղիներ եւ թուայնացման հարթակներ: Ներկայում բոլոր կրթօջախներն ունեն ուսումնական նիւթերի առցանց հասանելիութիւն: Սրան զուգահեռ շարունակւում է թղթային դասագրքերի եւ նիւթերի տրամադրումը: Այս պահի դրութեամբ տարբեր կրթօջախներից ստացել ենք դասագրքերի տրամադրման 100 յայտ, որից 72-ն ամբողջութեամբ կամ մասնակի բաւարարուել է: Ընդհանուր առմամբ՝ 33000 կտոր դասագիրք է տրամադրուել, որը կը շարունակուի մինչեւ տարեվերջ: Մեր թիրախն է՝ ամբողջութեամբ ապահովել տարբական խմբերի երեխաների դասագրքերը՝ դրանք առաջնային տրամադրելով այն կրթօջախներին, որտեղ դրանց կարիքն աւելի մեծ է», - նշեց նախարարը:

Յաջորդ կարեւոր ծրագիրը երկու տարին մէկ գումարուող Համահայկական Կրթական Խորհրդաժողովն է, որն անցկացուել է նաեւ այս ամռանը՝ բաւական ընդգրկուն մասնակցութեամբ եւ լայն օրակարգով: Նախարարի խօսքով՝ համաժողովն այն կարեւոր հարթակներից է, որի միջոցով տեսանելի է դառնում, թէ ինչպիսի նոր ծրագրերով պէտք է աջակցել սփիւռքի կրթական հաստատութիւններին:

Առանձին ծրագիր է սփիւռքահայ ուսանողների մասնագիտական կրթութեան ապահովումը, որի շրջանակում ամէն տարի նպատակային տեղեր են յատկացւում. այս տարի 70 տեղ է յատկացուել սփիւռքի համար առաջնային համարուող հայագիտական, մանկավարժական եւ արուեստի բնագաւառի մասնագիտութիւններով: Հայաստանի բուհերում աւելի քան 4300 սփիւռքահայ ուսանողներ են սովորում, իսկ ՄԿՈՒ հաստատութիւններում կրթութիւն է ստանում 700 սփիւռքահայ երիտասարդ:

Խօսելով սփիւռքի գիտնականների ներուժի օգտագործման մասին՝ նախարարը շեշտեց, որ մի շարք կազմակերպութիւնների հետ համագործակցութեամբ կարեւոր ծրագրեր են իրականացւում:

«Հայաստանի կառավարութիւնը զգալիօրէն աւելացրել է գիտութեան ոլորտի ֆինանսաւորումը, եւ 2018 թուականի համեմատ աճը կազմում է 280 տոկոս: Այս քաղաքականութիւնը թոյլ է տուել գործարկել նոր ծրագրեր, որոնցից մէկի շրջանակում սփիւռքահայ հեղինակաւոր գիտնականները տեղացի գիտնականների հետ համատեղ հետազօտական խումբ են ձեւաւորում՝ միասին աշխատելով գիտական թեմայի ուղղութեամբ: Ուրախ եմ, որ արդէն Հայաստան վերադարձած եւ այստեղ աշխատող սփիւռքահայ գիտնականներ ունենք», - ասել է նախարարը:

Յաջորդը հայագիտութեան ոլորտում իրականացուող ծրագրերն են, որոնցից մէկն ուղղուած է միգրանտ ընտանիքների երեխաների հայոց լեզուի իմացութեան բարելաւմանը: Ամէն տարի շուրջ 100 երեխայի լեզուի իմացութեան բարելաւման դասընթաց է անցկացւում՝ դրանով իսկ աջակցելով կրթական պրոցէսում նրանց ինտեգրմանը: «Լեզուի Կոմիտէի հետ նախաձեռնել ենք նոր ծրագիր, որի շրջանակում մշակուելու են հայերէնի իմացութեան չափորոշիչներ, որոնք թոյլ կը տան ունենալ համաեւրոպական լեզուների մակարդակների համեմատ հայերէնի չափորոշիչներ: Թուային տիրոյթում կը գործի հայերէնի իմացութեան մակարդակի ստուգման առցանց հարթակ, որն ուղղուած է նաեւ մեր լեզուի թուային կենսունակութեան բարձրացմանը», - տեղեկացրեց Ժաննա Անդրէասէանը:

Հայագիտութեան զարգացման նպատակով պետական բիւջէից ֆինանսաւորւում են տարբեր երկրների համալսարաններում հայագիտական կենտրոնների գործարկումն ու պահպանումը: Այս տարի Մատենադարանում անցկացուած Հայագիտական Միջազգային Կոնգրէսին մասնակցել են ամենախոշոր հայագիտական կենտրոնների հայագէտներ՝ ծաւալելով արդիւնաւէտ քննարկումներ: Պետական բիւջէից արտերկրում գործող 15 հայագիտական կենտրոններ են ֆինանսաւորւում. երկրների աշխարհագրութիւնը բաւականին մեծ է՝ Չեխիա, Ռումինիա, Իտալիա, Աւստրիա, Գերմանիա եւ այլն: Նոյեմբերի վերջին նախատեսւում է կենտրոնների համաժողով, որի ընթացքում կը քննարկուեն միասնական ցանցով աշխատելու հնարաւորութիւնները՝ հիմք ընդունելով Հայագիտական ցանցային համալսարանի հայեցակարգը:

ԽՈՀԵՐ

## ԱԶԳԱՅԻՆ ՅԱՌԱՋԴԻՄՈՒԹԻՒՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

«Կը զանգատինք թէ՝ մեր Ազգը յառաջ չերթար, բայց անգամ մը ուշի ուշով չենք մտածեր թէ ի՛նչ է մեր յետադիմութեան պատճառը: Ընտրութիւններէ, անհամաձայնութիւններէ ազատած չունինք, որ քիչ մ՚ալ ազգային յառաջադիմութեան էական միջոցներուն վրայ խորհինք»:

Ասիկա գրուած ու հրատարակուած է աւելի քան 150 տարիներ առաջ՝ Պոլսոյ *Փունջ* լրագիրին մէջ (22 Յուլիս 1869, թիւ 376, էջ 1):

Գրուած է պոլսահայ յաջորդական ընտրութիւններուն առիթով, երբ չկային մեր սիրելի աւանդական կուսակցութիւնները, չկային կուսակցութիւններ ընդհանրապէս:

Իսկ հիմա՞...

### 1 ՎԱՐՉԱՊԵՏԸ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ...

«Տեսէք՝ խօսում եմ ֆորպոստի մասին: Ես հասկանում եմ, որ շատերը մտածում են, թէ ես նկատի ունեմ, թէ ուրիշներն են մեզ դարձրել ֆորպոստ: Ո՛չ, մենք ենք մեզ դարձրել մեզ ֆորպոստ այն ընկալմամբ, որ սա ոչ թէ երկիր է, որը պէտք է իր քաղաքացիներին բարեկեցութիւնն ապահովի, այլ սա մի բազա է, որի միջոցով մենք պէտք է ուրիշ այլ նպատակների հասնենք: Ուրիշները տեսել են, որ պարարտ հող կայ եւ ցանել են սերմերը ստանալու այն պտուղները, որն իրենց անհրաժեշտ է: Ես հիմա չեմ խօսում որպէս Հայաստանի Հանրապետութեան վարչապետ, այլ խօսում եմ որպէս հայ: Մենք պէտք է նկատենք մեր հայրենասիրութեան կործանարար կողմը մեր իսկ համար: Հայաստանի Հանրապետութեան շահերից կը բխէր, որ ես չլինէի հայրենասէր, դա ամենամեծ վնասն է, որ ես տուել եմ, այն սէրը, որ տածել եմ իմ երկրի, իմ ժողովրդի նկատմամբ: Բայց խնդիրը ոչ թէ այն է, որ սիրել եմ եւ սիրում եմ, որովհետեւ այն ժամանակ ուրիշ կերպ էի սիրում, հիմա ուրիշ կերպ, այլ ամենամեծ պրոբլեմն այն է, որ այդ սիրոյ բովանդակութեան հեղինակը դուք չէք, ես չեմ, դա կայսերական սիրոյ, կայսրութեան կողմից ձեւակերպուած սէր է՝ ներդրուած մեր մէջ»:

Նոյն Գագաթնաժողովին կրկին շեշտեց իրական Հայաստանի գաղափարը:

Հայաստանի կառավարութիւնը որդեգրած է իրական Հայաստանի հայեցակարգը՝ իբրեւ պետականութեան յարատեւումին համար անհրաժեշտ նախապայման: Այս միտքը արտայայտեց վարչապետը՝ Գագաթնաժողովի արտաքին եւ ներքին ապահովութեան (անվտանգութեան) միջավայրին յատկացուած քննարկումին.

«Իմ եւ մեր կառավարութեան ընկալումն անվտանգութեան հարցում էականօրէն կապուած է հայեցակարգային մի հարցի հետ՝ ինչի համար է եւ ինչ գործառոյթ ունի Հայաստանի Հանրապետութիւնը: Մեր իրականութեան մէջ սոցիալ-հոգեբանական մակարդակում, կարծում եմ, ընդհանուր ընկալումն առնուազն մինչեւ վերջերս եղել է հետեւեալը՝ Հայաստանը գործիք է կամ ֆորպոստ, յենարան, որպէսզի մենք աւելի մեծ երկիր ունենանք, ընդհուպ՝ պատմական արդարութիւն հաստատենք, պատմական վրէժ լուծենք:

«Կայ նաեւ երկրորդ ընկալումը, որ Հայաստանի Հանրապետութիւնը սեփական քաղաքացիների բարեկեցութիւնը ապահովելու գործիք է միջազգայնօրէն ճանաչուած իր տարածքում, այն ընկալմամբ, որ այդ բարեկեցութեան մէջ է մտնում ազատութիւնը, արդարութիւնը, անվտանգութիւնը: Առաջինը պայմանականօրէն անուանում ենք պատմական Հայաստանի հայեցակարգ, երկրորդը՝ իրական Հայաստանի: Կտրուած չլինելով հայկական իրականութիւնից եւ մեր միջավայրից, հասկանալիօրէն ապրելով, մեծանալով, ձեւաւորուելով այն միջավայրում, որը եղել է, եւ անցնելով այս ծանր ճանապարհը՝ Կառավարութիւնը եկել է այն եզրակացութեան, որ իրական Հայաստանի տեսլականն է կարող ապահովել Հայաստանի անվտանգութիւնը, որովհետեւ հակառակը նշանակում է, որ մենք Հայաստանը դնում ենք այն պատմական ցիկլի մէջ, որի ելքն անխուսափելի է՝ Հայաստանի պետականութեան կորուստ»:

ՋԱՀԱԿԻՐ

## 2 ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԱՆՈՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵՒ ԿՆՈՋ ՔՈՒԷԱՐԿՈՒԹԵԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

տարբեր կամ այլընտրանքային ըմբռնում մը՝ կապուած քանակային նոր որակի հետ, չէր կրցած կազմաւորուիլ (երեւոյթը բնորոշ է նաեւ սփիւռքահայ բազմաթիւ այլ գաղութներու): Նուազած էր Պօղոսեան Ազգային Վարժարանի աշակերտութեան քանակը՝ որուն հետեւանքով 2021-ին վերջնականապէս պիտի փակէր իր դուռները:

Նման պայմաններու եւ յետաձգուած ընտրութիւններու բնաբանին մէջ առաջին անգամ ըլլալով կը յայտնուին վերոյիշեալ երեք գործունեայ եւ կորովի կիները, բեկում մը մտցնելով եգիպտահայ պատմութեան մէջ: Անոնց մուտքը կնոջական ընդհանուր շարժումի կամ ֆեմինիսթական գաղափարներու արդիւնք չէր, այլ անհատական մղումի:

2021 Նոյեմբեր 19-ի Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւններուն, նախորդներուն վրայ կ'աւելնայ եւս կին մը՝ Ռիթա Փալապըյըքեան(44):

2023 Նոյեմբերին Մայտա Պալաեան կը դառնայ Աղեքսանդրիոյ Թեմականի փոխ-ատենապետուհին:

Այսօր, Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի կազմը ունի չորս կիներ՝ Աստղիկ Ալեքսանեան, Թանիա Արթինեան, Մայտա Պալաեան (փոխ-ատենապետուհի) եւ Ռիթա Փալապըյըքեան: Կը սպասենք Գահիրէին:

Կը մնայ կարեւոր հարցումը: Կիներու մուտքը փոփոխութիւն մտցո՞ւց արդեօք Թեմականի եւ աղեքսանդրահայութեան գործունէութեան եւ մտածելակերպին մէջ: Քանդե՞ց տղամարդկային կարծրատիպը, թէ պարզապէս դարձաւ անոր կրկնօրինակը: Պատասխանները կը թողում իրազեկ մարդոց:

(Վերջ 3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

24. «Կոչ Գահիրէի հայութեան», *Արեւ*, 16 Հոկտեմբեր 1975, Կ. տարի, թիւ 17.233, էջ 1: «Յայտարարութիւն Համագործակցական Ճակատի», *Արեւ*, 20 Հոկտեմբեր 1975, Կ. տարի, թիւ 17.236, էջ 1:

25. «Կոչ աղեքսանդրահայութեան», *Արեւ*, 7 Նոյեմբեր 1975, Կ. տարի, թիւ 17.252, էջ 1:

26. «Կոչ աղեքսանդրահայութեան», *Արեւ*, 26 Ապրիլ 1984, 68-րդ տարի, թիւ 197017, էջ 1:

27. «Աղեքսանդրիոյ Թեմական ամբողջական ընտրութեան համերաշխական ընտրական ցանկ», *Արեւ*, 22 Հոկտեմբեր 1992, 77-րդ տարի, թիւ 22179, էջ 1:

28. «Յայտարարութիւն», *Արեւ*, 7 Նոյեմբեր 1996, 81-րդ տարի, թիւ 23205, էջ 1:

29. Մա՞րօ Սագայեան, «Կնոջ սիւնակը. Եգիպտահայ կինը մինչեւ ե՞րբ զրկուած պիտի մնայ քուէարկութեան իրաւունքէն», *Արեւ*, 1 Դեկտեմբեր 1979, 64-րդ տարի, թիւ 18.422, էջ 2-3:

30. Անդ, էջ 2:

31. «Կնոջ սիւնակը. Եգիպտահայ կինը եւ ընտրութեանց հարցը», պատրաստեց Մարօ Սագայեան, *Արեւ*, 1 Մարտ 1980, 64-րդ տարի, թիւ 18.494, էջ 2:

32. Անդ, էջ 2:

33. «Կնոջ սիւնակը. Եգիպտահայ կինը եւ ընտրութեանց հարցը», պատրաստեց Մարօ Սագայեան, *Արեւ*, 29 Մարտ 1980, 64-րդ տարի, թիւ 18.517, էջ 2:

34. Անդ, էջ 2:

35. «Կնոջ սիւնակը. Եգիպտահայ կինը եւ ընտրութեանց հարցը», պատրաստեց Մարօ Սագայեան, *Արեւ*, 3 Մայիս 1980, 64-րդ տարի, թիւ 18.543, էջ 2:

36. Անդ, էջ 2:

37. «19 Նոյեմբեր 1995-ի Թեմականի մասնակի ընտրութեանց մասնակցելու իրաւունք ունեցող ազգայիններու անուանացանկը», *Արեւ*, 21 Սեպտեմբեր 1995, 80-րդ տարի, թիւ 22880 – 29 Սեպտեմբեր 1995, 80-րդ տարի, թիւ 22887:

38. «Հաղորդագրութիւն Գահիրէի Թեմական մասնակի ընտրութիւններուն մասին», *Արեւ*, 21 Նոյեմբեր 1995, 80-րդ տարի, թիւ 22929, էջ 1:

39. Ընտրողներուն ամբողջական ցանկը՝ *Արեւ*, 12 Սեպտեմբեր 1996, 81-րդ տարի, թիւ 23158 – 16 Սեպտեմբեր 1996, 81-րդ տարի, թիւ 23161:

40. «Յայտարարութիւն», *Արեւ*, 7 Նոյեմբեր 1996, 81-րդ տարի, թիւ 23205, էջ 1:

41. «Հաղորդագրութիւն», *Արեւ*, 18 Նոյեմբեր 1996, 81-րդ տարի, թիւ 23214, էջ 1:

42. «Յայտարարութիւն», *Ջահակիր*, 9 Մարտ 2017, նոր շրջան, թիւ 1785, էջ 4:

43. «Հաղորդագրութիւն», *Ջահակիր*, 30 Նոյեմբեր 2017, նոր շրջան, թիւ 1803, էջ 1: «Հաղորդագրութիւն», *Արեւ*, 12 Դեկտեմբեր 2017, 102-րդ տարի, թիւ 26444, էջ 1:

44. «Հաղորդագրութիւն. Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւններ», *Ջահակիր*, 2 Դեկտեմբեր 2021, թիւ 1904, էջ 3:

## 1 ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ՄԷՋ ՂԱՐԱԲԱՂԻ ...

**Հիմնահոսանքի ընդդիմութիւն ռուսական ներկայութեան դէմ**

«Հին» կամ հիմնահոսանքի ընդդիմութեան կուսակցութիւնները, յատկապէս Ազրպէյճանի Ժողովրդական Ճակատ Կուսակցութիւնը (PFPA) եւ ներկայի փոքր Մուսաւաթ Կուսակցութիւնը, յաջորդներն են 1990-ականներու Ժողովրդական Ճակատ շարժումին: Երկուքն ալ կը կիսեն ազգայնական տրամադրութիւններ: Մինչդեռ Մուսաւաթ Կուսակցութիւնը աւելի համաթրքական (pan-Turkic) է եւ պահպանողական, Ժողովրդական Ճակատ Կուսակցութիւնը աւելի հասարակայնօրէն փոփիլիսթ է եւ արեւմտամէտ: Ընդհանուր առմամբ, Ազրպէյճանի կուսակցութիւնները աւելի առնչուած են առաջնորդներու հետ քան գաղափարախօսութիւններու(4):

Ղարաբաղի պատերազմի յաղթանակէն ետք, նախագահ Ալիեւի ժողովրդականութիւնը դարձաւ երբեւէ աւելի բարձր: Ընդհակառակը, ընդդիմադիր կուսակցութիւնները կորսնցուցին իրենց զօրաշարժային ներուժականութիւնը: Պատերազմէն առաջ, հիմնահոսանքի ընդդիմութեան գլխաւոր առարկութիւններէն մէկն էր կառավարութեան «անկամութիւնը» հակամարտութիւնը լուծելու ի նպաստ Ազրպէյճանին: Նկատի առնելով այս հանգամանքը, զանազան քաղաքական դերակատարներ ընտրեցին յատուկ ռազմավարութիւններ գործուն մնալու համար նոր քաղաքական դաշտին վրայ:

Ռուսական ներկայութիւնը Ղարաբաղի մէջ հանդիսացաւ Ալիեւի քաղաքական կարողականութեան դէմ ուղղուած գլխաւոր առարկութիւնը: Գլխաւոր առարկութիւնը այն է՝ որ յաղթանակը չի կրնար ամբողջական ըլլալ այնքան ժամանակ որ ռուս խաղաղապահները կը գտնուին Լեռնային Ղարաբաղի մէջ, հնարաւոր սպառնալիք ներկայացնելով Ազրպէյճանի ինքնիշխանութեան: Պատերազմէն քիչ ժամանակ ետք, Ժողովրդական Ճակատ Կուսակցութիւնը կ'առաջարկէ ռուս խաղաղապահներուն առաքելութիւնը փոխանակել միջազգային առաքելութեամբ(5):

Ժողովրդական Ճակատի առաջնորդ Ալի Քարիմլի յայտարարեց՝ որ խաղաղապահ առաքելութիւնը գրաւեց ռազմավարական բարձունքներ եւ մեղադրեց կառավարութիւնը տկարութեան մէջ: Ահազանգող ոճով Քարիմլի կանխագուշակեց՝ որ Լեռնային Ղարաբաղի մէջ աւելի երկար մնալու նպատակով, Ռուսաստան կը ձգտի ջնջել Թուրքիոյ ազդեցութիւնը տարածաշրջանին վրայ, սպառնալով Ազրպէյճանի ինքնիշխանութեան(6): Նման մօտեցում ցուցաբերեց Մուսաւաթ Կուսակցութիւնը, որ նոյնիսկ փորձեց հանրահաւաք կազմակերպել խաղաղապահ առաքելութեան դէմ Պաքուի մէջ Ռուսաստանի Դեսպանատան դիմաց(7):

Հիմնահոսանքի ընդդիմութեան առօրեայ գործողութիւնները նուազեցան պատերազմէն ետք: Օրինակ, անոնք ոչ մէկ բողոքացոյց կազմակերպեցին եւ մնացին գլխաւորապէս վիրթիւալ տարածութեան մէջ: Նոր ցոյցերու հրաւէրի չկամութիւնը կարելի է բացատրել պատերազմէն ետք ընդդիմութեան հետ լայնարձակ ներգրաւուածութեան բացակայութեամբ, ինչպէս նաեւ պահանջներու կրճատումով՝ ընդամէնը բողոքելով ռուսական ներկայութեան դէմ կամ ուշադրութիւնը հրաւիրելով հասարակական-տնտեսական հարցերու վրայ: Աւելին. քանի որ հայաբնակ վայրերու ռուսական ներկայութիւնը անհանգստութիւն չի պատճառեր ազրպէյճանցիներու մեծամասնութեան, ընդդիմութիւնը չզօրաշարժեց ժողովրդական բողոք:

Գալով քաղաքական բանտարկեալներու հարցին, տեղի ունեցան նշանակալի փոփոխութիւններ: 2020 Յուլիսի հանրահաւաքին ձերբակալուած Ժողովրդական Ճակատի բազմաթիւ ներկայացուցիչներ 2020 Նոյեմբեր 16-ին փոխադրուեցան տնային կալանքի(8): Այս քայլը շատերը համարեցին Ալիեւի վարմունքը Քարիմլիի հանդէպ, պատերազմի ժամանակ անոր ցուցաբերած աջակցութեան համար: Հակառակ այս վարմունքին, այլ փաստեր ցոյց կու տան որ չկայ հաշտութիւն «հին» ընդդիմութեան հետ: Օրինակ, Քարիմլիի նախկին թիկնապահ Նիյամետտին Ահմետով յանկարծակի մեղադրուեցաւ ահաբեկչութիւնը ֆինանսաւորելու մէջ եւ դատապարտուեցաւ 13 տարուայ բանտարկութեան(9): Ան մարմնապէս պաշտպանած էր Քարիմլիին՝ երբ բռնի կերպով կը ձերբակալուէր 2019 Հոկտեմբեր 19-ի հանրահաւաքին, ինչպէս նաեւ մաս կազմած 2020 Մարտ-Ապրիլի ձերբակալութիւններու ալիքի ընթացքին կալանաւորուած Ժողովրդական Ճակատի աքթիւիսթներուն: Նոյեմբեր 8-ի Յաղթանակի Օրուայ առիթով Համաներումի Գործողութիւնը ունէր 17 հազար անուններ, որոնց մէջ կը գտնուէր ոչ մէկ քաղաքական բանտարկեալ(10):

(Շար. 1/2)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Տես, օրինակ՝ Ayça Ergun. 2021. ‘Citizenship, National Identity, and Nation-Building in Azerbaijan: Between the Legacy of the Past and the Spirit of Independence.‘ *Nationalities Papers*, 1-18.

2. Azertag. 2020. *Azerbaijan's political parties issue joint statement on Armenian provocation against Azerbaijan*. 27 October. Դիտում՝ November 11, 2021. https://azertag.az/en/xeber/Azerbaijan_039s_political_parties_issue_joint_statement_on_Armenian_provocation_against_Azerbaijan-1596575

3. Turan. 2020. *Ali Karimli, Etibar Mammadov Congratulate Ilham Aliyev on Liberation of Shusha*. 9 November. Դիտում՝ November 11, 2021. https://www.turan.az/ext/news/2020/11/-free/politics%20news/en/129697.htm

4. Samadov, B. 2020a. *Azerbaijan's peace activists face harassment, and a reckoning*. 20 November. Դիտում՝ November 11, 2021. https://eurasianet.org/perspectives-azerbaijans-peace-activists-face-harassment-and-a-reckoning

5. Osmanqizi TV. 2020. *Russian troops must be replaced by multinational peacekeepers - Ali Karimli*. 15 November. Դիտում՝ November 11, 2021. https://www.youtube.com/watch?v=-O6SHHiJZJlw&t=1s

6. Osmanqizi TV. 2021. *Ali Karimli: Let's give a time for the withdrawal of Russian troops without giving any permanent status!* 7 October. Դիտում՝ November 11, 2021. https://www.-youtube.com/watch?v=qPAgySL9V3Q

7. Turan. 2021a. *Police prevented Musavat`s protest action in front of the Russian Embassy*. 8 May. Դիտում՝ November 11, 2021. http://www.-turan.az/ext/news/2021/5/free/politics_news/en/3897.htm

8. APA. 2020. *Fuad Gahramanli, Asif Yusifli, Mammad Ibrahim and 18 more people released under house arrest*. 16 November. Դիտում՝ November 11, 2021. https://apa.az/en/xeber/-domestic-news/Fuad-Gahramanli-Asif-Yusifli-Mammad-Ibrahim-and-18-more-people-released-under-house-arrest-335587

9. Turan. 2021b. *Niyameddin Ahmedov sentenced to 13 years of imprisonment*. 8 October. Դիտում՝ November 11, 2021. https://turan.-az/ext/news/2021/10/free/Social/en/8412.htm

10. JamNews. 2021. *16,000 prisoners to be granted amnesty in Azerbaijan amid Day of Victory in Karabakh war*. 11 November. Դիտում՝ November 11, 2021. https://jam-news.net/16000-prisoners-to-be-granted-amnesty-in-azerbaijan-amid-day-of-victory-in-karabakh-war/

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1976 ՀԻՆԳՇԱԲԹԻ 10 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2024

ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٧٦ الخميس ١٠ أكتوبر ٢٠٢٤


## ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՄԷՋ ՂԱՐԱԲԱՂԻ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԵՐԱԶՄԷՆ ԵՏՔ ԵՒ ՓՈԽՈՒՈՂ ՆԵՐՔԻՆ ՏՐԱՄԱՍԱՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ՊԱՀՐՈՒԶ ՍԱՄԱՏՈՎ

**4Հանրապետական Այլընտրանքը եւ Ճերմակ Կուսակցութիւնը**

Բացի պատերազմէն, Ազըրպէյճանի ներկայ ամենէն նշանակալից իրադարձութիւնը եղաւ երկխօսութեան պատումին յառաջացումը քաղաքական տրամասացութեան մէջ: Ան սկսաւ 2020 Փետրուարի վերջը, նախագահ Ալիեւի նախաձեռնութեամբ: Մինչ Հանրապետական Այլընտրանքը համաձայնեցաւ ներգրաւուիլ գործընթացին մէջ, հիմնահոսանքի ընդդիմութիւնը մերժեց գործընթացը զայն համարելով ոչ-թափանցիկ եւ անուանելով «երկխօսութեան նմանակում»: Այս բաժանումը տկարացուց ընդդիմութեան ճամբարը տակաւին պատերազմէն առաջ(11):

Հանրապետական Այլընտրանքի առաջնորդ Իլկար Մամմատով քաղաքական երկխօսութիւնը զնահատեց իբրեւ արժանահաւատ թէ՛ ընդդիմութեան եւ թէ ՀԿ-ներուն համար: Ըստ իրեն (2021), երկխօսութեան գործընթացը պիտի աւելցնէ ՀԿ-ներու գործունէութեան հնարաւորութիւնները՝ զանոնք դարձնելով բաց եւ թափանցիկ: Մամմատով կը պնդէ որ իր կուսակցութիւնը կը փորձէ մղել կառավարութիւնը դրական փոփոխութիւն կատարելու ՀԿ-ներու արձանագրութեան եւ անոնց բնականոն գործունէութեան համար:

Թէեւ Հանրապետական Այլընտրանքի ուղեգիծը անկասկած կը միտի բարեփոխութեան եւ չի հանդիսանար փոփխիլիսք, երկիրի քաղաքական տեսադաշտը ականատես եղաւ Մուսաւաթ Կուսակցութեան երիտասարդական ճիւղի նախկին առաջնորդ Թուրալ Ապպասլիի վերելքը Ճերմակ Կուսակցութեան միջոցով (AG Կուսակցութիւն, Թուրքիոյ իշխող AK Կուսակցութեան անունով): Ան կը բանեցնէ Թուրքիոյ վարչապետ Ռեճէփ Թայիփ Էրտողանի գաղափարախօսութիւնն ու ոճը: Իր ճառերուն մէջ, Ապպասլի կը դիմէ թերիներուն «չայ խանաներու երեխաներուն, որոնք ազատագրեցին Ղարաբաղը»(12): Իր քննադատութիւնը սովորաբար կը թիրախաւորէ Խորհրդարանը եւ կառավարական պաշտօնեաները, եւ իր վիտէօները կը տարածուին ոչ միայն աւանդական հանրային ցանցերու հարթակներուն վրայ, այլեւ Թիքթոքի:

Ապպասլի կը յարձակի նաեւ տեղական ֆեմինիսթներու եւ անոնց ջատագովական գործունէութիւններուն վրայ(13):

Հետեւելով յետպատերազմեան պաշտօնական տրամասացութեան, Ապպասլի՝ որ պատերազմի ընթացքին կորսնցուց եղբայրը, աշխուժօրէն աջակցեցաւ Հայաստանի դէմ յաւելեալ տարածքային պահանջներուն, յատկապէս հարաւային Հայաստանի Սիւնիքի մարզին: Ճերմակ Կուսակցութիւնը երբեք չի թիրախաւորեր նախագահ Ալիեւը, փոխարէնը կեդրոնանալով երկրորդական պաշտօնեաներու քննադատութեան վրայ: Այս դիրքորոշումը քննադատւեցաւ հիմնահոսանքի ընդդիմութեան կողմէ, երբեմն զինք ամբաստանելով իբրեւ պետական գործակալ: Իր պատասխանին մէջ Ապպասլի ընդդիմադիրներուն անուանեց «միասեռական համագումարի մասնակցողներ» եւ «Սորոսի գործակալներ»(14):

«Երկխօսութեան կողմնակից» եւ «երկխօսութեան դէմ» ընդդիմադիր կուսակցութիւններուն միջեւ արժէքային բախումը ոչ միայն տկարացուց ընդդիմութիւնը այլեւ քաղաքական միջավայրը դարձուց թունաւոր եւ անյուսալի իշխող Նոր Ազըրպէյճան Կուսակցութեան մարտահրաւէր նետելու: Թէ՛ Ճերմակ Կուսակցութիւնը եւ թէ Հանրապետական Այլընտրանքը ստացան իշխող վարչակարգի ոչ-պաշտօնական ճանաչումը, առիթ տալով անոնց առաջնորդներուն մասնակցելու հեռատեսիլի հաղորդումներուն եւ հանրային բանավէճերուն: «Հին» ընդդիմութիւնը կը գործէ բացառապէս հանրային ցանցերուն վրայ: Այս շրջագիծը թոյլ կու տայ իշխող վարչակարգին երկիրի կացութիւնը ներկայացնելու իբրեւ ժողովրդավարական եւ բազմակարծիք, միաժամանակ պահպանելով մենատիրական վերահսկողութիւնը եւ մեկուսացնելով հիմնահոսանքի կուսակցութիւնները:

**Այլերը. փոքր շարժումներ պատերազմէն ետք**

Թէեւ սեռային (gender) յարաբերութիւններու վրայ կեդրոնացած ֆեմինիզմի եւ ՀԿ-ի աքթիւիզմի ժողովրդականացումը Ազըրպէյճանի մէջ սկսած էր 2010-ականներուն սկիզբը, ֆեմինիզմի քաղաքականացումը Ազըրպէյճանի մէջ յատկապէս տեսանելի դարձաւ 2019-էն ի վեր: 2019-2021-ին, ֆեմինիսթները Պաքուի կեդրոնը կազմակերպեցին չորս բողոքցոյցեր, որոնցմէ երեքը տեղի ունեցան Մարտ 8-ին՝ Կիներու Միջազգային Օրը: Ֆեմինիսթական աքթիւիսթները եւ նախաձեռնողները յարձակումի ենթարկուեցան տարբեր խումբերու կողմէ, որոնք աքթիւիսթները մեղադրեցին «անբարոյականութեան» մէջ(15):

44-օրեայ պատերազմի ընթացքին, բազմաթիւ ականաւոր ֆեմինիսթներ բացայայտօրէն դատապարտեցին պատերազմը իբրեւ ազգայնականութեան եւ նահապետութեան բնորոշ տարր: Այս հակազինուորագրական կեցուածքը աւելի մեկուսացուց ֆեմինիսթները եւ այլ յառաջադէմ ձայներ: Անոնք մեղադրուեցան «ազգի դաւաճանութեան» մէջ(16):

2021 Մարտ 8-ի Կիներու Միջազգային Օրուայ հանրահաւաքը գրաւեց նուազ աքթիւիսթներ քան նախորդ տարի: Ձերբակալուեցան աւելի քան 15 կիներ: Իրենց յայտարարութիւններուն մէջ, ֆեմինիսթ աքթիւիսթները շեշտեցին՝ որ «պատերազմը եւ հասարակական-տնտեսական հարցերը՝ որոնք ազդեցին կիներու կեանքին վրայ, մնացին անլսատ»(17): Կնասպանութիւնը եւ ընտանեկան բռնութիւնը հիմնական նիւթերն են զորս ֆեմինիսթները կը բարձրացնեն պատերազմէն ետք, փորձելով բացայայտել այս խնդիրներուն քաղաքական բնոյթը: Անոնք Մարտ 8-էն ետք կազմակերպեցին նաեւ փոքր ցոյցեր(18), պատերազմէն ետք տեսանելի մնալով շնորհիւ ընտանեկան նախատինքի, LGBTQ համայնքի նկատմամբ բռնութեան եւ նման հարցերու արծարծումով: Ընդդիմադիր կուսակցութիւնները յաճախ կ'անտեսեն նման պարագաները կամ կը մնան անոնց ծայրամասերը, որ կը բացատրուի մեկուսացւած խումբերու հետ առնչութիւն չունենալու եւ իրենց ու յառաջադէմ խումբերու միջեւ տարբերութիւնները արժեւորելու ցանկութեամբ:

Հոկտեմբեր 13-ին, NIDA Քաղաքացիական Շարժումի եւ D18 Շարժումի երիտասարդ աքթիւիսթներու փոքր խումբ մը ցոյց կատարեց իշխող կուսակցութեան նախկին գրասենեակին դիմաց: Հակառակ սակաւաթիւ աքթիւիսթներուն, երկու շարժումները կը թիրախաւորեն երիտասարդութիւնը եւ կ'օգտագործեն յառաջադէմ ու հայրենասիրական պատումներու խառնուրդ մը: Անոնք կը պահանջեն քաղաքական բանտարկեալներուն ազատութիւնը, ներառեալ վերջերս բանտարկուած Ժողովրդական Ճակատ Կուսակցութեան Նիյամետտին Ահմետովը:

↳ 4

## ՖՐԱՆՍԱ

### ՎԱՐՉԱՊԵՏ ՓԱՇԻՆԵԱՆԸ ՄԱՍՆԱԿՑԵԼ Է ՖՐԱՆԿՈՖՈՆԻԱՅԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ 19-ՐԴ ԳԱԳԱԹՆԱԺՈՂՈՎԻ ԲԱՑՄԱՆԸ

Աշխատանքային այցով Ֆրանսիայում գտնուող վարչապետ Նիկոլ Փաշինեանը Վիլեր Կոտրէ քաղաքում՝ ֆրանսերէն լեզուի նոր միջազգային աւանում, Հոկտեմբերի 4-ին մասնակցել է Ֆրանկոֆոնիայի միջազգային կազմակերպութեան 19-րդ գագաթնաժողովի բացման արարողութեանը: Ֆրանկոֆոնիայի գագաթնաժողովն այս տարի անցկացւում է Ֆրանսիայում՝ առաջին անգամ վերջին 33 տարիների ընթացքում: Գագաթնաժողովին մասնակցում են աւելի քան 100 բարձրաստիճան հիւրեր:

Բարձրաստիճան հիւրերին դիմաւորել եւ ողջունել են Ֆրանսիայի նախագահ Էմանուէլ Մակրոնը, տիկին Բրիջիտ Մակրոնը եւ Ֆրանկոֆոնիայի միջազգային կազմակերպութեան գլխաւոր քարտուղար Լուիզ Մուշիկիվաբոն:

Յաջորդիւ տեղի է ունեցել ՖՄԿ անդամ պետութիւնների առաջնորդների համատեղ լուսանկարահանման արարողութիւնը, իսկ գագաթնաժողովի բացմանը ելոյթ են ունեցել Էմանուէլ Մակրոնը, Թունիսի նախագահ Կաիս Սաիդը, ՖՄԿ գլխաւոր քարտուղար Լուիզ Մուշիկիվաբոն: Միջոցառման շրջանակում ՖՄԿ-ում նախագահութիւնը Թունիսից փոխանցուել է Ֆրանսիային:

Ըստ աղբիւրի՝ գագաթնաժողովի առաջին օրը տեղի են ունեցել *Ֆրանկոֆոն քաղաքացիների մարտահրաւէրները թուային դարաշրջանում* եւ *Արհեստական բանականութեան կիրառումը կրթութեան մէջ* խորագրերով քննարկումներ:

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ԻՐԱՆԻ ՀԵՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՇԱՐՈՒՆԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԱՌԱՋՆԱՀԵՐԹՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ Է. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

Հոկտեմբերի 1-ին վարչապետ Նիկոլ Փաշինեանն ընդունել է Իրանի Իսլամական Հանրապետութեան նախագահի առաջին տեղակալ Մոհամմադ Ռեզա Արէֆին:

Վարչապետը շնորհաւորել է պարոն Արէֆին պատասխանատու պաշտօնում նշանակուելու առիթով՝ մաղթելով ամենայն բարիք յետագայ գործունէութեան ընթացքում: Նիկոլ Փաշինեանը նշել է, որ Իրանի հետ Հայաստանի յարաբերութիւնների շարունակական զարգացումը Հայաստանի կառավարութեան առաջնահերթութիւններից է: Վարչապետը բարձր է գնահատել Իրանի սկզբունքային եւ հրապարակային դիրքորոշումը Հայաստանի տարածքային ամբողջականութեան եւ միջազգայնօրէն ճանաչուած պետական սահմանների անքակտելիութեան վերաբերեալ:

Մոհամմադ Ռեզա Արէֆը շնորհակալութիւն է յայտնել ջերմ ընդունելութեան համար եւ շնորհաւորել Հայաստանի Անկախութեան տարեդարձի առիթով: Իրանի նախագահի առաջին տեղակալը վերահաստատելով Իսլամական Յեղափոխութեան գերագոյն առաջնորդ Սեյեդ Ալի Խամենեիի խօսքերը եւս մէկ անգամ ընդգծել է, որ Իրանը լիովին պաշտպանում է Հայաստանի

↳ 3

# ԱՐՄԱՆ ԹՕՔԱԹԵԱՆ
## Եգիպտոսի եւ յաջորդող տարիներ

ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ

**ՄՈՒՏՔ**

Թենոր Արման Թօքաթեանի (1896, Ֆիլիպէ (Փլովտիւ) – 1960, Փասատենա) հռչակը կապուած է Նիւ Եորքի Մեթրոփոլիթըն Օփերա Թատրոնին, որուն հետ ելոյթ ունեցած է 449 անգամ՝ օփերայի բեմադրութիւն եւ երգահանդէս, ըլլայ Մեթրոփոլիթըն Օփերայի մէջ կամ խումբի շրջագայութիւններուն:

Մեթրոփոլիթընի առաջին ելոյթը եղած է 1922 Նոյեմբեր 19-ին, *Cavalleria rusticana*-ի Turiddu-ի դերով, վերջինը՝ 1946 Մարտ 7, *La traviata*-ի Alfredo: Այնտեղ ունեցած իր բոլոր ելոյթները մանրամասնուած են Մեթրոփոլիթընի առցանց արխիւին մէջ(1):

Գրեթէ չէ ուսումնասիրուած անոր գործունէութիւնը Մեթրոփոլիթընէն դուրս: Երեք առանձին յօդուածներով փորձ պիտի կատարուի ներկայացնել մեներգիչի այդ գործունէութենէն ընդամէնը երեք շրջաններ՝ Եգիպտոսի եւ յաջորդող տարիները (1904-1920), Ռաւինիայի ամառնային օփերան (1923-1925, 1928-1930) եւ եւրոպական շրջագայութիւնը (1931-1934):

**ՄԱՆԿՈՒԹԻՒՆ**

Արմենակ Թօքաթլեան ծնած է 1896 Յուլիս 17-ին, Ֆիլիպէ (Փլովտիւ), Պուլկարիա, ուր իր ծնողքը ապաստանած էր յայտնի ջարդերէն խոյս տալով:

8 տարեկանին (հաւանաբար՝ 1904-ին) ծնողքը կ'որոշէ վերադառնալ Թուրքիա: Նաւով կ'երթան Իսթանպուլ, բայց, իբրեւ հայեր, արտօնութիւն չեն ստանար ցամաք ելլել: Հայրը նաւապետին կը հարցնէ ուղեւորութեան յաջորդ նաւահանգիստը: Աղեքսանդրիա, կ'ըլլայ պատասխանը: Ուրեմն, կ'երթան ու կը հաստատուին Աղեքսանդրիա(2):

Հայրը՝ Գաբրիէլ Թօքաթլեան, շուտով կը դառնայ Աղեքսանդրիոյ յայտնի դեղագործներէն մէկը(3) եւ կը յաջողի ընտանիքին ապահովել նիւթապէս հանգիստ կեանք, զաւակներուն տալով լաւագոյն կրթութիւն տեղւոյն ֆրանսական դպրոցներուն մէջ(4):

**ՓՈՔՐ ԴԵՐԵՐ**

Սիրելով բեմը, 16 տարեկանին զինք կը գտնենք շատ փոքր դերերու մէջ:

***Աիտա* օփերան բուրգերու ստորոտը**

1912 Մարտ 3-ին, Քէոփս բուրգին ստորոտը կը կայանան Վերտիի *Աիտա* օփերայի բացօթեայ երկու բեմադրութիւններ՝ երեկոյեան եւ գիշերային: Խտիվալ Թատրոնի էմփրեզարիօ Ատոլֆօ Պրաքալէ (Adolfo Bracale) ստանձնած էր պատասխանատուութիւնը: Կը հրաւիրուին իտալացի մեներգիչներ:

Յատուկ կառուցուած բեմը լաւագոյն կերպով օգտագործեց բնական լոյսը: Երեկոյեան ներկայացումի ժամը ճշդուած էր համապատասխանելու մայրամուտին եւ լուսնածագին, գիշերուանը՝ լիալուսինին(5):

Կարեւոր ներկայացում մը, որ կ'ունենայ մեծ արձագանգ: *New Zealand Times*-ը՝ քաղելով *New York Post*-էն, կը տեղեկացնէ.

«Կ'իրականանայ Վերտիի եգիպտական օփերայի բեմադրութեան ծրագիրը Քէոփս բուրգին ստորոտը: Երգիչներն ու նուագախումբը կը հնչեն լաւ, բայց ամենէն նշանակալին էր թափօրը, որուն մասնակցեցան աւելի քան 100 պայծառօրէն զարդարուած ուղտեր եւ 200 ձիեր: Մայրամուտը բնական տեսարանը պարուրեց հարուստ գոյներով:

«Երբեք հինն ու նորը չէին հանդիպած ինչպէս այս ներկայացումին ընթացքին. մէկ կողմէ՝ հազարաւոր տարիներու բուրգերը, միւս կողմէ՝ մեծ մասամբ ինքնաշարժներով եկող հանդիսատեսները: Երեք սինեմաթոկրաֆներ զբաղած էին արձանագրութիւններ կատարելով, ելեկտրական լուսաւորութիւնը հասած էր Սփինքսին, եւ նոյնիսկ օդաչու մը փորձեց հպանցիկ ակնարկ մը նետել ներկայացումին վրայ թէեւ մատնուեցաւ անյաջողութեան»(6):

Եգիպտահայ *Լուսաբեր-Արեւ* եւս սքանչացած է.

«*Այտա*ին բացօթեայ ներկայացումը տեղի ունեցաւ կիրակի ցորեկ եւ գիշեր Բուրգերու ստորոտը ի ներկայութեան խուռներամ բազմութեան մը եւ աննման շքով: Հիանալի տեսարան մը կ'ընծայէր հարիւրաւոր ուղտերու տողանցումը աւազներու մէջէն, 500 հոգինոց նուագախումբին ախորժալուր եղանակները, եւ հարիւրաւոր երգեցիկներու երեւոյթը եգիպտական հին տարազներով:

«Կարգաւորութիւնը մանաւանդ շնորհիւ կազմակերպիչ մարմնոյն նախագահ Լուծաթթօ փաշայի անթերի էր, թրամվէյները 3 վայրկեանը անգամ մը իրար կը յաջորդէին, այնպէս որ հազարաւորներու բազմութիւն մը դժգոհելու ո եւ է պատճառ չունեցաւ:

«Ոստիկանութիւնը բազմաթիւ զինուորներով հսկողութիւն կատարեց մինչեւ վերջը, որովհետեւ Իտալօ-թուրք պատերազմի առթիւ հակաիտալական ցոյց մը հաւանական կ'ենթադրուէր կարգ մը մոլեռանդներու կողմէ»(7):

Ներկայացումը կը դառնայ հիմնակէտ մը *Աիտա*յի կենսագրութեան մէջ: «1912-ին, Եգիպտոսի բուրգերուն ստորոտը տրուեցաւ շատ տպաւորիչ բացօթեայ ներկայացում մը», պիտի յիշէր *Victrola Book*-ը(8):

Ներկայացումին կը մասնակցին երեք աղեքսանդրիահայեր, Պօղոսեան Ազգային Վարժարանի երաժշտութեան ուսուցիչ, խմբավար Լեւոն Համբարձումեան՝ ապագայ ֆրանսահայ երաժիշտն ու երաժըշտագէտը, 16-ամեայ Արմենակ Թօքաթլեան եւ Արամ Չաքըճեան. «Աղեքսանդրիայէն Տեարք Լեւոն Համբարձումեան, Արամ Չաքըճեան եւ Արմենակ Թոքատլեան, որոնք *Այտա*ի բացօթեայ ներկայացումին առթիւ մասնաւորապէս հրաւիրուած էին մասնակցելու Իտալ. Օբէրաի խումբին կողմէ, այսօր մեկնեցան իրենց տեղը: Կը մաղթենք որ սոյն խոստմնալից երիտասարդները աւելի մեծ եւ փայլուն ներկայացումներու մէջ հաճոյքը ունենանք վայելելու եւ ծափահարելու»(9):

Անոնց դերակատարութիւնը չէ յիշուած: Քիչ հաւանական է որ ստանձնած ըլլան *Աիտա*յի փոքր դերերէն մէկը՝ քանի որ այնտեղ փոքր դերեր չկան, բացի Il messaggero-էն, որուն պարագային հայկական մամուլը անպայման մատնանշած պիտի ըլլար: Աւելի հաւանական է որ անոնք մաս կազմած ըլլան երգչախումբին՝ անփոխարինելի փորձառութիւն մը սկնակ եւ անյայտ երգիչներուն համար:

***Բարիզի աղքատները***

1912 Մայիս 10՝ Աղեքսանդրիոյ Թատրոն Ալհամպրա, եւ Յունիս 1՝ Գահիրէի Թատրոն Ապպաս, Աղեքսանդրիոյ դերասանական սիրողական խումբը կը բեմադրէ *Բարիզի աղքատները* վեց արար թատրերգութիւնը, երկուքն ալ նախաձեռնութեամբ Հայ Երիտասարդաց Միութեան, որուն հասոյթը պիտի յատկացուի Միութեան Ազգային Սրահի մը շինութեան:

Դերակատարներ՝ Գէորգ Իփէքեան (Վիլպրէօն), Լեւոն Շիշմանեան (Փլանթրէօզ), Լեւոն Պէրպէրեան (Փիէռ Պէռնիէ), Կարապետ Մկրտիչեան (Անտրէ Պէնիէ), Էօժէն Բաբազեան (Ռոքֆէօյ), Պետրոս Պէրպէրեան (Ռընէ), Վրթանէս Երամեան (Պիկօ), Լեւոն Թօքաթլեան (Ժիւպէր), Էօժէնի Շիշմանեան (Օր. Ալիտա), Զարուհի Տամատեան (Տիկին Պէռնիէ), Զ. Փափազեան (Անթուանէթ), Հ. Գամչեան (Քլոթիլտ):

Արմենակ Թօքաթլեան կը խաղայ ծառայ Ժոզէֆի փոքր դերը(10):

**ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ**

Եգիպտոս կատարած իր առաջին այցելութեան, Արմենակ Շահ-Մուրատեան կու տայ երկու մենահամերգներ՝ 1912 Փետրուար 19, Գահիրէի Թատրոն Ապպաս, եւ 1912 Մարտ 12, Աղեքսանդրիոյ Թատրոն Ալհամպրա:

Չենք գիտեր եթէ Թօքաթլեան ներկայ գտնուած է երգահանդէսին, կամ Շահ-Մուրատեան առիթ ունեցած է լսել անոր ձայնը, բայց տարիներ ետք, Շահ-Մուրատեան պիտի պատմէր հետեւեալ յիշատակը.

«Գահիրէի մէջ երգահանդէս կուտայի երբ երկու հայ հարուստներ՝ Իփէկեան եւ Օհանեան, ինձմէ խնդրեցին որ խօսիմ Արմանին, որովհետեւ իրենք չէին կրցած զայն որ ստիպել լրջօրէն աշխատի:

«Խօսեցայ Արմանին հետ որ այն ատեն 17 տարեկան էր եւ զինքը համոզեցի թէ պէտք էր որ լրջօրէն նայէր իր ասպարէզին վրայ ու պէտք չէ որ Իտալիոյ մէջ ուսանելու պատեհութիւնը արհամարհէ:

- Պիտի աշխատիմ, խոստացաւ Արման:

- Ատիկա բաւական չէ, ըսի:

- Պատւոյս վրայ կ'երդնում որ պիտի աշխատիմ, եղաւ Արմանի պատասխանը»(11):

Ինչպէս պիտի տեսնենք, Արմենակ 1920-ին կ'երթայ Իտալիա եւ 1921-ին կը տեղափոխուի Միացեալ Նահանգներ:

1923 Մայիս 29-ին, Նիւ Եորքի Adams Memorial Church-ի նուագահանդէսին կ'երգեն Թօքաթեան եւ Ալիծ Քիւրքճեան(12): Ներկայ էր Շահ-Մուրատեան, որ կը շարունակէ իր պատմութիւնը.

«Ու հիմա կը տեսնեմ թէ որքան լաւ բռներ է իր խօսքը: 1920-ին [1923] լսեցի Արմանը երբ Ալիծ Քիւրքճեանի հետ կ'երգէր Էտամս Մէմօրիըլ եկեղեցիին մէջ: Իր երգեցողութիւնը լրանալէն վերջ քովս եկաւ ու ըսաւ.

- Երախտապարտ եմ ձեզի, Գահիրէի մէջ ինծի խօսած ըլլալնուդ համար:

«Շատ զգացուեցայ իր անկեղծութեան ու հիացայ իր ձայնին վրայ, եւ ըսի.

- Եթէ խոստմնալից երիտասարդ երգիչ մը քեզի գայ, նայէ որ դուն ալ քու կարգիդ քաջալերես զինքը իր աշխատանքը շարունակելու»(13):

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. Metopera Database, https://archives.metopera.org/MetOperaSearch/search.jsp?q=Tokatyan&&sort=PDATE

2. «Արմէն Թօզաթեան», Թէոդիկ, *Ամէնուն տարեցոյցը 1926*, 20-րդ տարի, Վենետիկ, էջ 481: *Souvenirs of Tokatyan by Jacques Tocatlian*, https://www.historicaltenors.net/balkan/tokatyan.html

3. «Ամուսնական հանդէս», *Ազատ խօսք*, 23 Հոկտեմբեր 1907, էջ 14: «Եգիպտահայ արուեստագէտի մը յաջողութիւնը», *Արեւ*, 1 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 62 (822), էջ 1:

4. Յակոբ Շահնուր, «Թատերական յուշեր. Երգիչներ՝ Արման Թոքաթեան եւ Վրթանէս Երամեան», *Սփիւռք*, 31 Մարտ 1968, Ժ. տարի, թիւ 12, էջ 8: *Souvenirs of Tokatyan by Jacques Tocatlian*:

5. *The Sketch*, 20 March, 1912, վերարտադրուած՝ 'Today in 1912 'Aida' opens in open-air production beneath the Great Pyramid,' *victorianmasculinity*, https://victorianmasculinity.wordpress.com/2020/03/03/today-in-1912-aida-opens-in-open-air-production-beneath-the-great-pyramid/

6. 'Aida in the Desert,' *New Zealand Times*, 2 July 1912, Volume XXXVI, Issue 8162, p. 8.

7. «Եգիպտական լուրեր», *Լուսաբեր-Արեւ*, 5 Մարտ 1912, Ը. տարի, թիւ 1108, էջ 3:

8. *The Victrola Book of the Opera*, Camden, New Jersey: Victor Talking Machine Company, 1917, p. 17.

9. «Հայկական լուրեր», *Լուսաբեր-Արեւ*, 5 Մարտ 1914, Ը. տարի, թիւ 1108, էջ 2:

10. «Աղեքսանդրիոյ Հ. Ե. Միութեան ներկայացումը», *Հուսանք*, 22 Ապրիլ / 5 Մայիս 1912, Ա. տարի, թիւ 16, էջ 255: Սփինքս, «Թատերական քրոնիկ. *Բարիզի աղքատները*», *Հուսանք*, 6/19 Մայիս 1912, Ա. տարի, թիւ 18, էջ 285-287: *Լուսաբեր-Արեւ*, 28 Մայիս 1912, Ը. տարի, թիւ 1143, էջ 3: *Մալէշ*, 2 Յունիս 1912, էջ 15: Ս[ուրէն] Պ[արթեւեան], «*Բարիզի աղքատները* Գահիրէի մէջ», *Հուսանք*, 27 Մայիս / 9 Յունիս 1912, Ա. տարի, թիւ 21, էջ 333-335:

11. «Շահմուրատեան եւ Թոքաթեան», *Արեւ*, 20 Դեկտեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4851, էջ 4:

12. «Նուագահանդէս Նիւ Եորքի մէջ», *Հայրենիք*, 24 Մայիս 1923, 25-րդ տարի, թիւ 3364, էջ 2:

13. «Շահմուրատեան եւ Թոքաթեան», *Արեւ*, 20 Դեկտեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4851, էջ 4:

---

**ՎՐԱՍՏԱՆ**

## ԵԹԷ ՎՐԱՍՏԱՆԸ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՈՒՂԻ ՉՎԵՐԱԴԱՌՆԱՅ, ԱՊԱ ԴԱ ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ԿԸ ԼԻՆԻ ՆԱԵՒ ՀԱՐԵՒԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԱՐ. ՍԱԼՈՄԷ ԶՈՒՐԱԲԻՇՎԻԼԻ

Եթէ 2024 թուականի վրաստանեան խորհրդարանական ընտրութիւններից յետոյ Վրաստանը եւրոպական ուղի չվերադառնայ, ապա դա ողբերգութիւն կը լինի նաեւ հարեւան Հայաստանի համար, որը զարգանում է նոյն ուղղութեամբ, եւ որին անհրաժեշտ է վրացական կամուրջը: Այդ մասին Փարիզում *Բուչայից առաջ Աբխազիան է եղել* վաւերագրական ֆիլմի ցուցադրումից առաջ յայտարարել է Վրաստանի նախագահ Սալոմէ Զուրաբիշվիլին:

«Հոկտեմբերի 26-ի ընտրութիւններից յետոյ կա՛մ Վրաստանը կը վերադառնայ իր եւրոպական ուղուն՝ ես դրանում համոզուած եմ, եւ վստահ եմ, որ դրանից յետոյ իրադարձութիւնները շատ արագ կը զարգանան, եւ Յունիսին Ուկրաինայի ու Մոլդովայի հետ կը յայտնուենք եռեակում: Կա՛մ այլեւս չի լինի Վրաստան, եւ դա ողբերգութիւն կը լինի ոչ միայն նրա, այլ նաեւ հարեւան Հայաստանի համար, որը զարգանում է նոյն ուղղութեամբ, եւ որին պէտք է վրացական կամուրջը, եւ սա ողբերգութիւն կը լինի Կովկասի ու այս տարածաշրջանում Եւրոպայի ներկայացուցչութեան համար, որը շատ կարեւոր է իր գտնուելու վայրով», - ասել է Վրաստանի նախագահ Սալոմէ Զուրաբիշվիլին:

ՊԱՔՈՒ

## ԿԽՄԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԸ ՏԵՍԱԿՑԵԼ ԵՆ ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ԲԱՆՏԵՐՈՒՄ ՊԱՀՈՒՈՂ ՀԱՅ ԳԵՐԻՆԵՐԻՆ

Կարմիր Խաչի Միջազգային Կոմիտէի (ԿԽՄԿ) ներկայացուցիչները տեսակցել են ադրբեջանական բանտերում պահուող հայ գերիների հետ:

Տեսակցութեան ընթացքում հնարաւորութիւն է տրուել կապ հաստատել նրանց հարազատների հետ:

Ադրբէջանի կողմից Արցախի վրայ Սեպտեմբերի 19-ի ռազմական յարձակման հետեւանքով 16 անձ է գերեվարուել: Գերեվարուածների շարքում են նաեւ արցախցի 8 պաշտօնեաներ՝ նախկին նախագահներ Արկադի Ղուկասեանը, Բակօ Սահակեանը, Արայիկ Յարութիւնեանը, Ազգային Ժողովի նախագահ Դաւիթ Իշխանեանը, նախկին պետնախարար Ռուբէն Վարդանեանը, Պաշտպանութեան Բանակի նախկին հրամանատար Լեւոն Մնացականեանը, ՊԲ հրամանատարի նախկին տեղակալ Դաւիթ Մանուկեանը եւ նախկին արտգործնախարար Դաւիթ Բաբայեանը: Բաքուն նրանց ծանր մեղադրանքներ է առաջադրել: Նրանց գործերով նախաքննութիւնն աւարտուել է, սակայն նիւթերը դատարան դեռ չեն ուղարկուել:

Բաքուն Հոկտեբերի 1-ին հաղորդեց, որ Արցախի նախկին պաշտօնեաներին նոր մեղադրանք է առաջադրել՝ պատմամշակութային յուշարձանների ոչնչացում յօդուածով: Եթէ դատարանն այդ մեղադրանքները հաստատի, նրանց մինչեւ ցմահ ազատազրկում է սպառնում:

## ԲԱՔՈՒՈՒՄ ՊԱՀՈՒՈՂ ՀԱՅ ԳԵՐԻՆԵՐԻ ՎԵՐԱԴԱՐՁԻ ՀԱՐՑԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԳՆ-Ի ՄՇՏԱԿԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ Է

Ադրբէջանում պահուող հայ գերիների վերադարձի հարցը Հայաստանի Արտաքին Գործերի Նախարարութեան ուշադրութեան կենտրոնում է եւ մշտապէս բարձրաձայնւում է բոլոր հանդիպումների ժամանակ:

*Արմենպրէսի* հաղորդմամբ՝ այս մասին լրագրողների հետ ճեպազրոյցում ասաց Հայաստանի Արտաքին Գործերի նախարարի տեղակալ Վահան Կոստանեանը՝ պատասխանելով Ադրբէջանի հետ խաղաղութեան պայմանագրի նախագծի շրջանակներում ընթացող բանակցութիւններում գերիների խնդրի բարձրաձայնման մասին հարցին:

«Դա բանակցային գործընթացի ընդհանուր տրամաբանութեան մէջ է, բայց կոնկրէտ բանակցային փաստաթուղթ չեմ կարող նշել», - ասաց Կոստանեանը՝ հաւաստիացնելով, որ տարբեր քննարկումների ժամանակ այդ մասին մշտապէս խօսւում է:

1 ИРАНИ ՀԵՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ...

տարածքային ամբողջականութիւնը եւ անընդունելի համարում տարածաշրջանում ցանկացած սահմանային փոփոխութիւն: Միաժամանակ, նա ընդգծել է Հայաստանի հետ բազմոլորտ համագործակցութեան Իրանի նպատակադրումն ու պատրաստակամութիւնը:

Վարչապետ Փաշինեանն անդրադարձել է Հայաստան-Ադրբէջանի խաղաղութեան պայմանագրի շուրջ քննարկումների շուրջ վերջին զարգացումներին, տարածաշրջանային հաղորդուղիների ապաշրջափակմանն ուղղուած Հայաստանի կառավարութեան *Խաղաղութեան խաչմերուկ* նախագծին ու դրա սկզբունքներին՝ շեշտելով, որ Հայաստանը պատրաստ է ինքնիշխանութեան, իրաւազօրութեան, հաւասարութեան եւ փոխադարձութեան սկզբունքների հիման վրայ ապաշրջափակմամբ նպաստել շահագրգիռ պետութիւնների առեւտրատնտեսական յարաբերութիւնների զարգացմանը:

Իր հերթին Իրանի նախագահի առաջին տեղակալն ընդգծել է, որ իր երկիրն աջակցում է Հայաստանի կառավարութեան *Խաղաղութեան խաչմերուկ* նախագծին:

Զրուցակիցները քննարկել են երկկողմ առեւտրատնտեսական յարաբերութիւններին եւ դրանց զարգացմանը, էներգետիկայի, ենթակառուցուածքների, ճանապարհաշինութեան, զբօսաշրջութեան եւ այլ ուղղութիւններով համագործակցութեանը վերաբերող հարցեր:

Մտքեր են փոխանակուել երկուստեք հետաքրքրութիւն ներկայացնող այլ հարցերի շուրջ:

ԳԱՀԻՐԷ

# ԼԻՒՍԻ ՄԻՏԻԿԵԱՆ՝ ՈՏՔԵՐՈՒ ԵՒ ՁԵՌՔԵՐՈՒ ԿԱԽԱՐԴՈՒՀԻՆ

ՇԱՐՊԷԼ ՀԷՇԷՄԱ

*Լիւսի Միտիկեան կը վարէ քաղաքի կեդրոնը գտնուող մատնայարդար-ոտնայարդարի (manucure-pédicure) ամենածանօթ տունը: 88-ամեայ այս եգիպտահայուհին կը շարունակէ մնալ աշխոյժ եւ ընդունիլ հաւատարիմ յաճախորդներն ու անուանի մարդիկը՝ անցեալի Եգիպտոսը յիշեցնող զարդարանքի մը մէջ:*

Կէսօր է: Քասր Ալ-Նիլի փոքր փողոցի մը վրայ, Սուրբ Ժոզէֆ յայտնի տաճարին մօտ եւ ոչ-հեռու Գահիրէի կեդրոնը գտնուող Միսր Պանքայէն, Լիւսի Տան (Maison Lucy) երկու յարկերը կը վխտան յաճախորդներով եւ աշխատողներով: Կը տարածուի որոշ բուրմունք մը եւ կը հնչէ դասական երգ մը: 88 տարեկանին, Տիկ. Լիւսի տրամադրուած է կատարելու յաճախորդի մը մատնայարդարը ապա ոտնայարդարը: Այս խանութը ընտրած էր ամուսինին հետ 1960-ին: Նախքան իրենց ամուսնութիւնը, միասին կ'աշխատէին Պաթա կօշիկի ընկերութեան մէջ, ուր սակայն արգիլուած էր ամուսնական զոյգի մը համատեղ պաշտօնավարումը: Այդ ժամանակէն ի վեր, ան հաւաքեց բազմաթիւ աշխատողներ՝ որոնք յաջողութեամբ սորվեցան աշխատանքը եւ ոմանք բացին իրենց սեփական խանութները:

Ծագումով հայուհի, Տիկ. Լիւսի մանկապարտէզի տարիները անցուց Գալուստեան Վարժարանի մէջ, ապա ընտանիքը տեղափոխուելով Շուպրա, փոքրիկ Լիւսի նախընտրեց յաճախել Notre Dame des Apôtres դպրոցը, քանի որ անոր համազգեստը գտաւ վայելչագեղ՝ ծալքաւոր փողկապով եւ գլխարկով, մինչդեռ իր քոյրը գնաց Bon Pasteur:

Մայրը Եգիպտոս հասած էր շատ փոքր տարիքին, երբ Առաջին Համաշխարհային Պատերազմը ամբողջ թափով կ'ենար Թուրքիոյ մէջ եւ տեղի կ'ունենային հայկական ջարդերը: «Աչքերը կապուած եւ ձեռքերը շղթայուած, հայ տղամարդիկ ստիպուած էին շարքով քալել մինչեւ կամուրջին ծայրը, որպէսզի հյնային տրորող մեքենայի վրայ եւ աճիւնները նետուէին ծով: Յետոյ փողոցները լեցուեցան անոնց երեխաներով: Հետեւաբար, Կարմիր Խաչը անոնցմէ շատերը փոխադրեց Եգիպտոս եւ յանձնեց Հայոց Առաջնորդարան: Հայ ընտանիքներուն իմաց տրուեցաւ՝ որ աշխարհի եւ յատկապէս Թուրքիոյ մէջ մոլեգնող Մեծ Պատերազմին պատճառով, 4-5 տարեկան բազմաթիւ հայ որբեր հասած են Եգիպտոս եւ ոչ ոք ունին զիրենք խնամող»: Ուրեմն, հայ մեծահարուստները որդեգրեցին այս դժբախտ երեխաները:

«Իր տեսած արհաւիրքներուն պատճառով մայրս չէր սիրեր Թուրքիան եւ չէր ուզեր շատ խօսիլ այդ շրջանի մասին: Չէր մոռցած՝ որ մաս կազմած էր ծնողազուրկ հայ երեխաներու, որոնք այդ երկիրին մէջ ոտնաբոպիկ մնացած էին անձրեւի տակ», կը յիշէ Լիւսի: Մայրը նաեւ պատմած է՝ որ հայուհի մը, Տիկ. Ֆաթինէ, իր նման Թուրքիայէն փախչած, շատ ընդունակ էր կարի եւ յարդարանքի մէջ, յետագային ընտրուեցաւ Միս Եգիպտոս: «Մօրս անունն էր Սրբուհի: Ինք եւս շատ սիրուն էր՝ գեղեցիկ կապոյտ աչքերով: Ինծի պատմած է՝ որ երբ երեխաները փոխադրեցին նաւ, աղջիկներուն դէմքերը ծածկեցին իւղի շերտերով՝ քօղարկելու համար անոնց գեղեցկութիւնը եւ պաշտպանելու զանոնք տենչանքէ», կը յիշէ ան:

«Նկատի առնելով որ բազմաթիւ երկիրներ ընդունեցին հայ որբերը, դիպուածը այնպէս տնօրինեց՝ որ մայրս որդեգրուի գահիրեցի ընտանիքի մը կողմէ եւ բաժնուի քրոջմէ: Յետագային մայրս երկար ժամանակ փորձեց գտնել զինք, բայց ի զուր: Օր մը, երբ ես ու քոյրս տակաւին շատ փոքր էինք, մեր տունը կ'այցելէ հայոց եկեղեցիէն քահանայ մը, հաստատելու համար որ մայրս կը կոչուի Սրբուհի, եւ կը տեղեկացնէ որ քոյրը կը բնակի Միացեալ Նահանգներ եւ կ'ուզէ տեսնել զինք: Անոնք նամակներ կը փոխանակեն, բայց դժբախտաբար կը ծերանան եւ կը մահանան առանց հանդիպելու»:


Լիւսի Միտիկեան

«Մայրս ամուսնացած էր Եգիպտոս ծնած հայու մը հետ: Հայրս կ'աշխատէր Ալ-Պարք ընկերութեան մէջ իբրեւ մեքենագէտ եւ ելեկտրագէտ: Ան առաջինն էր որ Այն-Սոխնայի մէջ տեղադրեց քաղցրահամ ջուրը: Այդ օրը ոչխար մորթեցին իրեն համար: Մենք տակաւին փոքր երեխաներ էինք», ըսաւ ան բարձր, յստակ եւ հաստատուն ձայնով, միշտ շեշտը դնելով վերջին վանկին վրայ:

Դպրոցին մէջ, երկու տարի քննութիւններուն ձախողելէ ետք, մայրապետը Լիւսիի ծնողքին խորհուրդ կու տայ՝ որ նախընտրելի է իրենց աղջիկը թողու դպրոցը եւ սորվի ձեռային աշխատանք, քանզի աւելի ընդունակ է ատոր: «Ասկէ զատ, ծնողքիս ըսաւ որ ես լաւ ճաշակ ունիմ եւ գիտեմ լաւ ընտրել գոյները: Ես յաջող չէի ուսումի մէջ, բայց շատ կը սիրէի ձեռային աշխատանքը եւ ամէն տարեվերջի, երբ կը կազմակերպուէր ձեռագործներու ցուցահանդէսը, առաջին կը հանդիսանայի»: Այդ ժամանակ է որ գտան հայ տիկին մը, որուն մօտ գիշերօթիկ մնաց երիտասարդ Լիւսին եւ սորվեցաւ հագուստներ ասեղնագործել զանակներով (paillettes), մարգարիտներով եւ արուեստական ադամանդներով: «Մայրս զիս կը վերցնէր Շաբաթ երեկոյեան ընտանիքի հետ մէկ օր մը անցընելու համար, ապա Երկուշաբթի առաւօտեան կը վերադարձնէր գործատիրուհի Տիկ. Մարլենին մօտ: Այսպէս, փոքր տարիքէս սկսայ աշխատիլ եւ դրամ բերել ընտանիքիս», ամենայն հպարտութեամբ ըսաւ ան: Թուրքիայէն եկած բաւական տարիքաւոր այս հայուհին Լիւսիին կը տանէր նորաձեւութեան ցուցադրութիւններուն, տեսնելու համար բարձր հասարակութեան մարդոց: Լիւսի նաեւ կ'ընկերակցէր անոր գնումներուն, սորվելու համար ինչպէս գնել զանակները:

Բայց Լիւսի երկար չմնաց առաջին աշխատանքին մէջ, քանզի դրացի մը՝ որ կ'աշխատէր Պաթա կօշիկի խանութին մէջ, կու գայ առաջարկելու հօրը որ այդ խանութին մէջ աշխատի իբրեւ ոտնայարդար եւ մատնայարդար: «Ուրեմն սորվեցայ արհեստին գաղտնիքները եւ ես դարձայ զերազանց՝ քանի որ ձեռային աշխատանք էր ան: Աւելի ուշ մենք սիրահարուեցանք եւ որոշեցինք ամուսնանալ: Այդ շրջանին՝ 1952-ի Յեղափոխութենէն քանի մը ամիսներ առաջ, այս արհեստը կիրարկելու համար պէտք էր կրել եւրոպական անուն: Երբ տնօրէնը իմացաւ որ կը կոչուիմ Լիւսի, խնդրեց որ չփոխեմ անունս: Ապազայ ամուսինս՝ Ապտէլ-Հաքիմ, անուանուեցաւ Ճիմմի»: Այստեղէն ալ եկաւ խանութին անունը:

Լիւսի Տունը կանոնաւորապէս յաճախող անուանի դէմքերէն մէկը կարելի է նշել յայտնի լրագրող Մոհամատ Հասանէյն Հէյքալ, որ կը կատակէր՝ հարցնելով թէ արդեօք ամուսինը խանութը իր անունո՞վ արձանագրած էր: Ան կը յիշէ նաեւ Ալի Համտի Ալ-Կամմալը՝ Լրագրողներու Միութեան նախկին նախագահը եւ Ալ-Ահրամ Հիմնարկութեան նախկին ընդհանուր տնօրէնն ու խմբագրապետը: Ան չէ մոռցած՝ որ Ֆարուք թագաւորի կինը Նարիման եղած է իր յաճախորդը, ինչպէս նաեւ նախագահներ Նասէրի եւ Սատաթի որդիները: Արուեստագէտներուն մեծ մասը եղած են իր յաճախորդները, սկսելով Ռուշտի Աբազայէն, որ ամուսինին ընկերն էր, մինչեւ Օմար Շարիֆ, Ֆաթէն Համամա, Շատիա եւ շատ ուրիշներ: Անշուշտ այս ծառայութիւնը գոյութիւն ունէր որոշ վարսայարդարներու սալոններուն մէջ, բայց այս Տան մասնագիտութիւնն էր դարմանել ոտքի

4

ՋԱՀԱԿԻՐ



### ԼԻՒՍԻ ՄԽՏԻԿԵԱՆ՝ ՈՏՔԵՐՈՒ ԵՒ ՁԵՌՔԵՐՈՒ ԿԱԽԱՐԴՈՒՀԻՆ

3

կօշտերը եւ մորթի սպիները: «Մենք մեղմօրէն կ'աշխատինք խնամելու համար եղունգները, մինչդեռ բժշկութիւնը անմիջապէս կ'ընտրէ վիրաբուժութիւնը», կը մատնանշէ ան, նշելով՝ որ եղունգներու այսօրուայ միտումը աքրիլիքն է:

Տիկ. Լիւսի աշխարհը շրջագայած է իբրեւ զբօսաշրջիկ այլ ոչ թէ աշխատանք որոնող, քանի որ շատ կը սիրէ Եգիպտոսը եւ չ'ուզեր լքել զայն: Իր եղբայրը 1960-ականներէն ի վեր ոսկերիչ է Աւստրալիոյ մէջ եւ ունի սեփական օդանաւը որուն օդաչուն է ան: «Երբ այցելեցի իրեն, ինծի պտըտցուց աշխարհի այս ամենափոքր ցամաքամասի զանազան վայրերը: Միասին թռչեցանք տարբեր ուղղութիւններով՝ Մելպուրն, Ատելայտ, Քուինսլանտ, եւլն.: Բնաւ չվախցայ»: Ան կը յիշէ նաեւ՝ որ Քուէյթ ապրող ընկերուհի մը, Գահիրէի սուփերմարքէթի մը մէջ մեծ գումարով գնում կատարած ըլլալուն համար իրաւունք ունեցաւ մասնակցելու վիճակահանութեան, բայց քանի որ շուտով պիտի վերադառնար Քուէյթ, տուած էր Տիկ. Լիւսիի անունը: Քանի մը ամիսներ ետք արդէն մոռցած էր վիճակահանութիւնը, երբ իր անունը կը յայտնուի լրագիրին մէջ եւ կը շահի Singapore Airlines օդանաւի տոմսակ մը դէպի Հեռաւոր Արեւելք: Ան դարձեալ կ'ընտրէ Աւստրալիան:

Իր բնակարանին պատերը կը զարդարեն բազմաթիւ գեղանկարներ, ուր կրնանք տեսնել պարտէզներ եւ ծով: Լիւսի շատ կը սիրէ ծաղիկները եւ բոյսերը, ինչ որ իրապէս սիրեց Հոլանտայի մէջ: Այնտեղէն ուզեց երթալ Ֆրանսա ներկայ գտնուելու Յուլիս 14-ի տօնակատարութիւններուն: Ընկերուհին փորձեց Փարիզի մէջ սենեակ վարձել, բայց ոչ մէկ պանդոկի մէջ տեղ մնացած էր: Ուրեմն օդանաւով մեկնեցան Լոնտոն:

«Ես շատ յաճախորդներ ունիմ արտասահմանէն: Նոյնիսկ Գերմանիոյ դեսպանը կանոնաւորապէս կը կապուի հետս ժամադրութեան համար: Երբ յաճախորդ մը գոհ մնայ, կը տեղեկացնէ իր ծանօթները, որոնք անմիջապէս կու գան այստեղ»:

Սպասելով իր կարգը, Անժէրէն եօթանասունամեայ ֆրանսուհի մը կը նկարագրէ Լուարի պալատներուն գեղեցկութիւնը, յատկապէս Շամպորը եւ Շընոնսոն: Կը պատմէ՝ որ 4 կամ 5 ամիսը անգամ մը կու գայ Եգիպտոս եւ ամէն անգամ իր եղունգները կը յարդարէ Տիկ. Լիւսիի մօտ:

Լիւսի այցելած է նաեւ Գերմանիա եւ տեսած Հիթլէրի համակեդրոնացումի ճամբարները: «Սոսկում», բացականչեց ան: Իտալիոյ մէջ զբօսանքներու կ'երթար ընկերուհիին եւ իր «սինիորէ» ամուսինին հետ: Օր մը ընկերուհին կը խնդրէ խնամել սինիորէի ոտքերը, քանի որ կօշտերու եւ սպիներու պատճառով դժուարութեամբ կը քալէր: Շատ գոհ կը մնայ իր ծառայութենէն, զոր կը փոխհատուցէ գեղեցիկ նուէրով մը, քանի որ, բնականաբար, մերժած էր վարձատրութիւն ստանալ:

Տիկ. Լիւսի յաճախ կը կրկնէ փոքրիկ արտայայտութիւնը՝ «Աստուծոյ կամքով», որ փայտէ գրութեամբ եւ շրջանակով կախուած է պատէն: Կը տեսնենք նաեւ խանութի բացումին լուսանկարները, ինչպէս նաեւ իր յաճախորդներէն յայտնի դէմքեր, ներառեալ Նոպէլի մրցանակակիր Նակիպ Մահֆուզը: Այսքան յիշատակներով շրջապատուած, ան միշտ տոգորուած է լաւ տրամադրութեամբ, կորովով լեցուն. որոշած է երբեք չդադրիլ աշխատելէ՝ այնքան ժամանակ որ առողջութիւնը թոյլատրէ:

***Al-Ahram Hebdo***

18-24 Սեպտեմբեր 2024, էջ 19

Ֆրանսերէնէ թարգմ.՝ Հ. Ա.

### ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՄԷՋ ՂԱՐԱԲԱՂԻ ...

1

NIDA Շարժումի Էլմիր Ապպասովը կը ստանայ 30 օրուայ վարչական կալանք՝ ոստիկանութեան չհնազանդելու համար(19): Սակայն սահմանափակ աղբիւրները եւ գործունէութեան սահմանները թոյլ չեն տար անոնց գրաւել աւելի լայն լսարան:

**ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՅԱՆՁՆԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

Հիմնուելով Ազըրպէյճանի յետպատերազմական քաղաքական միջավայրի եւ փոփոխութիւններու նկարագրութեան եւ վերլուծութեան վրայ, կարելի է առարկել՝ որ ոչ միայն հիմնահոսանքի ընդդիմութիւնը տկարացաւ եւ կորսնցուց իր աջակցութիւնը, այլ յառաջադէմ ուժերը եւս առաւել մեկուսացան: Ժողովրդավարութեան, Եւրոպայի ամբողջարկութեան (integration) եւ մարդու իրաւունքներու պատումները տարածուած չեն յաղթանակէն ետք, եւ հիմնահոսանքի ընդդիմութիւնը կը փորձէ աջակցութիւն հաւաքել հակառուսական պատումներու միջոցով: Արդարեւ, այս ռազմավարութիւնը չի կրնար յաջողիլ առանց որեւէ յստակ ապացոյցի՝ թէ Ռուսաստանը կը սպառնայ Ազըրպէյճանի ինքնիշխանութեան: Նկատի առնելով յաղթանակի պատումին շուրջ բարձրացած ազգայնական գաղափարները, որոշ աջակողմեայ փոփիւլիսթներ, ինչպէս Թուրալ Ապպասլի, ժողովրդականութիւն եւ դրական արձագանգ կը վաստակին ընդհանուր հասարակութենէն:

Երկխօսութեան ձեւաչափը նպատակ չունի ժողովրդավար դարձնել հանրային տարածքը: Փոխարէնը, այս քաղաքականութիւնը կը ձգտի բնականոն վիճակի վերածել այն կուսակցութիւնները՝ որոնք չեն թիրախաւորեր եւ քննադատեր նախագահ Ալիեւը: Կարելի է ենթադրել, որ կուսակցական պաշտօնատարները՝ որոնք համաձայն են երկխօսութեան օրակարգին, առիթ ունին անդամակցելու Խորհրդարանին, ներկայացնելով կառավարութեան կողմէ վերահսկուած ընդդիմադիր կուսակցութիւններու նոր սերունդը, նմանակելու համար ժողովրդավարութիւնը եւ բազմակեցութիւնը:

**Յանձնարարութիւններ**

ԱՄՆ, ԵՄ եւ իր անդամ պետութիւնները, եւ Ազըրպէյճանի մէջ գտնուող անոնց դեսպանատուներն ու ներկայացուցչական հիմնարկները պէտք է.

- Հաշուի առնեն երկիրին մէջ գոյութիւն ունեցող ուժային շարժիչները, յատկապէս կառավարութեան նախաձեռնած շարունակուող երկխօսութեան գործընթացը, որ կրնայ դրական արդիւնք ունենալ ՀԿ-ներու արձանագրութեան համար: Բայց եւ այնպէս, գործընթացը պէտք չէ գնահատել իբրեւ անպայմանօրէն դրական եւ պէտք է հետապնդել քննադատական ուշադրութեամբ:

- Ուշադիր ըլլան այն խումբերու եւ անհատներու արժէքներուն՝ որոնց հետ կը ձգտին համագործակցիլ. պէտք է գնահատեն իրենց դիրքորոշումները պատերազմի եւ անոր արդիւնքներուն նկատմամբ:

- Աջակցին յառաջադէմ ուժերուն եւ անոնց գործունէութեան Ազըրպէյճանի մէջ՝ առանց վարանելու աշխատելով նոր դէմքերու հետ: Այս տեղական խաղացողները վճռական են ստեղծելու յառաջադէմ այլընտրանքներ՝ առկայ ազգայնական տրամասացութիւններուն նկատմամբ: Արդիւնաւէտ հոգեբանական ազդեցութիւն ունին յառաջադէմ աքթիւիսթներուն հետ հանդիպումները եւ բարոյական աջակցութեան արտայայտումը անոնց: Բարոյական կարեւորութիւն ունի դեսպանութեան ներկայացուցիչներուն անձնական ներկայութիւնը յառաջադէմ աքթիւիսթներու կազմակերպած մշակութային ձեռնարկներուն:

- Աջակցին տեղական ՀԿ-ներուն՝ որոնք վերապատրաստութիւններ եւ աշխատանոցներ կը կազմակերպեն աքթիւիսթներուն, փաստաբաններուն, հասարակական աշխատողներուն եւ լրագրողներուն համար: Աջակցին հիմնադրամներու, ուսումնասիրական կեցութիւններու եւ կրթաթոշակներու՝ փաստաբաններու, լրագրողներու եւ քննական ուսումնասիրողներու համար, որ ունի անհուն կարեւորութիւն: Այս հնարաւորութիւնները պիտի բարձրացնեն անոնց հմտութիւնները եւ խրախուսեն աշխատիլ Ազըրպէյճանի մէջ:

- Ընդունին՝ որ երկիրին մէջ տեղի ունեցած քաղաքական փոփոխութիւններուն եւ նշանակալի իրադարձութիւններուն վերաբերեալ յայտարարութիւնները զօրեղ են: Դրական կամ քննադատական (օրինակ՝ ոտնձգութիւնները դատապարտող), առաւել յաճախ հրապարակուող հանրային յայտարարութիւնները, վարմունքը եւ հասարակական ցանցերու գրառումները (յատկապէս դեսպանատուներուն կողմէ) ցոյց պիտի տան հաւաքական Արեւմուտքի ներգրաւուածութիւնը Ազըրպէյճանի իրականութիւններուն:

- Քաջալերեն անձնական հանդիպումները պաշտօնատարներուն հետ, խօսելու համար քաղաքական բանտարկեալներու, աքթիւիսթներուն նկատմամբ ոտնձգութիւններու եւ երկխօսութեան հետ կապուած նիւթերու շուրջ:

***POLICY BRIEF***

Դեկտեմբեր 2021, թիւ 37

Անգլերէնէ թարգմ.՝ Հ. Ա.:

(Վերջ 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

11. Samadov, B. 2020b. Azerbaijan—COVID-19 and a Divided Opposition. *Caucasus Analytical Digest*. Դիտում՝ November 11, 2021. https://css.ethz.ch/en/publications/cad/cad-all-issues/details.html?id=/n/o/1/1/no_115_the_covid19_pandemic_in_the_south

12. TV Musavat. 2021a. *"Those were the children of the teahouse who sacrificed their lives" - Tural Abbasli*. 10 April. Դիտում՝ November 11, 2021. https://youtu.be/bPuwbzm966c

13. Info Az. 2021. *Tural Abbasli disgraced feminist Aysel Alizade!* 28 June. Դիտում՝ November 11, 2021. https://youtu.be/KndSQMXxKiw

14. TV Musavat 2021c. *Tural Abbasli responded harshly to those who called him a "bus opposition": "Go to gay conferences ..."* 27 March. Դիտում՝ November 11, 2021. https://youtu.be/-H42eVVQEwc

15. Namazov, K. 2021. Emerging Political Feminism in Azerbaijan: The Most Visible Other. *Feminism-Boell.Org*. Դիտում՝ November 11, 2021. https://feminism-boell.org/en/2021/ 10/25/emerging-political-feminism-azerbaijan-most-visible-other

16. Samadov, B. 2020a. *Azerbaijan's peace activists face harassment, and a reckoning*. 20 November. Դիտում՝ November 11, 2021. https: //eurasianet.org/perspectives-azerbaijans-peace-activists-face-harassment-and-a-reckoning

17. Meydan TV. 2021. *Feminists march in Baku on 8 March*. 8 March. Դիտում՝ November 11, 2021. Available at: mtv.re/en/b/x1F

18. Isayev, H. 2021. Amid wave of femicides, Azerbaijan's feminists come under attack. *Eurasianet*. 17 August. Դիտում՝ November 11, 2021. https://eurasianet.org/amid-wave-of-femicides-azerbaijans-feminists-come-under-attack

19. Turan. 2021c. *Elmir Abbasov, detained at the protest rally, arrested for 30 days*. 13 October. Դիտում՝ November 11, 2021. https://www.turan.az/ext/news/2021/10/free/Social/en/8545.htm

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1977 ՀԻՆԳՇԱԲԹԻ 24 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2024 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٧٧ الخميس ٢٤ أكتوبر ٢٠٢٤


## .ԱԼԻԵՒԻ ԽԵԼԱՑՆՈՐ ՇՐՋՈՒՄԸ (Ա. ՄԱՍ)
## «ԴԱՒԱՃԱՆ-ՀԱՅ»՝ ՆԵՐՔԻՆ ԹՇՆԱՄԻԻ ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ՈՐՍԸ

ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՀԱՒԱՔԱԿԱՆ (Ազըրպէյճան)

**Նախաբան. թարմացում Ազըրպէյճանի վերջին իրադարձութիւններուն**

Օգոստոսի կէսերէն սկսեալ, ազըրպէյճանական վարչակարգը սրեց իր դաժան ճնշումը այլախոհութեան վրայ՝ կամայաբար կալանաւորելով ականաւոր հետազօտող եւ հակապատերազմական աքթիւիսթ Պահրուզ Սամատովին, ինչպէս նաեւ աւելցնելով մեղադրանքները արդէն կալանաւորուած այլ աքթիւիսթներու, լրագրողներու եւ հետազօտողներու դէմ: Օդակայանին մէջ առեւանգեցին այլ հակապատերազմական աքթիւիսթ եւ գրող Սամատ Շիխիին եւ հարցաքննեցին զինք Պահրուզ Սամատովի խնդիրին առնչութեամբ: Սամատը ազատ է հիմա: Պահրուզ կը գտնուի չորս ամսուայ նախաքննական կալանքի տակ եւ իրեն առաջադրուած է դաւաճանութեան շինծու մեղադրանքներ: Կ'ակնկալուի եւս ուրիշ մարդոց ձերբակալութիւնը կամ հարցաքննութիւնը:

Ասիկա լոկ սովորական յաջորդական լռեցումը չէ: Հաշուարկուած յարձակում մըն է ոեւէ մէկու վրայ՝ որ կը համարձակի դիմակայել վարչակարգի մենատիրական բռնակալութիւնը: Եւ կարեւոր է գիտնալ՝ որ ազըրպէյճանական վարչակարգին բռնաճնշումները ունին համակարգուած եւ կրկնուող բնոյթ: Նորագոյն ալիքը տեղի ունեցաւ 2014-ին, քարիւղի շուկայի ճգնաժամէն եւ վարչակարգի քարիւղային եկամուտներու կտրուկ անկումէն ետք, վախնալով արաբական ապստամբութիւններու ազդեցութենէն տարածաշրջանին մէջ: Այդ ժամանակ քանդուեցաւ անկախ քաղաքացիական հասարակութիւնը, որդեգրուեցաւ դրամաշնորհներու եւ ոչ-կառավարական կազմակերպութիւններու գրանցումի դաժանագոյն օրէնք՝ գործնականօրէն քայքայելով քաղաքական միջավայրը: Որոշ չափով նման ալիք կը դիմագրաւենք 2023-էն ի վեր, քանզի անկախ աքթիւիսթները, հետազօտողները, լրատուամիջոցները եւ ոեւէ մէկը որ կը համարձակի առարկել կամ անհամաձայնիլ բռնապետական իշխանութեան՝ կը յայտնուի վտանգի տակ:

Ներկայի յարձակումը կը յաջորդէ ազըրպէյճանական վարչակարգի ամբողջական յաղթանակին Լեռնային Ղարաբաղի մէջ եւ հայերու արտագաղթին: Մինչ բազմաթիւ միամիտ ձայներ ազատականացում կ'ակնկալէին Լեռնային Ղարաբաղի ուժային լուծումէն ետք, կատարուեցաւ հակառակը եւ ունեցաւ տրամաբանօրէն ակնկալուած ելքը: Վարչակարգը ինքզինքին անվերապահ ազատութիւն տուաւ ընելու ինչ որ կ'ուզէ: 2023 Յուլիսէն սկսեալ թիրախ հանդիսացան անկախ խաղաղցողները:

Կարեւոր է յիշեցնել՝ որ ազըրպէյճանական իշխանութիւնները պէտք չունին յատուկ պատճառ փնտռելու ճնշում գործադրելու համար: Այս վարչակարգին գլխաւոր շարժառիթը եւ կարգախօսն է՝ «սպաննէ ժողովրդավարութիւնը իր օրրանին մէջ»: Նախապէս կտրուկ գործողութիւններէ ետ մղողը միջազգային յարաբերութիւններուն մէջ գոյութիւն ունեցող քիչ թէ շատ հաւասարակշռութիւնն էր, որուն պատճառով ցանկութիւն կար փրկել սեփական պատկերը: Ազըրպէյճանի կտրուկ շրջադարձը արտաքին քաղաքականութեան մէջ՝ հաւասարակշռուած քաղաքականութենէ դէպի կողմերու բացայայտ ընտրութիւն եւ իր նման բռնատիրական վարչակարգերու հետ դաշինքի ձգտում, ինչպէս նաեւ կեղծաւորութիւնն ու անտարբերութիւնը արեւմտեան ժողովրդավարութիւններուն՝ որոնք կը շարունակեն համագործակցիլ Ազըրպէյճանի հետ, հնարաւորութիւն տուին իշխանութիւններուն վերացնել անկախ քաղաքացիական հասարակութիւնը՝ մնալով անպատիժ:

Եռմասանի գրառումով, կը փափաքինք ուրուագծել այս վերացումին հնարաւոր պատճառները եւ յետագայ զարգացումի կարելիութիւնները: Կ'ուզենք ընդգծել՝ որ որոշ վերլուծութիւններ հիմնուած են իրական մտահոգութիւններու վրայ: Մենք նաեւ չենք ուզեր հեռու պահել մեզի՝ դուրս ձգելով պատերազմն ու արշաւանքը, ինչպէս բազմաթիւ քաղաքական վերլուծողներ ըրին 2020-ի Ղարաբաղի եւ 2022-ի Ուքրաինայի պատերազմներուն:

Մենք չենք կարծեր՝ որ դասական բանական ծախս-շահու վրայ հիմնուած վերլուծութիւնը, որուն կը յարին քաղաքական վերլուծողները, կը գործէ բռնակալներուն համար: Յատկապէս կ'ընդունինք՝ որ բռնակալներուն համար այդ ծախսն ու շահը բխած են մեր սահմանափակ ըմբռնումէն: Բռնապետներու վերլուծութեան միակ ուղեգիծը՝ որուն վրայ կրնանք յենուիլ, ամէն գնով իշխանութիւնը պահելու ցանկութիւնն է եւ այս վախին յաջորդող խելացնորքը:

**Ա. ՄԱՍ. «ԴԱՒԱՃԱՆ-ՀԱՅ»՝ ՆԵՐՔԻՆ ԹՇՆԱՄԻԻ ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ՈՐՍԸ**

Ինչպէ՞ս կրնայ խաղաղութեան յաւակնող կառավարութիւն մը միաժամանակ քրէական պատասխանատուութեան ենթարկել խաղաղութեան կոչնակները:

Ազըրպէյճանի մէջ, խաղաղութիւնը պաշտպանել կամ հայերուն հետ երկխօսիլ շատոնց հաւասարած է դաւաճանութեան, խարան մը՝ որ 1990-ականներէն ի վեր մթագնեց քաղաքացիական հասարակութիւնը: Լէյլա Եունուսի նման դէմքեր, որոնք համարձակեցան խախտել լռութիւնը եւ ճեղքել հակամարտութեան բաժանումը, արագօրէն պիտակաւորուեցան իբրեւ դաւաճաններ, դասուեցան «ժողովուրդ-հայրենիք-պետութիւն» երրորդութեան թշնամիներ: «Դաւաճան հայ» պատումին օգտագործումը իբրեւ զէնք ժամանակի ընթացքին յարատեւեց եւ նոյնիսկ աւելի խորացաւ, արտացոլելով կանխամտածուած ռազմավարութիւն՝ մեկուսացնելու համար պետութեան ռազմական համաձայնութիւնը հարցադրումի տակ դնողները: 2020 թուականի պատերազմի ընթացքին, երբ ազգայնական եռանդը եւ պետականօրէն առաջնորդուող ֆաշիզմը հասաւ նոր բարձունքներու, յայտնուեցան հակապատերազմական աքթիւիսթներու փոքր բայց ձայնաւոր խումբ մը: Թէեւ անոնք ոչ մէկ իրական սպառնալիք կը ներկայացնէին վարչակարգին, սակայն անոնց գոյութիւնը անհանդուրժելի էր որովհետեւ կը խաթարէր ամբողջական միասնութեան պետութեան պատկերը: Պարտադրուող համաձայնութեան եւ քրէականացուող այլախոհութեան մթնոլորտի մէջ, այս խաղաղութեան ջատագովները վերածուեցան ներքին թշնամիներու՝ ծայրայեղ քաւութեան նոխազներ կառավարութեան մը համար որ կ'ուռճանայ յաւերժական վախի ստեղծումով:

**Խաղաղութեան բանակցութիւններուն եւ բռնաճնշումին հակասութիւնը**

Հակամարտութեան տեսարանը անկասկած զարգացաւ 2020 թուականի պատերազմէն ի վեր: Ռազմաճակատի վրայ եւ դիւանագիտական ասպարէզի մէջ Ազըրպէյճան ապահովեց բազմաթիւ նշանակէտեր, մինչ սաստկացաւ վարչակարգին թշնամութիւնը խաղաղութեան ջատագովներուն հանդէպ: Հեգնութիւնը չէր կրնար աւելի ցայտուն ըլլալ. ↳ 4

ՊԱՂԵՍՏԻՆ

## ՄԷԿ ՏԱՐԻ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ ԿԱԶԱՅԻ ՄԷՋ

Մէկ տարի առաջ՝ անցեալ տարուայ Հոկտեմբեր 7-ին, կրօնական հռետորաբանութեան կրող պաղեստինեան Համաս կազմակերպութիւնը կը կատարէ իր հայդուկային յարձակումը Իսրայէլի խաղաղ բնակչութեան վրայ, պատճառելով մարդկային սահմանափակ զոհեր:

Բնականաբար, Հոկտեմբեր 7-ը երկարատեւ իրադարձութիւններու շարունակութիւնն էր՝ պաղեստինցիներուն ապամարդկայնացումը Իսրայէլի կողմէ, պատերու եւ արգելագիծերու տեղադրումը՝ որոնց այն կողմը կը գտնուին անմարդկայնացուած արաբները եւ որոնց Իսրայէլ իրաւունք ունի վնասելու առօրեայ կանոնաւորութեամբ:

Միաժամանակ ի՞նչ կը մտածէր Համաս՝ երբ հայդուկային յարձակում կը գործէր աշխարհի ամենահզօր ու ամենակազմակերպուած բանակներէն մէկը ունեցող պետութեան վրայ: Համաս՝ բռնատիրական իշխանութիւն մը իր բնակչութեան վրայ, որ արգիլած է քննադատութիւնը իր տիրապետած սահմաններէն ներս, մերժած այլընտրանքային ձայնը, մինչ իր ղեկավարները տիրացած գերհարստութեան:

Համաս բացառիկ նուէր մը տուաւ Իսրայէլի աջ ծայրայեղական իշխանութիւններուն եւ անձամբ Պենիամին Նէթանիահուին՝ հիսթերիք մարդատեաց-մարդասպան մը, ոչ նուազ ընդունակ քան հայերուս այնքան ծանօթ Իլհամ Ալիեւն ու Վլատիմիր Փութինը (վերջինիս իրական դէմքը բացայայտուեցաւ Ուքրաինայի արշաւանքէն ետք):

Համասը վերացնելու պատրուակով, Հոկտեմբեր 27-ին Իսրայէլ կը ռմբակոծէ Կազան, նշանաւորելով արդի պատմութեան ամենավայրագ յարձակումներէն մէկը:

Մինչեւ այսօր՝ մէկ տարուայ ընթացքին, նուազագոյնը 42 հազար պաղեստինցի մահեր, ներառեալ 11 հազար երեխաներ, առաւել 600 նորածիններ: 42 հազար, այսինքն գրեթէ ամէն ընտանիք ունի զոհ մը, այսինքն՝ յաւերժ վնասուած է ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԱԴՐԲԷՋԱՆԸ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ 16 ԿԷՏԻ ՇՈՒՐՋ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԵԱՆ ԵՆ ԵԿԵԼ. ԱԼԷՆ ՍԻՄՈՆԵԱՆ

Հայաստանի Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեանը յայտարարել է, որ Հայաստանն ու Ադրբէջանը համաձայնութեան հասնելու շեմին են խաղաղութիւն հաստատելու հարցում:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ Հայաստանի ԱԺ նախագահին այդ մասին ասել է Միջխորհրդարանական Միութեան 149-րդ Վեհաժողովի ընդհանուր քննարկումներում ունեցած ելոյթում:

«Ինչ վերաբերում է խաղաղութեան հաստատմանը, ցանկանում եմ տեղեկացնել, որ Հայաստանն ու Ադրբէջանը համաձայնութեան հասնելու շեմին են: Այն համատեքստում, երբ խաղաղ գործընթացը լրջօրէն սկսուեց ամիսներ առաջ, Ադրբէջանը ցանկանում էր մեր համաձայնութիւնը միջազգայնօրէն ճանաչուած 5 կէտի շուրջ: Ուրախ եմ տեղեկացնել, որ այսօր մենք համաձայնութեան ենք եկել 16 կէտի շուրջ: Կատարեալն այլեւս չպէտք է լինի լաւի թշնամին: Եկել է խաղաղութիւն հաստատելու ժամանակը. խաղաղութեան ↳ 4

# ԱՐՄԱՆ ԹՕՔԱԹԵԱՆ
## Եգիպտոսի եւ յաջորդող տարիներ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

### ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՍԷՐԸ ԵՒ ՖՐԱՆՍԱ

Փոքր տարիքէն հակում ցոյց տուած է երգելու: Կ'երթար օփերա մեծ երգիչները լսելու եւ վերադարձին կ'երգէր լաձները:

*Յուսաբեր* 1920-ին պիտի նշէր՝ որ հայրը նկատած է զաւակին ձիրքը եւ ազատ ձգած հետեւելու իր ասպարէզին(14): Եղբօրորդին՝ նկարիչ Ժագ Թօքաթլեան, որ Արմենակի մասին լսած է ծնողքէն, քիչ մը ուրիշ կարծիք ունի.

«Վաղ տարիքէն, հօրեղբայր Արման ցոյց տուած է երգելու մեծ հետաքրքրութիւն: Տարիներու ընթացքին, ան ուրիշ ասպարէզ չէր պատկերացներ օփերայի երգիչէ զատ: Համաձայն ժամանակուայ տարածուած մտայնութեան, մեծհայրս [Արմանի հայրը] չէր ուզեր որ զաւակներէն մէկը դառնար երգիչ: Բախումնալից կացութիւն մը ըլլալու էր: Հարցը ի վերջոյ լուծուեցաւ, երբ հօրեղբայր Արման իր ցանկութիւնը յայտնեց դերձակութիւն սորվիլ Փարիզի մէջ: Նշանակալի ծախսերով կը ղրկուի Փարիզ»(15):

Ամէն պարագայի, 1912-ին կ'երթայ Փարիզ դերձակութեան համար: Դերձակութեան փոխարէն կը սկսի երգել սրճարաններու եւ Քառթիէ Լաթէնի մէջ, վաստակելով երգիչի համբաւ: Թերեւս այս շրջանը ամենալաւ կերպով կը նկարագրէ Ժագ Թօքաթլեան.

«Կ'անցնին տարիներ: Այս կամ այն պատճառաբանութեամբ առիթ կը գտնէր երկարաձգել կեցութիւնը Ֆրանսա:

«Զգալով խնդիրը, օր մը մեծհայրս Եւրոպա մեկնող բարեկամի մը կը խնդրէ ստուգել որդին: Երբ բարեկամը կը վերադառնայ, մեծհօրս կը տեղեկացնէ՝ որ այս բոլոր տարիներու ընթացքին Արման դերձակութիւն չէ ուսանած, այլ երգած է այստեղայնտեղ, նոյնիսկ Քառթիէ Լաթէնի քաֆէները եւ սկսած է համբաւ վաստակիլ իբրեւ տաղանդաւոր երգիչ: Հետը կը բերէ ծանօթ քննադատներու բազմաթիւ յօդուածներ եւ մեծապէս խորհուրդ կու տայ մեծհօրս քաջալերել որդին այս ուղղութեամբ, ինչ որ ըրաւ ան»(16), երբ 1913-ին Արմենակ վերադարձաւ Աղեքսանդրիա:

### ՍԿԻԶԲ ԵՐԳԱՅԻՆ ԱՍՊԱՐԷԶԻ

1913 Նոյեմբեր 23՝ Աղեքսանդրիոյ Ս. Պօղոս Պետրոս եկեղեցի, հանդէս նուիրուած հայ գիրի գիւտի 1500 եւ հայ տպագրութեան 400 ամեակներուն: Թօքաթլեան կ'երգէ *Կռունկ*, եւ պաս Օննիկ Վարժապետեանի հետ կը զուգերգէ *Մայր Արաքսի*(17):

1914 Մարտ 19-ին կու տայ մենահամերգ Աղեքսանդրիոյ Լիֆոնթիի սրահին մէջ, երգելով՝ *Ո՜հ ինչ անուշ*, *Կռունկ*, *Հայաստան*, ինչպէս նաեւ իտալերէն եւ ֆրանսերէն երգեր:

*Յուսաբեր*ի անստորագիր թղթակիցը կը հաղորդէ.

«Միջազգային ընտրեալ բազմութեան մը ներկայութեան Պ. Արմենակ Թօքաթլեան իր պառիթօնի [իմա՝ թենորի, Հ.Ա.] գեղեցիկ ձայնովը յաջողութեամբ երգեց իտալերէն, ֆրանսերէն ու հայերէն լաւագոյն կտորներ որոնք ջերմապէս ծափահարուեցան ունկնդիրներուն կողմէ:

«*Ո՜հ ինչ անուշ*ը եւ *Կռունկ*ը մասնաւորապէս ոգեւորեցին հայ ունկնդիրները, որոնք ծափողջոյններով զինքը կրկին բեմ հրաւիրեցին ու այս անգամ համակրելի երգիչը ընդհանուր խանդավառութեան մէջ *Հայաստան*ը երգեց... յիշեցնելով Շահ-Մուրատեանը:

«Այս նուագահանդէսին փայլը կ'աւելցնէին Պ. Ալէճեանի՝ ջութակով եւ Թիպքիս՝ ֆլիւթով. այս երկու վերջիններուն դաշնակով կ'ընկերանար ծանօթ դաշնակահար Էօժէն Բաբազեան»(18):

Վրայ կը հասնի Առաջին Համաշխարհային Պատերազմը, որ կը խանգարէ իր ծրագիրները: Բնիկ պուլկարացի, կը յայտնուի փափուկ կացութեան մէջ, բայց անգլիական կառավարութիւնը կ'արտօնէ հոն մնալ: Իր հաճելի բնաւորութեան եւ գեղեցիկ ձայնին շնորհիւ կը մտերմանայ անգլիական իշխանութիւններուն հետ, մանաւանդ դարմանատուներուն մէջ երգելով վիրաւոր զինուորներուն համար(19):

Կ'երգէ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի Café chantant-ներու, քազինոներու մէջ, կատարելով իտալերէն եւ յունարէն երգեր, զանազան առիթներով երգելով Աղեքսանդրիոյ Պէլ Վիւի եւ Գահիրէի Թատրոն Քիւրսալի մէջ, կատարելով շանսոններ եւ օփերէթներ(20): Կ'ունենայ ելոյթներ Աղեքսանդրիոյ Քաֆէ Պուլվառին մէջ(21):

Կը միանայ իտալական օփերէթի խումբի մը, որուն հետ կ'երգէ Անճելոթթի անունով: 1918 Փետրուար 19-ին, Աղեքսանդրիոյ Թատրոն Քիւրսալի մէջ, խումբը կը ներկայացնէ *Կէյշա* օփերէթը, ի պատիւ Թօքաթլեանի(22): Խումբին հետ կ'երգէ նաեւ *La Veuve joyeuse* եւ *The Chocolate Soldier*(23):

1918 Յուլիս 7՝ Աղեքսանդրիոյ Հայ Ակումբ, նուագահանդէս մասնակցութեամբ Էօժէն Բաբազեանի (դաշնակ), Զապէլ Գլըճեանի (դաշնակ), Վահրամ Կիւրճեանի (պարիթօն) եւ օտար նուագողներու: Թօքաթլեան կ'երգէ *Կռունկ*. «*Կռունկ*ը որ երգեց Պ. Թօքաթլեան, չեմ գիտեր ինչո՞ւ այս անգամ տարբեր շեշտ մը ունէր ինծի համար: Երբեմնի տրտում մելամաղձիկ *Կռունկ*ը չէր կարծես ան: Անիկա հիմա ցաւոտ լուրեր չէր բերեր տառապանքի աշխարհէն: Յարութեան երգ մըն էր ան՝ մարտագոռ ու մարմնազղեցիկ, երգ մը սորվեցուած, տուն տրուած հայ կտրիճներէ որոնք հոն, Արարատի դաշտին մէջ ցեղին փառքը կը կերտեն... յաղթանակին վսեմ երգը երգելով»(24):

1918 Նոյեմբեր 9՝ Աղեքսանդրիոյ Հայկական Ակումբ, ներկայացում կազմակերպութեամբ Լեւոն Շիշմանեանի(25): Կը բեմադրուի *Կի՞ն թէ խանութ կամ Թիւրիմացութիւն մը* կատակերգութիւնը, տեղի կ'ունենայ արտասանութիւն: Թօքաթլեան կ'երգէ *Օրօր* եւ երկու այլ երգեր, դաշնակի նուագակցութեամբ Էօժէն Բաբազեանի: Անանուն քննախօսը կ'արձանագրէ. «Չի մոռնանք ըսելու թէ Պ. Արմենակ Թօքաթլեան, այլեւս հանրածանօթ հայ թէնօրը, իր բամբ ձայնով եկած էր այդ գիշեր փայլ մը աւելցնել հանդէսին երգելով երեք կտորներ որոնց մին Չօպանեանի *Օրօր*ը: Իրեն կ'ընկերանար Տ. Է. Բաբազեան դաշնակի վրայ»(26):

1920 Յունուար 11՝ Գահիրէի Նաւասարդ սրահի բացումի հանդէս: Տեղի կ'ունենան բանախօսութիւն, արտասանութիւն, նուագ եւ երգ: Թօքաթլեան (Անճելոթթի) կ'երգէ իտալերէն եւ հայերէն երգեր «յաջողակ եւ տպաւորիչ կերպով»(27):

1920 Մարտ 7՝ Գահիրէի Նաւասարդ սրահ, նուագահանդէս կազմակերպութեամբ Գահիրէի Հայ Երիտասարդաց Միութեան: Ներկայ էր Եգիպտոս այցելութեան եկած Ալեքսանդր Շիրվանզադէ, որ կ'արտասանէ իր խօսքը: Հայ Երիտասարդաց Միութեան Նուագախումբը կը նուագէ կտորներ եւ Թօքաթլեան կը կատարէ «դաշն եւ հզօր մեներգներ»(28):

Շուրջ կէս դար ետք, Յակոբ Շահնուր պիտի յիշէր այս շրջանը.

«Բեմի հետեւող սկսնակ էի. դերասան երէց ընկերներս, որոնց կարգին նուաստս, կը հաւաքուէինք Քաֆէ էժիփսիէն, որ սեփականութիւնն էր Կարապետ Կիւրիւնլեանի, որ աւելի ուշ անյայտացաւ անհասկնալի, գաղտնի պատճառով եւ այդ անհետցումը մինչեւ այսօր մնաց անլուծելի...:

«Քաֆէ Էժիփսիէնի դէմ կը գտնուէր Գազինօ տը Փարի անունով քապարէ մը, որ կը պատկանէր ֆրանսուհիի մը, որուն համար կ'ըսուէր այդ ժամանակ թէ իր պարմանի հասակին եկած էր Եգիպտոս եւ հոմանուհին եղած Խտիվական տոհմէն իշխանի մը եւ այդ Գազինոյին հողամասը նուէր ստացած իր ընծայաբերած շնորհներուն որպէս վարձք...: Հետագային, հասուն տարիքին, այդտեղ կառուցած է Քաֆէ-Շանթան մը եւ Եւրոպայէն արուեստագէտներ բերելով, ընտրանի եւ ունեւոր դասակարգին հաճոյքի եւ վայելքի կեդրոն դարձուցած...:

«Ահա՛, այդ Գազինոյին մէջն էր որ Արման Թոքաթեան սկսած էր՝ որպէս երգիչ՝ իր առաջին քայլերը առնել, ապագային ուռճանալով ըլլալու համար համաշխարհային երգիչ մը՝ Նիւ-Եորքի Մեթրոփոլիթէն թատրոնի բեմը հասնելով:

«Ամէն օր գրեթէ, երկոյթին սկսելէն առաջ եւ միջնարարներու դադարին Արման կու գար մեզի հետ հաճելի քանի մը վայրկեաններ անցընելու:

«Հասակաւոր, թիկնեղ մարմնով գեղեցիկ տղամարդ էր Արման. խոշոր սեւ աչքեր, գանգուր մազեր, ժպտադէմ. առաջին տեսութեամբ իսկ մարդ կը գրաւուէր. կախարդական, քաշողական ուժ մը ունէր ան: Իր խօսելու, արտայայտուելու ձեւերը կիրթ եւ նուրբ էին, ինչ որ մեծապէս համակրելի կը դարձնէր զինք:

«Մեծ ուսում մը ստացած չէր ան. ֆրանսական երկրորդական վարժարանէ մը վկայուած այս երիտասարդը բնածին շնորհով մը օժտուած էր:

«Արմանի յաջողութեան եւ գիտելիքներու պաշարը ճոխացնելու առաւելութիւններէն մէկն ալ այն էր, որ ան յամառ ընթերցող էր. ինչ որ կ'անցնէր ձեռքը, կը կարդար յափշտակութեամբ, մանաւանդ երաժշտական, թատերական, նկարչական արուեստի մասին գրութիւնները կ'արբեցնէին իր էութիւնը:

«Մարդամօտ, յանդուգն, նետուող էր Արման. չափազանց մեծ հաւատք կը սնուցանէր եւ յաճախ ալ կը կրկնէր թէ օ՛ր մը միջազգային բեմերու վրայ աստղ մը պիտի ըլլար: Զգացում մը իր ներաշխարհէն ընձիւղած»(29):

(Շար. 2)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

14. Ա., «Հայ արուեստագէտ մը», *Յուսաբեր*, 7 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 81, էջ 3:

15. *Souvenirs of Tokatyan by Jacques Tocatlian.*

16. Անդ:

17. *Յուսաբեր*, 22 Նոյեմբեր 1913, Թ. տարի, թիւ 164, էջ 1: Կ. Գ. Սէֆէրեան, «Տառ ու տիպի յոբելեանական հանդէսը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 27 Նոյեմբեր 1913, Թ. տարի, թիւ 166, էջ 1:

18. «Գրական եւ գեղարուեստական շաբաթը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 26 Մարտ 1914, Ժ. տարի, թիւ 216, էջ 3:

19. «Արմէն Թօզաթեան», Թէոդիկ, *Ամէնուն տարեցոյցը 1926*, 20-րդ տարի, Վենետիկ, էջ 481-482:

20. «Եգիպտահայ արուեստագէտի մը յաջողութիւնը», *Արեւ*, 1 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 62 (822), էջ 1: Ա., «Հայ արուեստագէտ մը», *Յուսաբեր*, 7 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 81, էջ 3:

21. «Արմէն Թօզաթեան», Թէոդիկ, *Ամէնուն տարեցոյցը 1926*, 20-րդ տարի, Վենետիկ, էջ 482:

22. «*Կէյշա*յի ներկայացումը», *Արեւ*, 15 Փետրուար 1918, Գ. տարի, թիւ 120 (430), էջ 3:

23. «Արմէն Թօզաթեան», Թէոդիկ, *Ամէնուն տարեցոյցը 1926*, 20-րդ տարի, Վենետիկ, էջ 482:

24. Վտարանդի, «Հաճելի երեկոյթ մը», *Արեւ*, 8 Յուլիս 1918, Դ. տարի, թիւ 24 (490), էջ 3:

25. *Արեւ*, 8 Նոյեմբեր 1918, Դ. տարի, թիւ 77 (542), էջ 3:

26. «Երեկոյթ մը Հայ Ակումբին մէջ», *Արեւ*, 13 Նոյեմբեր 1918, Դ. տարի, թիւ 79 (544), էջ 2:

27. «Նաւասարդ սրահը», *Յուսաբեր*, 17 Յունուար 1920, Ե. տարի, թիւ 125, էջ 3:

28. *Յուսաբեր*, 6 Մարտ 1920, Ե. տարի, թիւ 145, էջ 3: Ա., «Կեանքը Նաւասարդի մէջ», *Յուսաբեր*, 27 Մարտ 1920, Ե. տարի, թիւ 154, էջ 3:

29. Յակոբ Շահնուր, նշ. յօդ.ը, էջ 8:

---

ԳԱՀԻՐԷ

## ԵՐԳՉՈՒՀԻ ԼԵՆԱ ՇԱՄԱՄԵԱՆ ԿՐԿԻՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ




Սուրիահայ երգչուհի Լենա Շամամեան կրկին եկած է Եգիպտոս: Վերջին անգամ եկած էր 2023-ին, երբ Սեպտեմբեր 6-ին մասնակցեցաւ Գահիրէի Միջնաբերդի (Citadel) երգի եւ երաժշտութեան ամառնային փառատօնին, ներկայացնելով Սուրիան:

Այս տարի հրաւիրուած էր մասնակցելու ամենամեայ Արաբական Երաժշտութեան 32-րդ Փառատօն-Գիտաժողովին, կազմակերպութեամբ Գահիրէի Օփերայի Թատրոնին: Այս տարուայ փառատօնը նուիրուած էր եգիպտացի ականաւոր երաժշտահան Սայէտ Տարուիշի:

Շամամեան նախ ելոյթ ունեցաւ պաշտօնական բացումի հանդիսութեան Օփերայի Թատրոնի բացօթեայ Fountain Theatre-ի մէջ, երգելով Սայէտ Տարուիշի *Ալ-Հէլուա տի*: Իր խօսքին մէջ ըսաւ. «Ինծի համար պատիւ է ձեզի հետ ըլլալ այսօր: Մեր սիրտերը Պաղեստինի, Սուրիոյ, Լիբանանի եւ աշխարհի բոլոր տառապեալներուն հետ են»:

Հոկտեմբեր 13-ին, Օփերայի Թատրոնին պատկանող Կումհուրէյա սրահին մէջ տուաւ իր մենահամերգը, ներկայացնելով արաբերէն երգերու գեղեցիկ փունջ մը: Նուագախումբը կը ղեկավարէր Ժորժ Քալթա:

Համերգի վերնագիրն էր՝ *Թերհալ* (Ճամբորդութիւն), պատմելու համար արաբ ժողովուրդներու ուղեւորութիւնները:

Շամամեան արժանացաւ եգիպտական մամուլի կեդրոնական ուշադրութեան:

ԽՈՀԵՐ

# ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ՝ 100 ՏԱՐԵԿԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

2024 Սեպտեմբեր 21-ին, Նուպարեան Ազգային Վարժարանը, որ այսօր հանդէս կու գայ Գալուստեան-Նուպարեան միացեալ անունով, կատարեց իր 100-րդ տարեմուտը։ Նուպարեան Ազգային Վարժարան 100 տարեկան է։ Եգիպտահայ միակ հայ վարժարանը այսօր, ուր դասաւանդութեան կառուցւածքին մէջ կը մտնէ հայերէն լեզուն։ Ուրիշ հարց է արդիւնքը։

Ի դէպ, Նուպարեանի առաջին տարեշրջանին՝ 1924-1925, Եգիպտոսի մէջ կը գործէին առնուազն 10 հայկական դպրոցներ. Գահիրէ՝ Գալուստեան Ազգային Վարժարան, Մանիսալեան Վարժարան, Թաշճեան Կրթարան, Մաղազաճեան Մանկապարտէզ, Վարժապետեան Վարժարան, Պէրպէրեան Վարժարան, Մասիս Վարժարան (Հելիոպոլիս). Աղեքսանդրիա՝ Պօղոսեան Ազգային Վարժարան, Հայկազնեան Կրթարան. Զակազիկ՝ Օշական Վարժարան։

1924 Ապրիլ 22-ին կը կատարուի Նուպարեանի հիմնարկէքը, շուտով կը կառուցուի մէկ յարկանի շէնքը՝ որ այսօրուայ Մերճանեան Ազգային Մանկապարտէզի առաջին յարկն է, եւ Սեպտեմբեր 15-ին կը սկսի դասաւանդութիւնը։ Մամուլին կը տրուի հետեւեալ յայտարարութիւնը.

«Հելիոպոլսոյ նորակառոյց Նուպարեան Վարժարանը պիտի վերաբացուի Սեպտ. 15-ին եւ դասախօսութիւնները կանոնաւորապէս պիտի սկսին առաջին օրէն իսկ։ Աշակերտներու արձանագրութիւնը պիտի կատարուի Օգոստոս 25-էն սկսեալ, Բշ., Դշ. եւ Շբ. օրերը, կէսօրէ վերջ ժամը 4-6, Վարժարանի Հոգաբարձութեան անդամներէն Տիար Լ. Քիրազեանի բնակարանին մէջ, Շէրիֆ փաշա փողոց թիւ 17, Հելիոպոլիս» («Նուպարեան Ազգ. Վարժարան Հելիոպոլիս», *Արեւ*, 28 Օգոստոս 1924, Ժ. տարի, թիւ 1673, էջ 2)։

Հետաքրքրական է։ Հայկական պաշտօնական հիմնարկի մը աշակերտական արձանագրութիւնները կը կատարուին անձնական բնակարանի մէջ, հաւանաբար կառուցումը կամ կահաւորումը տակաւին աւարտած չըլլալու համար։ Ազգային գործերով շահագրգռուած Լեւոն Քիրազեանի երկյարկանի բնակարանը կը գտնուէր դպրոցէն քալելով քառորդ ժամ հեռաւորութեան վրայ, բնակարան մը ուր այդ ժամանակ կ'ապրէր Քիրազեանի մէկ տարեկան որդին՝ երգիծանկարիչ Kiraz (Էտմոն Քիրազեան), եւ ուր վեց ամիս ետք աշխարհ պիտի գար իր միւս որդին՝ Փարիզի *Le Monde*-ի յօդուածագիր Jean Gueyras (Հայկ Քիրազեան), ֆրանսապաշտ մշակութասէրներուն մեծ ծառայութիւն մատուցած զոյգ դէմքեր։

Կրնա՞ք պատկերացնել՝ որ այսօր Ազգային Իշխանութեան դպրոցի մը արձանագրութիւնը կատարուի ղեկավարի մը տունը։ 1924-ին տակաւին կը գործէր համայնքայնութիւնը։

Դասաւանդութիւնը կը բովանդակէր Մանկապարտէզի բաժինը եւ Նախակրթարանի առաջին երեք տարիները։ Որոշուած էր դասընթացքները համընթաց կարգադրել Գալուստեան Ազգային Վարժարանի հետ, որպէսզի աշակերտները չորրորդ դասարանէն կարենային իրենց ուսումը շարունակել այնտեղ՝ «միեւնոյն ոգիով եւ ուղղութեամբ», ինչպէս կը գրէ *Արեւ*ի Խմբագրականը («Խմբագրական. Պօղոս Փաշա Նուպար եւ կրթական գործը», *Արեւ*, 13 Սեպտեմբեր 1924, Ժ. տարի, թիւ 1687, էջ 1)։

Եգիպտահայ մտաւորական առաջնորդ Թորգոմ Արք. Գուշակեան մեծ դեր խաղացած է կազմակերպելու հիմնադրութեան աշխատանքը եւ մանաւանդ իր միջնորդութեամբ է որ Պօղոս Փաշա ընդունած է կատարել յաջորդական երկու կարեւոր նուիրատուութիւնները, Հելիոպոլիս արուարձանին մէջ կառուցելու դպրոցին երկու յարկերը (երկրորդ յարկը բարձրացած է աւելի ուշ), այն արուարձանը՝ որուն հիմնադրութեան գլխաւոր ներդրողներէն եղած էր ինք, ապահովելով շահութաբեր եկամուտ, ուր կառուցած էր նաեւ իր սեփական փառաւոր պալատը՝ Հելիոպոլսոյ հիմնադրութեան աւելի մեծ ներդրող Պարոն Ամփէնի արտասովոր պալատէն քիչ մը վար։ Եւ ահաւասիկ այդ եկամուտէն մասնիկ մը կը վերադարձնէր Հելիոպոլիս։

*Արեւ*ի նոյն Խմբագրականը, գովելէ ետք նախաձեռնութիւնը, երախտագիտութեան ուժեղ խօսքեր կ'ուղղէ բարերար Պօղոս Փաշային, որոնց անկասկած արժանի է ան։ Անկախ ամէն բանէ, Նուպարեան Վարժարանը պիտի կառուցուէր։ Այլեւս Հելիոպոլսոյ մէջ դպրոց ունենալը անհրաժեշտութիւն դարձած էր, այնտեղ հաւաքուած հայերու քանակի նկատելի յաւելումին պատճառով։ Բայց առանց Պօղոս Փաշայի, պզտիկ նուիրատուութիւններ հաւաքելու երկարատեւ ու աւելորդ ճիգ մը պիտի գործադրուէր եւ շատ հաւանական է որ կառուցումը ուշանար տարիներ, կառավարութեան ժամանակին տրամադրած հողն ալ գրաւուէր անգործածելի մնացած ըլլալուն համար։ Փաշայի երկու միանուագ յատկացումներուն կարեւորութիւնը վեր է որեւէ կասկածէ։ Եւ *Արեւ*ի Խմբագրականն ալ համարժէք է կատարուածին։ Բայց ինչո՞ւ *Արեւ*ը՝ Ռամկավարներուն պաշտօնաթերթը։

1923-ը Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Թեմական ընտրութիւններու տարին էր։ Դաշնակցութիւնը արդէն հաստատուած էր Եգիպտոսի մէջ Հայաստանի Հանրապետութեան անկումէն ետք, Ռամկավարութիւնը արդէն կազմաւորուած էր եւ ամրացած, եւ եգիպտահայ պատմութեան մէջ առաջին անգամն էր որ երկու կուսակցութիւնները առանձին բացառիկութեամբ Թեմականին կը ներկայանային իրարու դէմ։ Գահիրէի մէջ կը յաղթանակեն Ռամկավարները (19 Ապրիլ 1923), Աղեքսանդրիոյ մէջ՝ Դաշնակցականները (8 Մայիս 1923)։ Ռամկավարներու գլխաւոր թեկնածուներէն էր Պօղոս Փաշա, որ յետագային պարզ կը դառնայ, որ թէեւ ընդունած էր դնել իր անունը, բայց ներքին կարգով տեղեկացուցած՝ որ ընտրուելու պարագային պիտի չկրնայ շարունակել անդամակցութիւնը։ Արդէն 70 տարեկանը անցած, ան այլեւս չէր ապրեր Եգիպտոս եւ նպատակ չունէր վերադառնալ այնտեղ։ Բայց իր անունը կարեւոր համարուեցաւ քուէներ վաստակելու համար։ Դժուար է հաստատել՝ եթէ դրական ազդեցութիւն ունեցաւ այս քայլը թէ ոչ, քանի որ 6-րդ հանդիսացաւ քուէներու քանակի առումով (565 քուէ), մինչ առաջինն ու երկրորդը՝ Վարդան Պարծանքեան եւ Ճանիկ Չագըր, ստացան յաջորդաբար 624 եւ 594 քուէ («Ռամկավար Ազատական յաղթական», *Արեւ*, 30 Ապրիլ 1923, Թ. տարի, թիւ 116 (1275), էջ 2)։ Չեմ կարծեր որ Փաշան ուրախ ըլլար այս արդիւնքէն։ Ճանիկ Չագըրի սկզբնաւորութեան շրջանն էր ասիկա։ Ուղղակի Առաջնորդին հետ կապուած դրամատէրերուն կու գային փոխարինել կուսակցութիւններուն հետ փոխկախուած դրամատէրերը։ Դրամատիրոջ ուղղակի ազդեցութեան կը փոխարինէ միջնորդուած ազդեցութիւնը։

Փաշայի եգիպտական ինքնամեկուսացումէն եւ Գահիրէի Ռամկավարութեան «յաղթանակ»-էն ընդամէնը մէկ տարի ետք էր որ կու գար Նուպարեանի ծրագիրը եւ Փաշային կարեւոր նուիրատուութիւնը։ Նախորդ տարուայ տեսակ մը փոխարինում, հռչակի հրապարակայնացումի վերադարձ։

Ամէն պարագայի, ասկէ արդէն կարելի է պարզել՝ թէ ո՛վ պիտի փառաբանէր Փաշային, եւ ով պիտի չընէր։

Այսպէս թէ այնպէս, Գահիրէի հայութեան մօտ կար դպրոցական շարժում։ Ճիշդ նոյն ժամանակ, Աղեքսանդրիան ալ ունեցաւ իր դպրոցական շարժումը, Դաշնակցութեան անցած Պօղոսեան Վարժարանի տնօրէնութեան համար հրաւիրուելով Նիկոլ Աղբալեանի նման հեռանկարային մտածող մը։ Չիաշուելով վերը յիշատակուած անձնական դպրոցներուն յառաջացուցած տրամադրութիւնները։

Արդէն քանի մը տասնամեակ է որ եգիպտահայութիւնը իր դպրոցները (երբ տակաւին կարելի էր յոգնակի խօսիլ) կը ներկայացնէ պետական քննութիւններու մէջ աշակերտներու ստացած թուանշաններու հրապարակումով, որ չափանիշ կը սեպէ դպրոցի յաջողութեան պետական մակարդակով։ Այդ պետական չափանիշին մէջ, բնականաբար, պիտի չմտնեն հայերէնն ու հայերէն նիւթերը։

Ի. դարասկիզբի եգիպտահայ մամուլը՝ որ ամբողջապէս հիմնադրուած էր 1896-ի ջարդերէն ետք Եգիպտոս հաստատուած պոլսահայ մեծագոյն մտաւորականներուն ջանքերով, դպրոցներու հրապարակային քննարկումին տուած էր ծանրակշիռ կարեւորութիւն, նոյնիսկ խմբագրականներու եւ առաջնորդող յօդուածներու առաջնահերթութեամբ։ Յետեղեռնեան եգիպտահայ մամուլը՝ որ աստիճանաբար ունեցաւ կուսակցական թեքում, նոյնպէս շարունակեց դպրոցներու քննականացումը, անշուշտ, ոչ առանց կուսակցական միտումներու, բայց հայ դպրոցին խօսոյթը կենդանի պահելու հաստատ մտահոգութեամբ, խօսոյթ՝ որ ունէր հանրային արձագանգ։

Ճիշդ կամ սխալ, կողմնակցական կամ ոչ-կողմնակցական, կուսակցական կամ հակակուսակցական շահեր կրնային գործել կամ չգործել, բայց դարասկիզբէն կար դպրոցը իբրեւ կենդանի խօսոյթ։

1926-ին Գաբրիէլ Թագւորեան, Հմայեակ Շէմս եւ Բենիամին Թաշեան կը հրատարակէին *Հայ վարժարան* ամսագիրը, իսկ 1933-1935-ին՝ *Հայ դպրոց* (երկուքն ալ՝ Աղեքսանդրիա եւ Գահիրէ), ընդգրկելով կարեւոր գրողներ եւ արծարծելով բազմաթիւ հարցեր՝ ազգային բացառապաշտ դաստիարակութենէն մինչեւ մանկավարժական փիլիսոփայութիւն։

1932-ին, Վիքթորիա Արշարունի Աղեքսանդրիոյ մէջ կը հրատարակէր հետաքրքրական գիրք մը՝ *Մեր դպրոցները գաղութներու մէջ*, քննարկելով եգիպտահայ չորս վարժարաններու կրթական եւ վարչական կացութիւնները՝ Պօղոսեան, Գալուստեան, Նուպարեան եւ Պէրպէրեան։ Այնտեղ տեղ գտած են համարձակ գաղափարներ։ Այդ ժամանակ տակաւին կրնար «Յառաջաբան»-ին մէջ խօսիլ Պօղոսեան Ազգային Վարժարանի իր տեսանկիւնէն միջակութեան մասին.

«Ուսումնասիրութեանս ընթացքին շատ մը գովելի առաւելութիւններ նկատելու առիթներ պակաս չեղան։ Բայց բոլոր այս առաւելութիւններուն հետ՝ աչքիս զարկին նաեւ կարգ մը թերութիւններ, կարգ մը պակասութիւններ, որոնք բաւական էին բացատրելու համար ձեռք բերուած արդիւնքներուն միջակութիւնը եւ կերպով մը կրնային արդարացնել բոլոր այն քննադատութիւնները, որոնք այդ վարժարանին դէմ կ'ուղղուէին»։

Միջակութի՞ւն։ 1932-ին կարելի էր այսպէս խօսիլ եւ դուրս գալ հակադարձող յօդուածով մը, ինչպէս եղաւ, բայց անվնաս մնալ իբրեւ գաղութին մէջ գործող մտաւորական, այլեւ գտնել աջակցութիւն եւ զօրակցութիւն։ Շահողը՝ դպրոցն էր։

Այսօր Եգիպտոսի մէջ կը գործէ մէկ հայկական դպրոց՝ Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարան, եւ անոր կից Մերճանեան Ազգային Մանկապարտէզ։ Անկախ անուանումներու տարբերութենէն, Գալուստեան-Նուպարեանը անմիջական շարունականութիւնն է Մերճանեանին եւ երկուքը կը գործեն մէկ տնօրինութեան եւ վարչականութեան տակ։

Մերճանեան Մանկապարտէզը ունի երեք դասարան՝ Բողբոջ, Կոկոն եւ Ծաղիկ, Գալուստեան-Նուպարեանը բաժնուած է երեք շրջանի (ըստ Եգիպտոսի պետական պարտադիր համակարգին)՝ Նախակրթարան (6 տարի), Պատրաստական (3 տարի) եւ Երկրորդական (3 տարի)։

2024-2025 ուսումնական ներկայ տարեշրջանին, Մերճանեան ունի 26 աշակերտ, Գալուստեան-Նուպարեան՝ 125։

Ընդհանուր տնօրէնն է Սիմոն Չամքերթէնեան, ուսումնական բաժինի տնօրէնը՝ Գէորգ Գազանճեան։

Հայ վարչականներն են՝ Սիւզան Լաչինեան եւ Մարի Քամպէրեան։

Գալուստեան-Նուպարեանի հայ ուսուցիչներն ու հսկիչներն են.

Հայերէն լեզու՝ Սեւան Սեմէրճեան (Ա., Բ. Նախակրթարան), Թալին Կապէեան (Գ., Դ., Ե. Նախակրթարան), Սօսէ Պայրամեան (Զ. Նախակրթարան, Ա., Բ. Պատրաստական) եւ Սօսի Գարաօղլանեան (Գ. Պատրաստական, Ա., Բ. Երկրորդական)։

Հայոց պատմութիւն՝ Յասմիկ Ֆրանկեան (Դ. Նախակրթարան – Բ. Երկրորդական)։

Ազգային կրօնք՝ Րաֆֆի Պօղոսեան (Նախակրթարան) եւ Տ. Աշոտ Եպս. Մնացականեան (Պատրաստական եւ Երկրորդական)։

Երաժշտութիւն՝ Գոհար Ղազէլեան (Նախակրթարան) եւ Միհրան Ղազէլեան (Պատրաստական եւ Երկրորդական)։

Ուսողութիւն՝ Ռոպէր Նակիպ (Բ., Գ. Երկրորդական)։

Տիսքավըր՝ Մարկրիթ Պէնեան (Բ., Գ. Նախակրթարան)։

Նախակրթարանի հսկիչ՝ Հռիփսիմէ Պարեան։

Երկրորդականի հսկիչ՝ Լիւսի Գաբրիէլեան։

Մերճանեան Մանկապարտէզ.

Հայերէն լեզու՝ Սիլվա Պայրամեան (Կոկոն) եւ Արշալոյս Գաբրիէլեան (Ծաղիկ)։

Ձեռային աշխատանք եւ գծագրութիւն՝ Թամար Յակոբեան։

Դասարանապահներ՝ Աննա Մկրտչեան (Բողբոջ), Սիլվա Պայրամեան (Կոկոն) եւ Արշալոյս Գաբրիէլեան (Ծաղիկ)։

Մանկապարտէզի օգնական՝ Մարիամ Քայայեան։

Այս հայերուն կրնանք միայն ու միայն ուղղել յաջողութեան եւ յարատեւութեան լաւագոյն մաղթանքներ։

*...Եւ կը քալէ քարաւանը՝ մերթ աղբիւրի պէս մեղմ կարկաչելով, մերթ ճեղքելով մրրկապարը ոգիներու վայրագ։ Եւ քարաւանը՝ մեծ անապատի դարպասներուն մօտ ծունկի եկաւ յոգնած, դալկահար...*

ՋԱՀԱԿԻՐ

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԱԴՐԲԷՋԱՆԸ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ 16 ԿԷՏԻ

1

ժամանակը հիմա է: Մենք հրաւիրում ենք Ադրբէջանին դրսեւորել քաղաքական կամք, օգտուել պահից եւ միանալ մեզ՝ հնարաւորն իրականութիւն դարձնելու համար: Հայաստանը պատրաստ է խաղաղութեան պայմանագիր կնքել թէկուզ այսօր», - ասել է Սիմոնեանը:

*Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը Սեպտեմբերի 11-ին Ազգային Ժողովում կայացած հարցուպատասխանի ժամանակ յայտարարել էր, որ Հայաստանն Ադրբէջանին առաջարկում է խաղաղութեան պայմանագիր ստորագրել՝ ներառելով մինչ օրս համաձայնեցուած 16 յօդուածները: «Մենք բոլոր 16 յօդուածների համար ունենք համաձայնեցուած բովանդակութիւն, երեք յօդուածի համար այդ բովանդակութիւնն ի սկզբանէի հետ համեմատած մասամբ է համաձայնեցուած, այսինքն, 13 պլիւս 3, այսինքն, 16 յօդուածով պայմանագիր», - նշել էր Փաշինեանը:*

*Փաշինեանը յստակեցրել էր, որ խաղաղութեան պայմանագիրն ի սկզբանէ ունեցել է 18 յօդուած, սակայն ապաշրջափակման յօդուածը հանուել է: Մնացած 17 յօդուածներից մէկն, ըստ Փաշինեանի, առհասարակ համաձայնեցուած չէ:*

## ՄԷԿ ՏԱՐԻ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ ԿԱԶԱՅԻ ՄԷՋ

1

իւրաքանչիւր ընտանիք, աղճատուած իր յիշողութիւնը:

Կազայի կառոյցներուն երկու երրորդը քանդուած է կամ դարձած անգործածելի:

Երկու միլիոն կազացի տեղահանուած իրենց երկիրին մէջ: Չկայ փախուստի տեղ, բոլոր սահմանները փակ են: Բնակչութեան 90 տոկոսը տեղաւորուած է Կազայի տարածքի 40 տոկոսին վրայ, իսկ Կազան ընդհանրապէս կը համարուէր աշխարհի ամենախիտ բնակչութիւն ունեցող տարածքներէն մէկը:

Ոչ ջուր, ոչ ելեկտրականութիւն:

14 տարի պէտք է հաւաքելու համար 42 միլիոն թոն աւերակը: Ի՞նչ վերականգնումի մասին կրնայ ըլլալ խօսքը:

Կատարուածը անուն չունի: Ի՞նչ ըսել անանունի մասին:

Կործանելու մարդկային տենչը, իղձը, հաճոյքը, կիրքը, կործանել՝ մարդկային մահէն անդին, կործանել հասարակական կեանքը, յոյսը, հաճոյքը:

Եւ դեռ, մէկ տարի ետք, Նեթանիահու կը շարունակէ սպառնալ բնաջնջել Համասը:

Այս բոլորը՝ աշխարհի հիմնահոսանքի զանգուածային լրատուութեան լռութեան դիմաց: Իրական խօսքը եւ պատկերը կայ, բայց կը գտնուի առցանց եւ Եու-Թիւպի այլընտրանքային լրատուամիջոցներուն մէջ: Վերջիններս դիւրաւ հասանելի են, եթէ գիտակից ըլլայ դիտորդը: Մինչ հիմնահոսանքը մեզի կը հասնի ամէն օր, ամէն տեղ, այլընտրանքին հասնելու համար պէտք է գործադրել գիտակից ճիգ: Կը սիրենք մեզի հասածը՝ պատրաստը, անճիգը:

Կազացի բնակչութիւն մը՝ որուն կը հետաքրքրէ ո՛չ Համասը, ո՛չ Նեթանիահուն, ո՛չ կրօնքը, ո՛չ ազատագրական պայքարը, այլ կ'ուզէ ապրիլ, ապրիլ իբրեւ ՄԱՐԴ: Եւ կրնա՛յ ապրիլ առանց Համասի, առանց Իսրայէլի:

Մարդիկ, որոնք ո՛չ ուրիշներու հող գրաւած են, ո՛չ ուրիշներու վնասած, ո՛չ մէկ ազգային պատրանքներ ունին, ո՛չ ալ կը պահանջեն Իսրայէլի վերացումը: Կը պահանջեն մէկ բան՝ ապրիլ ԻՐԵՆՑ մնացած հողերուն վրայ, իսկ քաղաքականապէս կը պահանջեն երկու պետութիւններու պարզագոյն լուծումը:

Հակառակ ասոր, կեանքը կը շարունակուի Կազայի մէջ՝ մարդկային ապրուստի նուազագոյն պայմաններու բացակայութեամբ: Կեանքը կը դիմադրէ ինքն իրեն:

*Ջ.*

## ԱԼԻԵՒԻ ԽԵԼԱՑՆՈՐ ՇՐՋՈՒՄԸ (Ա. ՄԱՍ) «ԴԱՒԱՃԱՆ-ՀԱՅ»՝ ՆԵՐՔԻՆ ԹՇՆԱՄԻԻ ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ՈՐՍԸ

1

մինչ Պաքու այսպէս կոչուած «կարգաւորումի» բանակցութիւններ կը վարէ Երեւանի հետ, խաղաղութեան կողմնակիցները Ազրպէյճանի մէջ կը հալածուին, պիտակուելով իբրեւ դաւաճաններ: Այս հակասութիւնը հարց կը յառաջացնէ. ինչպէ՞ս կրնայ խաղաղութիւնը հետապնդել յաւակնող կառավարութիւն մը միաժամանակ քրէականացնել խաղաղութեան կոչնակները:

Պատասխանը կը կայանայ վարչակարգի խորարմատ մտացնորութեան (paranoia) մէջ: Վարչակարգը չի հանդուրժեր որեւէ անկախ նախաձեռնութիւն: Տասնամեակներ շարունակ փորձեց վերահսկողութեան տակ պահել խաղաղութեան գործընթացը, ճնշելով ոեւէ անկախ հասարակական աշխատող, զանոնք մղելով դէպի ցած մակարդակի գործունէութեան: Այս անգամ հասարակական ցանցերը փոխեցին խաղի կանոնները: Մարդիկ խոյս տուին Սաուրոնի Մեծ Աչքէն եւ միացան՝ անտեսելով Ալիեւի վերահսկիչ սեւեռումը: Բայց երկար ժամանակ չպահանջեց վարչակարգին յարմարուելու: Ստեղծեց երկխօսութիւններու եւ ծրագիրներու փոխանակումի զուգահեռ գործընթացներ եւ իր սադրիչ պատգամներով ներթափանցեց անկախ խումբերու մէջ:

Աւելին. ընթացող խաղաղութեան բանակցութիւնները պարզապէս արտաքին տեսքն են, դիւանագիտական հնարագիտութիւն մը՝ որ նախատեսուած է հանգստացնելու միջազգային դիտորդները, միաժամանակ պահպանելով նոր պատերազմի հիմնական պատրաստակամութիւնը: Բռնաճնշումի ներկայ ալիքը ոչ թէ շեղում մըն է, այլ նախորդ տարի սկսած մենատիրական ձեռնարկին շարունակութիւնը: Լրագրողներ, հետազօտողներ եւ աքթիւիսթներ համակարգուած կերպով թիրախաւորուած են իբրեւ աւելի մեծ ռազմավարութեան մաս, լռեցնելու համար այլախոհութիւնը եւ ամրացնելու կառավարութեան ճիրանը իշխանութեան վրայ: Ճնշողական մեքենան հրահրուած է վարչակարգի սեփական վախերէն եւ անապահովութիւններէն, գործելով խոժոռ տրամաբանութեան տակ՝ որ պէտք է ջախջախուին պատումը վիճարկող բոլոր մարդիկը:

**Բռնակալին մտացնորութիւնը. վախն ու անապահովութիւնը իբրեւ կառավարումի ռազմավարութիւն**

Ալիեւի համար ամենասպառիչ է իշխանութիւն կորսնցնելու վախը, զինք տեղաւորելով մտացնորութեան պարոյրի մէջ՝ պատմութեան բռնապետները յիշեցնող: Հայաստանի 2018-ի Թաւշեայ Յեղափոխութեան յիշողութիւնը տակաւին կը հետապնդէ զինք. տեսնել ազրպէյճանցիներ՝ որոնք, հակառակ իրենց թշնամութեան Հայաստանի հանդէպ, կը ներշնչուին իրենց դրացիի համարձակութենէն, մղձաւանջ մըն էր իրեն համար: Ազրպէյճանի մէջ նման ապստամբութեան սոսկ հաւանականութիւնը բաւարար էր խոր անվստահութեան սերմեր ցանելու վարչակարգին ներսը: Այժմ Ալիեւը թշնամիներ կը տեսնէ ամէն տեղ՝ Արեւմուտքը, քաղաքացիական հասարակութիւնը եւ նոյնիսկ իր սեփական շարքերուն մէջ: Իր կառավարումը վերածուած է վախի եւ անապահովութեան անպատկառ համաձուլուածքի, որ ծնունդ կու տայ զայրոյթի եւ յետագայ բռնաճնշումի:

Կառավարութեան պատումը թէ՛ պարզունակ է եւ թէ յոգնած՝ «Վտանգը ամէն տեղ է»: Հայեր, Արեւմտեան ՀԿ-ներ եւ այսպէս կոչուած օտար գործակալներ, ասոնք են այն ուրուականները որոնց օգնութեամբ կ'արդարացուի պետութեան յաւերժ խստացող բռնութիւնը: Վարչակարգը կը խաղայ պատերազմով սպիացած ազգի անհանգստութեան վրայ, օգտագործելով ազգայնականութիւնը իբրեւ ծածկոյթ՝ սեփական փտածութենէն եւ ձախողութիւններէն շեղելու համար: Բայց այս պատումը եթէ արդիւնաւէտ է կարճ ժամանակի համար, չի կրնար քօղարկել այն իրականութիւնը որ վարչակարգը կը կորսնցնէ իշխանութիւնը իր սեփական մտացնորութեան վրայ: Ամէն գնով իշխանութիւնը պահելու Ալիեւի մոլուցքը զինք կը մղէ աւելի ու աւելի անտրամաբանական եւ դաժան քայլերու: Ան իրազեկ է՝ որ հասարակական-տնտեսական անկայուն պայմանները, աղքատութիւնը եւ հասարակական ապահովութեան համակարգուած պակասը ժողովուրդի նշանակալի մասը դարձուց խոցելի եւ դժգոհ: Փոխանակ լուծելու այս դժգոհութիւնները, վարչակարգը կը շահագործէ զանոնք՝ զանգուածները պահելով յարատեւ անհանգստութեան մէջ, կարենալու համար տիրել իշխանութեան:

**Այլախոհութիւնը կործանելու ունայնութիւնը**

Այստեղ կը կայանայ Ալիեւի ռազմավարութեան հակասութիւնը. իր վախերը արդարացուած են, բայց իր արձագանգը ինքնախորտակիչ է: Վարչակարգին փորձը վերացնելու քաղաքացիական հասարակութիւնը իբրեւ հնարաւոր դիմադրութեան առաջնային աղբիւր, ի վերջոյ իր հակազդեցութիւնը պիտի ունենայ: Պատմութիւնը բազմիցս ցոյց տուած է՝ թէ այնտեղ ուր կայ ուժ, պիտի ըլլայ դիմադրութիւն: Անպայման չէ որ այս պայքարը հանդէս գայ ՀԿ-ներու կամ ձեւական աքթիւիզմի տեսքով, քանզի զանոնք դիւրութեամբ կարելի է քանդել: Վարչակարգը չէ կրցած հասկնալ՝ որ այլախոհութիւնը կարելի չէ խորտակել լոկ բիրտ ուժով: Երբ համաձայնութիւն պարտադրելու համար պետութիւնը յենուի բռնութեան եւ բռնաճնշումի վրայ, ան ընդամէնը կը խորացնէ յատակը գտնուող լարուածութիւնները որոնք կը հրահրեն դիմադրութիւնը: Այլախոհութիւնը ճնշելու համար կիրարկուող ռազմավարութիւնները, իրականութեան մէջ, կը սնուցանեն յետագայ անհանգստութեան սերմերը: **Անհանգստութիւնը պիտի ունենայ այնպիսի ձեւ մը՝ զոր Ալիեւն ու իր շրջապատը չեն կարող ըմբռնել**:

Ալիեւի մտացնորութիւնը զինք կը մղէ այլախոհութեան նոյնիսկ ամենաջնջին գործողութիւնները տեսնել իբրեւ գոյաբանական սպառնալիքներ, բայց այս մօտեցումը հիմնականօրէն թերի է: Վարչակարգը կրնայ ժամանակաւորապէս յաջողիլ լռեցնել քննադատները, բայց դիմադրութեան աւելի խոր հոսանքները պիտի շարունակեն ծորիլ ընդյատակը: Նման եռանդով յարձակելով խաղաղարարներուն եւ քաղաքացիական հասարակութեան վրայ, Ալիեւ եւ իր կառավարութիւնը կը կատարեն ընտրութիւն: Բայց ասիկա պատրանքէ բխած ընտրութիւն է, անկարող ըմբռնելու՝ թէ բռնաճնշումը ժամանակաւոր կարգադրութիւն մըն է, ոչ երկարաժամկէտ լուծում:

Վերջապէս, խաղաղարարները կամ քաղաքացիական հասարակութիւնը չէ որ փորձութեան մէջ են, այլ Ալիեւը եւ իր դաժան վարչակարգը: Անոնք են որ երկխօսութեան ձգտողները վերածեցին թշնամիներու: Անոնք են որ զէնքի վերածեցին վախն ու ատելութիւնը՝ պահելու համար իրենց իշխանութիւնը: Եւ անոնք են որ այժմ պէտք է դիմագրաւեն իրենց մտացնորութեան հետեւանքները: Որքան շատ ճնշեն, այնքան անխուսափելի կը դառնայ հակահարուածը: Ազգայնականութիւնը բորբոքելու եւ «ներքին թշնամիներ» որսալու միջոցով վերահսկողութիւնը պահպանելու վարչակարգին փորձը անկայուն է: Ի վերջոյ, մակերես պիտի ելլեն հակասութիւնները եւ պիտի բեկանի միութեան արտաքին տեսքը:

Բռնաճնշումի միջոցով վերահսկողութիւնը հետապնդելու Ալիեւի միտումը ձախողութեան դատապարտուած ռազմավարութիւն մըն է: Խաղաղարարները եւ քաղաքացիական հասարակութիւնը՝ որոնցմէ վարչակարգը խիստ կը վախնայ, պիտի չհեռանան: Իրականութեան մէջ, զանոնք պիտակելով թշնամիներ, կառավարութիւնը ընդամէնը կ'ամրապնդէ անոնց դերը իբրեւ դիմադրութեան խորհրդանիշներ: Ազրպէյճանի մէջ իսկական խաղաղութեան եւ ժողովրդավարութեան պայքարը հեռու է վերջացած ըլլալէ, ան ընդամէնը կը մտնէ նոր փուլ, ուր վարչակարգի մտացնորութիւնը պիտի դիմաւորուի աւելի վճռական եւ տոկուն ընդդիմութեամբ:

*27 Օգոստոս 2024*

(Շար. 1)

https://www.feministpeacecollective.com/en/post/aliyev-s-paranoid-turn

*Անգլերէնէ թարգմ.՝ Ա.*

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1978 ՀԻՆԳՇԱԲԹԻ 7 ՆՈՅԵՄԲԵՐ 2024 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٧٨ الخميس ٧ نوفمبر ٢٠٢٤


## ԱԼԻԵՒԻ ԽԵԼԱՅՆՈՐ ՇՐՋՈՒՄԸ (Բ. ՄԱՍ)
## «ԴԱՒԱՃԱՆ-ՀԱՅ»՝ ՆԵՐՔԻՆ ԹՇՆԱՄԻ ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ՈՐՍԸ

**ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՀԱՒԱՔԱԿԱՆ (Ազըրպէյճան)**

Օգոստոսի երկրորդ կէսի Ազըրպէյճանի իրադարձութիւնները կը բացայայտեն մտահոգիչ եւ մտացնոր շրջում մը Ալիեւի ուժային քաղաքականութեան մէջ: Նախ, Փութինի կատարեց հազուադէպ այցելութիւն մը Պաքու (առաջինը վեց տարուայ ընթացքին՝ ամրապնդելու ռազմավարական գործընկերութիւնը Պաքուի հետ), որուն յաջորդեց Փութինի հեռաձայնի զրոյցը Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի հետ՝ Ազըրպէյճան-Հայաստան յարաբերութիւնները «կանոնաւորելու» մասին: Զուգահեռաբար, Ազըրպէյճանի իշխանութիւնները ձերբակալեցին հակապատերազմական աքթիւիսթ եւ հետազօտող Պահրուզ Սամատովին, ալ աւելի սաստկացնելով ճնշումները այսպէս կոչուած «ոչ-պատերազմի» աքթիւիսթներուն նկատմամբ: Այս ժամկէտը կարեւոր հարցումներ կը բարձրացնէ. ինչպէ՞ս կրնայ Ազըրպէյճան միջազգայնօրէն խօսիլ Հայաստանի հետ խաղաղութեան համաձայնագիրի մասին, միաժամանակ հետապնդելով խաղաղութեան ներքին աջակիցները եւ զանոնք մեղադրելով «դաւաճանութեան» մէջ: Եւ ի՞նչ կը բացայայտէ Փութինի այցելութիւնը Ազըրպէյճան ենթադրեալ «անկախ» արտաքին քաղաքականութեան մասին: Այս երկու իրադարձութիւնները կապուա՞ծ են իրարու:

Առաջին հայեացքով, այս հակասութիւնները կ'ազդարարեն խաղի աւելի խոր շարժիչ ուժեր, բացայայտելով միջազգային, տարածաշրջանային եւ տեղական քաղաքականութիւններու կնճռոտ ցանցը, ուր Ազըրպէյճան՝ ինքզինք ինքնիշխան պատկերացնող յետգաղութատիրական ենթակայ մը, կապուած կը մնայ իր նախկին մետրոպոլիսին հետ: Պաքուի եւ Մոսկուայի յարաբերութիւնները պարզ ենթադասութիւն չեն. Փութին պէտք ունի Ալիեւին, այնքան որ Ալիեւ կախուած է Փութինէն: Ուքրաինայի պատերազմը եւ անոր յաջորդած Արեւմտեան պատժամիջոցները մեկուսացուցին Ռուսաստանը տնտեսապէս եւ դիւանագիտապէս, մղելով Մոսկուային փնտռել առեւտուրի եւ ուժանիւթի արտահանումի այլընտրանքային ուղիներ: Իր ներկայի նպաստաւոր աշխարհագրական դիրքով, Ազըրպէյճան կը ներկայացնէ կատարեալ լուծումը Ռուսաստանի պահանջին՝ շրջանցելու այս սահմանափակումները: Այս իմաստով, Փութինի այցելութիւնը Պաքու կը նշանաւորէ աւելի քան սովորական ուժեղացում երկու երկիրներու տարանցիկ յարաբերութեան միջեւ, ազդանշելով խոր հաւասարմութիւն եւ վստահելի ապահովութիւն: Ազըրպէյճանը իբրեւ տարանցիկութիւն օգտագործելու Ռուսաստանի ցանկութիւնը համահունչ է Ալիեւի յաւակնութիւններուն, քանի որ երկուքն ալ փոխադարձ օգուտ կը ստանան իրենց աճող համագործակցութենէն: Փութինի այցելութիւնը Պաքու, իր կեցութիւնը Ալիեւի բնակատեղին եւ իրենց բանակցութիւնները «ռազմավարական համագործակցութիւնը» ամրապնդելու վերաբերեալ, կ'ընդգծէ այս հաւասարակշռող գործողութիւնը: Բայց ուշադիր զննումէ ետք, կը սկսի բէկանիլ հաւասարակռութեան արտաքին տեսքը:

Այս յարաբերութեան նեցուկ կանգնող առանցքային խնդիրը Զանգեզուրի Միջանցքն է, տարանցիկ ճամբայ մը՝ որ Ազըրպէյճանը կը կապէ իր արտերկիրի (exclave) հետ Հայաստանի տարածքին մէջէն: Հակառակ որ Ազըրպէյճան վերջերս յայտարարեց նուազեցնել այս միջանցքին նկատմամբ ունեցած յաւակնութիւնները, Փութինի այցելութիւնը թելադրեց որ այդ նիւթը կրնայ մնալ բաւական կենդանի: Հակառակ պաշտօնական հերքումներուն, Ռուսաստան այս միջանցքը կը տեսնէ իբրեւ տարանցիկ ճամբաները վերահսկելու եւ Հարաւային Կովկասի մէջ իր ազդեցութիւնը վերահաստատելու միջոց, յատկապէս երբ Հայաստան կը փորձէ հեռանալ Մոսկուայէն: Գալով Ալիեւին, արտօնութիւն տալով Ռուսաստանին կառավարել այս ճամբան, ան պիտի ամրացնէ իր սեփական դիրքը երկիրի ներսը՝ միաժամանակ սպասարկելով Մոսկուայի տարածաշրջանային օրակարգին: Այս իմաստով, Ազըրպէյճան տարանցիկ երկիր մը չէ սոսկ, այլ անցք մըն է որուն մէջէն կը հոսին ռուսական ռազմավարական շահերը, մինչ Պաքու կարծէք պատրաստ է խաղալ այս դերը այնքան ժամանակ որ ան կը համապատասխանէ իր սեփական քաղաքական նպատակներուն: Այսպէս, հակառակ Ազըրպէյճանի նախկին պնդումներուն՝ թէ ոչ մէկ երրորդ կողմ, ներառեալ Ռուսաստան, պիտի ներգրաւուի Հայաստանի հետ խաղաղութեան բանակցութիւններուն, կը թուի թէ Մոսկուա գտաւ իր վերադարձի ուղին խաղին մէջ: Մինչ Հայաստան կը հեռանայ Մոսկուայէն, Պաքուի եւ Մոսկուայի միջեւ այս նորոգեալ մերձեցումը կը սպառնայ Երեւանին դնել բարդ ընտրութիւններու առջեւ: Պատերազմի, բայց ոչ խաղաղութեան հեռանկարը այժմ կը նշմարուի աւելի մեծ ըլլալ քան երբեւէ, ի հեճուկս հակառակ հռետորաբանութեան:

**Տարանցիկութենէ դէպի լիազօրութիւն**

Ռուսաստանի հետ Ազըրպէյճանի յարաբերութիւններուն տարանցիկ կերպարանքը ընդամէնը պատմութեան մէկ կողմն է: Միւս կողմը կը գտնուի աւելի ու աւելի մտահոգիչ դարձող քաղաքական եւ գաղափարախօսական համակցութիւնը Պաքուի եւ Մոսկուայի միջեւ: Այս համակցութիւնը առաւել տեսանելի է Ազըրպէյճանի ներքին քաղաքականութեան մէջ, որ դարձաւ աւելի մենատիրական եւ բռնաճնշիչ, արտացոլելով խաղի օրէնքները՝ զորս Ռուսաստան յաճախ կը գործածէ իր հասարակութեան վրայ վերահսկողութիւնը պահելու համար: Բացայայտ հակապատերազմական աքթիւիսթ եւ հետազօտող Պահրուզ Սամատովի ձերբակալութիւնը վերջինն է պետական գործողութիւններու շարքի մը, որ կը թիրախաւորէ խաղաղութիւնը ջատագովող կամ հայ-ազըրպէյճանական հակամարտութեան կառավարական գիծին տարակարծիք ունէ մէկը:

Ուշագրաւ է ժամկէտը. Ազըրպէյճան կը ծանուցանէ Հայաստանի հետ յարաբերութիւնները «կանոնաւորելու» իր ջանքերը, միաժամանակ պայքարելով խաղաղութեան ջատագովներուն դէմ երկիրին մէջ: Այս երկակիու-

☞ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒ ԱԴՐԲԵՋԱՆԻ ՆԱԽԱԳԱՀՆԵՐԸ ՍՏՈՐԱԳՐԵՑԻՆ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ԿԱՆՈՆԱԿԱՐԳԸ

Հայաստանի եւ Ադրբէջանի նախագահները ստորագրել են հայ-ադրբէջանական սահմանազատման կանոնակարգը վաւերացնելու մասին օրէնքը:

Վահագն Խաչատուրեանն օրէնքը ստորագրել է Հոկտեմբերի 24-ին: Բաքուն էլ Հոկտեմբերի 25-ին հաղորդեց, որ Իլհամ Ալիեւը եւս ստորագրել է օրէնքը:

Հայաստանի Ազգային Ժողովն այն վաւերացրել էր Հոկտեմբերի 23-ին:

Փաստաթուղթը նախատեսում է, թէ ինչպէս պէտք է իրականացուի հայ-ադրբէջանական սահմանի սահմանազատումը: Միակ հիմնական սկզբունքը, որ այնտեղ ամրագրուած է 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագիրն է, բայց առանց յստակ քարտէզների:

Սահմանադրական Դատարանը Սեպտեմբերի 26-ին սահմանազատման կանոնակարգը Հայաստանի Սահմանադրութեանը համապատասխանող է ճանաչել:

Կանոնակարգը ուժի մէջ կը մտնի, երբ Երեւանն ու Բաքուն փոխանակուեն ծանուցումների բնօրինակներով:

## ՓԱՇԻՆԵԱՆՆ ՈՒ ԱԼԻԵՒԸ ԱԳՆ-ՆԵՐԻՆ ՅԱՆՁՆԱՐԱՐԵԼ ԵՆ ՇԱՐՈՒՆԱԿԵԼ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՍԵՂՄ ԺԱՄԿԷՏՈՒՄ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ ՎԵՐՋՆԱԿԱՆԱՑՆԵԼՈՒ ԵՒ ԿՆՔԵԼՈՒ

Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը եւ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւը Ռուսաստանի Կազան քաղաքում՝ BRICS-ի 16-րդ գագաթնաժողովի շրջանակներում ունեցած հանդիպման ժամանակ Հոկտեմբերի 24-ին քննարկել են երկկողմ խաղաղութեան օրակարգի առաջմղմանը վերաբերող հարցեր, ներառեալ՝ խաղաղութեան պայմանագիրը, սահմանների սահմանազատումը, սահմանագծումը եւ փոխադարձ հետաքրքրութիւն ներկայացնող այլ հարցեր:

Կառավարութեան հաղորդմամբ՝ արտգործնախարարներին յանձնարարուել է շարունակել «Խաղաղութեան եւ միջպետական յարաբերութիւնների հաստատման մասին» համաձայնագրի շուրջ երկկողմ բանակցութիւնները՝ հնարաւորինս սեղմ ժամկէտում այն վերջնականացնելու եւ կնքելու նպատակով:

Ադրբէջանը ամիսներ շարունակ պահանջում է

☞ 4

## ՀԱԳՄ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԵԳԻՊՏՈՍԻ ԴԵՍՊԱՆԸ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԽՈՐԱՑՄԱՆՆ ԱՌՆՉՈՒՈՂ ՀԱՐՑԵՐ

Հայաստանի Արդիւնաբերողների եւ Գործարարների Միութեան (ՀԱԳՄ) պատուիրակութեանը Հոկտեմբերի 24-ին հիւրընկալել է Հայաստանում Եգիպտոսի արտակարգ եւ լիազօր դեսպան Սերենադ Սոլիման Գամիլը:

ՀԱԳՄ-ն ներկայումս նախագահում է Սեւծովեան Տնտեսական Համագործակցութեան Կազմակերպութեան (ՍԾՏՀԿ) Գործարար Խորհրդում, եւ հանդիպման մասնակիցները դեսպանին են ներկայացրել կազմակերպութեան հիմնական նպատակներն ու խնդիրները, դերակատարութիւնը տարածաշրջանի տնտեսական ինտեգրման գործում, մինչ այս իրականացուած միջոցառումները:

«ՍԾՏՀԿ Գործարար Խորհրդի քարտուղարի պարտականութիւններն իրականացնող, ՀԱԳՄ ծրագրերի ղեկավար Արթուր Ղազարեանը դեսպանին փոխանցեց կազմակերպութեան նախաձեռնութիւններից մէկը, ըստ որի՝ առաջարկւում է Սեւծովեան Տնտեսական Համագործակցութեան Կազմակերպութեան անդամ երկրների բեռների՝ Սուէզի ջրանցքով փոխադրման համար սահմանել որոշակի զեղչ: Վերջինս հնարաւորութիւն կը տայ ակտիւացնել տարածաշրջանային գործակցութեան համատեղ ծրագրերը, խորացնել տնտեսական ինտեգրացիոն գործընթացները:

«Արտակարգ եւ լիազօր դեսպան Սերենադ Սոլիման Գամիլը ողջունել համարեց ցանկացած ինտեգրացիոն ձեռնարկ եւ պատրաստակամութիւն յայտնեց հարցը բարձրաձայնել

☞ 4

# ԱՐՄԱՆ ԹՕՔԱԹԵԱՆ
## Եգիպտոսի եւ յաջորդող տարիներ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ԻՏԱԼԻԱ

Գահիրէի Օփերայի ընկերութեան թելադրութեամբ, 1920-ի կէսերուն կը մեկնի Միլան(30): *Արեւ* կը նկարագրէ. «Թէնօռի գեղեցիկ ձայնով մը օժտուած՝ եւ ինքնօգնութեամբ յառաջ եկած խոստումնալից բայց երաժշտական խնամեալ կրթութենէ զուրկ այս երիտասարդ առթիսթը օրին մէկը յանկարծ անհետացաւ հրապարակէն: Եւ ահա՛ հայ երգիչը, զոր շատեր թերեւս կը կարծէին քաղաքէ քաղաքը շրջելու վրայ, այլ եւ այլ Քիւռսալներու կամ Պէլվիւներու հասարակ բեմերու վրայ կարճատեւ երեւումներով, *ձայն* կուտայ մեզի գեղարուեստից հայրենիքէն, Իտալիայէն, ուր այժմ ի հանդէս կուգայ իբրեւ գնահատուած եւ ծափահարուած *թէնօռ* տիեզերահռչակ օբէրաներու մէջ»(31):

Միլանի մէջ կ'ուսանի Նինօ Քայրոնէի հսկողութեան տակ(32):

Միլանի Teatro Dal Verme օփերայի թատրոնին մէջ առաջին անգամ ելոյթ կ'ունենայ Փուչչինիի *Manon Lescaut* օփերայի des Grieux-ի գլխաւոր դերով(33):

*Մոնֆերրաթօ* թերթը կը գրէ. «Արմենակ Թօքաթլեան թէնօռը կ'երգէ խանդով. եւ իր կրքոտ (appassionato) երգը ցոյց կուտայ արժէքը իր վարպետին (Ռանեկի) ընտիր ուսուցման: Հայ տաղանդաւոր թէնօռը ինքզինքը ծափահարել տուաւ նաեւ իբր *աքթէօռ*»:

*Պանտիէրա Ռոսսա* թերթէն. «Աւելի *վիճուած* (discusso) է թէնօռը, Պ. Թօքաթլեան: Մեր մասին, մենք զինքը կը դատենք առանց այլեւայլի Տը Կռիէօ մը: Անիկա ունի տաք, պարարտ, թրթռուն, լայն եւ հաւասար ծաւալով ձայն մը որ բնաւ չի տկարանար, չիյնար»:

*Լ'Իւնիոն* թերթէն. «Թէնօռ Պ. Թօքաթլեան, կ'երգէ խանդով ու հոգիով, եւ յաջող կերպով ներկայացուց Տը Կռիէօյի դերը»:

*Լ'Աւընիր* թերթէն. «Արմենակ Թօքաթլեան, ծագումով հայ թէնօռ (Ասպետ Տը Կռիէօ) բուռն վիճաբանութիւններ կան այս առթիստին շուրջ: Ձեռնհաս անձինք կը հաւաստեն որ Պ. Թօքաթլեան, որ երիտասարդ է տակաւին, գեղեցիկ ապագայ խոստացող երգիչ մըն է եւ թէ քիչ ատենէն զինքը չպիտի լսենք այլեւս գաւառական քաղաքներու մէջ»(34):

*Արեւ* եւ *Յուսաբեր* կը գրեն՝ որ Թօքաթլեան յաջողած է թենորի վկայական ստանալ եւ շուտով պիտի երգէ Միլանի Լա Սքալայի մէջ(35): Ոչ մէկ արձանագրութիւն կայ որ երգած ըլլայ այնտեղ:

1921-ին զինք կը գտնենք Փատովա: Այնտեղ կ'երգէ Canio-ի դերը *Pagliacci* օփերայէն, արժանանալով իտալական մամուլի արձագանգին: Այս դերով երրորդ ելոյթին ներկայ կը գտնուի Պ. Փ., որ կը նկարագրէ.

«Համառօտ ըլլալու համար չափազանցած պիտի չըլլամ եթէ ըսեմ թէ խուռն ժողովուրդը հոն կուգայ գրեթէ լոկ զինքը կեցցէներով ծափահարելու եւ ամենաբուռն ծափերով կրկնել տալու համար իր երգերը:

«Երիտասարդ է տակաւին յարգելի դերասանը, եւ ինչպէս տեղական թերթեր կը նախագուշակեն՝ «փայլուն ու փառաւոր ապագայ մը կը խոստանայ»: Նաեւ *Pagliacci* Օբէրային համար փոխանակ քաղաքիս թերթերուն իրեն մասին ըրած գովասանքներուն թարգմանութեան մէջբերումի՝ կը բաւականանամ յիշել սոյն գլխաւոր թերթերուն անունը. – *Provincia*, *Gazettino*, *Gazetta di Venezia*, *Rinascita*… եւ ապա ըսել որ յարգելի դերասանը քաջալերական, շնորհաւորական նամակ ստացած է Միլանի Սքալա հռչակաւոր թատրոնի տեսչութենէն որ միանգամայն փափաք կը յայտնէ գալիք տարի զինքը հոն ընդունելու: Իրաւամբ փառաւոր ապագայ:

«Ազգային հպարտութեամբ ու բերկրանքով առլըցուն, կարող ենք շնորհաւորել այս նոր հանճարը որ գեղարուեստի այս դասական հայրենիքին մէջ՝ օտար նախանձոտ հոգիները իրեն գերի ընելով դափնեպսակներ կը հիւսէ իր գլխուն որ է միանգամայն Հայաստանին, զի՝ իր անունը կապած է միշտ իր ազգանունին «Արմենակ Թօքաթլեան, Հայ»: - Կեցցէ՛ հայ եւ հայրենասէր մեծ դերասանը»(36):

Ամերիկան եւ յատկապէս Մեթրոփոլիթըն Օփերան էմփրեզարիոներու միջոցով երգիչներ կը տեղափոխէր Եւրոպայէն, փոխան գոհացուցիչ վարձատրութեան եւ ասպարէզի երաշխաւորութեան: Իր մշակութային վերելքին համար ան պէտք ունէր եւրոպացիներուն: Իտալիոյ մէջ Պամպոշէք ծանօթանալով Թօքաթլեանին, զինք կը կանչէ Ամերիկա(37):

Ֆրանսայի Հաւր նաւահանգիստէն La Lorraine շոգենաւով կը մեկնի Նիւ Եորք, ուր կը հասնի 1921 Հոկտեմբեր 21-ին (տես լուսանկարը), շուտով սկսելու իր միջազգային ասպարէզը Մեթրոփոլիթըն Օփերայի մէջ եւ անկէ անդին: Ամերիկայի մէջ է որ կը ստանայ հռչակուած անունը՝ Արման Թօքաթեան – Armand Tokatyan:

ԵԳԻՊՏՈՍ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

1924-ին եգիպտահայ մամուլը սխալ լուր մը կը հաղորդէ՝ թէ Թօքաթեան պիտի այցելէ Եգիպտոս(38):

1931-1934-ին եւրոպական յաջող շրջագայութիւն մը կ'ընէ, որուն մասին յաճախ կ'արձագանգէ եգիպտահայ եւ պոլսահայ մամուլը: Վիեննա գտնուած ժամանակ, Ստեփան Շահպազ մամուլի միջոցով կ'առաջակէ զինք հրաւիրել Եգիպտոս.

«Վերջերս Պոլսոյ *Ազդարար*ին մէջ կարդացի որ Թօքաթլեան մը եւ Օր. Շէրիտճեան մը իրենց արուեստովը, առաջինը իր ձայնովը, երկրորդը իր դաշնակովը Վիէննայի պէս ոստան մը զբաղեցուցած, հիացուցած են:

«Թօքաթլեան մը, որ միջազգային համբաւ շինած է այլեւս, ինչո՞ւ Եգիպտոս չհրաւիրել հայրենակիցի մը զմայլելու հաճոյքին եւ օտարներուն ցոյց տալու համար որ այսօր ալ հայ տաղանդը կրնայ արտադրել եւ փայլիլ: Այս ձեւ փրօփականտը լաւագոյն մամուլը եւ մթնոլորտը պիտի ստեղծէ մեզի համար:

«Եւ եթէ այդ հրաւէրը ծախսի կը կարօտի, պէտք է գաղութը յանձն առնէ այդ զոհողութիւնը:

«Եւ ասիկա կարելի է օրինակ մը միայն սեպել»(39):

Անձնական ցանկութիւն մը:

Յետոյ 1934 Հոկտեմբերին երգիչը կ'երթայ Աթէնք, աւելի մօտենալով Եգիպտոսին: *Արեւ* «կը տեղեկանայ»՝ որ ան պիտի գայ Եգիպտոս.

«Ինչպէս գրած էինք, տիեզերահռչակ հայազգի երգիչ Պ. Արմէն Թօքաթեան Աթէնք հրաւիրուած էր երկու երգահանդէսներ տալու համար:

«Հաճոյքով կը տեղեկանանք թէ հայ երգիչին Աղեքսանդրիոյ բարեկամները, որոնք իր նախկին դասընկերները եղած են, հրաւիրած են զինքը Եգիպտոս, Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի մէջ եւս երգահանդէսներ տալու համար»(40):

Հակառակ որ Թօքաթեան կը վերադառնայ Նիւ Եորք, եգիպտահայ մամուլը «հաւաստի աղբիւրէ» կը տեղեկանայ, որ 1935 Փետրուարին ան Եգիպտոս պիտի գայ երգահանդէսներու համար(41):

*Արեւ*ի 1952 Ապրիլ 2 եւ 3 թիւերուն մէջ յայտարարութիւն կը հրատարակուի՝ որ Ապրիլ 3-ին, Աղեքսանդրիոյ Տիգրան Երկաթ Մշակութային Միութեան սրահը մենահամերգ պիտի տայ «նախկին եգիպտահայ դէմքերէն Metropolitan Օփերայի աշխարհահռչակ թէնոր երգիչ Պ. Արման Թոգաթլեան հայկական հոգեզմայլ երգերու իր ճոխ մեղեդիներով»(42):

Մենահամերգի մասին ոչ մէկ արձագանգ յայտնուած է Աղեքսանդրիոյ կամ Գահիրէի եգիպտահայ մամուլին մէջ, որ քիչ մը զարմանալի վերաբերմունք է Թօքաթեանի նման անուանի երգիչի մը նկատմամբ: Կրնա՞յ ըլլալ վերջին պահուն ջնջուած ըլլայ համերգը:

ԸՆՏԱՆԻՔԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

Հայրն է Գաբրիէլ Թօքաթլեան, մայրը՝ Վերժին:

Գաբրիէլ եղած է դեղագործ եւ Աղեքսանդրիոյ մէջ ձեռք բերած քաղաքի կեդրոնը Ռամլէ փողոցի վրայ գնուող դեղարան մը՝ Pharmacie du Phare:

Քոյրը՝ Էօժէնի, ծնած է 1886-ին, հաւանաբար՝ Պոլիս(43): Ֆիլիպէէն հայրը յաջողած է զինք ղրկել Պոլիս, աշակերտելու ֆրանցիսկեան միսիոնարական Pensionnat de Sainte-Elisabeth գիշերօթիկ վարժարանը, որմէ շրջանաւարտ եղած է 1902 Յուլիս 9-ին(44): Մասնակցած է դպրոցական հանդէսներու: 1901 Յուլիս 17-ի հանդէսին ֆրանսերէն լեզուով խաղացած է *Une drôle de princess* երկու արար


ORIGINAL RU

UNITED STATES OF AMERICA

PETITION FOR CITIZENSHIP

No. 175763

To the Honorable the U.S. DISTRICT Court of SOUTHERN DISTRICT at NY NY

The petition of Armand Tokatyan, hereby filed, respectfully shows:

(1) My place of residence is 1150 Fifth Ave.New York,NY (2) My occupation is Singer

(3) I was born in Philipoppoli, Bulgaria on July 17,1896 My race is Armenian

(4) I declared my intention to become a citizen of the United States on April 17,1924, in the U.S.District Court of Southern District, at New York,NY

(5) I am married. The name of my wife is Marie; we were married on February 17,1924 at New York,NY; she was born at Odessa,Russia on April 3,1900; entered the United States at New York,NY on September 19,1911 for permanent residence therein, and now resides at 1150 Fifth Ave.New York,NY. I have 2 children, and the name, date and place of birth, and place of residence of each of said children are as follows: Leon born December 28,1925 at New York, Gloria born March 19,1927 at New York,NY both reside at 1150 - 5th Ave.New York, NY

(6) My last foreign residence was Milan,Italy. I emigrated to the United States of America from Havre,France. My lawful entry for permanent residence in the United States was at New York,NY, under the name of Armenak,Tokatlian on October 24,1921, on the vessel La Lorraine as shown by the certificate of my arrival attached hereto.

(7) I am not a disbeliever in or opposed to organized government or a member of or affiliated with any organization or body of persons teaching disbelief in or opposed to organized government. I am not a polygamist nor a believer in the practice of polygamy. I am attached to the principles of the Constitution of the United States and well disposed to the good order and happiness of the United States. It is my intention to become a citizen of the United States and to renounce absolutely and forever all allegiance and fidelity to any foreign prince, potentate, state, or sovereignty, and particularly to BORIS III,TZAR OF THE BULGARIANS of whom (which) at this time I am a subject (or citizen), and it is my intention to reside permanently in the United States. (8) I am able to speak the English language. (9) I have resided continuously in the United States of America for the term of five years at least immediately preceding the date of this petition, to wit, since October 24,1921 and in the County of New York this State, continuously next preceding the date of this petition, since March 1,1922, being a residence within said county of at least six months next preceding the date of this petition.

(10) I have not heretofore made petition for citizenship: Number ....., on ..... at ..... and such petition was denied by that Court for the following reasons and causes, to wit: ..... and the cause of such denial has since been cured or removed.

Attached hereto and made a part of this, my petition for citizenship are my declaration of intention to become a citizen of the United States, certificate from the Department of Labor of my said arrival, and the affidavits of the two verifying witnesses required by law.

Wherefore, I, your petitioner, pray that I may be admitted a citizen of the United States of America, and that my name be changed to .....

I, your aforesaid petitioner being duly sworn, depose and say that I have read this petition and know the contents thereof; that the same is true of my own knowledge except as to matters herein stated to be alleged upon information and belief, and that as to those matters I believe it to be true; and that this petition is signed by me with my full, true name.

(Complete and true signature of petitioner)

AFFIDAVITS OF WITNESSES

Jack Nalven, occupation Realtor residing at 126 Audley St.Kew Gardens,LI,NY, and Nathan Schwarz, occupation Realtor residing at 85 Eastern Parkway, Brooklyn NY each being severally, duly, and respectively sworn, deposes and says that he is a citizen of the United States of America; that he has personally known and has been acquainted in the United States with Armand Tokatyan the petitioner above mentioned since January 1,1924 and that to his personal knowledge the petitioner has resided in the United States continuously preceding the date of filing this petition of which this affidavit is a part, to wit, since the date last mentioned, and at New York, in the County of New York this State, in which the above-entitled petition is made, continuously since January 1,1924, and that he has personal knowledge that the petitioner is and during all such periods has been a person of good moral character, attached to the principles of the Constitution of the United States, and well disposed to the good order and happiness of the United States, and that in his opinion the petitioner is in every way qualified to be admitted a citizen of the United States.

(Signature of witness) (Signature of witness)

Subscribed and sworn to before me by the above-named petitioner and witnesses in the office of the Clerk of said Court at New York this 31 day of December Anno Domini 1930. I hereby certify that certificate of arrival No. 2-110632 from the Department of Labor, showing the lawful entry for permanent residence of the petitioner above named, together with declaration of intention No. 132224 of such petitioner, has been by me filed with, attached to, and made a part of this petition on this date.

Clerk. (SEAL)

By ..... Deputy Clerk.

U. S. Naturalization Examiner (Designated)

«Քաղաքացիութեան խնդրագիր», ներկայացուած Նիւ Եորք նահանգի Հարաւային Շրջանի դատարանին, 31 Դեկտեմբեր 1930: Պատճէնը ներբեռնուած՝ https://www.myheritage.com/

կատակերգութեան մէջ, իսկ յայտագիրէն ետք ստացած է դաշնակահարութեան յատուկ մրցանակ(45):

Աղեքսանդրիոյ մէջ 1907 Հոկտեմբեր 13-ին ամուսնացած է անուանի դերասան Լեւոն Շիշմանեանի հետ(46): Ունեցած են երեք զաւակներ՝ Կարպիս, Երուանդ եւ Մարի:

Ըլլալով սիրող դաշնակահարուհի, մասնակցած է Տիգրան Երկաթի ձեռնարկներուն: Աշխատակցած է Կարմիր Խաչին, Տիգրան Երկաթ Միութեան, Ռամկավար Ազատական Կուսակցութեան, ինչպէս նաեւ զանազան մարմիններու կազմակերպած բարենպատակ հանդէսներու(47):

Մահացած է 47 տարեկանին՝ 1934 Հոկտեմբեր 18, Աղեքսանդրիա(48):

Արմենակի եղբայրը՝ Լիւսիէն, ծնած է 1899-ին, Ֆիլիպէ(49): Կը նուագէր ֆլիւթ, Աղեքսանդրիոյ մէջ կազմած էր գործիքային համոյթ, որ 1920-30-ականներուն իր մասնակցութիւնը բերած էր բազմաթիւ աղեքսանդրիահայ ձեռնարկներու: Որդիներէն մէկը՝ Ժագ (1929, Աղեքսանդրիա – 2019, Փարիզ), Ֆրանսայի մէջ դարձած է յայտնի նկարիչ(50):

Արմենակ ունեցած է եղբայր մը՝ Լեւոն, որ 1912 Օգոստոսին փոխադրուած է Փարիզ(51): Ճիշդ նոյն տարին էր՝ որ Արմենակ եւս կ'երթար այնտեղ դերձակութեան համար: Փարիզի մէջ ուսանած է նկարչութիւն(52), կամ եղած է մանտոլինի փրոֆեսոր(53): Այնտեղ 1912 Սեպտեմբեր 20-ին մահացած է հանրակառքի (օթօպիւսի) արկածով, 24 տարեկան հասակին, եւ թաղուած Փէր Լաշէզ(54):

(Վերջ 3)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

30. Թէոդիկ («Արմէն Թօզաթեան», Թէոդիկ, *Ամէնուն տարեցոյցը 1926*, 20-րդ տարի, Վենետիկ, էջ 481) եւ Ժագ Թօքաթլեան (*Souvenirs of Tokatyan by Jacques Tocatlian*) Իտալիա մեկնումի թուականը կը նշեն 1919: Բայց, ինչպէս վերը տեսանք, մինչեւ 1920 Մարտ ելոյթ ունեցած է Եգիպտոսի մէջ, իսկ *Յուսաբեր*, 1920 Հոկտեմբերի յօդուածին կը տեղեկացնէ՝ որ Իտալիա մեկնած է «մի քանի ամիսներ առաջ» (Ա., «Հայ արուեստագէտ մը», *Յուսաբեր*, 7 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 81, էջ 3):

31. «Եգիպտահայ արուեստագէտի մը յաջողութիւնը», *Արեւ*, 1 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 62 (822), էջ 1:

32. «Արմէն Թօզաթեան», Թէոդիկ, *Ամէնուն տարեցոյցը 1926*, 20-րդ տարի, Վենետիկ, էջ 482:

33. Անդ, էջ 482:

34. «Եգիպտահայ արուեստագէտի մը ↪ 4

ԽՈՀԵՐ

# ԻՆՉՊԷ՞Ս ԿԱՐԵԼԻ Է ԻՄԱՍՏԱԶԵՐԾԵԼ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՄԸ...
## (Գալուստեան Ազգային Վարժարանի քննադատութեան մը առիթով)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ինչպէ՞ս կարելի է իմաստազերծել քննադատութիւն մը՝ առանց քննադատելու քննադատողը:

1938 Յուլիսին *Սաւառնակ*ի խմբագիր Երուանդ Մսրլեան դիտել պիտի տար. «Դպրոցական ամավերջի հանդէսներու առատութեան մէջ ենք: Մամուլի էջերը ամէն օր լեցուն են անոնց նկարագրութիւններով, որոնք կարծես կարգախօսէ մը մղուած՝ իրար կը յաջորդեն զիրար գերազանցելու ջանադրութեամբ» (Գրամոլիկ, «Էական հարց մըն ալ», *Ջէբլին* [Սաւառնակ], 9 Յուլիս 1938, 20-րդ տարի, թիւ 25, էջ 2):

Այսպէս արտայայտուելով, *Սաւառնակ* կրցա՞ծ է ինքզինք հեռու պահել այս ջանադիր առատութենէն: Ասոր մասին՝ քիչ մը վարը:

Մսրլեանի գրութենէն մէկ ամիս առաջ, Վահան Թէքէեան *Արեւ*ի մէջ խստօրէն կը քննադատէր Գալուստեան Ազգային Վարժարանի ամավերջի հանդէսին գեղարուեստական կողմը (Վ. Թ., «Գալուստեանի հանդէսը», *Արեւ*, 8 Յունիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5909, էջ 3):

Հանդէսը տեղի ունեցած է 1938 Յունիս 4-ին, Ժէզուիթներու Վարժարանի Քոլէժ Սենթ Ֆամիյ սրահին մէջ: Թէքէեան հաւնած է Արարատ Քրիսեանի մարզախաղերը. «Մարզախաղերը լաւ էին ըստ սովորականին, շնորհիւ Պ. Քրիսեանի որ թէ՛ նորութիւն կը դնէ միշտ անոնց մէջ եւ թէ շնորհով, կանոնով ու եռանդով գործադրել կուտայ զանոնք»:

Լաւ չէին, սակայն, երգչախումբը, նուագախումբը, պարերը եւ ֆրանսերէն թատրերգութիւնը: Կանգ առնեմ առաջին երկուքին վրայ:

Գալուստեան Ազգային Վարժարանի Երգչախումբը, խմբավարութեամբ Ղազարոս Ղազարոսեանի. «Տղաքը կարծես ակամայ, ձանձրոյթով կ'երգեն եւ այդ ձանձրոյթը կ'անցնի նաեւ ունկնդիրին: Երգը ոչ միայն իր հոգիէն պարպուած այլ եւ իր ղնդերներէն ու ջիղերէն ալ կարծես սակուած է՝ երբ դուրս կ'ելլէ այս մանկական ու պատանեկան շրթունքներէն»:

Երգչախումբին նուագակցող նուագախումբը. «Եւ ի՞նչ ըսել այն պզտիկ գործիքներուն – եռանկիւն, ծնծղեայ դափ եւն. – որոնք փոխանակ երգը հագւեցնելու, կարծես աւելի եւս կը շեշտեն անոր նիհարութիւնը: Գալով այր-մարդու պաշտօնական սեւ տարազով ծպտուած աղջնակներու ճպոտ ի ձեռին մաէսթրոյաձեւ խմբավարութեան, կը ներեմ ինքզինքիս ըսել՝ որ եթէ կատակ է մէկ անգամը բաւական է, իսկ եթէ լուրջ է կը յայտնէ ճաշակի պակասը, զոր պէտք է խնայել թէ՛ աշակերտութեան եւ թէ հանդիսատեսներուն: - Երբ, մանաւանդ, իր կրցածը ընելէ վերջ խեղճ պզտիկ ղեկավարուհին վար կ'իջնէր պատուանդանէն եւ իրեն տրուած հրահանգին համաձայն *բոշէթ*ը քաշելով որպէս թէ քրտինքը կը սրբէր, յետոյ ետ-ետ երթալով ու թեւի կլոր շարժումներով համեստօրէն խումբը ցոյց կուտար իբրեւ նշանակէտ ժողովուրդին ծափերուն, - բազմիցս կրկնուած այդ պատկերին առջեւ՝ ես տխրութիւն կը զգայի, տխրութիւն միայն...»:

Յաջորդ օրը, *Յուսաբեր* անստորագիր կարճ քննախօսական մը կը հրատարակէ, ամբողջութեամբ հակառակ գնահատութեամբ. «Յայտագիրը ճոխ էր, նոյն իսկ խճողուած: Բայց դերակատարները պատանի կամ մանուկ, բազմապիսի վայելքներ պատճառեցին հանդիսականներուն որոնք լեցուած էին սրահը: Խմբերգ, նուագ կամ մարզական շարժումներ՝ շնորհալի տպաւորութիւն մը ձգեցին, եւ յայտնի էր պատրաստութեան համար տարուած մեծ աշխատանքը: Մասնաւորաբար, մանուկներու նուագախումբը պիտի միշտ մնայ մեր յիշողութեան մէջ, իր դեռատի նուագածուներուն վարպետութեան եւ հմայքին պատճառով» («Գալուստեան Վարժարանի հանդէսը», *Յուսաբեր*, 9 Յունիս 1938, ԻԴ. տարի, թիւ 57):

Կարծէք երկու բոլորովին տարբեր հանդէսներու մասին ըլլայ խօսքը: Բայց եւ այնպէս, *Յուսաբեր* վերջապէս կը գտնէ թերութիւն մը. «Բայց, ահա՛ սեւ նիշ մը, ինչո՞ւ *հայ* դոյզն քայլերգ մը անտեսուած էր, հանդէսին սկիզբը կամ վերջաւորութեան»:

Դրօշակ եւ քայլերգ՝ ԺԹ. դարու նոր տեսակ ազգայնականութեան խորհրդանիշերը, որոնք յաճախ առաջ անցան նոյն ինքը ազգայինէն: Մինչեւ Հայաստանի Առաջին Հանրապետութիւն, եգիպտահայութիւնը անպաշտօն պաշտօնականութեամբ իր ձեռնարկները կը սկսէր «հայկական» քայլերգով՝ *Բա՛մ փորոտան* (հանդէսներու բացումներուն եւ փակումներուն տարածուած էր նաեւ *Տէր, կեցո՛ դու զհայսը* իբրեւ մաղթերգ, որ երբեմն կը փոխարինէր քայլերգին): 1918-էն ետք եգիպտահայութիւնը բաժնուեցաւ *Մեր հայրենիքի* եւ *Բա՛մ փորոտանի* միջեւ: Առաջին Հանրապետութեան անկումէն ետք, *Մեր հայրենիքի* կողմնակիցները զայն «Հայաստանի քայլերգ»-էն վերածեցին «Հայկական քայլերգ»-ի, մինչ միւսները երկար ժամանակ շարունակեցին *Բա՛մ փորոտանը*: Եւ պայքար *Մեր հայրենիքի* ու *Բա՛մ փորոտանի* միջեւ: Զուարճալի իրականութիւն է, որ երբ *Մեր հայրենիքի* ընդդիմախօսները իրենց մամուլին մէջ ստիպուած կամ կամովին կը նշէին այդ քայլերգին կատարումը, զայն կը կոչէին բացասական իմաստ արտայայտող երկար վերնագիրով՝ *Մեր հայրենիք թշուառ անտէր*: Սխալ բան մը չէր իրենց գրածը, բայց այս ձեւով կ'ուզէին արտայայտել իրենց ընդդիմութիւնը: *Մեր հայրենիքի* կողմնակիցներն ալ, վստահաբար դժգոհ նման անուանումէ, չէին կրնար պատասխանել, քանի որ սխալմունք չկար այնտեղ:

Կատակերգութիւնը ունի շարունակութիւն: Ոչկուսակցական անձեր եւ միաւորներ, խուսափելու համար՝ կողմնակցութենէ, կը կատարէին ոչ մէկ քայլերգ՝ ո՛չ *Մեր հայրենիքը* եւ ո՛չ ալ *Բա՛մը*, ինչպէս Գալուստեանի մեր պարագային (Շահան Պէրպէրեանն ալ նոյնը կը փորձէր ընել Գահիրէի Պէրպէրեան Վարժարանին համար): Այս անգամ ալ կը քննադատուէին, ինչպէս վերը տեսանք, ընդհանրապէս հայկական քայլերգի բացակայութեան պատրուակով, մեծ մասամբ *Մեր հայրենիքի* կողմնակիցներուն կողմէ:

Որքան սպառում քայլերգի մը համար: Քայլերգասիրութիւնը եւ քայլերգակռիւը կը շարունակուի մինչեւ այսօր:

Վերադառնանք մեր նիւթին: Գալուստեանի հանդէսի հարցին կը խառնուի օտարը: Օտարի վաւերականութիւն՝ եթէ ի նպաստ է մեզի: *Ժուռնալ տ'Էժիփթ*ի լրագրողը ներկայ գտնուեր է հանդէսին եւ հիացեր տառացիօրէն ամէն բանով՝ երգչախումբ, նուագախումբ, պար, թատրոն, մարզանք: *Յուսաբեր* նախ կը համառօտագրէ ֆրանսերէն քննախօսականին բովանդակութիւնը, առանձնացնելով նուագախումբի մասին գրուածը.

«[*Ժուռնալ տ'Էժիփթ*] կանգ կ'առնէ մասնաւորապէս նուագածութեանց, թատերական ներկայացման, հայկական պարերուն, մարզական խաղերուն ու պատկերացումներուն վրայ, իւրաքանչիւրին համար գնահատական երկու խօսք ըսելով:

«Յօդուածագիրը յիշելով մանուկներու նուագախումբը, որուն պետը 7 տարեկան աղջնակ մըն էր, կ'ըսէ թէ կշռոյթի ուշագրաւ իմացումով մըն է որ կատարեց այդ փոքրիկ վարպետը իր պարտքը» («Գնահատական մը հայ երաժշտութեան եւ հայկական պարի մասին», *Յուսաբեր*, 14 Յունիս 1938, ԻԴ. տարի, թիւ 61):

Յետոյ կու գայ աւելի ընդհանրականը՝ օտարին գնահատութիւնը հայ երաժշտութեան, զոր կը թարգմանէ հայ օրաթերթը.

«Հայկական երաժշտութիւնը իր մոթիվներով արեւելեան եւ թէքնիքով եւրոպական է միաժամանակ: Անիկա ռուսական մելոտիներու տրտում հրապոյրն ունի, բայց իր թախծոտ բնոյթը կը մօտեցնէ զայն արեւելեան եղանակներու, եւ այս բնոյթին կրկնութիւնն իսկ կ'աւելցնէ տպաւորութիւնը առաջին անգամ զայն լսող ականջին վրայ:

«Ինչքա՛ն կարօտաբաղձ խորութիւն ունէին եռաձայն խմբերգները եւ ի՛նչքան համակուած էր այս լուսնային պարզ երգը գեղեցկութեամբ, գրեթէ կրօնական գեղեցկութեամբ *Հայկական ֆանթէզի*ն, գործադրուած իննամեայ մանուկներու կողմէ, ղեկավարութեամբ նոյն տարիքով աղջնակէ մը, - նորընծիւղ Թոսգանինի, աղուոր կեցցէ՛ մը այն պատուական ուսուցիչին, որ պ. Ղազարոսեանն է եւ որ պատրաստած է այս անտաշ ձայները, ստեղծելու համար այնքան անթերի այս ներդաշնակութիւնները»:

Դարձեալ, Թէքէեանի համեմատութեամբ, կարծէք երկու տարբեր նուագախումբերու մասին ըլլայ խօսքը: *Ժուռնալ տ'Էժիփթ* իրապէս համոզուա՞ծ էր որ 7 տարեկան հայ մանուկը կը ղեկավարէր նուագախումբը՝ առաջնորդելով կշռոյթն ու երաժշտութիւնը: Թէքէեանով կամ առանց Թէքէեանի գիտենք, որ կատարուածը պատկերաւոր ներկայացում մըն էր՝ ամէն բան մանուկներով եւ մանուկներու միջոցով ցուցադրելու նպատակով: Կրնանք համաձայնիլ կամ չհամաձայնիլ՝ թէ պէ՞տք է արդեօք նման ցուցադրութիւն թէ ոչ (Թէքէեան համաձայն չէր), բայց աւելորդ է երեւոյթը ծանրաբեռնել իր իսկութենէն շատ աւելի հեռու իմաստով:

Ասկէ զատ, իրապէ՞ս աշակերտներու քանի մը խմբերգներէն եւ նուագներէն ետք *Ժուռնալ տ'Էժիփթ*-ի օտար քննախօսը այսքան բազմակողմանի կարծիք կազմած է հայ երաժշտութեան մասին՝ արեւելեան մոթիֆ, եւրոպական թէքնիք, ռուսական տրտմութիւն, արեւելեան բնոյթ, կարօտաբաղձ խորութիւն, կրօնական գեղեցկութիւն: Արդեօք ընդհանուր բառապաշար չէ՞ գործածուածը՝ ամբողջի պատրանքը ստեղծող: Բայց հայերուս համար կարեւոր է օտարի ըսածը՝ անկախ բովանդակութենէն, բան մը՝ որ կը շարունակուի մինչեւ այսօր համահայկական մակարդակով:

Օտարը գնահատեց մեզի, բայց մենք չկրցանք գնահատել մեզի: Այս անուղղակի իմաստը կ'առնէ *Ժուռնալ տ'Էժիփթ*ի թարգմանութիւնը՝ եթէ զայն առնչենք Թէքէեանի հետ, թէեւ թարգմանողի կողմէ մօտէն կամ հեռուէն նման ակնարկ չկայ բնաւ: Կը բաւէ երկու բնագիրները դնել քով-քովի եւ զանոնք խօսեցնել տալ իրարու հետ:

Օտարի արժանահաւատութիւնը կարելի չէ վիճարկել, այնքան ժամանակ որ անիկա վաւերացումն ու ամբարձուած կրկնօրինակումն է հայ ինքնութեան այն կերպին՝ զոր կը փափաքինք արտադրուած տեսնել:

Վրայ կը հասնի *Սաւառնակ*ը՝ որ, ինչպէս տեսանք վերը, մէկ ամիս ետք պիտի զանգատէր դպրոցական քննախօսականներու անտեղի առատութենէն: Գրողը *Սաւառնակ*ի նուիրեալ գրաշարապետն էր՝ Ստեփան Համամճեան (Ս. Համամճեան, «Գալուստեան Վարժարանի հանդէս-երեկոյթը», *Ջէբլին* [Սաւառնակ], 11 Յունիս 1938, 20-րդ տարի, թիւ 21, էջ 4), որ նաեւ դարձած էր քննախօս, իսկ կեանքի վերջաւորութեան *Սաւառնակ*ի մէջ (1952-1953) պիտի սկսէր տպագրել Եղեռնէն փախուստի իր հրաշալի յուշագրութիւնը, որ դժբախտաբար մահուան պատճառով պիտի մնար անաւարտ:

Համամճեան այսպէս կը սկսէր յօդուածը. «Հիացում եւ հաճելի տպաւորութեան մը ազդեցութեան տակ էր որ յոգնախառն երկսեռ բազմութիւն մը վայելեց ու ըմբոշխնեց Գալուստեան Ազգ. երկսեռ վարժարանի կազմակերպած գեղարուեստական հանդէս երեկոյթը»:

Ուրեմն, Համամճեան կը խօսի հանդիսատեսի անունով՝ բազմութիւնն է որ վայելեց եւ լաւ տպաւորութեան տակ մնաց: Ան անմիջապէս կը զարգացնէ հանդիսատեսի գնահատութեան կեդրոնականութիւնը. «Արդարեւ, սոյն երեկոյթին ներկայ եղողները, որոնք մեծ մասամբ ծնողքներէ կը բաղկանային եւ եկած էին իրենց հոգեհատորներուն երգերն ու խաղերը ծափահարելու, սրտի անխառն հրճուանքով էր որ հասու եղան Գալուստեան վարժարանի կատարած գնահատելի գործին՝ կրթական թէ գեղարուեստական մարզերուն մէջ»:

Համամճեան արդեօք ինքն իր հետ հակասութեան մէջ չի՞ մտներ՝ երբ իրաւացիօրէն կը գրէ, թէ ծնողքները եկած էին ծափահարերու իրենց զաւակները: Ծնողք կա՞յ որ բեմ ելած իր զաւակին չծափահարէ ամենախանդավառ պոռթկումով:

Վերջապէս, բացառիկ էր նուագախումբը. «Յայտագրին ամենէն հաճելի մասերէն մին էր Մանկական Նուագախումբին կողմէ երգուած *Շոգեկառքը* խմբերգը, այնքան ինքնավստահօրէն նուագուած եւ երգուած Կոկոն դասարանի 5-6 տարեկան

↳ 4

ՋԱՀԱԿԻՐ



3 ԻՆՉՊԷ՞Ս ԿԱՐԵԼԻ Է ԻՄԱՍՏԱԶԵՐԾԵԼ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՄԸ...

աղջնակներու եւ մանչուկներու կողմէ: Բազմութիւնը որոտընդոստ ծափերով ողջունեց այդ փոքրիկներուն խմբերգը»: Ուշադրութիւն՝ նուագախումբը երգած է խմբերգ, ըստ բնագիրին:

Այլեւս Թէքէեանէն բան չմնաց:

Չենք կրնար ըսել որ այս յօդուածները դիտաւորեալ հակադարձութիւններ են Թէքէեանին, քանի որ վերջինիս քննադատած անձերը չունէին կուսակցական աջակցութիւն՝ որպէսզի կուսակցութիւն մը պարտաւոր զգար անոնց պաշտպանել: Բայց արդիւնքը այն էր՝ որ արտադրուած բնագիրները, տուեալ բնաբանին մէջ՝ հակաբնագիրները, կամայ թէ ակամայ տրամադրութիւն կը ցուցաբերեն չէզոքացնելու Թէքէեանի ազդեցութիւնը: Բոլորն ալ գացին, մնաց Թէքէեանը:

---

**ԱՐՄԱՆ ԹՕՔԱԹԵԱՆ**

2 **Եգիպտոսի եւ յաջորդող տարիներ**

յաջողութիւնը», *Արեւ*, 1 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 62 (822), էջ 1:

35. Անդ, էջ 1: Ա., «Հայ արուեստագէտ մը», *Յուսաբեր*, 7 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 81, էջ 3:

36. Պ. Փ., «Նամակ Իտալիայէն. Փայլուն ու փառաւոր ապագայ մը. Արմենակ Թօզաթլեան», *Արեւ*, 10 Յունիս 1921, Է. տարի, թիւ 16 (927), էջ 1:

37. «Արմէն Թօզաթեան», Թէոդիկ, *Ամէնուն տարեցոյցը 1926*, 20-րդ տարի, Վենետիկ, էջ 482:

38. «Արմէն Թօքաթլեան Եգիպտոս պիտի գայ», *Արեւ*, 5 Յունուար 1924, Ժ. տարի, թիւ 28 (1487), էջ 2:

39. Ստեփան Շահպազ, «Հայկական ներկայ բրօբականտը», *Արեւ*, 6 Մայիս 1933, ԺԷ. տարի, թիւ 4530, էջ 2:

40. «Արմէն Թօքաթեան Եգիպտոսի մէջ», *Արեւ*, 20 Հոկտեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4799, էջ 1:

41. «Պ. Արման Թօզաթեան Եգիպտոս կուգայ», *Արեւ*, 5 Դեկտեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4838, էջ 1:

42. *Արեւ*, 2 Ապրիլ 1952, ԼԷ. տարի, թիւ 10.126, էջ 4. 3 Ապրիլ 1952, ԼԷ. տարի, թիւ 10.127, էջ 4:

43. Մահուան առիթով գրուած կենսագրութեան մէջ ծննդավայրը նշուած է Ֆիլիպէ: Բայց գիտենք, որ ընտանիքը Պուլկարիա փոխադրուած է 1896-ին:

44. Վ., «Ցաւալի կորուստ մը (Տիկին Էօժէնի Շիշմանեանի մահուան առթիւ)», *Արեւ*, 6 Նոյեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4813, էջ 3:

45. 'Pensionnat de Ste-Elisabeth', *Sramboul*, trente-troisième année, no. 165, 17 juillet 1901, p. 2.

46. «Ամուսնական հանդէս», *Ազատ խօսք*, 23 Հոկտեմբեր 1907, էջ 14-15:

47. Վ., «Ցաւալի կորուստ մը (Տիկին Էօժէնի Շիշմանեանի մահուան առթիւ)», էջ 3:

48. «Տխրունի», *Արեւ*, 20 Հոկտեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4799, էջ 3: «Տխրունի», *Արեւ*, 22 Հոկտեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4800, էջ 3:

49. *Souvenirs of Tokatyan by Jacques Tocatlian.*

50. *Tocatlian blog*, https://tocatlian.blog/2019/02/07/jacques-tocatlian-1929-2019/

51. 'Tué par un autobus', *Le Journal*, 21 septembre 1912, p. 5.

52. *Souvenirs of Tokatyan by Jacques Tocatlian.*

53. 'Tué par un autobus', p. 5.

54. Անդ: *Souvenirs of Tokatyan by Jacques Tocatlian.*

1 ԱԼԻԵՒԻ ԽԵԼԱՑՆՈՐ ՇՐՋՈՒՄԸ (Բ. ՄԱՍ) «ԴԱՒԱՃԱՆ-ՀԱՅ»՝ ՆԵՐՔԻՆ ԹՇՆԱՄԻԻ...

թիւնը կը բացայայտէ Ալիեւի ռազմավարութեան հակասութիւնները: Արտաքնապէս, Պաքու կը պնդէ աշխատիլ տարածաշրջանային խաղաղութեան ուղղութեամբ, բայց այդ քօղին տակ ան կը վերացնէ իրական հաշտեցումի կոչ ընող որեւէ տեղական ձայն: Անոնք որոնք կը համարձակին հաղորդակցիլ հայ գործընկերներու հետ կամ աջակցիլ երկխօսութեան, կը պիտակաւորուին իբրեւ «դաւաճաններ» կամ «օտար գործակալներ», արձագանգելով ոչ միայն Ազրպէյճանի ծանօթ ռազմավարութեան, այլեւ ռուսական ապահովական մարտավարութեան՝ վարկաբեկելու եւ զտելու համար քաղաքացիական հասարակութիւնը: Ասիկա ոչ միայն կը խեղդէ այլախոհութիւնը, այլեւ Ազրպէյճանը կը համակցէ Մոսկուայի աւելի լայն գաղափարախօսական ծրագիրին, որ ազատականութիւնը, քաղաքացիական հասարակութեան անկախութիւնը եւ Արեւմտեան ազդեցութիւնը կը դիտէ իբրեւ գոյաբանական սպառնալիքներ:

Այս համակցութիւնը կ'անցնի ներքին բռնաճնշումի սահմանները: Միջազգային հարթակի վրայ, Ազրպէյճանի աճող յարձակողական կեցուածքը Արեւմտեան ուժերուն դէմ, յատկապէս Ֆրանսայի, կ'ընդգծէ անոր դերը իբրեւ լիազօր՝ եւրոպական ազդեցութեան դէմ Ռուսաստանի աւելի լայն պայքարին: Մինչ կը վատթարանան Մոսկուայի յարաբերութիւնները Փարիզի հետ, Պաքու կը վերցնէ Ֆրանսային մարտահրաւէր նետելու պարտականութիւնը, ինքզինք դիրքաւորելով իբրեւ հաւատարիմ դաշնակից Ռուսաստանի հակարեւմտեան օրակարգին: Ազրպէյճանի պետականօրէն հովանաւորուած ՀԿ-ները եւ լրատուամիջոցները զօրահաւաքի ենթարկուեցան՝ ընդլայնելու համար այն պատումները որոնք կը համակցին ռուսական ապատեղեկատուական արշաւներուն, յատկապէս անոնք որոնք կը թիրախաւորեն Արեւմտեան ազդեցութիւնը Կովկասի մէջ եւ անդին: Այս ձեւով, Ազրպէյճան ոչ միայն կը համակցի Ռուսաստանին յարմարութենէ ելլելով, այլ աշխուժօրէն կը մասնակցի Մոսկուայի աշխարհաքաղաքական օրակարգին:

**Վերջացա՞ւ ինքնիշխանութեան կարճ շրջանը**

Ազրպէյճան երկար ժամանակ կը յաւակնէր հետապնդել «բազմակողմանի» արտաքին քաղաքականութիւն, փորձելով յարաբերութիւնները հաւասարակշռել տարբեր ուժերու հետ՝ Ռուսաստան, Արեւմուտք եւ տարածաշրջանային խաղացողներ ինչպէս Թուրքիա, առանց չափէն աւելի կախուած ըլլալու մէկէն կամ միւսէն: Բայց նման քաղաքականութեան արտաքին տեսքը աւելի ու աւելի դժուար կը դառնայ պահպանել: Մինչ Ուքրաինայի պատերազմի ծագումէն ի վեր Պաքու ամրացուց իր ուժանիւթային կապերը Եւրոպայի հետ՝ մատակարարելով աւելի շատ կազ, քանի որ ԵՄ կը փնտռէր ռուսական ուժանիւթի այլընտրանքներ, հակասականօրէն ան միաժամանակ խորացուց իր քարիւղի եւ կազի համաձայնութիւնները Մոսկուայի հետ: Այս հակասական մօտեցումը ցոյց կու տայ՝ որ շահերը հաւասարակշռելու Ազրպէյճանի պնդումները աւելի հռետորական են քան իրական:

Իրականութիւնը այն է՝ որ Ազրպէյճանի աճող տնտեսական փոխկախուածութիւնը Ռուսաստանէն, զուգորդուած աւելի ու աւելի մենատիրական կառավարումի տիպարին, կը մղեն դառնալ տէ ֆաքթօ լիազօրուած պետութիւն: Անկախութեան պատրանքը կը պահպանուի ընդգծելով որոշ դիւանագիտական նուաճումներ, ինչպէս ուժանիւթի յաւելեալ արտահանումը ԵՄ, բայց այս քայլերը կը նսեմանան Մոսկուայի քաղաքական եւ տնտեսական աջակցութեան վրայ հիմնըւած խորացող կախուածութեան պատճառով: Քանի որ Ալիեւ կը խստացնէ իր ճիրանները իշխանութեան վրայ՝ Փութինի հետ ունեցած յարաբերութիւնները օգտագործելով ներքին այլախոհները ճնշելու եւ վերահսկողութիւնը պահպանելու համար, աստիճանաբար կը քայքայուի Ազրպէյճանի ինքնիշխանութիւնը:

Այս իմաստով, Ազրպէյճանի տարանցիկ դերը ոչ միայն նիւթաթեքնիքական է, այլեւ գաղափարախօսական եւ քաղաքական: Դիւրացնելով Ռուսաստանի ռազմավարական նպատակները, Ազրպէյճան ինքզինք կը փակէ կախուածութեան մէջ որմէ դժուար պիտի ըլլայ փախչիլ, եւ կարճատեւ յարաբերական ինքնիշխանութիւնը՝ զոր Ալիեւ կը վայելէր 2020-էն ետք, կրնայ շուտով վերանալ: Եթէ շարունակուին ներկայ միտումները, Ազրպէյճան ոչ միայն պիտի յայտնուի Ռուսաստանի համար ռազմավարական տարանցիկ դառնալու ուղիին վրայ, այլեւ պիտի սողոսկի ստանձնելու լրիւ հասունցած լիազօրի դերակատարութիւնը:

*28 Օգոստոս 2024*

(Շար. 2)

https://www.feministpeacecollective.com/en/post/aliyev-s-paranoid-turn-part-2

*Անգլերէնէ թարգմ.՝ Ա.*

---

1 ՓԱՇԻՆԵԱՆՆ ՈՒ ԱԼԻԵՒԸ ԱԳՆ-ՆԵՐԻՆ ՅԱՆՁՆԱՐԱՐԵԼ ԵՆ...

Հայաստանից փոխել Սահմանադրութիւնը, զգուշացնելով՝ հակառակ պարագայում խաղաղութեան պայմանագիրը չի ստորագրի: Բաքուն խնդրայարոյց է համարում Հայաստանի մայր օրէնքում յիշատակուած Անկախութեան Հռչակագիրը, որում յղում կայ Հայաստանի ու Լեռնային Ղարաբաղի միաւորմանը:

Թէ արդեօք այս հարցին անդրադարձ եղել է, չի հաղորդւում:

Կազանում ունեցած ելոյթում Հայաստանի վարչապետն ասել էր, որ սահմանազատման կանոնակարգի վերաբերեալ Հայաստանի Սահմանադրական Դատարանի որոշումը փարատում է բոլոր մտահոգութիւնները եւ վերացնում բոլոր փաստարկները՝ մայր օրէնքի մէջ հարեւան երկրների հանդէպ ենթադրեալ տարածքային պահանջների առկայութեան վերաբերեալ:

Նիկոլ Փաշինեանն ընդգծել էր՝ այդ որոշումն արձանագրում է, որ նման մեկնաբանութիւններն անհիմն են եւ ոչ օրինական:

Նա նաեւ ասել էր, որ այսօրուայ դրութեամբ համաձայնեցուած բովանդակութեան մէջ համաձայնագրի նախագիծը ձեւակերպում, հաստատագրում եւ լուծում է բոլոր սկզբունքային հարցերը, որոնք անհրաժեշտ են Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան ամուր հիմքեր ստեղծելու եւ յարաբերութիւնները կարգաւորելու համար:

---

1 ՀԱԳՄ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԵԳԻՊՏՈՍԻ ԴԵՍՊԱՆԸ ...

իր երկրի պատկան ատեաններում:

«Հանդիպմանն անդրադարձ եղաւ Հայաստան–Եգիպտոս երկկողմ տնտեսական կապերին, նշուեցին այն ուղղութիւնները, որոնք ունեն առաջմղման լաւ հեռանկարներ, այդ թւում՝ գիւղատնտեսութիւն, զբօսաշրջութիւն, դեղագործութիւն, շինարարութեան ոլորտ:

«Սերենադ Սոլիման Գամիլի գնահատմամբ՝ քաղաքական առումով երկու երկրների միջեւ հաստատուած են բաւական լաւ յարաբերութիւններ, մինչդեռ տնտեսութեան ասպարէզում իրացւում է առկայ ներուժի փոքր մասը միայն: Այս առումով երկուսեք կարեւորուեց Հայաստանի եւ Եգիպտոսի գործարար համայնքների միջեւ կապերի ակտիւացումը, Հայաստանի արդիւնաբերողների եւ գործարարների միութեան ու Եգիպտոսի գործարար կառոյցների միջեւ համագործակցութեան խորացումը, երկկողմ այցելութիւնները», - ասւում է հաղորդագրութեան մէջ:

Հանդիպմանը մասնակցել է ՀԱԳՄ նախագահի գլխաւոր խորհրդական Հրայր Զօրեանը:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1979 ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٧٩ الخميس ٢١ نوفمبر ٢٠٢٤


## ԱԼԻԵՒԻ ԽԵԼԱՅՆՈՐ ՇՐՋՈՒՄԸ (Գ. ՄԱՍ)
## ԲՈԼՈՐ COP-ԵՐԸ ԿԵՂԾԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՆ. ԻՆՉՊԷՍ ԱԼԻԵՒ ԿԸ ՋՆՋԷ ԱՅԼԱԽՈՀՆԵՐԸ COP29-ԷՆ ԱՌԱՋ

**ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՀԱՒԱՔԱԿԱՆ (Ազրպէյճան)**

COP29-ը [ՄԱԿի Կլիմայական Փոփոխութեան Համագումար] աւելի է քան պարզապէս յաջորդական կլիմայական գագաթնաժողով մը համաշխարհային օրացոյցին մէջ: Ան հարթակ մըն է Ալիեւի նման ինքնակալներուն դիմակւելու իբրեւ կայունութեան պաշտպաններ, մինչ պահպանելով անդամահատող գործելակերպը եւ մենատիրութիւնը որոնք կը սահմանեն իրենց դերը՝ ընկերութենական (corporative) ձեռնածուներու հետ միասին: Հետեւաբար, Ալիեւի գործողութիւնները պարզապէս շարունակութիւնն են աւելի լայն ու համակարգուած խնդիրի՝ ներդրուած նոյնինքը COP-ի շրջանակի բուն կառուցուածքին մէջ: Իր հիմնադրութենէն ի վեր, COP-ի գործընթացին տիրած են ուժեղ պետութիւնները եւ ընկերութենական շահերը՝ որոնք հետեւողականօրէն առեւանգած են կլիմայի օրակարգը, զայն վերածելով կանանչ լուացումի (greenwashing) շուկայի, ուր շահոյթներն ու քաղաքական շահերը կը գերակայեն կլիմայի ճգնաժամի իրական լուծումներուն:

**Ասպարէզ համաշխարհային ուժի եւ կանանչ լուացումի**

1995 թուականի առաջին COP-էն մինչեւ այսօր, կլիմայի տարեկան գագաթնաժողովները ներկայացուած են իբրեւ կլիմայական գործողութեան շուրջ համաշխարհային համագործակցութեան կարեւորագոյն պահեր: Բայց եւ այնպէս, աւելի քան երեք տասնամեակներ ետք, անոնք սակաւ յաջողած են հասցէագրել կլիմայական ճգնաժամին արմատական պատճառները՝ գաղութատիրութիւն, դրամատիրական շահագործում եւ պետական բռնութիւն: Փոխարէն, այս համագումարները առեւանգուած են ուժեղ պետութիւններուն, անդրազգային ընկերութիւններուն եւ դրամական հիմնարկներուն կողմէ՝ որոնք գործածած են զանոնք իբրեւ հարթակներ յառաջացնելու իրենց տնտեսական օրակարգները՝ միջավայրի պահպանութեան քօղին տակ:

«Կանանչ աճ», «զուտ-զէրօ 2050-ին» եւ «շուկայական լուծումներ» հռետորաբանութիւնը՝ որ կը գերիշխէ COP-ի բանակցութիւններուն, կոչուած է պահպանելու սթաթու քուօն, ուր ամենահարուստ երկիրները եւ ընկերութիւնները կը շարունակեն բնական հարստութիւններ խլել Աշխարհի Հարաւէն (Global South), մինչ կեղծ ծառայութիւն մատուցանելով կայունութեան: Այս մեքանիզմները, ինչպէս ածխածինի (carbon) շուկաները, ածխածինի փոխանակումները եւ ընկերութենական առաջնորդութեամբ բնութեան պահպանումը, չեն վիճարկեր կլիմայական քասու պատճառող կործանիչ համակարգները: Փոխարէն, անոնք ապականողներուն պատշաճ միջոց կը տրամադրեն մաքրելու իրենց պատկերը, միաժամանակ ընդլայնելով վերահսկողութիւնը հողի, ակունքներու եւ մարդոց վրայ:

COP-երը դարձած են կատարողական նշանակութեամբ ներկայացումներ՝ բեմեր ուր աշխարհի առաջնորդները եւ գործադիր տնօրէնները կու տան մեծ խոստումներ, կը բացայայտեն պճնամոլ նախաձեռնութիւններ եւ կը ցուցադրեն ընկերութենական գործընկերութիւններ, մինչ էքօհամակարգներու, աշխատուժի շահագործումի եւ բնիկներու իրաւունքներու խախտումները կը շարունակուին առանց թուլացումի: «Զուտ-զէռօ» յղացումը կը յարմարեցուի՝ արդարացնելու համար շարունակուող ապականութիւնը, թոյլատրելու ընկերութիւններուն ազատիլ իրենց պատասխանատուութենէն ածխածինի վարկերու եւ կասկածելի փոխհատուցումներու նախագիծերու միջոցով: Իրականութեան մէջ, այսպէս կոչուած «լուծումները» ուրիշ բան չեն եթէ ոչ ծածկոյթներ՝ քօղարկելու համար համաշխարհային տնտեսական համակարգին հիմքը գտնուող արդիւնահանող եւ շահութաբեր օրակարգները:

**Կանանչ լուացում. հիմնական յատկանիշ, ոչ խափանում**

Կանանչ լուացումը COP շրջանակի պատահական կողմնակի արտադրութիւն մը չէ. ան խորքային յատկանիշ մըն է: Տարիէ տարի, հանածոյ վառելիքի լոպպիսթները, ընկերութենական վերլուծական կեդրոնները եւ մեծ ապականողներու ներկայացուցիչները կը հեղեղեն COP-ը, ձեւաւորելով քաղաքականութեան քննարկումներ եւ ձախողեցնելով համակարգային փոփոխութեան բոլոր ջանքերը: 2021-ին, Կլասկօուի COP26-ին, աւելի շատ հանածոյ վառելիքի արդիւնաբերութեան ներկայացուցիչներ կային քան որեւէ երկիրի մը պատուիրակներ: Ասիկա ցոյց կու տայ՝ թէ ինչպէս համագումարը խաղադաշտի վերածուած է ճիշդ այն արդիւնաբերութիւններուն համար որոնք պատասխանատու են կլիմայական ճգնաժամի խթանումին: Անոնք այնտեղ չեն գտնուիր ընթացքը փոխելու համար. այնտեղ են ապահովելու՝ որ իրենց որդեգրած շուկայական եւ թեքնոքրաթական լուծումները շարունակեն ծառայել սեփական շահերուն:

Այս թափանցող կանանչ լուացումը կը տարածուի COP-ին մասնակցող պետութիւններուն վրայ, յատկապէս Ազրպէյճանի նման մենատիրական համակարգներու: Հիւրընկալելով COP29-ը, Ալիեւ ոչ միայն կը փնտռէ տնտեսական շահ, այլ ինքզինք կը դիրքաւորէ իբրեւ առանցքային խաղացող համաշխարհային կլիմայական քաղաքականութեան մէջ, քայլ մը որ կը ծառայէ ամրապնդելու իր ուժը թէ՛ ներքնապէս եւ թէ՛ միջազգայնապէս: Ալիեւի համար, Ազրպէյճանը ներկայացնել իբրեւ կանանչ ուժանիւթի կեդրոն, առաջ տանիլ վերականգնուող ուժանիւթերը եւ յաւակնութիւն ցոյց տալ աջակցելու համաշխարհային ուժանիւթի անցումին, բոլորն ալ ռազմավարութիւններ են ապահովելու Արեւմտեան ներդրումները, միաժամանակ ուշադրութիւնը շեղելով իր վարչակարգի շարունակական բռնաճնշումներէն եւ միջավայրի ոչնչացումէն: COP29-ը հիանալի կարելիութիւն կը պարգեւէ Ալիեւին մաքրելու իր պատկերը, մինչ շարունակելով շահագործել Ազրպէյճանի բնական աղբիւրները նոյն արդիւնահանումի ↳ 4

## ՓԱՇԻՆԵԱՆՆ ՈՒ ԹՐԱՄՓԸ ՀԵՌԱԽՕՍԱԶՐՈՅՑ ԵՆ ՈՒՆԵՑԵԼ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը հեռախօսազրոյց է ունեցել ԱՄՆ նորընտիր նախագահ Դոնալդ Թրամփի հետ:

Ըստ Հայաստանի կառավարութեան՝ Փաշինեանը շնորհաւորել է Թրամփին ընտրութիւններում յաղթանակի առիթով եւ նրան տեղեկութիւններ է փոխանցել Հայաստան-ԱՄՆ յարաբերութիւններում վերջին տարիներին տեղի ունեցած զարգացումների եւ ընթացիկ վիճակի մասին, ինչպէս նաեւ քննարկուել են տարածաշրջանային օրակարգի հարցեր:

ԱՄՆ նախագահական ընտրութիւնները տեղի են ունեցել Նոյեմբերի 5-ին: Ընտրութիւններից մէկ օր անց Փաշինեանը շնորհաւորել էր Թրամփին «տպաւորիչ յաղթանակի» կապակցութեամբ՝ նշելով, որ անհամբեր սպասում է նրա հետ աշխատելուն՝ հայ-ամերիկեան ռազմավարական երկկողմ յարաբերութիւններ կառուցելու համար՝ հիմնուած ընդհանուր արժէքների, առաջնահերթութիւնների եւ հետաքրքրութիւնների վրայ:

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ՀԱՊԿ-Ի ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՍԱՌԵՑՆԵԼՈՒ ՄԱՍՈՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴԻՐՔՈՐՈՇՈՒՄԸ ՉԻ ՓՈԽՈՒԵԼ. ԱԳՆ

Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ) աշխատանքներին մասնակցութիւնը սառեցնելու մասով Հայաստանի դիրքորոշումը չի փոխուել, *Ազատութեան ռադիոկայան*ի հարցին ի պատասխան յայտնում է Հայաստանի Արտաքին Գործերի Նախարարութիւնը:

Ռուսաստանում Հայաստանի դեսպան Գուրգէն Արսէնեանը մասնակցել է Ռուսաստանի արտգործնախարար Սերգէյ Լաւրովի նախաձեռնութեամբ Նոյեմբերի 13-ին Մոսկուայում կայացած ՀԱՊԿ անդամ երկրների դեսպանների եւ ներկայացուցիչների հանդիպմանը: Ըստ Ռուսաստանի արտգործնախարարութեան՝ միջոցառմանը մասնակցել է ՀԱՊԿ գլխաւոր քարտուղար Իմանգալի Տասմագամբետովը: ↳ 4

### ՀԱՆԴԻՍՈՒԹԵԱՄԲ ՆՇՈՒԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՐՈՂՆԵՐԻ ՄԻՈՒԹԵԱՆ 90-ԱՄԵԱԿԸ

Հայաստանի Գրողների Միութեան մեծ դահլիճում հանդիսութեամբ նշուել է ՀԳՄ-ի 90-ամեակը:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ միջոցառումը մեկնարկել է Հրանտ Մաթեւոսեանի խօսքով՝ «Սպիտակ թղթի առջեւ» յօդուածից:

Բացման խօսքով հանդէս է եկել ՀԳՄ նախագահ Էդուարդ Միլիտոնեանը: Նա անդրադարձել է Գրողների ↳ 4

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՐՏԻՍՏ ՌՈԲԵՐՏ ԱՄԻՐԽԱՆԵԱՆԻ ԾՆՆԴԵԱՆ 85-ԱՄԵԱԿԸ

Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը շնորհաւորական ուղերձ է յղել Հայաստանի Ժողովրդական Արտիստ, կոմպոզիտոր Ռոբերտ Ամիրխանեանի ծննդեան 85-ամեակի առիթով:

«Յարգելի մաէստրօ,

«Ջերմօրէն շնորհաւորում եմ Ձեզ ծննդեան 85-ամեայ յոբելեանի առիթով:

«Ձեր տասնամեակների գործունէութեան արդիւնքում վաստակել էք համաժողովրդական մեծ սէր ու յարգանք: Ձեր ստեղծագործութիւնները՝ դասական եւ էստրադային, կինոյի եւ մուլտֆիլմերի համար գրուած երաժշտութիւնները, ծանօթ ու սիրելի են բոլորիս:

«Ուրախ եմ, որ այսօր էլ ողջ եռանդով շարունակում էք ստեղծագործել եւ աշխատել երիտասարդների հետ՝ օգնելով նրանց մասնագիտական եւ ստեղծագործական կայացման գործում, հարստացնելով հայկական երաժշտարուեստի ժառանգութիւնը: Վերստին շնորհաւորելով՝ մաղթում եմ Ձեզ առողջութիւն եւ ստեղծագործական անվերջանալի բերկրանք», - *Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ նշուած է վարչապետի շնորհաւորական ուղերձում:

ԶԱՀԱԿԻՐ

# ԱՐՄԱՆ ԹՕՔԱԹԵԱՆ
## Ռաւինիայի ամառնային օփերա

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Չիքակօ քաղաքէն 30 քիլոմեթր հիւսիսը կը գտնուի Ռաւինիա Զբօսավայրը (Ravinia Park): Այնտեղ 1904-ին սկիզբ կ'առնէ բացօթեայ-բացօդեայ զուարճանքի ձեռնարկը՝ երաժշտութիւն, պարասրահ, պէյսպոլի դաշտ, թատրոն, որ շուտով կը վերածի մշակութային-գեղարուեստական հիմնարկութեան:

Աւելի ուշ, զբօսավայրը կը տնօրինէ Ravinia Company-ն, գլխաւորութեամբ հրեայ Լուի Էքսթայնի (Louis Eckstein): Վերջինիս կազմակերպութեամբ 1919-ին կը սկսին Ռաւինիայի օփերայի յայտնի ամառնային եղանակները, որոնք կը շարունակուին մինչեւ 1931: 1931-ին կը փակուի Ռաւինիան: Ամառնային փառատօնը կը վերաբացուի 1936-ին, բայց արդէն ոչ օփերայի համար, այլ գլխաւորապէս նուագախումբի երաժշտութեան:

1919-1931-ի օփերայի ներկայացումներու էմփրեզարիօն, բնականաբար, Էքսթայնն էր: Մեներգիչները եւ նուագավարները կը հրաւիրուէին մեծ մասամբ Մեթրոփոլիթըն Օփերայէն: Նուագախումբն էր Չիքակոյի Սեմֆոնիք Նուագախումբը (Chicago Symphony Orchestra):

Երկու հայ երգիչներ մասնակցած են Ռաւինիայի ամառնային օփերային, երկուքն ալ Մեթրոփոլիթընէն: Փօլօ Անանեան (պաս) առաջին անգամ այնտեղ երգած է 1920-ին եւ մինչեւ 1931 հետեւողականօրէն մասնակցած ամէն տարի, բացի 1922 թուականէն: Նուազ հետեւողական եղած է Արման Թօքաթեան (թենոր), որ մասնակցած է 1923-1925-ին եւ 1928-1930-ին, այսինքն՝ վեց եղանակ: *Musical Courier* 1923 Օգոստոսին կը հրատարակէ Ռաւինիա Զբօսավայրին մէջ Թօքաթեանի եւ Անանեանի համատեղ հազուագիւտ լուսանկար մը, զայն վերնագրելով՝ «Երկու հայ արուեստագէտներ Ռաւինիա Զբօսավայրին մէջ»(1):

Ռաւինիայի բացօթեայ ներկայացումները բացառիկ յաջողութիւն կը գտնէին: Վայրն ու արուեստը կը միախառնուէին, ինչպէս 1923-ին կարողապէս նկարագրած էր *Chicago Tribune*-ի երաժշտաքննադատ Էտուըրտ Մուր.

«Խորհեցէք թէ ինչ կրնայ մատուցանել Ռաւինիան՝ թէ՛ մարմնապէս եւ թէ գեղարուեստապէս: Չիքակոյի կեդրոնէն քսաներկու մղոն հիւսիս, անոր օդը նոյնիսկ խթանիչ է քաղաքի ծուխէն եւ մուրէն ետք, անոր զբօսանքները, ծառերը եւ տեսարանները հանդարտեցուցիչ են սալայատակներէն եւ շէնքերէն յոգնած աչքերուն: Ամէն ամառ այնտեղ կու գայ աշխարհի ամենահռչակաւոր երաժիշտներու խումբ մը, որոնցմէ շատերը կարելի չէ լսել ձմեռը, քանի որ զբաղած կ'ըլլան այլ համայնքներու մէջ: Մեծ երգիչները երեւան կու գան իրենց ամենայայտնի դերերով, կը նուագէ հռչակաւոր Չիքակոյի Սեմֆոնիք Նուագախումբը, տասը շաբաթ եւ երեք օր շարունակ կը հնչեն օփերաներ եւ նուագահանդէսներ: Այս մթնոլորտին մէջ Ռաւինիա երթալը ունի հաճոյքի այնպիսի աստիճան մը, զոր հազիւ կարելի ըլլայ զգալ ձմեռը՝ աշխարհի մեծագոյն օփերայի թատրոնները յաճախելով»(2):

Վեց եղանակի ընթացքին Թօքաթեան կը մասնակցի 6 նուագահանդէսի եւ 68 օփերայի բեմադրութեան՝ խաղալով 18 դերերգ.

Puccini: *La rondine* (Prunier), ամբողջ օփերան՝ 9 անգամ, Բ. արար՝ 1 անգամ:

Falla: *La vida breve* (Paco), 6 անգամ:

Puccini: *La bohème* (Rodolfo), 6 անգամ:

Wolf-Ferrari: *Il segreto di Susanna* (Gil), 6 անգամ:

Offenbach: *Les contes d'Hoffmann* (Hoffmann), 5 անգամ՝ ամբողջ օփերան, 1 անգամ՝ Ա. արար:

Gounod: *Roméo et Juliette* (Roméo), 4 անգամ:

Halévy: *La juive* (Léopold), 4 անգամ:

Massenet: *La Navarraise* (Araquil), 4 անգամ:

Mascagni: *Cavalleria rusticana* (Turiddu), 3 անգամ:

Rossini: *Il barbiere di Siviglia* (Almaviva), 3 անգամ:

Verdi: *La traviata* (Alfredo), 3 անգամ:

Verdi: *Rigoletto* (Il Duca di Mantova), 3 անգամ:

Auber: *Fra Diavolo* (Lorenzo), 2 անգամ:

Bizet: *Carmen* (Don José), 2 անգամ:

Donizetti: *Lucia di lammermoor* (Edgardo), 2 անգամ:

Puccini: *Madama Butterfly* (Pinkerton), 2 անգամ:

Mascagni: *L'amico Fritz* (Fritz), 1 անգամ:

Massenet: *Manon* (des Grieux), 1 անգամ:

Ստորեւ՝ Թօքաթեանի բոլոր ելոյթներուն ժամանակագրութիւնը: Կարելի սահմաններու մէջ աւելցուցած եմ նաեւ իւրաքանչիւր ներկայացումի մամուլի քննախօսականները (քննախօսականները ամբողջական չեն կրնար ըլլալ, հաւանաբար ուրիշներ եւս յայտնաբերուին):

* * *

**1923**

Էտուըրտ Մուր կը ներկայացնէ երգիչը.

«Պր. Թօքաթեան հայ մըն է եւ վճռական տպաւորութիւն թողուց Մեթրոփոլիթընի վերջին թատերաշրջանին: Ան կատարելապէս սահմանակարգուած (routined) երգիչ մըն է՝ կրթուած իտալական դպրոցի մէջ, եւ թէեւ երիտասարդ՝ տակաւին 27 տարեկան, ունի ընդարձակ փորձառութիւն: Ամերիկեան առաջնեկութիւնը կատարեց Անթոնիօ Սքոթթիի օփերայի ընկերութեան հետ՝ իր ամառնային շրջագայութեան ընթացքին, եւ Նիւ Եորք վերադարձին Պր. Կաթթի-Քասածծա անմիջապէս զինք հրաւիրեց Մեթրոփոլիթըն Օփերա»(3):

Թօքաթեանի առաջին ելոյթը յայտարարուած էր Յունիս 25-ի նուագահանդէսին(4), բայց հիւանդութեան պատճառով իրեն կը փոխարինէ պաս Virgilio Lazzari(5):

Դարձեալ, Յուլիս 1-ին նախատեսուած էր ելոյթ ունենալ *Lucia di lammermoor*-ի Edgardo-ի դերով(6), բայց իրեն կը փոխարինէ Giacomo Lauri-Volpi(7):

**2 Յուլիս 1923**

Նուագահանդէս:

Chicago Symphony Orchestra, նուագավար՝ Louis Hasselmans:

- Bizet: *Carmen*, 'La fleur que tu m'avais jetée' (Flower Song) եւ 2 պիս

Armand Tokatyan (թենոր):

- Thomas: *Mignon*, 'Je suis Titania' (Polonaise)

Thalia Sabanieva (սոփրանօ):

- Saint-Saëns: Թաւջութակի Քոնչերթօ լա մինոր

Alfred Wallenstein (թաւջութակ)(8):

*Chicago Daily Tribune* - «Ասիկա նշանաւորեց Պր. Թօքաթեանի առաջնեկ ելոյթը իբրեւ Ռաւինիայի արուեստագէտ, եւ *Carmen*-ի «Ծաղիկի երգ»-ով իր ունկնդիրներուն տուաւ բաւական որոշիչ գաղափար՝ թէ ինչպէս պիտի ըլլան եղանակի մնացած շրջանին իր ուսին բարդուած օփերայի դերերգները: Ձայնին մէջ բաւական տրամաթիք ուժ կայ, հնչիւնները լաւ տեղադրուած են եւ իր ջերմեռանդ երգը խանդավառութիւն յառաջացուց»(9):

*Musical America* - «Իրադարձութիւնը նշանաւորեց Պր. Թօքաթեանի առաջնեկութեամբ իբրեւ Ռաւինիայի երգիչ, եւ *Carmen*-ի «Ծաղիկի երգ»-ով յառաջացուց զերազանց տպաւորութիւն»(10):

**3 Յուլիս 1923**

Mascagni: *Cavalleria rusticana* (իտալերէն):

Florence Easton (Santuzza), Armand Tokatyan (Turiddu), Vincente Ballester (Alfio), Marion Telva (Lola), Anna Correnti (Mamma Lucia). նուագավար՝ Gennaro Papi(11):

Edward Moore - «Պր. Թօքաթեան երեւան բերաւ տրամաթիք համոզչականութեամբ եւ հարուստ նկարագիրով բաւական զօրեղ ձայն մը: Դերին մէջ կրքոտ երիտասարդ գիւղացի մը, ան առաջնակարգ հակադրութիւն մըն էր Florence Easton-ի Santuzza-ին»(12):

*Musical Courier* - «Մեթրոփոլիթըն Օփերայի թենոր Արման Թօքաթեան, որ պիտի երգէ Ռաւինիա Զբօսավայրի ամբողջ եղանակին, հիանալի տպաւորութիւն գործեց Չիքակոյի հանգստավայրին մէջ, երբ Յուլիս 4-ի [Յուլիս 3] երեկոյեան երգեց *Cavalleria rusticana*-ի Turiddu-ն: Չիքակոյի քննադատները վառ արտայայտութիւններով խօսեցան երիտասարդ արուեստագէտի ձայնին եւ դերի ընդհանուր մարմնաւորութեան մասին եւ զինք կոչեցին արժէքաւոր յաւելում մը Ռաւինիայի ուժերուն»(13):

Rene Devries - «Նորեկ մը՝ Արման Թօքաթեան, ամենայաջող սկզբնաւորութիւն ունեցաւ Turiddu-ի դերով: Ազնիւ անհատականութիւնն ու ընտիր ձայնը իր միակ յատկանիշները չեն: Իր կերտուածքը ունի բազմաթիւ այլ կողմեր եւս, որոնք մեծապէս ակներեւ էին առաջին ելոյթին եւ անկասկած եղանակի ընթացքին պիտի ապահովեն իր ժողովրդականութիւնը»(14):

*Musical America* - «Երեքշաբթի երեկոյեան, թենոր Արման Թօքաթեան յաջող սկզբնաւորութիւն մը արձանագրեց իբրեւ օփերայի երգիչ, երբ հանդէս եկաւ *Cavalleria*-ի Turiddu-ի դերով, խաղընկեր ունենալով Florence Easton իբրեւ Santuzza: Ներկայացումը յառաջացուց ունկնդիրներուն խանդավառութիւնը»(15):

Karleton Hackett - «Նորեկ թենոր Արման Թօքաթեան շատ յաջող սկզբնաւորութիւն ունեցաւ: Գեղեցիկ արտաքինով երիտասարդը, որ եթէ չեմ սխալիր հայ է, ունի հաճելի նկարագիրով, լայն ձայնածաւալով ու հնչեղութեամբ իսկական թենոր ձայն: Ձայնին հնչերանգը իտալական է, իսկ բառերուն արտասանութիւնը նշանակալիօրէն յստակ է: Ձայնը տրամաթիքական բնոյթ ունի եւ լաւ կը յարմարի Մասքանիի երաժշտութեան: Կը մնայ տեսնել՝ թէ ձայնը ինչպէս պիտի հնչէ աւելի քնարական արտայայտութեան մէջ, բայց ան ընտիր է իսկ Թօքաթեան կ'երգէ ինքնավստահութեամբ եւ հասկացողութեամբ: Addio-ն՝ որուն ընթացքը բազմաթիւ լաւ թենորներ կը գտնեն բաւական ծանր, երգեց մինչեւ վերջ պահելով զօրութիւնը: Ան արժէքաւոր յաւելում մը պէտք է ըլլայ ընկերութեան»(16):

Farnsworth Wright - «Յանձին հայ թենոր Արման Թօքաթեանի, *Cavalleria rusticana*-ն այստեղ ներկայացուց նոր եւ խիստ հոյակապ Turiddu մը: Եղած են աւելի կրակոտ Turiddu-ներ, բայց քիչերն են որ կատարելապէս միաւորած են լաւ երգն ու լաւ ձայնը՝ լաւ խաղարկութեան հետ: Ինչպէս ֆրանսացիները կ'ըսեն՝ ան գիտէ ինչպէս տանիլ տեսարանը, եւ ունկնդիրը սիրեց զինք: Ձայնը յագեցած է, լաւ կլորուած եւ հաճելի, եւ երգիչը ըմբռնած է հնչիւնի արտաբերութեան արուեստը»(17):

Eugene Stinson - «Turiddu-ն էր Արման Թօքաթեան՝ երիտասարդ թենորը որուն առաջին օփերայի ներկայացումն էր Իլլինոյի մէջ: Իր ձայնը թարմ է եւ հաճելի, եւ երիտասարդը տակաւին կը յղկէ իր բնական մակերեսը՝ ըստ ձայնի արդիւնաբերութեան առաջարկին: Իր մարմնաւորումը ամբողջապէս կը պարտի թենորի շարժուձեւի բնապաշտական դըպրոցին, եւ իր յօնքերը նոյնքան արտայայտիչ են որքան ձայնը: Իր կատարումով վաստակեցաւ բազմաթիւ ընկերներ: Ինքզինք բացայայտեց իբրեւ երգիչ՝ որ արժանի է Ռաւինիայի եւ Մեթրոփոլիթընի (իր ձմեռնային կայանը) ընձեռած հնարաւորութիւններուն»(18):

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. 'Two Armenian Artists at Ravinia Park,' *Musical Courier*, 30 August 1923, Vol. LXXXVII, No. 9, p. 26.

2. Edward Moore, 'Ravinia Promises its Finest Season,' *Chicago Sunday Tribune*, 3 June 1923, part 7, page 1.

3. Edward Moore, 'Civic Opera Tells of What's to Come,' *Chicago Sunday Tribune*, 10 June 1923, part 8, page 3.

4. Edward Moore, 'Lovely Ravinia's New Season Near at Hand,' *Chicago Sunday Tribune*, 17 June 1923, part 8, page 2. 'Ravinia Tonight,' *Chicago Daily Tribune*, 25 June 1923, p. 23.

5. Edward Moore, 'Civic Opera Loss for Last Year $351,718, Annual Report Shows,' *Chicago Daily Tribune*, p. 17. Rene Devries, 'Ravinia Opera Season Opens with a Fine Performance of *Traviata*,' *Musical Courier*, 5 July 1923, Vol. LXXXVII, No. 1, p. 23.

6. 'Ravinia Season of Brilliant Promise to Open on June 23 with *Traviata*,' *Musical America*, 23 June 1923, Vol. XXXVIII, No. 9, p. 24.

7. Edward Moore, 'Hearing Good Opera in Serenest Comfort,' *Chicago Sunday Tribune*, 1 July 1923, part 6, page 4.

8. 'Ravinia Concert,' *Chicago Daily Tribune*, 2 July 1923, p. 19. 'Ravinia Audience Captured by Three Soloists, Orchestra,' *Chicago Daily Tribune*, 3 July 1923, p. 15. 'Tokatyan Creates Fine Impression at Ravinia,' *Musical Courier*, 12 July 1923, Vol. LXXXVII, No. 2, p. 12. Rene Devries, 'Louis Eckstein Offers Variety to Ravinia Park Audiences,' *Musical Courier*, 12 July 1923, Vol. LXXXVII, No. 2, p. 32. 'Second Week of

↳ 4

ԽՈՀԵՐ

# ԵՒ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ ԶԵՌՆԱՐԿԸ...

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Սփիւռքահայ աւանդական մամուլի գլխաւոր խնդիրներէն մէկը եղած է քննախօսականը: Կը գերակշռեն ձեռնարկները՝ վերարտադրելու փորձերը այնպիսի բնագիրներով՝ որոնք միտուած են պանծացնել կուսակցութեան պատկերը: Ձեռնարկ-բնագիր յարաբերութիւնը պայմանական է այստեղ, բնագիրը օտարուած է ձեռնարկէն, ան կրնար գոյութիւն ունենալ անկախ ձեռնարկէն: Գրողները հանդէս կու գան Ներկայ մը, Թղթակից, Հանդիսատես եւ նման ստորագրութիւններով, կամ անհասկնալի սկզբնատառերով: Հանդէս եկած են նաեւ ստորագրող խմբագրապետեր, այնքան ուժեղ եղած է ինքնագրաքննութիւնը: Այս տեսակ քննախօսականները կը ներկայացնեն մամուլին ողնասիւնը:

Յետոյ կու գան մտածող քննախօսները, որոնք, գիտակից բեմին վրայ կատարուածէն, կ'ուզեն ըլլալ որքան կարելի է անկեղծ դիտարկողներ, համայնքի մը մօտիկութեան կարելի սահմաններուն մէջ: Անոնց քննախօսականները հաճելի է կարդալ, ձեռնարկ-բնագիր յարաբերութիւնը սերտ է բայց ոչ անպայմանօրէն փոխներթափանցային, առարկայական շարադրութեան ճիգը բաւական ակներեւ: Քննախօսականները յստակ ստորագրութիւններ կը կրեն, ընթերցողին յայտնի անուններու կողմէ: Եգիպտահայ մամուլը կրնայ յիշել Գուրգէն Միխիթարեան, Օննիկ Մահտեսեան, Աւետիս Եափուճեան եւ քանի մը ուրիշներ: Թէեւ քննախօսութիւնը իբրեւ բնագիր տակաւին կը մնայ ենթարկուած ձեռնարկին եւ ամբողջապէս կախուած անկէ, ասիկա ընդունուած կերպն է նաեւ միջազգային քննախօսութեան:

Վերջապէս, կու գայ ամենէն սակաւաթիւը, բայց իմաստային առումով ամենէն տարածունը: Քանակով շատ աւելի նուազ քան նախորդները, բովանդակութեամբ անհամեմատօրէն հարուստ, առարկայական բնագիրին կ'աւելնայ ենթակայական մտածողութիւնը, մէկ կողմէ՝ բնագիրին տալով ինքնուրոյն կեցութեան իրաւունք, միւս կողմէ՝ մեկնաբանական ենթակայականութեան յաւելումով սերտանալով ձեռնարկ-բնագիրի տիալեքթիքը: Քննախօսները բան մը ունին ըսելիք: Էտուարտ Սայիտի երաժշտական քննախօսականները *The Nation*-ի մէջ, դժբախտաբար թերագնահատուած այսօր, այս տեսակի կարեւոր նմոյշներ են:

1939 Փետրուար 10, Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիըլ Հոլ, ջութակահար Ֆիլիբ Աղազարեանի անդրանիկ մենահամերգը Եգիպտոսի մէջ: Արտակուսակցական ձեռնարկ մը, որ հայ հանրութեան կ'ազդարարուի առկայ կուսակցական եւ կուսակցականամէտ մամուլին միջոցով: Տեղական եւրոպական մամուլը խանդավառօրէն կը քննախօսէ, զոր կը թարգմանէ եգիպտահայ մամուլը, *Արեւ* եւ *Յուսաբեր* կրկնակի անդրադարձներ կ'ունենան, կը գրէ *Սաւառնակը*: Աննախադէպ զուգադիպութեամբ, եգիպտահայ երեք լաւագոյն գրողներ անկախաբար կը ստորագրեն քննախօսականներ՝ Վահան Թէքէեան, Միքայէլ Կիւրճեան եւ Լիպարիտ Նազարեանց.

1. Վ[ահան] Թ[էքէեան], «Ֆիլիբ Աղազարեանի փառայեղ նուագահանդէսը», *Արեւ*, 15 Փետրուար 1939, ԻԳ. տարի, թիւ 6120:

2. Միքայէլ Ս. Կիւրճեան, «Ֆիլիբ Աղազարեան (տպաւորութիւններ)», *Արեւ*, 17 Փետրուար 1939, ԻԳ. տարի, թիւ 6122:

3. Լ[իպարիտ] Ն[ազարեանց], «Ջութակահար Ֆիլիբ Աղազարեան (իր նուագահանդէսին առիթով)», *Յուսաբեր*, 18 Փետրուար 1939, ԻԴ. տարի, թիւ 270:

Անոնք սովորական անուններ չեն: Գրողներ՝ որոնք կը գրէին, երբ երեւոյթը շարժէր իրենց միտքը: Կը գրէին՝ երբ ըսելիք ունէին, բան մը (բաներ) ունէին աւելցնելիք: Այդ «բանն» էր կարեւորը իրենց համար:

Թէ ինչու երեքն ալ ուզած են մասնակցիլ, կը հասկցուի Թէքէեանի բացատրութենէն տուեալ յօդուածին մէջ. «Երբ լաւ երաժշտութիւնը կը վերծանուի լաւ արուեստագէտի մը կողմէ, ոչ ոք կը մնայ անտարբեր, ամենքը, հասկցող թէ ոչ, կը գրաւուին եւ կը թրթռան անով՝ թափած իրենց զգայնութիւնը պատող թանձր կամ թեթեւ գուղձը», կամ Կիւրճեանի բնութագրութենէն. «Բնութեան եւ արուեստի մէկ ճշմարիտ տօն» մը:

**ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ**

«Երաժիշտ մը եւ երաժշտագիր մը» չեմ, կ'ըսէ Թէքէեան, աւելցնելով. «Եւ ո՛րքան աւելի մեծ պիտի ըլլար հաճոյքս, կը յուսամ, եթէ երաժշտութեան գիտութիւնն ալ ունենայի»:

Բայց եւ այնպէս, կը քննախօսէ, որովհետեւ քաջ գիտէ՝ թէ արուեստը հասարակութեան համար է, նախքան մասնագէտին: Կը գրէ հակիրճ, անսեթեւեթ, մտակայուն արտայայտութեամբ, ինչպէս իր սովորութիւնն է: Կը գրէ իբրեւ արձակագիր: Մոցարթի *Ռոնտո*ն «թեւեր ունէր (թիթեռնիկի կամ շերեփուկի)», «երբեմն կայծեր կը հանէին սմբակները *Շարքոնին*» (Վիթալիի), Քորելլիի *Լա ֆոլիա*ն «նուաճուած էր արուեստագէտէն ինչպէս դժուարազուսպ նժոյգ մը», ռուս, սպանիացի եւ հրեայ երաժշտահաններու գործերէն «արեւելեան ոգին կը հոսէր – հեղինակներուն ու նուագողին միջոցաւ»: Չի խանգարեր նաեւ քիչ մը ազգայնականութիւն, արձանագրելով՝ որ հրեայ Էրնեսթ Պլոքի *Նիկունը* «հայու զգացումներ կը թարգմանէր կարծէք»:

Բայց Թէքէեան ամենաշատը կը կեդրոնանայ Աղազարեանի երկու սեփական յօրինումներուն վրայ՝ *Հայկական մելոտի* եւ *Օրօր*, որոնք հայ հեղինակի մը միակ գործերն էին յայտագիրին մէջ (ամբողջ յայտագիրը տես՝ *Արեւ*, 6 Փետրուար 1939, ԻԳ. տարի, թիւ 6112): Առաջինը՝ «խորհրդապահօրէն արձագանգ տուող ժողովրդական երգի մը եղանակին», եւ երկրորդը՝ «ինքնատիպ բոլորովին, - որ ի սկզբան արագ ու աշխոյժ է՝ ինչպէս մօր մը սիրազեղ շաղփաղփանքը ուղղուած քնանալ չուզող իր զաւկին եւ հետզհետէ կը մեղմանայ նուրբ արապէսքներու մէջ ոլորուելով», ցոյց կու տան՝ «թէ ի՛նչ զգայուն նուագահան մըն է ան՝ ըլլալէ ետք կատարելատիպ նուագիչ մը զգացմամբ եւ թէքնիքի տիրապետութեամբ»:

Բառ, պատկերաւորութիւն, գրական առնչութիւն, ընկալողական փորձառութիւն, եւ եթէ թոյլ կու տաք՝ խորհրդաւոր իրապաշտութիւն:

**ՄԻՔԱՅԷԼ ԿԻՒՐՃԵԱՆ**

Թէքէեանի նման, Կիւրճեան եւս կ'ուզէ կարեւորել իր ոչ-երաժիշտի հանգամանքը. «*Երաժշտագէտ* մը չեմ բնաւ. եւ այս տարիքիս մէջ չէ որ պիտի յաւակնէի *երաժշտական քննադատ*ի խանութ բանալ» (Կիւրճեան 63 տարեկան էր այդ ժամանակ):

Աղազարեանը լսելէ ետք, Կիւրճեան պիտի փափաքէր զինքը ներկայացնել «գովելով, հիանալով այնքան գիտութեամբ որքան խանդավառութեամբ, վերլուծելով, պատճառաբանելով տպաւորութիւներս, փոխանակ զանոնք իրենց բնազդական, իրենց ըսէ՛նք նախնական, հում վիճակին մէջ հրամցնելու ընթերցողներուս»:

Բայց ինք եւս, Թէքէեանի նման, գրող է՝ արձակագիր եւ բանաստեղծ: Եւ իրեն կը մնար այդ նախնական խանդավառութիւնն ու տպաւորութիւնները թարգմանել գրականութեան, ինչ որ փորձեց ընել, բայց միջանկեալ անցումէ մը ետք:

Այդ անցումը գիտակից փորձ մըն է ներկայացնելու մասնագէտ քննադատութեան նմոյշ մը, գործածելով, ինչպէս ինք կ'ըսէ՝ «ֆրանսերէն մասնագիտական գրեթէ անթարգմանելի բառեր... իմաստակութեան թեթեւ վտանգ մը աչքս առնելով»:

Այս ծիրէն ներս, ի միջի այլոց, կը գրէ. «Խազերը կը հոսին անթերի կատարելութեամբ, եւ ճպոտը կը ձեռնուի արտասովոր տիրականութեամբ մը: Liéներու եւ couléներու հնչականութիւն, միշտ լեցուն. harmoniqueներու փայլ մը, ճշդութիւն մը, դիւրութիւն մը՝ խիստ հազուադէպ: Կարելի է իրաւամբ կոչել զինքը «ջութակին կախարդը»»:

Այս եւ միւս «մասնագիտական» տողերը բոլորն ալ Կիւրճեան վերցուցած է չակերտներու մէջ, քանի որ, ըստ իրեն, «ասոնք խօսքերն են եւրոպացի հեղինակաւոր երաժշտագէտներու»: Իրը չեն: Պայմանականօրէն իրը չեն: Պարզապէս ըսել կ'ուզէ՝ այսպէս կ'ըլլայ մասնագիտական քննախօսականը: Միւս կողմէ, անուղղակիօրէն ըսել չ'ո՞ւզեր արդեօք՝ որ թեքնիք եզրոյթները՝ փոխադարձաբար կրկնուող, շատ բան չեն արտայայտեր իմաստներէն:

Բայց իրեն համար աւելի հետաքրքրական է ներկայանալ «իբր մէկ պարզ անդամը ունկնդիր հասարակութեան»: Եւ կը շարահիւսէ տպաւորութիւններու երկար շարք մը, քննախօսութիւն մը՝ տպաւորութիւններու ձեւին տակ, տպաւորութիւններ՝ աւելի խօսուն քան lié-ն, coulé-ն եւ harmonique-ը: Ահաւասիկ քաղուածք մը այդ «տպաւորութիւններ»-էն. «Տէր իր ջութակին, կախարդի մը, դեւի մը, դիքի մը պէս տէր, Աղազարեան՝ անոր միջոցաւ՝ տիրեց նաեւ մեր հոգիներուն, գերեց զանոնք, գերեց եւ վարեց, յափշտակեց տարաւ ամէն ուր որ ուզեց, ներդաշնակութեան այլազան դիւթաստաններուն մէջ, Մոցարդի սպիտակ Խորհուրդին թագաւորութենէն մինչեւ Սարազադի պսպղուն, կայծկլտուն Պոհեմիան, հրաշալի *յարախաղացութիւններու* կրկէսէն մինչեւ Վինիավսքիի առասպելավայրը. Գուբըռէնի դասական վճիտութեամբ աւազաններէն մինչեւ իր հեղինակած Մեղեդիին եւ Օրօրին մեղմաթաւալ մելամրմունջ կոհակները. բոլոր դժուարութիւններուն վրայէն սահելով, բոլոր խոչընդոտներուն վրայէն սուրալով թեթեւութեամբ մը, արագութեամբ մը եւ դիւրութեամբ մը որոնք կարծես կը բխէին իր մոգական ճպոտէն, լեցուած հոսանուտով մը զոր իր վիոթիւօզի մատները, բանաստեղծի հոգիէն առնելով՝ կը հաղորդէին անոր»:

Այս մեկնաբանութիւնը աւելի ինքնարտայայտիչ չէ՞ արդեօք քան ֆրանսերէն եզրոյթները:

Կիւրճեանի յօդուածը նաեւ ներբող մըն է ջութակին՝ իբրեւ նուագարան. «Ամէնէն աննիւթն ու նուազ *մեքենականը* երաժշտական մեծ գործիքներուն. ամէնէն նուրբը, զգայունը եւ թրթռունը. ամէնէն մարդկայնօրէն ջղայինը, ջղասարսուռը, եթէ կարելի է ըսել, ամէնէն խորապէս յուզուողը եւ յուզիչը: Եւ անկասկած ամէնէն երկիւղալին, ճիշդ այս բոլորը ըլլալուն համար»: Եւլն.:

Թէքնիքէն դէպի բնազդականութիւն, թէքնիք՝ որ չի կրնար խեղդեր բնազդականութիւնը, բնազդականութիւն՝ որ գիտակից է, մարզուած, գեղարուեստականացուած: Եւ դարձեալ բառեր՝ իմաստային շրջապատով եւ մեկնաբանային խորութեամբ:

**ԼԻՊԱՐԻՏ ՆԱԶԱՐԵԱՆՑ**

Ի տարբերութիւն Թէքէեանէն եւ Կիւրճեանէն, Նազարեանց մասամբ եղած է երաժիշտ: Եղած է սիրող խմբավար, երաժշտահան, *Յուսաբեր*ի մէջ ստորագրած քննախօսականներուն կարեւոր մաս մը յատկացուցած է երաժշտական հանդէսներուն:

Յօդուածը կը սկսի երաժշտութեան եւ արուեստի մասին իր ըմբռնումներու ցուցադրութեամբ: Նախ, ան կը կրկնէ քանիցս արդէն արտայայտած քիչ մը սովորական միտքը՝ թեքնիքը դնելով ընդդէմ հոգեկան շունչին եւ երաժշտական ըմբռնումին, շլացումը՝ յուզումին: Թեքնիք/ըմբռնում-յուզում երկուութիւնը միշտ բաւական կտրուկ եղած է իր մօտ, առաջինը միջոց մը ընդունելով երկրորդին համար: Երաժիշտներուն մէջ հինէն եկած տարածուած կարծիք մը:

Իսկ ե՞րբ արուեստը կը դառնայ արուեստ. «Արուեստը – եւ յատկապէս երաժշտական արուեստը – ամէն բանէ առաջ զգացումին վրայ է՝ որ պէտք է ազդէ: Եւ ան կրնայ ընել այդ այնքան աւելի զօրեղ կերպով, որքան աւելի կատարեալ են իր արտայայտման միջոցները: Ըսել է՝ իսկական արուեստագէտ մը պէտք է միացուցած ըլլայ իր մէջ երկու յատկութիւն, - ապրելու ունակութիւն, ապա՝ իր ապրումները արտայայտելու, ըսել է՝ զանոնք ուրիշներուն ապրեցնելու կարողութիւն»:

Աղազարեան միացուցեր է երկու յատկանիշները:

Ընդհանուր արուեստէն դէպի երաժշտութիւն եւ ճշգրիտ յատկանիշներ. «Թեթեւ աղեղ, ճկուն շարժումները որեւէ ճիգ չէին պահանջեր, յստակ ձայն, որ *ֆլաժոլէտ*ի մէջ սրինգի թովչութիւնը ունէր, փայլ եւ զարմանալի մեքենականութիւն, որ կարծես միաժամանակ կը հնչեցնէր ամբողջ ջութակը: Եւ միեւնոյն ատեն՝ զօրաւոր խառնուածք, որ մերթ կ'արտայայտուէր բուռն պոռթկումներով, մերթ մտերմիկ քնարերգութեամբ, անկեղծութիւն եւ գեղարուեստական չափի զգացում. իսկ ամենէն կարեւորը՝ ուժեղ անհատականութիւն, ուստի եւ իւրայատուկ ըմբռնում ու գործադրութիւն մինչեւ իսկ այնպիսի հանրածանօթ կտորներու, որոնց նուագման եղանակը արդէն կաղապար դարձած է»:

Աղազարեան ունեցեր է հազուադէպ վրիպակներ, «որոնցմէ զերծ չեն եղած մեծագոյն արուեստագէտներն իսկ, եւ որոնք ոչ մէկ պարագայի կրնան ➯ 4

ՋԱՀԱԿԻՐ

### 1 ՀԱՊԿ-Ի ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ...

*Հայաստանն աւելի վաղ յայտարարել է, որ սառեցնում է իր մասնակցութիւնը ՀԱՊԿ-ի միջոցառումներին, հրաժարուել է նաեւ իր բաժին ֆինանսաւորումը յատկացնել այդ կառոյցին, տեւական ժամանակ չի մասնակցում համատեղ զօրավարժութիւններին, հանդիպումներին, բայց պաշտօնապէս չի դիմել ՀԱՊԿ-ից դուրս գալու գործընթաց սկսելու համար։ Երեւանը խստօրէն քննադատում է ՀԱՊԿ-ին յատկապէս 2022 թուականին Հայաստանի ինքնիշխան տարածք ադրբէջանական ուժերի ներխուժումից յետոյ, երբ այդ կառոյցը ոչ միայն չպաշտպանեց իր անդամին, այլեւ նոյնիսկ պատշաճ չարձագանքեց Ադրբէջանի ագրեսիային։*

### 3 ԵՒ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ ՋԵՌՆԱՐԿԸ...

նսեմացնել ամբողջական նուագի փայլն ու տպաւորութիւնը»։ Ինչո՞ւ նշել վրիպակները՝ եթէ անկարեւոր են անոնք։ Նազարեանց փափաքեր է այդ արձանագրութիւնը կատարել, քանի որ նոթայի սայթաքումը կրնայ որսալ միայն երաժշտականապէս մարզուած ականջը։ Նազարեանց կը ներկայանայ իբրեւ երաժիշտ։

Երաժշտութիւն՝ արուեստի մէջ, արուեստ՝ ապրիլ-ապրեցնելու համար։

* * *

Ապրիլ-ապրեցնել, ուրեմն, խօսիլ առանց վերջակէտերու, առանց լաւ-վատ հակադրութեան։

Բնագիրը կենդանի դարձնելով, թեքնիքականութենէ անդին, մենք՝ ընթերցողներս, կ'ապրինք ձեռնարկով, ըստ մեր փորձառութեան եւ գիտելիքի եղանակին։ Բնագիրը ինքը կը դառնայ մեկնաբանելի մեզի համար, որով ձեռնարկը կը շարունակուի տակաւին։

### 2 ԱՐՄԱՆ ԹՕՔԱԹԵԱՆ
### Ռաւինիայի ամառնային օփերա

Ravinia Season Brings Some New Singers in Old Operas,' *Musical America*, 14 July 1923, Vol. XXXVIII, No. 12, p. 16.

9. 'Ravinia Audience Captured by Three Soloists, Orchestra,' *Chicago Daily Tribune*, 3 July 1923, p. 15.

10. 'Second Week of Ravinia Season Brings Some New Singers in Old Operas,' *Musical America*, 14 July 1923, Vol. XXXVIII, No. 12, p. 16.

11. 'Ravinia Opera,' *Chicago Daily Tribune*, 3 July 1923, p. 15. Edward Moore, 'Opera Thrillers Give Ravinia Joy; New Stars Score,' *Chicago Daily Tribune*, 4 July 1923, p. 19. 'Tokatyan Creates Fine Impression at Ravinia,' *Musical Courier*, 12 July 1923, Vol. LXXXVII, No. 2, p. 12. Rene Devries, 'Louis Eckstein Offers Variety to Ravinia Park Audiences,' *Musical Courier*, 12 July 1923, Vol. LXXXVII, No. 2, p. 32. 'Second Week of Ravinia Season Brings Some New Singers in Old Operas,' *Musical America*, 14 July 1923, Vol. XXXVIII, No. 12, p. 16. 'Tokatyan Praised by Chicago Critics,' *Musical Courier*, 2 August 1923, Vol. LXXXVII, No. 5, p. 17. Robert C. Marsh, 'The Annals of the Ravinia Opera: Part 3: 1922-1926,' *Opera Quarterly*, January 1997, Volume 14, issue 1, pp. 84.

12. Edward Moore, 'Opera Thrillers Give Ravinia Joy; New Stars Score,' *Chicago Daily Tribune*, 4 July 1923, p. 19.

13. 'Tokatyan Creates Fine Impression at Ravinia,' *Musical Courier*, 12 July 1923, Vol. LXXXVII, No. 2, p. 12.

14. Rene Devries, 'Louis Eckstein Offers Variety to Ravinia Park Audiences,' *Musical Courier*, 12 July 1923, Vol. LXXXVII, No. 2, p. 32.

15. 'Second Week of Ravinia Season Brings Some New Singers in Old Operas,' *Musical America*, 14 July 1923, Vol. XXXVIII, No. 12, p. 16.

16. Karleton Hackett, 'A. Tokatyan, New Tenor, Makes Hit in Ravinia Opera,' *Chicago Evening Post*. Քաղուածքը կատարած եմ այստեղէն՝ 'Tokatyan Praised by Chicago Critics,' *Musical Courier*, 2 August 1923, Vol. LXXXVII, No. 5, p. 17.

17. Farnsworth Wright, *Chicago Herald*. Քաղուածքը կատարած եմ այստեղէն՝ 'Tokatyan Praised by Chicago Critics,' *Musical Courier*, 2 August 1923, Vol. LXXXVII, No. 5, p. 17.

18. Eugene Stinson, *Chicago Daily Journal*. Քաղուածքը կատարած եմ այստեղէն՝ 'Tokatyan Praised by Chicago Critics,' *Musical Courier*, 2 August 1923, Vol. LXXXVII, No. 5, p. 17.

### 1 ԱԼԻԵՒԻ ԽԵԼԱՑՆՈՐ ՇՐՋՈՒՄԸ (Գ. ՄԱՍ)...

ձեւով՝ զօր սահմանած է իր իշխանութիւնը։

**Բեմ՝ մենատիրութեան եւ ընկերութենական ուժի համար**

COP-երը երթալով կը վերածուին հարթակներու՝ ուր մենատէրեր եւ ընկերութիւններ կը միաւորուին թելադրելու համաշխարհային կլիմայական օրակարգին պայմանները։ Ճնշող վարչակարգերուն մասնակցութիւնը, ըլլայ Ալիեւի Ազրպէյճանը կամ ուրիշ բռնապետներ, մոլորում չէ. խորհրդանշական է թէ ինչպէս COP-երը կը ծառայեն ուժին, փոխանակ մարդոց կամ կլիմային։ Այս գագաթնաժողովները թոյլ կու տան վարչակարգերուն ինքզինքնին ներկայացնել իբրեւ յառաջադէմ եւ շրջակայ միջավայրի նկատմամբ գիտակից, միաժամանակ դաժանութեան ենթարկելով իրենց բնակչութիւնը եւ յափշտակելով անոնց հողերը։ Այս իմաստով, COP գործընթացը չի վիճարկեր համաշխարհային ուժային անհաւասարակշռութիւնները, այլ կ'ամրապնդէ զանոնք։

Խօսուն է նաեւ այս համագումարներու շեշտադրումը «կլիմայական ֆինանս»-ին։ COP-երուն երաշխաւորած միլիառտներու հովանաւորութիւնը յաճախ կ'աւարտի վերադառնալով բազմազգ ընկերութիւններուն եւ ֆինանսական հիմնարկներուն, փոխանակ երթալու կլիմայական ազդեցութիւններու գլխաւոր հարուածը կրող առաջնագիծ համայնքներուն։ Ըլլան անոնք կանանչ պարտատոմսեր, կլիմայական հիմնադրամներ կամ հանրային-սեփական գործընկերութիւններ, հիմնական տրամաբանութիւնը կը մնայ նոյնը՝ հարուստին նպաստող շահութաբեր լուծումներ, մինչ կը մեկուսացուին կլիմայական ճգնաժամին նուազագոյնը նպաստած մարդիկ։

Ալիեւի համար, COP29-ի նշաձողերը բարձր են։ Ուժանիւթային գործարքներու ապահովումը, օտար դրամագլուխի ներգրաւումը եւ իր աշխարհաքաղաքական դիրքի ամրապնդումը, կենսական են պահպանելու իր մենատիրական կառավարումը։ Մաքրագործելով այլախոհութիւնը եւ ստեղծելով կանանչ յառաջդիմութեան բիւրեղացած պատում, Ալիեւ յոյս ունի վաստակիլ Արեւմուտեան ուժերուն եւ միջազգային ներդրողներուն հաւանութիւնը։ Քաղաքացիական հասարակութեան կեղեքումները, լրատուամիջոցներու խափանումը եւ բնապահպանական շարժումներու ճնշումը, բոլորն ալ կը միտին ստեղծել վերահսկուած միջավայր, ուր ոչ մէկ քննադատական ձայն խանգարէ Ազրպէյճանի խնամքով կառուցուած պատկերը իբրեւ կլիմայի առաջնորդ։ Բայց այս արտաքին ճակատը կարելի է միայն այն պատճառով՝ որ COP գործընթացը ինքնին մեղսակից է Ալիեւի նման վարչակարգերուն կարելիութիւն տալու օգտագործել կլիմայական հռետորաբանութիւնը իբրեւ ծածկոյթ իրենց ճնշիչ օրակարգներուն։

Կառավարութիւնը գիտէ որ միջազգային ուշադրութիւնը կը գտնուի Պաքուի վրայ, եւ այլախոհութեան որեւէ նշան կրնայ խաթարել կայունութեան եւ յառաջդիմութեան պատկերը՝ զոր Ալիեւ կը ձգտի ցուցադրել։ Ճնշելով այլախոհութիւնը, վարչակարգը կը փորձէ ստեղծել միասնութեան եւ վերահսկողութեան պատրանք, քօղարկելով ընդյատակը գտնուող խոր հասարակական եւ քաղաքական դժգոհութիւնը։

Բայց այս կեղեքումը միայն COP29-ին ընդառաջ այլախոհութիւնը լռեցնելու մասին չէ. ան մաս կը կազմէ անհանգիստ բնակչութեան վրայ վերահսկողութիւնը պահպանելու աւելի լայն ռազմավարութեան։ Յարատեւ տնտեսական անկայունութիւնը, աճող անհաւասարութիւնը եւ քաղաքական ազատութեան պակասը կը յառաջացնեն դժգոհութիւն։ Արդարեւ, այս դժգոհութիւնները հասցէագրելու փոխարէն, վարչակարգը կը յենուի ծանրակշիռ մարտավարութիւններու վրայ բնակչութիւնը վերահսկողութեան տակ պահելու համար։ Պատումը միշտ նոյնն է՝ «Թշնամիները ամէն տեղ են», ըլլան անոնք հայերը, Արեւմուտքը, ՀԿ-ները կամ աքթիւիսթները։ Յօրինելով այս սպառնալիքները, Ալիեւ կ'արդարացնէ իր բռնաճնշումը, մինչ հասարակութիւնը պահելով մասնատուած եւ վախի մէջ, հող ապահովելով իր միջազգային պիզնէս գործընկերներուն։

*28 Օգոստոս 2024*

(Վերջ 3)

https://www.feministpeacecollective.com/en/post/part-3-acab-all-cops-are-bastards-how-aliyev-sanitizes-dissent-before-cop29

*Անգլերէնէ թարգմ.՝ Ա.*

### 1 ՀԱՆԴԻՍՈՒԹԵԱՄԲ ՆՇՈՒԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՐՈՂՆԵՐԻ ՄԻՈՒԹԵԱՆ 90-ԱՄԵԱԿԸ...

Միութեան 90-ամեայ պատմութեան կարեւոր իրադարձութիւններին նշելով նրա ունեցած մեծ դերը հայ գրականութեան ու մշակոյթի զարգացման ընթացքում։

Փաստաբան Լեւոն Բաղդասարեանը խօսել է Հայաստանի վարչական դատարանի կողմից վերջերս վիճարկուող ՀԳՄ սեփականութեան իրաւունքի խնդրի մասին, յոյս յայտնելով, որ կը յարգուի ՀԳՄ իրաւունքը։ Ելոյթ են ունեցել ԼՂ Գրողների Միութեան նախագահ, այժմ ՀԳՄ քարտուղար Նորեկ Գասպարեանը, գրականագէտ, բանասիրական գիտութիւնների դոկտոր, պրոֆեսոր Աէլիտա Դոլուխանեանը, դրամատուրգ, *Գրական թերթի* խմբագիր Կարինէ Խոդիկեանը, սփիւռքահայ բանաստեղծ Տիգրան Գաբոյեանը, իրանահայ Գրողների Միութեան նախագահ Թորգոմ Յակոբեանը եւ երիտասարդ բանաստեղծ Հայկ Սիրունեանը։

Եղիշէ Չարենցի *Տաղ անձնական* եւ Վահագն Դաւթեանի *Անանձնութիւն* բանաստեղծութիւնների խօսքերով գրուած իր երգերն է կատարել Հայաստանի ժողովրդական արտիստ Ռոբերտ Ամիրխանեանը։

Գուրգէն Մահարու, Համօ Սահեանի, Վահագն Դաւթեանի եւ Վիլեամ Սարոյեանի ստեղծագործութիւններն ասմունքել է Հայաստանի վաստակաւոր արտիստ Սիլվա Իսգըաշեանը։ Կոմիտասի *Հայաստան* ստեղծագործութիւնը Լեւոն Յարութիւնեանի նուագակցութեամբ, կատարել է Արտակ Ստեփանեանը։ Աւետիք Իսահակեանի *Շուշան աղջիկ* ստեղծագործութիւնը՝ Նիկոլ Գալանտէրեանի երաժշտութեամբ եւ Մարգարիտա Սարգսեանի մշակմամբ, կատարել են Աննա Պօղոսեանը եւ Դիանա Յարութիւնեանը։

Պարոյր Սեւակի խօսքերով եւ Ալեքսէյ Հէքիմեանի երաժշտութեամբ *Իմ Հայաստան* ստեղծագործութիւնը կատարել է Արամ Խաչատրեանը։ Նուագակցում էր Մարգարիտա Սարգսեանը։

Հանդիսութեան ընթացքում ելոյթ է ունեցել ՀԳՄ Սուրէն Քոչարեանի Անուան Պոէզիայի եւ Ասմունքի Թատրոնը՝ Սամուէլ Բաղինեանի ղեկավարութեամբ։ Եղիշէ Չարենցի, Սիլվա Կապուտիկեանի, Ջահրատի եւ Ակսել Բակունցի ստեղծագործութիւնները հնչել են Գաբրիէլ Սունդուկեանի Անուան Ազգային Ակադեմիական Թատրոնի դերասաններ Սամուէլ Բաղինեանի, Դաւիթ Գասպարեանի, Արամ Կոստանեանի, Արմէն Քուշկեանի եւ Ռուզաննա Հախնազարեանի ընթերցմամբ։ Հանդիսութիւնը վարում էր Ռուզաննա Հախնազարեանը։

Հանդիսութեանը ներկայ էին ԿԳՄՍ փոխնախարար Դանիէլ Դանիէլեանը, Հայաստանում տարբեր երկրների դեսպանութիւնների ներկայացուցիչներ, գիտութեան եւ մշակոյթի գործիչներ, ՀԳՄ մարզային մասնաճիւղերի պատուիրակութիւնները։

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1980 ՀԻՆԳՇԱԲԹԻ 5 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٨٠ الخميس ٥ ديسمبر ٢٠٢٤


## ԱՆՀՈԳՈՒԹԵԱՆ ՆՈՒՐԲ ԱՐՈՒԵՍՏԸ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՊԱՀՈՎԱՅԻՆ ՄՏԱԾՈՂՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՌԱԶՄԱԿԱՆ ԱՆԿՈՒՄԸ

ՆԵՐՍԷՍ ԿՈՊԱԼԵԱՆ

Շատ գրուեցաւ եւ վիճաբանուեցաւ Հայաստանի երեք տասնամեակներու տկար ապահովային հիմնարկներուն, Ռուսաստանի վրայ գերյենուածութեան, Զինուած Ուժերու յարատեւ թերզարգացումին եւ հայ հասարակութիւնը կլանած կեղծ ապահովութեան հաւաքական զգացողութեան մասին: 1997-էն ի վեր՝ երբ Հայաստան ստորագրեց իր երկկողմանի ապահովութեան համաձայնագիրը Ռուսաստանի հետ, եւ յատկապէս 2002-էն ի վեր՝ երբ միանալով ՀԱՊԿ-ին, Քոչարեանի վարչակարգը Հայաստանը ամբողջարկեց (integrated) Ռուսաստանի ապահովութեան ճարտարապետութեան մէջ, Հայաստան՝ փոխանակ զարգացնելու սեփական ռազմական ուժի կարողութիւնները, նախընտրեց իր ապահովութիւնը փոխանցել Ռուսաստանին: Միաժամանակ, մինչ Ազըրպէյճան կը վարէր համեմատաբար անկախ ապահովային քաղաքականութիւն՝ որ կը բնորոշուէր հսկայ ծախսերով եւ արդիականացումով, Հայաստան ընդունեց անգործունեայ վիճակ, կեղծ ըմբռնումով՝ որ Ռուսաստան պիտի լուծէ իր ապահովային թերին: Ապահովութեան երաշխաւոր ունենալու, կամ գոյաբանական ապահովութեան ճգնաժամի ժամանակ՝ ինքնասպասարկող նոր-կայսերապաշտական խաղացող մը փրկիչի դեր ստանձնելու ենթադրութեան սխալ տրամաբանութիւնը, հայ որոշում կայացնողներուն սորվեցուց շատ յստակ դաս մը՝ անհոգութիւնը չի կայացներ ապահովութեան քաղաքականութիւն:

Թաւշեայ Յեղափոխութենէն ի վեր, եւ յատկապէս 2020-ի Արցախի Պատերազմէն ետք եղան չափազանց անպարկեշտ, մտաւորապէս անհիմն եւ փաստագրական առումով անյարիր առարկութիւններ՝ թէ որոշ անկախ քաղաքականութիւն վարելու Հայաստանի յանդգնութիւնը եւ անկարողութիւնը շարունակելու ստրկանալ Ռուսաստանին, պատճառ հանդիսացան ռազմական պարտութեան: Փոխանակ պարկեշտօրէն ինքնազննելու Հայաստանի սահմանափակումներն ու թերութիւնները, ախտորոշելու Հայաստանի ապահովութեան կարողութիւնները խաթարող լուրջ խնդիրները եւ լուծումներ փնտռելու կամ փորձեր կատարելու մեղմացնել այս յարատեւ թերութիւնները, Հայաստանի բարձրագոյն պաշտօնատարները եւ անոնց քծնող փորձագէտ դասակարգը մոլորեցնելէ, ստելէ եւ  խոտորեցնելէ զատ ուրիշ ոչինչ ըրին: Կամ, աւելի պարզ բառերով, կատարեցին ապահովային մտածողութեան ամենածանր սխալը. անոնք քաղաքականացուցին ապահովութիւնը:

Անպարկեշտ կեցուածքի այս կերպը աւելի որոշակի դարձաւ 2016-ի Քառօրեայ Պատերազմէն ետք, իսկ 2020-ի պատերազմին դարձաւ խօսելու եւ մտածելու հիմնարկային եղանակ: 2015-ին՝ Քառօրեայէն մէկ տարի առաջ, Հայաստանի ռազմական վերնախաւը եւ ապահովութեան հիմնարկը գիտէին որ ոչ միայն անկարող էին յաղթել Ազըրպէյճանի դէմ պատերազմ մը, այլեւ չունէին երկարատեւ պատերազմի մէջ ներգրաւուելու ունակութիւնն ու կարողութիւնը: Այս բնաբանին մէջ, երբ Քոչարեանի վարչակարգը մէկ կողմ կանգնելով նկատեց Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ աճող անհաւասարութիւնը, եւ երբ Սարգսեանի վարչակարգը անտարբեր մնաց՝ մինչ Ազըրպէյճան ռազմական ուժի կարողութեան բոլոր չափանիշներով լիովին եւ վճռականապէս կը տիրապետէր Հայաստանին, ինչո՞ւ Հայաստանի հասարակութեան մշտապէս ստեցին՝ թէ ունին տարածաշրջանի ամենաուժեղ մարտնչող ուժը: Երբ Քառօրեայ Պատերազմին արդիւնքները յստակ էին, ինչո՞ւ Հայաստանի քաղաքական եւ ռազմական ղեկավարութիւնը նսեմացուց եւ նուազագոյնի վերածեց Հայաստանի ռազմական կարողութիւններուն եւ կատարողականութեան յարատեւ եւ նկատելի ձախողութիւնները: Եւ ինչո՞ւ 2020-ի Տաւուշի բախումներէն ետք Հայաստանի քաղաքական եւ ռազմական ղեկավարութիւնը զբաղեցաւ կեղծ ռազմատենչութեամբ եւ յաւակնոտութեամբ, փառաբանելով Հայաստանի ռազմական կարողութիւնները, մինչ նուազեցնելով Ազըրպէյճանի շատ աւելի գերակշիռ կարողութիւնները:

Այս հարցումներուն կրնանք պատասխանել երկու բառով՝ անգիտութիւն եւ անհոգութիւն: Մեծ չափով, յետ-Թաւշեայ կառավարութիւնը կտրականապէս անգէտ էր Հայաստանի ռազմական սահմանափակումներուն եւ թերութիւններուն, մինչդեռ նախա-Թաւշեայ կառավարութիւնները ոչ միայն անգէտ էին, այլեւ անհոգ: Քաղաքական ղեկավարութեան ընտրովի անտեղեակութեան սատարեց ռազմական վերնախաւը բնորոշող անհոգութեան հիմնական մշակոյթը. Հայաստանի ապահովութեան մեքենան շուրջ երկու տասնամեակ մէկ կողմ քաշուեցաւ՝ երբ Ազըրպէյճան կը դառնար տարածաշրջանի ռազմական ուժ, մինչ Հայաստան կը յետադիմէր՝ դառնալով ամբողջ յետխորհրդային տարածութեան ամենատկար ռազմական տէրութիւններէն մէկը: Ազըրպէյճանի կողմէ ուժի հաւասարակշռութեան մեթոտական ճեղքումին նկատմամբ համատարած անտարբերութիւնը, ինչպէս նաեւ անտեղի յոյսը՝ որ ուժային աճող անհաւասարակշռութիւնը կը լուծուի երրորդ կողմի արտաքին արգելումի միջոցով, զարմանալիօրէն համալրուեցաւ Հայաստանի ռազմական կարողութիւններու բարեփոխումի եւ նորացումի համակարգային մերժումով՝ համապատասխանելու Ազըրպէյճանի չափազանց արագ աճին:

Ամենահիմնական մակարդակով, քանակային շօշափելիութեան վերածելով եւ ցուցադրելով՝ թէ ինչպէս Հայաստանի ղեկավարութիւնը, կամաւոր թէ ակամայ, տարուեցաւ անխոհեմ անհոգութեամբ, կը գործածուին երկու ոչ-բարդ պատճառահետեւանքային փոփոխականներ (causal variables)՝ ռազմական ծախսերը եւ ռազմական հզօրութեան դասակարգումի ցուցիչը: Թէեւ հետազօտութիւններու համար ուժի տարբերութիւնը չափելու ուրիշ պատճառահետեւանքային փոփոխականներու օգտագործումը կրնայ աւելի ամրապնդել առարկութիւնը, խնայողութեան համար ներկայ տեղեկագրութիւնը պիտի չբովանդակէ ՀՆԱ-ի տուեալները, մէկ շունչի հաշուով ծախսերը, ուժի կեդրոնացումի չափագրութիւնները, բնակչութեան քանակը, ռազմական քանակը եւ աղբիւրներու կարողութիւնը: Առ ի տեղեկութիւն ընթերցողին, այս բոլոր փոփոխականները կը կիրարկուին ուժի կարողութիւնները չափագրելու օրինաչափ չափումներուն մէջ, որոնք կը պարփակեն Ազգային Կարողութեան Խառն Ցուցիչը (Composite Index of National Capability-CINC) եւ Համապարփակ Ազգային Հզօրութեան Բանաձեւը (Comprehensive National Power Formula): Ելլելով ներկայ տեղեկագրութեան նպատակէն, եւ նկատի ունենալով որ այս բոլոր փոփոխականները աւելի կ’ամրապնդեն այստեղ հասցէագրուած երկու փոփոխականներուն դիտարկումները, պիտի չգործածուին մնացած փոփոխականները:

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆՀՈԳՈՒԹԻՒՆԸ ՈՒԺԻ ՀԱՒԱՍԱՐԱԿՇՌՈՒԹԵԱՆ ՓՈՓՈԽՈՒԹԵԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

2007-ին Ազըրպէյճան սկսաւ նախաձեռնել իր ↳ 3

ԳԱՀԻՐԷ

## ԲԱՐԻ ԳԱԼՍՏԵԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ



Ձախէն աջ՝ Էտի Գասապեան, Սիմոն Չամքէրթէնեան, Մարտիրոս Պալաեան, Ն. Վ. Արմէն Սարգսեան, Հերմինէ Վարժապետեան եւ Գէորգ Գազանճեան:

Կիրակի, Դեկտեմբեր 1-ին, Եգիպտոսի մէջ Հայաստանի նորանշանակ դեսպան Ն. Վ. Արմէն Սարգսեանի բարի գալուստի մաղթանքի այցելութիւն կատարեցին Ս. Դ. Հ. Կ. Գահիրէի Մասնաճիւղի Հայկական Ընթերցասրահի Վարչութեան եւ *Ջահակիր*ի ներկայացուցիչները:

Բարի գալուստի ջերմ խօսքերէ ետք տեղի ունեցաւ մտերիմ զրոյց, որուն ընթացքին արծարծուեցան Հայաստանի եւ եգիպտահայութեան մտահոգող զանազան հարցեր:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՎՐԴՈՎՄՈՒՆՔ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ՝ ՀԱՊԿ-Ի ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՓՈՒԹԻՆԻ ԽՆԴՐԱՅԱՐՈՅՑ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

ԱՐՇԱԼՈՅՍ ԲԱՐՍԵՂԵԱՆ

Ռուսաստանի նախագահ Վլատիմիր Փութինի յայտարարութիւնը՝ թէ Հայաստանի դէմ արտաքին յարձակում չէ եղած, հետեւաբար իրական պատճառ չկար գործադրելու Հաւաքական Անվտանգութեան Պայմանագիրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ) պաշտպանութեան կէտը, վրդովմունք յառաջացուց Հայաստանի մէջ, ուր շատերը կ’առարկեն՝ թէ պնդումը կեղծ է եւ կը ծառայէ պղտորելու Ազըրպէյճանի յարձակումը Հայաստանի վրայ:

Նոյեմբեր 28-ին, Ղազախստանի մէջ կայացած ՀԱՊԿ-ի գագաթնաժողովին, որուն չմասնակցեցաւ Հայաստան, պատասխանելով հարցումի մը, Փութին յայտարարեց՝ որ ՀԱՊԿ ոչ մէկ կապ ունի Լեռնային Ղարաբաղի զարգացումներուն հետ, եւ պնդեց՝ որ «Հայաստանի դէմ յարձակում չէ եղած»:

«ՀԱՊԿ կոչուած է պաշտպանել անդամ երկիրները արտաքին յարձակումէ: Լեռնային Ղարաբաղի հետ կապուած իրադարձութիւնները ունին իրենց սեփական առանձնայատկութիւնները, որովհետեւ Հայաստան չճանաչեց Ղարաբաղը իբրեւ անկախ պետութիւն եւ անկասկած չպարփակեց Ղարաբաղը իր պետական պարագիծին մէջ: Ասիկա կը նշանակէ՝ որ իրական տեսանկիւնէն, Ղարաբաղի մէջ պատահած ոչ մէկ բան ուղղակի կապ ունի Հայաստանի հետ», ըսաւ Փութին:

Փութին նշեց՝ որ Հայաստանի ղեկավարութիւնը կը պնդէր, թէ ՀԱՊԿ պետք է կռուի ↳ 4

ԳԱՀԻՐԷ

# ԺԱՆ ՊՕՂՈՍԵԱՆ ԿԸ ՑՈՒՑԱԴՐԷ ԲՈՒՐԳԵՐՈՒՆ ԱՌՋԵՒ

Ցետնախորք ունենալով Կիզայի Բուրգերը, ամէն տարի կը կայանայ Forever is Now (արաբերէն՝ Ալ-Ապատ հոււա ալ-ան) ցուցահանդէսը, համադրուած CulturVator-ի եւ Art D'Egypte-ի կողմէ, եւ հովանաւորութեամբ Եգիպտոսի Մշակոյթի Նախարարութեան, ԻՒՆԵՍՔՕ-ի եւ այլոց:

Ցուցահանդէսին նպատակն է աղօտել հինի եւ նորի միջեւ եղած գիծերը եւ հրաւիրել այցելուներուն բացայայտել արուեստի գործեր որոնք կը հատեն հին պատմութիւնն ու արդի ստեղծարարութիւնը:

Այս տարուայ ցուցահանդէսը չորրորդն էր եւ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 26 – Նոյեմբեր 18-ին: Մասնակցեցան 12 միջազգային արուեստագէտներ՝ Chris Levine (Մեծն Բրիտանիա), Federica Di Carlo (Իտալիա), Ik-Joong Kang (Հարաւային Քորէա), Jake Michael Singer (Հարաւային Ափրիկէ), Ժան Պօղոսեան (Պելճիքա/Լիբանան), Jean-Marie Appriou (Ֆրանսա), Խալէտ Զաքի (Եգիպտոս), Luca Boffi (Իտալիա), Մարի Խուրի (Քանատա/Լիբանան), Shilo Shiv Suleman (Հնդկաստան), Nassia Inglessis (Յունաստան) եւ Xavier Mascaro (Սպանիա):

Ժան Պօղոսեանի տեղադրութիւնն էր՝ *Անապատի ալիքներ* (Desert Waves) (եղանակային պողպատ - Corten steel, 15x15x4 մեթր): Գործին համագործակցած էր Gilles Libert:

*Անապատի ալիքներ* քանդակը կը մարմնաւորէ պեղումի նիւթը, միաժամանակ ճարտարապետական եւ խորհրդանշական երկխօսութիւն հաստատելով շրջապատող բնավայրին հետ: Մեծ եղանակային պողպատի թիթեղները դուրս կու գան անապատէն օրկանական յօրինուածքով, յառաջացնելով բծախնդիր հետազօտութենէ եւք իրագործուած հնագիտական յայտնագործութեան մը պատկերը: Մետաղէ թիթեղներուն այրած եզերքները կը վերարձագանգեն Պօղոսեանի այրած գիրքերը՝ որոնք ցուցադրուած են Աղեքսանդրիոյ Գրադարանին մէջ, յառաջացնելով խորհրդանշական կապ:

Քանդակը կը բարձրանայ հողակոյտի ընդմէջէն՝ բուրգանման կառուցուածքով, որ հզօր տեսողական կապ կը ստեղծէ Բուրգերուն հետ: Հողակոյտին եւ պողպատի արդիւնաբերական նիւթականութեան միջեւ եղած փոխազդեցութիւնը կը ստեղծէ տոկունութեան եւ տեւականութեան պատումը, դիտուած ժամանակակից աչքով: Ասիկա կ'արտացոլէ այն հանգամանքը՝ թէ ինչպէս Բուրգերը իրենք կը ներդաշնակուին անապատային բնավայրին հետ:

Ընդհանրապէս, Պօղոսեան իբրեւ միջոց կը սիրէ գործածել կրակը՝ որուն կը տիրապետէ բարձր հմտութեամբ, կտաւներն ու քանդակները փոխակերպելով վերահսկուած այրուցքներով: Իր գործը կը խորհրդանշէ արարչութիւնն ու կործանումը, արձագանգելով առաձգականութեան եւ վերածնունդի նիւթերը Բուրգերուն մէջ: Այս այրած հիւսուածքներուն միջոցով Պօղոսեան կ'արտայայտէ արուեստի թէ քաղաքակրթութեան յարատեւութիւնն ու խոցելիութիւնը:



Ժան Պօղոսեանի քանդակը՝ *Անապատի ալիքներ*, ցուցադրուած Բուրգերուն առջեւ

Արաբական արուեստի նուիրուած *Selections Magazine* առցանց հանդէսին հետ ունեցած հարցազրոյցին (31 Հոկտեմբեր), ան կը բացատրէ. «Երբ պատկերացուցի այս գործը, ուշադրութեամբ մտածեցի թէ ինչպէս ան կրնայ յարմարիլ Բուրգերու վեհաշուք ներկայութեան: Երկխօսութիւն կայ գործին եւ այդ հին կառուցուածքներուն միջեւ, յատկապէս երբ քանդակը կը լուսաւորուի գիշերով: Ցետնախորքին կը տեսնէք Բուրգերէն եկող լոյսը, իսկ առաջնամասին՝ *Անապատի ալիքները*, եւ կարծեմ կը ստեղծուի ներդաշնակ փոխներթափանցում»:

Ապա կը խօսի կրակի հանդէպ ունեցած կիրքի մասին.

«Յարաբերութիւնս կրակի հետ սկսաւ քիչ մը պատահական: Օր մը փայտով կը տաքցնէի արուեստանոցիս ծխնելոյզը եւ մտածեցի՝ ի՞նչ կը պատահի եթէ այրիչ գործիքը գործածեմ կտաւի վրայի դեղին ներկին վրայ:

«Փորձեցի, եւ տեսայ որ դեղինը փոխուեցաւ մոխրագոյնի, ապա սրճագոյնի, ապա սեւի, նոյնիսկ այրելով ծակեր բացուեցան կտաւին վրայ: Հիացայ կատարուածով՝ ըլլայ մակերեսին վրայ թէ տակը: Ասիկա կրակի հետ իմ ուղեւորութեանս սկիզբն էր եւ աստիճանաբար դարձաւ իմ առաջնային միջոցս: 2010-էն ի վեր մեծ մասամբ գործածեցի կրակը, թէեւ երբեմն կը գործածեմ նկարչութիւն կամ քոլաժ: Ես գլխաւորապէս փորձառական արուեստագէտ եմ, անընդհատ հետազօտելով նոր թեքնիքներ եւ նիւթեր արուեստս յառաջ մղելու համար»:

**Համադրեց՝ Հ. Ա.**

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՄԵՆՔ ԱՍՈՒՄ ԵՆՔ ՀԱՊԿ, ՀԱՍԿԱՆՈՒՄ ԵՆՔ ՌՈՒՍԱՍՏԱՆ. ՊՈՒՏԻՆԸ «ՍՊԱՆԵՑ» ՀԱՅԱՍՏԱՆԻ ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆԸ

**ՎԱՀՐԱՄ ԱԹԱՆԵՍԵԱՆ**

Լեռնային Ղարաբաղում «պատերազմի հետ Հայաստանն իրաւական առնչութիւն չի ունեցել», – Աստանայում ՀԱՊԿ գագաթաժողովից յետոյ լրագրողներին ասել է Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինը: Նա այդ մեկնաբանութիւնն արել է, որպէսզի հիմնաւորի, որ ՀԱՊԿ-ը չէր կարող «Ադրբէջանի միջազգայնօրէն ճանաչուած տարածքում սկսուած ռազմական գործողութիւնները գնահատել որպէս Հայաստանի դէմ ագրեսիա եւ գործի դնել պայմանագրով նախատեսուած մեխանիզմները»:

Հայաստանի քաղաքական ուժերի եւ փորձագիտական հանրութեան արձագանքը հիմնականում այն թէզի վրայ է կառուցուած, որ Երեւանը ՀԱՊԿ-ից ռազմական օգնութիւն չի խնդրել, դժգոհութիւնը կապուած է 2021-22 թուականներին Ադրբէջանի կողմից Հայաստանի սուվերէն տարածքի դէմ ագրեսիային, երբ ՀԱՊԿ-ը յայտարարեց, որ հայ-ադրբէջանական սահմանը դելիմիտացուած չէ, ուստի հնարաւոր չէ յստակ տեղորոշել արդեօք մարտական գործողութիւնները կազմակերպութեան պատասխանատուութեան զօտո՞ւմ են ընթանում, թէ՞ ոչ:

Այս մեկնաբանութիւնն, իհարկէ, արդարացի է, բայց Ռուսաստանի նախագահը քաղաքական դիլետանտ չէ եւ գերազանց գիտի, թէ ինչ, երբ եւ ինչպէս պէտք է ասել: Վլադիմիր Պուտինի համար, պէտք է համոզուած լինել, հասկանալի է, որ յետխորհրդային տարածքի բոլոր երկրներում ու ամբողջ աշխարհում, երբ ասում են ՀԱՊԿ, հասկանում են Ռուսաստան, Հայաստանում՝ առաւել եւս:

Եւ, երբ նա ասում է, որ ԼՂ-ում պատերազմի հետ Հայաստանն իրաւական առնչութիւն չի ունեցել, ապա շատ մտաչելի ձեւով հասկացնում է, որ ԼՂՀ դէմ Ադրբէջանի ագրեսիայի դէպքում Ռուսաստանը Հայաստանին, ԼՂ Պաշտպանութեան Բանակին եւ հայ բնակչութեանը ռազմա-քաղաքական աջակցութիւն ցուցաբերելու իրաւապայմանագրային պարտաւորութիւն չի ունեցել:

Քաղաքականութիւնը «սառը խորտիկ է»: Եւ Ռուսաստանի նախագահը Ղազախստանի մայրաքաղաքից փաստացի ուղերձ է յղել ոչ թէ Հայաստանի իշխանութեանը, այլ ինստիտուցիոնալ ընդդիմութեանը: Պուտինի յայտարարութիւնը «ցտեսութիւն» չէ, այլ՝ «մնաք ոչ բարով»: Քառասունչորսօրեայ պատերազմին յաջորդած չորս տարիներին Հայաստանի ինստիտուցիոնալ եւ արտախորհրդարանական ընդդիմութիւնը, բոլոր «շարժումները», մի նարատի են զենքերցել՝ Նիկոլ Փաշինեանը, զաւով իշխանութեան, հետեւողականօրէն փչացրել է ռազմավարական դաշնակից Ռուսաստանի հետ յարաբերութիւնները, խարխլել անվտանգային համակարգը, Ադրբէջանն օգտագործել է առիթը, ԼՂ դէմ պատերազմ սկսել, իսկ երբ Վլադիմիր Պուտինը փորձել է այն Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի համար հնարաւորինս նպաստաւոր պայմաններով կանգնեցնել՝ «Նիկոլը մերժել է եւ ստորագրել կապիտուլյացիայի փաստաթուղթը»:

Վլադիմիր Պուտինը մի նախադասութեամբ զրոյացրեց այդ քարոզչութիւնը եւ բացայայտեց, որ Ռուսաստանը Լեռնային Ղարաբաղը ոչ միայն անկախ կամ որպէս Հայաստանի մաս, այլեւ հայկական եւ իբր ինքնորոշման սուբիեկտ պահպանելու պարտաւորութիւն չի ունեցել: Հակառակ դէպքում Մոսկուայի համար որեւէ նշանակութիւն չպիտի ունենար, թէ Երեւանում ինչ իշխանութիւն է: Նա Լեռնային Ղարաբաղը կը պահէր յօգուտ իր աշխարհաքաղաքական շահի, ի հեճուկս Նիկոլ Փաշինեանի եւ բոլոր «սորոսականների»:

➷ 4

1 ➷

## ՎՐԴՈՎՄՈՒՆՔ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ՝ ՀԱՊԿ-Ի ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՓՈՒԹԻՆԻ ՔՆՆԱՐԿԵԼԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

Լեռնային Ղարաբաղի տարածքին վրայ, զոր որակեց «տարօրինակ»:

Յայտարարութիւնը վրդովմունք յառաջացուց Հայաստանի մէջ, իսկ տեղական փաստերու ստուգիչները անմիջապէս մերկացուցին պնդումները:

*Fip.am* գրեց որ 2020 թուականի Լեռնային Ղարաբաղի պատերազմի ընթացքին Հայաստան օգնութիւն չէ խնդրած ՀԱՊԿ-էն, բայց փոխարէնը ռազմական օգնութիւն խնդրած է 2022 Սեպտեմբերի Ազրպէյճանի յարձակումին ժամանակ Հայաստանի վրայ:

Արտաքին քաղաքականութեան եւ ապահովութեան վերլուծող Սօսի Թաթիկեան կոչ ըրաւ Հայաստանի կառավարութեան «յստակօրէն բացայայտել Փութինի բոլորովին ոչ-անաչառ յայտարարութիւնները, ինչպէս նաեւ օրինականապէս ձեւակերպել եւ վերջնականացնել ելքը ՀԱՊԿ-էն»:

Թաթիկեան ըսաւ՝ որ Փութինի «կեղծ եւ նենգափոխուած յայտարարութիւնը» կը միտի հերքել Ազրպէյճանի կողմէ Հայաստանի տարածքային ամբողջականութեան խախտումը յաջորդական ռազմական յարձակումներու միջոցով, որ յանգեցուց Հայաստանի «մօտ 250 քառակուսի քիլոմեթր տարածութեան բռնագրաւումին»:

Իշխող իշխանութեան նախկին պատգամաւոր եւ տեղական իրաւունքներու հասարակական կազմակերպութեան հիմնադիր Գայեանէ Աբրահամեան գրեց՝ որ Փութինի յայտարարութիւնը «յաջորդական հաստատումն է եւ կանաչ լոյսը իր դաշնակից Ալիեւին, որ մենք Ջերմուկը եւ այլ գրաւեալ տարածքներ չենք համարեր Հայաստանի ինքնիշխան տարածքի մաս, այնպէս որ կրնաք հանգիստ կերպով լուծել միջանցքի խնդիրը»:

Աբրահամեան նկատի ունէր այսպէս կոչուած հարաւային Հայաստանի Զանգեզուրի Միջանցքը, որ տեսականօրէն պէտք էր արեւմտեան Ազրպէյճանը կապէր Նախիջեւանին: 2021-ին Ալիեւ սպառնաց ուժ կիրառել «միջանցք» ստեղծելու համար:

Հայաստան Փետրուարին «սառեցուց» իր անդամակցութիւնը ՀԱՊԿ-ին, պատճառաբանելով դաշինքին հրաժարումը օգնելու Հայաստանին՝ ի դիմաց 2021-ի եւ 2022-ի ազրպէյճանական յարձակումներուն:

Ըստ Փութինի՝ Հայաստանի ներկայ վերաբերմունքը ՀԱՊԿ-ին «մեծ հաւանականութեամբ» թելադրուած է ներքին քաղաքական գործընթացներով, որոնք բոլորն ալ «կապուած են Ղարաբաղի ճգնաժամի հետեւանքներուն հետ»:

Ռուս նախագահը ըսաւ նաեւ՝ որ Հայաստան չէ յայտարարած դուրս գալ ՀԱՊԿ-էն, առարկելով՝ որ «ան կ'աջակցի բոլոր փաստաթուղթերուն, որոնք ընդունուեցան մեր այսօրուայ հանդիպումին եւ բանակցութիւններուն ընթացքին»:

«Ասիկա կը հրաւիրէ մեր ուշադրութիւնը այս կէտին վրայ: Եթէ այդպէս է, ուրեմն կարելիութիւն կայ որ Հայաստան վերադառնայ լիարժէք աշխատանքի այս կազմակերպութեան շրջանակներուն մէջ», ըսաւ Փութին:

***OC Media***

29 Նոյեմբեր 2024

https://oc-media.org/outrage-in-armenia-over-putins-controversial-statement-on-csto/

Անգլերէնէ թարգմ.՝ Ջ.

## ԱՆՀՈԳՈՒԹԵԱՆ ՆՈՒՐԲ ԱՐՈՒԵՍՏԸ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՊԱՀՈՎԱՅԻՆ ՄՏԱԾՈՂՈՒԹԻՒՆԸ ԵՒ...

1 ↳

ընդարձակ արդիականացումի ծրագիրը: Յաջորդ տարի իր ռազմական ծախքը դարձաւ Հայաստանի եռապատիկը, եւ մինչ յաջորդ տասնամեակին Հայաստանի ծախքը մնաց համեմատաբար կայուն, 2011-2016-ին Ազրպէյճան եռապատկեց զայն: Գաղափարական առումով, մինչ Ազրպէյճան ակներեւօրէն աւելցուց իր ծախքը եւ սկսաւ ձեռք բերել յառաջադէմ սպառազինութիւն եւ արդիականացնել զինարանը, Հայաստանի պաշտպանական ռազմավարութիւնը մնաց անշարժ. Հայաստան ձեռնպահ մնաց որեւէ էական նախաձեռնութիւն ստանձնելէ մեղմացնելու համար Ազրպէյճանի տեսանելի ձգտումը գերիշխանութեան Հայաստանի նկատմամբ: Համեմատական առումով, այս հինգ տարուայ ընթացքին, ռազմական ոլորտին մէջ Ազրպէյճան տասն անգամ աւելի կը ծախսէր քան Հայաստանը, իսկ իրենց ամբողջութեան մէջ թիւերը առաւել եւս կը ցուցադրեն արտասովոր անհաւասարութիւնը: 2008-2009-ին, ընդհանուր մակարդակով, Ազրպէյճան պաշտպանութեան համար ծախսեց 29,2 միլիառ տոլլար, մինչ նոյն ժամանակաշրջանին Հայաստան ծախսեց ընդամէնը 5,9 միլիառ:

Այս անհամաչափութեան կուտակային ազդեցութիւնը կարելի չէ թերագնահատել: Նոյնիսկ ծախքի ամենացած աստիճանին 2016-ին, Ազրպէյճան ծախսեց Հայաստանէն երեք անգամ աւելի: 2010-2016-ին, երբ խաթարուեցաւ երկու երկիրներուն միջեւ ուժի յարաբերութիւնը, Ազրպէյճանի կուտակային ծախքը հասաւ 18,9 միլիառ տոլլարի: Ծախսումի եւ զէնքերու հայթայթումի այս հսկայական աճի պայմաններուն մէջ, 2010-2016-ի Հայաստանի կուտակային ծախքը կազմեց ընդամէնը 2,95 միլիառ տոլլար: Աւելի պարզ խօսելով, ինչ որ Հայաստան հաւաքականօրէն ծախսեց այս վեց տարուայ ընթացքին, Ազրպէյճան ծախսեց միայն մէկ տարուայ մէջ: Հիմնուելով այս թիւերուն վրայ եւ անոնց կուտակային ազդեցութեան 2020-ի պատերազմին, իր ռազմական մեքենայի զարգացումին նախաձեռնումը սկսելէն մինչեւ պատերազմին սկիզբը, Ազրպէյճանի ռազմական ծախքը շուրջ 23 միլիառ տոլլարով գեղազանցեց Հայաստանին: Այս իմաստով, ծախսումի անհաւասարութիւնը, ընդհանուր առմամբ, Ազրպէյճանին պարգեւեց բացառիկ մրցակցային առաւելութիւն, զոր Հայաստան ոչ միայն անտեսած էր, այլ նոյնիսկ ձախողած զարգացնել զայն հասցէագրելու կայուն գործողութիւն:

Ձեռքի տակ եղած տրամաբանութիւնը (discourse) կը յայտնէ երկու կարեւոր հաւաստիքներ: Նախ, անիմաստ է այն առարկութիւնը՝ որ Հայաստան կրնար հաւասարիլ Ազրպէյճանի ծախսումին, եւ առ այդ հասկնալով՝ որ երկու երկիրներուն տնտեսական աղբիւրներն ու ֆինանսական կարողութիւնները կը դառնային անհաւասարակշիռ, այս հարցը հասցէագրող ի՞նչ քայլեր կատարեցին Հայաստանի յաջորդական կառավարութիւնները: Երկրորդ, դիտարկելով այն փաստը՝ որ Ազրպէյճան 2010-ին եռապատկեց իր ծախքը եւ յաջորդական տարիներուն պահպանեց ծախսումի բարձր մակարդակը, ի՞նչ այլընտրանքային մեքանիզմներ, քաղաքականութեան փոփոխութիւններ, կամ զէնքերու հայթայթումը աւելցնելու փորձեր ձեռնարկեց Հայաստան, որպէսզի կարողանայ, եթէ ոչ հաւասարիլ, գոնէ առնուազն մեղմացնել Ազրպէյճանի ջանքերը ճեղքելու ուժի բաշխումը տարածաշրջանին մէջ: Այս իրավիճակը՝ որուն մէջ Հայաստան յայտնուեցաւ, եզակի չէ, եւ Հայաստանը նոր պատմութեան առաջին պետութիւնը չէ որ բախուեցաւ աւելի ֆինանսական աղբիւրներ կամ ծախսումի կարողութիւն ունեցող հակառակորդի մը: Այս իմաստով, իբրեւ փոքր երկիր որ կը դիմակայէ աւելի ընդարձակ եւ հարուստ թշնամի, ի՞նչ քայլերու դիմեց Հայաստանը պահպանելու իր ուժային դիրքը՝ Ազրպէյճանի աճող կարողութիւններուն յարաբերութեամբ: Այս բոլոր հարցումներուն պատասխանը, դժբախտաբար, պարզ է. ոչ շատ: Եւ երբ դիմակայուեցաւ այս շատ յստակ փորձական փաստերով, Հայաստանի նախա-Թաւշեայ ղեկավարութիւնը տուաւ միակ պատասխան մը. շատ բան չըրին քանի որ յոյսը դրին Ռուսաստանի վրայ: Այսպէս, վեց տարուայ ընթացքին, Ազրպէյճան դարձաւ տարածաշրջանի ամենաուժեղ ռազմական ուժը, զոր ակնյայտօրէն ցուցադրեց 2016-ին: Միւս կողմէ, Հայաստան պարզապէս լռելեայն համաձայնեցաւ այս զարգացումին իբրեւ տեսակ մը նախընթաց եզրակացութիւն, ապահովութեան իբրեւ սկզբունք ընտրելով ռուսական վասալութիւնը:

### ՈՒԺԻ ԱՆՀԱՄԱՉԱՓՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ

2007-2013-ին, Հայաստանի եւ Ազրպէյճանի զուտ կոշտ ուժի կարողութիւնները մնացին համեմատաբար ↳ 4

**ԳԱՀԻՐԷ**

## ՁԵՒԱՒՈՐԵԼ ԺԱՄԱՆԱԿԸ... ԺԱՄԱՆԱԿԷՆ ԱՆԴԻՆ

ՇԱՀԻՆԱԶ ՂԷՅԹ

*Խելացի ժամացոյցներու (montres intelligentes) դարաշրջանին, կրքոտ ժամագործները կը շարունակեն եռանդով զբաղիլ իրենց մասնագիտութեամբ՝ կենդանի պահելու ուրիշ ժամանակներու պատի եւ ձեռքի հին ժամացոյցները: Տեղեկագրութիւն Ալ-Աթապա թաղամասի ժամագործներու անցքին մէջ:*

Գահիրէի կարեւոր ժողովրդական թաղամասի նրբանցքի մը խորքը՝ Աթապա հրապարակին վրայ, կը գտնուի ժամագործներու միջանցքը: Իր հին խանութներով եւ շրջիկ վաճառականներու աղաղակով, տասնամեակներ շարունակ այս միջանցքը պատսպարած է խորհրդանշական խանութ մը՝ որ յաճախորդները փոխադրած է իրական դիւցազնավէպի անցաւոր աշխարհը, ճամբորդութիւն մը դէպի Գահիրէի հարուստ քոզմոբոլիթ պատմութեան ժամանակաշրջանը: «Ֆրանսիս Փափազեան» ազդանշող նշանակի տակէն մուտք գործելով խանութ, այցելուները կը յայտնաբերեն հին ժամացոյցներով զեղուն թանգարանի մը հմայքը՝ գրպանի ժամացոյցներ, ուրիշներ հինցած ապարանջաններով, ճօճանակաւոր, կամ զարթուցիչ, 1920-ականներու դեղնած ազդեր, այլեւ այս խանութին արժանիքները դրուատող ժամացոյցներ՝ որոնք կը յիշեցնեն սեւ-ճերմակ ֆիլմերու դարաշրջանը: Իրականութեան մէջ, իր հիմնադրութենէն ի վեր 120 տարի առաջ, այս խանութը մնաց անփոփոխ՝ նոյն յարդարանքով, ուր կը շարունակեն դառնալ ժամացոյցներուն սլաքները, լուռ վկաներ հանդիսանալով եգիպտական հասարակութեան զարգացումին:

Աւելի քան մէկ դար հնութիւն ունեցող վաճառասեղաններուն տակ գտնուող քանի մը տասնեակ փայտէ դարանները կը պարունակեն բոլոր կարելի տեսակներու պահեստամասեր: Զանգակի նուագով կամ կկուով հին պատի ժամացոյցներ, ոմանք ԺԹ. դարէն մնացած, կը գրաւեն տրամադրելի պատին իւրաքանչիւր քառակուսի մեթրը: Անոնք կը պատկանին յաճախորդներու՝ որոնք նորոգութեան համար վստահեցան իրենց, կամ պր. Աշոտ Սարգիս Փափազեանին, անձամբ հաւաքագրող մը՝ որ կը մերժէ վաճառել զանոնք:

**Յիշողութեան պահապան**

Իր փոքրիկ աշխատասենեակին մէջ՝ արխիւներու, գիրքերու եւ ամէն տեսակ ժամացոյցներու խառնարան մը, այս 67 տարեկան հայ ժամագործը պահապանն է իր ժառանգած ընտանեկան ձեռնարկութեան յիշողութեան: «Իւրաքանչիւր ժամացոյց իր պատմութիւնն ունի», նշեց Աշոտ, վերջին խանդավառեալներէն մէկը՝ որ գիտէ ժամացոյցներու մեքանիզմներուն գաղտնիքները: Իրեն համար, այս հին ժամացոյցները՝ իրենց նրբօրէն փորագրուած փայտէ շրջանակներով, շատ աւելի են քան ժամանակը չափող պարզ գործիքներ: Անոնք արուեստի պատմական գործեր են, թանկարժէք հաւաքածոյի նմոյշներ, ինչպէս նաեւ գոհարներ՝ որոնք անժամանակ նրբագեղութեան հպումներ կ'աւելցնեն որեւէ կահաւորումի: «Կեանք կայ հին ժամանակներու ժամացոյցի մեքանիզմին մէջ: Այդ ժամանակուայ յղացողները ճարտարագէտներ չէին այլ հնարագէտներ», կ'ըսէ Աշոտ, որ կատարելապէս գիտէ իր բոլոր ժամացոյցները:

Ահաւասիկ քառասուն տարի է որ ան մանրակրկիտ կը քննէ մեքանիզմները, կը վերլուծէ զանոնք, կը վերանորոգէ, կ'ուղղէ, կը ճշդէ, ընդունելով ժամանակի ցուցիչներուն բոլոր տեսակները: Ան նոյնքան կ'աշխատի հին գրպանի ժամացոյցի մը մանր պտուտակներուն վրայ որքան քառորդ դար շարունակ խնամած




Ֆրանսիս Փափազեան ժամագործի խանութը

մեծ ժամացոյցի մը հսկայ սլաքներուն: «Այս մէկը պատրաստուած է կռած երկաթէ», կը ներկայացնէ պատմութեան սիրահարը՝ տուփէն հանելով արթեֆաքթ մը: Ան ընդամէնը սլաք մը



Ֆրանսիս Փափազեան ժամագործի խանութի ներքնամասը, ուր կանգնած է Աշոտ Փափազեան

ունի՝ որ ցոյց կու տայ ժամանակը: «Մենք երբեմն կը ստանանք 100 կամ 150 տարի առաջ պատրաստուած շատ հին ժամացոյցներ: Մեծ մասամբ կը կարողանանք գտնել փոխնորդ մասերը, քանի որ ժամանակի ընթացքին բաւական հաւաքած եմ: Երբեմն չեմ կրնար ամէն բան գտնել: Այս պարագաներուն վաճառողներէն անջատ մասեր կը գնեմ: Եթէ պէտք եղածը չգտնեմ, զայն կը պատրաստեմ ձուլարանի մէջ», կը բացատրէ ան խոշարացոյցը աչքին:

**Բացառիկ հմտութեամբ ժամագործ մը**

«Տեսէ՛ք, այս հին ժամացոյցները մեծ մասամբ ընտանեկան գանձեր են: Հազուադէպ չէ՝ որ ժամացոյցը վերանորոգելէս ետք ստանամ յաճախորդին գնահատականը: Վերջերս մէկը ըսաւ՝ դուք վերակենդանացուցիք տունը», շարունակեց Փափազեան, հպարտանալով՝ որ իր խանութը կը հանդիսանայ Գահիրէի հազուագիւտ վայրերէն մէկը, ուր կը վերանորոգուին հին կազմուածքները: Ըստ իրեն, հռչակաւոր անձեր կը տողանցէին խանութը, ներառեալ եգիպտական սինեմայի ոսկի շրջանի դերասաններ՝ Եուսէֆ Ուահպի, Ֆուատ Ալ-Մոհանտէս կամ Ապտէլ Մոնէյմ Իպրահիմ: Կը պատմէ նաեւ, որ Ֆարուք թագաւորի (Եգիպտոսի վերջին թագաւորը) ընտանիքը հօրը կանչած է արքայական պալատ՝ ժամացոյցներ ընտրելու համար: «1952-ի յեղափոխութենէն ետք կու գային սպաները, որոնք հօրս ընկերներն էին: Անոնք կը պաշտէին ժամացոյցները: Այսօր, յաճախորդները թերեւս չըլլան նոյնքան հեղինակաւոր, բայց շատ են եւ հաւատարիմ: Եւ անոնցմէ շատերը դարձան ընկերներ: Անցողիկ յաճախորդներ չունինք այստեղ», կը ճշդէ ան, թօթափելով իր յուշերը: Ան մերժած է խանութը գնելու շահաբեր առաջարկները, նախընտրելով պահպանել անոր պատմական նկարագիրը:

. . .

***Al-Ahram Hebdo***

20-26 Նոյեմբեր 2024, էջ 14-15

Ֆրանսերէնէ թարգմ.՝ Հ. Ա.(Թարգմանութիւնը կը բովանդակէ յօդուածին առաջին կէսը որ յատկացուած է Փափազեան խանութին: Միւս կէսը կ'անդրադառնայ զանազան այլ ժամագործներու: Արդարեւ, յօդուածի ամենալայն եւ կեդրոնական տեղը յատկացուած է Փափազեանին:)

# ՔԱՂԱԿԻՐ

## 2 ՄԵՆՔ ԱՍՈՒՄ ԵՆՔ ՀԱՊԿ, ՀԱՍԿԱՆՈՒՄ ԵՆՔ...

Պուտինի բացայայտումը սպանիչ է նաեւ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւի համար, որովհետեւ Ռուսաստանի նախագահը պարզորոշ հասկացնում է, որ կարող էր Լեռնային Ղարաբաղը հայկական եւ որպէս տարածաշրջանային սուբիեկտ պահպանել, բայց աշխարհաքաղաքական շահն այլ վերաբերմունք է պահանջել: Ըստ էութեան, Ռուսաստանի նախագահի յայտարարութեան ամենավտանգաւոր ենթատեքստը դա է. առանց Ռուսաստանի թոյլտուութեան Բաքուն չի կարող Երեւանի հետ յարաբերութիւններ կարգաւորել:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

**ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ**

**2025 Տարուայ ԵՐԵՒԱՆ**

**Պատի Օրացոյց**

**(83-րդ ՏԱՐԻ)**

**ԳԵՂԱՆԿԱՐԻՉ ԱՇՈՏ ՋՕՐԵԱՆ՝ ԾԱՂԻԿՆԵՐ**

## ՏԽՐՈՒՆԻ



Այրի Տիկ. Րոզի Պալաեան (Մոնթրէալ), Տիկ. Լուսի Պալաեան (Մոնթրէալ), Տէր եւ Տիկ. Վաչէ եւ Հուրիկ Պալաեան եւ զաւակունք (Մոնթրէալ), Տէր եւ Տիկ. Դանիէլ եւ Մայտա Ճոճոեան (Աղեքսանդրիա), Տիկ. Լուսի Ճոճոեան եւ զաւակունք (Աղեքսանդրիա), Տէր եւ Տիկ. Կարէն եւ Սօսի Ճոճոեան եւ զաւակունք (Տուպայ), ինչպէս նաեւ Պալաեան, Գազանճեան, Շահպէնտէրեան, Ճոճոեան, Պալասանեան, Արապեան եւ Վարժապետեան ընտանիքները կը գուժեն մահը իրենց ամուսինին, զաւակին, հօր, եղբօր, մօրեղբօր եւ ազգականին՝

**ՎԱՀԷ ՊԱԼԱԵԱՆԻ**

(ծնեալ 1954)

որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 2-ին, Մոնթրէալ, Գանատա:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը պիտի կատարուի վաղը՝ Ուրբաթ, Դեկտեմբեր 6-ին, Լաւալի Սուրբ Խաչ եկեղեցիին մէջ:

## 3 ԱՆՀՈԳՈՒԹԵԱՆ ՆՈՒՐԲ ԱՐՈՒԵՍՏԸ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՊԱՀՈՎԱՅԻՆ ՄՏԱԾՈՂՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՌԱԶՄԱԿԱՆ ԱՆԿՈՒՄԸ

հաւասար, քանի որ Հայաստանի կատարումը Առաջին Ղարաբաղի Պատերազմին 1990-ականներուն սկիզբը, մարտական ուժի ենթադրեալ փորձառութիւնը, ինչպէս նաեւ իր պաշտպանական եւ ամրացած դիրքերը կը համարուէին կարեւոր յատկանիշներ, համեմատած 2007-էն սկսեալ Ազրպէյճանի աւելցող ծախսումին: 2013-ին, Իլհամ Ալիեւ արձակեց նախագահական հրամանագիր, որ կը միտէր ընդլայնել 2007-ին սկսած ռազմական արդիականացումի ընթացքը: Հրամանագիրը կը ծրագրէր արագացնել արդիականութիւնը՝ վերակառուցելով Ազրպէյճանի Զինուած Ուժերը, միաժամանակ դիւրացնելով գնումներու գործընթացը՝ մեծ ծախսումներով ձեռքբեռելու բարձր ճշգրտութեամբ առաջնորդուող զէնքերու համակարգներ եւ անօդաչու թռչող սարքեր: Այս պատճառով, Ալիեւի հրամանագիրէն մէկ տարի եւ Ազրպէյճանի ծախսումի խրախճանքէն երկու տարի ետք, 2014-էն սկսեալ դիտարկուեցան դասակարգումի ցուցիչի տուեալներուն կէտերը, որոնք համախմբօրէն յառաջացուցին նկատելի անհաւասարութեան մեծացում՝ տրամադրելով կարեւոր փորձական արդիւնքներ:

Ստորեւ բերուած թիւերը ցոյց կու տան ռազմական ուժի կարողութիւնը՝ հիմնուած համեմատական դասակարգումներու վրայ.

2014. Հայաստան՝ 74-րդ տեղ աշխարհի մակարդակով, Ազրպէյճան՝ 63-րդ տեղ աշխարհի մակարդակով:

2016. Հ.՝ 93, Ա.՝ 58:

2018. Հ.՝ 95, Ա.՝ 59:

2019. Հ.՝ 96, Ա.՝ 52:

2020. Հ.՝ 111, Ա.՝ 64:

2023. Հ.՝ 94, Ա.՝ 57:

Այս թիւերը կը կատարեն երեք կարեւոր բացայայտումներ:

Նախ, ռազմական ուժի աճող անհաւասարութիւնը յստակ դարձաւ 2014-ին, երբ Ազրպէյճանի Զինուած Ուժերը համաշխարհային մակարդակով դասուեցաւ 63, իսկ Հայաստան՝ 74: Ասիկա Հայաստանի համար մնաց կառավարելի, երբ 2007-2010-ին կը կիրառէր յարաբերական հաւասարութեան նոյն չափորոշիչները, այսինքն՝ թէեւ Ազրպէյճանի ծախսումներուն ուժը սկսած էր փոխել ուժի հաւասարակշռութիւնը, բայց ոչ այն աստիճան որ բաւականաչափ խզուէր ռազմական կարողութեան անհաւասարութիւնը: Այսպէս, մինչ Հայաստանի Զինուած Ուժերը մնաց թիւ 74 պատկառելի դասակարգումին վրայ, Ազրպէյճան յառաջացաւ 11 աստիճանով: Համեմատական առումով, օրինակ, 2014-ի ցուցիչին մէջ Աւստրալիա դասակարգուած էր 20 իսկ Հարաւային Քորէա՝ 9, բայց քննական տուեալները ցոյց կու տան՝ թէ 10-12 դիրքաւորումներու անհաւասարութիւնը չի յանգեցներ անկառավարելի անհաւասարութեան: Արդարեւ, 2016 թուականին, երբ Պաքու նախաձեռնեց Քառօրեայ Պատերազմը, իր ռազմական դասակարգումը բարձրացած էր 58-ի, ցուցադրելով արդիականացումի ծրագիրին աղիւնաւէտութիւնը: Իսկ այդ նոյն երկամեայ շրջանին՝ 2014-2016, Հայաստանի դասակարգումը իջած էր 19 աստիճանով: Այսպէս, ոչ միայն կը հզօրանար Ազրպէյճան, այլ անկում կ'ապրէր Հայաստանի ռազմական ուժը: Երբ սկսաւ Քառօրեայ Պատերազմը, Ազրպէյճան աշխարհի 58-րդ ռազմական ուժն էր, իսկ Հայաստան՝ 93: Երկու տարուայ ընթացքին ուժի կարողութեան տարբերութեան անցումը 11 աստիճանէ 35-ի, բաւական արտասովոր է ուժի համաչափութեան չափումի ոլորտին մէջ:

Երկրորդ, թէեւ 2016-ի պատերազմէն ետք աւելցաւ Հայաստանի ռազմական ծախքը, բայց չբարելաւուեցաւ իր ռազմական ուժի կարողութիւնը: Քառօրեայ Պատերազմէն երկու տարի ետք, փոխանակ ցուցիչի դասակարգումին մէջ բարելաւուելու Հայաստանի ռազմական կարողութիւնները, անոնք նուազեցան երկու աստիճան եւս, Հայաստանը դառնալով աշխարհի 95-րդ ռազմական ուժը: Միւս կողմէ, Ազրպէյճան պահպանեց կայունութիւնը, իջնելով ընդամէնը մէկ աստիճան՝ 59: Բայց երկու պարագաներուն ալ՝ 2020-ի պատերազմէն երկու տարի առաջ եւ 2016-ի պատերազմէն երկու տարի ետք, երկու երկիրներուն միջեւ դասակարգումի տարբերութիւնը կը կազմէ 36 կէտ: Համեմատական վերլուծութեան տեսանկիւնէն, դիտարկելով 2018-ի ցուցիչի ընդհանուր դասակարգումը, 36 կէտի անհաւասարութիւնը նման է Լեհաստանի ռազմական ուժի կարողութեան՝ որ կը դիմակայէ Պանկլատէշի մարտահրաւէրները: Ըստ էութեան, Հայաստանի բանակը շարունակեց տկարանալ, մինչ Ազրպէյճանի բանակը, ամուր հաւասարութիւն հաստատելէ ետք, շարունակեց պահպանել կայունութիւնը:

Եւ երրորդ, հաշուի առնելով Ազրպէյճանի դասակարգումի բարձրացումը 2014-էն մինչեւ 2020 եւ ընդամէնը նկատելով Հայաստանի անկումին միտումները, բաւական բացայայտ է Հայաստանի ռազմական կարողութեան արագ նուազումը: Տարիէ տարի՝ 2014-էն մինչեւ 2020-ի պատերազմը, Հայաստանի ռազմական ուժի կարողութիւնը համակարգօրէն նուազեցաւ, մեծ անկումներ արձանագրելով 2016-ին եւ 2020-ին, որոնք կը զուգադիպին Քառօրեայ Պատերազմին եւ 2020-ի Արցախի Պատերազմին: Բովանդակային առումով, անկախ Ազրպէյճանի կարողութեան ցուցիչի բարձրացումէն կամ նուազումէն, Հայաստան շարունակաբար ցոյց տուաւ ուժի կարողութեան նուազում:

Նկատառումները այստեղ կը բաժնուին երկու մասի: Նախ, եթէ դասակարգումի փոփոխութեան միտումներուն ուղղութիւնը ըլլար նոյնը (երկուքի բարձրացում կամ երկուքի նուազում), ապա Հայաստանի անկումը խնդիր պիտի չյարուցանէր քանի որ Ազրպէյճան եւս կ'ենթարկուէր կարողութեան անկումի: Եւ երկրորդ, եթէ անկումին ընթացքները ըլլային համաչափ (եւ ոչ այսքան անհամաչափ), Հայաստան կարող պիտի ըլլար մեղմացնել իր անկումին տարողութիւնը Ազրպէյճանի համեմատութեամբ: Արդարեւ, ասոնցմէ ոչ մէկը պատահեցաւ: Վեց տարուայ ընթացքին, Հայաստանի ռազմական կարողութիւնը 37 կէտի պաշեցուցիչ անկում ապրեցաւ: Այսպէս, պարզապէս համեմատելով Հայաստանի ռազմական ուժի դասակարգումը ինքն իր հետ ժամանակային շարքի չափանիշով, եւ վերլուծութենէն բացառելով Ազրպէյճանը, Հայաստան ոչ միայն ցոյց տուաւ մրցակցային արդիւնաւէտութիւնը պահպանելու անկարողութիւն, այլեւ բաւական արագ եղաւ բացարձակ քայլերով անկումը: Այս առումով, Հայաստանի խնդիրը ոչ միայն համեմատական անկումն էր Ազրպէյճանի դիմաց, այլեւ ներքին անկումը. եթէ նոյնիսկ Ազրպէյճան չհզօրանար իր ներկայ չափով, Հայաստան կը շարունակէր տկարանալ ինքն իր մէջ:

Ասիկա մեզի կը վերադարձնէ սկիզբը առաջադրուած հարցումներու շարքին՝ փորձելու համար հասկնալ կառավարութեան եւ ռազմական վերնախաւին արձագանգը, աւելի ճիշդ՝ անհոգութիւնը, շարունակական անկումին: Այսինքն, մինչ կրնանք հասկնալ թէ ինչու Ազրպէյճան շարունակեց հզօրանալ, ի՞նչ պատճառով Հայաստան շարունակեց տկարանալ: Տուեալները ցոյց կու տան՝ որ Հայաստանի տկարացումը պարզապէս համեմատական չէ, այսինքն՝ Ազրպէյճանի այնքան հզօրացումը չէ որ Հայաստանը պարզապէս տկար երեւցուց: Երբ Հայաստանի դասակարգումները կը համեմատենք իրենք իրենց միջեւ, կանոնաւոր անկումը ցնցող կ'ըլլայ: Անկախ այն հանգամանքէն՝ թէ Ազրպէյճան ինչ կ'ընէր ինքն իր համար, ի՞նչն էր պատճառը՝ որ Հայաստան 2014-ին աշխարհի 74-րդ ռազմական ուժէն դարձաւ 111-րդը 2020-ի պատերազմէն առաջ: Ի՞նչն էր պատճառը եօթը տարուայ ընթացքին ռազմական կարողութեան այսքան կտրուկ նուազումին, անկախ Ազրպէյճանի ինքն իր համար ուժեղացումէն:

Հետեւաբար, իբր եզրակացութիւն, Հայաստանի խնդիրն էր ոչ միայն յարաբերական ուժը, այլեւ բացարձակ ուժը. կրնանք յարաբերական անկում վերագրել Ազրպէյճանի աճող ծախսային ուժին, բայց չունինք պատշաճ պատասխաններ բացարձակ ուժի անկումին՝ որուն ենթարկուեցաւ Հայաստանի ռազմականը ինքն իր մէջ: Թերեւս հայելիի մէջ նայելով, բայց ունենալով այդ հայելիին առջեւ մեր քովը կանգնած Ռուսաստանը, կրնանք բազմաթիւ պատասխաններ ստանալ: Այսպէս, ապահովութեան վերլուծութեան դիտանկիւնէն, 2020-ի պատերազմի Հայաստանի պարտութիւնը եւ անոր յաջորդող ապահովութեան ճարտարապետութեան փլուզումը ոչ միայն նախորոշուած եզրակացութիւն մըն էր պատերազմի սկզբնաւորութեան, այլ, ինչպէս փորձական տուեալները չափազանց յստակ կը դարձնեն, նախորոշուած եզրակացութիւն մը՝ պատերազմէն բաւական առաջ: Մենք պարզապէս ընտրեցինք անգիտութիւնն ու անհոգութիւնը, եւ պատրանքը՝ թէ ինչ-որ ինքնասպասարկող արջ մը պիտի թողու ձմեռնաքունը եւ հասնի օգնութեան:

***EVN Record***

1 Նոյեմբեր 2024

https://evnreport.com/evn-security-report/evn-security-report-october-2024/

Անգլերէնէ թարգմ.՝ Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1981 ՀԻՆԳՇԱԲԹԻ 19 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2024 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դիկ.

عدد رقم ١٩٨١ الخميس ١٩ ديسمبر ٢٠٢٤


## ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ԵՒ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿԵՂԾ ՊԱՏՈՒՄՆԵՐՈՒ ԱՐՇԱՒԸ ԸՆԴԴԷՄ ՖՐԱՆՍԱ-ՀԱՅԱՍՏԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ

**ՍՕՍԻ ԹԱԹԻԿԵԱՆ**

Ազըրպէյճանի ապատեղեկատուութեան եւ կեղծ պատումներու արշաւը Ֆրանսայի դէմ վերածուեցաւ հիպրիտային պատերազմի, հասնելով մինչեւ Հարաւային Խաղաղական Ովկիանոս եւ Ափրիկէ: Ասիկա շատերուն կրնայ գերիրական (surreal) թուիլ, բայց անոնք որոնք ուշադրութեամբ հետեւած են 2020 թուականէն ի վեր Ազըրպէյճանի ուժեղացող հռետորաբանութեան եւ գործողութիւններուն Ֆրանսայի դէմ, որ առաւել եւս խորացաւ 2023-ին, ասիկա անակընկալ չէ:

Գաղտնիք չէ՝ որ Ֆրանսայի եւ Ազըրպէյճանի վատթարացող յարաբերութիւնը կը բխի Ֆրանսայի եւ Հայաստանի միջեւ աճող ընկերակցութենէն: Վերջին երկու տարիները, Ազըրպէյճան գրոհի մարտավարութիւն կիրարկեց հայերուն աջակցող որեւէ միջազգային խաղացողի դէմ: Պաքու թիրախաւորեց ԵՄ-ը, անոր առաքելութիւնը Հայաստանի մէջ, անոր առանձին անդամ երկիրները, ԱՄՆ-ը, միջազգային, միջկառավարական եւ ոչ-կառավարական կազմակերպութիւններն ու դիտորդները, ուսումնասիրողները, մեկնաբանները եւ լրագրողները: Ան կը փորձէ անպատժութիւն ապահովել շրջափակումի, ռազմական յարձակումի, լայնածաւալ պատերազմի եւ Լեռնային Ղարաբաղի մէջ հայերու վերջնական էթնիքական զտումի համար: Ան նաեւ կը ձգտի խուսափիլ պատասխանատուութենէ իր ռազմական յարձակումներուն եւ ինքնիշխան Հայաստանի սողացող կցումին (creeping annexation) համար, մինչ շարունակելով իր ծաւալապաշտ պահանջները Հայաստանի նկատմամբ:

Ֆրանսայի նկատմամբ Ազըրպէյճան թշնամական դարձաւ յատկապէս առաջինի հայերուն ցուցաբերած հետեւողական աջակցութեան եւ Ազըրպէյճանի քննադատութեան պատճառով: Հայաստանի հետ Ֆրանսայի ընկերակցութեան վերաբերեալ Ազըրպէյճանի ապատեղեկատուութեան արշաւը աստիճանաբար վերածուեցաւ Ֆրանսայի դէմ աւելի լայն արշաւի: Իր ոճը բնորոշ է անազատական միապետական վարչակարգներուն եւ կը ցոլացնէ Ռուսաստանի նմանատիպ արշաւը Ափրիկէի եւ Եւրոպական դրացիութեան մէջ:

Այս յօդուածը կը ձգտի մերկացնել Ազըրպէյճանի կեղծ պատումները Հայաստան-Ֆրանսա համագործակցութեան վերաբերեալ, ընդգծելով անոնց նմանութիւնները ռուսական պատումներուն, ինչպէս նաեւ այն մեթոտներն ու հարթակները որոնց միջոցով առաջ կը մղուին անոնք:

### ՖՐԱՆՍԱԿԱՆ ԴԻՐՔԻՆ ՇԱՐԺԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ (DYNAMICS) ՀԱՅԱՍՏԱՆ-ԱԶԸՐՊԷՅՃԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Անկասկած, Ֆրանսայի դէմ Ազըրպէյճանի հիպրիտային պատերազմի առաջնային պատճառը Ֆրանսայի քննադատութիւնն է Ազըրպէյճանի պատերազմին, շրջափակումը եւ Լեռնային Ղարաբաղի էթնիք զտումը, ինչպէս նաեւ Հայաստանի դէմ Ազըրպէյճանի ռազմական յարձակումներէն եւ բռնադատական ռազմավարութենէն ետք Հայաստանին ցուցաբերած աջակցութիւնը:

Մինչ ԱՄՆ եւ ԵՄ կը կիրառէին մեղմ միջնորդութիւն՝ հիմնուած Ազըրպէյճանի եւ Հայաստանի միջեւ «ազատական խաղաղութեան տեսութեան» վրայ, Ֆրանսա, Լեռնային Ղարաբաղի հայերուն դէմ Ազըրպէյճանի նախաձեռնած 2020-ի պատերազմէն սկսեալ եւ յատկապէս Հայաստանի դէմ Ազըրպէյճանի 2021-2022-ի ռազմական յարձակումներուն ընթացքին, երբեմն կը շեղուէր ուրիշ խաղացողներու բնորոշ կեղծ համարժէքութեան քաղաքականութենէն:

2020 Հոկտեմբերին, Լեռնային Ղարաբաղի հայերուն դէմ Ազըրպէյճանի նախաձեռնած 44-օրեայ պատերազմի ամբողջ ընթացքին, Ֆրանսա, ԱՄՆ եւ Ռուսաստան իւրաքանչիւրը վարեց զինադադարի բանակցութիւն: Այնուամենայնիւ, ամէն անգամ Ազըրպէյճան կը խախտէր համաձայնութիւնը մինչեւ ընդունեց Ռուսաստանի բանակցած գործարքը՝ հայերուն համար խիստ աննպաստ պայմաններով, առանց խորհրդակցելու ԱՄՆ-ի եւ Ֆրանսայի հետ:

Դեկտեմբերին, Ֆրանսայի Ազգային Ժողովը ընդունեց Արցախի (Լեռնային Ղարաբաղի հայերէն անուանումը) անկախութիւնը ճանաչող բանաձեւ, հիմնուելով Հոկտեմբերի պատերազմի ժամանակ ներկայացուած առաջարկին: Բայց եւ այնպէս, Ֆրանսայի գործադիր ճիւղը ինքզինք հեռացուց այս բանաձեւէն, չուզելով խափանել իր դերը իբրեւ համանախագահ ԵԱՀԿ Մինսք Խումբին՝ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան պաշտօնական միջնորդական մարմինին:

2021-ին, Ֆրանսան դատեց՝ հաւասարակշռե՞լ արդեօք իր միջնորդութիւնը թէ բացայայտ քաղաքական աջակցութիւն եւ պաշտպանական ռազմական սարք տրամադրել Հայաստանին: Պաշտպանական համագործակցութեան համար կար նաեւ ուրիշ խոչընդոտ մը՝ Հայաստանի անդամակցութիւնը Ռուսաստանի գլխաւորած Հաւաքական Անվտանգութեան Պայմանագիրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ): Միաժամանակ, Ազըրպէյճան սկսաւ խափանել ԵԱՀԿ Մինսք Խումբը, առարկելով որ Լեռնային Ղարաբաղի հակամարտութիւնը լուծուած է ռազմական ճանապարհով եւ նախաձեռնեց ռազմական ներխուժումներ Հայաստանի մէջ: Այդ ժամանակաշրջանին Ռուսաստան ինքզինքին մենաշնորհեց Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ միջնորդութեան դերը եւ շարունակեց մէկ կողմ ձգել ԵԱՀԿ-ի միւս համանախագահները՝ ԱՄՆ եւ Ֆրանսա, բան մը որ արդէն սկսած էր 2020 Նոյեմբեր 10-ին ստորագրուած եռակողմ յայտարարութեամբ:

Նախագահ Մաքրոն, ԵՄ Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլի հետ, նպաստեց Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ միջնորդութեան նոր ձեւաչափի գործադրութեան 2021 Դեկտեմբերին՝ իբրեւ այլընտրանք ռուսական միջնորդութեան: Բայց առաջին հանդիպումէն ետք, Ազըրպէյճան որոշեց դուրս ձգել Ֆրանսան: ԵՄ-ի համեմատաբար մեղմ միջնորդութիւնը աւելի նպաստաւոր էր Ազըրպէյճանի հարկադրիչ ռազմավարութեան՝ առաջ քաշելու իր առաւելապաշտ նպատակները Հայաստանի նկատմամբ, նկատի առնելով երկու կողմերու միջեւ ռազմական հաւասարութեան բացակայութիւնը: Վերջապէս, 2022 Սեպտեմբերին ան նախաձեռնեց մեծ ռազմական յարձակում Հայաստանի դէմ եւ յաւելեալ տարածութիւններ գրաւեց Հայաստանի սահմանային շրջաններէն:

Ի պատասխան Ազըրպէյճանի ներխուժումին Հայաստան, 2022 Հոկտեմբերին ԵՄ եւ Ֆրանսա Փրակի մէջ հանդիպումի հրաւիրեցին Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանին եւ Ազըրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւին: Հանդիպումի ընթացքին անոնք շեշտեցին տարածքային ամբողջականութեան գաղափարը թէ՛ Հայաստանի եւ թէ՛ Ազըրպէյճանի համար: ԵՄ-ն պարտաւորութիւն ստանձնեց 2023 Հոկտեմբերին կարճաժամկէտ դիտորդական

3

ՍՈՒՐԻԱ

## ՊԱՇՇԱՐ ԱԼ-ԱՍԱՏԻ ԱՆԿՈՒՄԸ

### (Չ)ընտրութիւն բռնատիրութեան եւ քայքայումի միջեւ

54 տարի առաջ էր երբ պետական յեղաշրջումով Հաֆէզ Ալ-Ասատ իր ձեռքը կը վերցնէր Սուրիոյ իշխանութիւնը՝ դառնալով երկիրի ինքնակոչ մենատէրը: Իր մահուան պատճառով, 2000-ին «հանրապետական» իշխանութիւնը ժառանգաբար կ՛անցնէր զաւակին՝ Պաշշար Ալ-Ասատ, մինչեւ վերջինիս անկումը Դեկտեմբեր 8-ին եւ ընտանեօք փախուստը Մոսկուա: Հայր ու զաւակի անունները պատմութեան մէջ պիտի արձանագրուին իբրեւ արդի աշխարհի դաժան բռնակալներ՝ կամայական զանգուածային սպանութիւններ, տանջալի բանտարկութիւններ, խօսքի ազատութեան բռնաբարում, եւլն.:

2011-ին, արաբական յեղափոխութիւններուն հետեւութեամբ, յոյս մը կար ժողովրդական յեղափոխութեան միջոցով հասնելու իշխանափոխութեան եւ ժողովրդավարութեան հաստատութեան, որ սակայն շուտով աղօտեցաւ արտաքին խաղացողներու ուժեղ միջամտութեամբ, մէկ կողմէ՝ Իսրայէլի եւ Թուրքիոյ կողմէ հովանաւորուած նորահնար իսլամական խումբերու, միւս կողմէ՝ ռուսական աջակցութեան Ալ-Ասատի իշխանութեան: Այս բոլորը, Իրանի, ԱՄՆ-ի եւ անոնց նման այլ ազդեցիկ խաղացողներու գործակցութեամբ, երկիրը վերածեց քաոսի: Ի միջի այլոց, Ռուսաստան յաջողեցաւ խաղէն դուրս մղել Եւրոպան եւ ՄԱԿ-ը՝ որոնք շարժիչ ուժերն էին 2015-ի Վիեննայի խաղաղութեան բանակցութիւններուն Սուրիոյ համար: Անշուշտ, Եւրոպան եւ ՄԱԿ-ը պիտի չձեռնարկէին Վիեննան՝ առանց սեփական ակնկալիքներու եւ շահերու:

Այս բոլորին մէջ կը պակսէր մէկ ձայն՝ նոյնինքը Սուրիան, հակառակ անոր ձեւական ներկայութեան զանազան բանակցութիւններու մէջ:

2024 Նոյեմբեր 27-ին, Հայ՛աթ Թահրիր Ալ-Շամ (ՀԹՇ) եւ Թուրքիոյ կողմէ հովանաւորուած Սուրիական Ազգային Բանակը (ՍԱԲ) կը նախաձեռնեն ռազմական արշաւ, որուն կը պատասխանեն ռուսական աջակցութեամբ սուրիական օդային ուժերը: Իրան կ՛ընտրէ ռուս-սուրիական կողմը, ինչպէս եղած էր առաջ: ՀԹՇ-ի, ՍԱԲ-ի եւ այլ իսլամական-ռազմական տեղայնական խումբեր միանալով կը կազմեն դաշնակցութիւն եւ Դեկտեմբեր 7-8ին կը մտնեն Դամասկոս, երբ բարձր գաղտնապահութեամբ Պաշշար Ալ-Ասատ ապաստան գտած էր Մոսկուա, Վլատիմիր Փութինի անձնական արտօնութեամբ:

ՀԹՇ եւ ՍԱԲ, երկու կրօնական խմբաւորումներ՝ յայտնի իրենց անցեալի բռնակալութիւններով եւ ոճիրներով: Երկու խմբաւորումներ՝ յայտնի իրենց միջեւ եղած մրցակցութեամբ եւ իրարու հանդէպ ունեցած հակակրութեամբ: Հիմա Թուրքիա պիտի փորձէ ՍԱԲ-ին աջակցելով դուրս մղել ՀԹՇ-ն, աւելցնելու համար իր ազդեցութիւնը Սուրիոյ վրայ: Իսլամական խումբի մը ենթադրեալ իշխանութիւնը տակաւին չի նշանակեր անցեալի ոճիրներու շարունակութիւն: Իշխանութեան գլուխ գալու պարագային, հաւանաբար փոխուի իրենց վերաբերմունքը այլակրօններու նկատմամբ, բայց, միեւնոյնն է, անոնք միշտ կախուած պիտի մնան արտաքին ուժերէ:

Սուրիոյ տարածքին վրայ ռուս-թրքական հակամարտութիւնը աւարտեցաւ Թուրքիոյ «յաղթանակ»-ով: Յիշենք՝ թէ ինչպէս Լիպիոյ 2010-ի ժողովրդային յեղափոխութիւնը հասաւ այսօրուայ վիճակին՝ արեւելքը Ռուսաստանի տնօրինութեան տակ, արեւմուտքը՝ Թուրքիոյ: Սուրիոյ մէջ, առայժմ, ռուս-թրքական ոչ-ուղղակի հակա-

3

# ԱՐՄԱՆ ԹՕՔԱԹԵԱՆ
## Ռաւինիայի ամառնային օփերա

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**12 Յուլիս 1923**

Massenet: *La Navarraise* (ֆրանսերէն)։

Ina Bourskaya (Anita), Armand Tokatyan (Araquil), Léon Rothier (Garrido), Louis D'Angelo (Remigio), Giordano Paltrinieri (Ramon), Paolo Ananian (Bustamente), Louis Derman (Un soldat). նուագավար՝ Louis Hasselmans(19)։

Rene Devries - «Սիրուած երիտասարդ թենոր Արման Թօքաթեան Araquil-ի դերը կատարեց իրեն պատիւ բերող եղանակով։ [...] Թօքաթեան դերը երգեց գեղեցիկ հնչիւնով եւ մեծ տրամաթիք ուժգնութեամբ, թատերականօրէն եւս թողելով սքանչելի տպաւորութիւն։ Յաջողութիւնը կատարեալ էր»(20)։

Fransworth Wright - «Արման Թօքաթեան՝ Ռաւինիայի անուանացանկի արժէքաւոր յաւելում մը, սպանիացի զինուորականի դերը երգեց գեղեցիկ քնարական նկարագիրով։ Իր երգեցողութեան վրայ կը տիրէր հազուագիւտ գեղարուեստական զգայնութիւն եւ երաժշտականութիւն»(21)։

**19 Յուլիս 1923**

Puccini: *Madama Butterfly* (իտալերէն)։

Elisabeth Rethberg (Cio-Cio-San), Armand Tokatyan (Pinkerton), Marion Telva (Suzuki), Vincente Ballester (Sharpless), Giordano Paltrinieri (Goro), Paolo Ananian (Bonze), Louis D'Angelo (Yamadori), Philine Falco (Kate Pinkerton), Max Toft (Commissario). նուագավար՝ Gennaro Papi(22)։

*Chicago Journal of Commerce* - «Առաջին արարի վերջաւորութեան, Տիկ. Rethberg-ի եւ Պր. Թօքաթեանի զուգերգէն ետք՝ որուն նման երգեցողութիւն ստորագրելու երբեք չէր լսած, դղրդիւն որոտումի նման պոռթկաց ծափահարութիւնը։ Երկարաձիգ էր եւ յարատեւ, եւ արուեստագէտները կրկին ու կրկին կը կանչուէին բեմ։ Ժխորին աւելցան Bravo-ի բացագանչութիւններն ու ոտքերու տրոփիւնները, որոնց միջոցով ունկնդիրը բարձրաձայնեց իր հաւանութիւնը։ Տղամարդիկ եւ կիներ կանգնեցան իրենց նստարաններէն եւ գոչեցին։

«Անցեալ գիշեր Արման Թօքաթեան իր ասպարէզին մէջ առաջին անգամ ըլլալով երգեց Pinkerton-ի դերը, որ այնքան ընտանի էր իրեն՝ կարծէք ողջ կեանքը երգած ըլլար։ Դերը ճշգիւ կը յարմարի իր ձայնին, զոր բաւական լաւ օգտագործեց։ Ան նաեւ իր կերպարանքին մէջ էր, որ անակնկալ մը եղաւ՝ քանի որ ականատես եղած ենք իրենց լատինականութիւնը քօղարկելու անկարող Pinkerton-ներու երկար շարքի մը։ Պր. Թօքաթեանի ձայնը հոյակապ որակ ունի։ Ասոր իրազեկ դարձանք երբ զինք առաջին անգամ լսեցինք *Cavalleria*-ի Turiddu-ի մէջ։ Անցեալ գիշեր իր ձայնը ունէր վճիտ ողորկութիւն՝ որ կը պակսէր նախապէս։ Ան պէտք է հեռուն երթայ այս դերով, որ անկասկած արժէքաւոր յաւելում մը պիտի ըլլայ իր երգացանկին»(23)։

Herman Devries - «Ինչ կը վերաբերի ինծի, ես բացարձակապէս յափշտակուած էի Elizabeth Rethberg-ի հմայիչ, կախարդական եւ անթերի կատարումով Butterfly-ի դերին, ինչպէս նաեւ նոյնքան հրաշալի արուեստով Արման Թօքաթեանի՝ որուն առաջին անգամ կը լսէի անցեալ գիշեր։

«Այս երիտասարդ արուեստագէտին ձայնը անզուգական գեղեցկութիւն ունի ինծի համար. ան հնազանդօրէն կ'ենթարկուի իւրաքանչիւր տրամադրութեան եւ ոչինչ կը կորսնցնէ իր հիւթեղութենէն՝ երբ կը յորդին սիրոյ ամենակիրքոտ արտայայտութիւնները։ Ասոր աւելցնենք՝ որ Պր. Թօքաթեան ունի ապշեցուցիչ եւ համակրելի հրապոյրով բեմական ներկայութիւն եւ կը հանդիսանայ իր հաւասարը չունեցող բեմի սիրահար։ Պր. Թօքաթեան կը թուի ըլլալ հովուերգակ»(24)։

*Chicago Daily Journal* - «Նաւատորմի բոնկուն սպայ մըն էր Թօքաթեան։ Իր բարձր սի պեմոլը կը սաւառնի կատարեալ դիւրութեամբ [...]։ Թենորը երիտասարդ է եւ օժտուած, եւ իր երգը ունկնդրելու հաճոյքը կարելի չէ խափանել պատճառաբանութիւններով»(25)։

Rene Devries - «Առանց բացառութեան, Արման Թօքաթեան կը հանդիսանայ Ռաւինիայի այս եղանակի յայտնագործութիւնը։ Իր Pinkerton-ը պէտք է նախատիպ ընդունին ամերիկացի եւ օտար թենորները։ Բոլոր կողմերով ունէր Միացեալ Նահանգներու Նաւատորմի սպայի տեսք, եւ իր խաղարկութեան նմանը երբեք չէր տեսնուած այս շրջակայքը։ Եթէ փափաքի, Թօքաթեան կրնայ սինեմայի արուեստագէտ դառնալ. ան գիտէ ինչպէս արձանագրել բոլոր զգացումները, իսկ սոփրանոները՝ երգելով այսպիսի սիրահարի հետ, դիւրացուցած կ'ըլլան իրենց սեփական աշխատանքը, քանի որ ոչ ոք կրնայ անոր խաղարկութիւնը թողուլ անարձագանգ։ Երգեցողական առումով համակ զօրութիւն մըն է ան եւ իր մեծապէս գեղեցիկ ձայնը կը գործածէ կատարելագործեալ գեղարուեստականութեամբ։ Թօքաթեան Ռաւինիայի մեծապէս սիրական դէմքն է՝ ուր որ ալ յայտնուի, եւ եթէ Չիքակոյի Օփերան (Chicago Civic Opera Company) ապահովէ իր ներկայութիւնը, ընդարձակ հանդիսատես պիտի գրաւէ Լսարանին (Auditorium) համար։ Առաջին արարի Cio-Cio-San-ի եւ Pinkerton-ի զուգերգը կատարուեցաւ սքանչելի կերպով։ Զարմանալի չէ որ հանդիսատեսը բարձր աստիճանի խանդավառութեամբ ընդունեց զուգերգը, ծափողջունեց երկու սիրահարները եւ բազմաթիւ անգամներ բեմ կանչեց զանոնք։ Մեծ գիշեր մը Ռաւինիայի համար(26)։

Farnsworth Wright - «Առաջին չորս շաբաթուայ զագաթնակէտը եղաւ Հինգշաբթի գիշեր, երբ *Madama Butterfly* կրկնուեցաւ նոր Cio-Cio-San-ով եւ նոր Pinkerton-ով։ Մէկը Elisabeth Rethberg-ն էր, միւսը՝ հայ թենոր Արման Թօքաթեան։ Հսկաեւ բուռն ծափահարութիւններ ցնցեցին տաղաւարը առաջին արարը եզրափակող սիրոյ զուգերգի աւարտին՝ երբ սոփրանոն եւ թենորը միասին հնչեցուցին լիաձայն բարձր տօ-ն։ Ծափահարութեան բռնկումը ինքնաբուխ էր եւ անխուսափելի, քանի որ այդ զգայացունց բարձր ձայնանիշը զագաթնակէտն էր անթերի առաջին արարին՝ որ գեղեցկութեան կայուն վերելքով ամբարձաւ սկիզբէն մինչեւ վերջ։ [...]

«Թօքաթեան մեծ Pinkerton մըն էր։ Իր ձայնի քնարական ոսկին գործածեց արտայայտելու երաժշտութեան իւրաքանչիւր զգացում եւ ստեղծեց լաւ բեմական պատկեր։ Ամերիկացի նաւատորմի սպայի դերը դժուար է ազդեցիկ դարձնել, բայց Թօքաթեան յաջողեցաւ անկասկած»(27)։

*Musical Courier* - «Մինչ Ռաւինիա Զբօսավայրի եղանակը կը շարունակուի, ան զանազան կարելիութիւններ կու տայ երիտասարդ արուեստագէտներուն ցուցադրելու իրենց կարողութիւնները տարբեր դերերու մէջ։ Վերջերս Արման Թօքաթեանին վստահուեցաւ *Madama Butterfly*-ի Pinkerton-ի դերը, [...] որուն մէջ Մեթրոփոլիթընի երիտասարդ թենորը արձանագրեց այս եղանակի ցարդ ամենամեծ յաջողութիւնը։ Չիքակոյի հանդստավայրի մէջ իր կատարած աշխատանքը խոստմնալից է Մեթրոփոլիթընի գալիք երկրորդ եղանակին համար, պայմանով որ իրեն հնարաւորութիւն տրուի(28)։

**23 Յուլիս 1923**

Նուագահանդէս։

Chicago Symphony Orchestra, նուագավար՝ Louis Hasselmans։

- Weber: *Oberon*, 'Ocean, Thou Mighty Monster' (անգլերէն)

Florence Easton (սոփրանօ)։

- Flotow, *Martha*, 'M'Appari' (իտալերէն)

Armand Tokatyan (թենոր)։

- Schubert: Symphony in B minor(29)։

Edward Moore - «Միւս մենակատարն էր Արման Թօքաթեան, թենոր մը որ հաւանաբար այս օրերս արժանանայ յաւելեալ հռչակի եւ որ արժանի է ճանաչումի հիմա։ *Martha*-ի 'M'Appari'-ն երգեց գերազանց ձայնով եւ կենսունակութեամբ»(30)։

**29 Յուլիս 1923**

Massenet: *La Navarraise* (ֆրանսերէն)։

Ina Bourskaya (Anita), Armand Tokatyan (Araquil), Léon Rothier (Garrido). նուագավար՝ Louis Hasselmans(31)։

Renes Devries - «Արման Թօքաթեան մեծ յաջողութիւն արձանագրեց իբրեւ Araquil»(32)։

**1 Օգոստոս 1923**

Offenbach: *Les contes d'Hoffmann* (ֆրանսերէն)։

Armand Tokatyan (Hoffmann), Josephine Lucchese (Olympia), Margery Maxwell (Giulietta), Thalia Sabanieva (Antonia), Léon Rothier (Coppélius/Dr. Miracle), Ina Bourskaya (Nicklausse), Giordano Paltrinieri (Cochenille/Pitichinaccio/Frantz), Giuseppe Danise (Dapertutto), Désiré Defrère (Spalanzani), Louis D'Angelo (Schlémil/Crespel), Philine Falco (Une voix). նուագավար՝ Louis Hasselmans(33)։

Edward Moore - «Վերջապէս, *Les contes*-ի Hoffmann-ի դերով ելոյթ ունեցաւ Արման Թօքաթեան, որ ունի արտակարգ ձայն եւ տաղանդ, եւ հաւանաբար հռչակաւոր դառնայ այս օրերս»(34)։

Renes Devries - «Իբրեւ Hoffmann, Թօքաթեան հոյակապ էր եւ խոր տպաւորութիւն գործեց»(35)։

Farnsworth Wright - «Արման Թօքաթեան լաւ երգիչ եւ լաւ դերասան էր իբրեւ Hoffmann, թէեւ իր ոճով քիչ մը շատ ողբերգական՝ նոյնիսկ Օֆընպախի օփերայի սիրատոչոր սիրահարին համար»(36)։

Paul R. Martin - «Փայլուն երգեցողութիւն»(37)։

Farnsworth Wright - «Իբրեւ սիրատոչոր Hoffmann, Արման Թօքաթեան երեւան բերաւ մեծ քնարական քաղցրութեամբ թենոր ձայն մը, զոր յաջող կերպով միաձուլեց վիշտի կամ կիրքի կամ ուրախութեան տրամադրութիւններուն։ Տաղանդաւոր դերասան մը, ան կը պատկանի երգիչներու նոր սերունդին, որ օփերան կը դիտէ իբրեւ թատերգութիւն ուր խաղարկութիւնը նոյնքան էական է որքան ձայնային գեղեցկութիւնը»(38)։

(Շար. 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

19. 'Ravinia Opera,' *Chicago Daily Tribune*, 10 July 1923, p. 19. Edward Moore, 'New Artist Wins Success at Ravinia,' *Chicago Daily Tribune*, 12 July 1923, p. 19. 'Tabloid Operas Win Ravinia Audience's Favor on Repetition,' *Chicago Daily Tribune*, 13 July 1923, p. 17. Rene Devries, 'Third Week of Ravinia Park Opera Continues to Draw Capacity Audiences,' *Musical Courier*, 19 July 1923, Vol. LXXXVII, No. 3, p. 39. Fransworth Wright, 'Third Week of Opera at Ravinia Park Brings Debut of Elisabeth Rethberg,' *Musical America*, 21 July 1923, Vol. XXXVII, No. 13, p. 16. Robert C. Marsh, 'The Annals of the Ravinia Opera: Part 3: 1922-1926,' *Opera Quarterly*, January 1997, Volume 14, issue 1, pp. 85.

20. Rene Devries, 'Third Week of Ravinia Park Opera Continues to Draw Capacity Audiences,' *Musical Courier*, 19 July 1923, Vol. LXXXVII, No. 3, p. 39.

21. Fransworth Wright, 'Third Week of Opera at Ravinia Park Brings Debut of Elisabeth Rethberg,' *Musical America*, 21 July 1923, Vol. XXXVII, No. 13, p. 16.

22. Edward Moore, 'How to Assemble an Operatic Repertoire,' *Chicago Sunday Tribune*, 15 July 1923, part 7, pages 1, 4. 'Ravinia,' *Chicago Sunday Tribune*, 15 July 1923, part 7, page 2. Rene Devries, 'Easton Triumphs in *Tosca* at Ravinia,' *Musical Courier*, 26 July 1923, Vol. LXXXVII, No. 4, p. 23. Farnsworth Wright, 'Elisabeth Rethberg Makes Notable Impression at Her Ravinia Début,' *Musical America*, 28 July 1923, Vol. XXXVIII, No. 14, p. 24. 'Tokatyan Continues to Enjoy Favor at Ravinia,' *Musical Courier*, 16 August 1923, Vol. LXXXVII, No. 7, p. 10. Robert C. Marsh, 'The Annals of the Ravinia Opera: Part 3: 1922-1926,' *Opera Quarterly*, January 1997, Volume 14, issue 1, p. 84.

23. *Chicago Journal of Commerce*, 20 July 1923. Քաղուածքը կատարած եմ այստեղէն՝ 'Tokatyan Continues to Enjoy Favor at Ravinia,' *Musical Courier*, 16 August 1923, Vol. LXXXVII, No. 7, p. 10.

24. Herman Devries, *Chicago Evening American*, 20 July 1923. Քաղուածքը կատարած եմ այստեղէն՝ 'Tokatyan Continues to Enjoy Favor at Ravinia,' *Musical Courier*, 16 August 1923, Vol. LXXXVII, No. 7, p. 10.

25. *Chicago Daily Journal*, 20 July 1923. Քաղուածքը կատարած եմ այստեղէն՝ 'Tokatyan Continues to Enjoy Favor at Ravinia,' *Musical Courier*, 16 August 1923, Vol. LXXXVII, No. 7, p. 10.

26. Rene Devries, 'Easton Triumphs in *Tosca* at Ravinia,' *Musical Courier*, 26 July 1923, Vol. LXXXVII, No. 4, p. 23.

27. Farnsworth Wright, 'Elisabeth Rethberg Makes Notable Impression at Her Ravinia Début,' *Musical America*, 28 July 1923, Vol. XXXVIII, No. 14, p. 24.

28. 'Tokatyan Continues to Enjoy Favor at

➘ 3

# ԶԱՀԱԿԻՐ

## ԱԶԵՐՊԷՅՃԱՆԻ ԵՒ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿԵՂԾ ՊԱՏՈՒՄՆԵՐՈՒ ԱՐՇԱՒԸ ԸՆԴԴԷՄ ՖՐԱՆՍԱ-ՀԱՅԱՍՏԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ

1

խումբ տեղակայել Հայաստանի մէջ։ Յետագային, Ֆրանսա եւ Գերմանիա առաջատար դեր խաղացին Հայաստանի մէջ ԵՄ երկարաժամկէտ դիտորդական առաքելութիւն (EUMA - ԵՄԴԱ) ստեղծելու համար, որ սկսաւ 2023 Փետրուարին։ Այդ ժամանակէն ի վեր, ԵՄԴԱ-ն Հայաստանի սահմանի ապահովութեան համար երաշխաւորեց մեղմ զսպողականութիւն, ի դէմս ռազմական յարձակումները շարունակելու Ազրպէյճանի փորձերուն եւ Հայաստանի սահմանային շրջաններու սողացող կցումին։ Ազրպէյճան եւ Ռուսաստան փորձեցին խափանել այս առաքելութեան տեղակայումը կեղծ պատումներու համակարգուած արշաւի միջոցով, եւ Ռուսաստան փորձեց փոխարէնը առաջ տանիլ ՀԱՊԿ դիտորդներու տեղակայումը։ Մինչեւ այսօր անոնք կը շարունակեն համակարգուած ապատեղեկատուութեան արշաւ իրականացնել ԵՄԴԱ-ի դէմ։

**ՖՐԱՆՍԱՅԻ ԱՋԱԿՑՈՒԹԵԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻՆ՝ ԱԶԵՐՊԷՅՃԱՆԻ ՅԱՐՁԱԿՈՂԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՆ ՄԷՋ**

France 2 հեռատեսիլի կայանին տուած 2022 Հոկտեմբերի հարցազրոյցին, նախագահ Մաքրոն քննադատեց Ազրպէյճանը Լեռնային Ղարաբաղի հայերուն եւ Հայաստանի դէմ կատարած յարձակումներուն համար։ Ան խոստացաւ որ Ֆրանսան պիտի չլքէ Հայաստանը եւ մատնանշեց՝ որ Ռուսաստանը «կ'ապակայունացնէ» եւ «կը ձգտի անկարգութիւն ստեղծել» Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ խաղաղութեան գործընթացին։ Իբրեւ ՄԱԿ-ի Ապահովութեան Խորհուրդի (SC - ԱԽ) մնայուն անդամ, Ֆրանսա նախաձեռնեց ԱԽ նիստերուն մեծ մասը՝ կապուած Ազրպէյճանի ռազմական ներխուժումներուն Հայաստան եւ Լեռնային Ղարաբաղի շրջափակումին։ Ֆրանսայի յայտարարութիւնները այս զարգացումներուն հանդէպ աւելի սկզբունքային եւ խիստ ձեւակերպուած են քան ԵՄ-ի եւ ԱՄՆ-ի յայտարարութիւնները, որոնք յաճախ կը փորձեն երկու կողմերուն միջեւ պահպանել հաւասարակշռութիւն, հակառակ Ազրպէյճանի ռազմական ուժի գործածութեան եւ շրջափակումին ծաւալապաշտ նպատակներով։

Ի տարբերութիւն օրէնսդիր մարմինին, ֆրանսական կառավարութիւնը ընդգծած է տարածքային ամբողջականութեան սկզբունքը ոչ միայն Հայաստանի համար այլեւ Ազրպէյճանի, կեդրոնանալով Լեռնային Ղարաբաղի հայերու իրաւունքներուն եւ ապահովութեան երաշխաւորութեան վրայ, առանց աջակցելու անոնց անկախութեան ձգտումներուն։ Ֆրանսայի շրջանային իշխանութիւնները ստանձնեցին աւելի համարձակ նախաձեռնութիւններ աջակցելու Լեռնային Ղարաբաղի հայերուն։ Մինչ ԱՄՆ եւ ԵՄ չփորձեցին մարդասիրական օգնութիւն ուղարկել Լեռնային Ղարաբաղ Ազրպէյճանի կատարած շրջափակումին ժամանակ, նոյնիսկ երբ 2023 Յուլիսին սով սկսաւ, Փարիզի քաղաքապետը եւ քանի մը ֆրանսացի խորհրդարանականներ, իբրեւ շրջանային նախաձեռնութիւն, 2023 Օգոստոսին մարդասիրական բեռնատարներու շարասիւն մը ղրկեցին Լեռնային Ղարաբաղի հայերուն։ Սակայն Ազրպէյճանի սահմանային ծառայութիւնները արգիլեցին այս օգնութեան մուտքը տարածք։ Ապա ֆրանսական կառավարութիւնը 2023 Սեպտեմբերին 29 միլիոն եւրոյի մարդասիրական օգնութիւն յատկացուց Հայաստանին, որուն յաջորդեց յաւելեալ 15 միլիոն եւրօ՝ իբրեւ անյապաղ օգնութիւն Դեկտեմբերին Լեռնային Ղարաբաղի տարահանուած հայերուն։

2023 Հոկտեմբերին, Լեռնային Ղարաբաղի վրայ Ազրպէյճանի կատարած վերջնական ռազմական յարձակումէն ետք՝ որ առաջնորդեց տէ ֆաքթօ պետութեան կազմալուծութեան եւ հայերու բռնի տեղահանումին ու էթնիք զտումին, Ֆրանսայի Արտաքին Գործոց Նախարարուհի Քաթրին Քոլոննա այցելեց Հայաստան եւ Ազրպէյճան։ Ան Հայաստանին խոստացաւ տրամադրել ռազմական սարք, նկատի ունենալով երկիրին ինքնապաշտպանական պահանջը։ Աւելի ուշ Հոկտեմբերին, Ֆրանսա յայտարարեց իր առաջին ռազմական սարքի վաճառքը Հայաստանին։ Ասով Ֆրանսան դարձաւ ՆԱԹՕ-ի եւ ԵՄ-ի առաջին երկիրը՝ որ խզեց Հայաստանի ռազմական սարք տրամադրելու թապուն, հակառակ որ Հայաստան կը մնայ ՀԱՊԿ-ի պաշտօնական անդամ, նոյնիսկ եթէ փաստացիօրէն սառեցուցած է իր անդամագրութիւնը։ Ալիեւ տուաւ կտրուկ պատասխան, յայտարարելով՝ որ Ֆրանսայի զէնքերու մատակարարումը Հայաստանին պիտի չյառաջացնէ խաղաղութիւն այլ պիտի հրահրէ նոր հակամարտութիւն։ Աւելցուց որ եթէ տարածաշրջանին մէջ որեւէ նոր հակամարտութիւն ծագի, պատասխանատուն պիտի ըլլայ Ֆրանսան։

Իբրեւ արդարացում օգտագործելով Ֆրանսայի եւ Հայաստանի միջեւ յառաջիկայ պաշտպանական համագործակցութիւնը, Ազրպէյճան պոյքոթեց Հայաստանի հետ հանդիպումը՝ որ կայացաւ ԵՄ-ի, ԱՄՆ-ի, Ֆրանսայի եւ Գերմանիոյ աջակցութեամբ, Կրանատայի 2023 Հոկտեմբերի Եւրոպական Քաղաքական Համայնքի գագաթնաժողովի ծիրէն ներս։ Ասիկա նաեւ կը յաջորդէր Գերմանիոյ եւ Ֆրանսայի ընդդիմութեան Թուրքիոյ մասնակցութեան համար, որ Ազրպէյճանի առաջ քաշած պահանջ մըն էր։ Պաքու յայտարարեց՝ որ անընդունելի է Ֆրանսայի մասնակցութեամբ որեւէ ձեւաչափ, իր «հայանպաստ յայտարարութիւններուն» համար։ Կրանատայի հանդիպումը եզրափակուեցաւ Հայաստանի անկախութիւնը, ինքնիշխանութիւնը, տարածքային ամբողջականութիւնը եւ սահմաններու անխոցելիութիւնը հաստատող յայտարարութեամբ։ Պաքու սկսաւ պոյքոթել Արեւմտեան միջնորդութիւնը Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ եւ սկսաւ նոր ծաւալապաշտ պահանջներ ներկայացնել Հայաստանին։

2024 Յունուար 17-ին Ֆրանսայի Սենաթը ընդունեց բանաձեւ՝ դատապարտելով 2023 Սեպտեմբերի Ազրպէյճանի ռազմական գործողութիւնը Լեռնային Ղարաբաղի հայերուն դէմ, որ յանգեցուց էթնիք զտումի եւ հայկական մշակութային ժառանգութեան աւերումին։ Ան դատապարտեց նաեւ 2021-2023-ին Ազրպէյճանի բռնագրաւումը Հայաստանի սահմանային տարածքներուն։ Այս բանաձեւը իր տեսակին մէջ առաջինը չէր։ Եւրոպական Խորհրդարանը, Եւրոպայի Խորհուրդի Խորհրդարանական Ժողովը եւ զանազան ԵՄ անդամ պետութիւններ եւս նման բանաձեւեր ընդունած են 2023-2024-ին։ Այս բանաձեւերը յառաջացուցած են Ազրպէյճանի ուժեղ արձագանգը, որ կը փորձէր խուսափիլ իր գործողութիւններու պատասխանատուութենէն։

Հայաստանի ինքնիշխանութիւնը պաշտպանելու ֆրանսական յանձնառութիւնը ընդգծուեցաւ 2024 Յունուարի ֆրանսական դիւանագիտական մարմինին եւ Զինուած Ուժերուն հասցէագրուած նախագահ Մաքրոնի ամանորեայ ուղերձին մէջ։ 2024 Փետրուարին, Փարիզի մէջ կայացած Մաքրոնի եւ Փաշինեանի համատեղ մամուլի ասուլիսին, Ֆրանսայի նախագահը իր համերաշխութիւնը յայտնեց Հայաստանին եւ հարկադրեց Ազրպէյճանին «յարգել Հայաստանի տարածքային ամբողջականութիւնը առանց որեւէ երկդիմութեան»։ Ան նաեւ ուշադրութիւնը հրաւիրեց Արդարադատութեան Միջազգային Դատարանի հրահանգներուն Ազրպէյճանին՝ ապահովելու Լեռնային Ղարաբաղի հայերու վերադարձի իրաւունքը։

2024 Փետրուարին, Ֆրանսայի Զինուած Ուժերու նախարար Սեպասթիէն Լըքորնիւ այցելեց Հայաստան։ Ասիկա Ֆրանսայի 4

## 1 ՊԱՇՇԱՐ ԱԼ-ԱՍԱՏԻ ԱՆԿՈՒՄԸ...

մարտութիւնը աւարտեցաւ ի նպաստ Թուրքիոյ, որ այսպէսով պիտի կրնայ նաեւ շահագործել քուրտերուն գոյութիւնը Սուրիոյ մէջ՝ քրտական հարցին աւելի ուժեղ հարուած տալու համար։ Չկայ արաբական յաղթանակ՝ արաբական այս երկիրին մէջ։ Երբ իսլամականներու ձեռքով Սուրիա մտած է Թուրքիա (կամ կատարուած որեւէ այլ արտաքին միջամտութիւն), այլեւս չկայ նաեւ պետութեան ամրացումի կարելիութիւն։

Այս բոլորը բաւարար չէ, Դեկտեմբեր 9-10-ին Իսրայէլ աւելի՝ քան 250 օդային հարուածներ կը հասցնէ Սուրիոյ խորքերը՝ մինչեւ Դամասկոս, յատուկ ընտրուած տարածքներու եւ կառոյցներու վրայ, ալ աւելի դժուարացնելու համար պետութեան յետագայ վերականգնումը։

Քաղաքական աքթիւիսթ, գրող, լրագրող, պատմաբան Թարիք Ալի, *Ճանապարհները դէպի Դամասկոս* յօդուածին մէջ (*Sidecar* - New Left Review's Blog, 9 Դեկտեմբեր) կը նախատեսէ՝ որ «Իրաքի եւ Լիպիոյ նման, ուր քարիւղը կը գտնուի ԱՄՆ-ի տիրապետութեան տակ, Սուրիա պիտի դառնայ ամերիկաթրքական համատեղ գաղութ»։

Հայերուս բնական հարցումն է՝ ի՞նչ պիտի ըլլայ սուրիահայութեան ապագան։ Հաւանական է տեղի ունենայ արտագաղթի նոր հոսանք, բայց ընդհանուր ապագան, անշուշտ, պիտի որոշէ տեղական զարգացումները։

Բայց եթէ ապագան չենք կրնար կարդալ, գոնէ անցեալը կարելի է ուրուագծել։ Ասատ ընտանիքը ազգային-կրօնական առումով կը պատկանէր փոքրամասնութեան՝ ալաուիներուն։ Իր իշխանական մնայունութեան համար ան պէտք ունէր Սուրիոյ փոքրամասնութիւններուն աջակցութեան, հետեւաբար վարեց անոնց ի նպաստ քաղաքականութիւն։ Ամբողջ փոքրամասնութիւնները միասին կը դառնային մեծամասնութիւն։ Հայերը, իբրեւ հաւատարիմ (լոյալ) համայնք, դրականապէս օգտուեցան այս քաղաքականութենէն եւ զարգացուցին սուրիահայ մշակոյթը։ Յատկապէս Հալէպը, որ Ասատներէն առաջ համայնքէ դարձած էր համայնքայնութիւն (համայնքը անպայմանօրէն չէ որ կ'ունենայ համայնքայնութեան բնորոշիչ, եւ Սփիւռքի համայնքներուն մեծամասնութիւնը կը մնայ համայնք), պահպանեց այդ յատկանիշը, քիչ պատահող երեւոյթ մը սփիւռքահայ արդի պատմութեան մէջ։ Սուրիոյ մէջ արգիլուած ըլլալով ազատ խօսքը, քաղաքական միտքը եւ 4

## ԱՐՄԱՆ ԹՕՔԱԹԵԱՆ
## 2 Ռաւինիայի ամառնային օփերա

Ravinia,' *Musical Courier*, 16 August 1923, Vol. LXXXVII, No. 7, p. 10.

29. 'Ravinia Concert,' *Chicago Daily Tribune*, 23 July 1923, p. 17. Rene Devries, '*L'Amico Fritz* Given a Fine First Performance at Ravinia,' *Musical Courier*, 2 August 1923, Vol. LXXXVII, No. 5, p. 5. Edward Moore, 'Florence Easton Wins More Ravinia Honors,' *Chicago Daily Tribune*, 24 July 1923, p. 15.

30. Edward Moore, 'Florence Easton Wins More Ravinia Honors,' *Chicago Daily Tribune*, 24 July 1923, p. 15.

31. 'Opera at Ravinia,' *Chicago Sunday Tribune*, 29 July 1923, part 7, page 5. Renes Devries, '*Tales of Hoffmann Heard* for the First Time This Season at Ravinia,' *Musical Courier*, 9 August 1923, Vol. LXXXVII, No. 6, p. 5. Farnsworth Wright, 'With Three More Revivals in Sixth Week Ravinia has Eclipsed its Past,' *Musical America*, 11 August 1923, Vol. XXXVIII, No. 16, p. 1.

32. Renes Devries, '*Tales of Hoffmann Heard* for the First Time This Season at Ravinia,' *Musical Courier*, 9 August 1923, Vol. LXXXVII, No. 6, p. 5.

33. 'Ravinia Opera,' *Chicago Daily Tribune*, 31 July 1923, p. 15. Edward Moore, '*Tales of Hoffman* as Sung at Ravinia is Different, but Better,' *Chicago Daily Tribune*, 2 August 1923, p. 15. Renes Devries, '*Tales of Hoffmann Heard* for the First Time This Season at Ravinia,' *Musical Courier*, 9 August 1923, Vol. LXXXVII, No. 6, p. 5. Farnsworth Wright, 'With Three More Revivals in Sixth Week Ravinia has Eclipsed its Past,' *Musical America*, 11 August 1923, Vol. XXXVIII, No. 16, p. 1-2. 'Tokatyan Scores in *Tales of Hoffman*,' *Musical Courier*, 23 August 1923, Vol. LXXXVII, No. 8, p. 10. Robert C. Marsh, 'The Annals of the Ravinia Opera: Part 3: 1922-1926,' *Opera Quarterly*, January 1997, Volume 14, issue 1, p. 86.

34. Edward Moore, '*Tales of Hoffman* as Sung at Ravinia is Different, but Better,' *Chicago Daily Tribune*, 2 August 1923, p. 15.

35. Renes Devries, '*Tales of Hoffmann Heard* for the First Time This Season at Ravinia,' *Musical Courier*, 9 August 1923, Vol. LXXXVII, No. 6, p. 5.

36. Farnsworth Wright, 'With Three More Revivals in Sixth Week Ravinia has Eclipsed its Past,' *Musical America*, 11 August 1923, Vol. XXXVIII, No. 16, p. 2.

37. Paul R. Martin, *Journal of Commerce*. Քաղուածքը կատարած եմ այստեղէն՝ 'Tokatyan Scores in *Tales of Hoffman*,' *Musical Courier*, 23 August 1923, Vol. LXXXVII, No. 8, p. 10.

38. Farnsworth Wright, *Chicago Herald and Examiner*. Քաղուածքը կատարած եմ այստեղէն՝ 'Tokatyan Scores in *Tales of Hoffman*,' *Musical Courier*, 23 August 1923, Vol. LXXXVII, No. 8, p. 10.

ՋԱՀԱԿԻՐ



## ՊԱՇՇԱՐ ԱԼ-ԱՍԱՏԻ ԱՆԿՈՒՄԸ...

անկախ մտաւոր բռնկումները, սուրիահայութիւնը եւ յատկապէս հալէպահայութիւնը մշակութապէս մեծ զարկ տուաւ արուեստի եւ գրականութեան՝ մշակոյթ մշակոյթի համար սկզբունքով, արտադրելով գեղագիտական հրաշալիքներ, կարեւոր ներդրումներ ունենալով նաեւ «անվնաս» բանասիրութեան ծիրէն ներս: Այսօր, համայնքին համայնքայնութիւնը բռնած է իր կազմալուծումի ուղին:

Գալով բուն Հայաստանին, անոր արտաքին քաղաքականութեան մէջ Սուրիան մասնաւոր տեղ չէր գրաւեր: Բայց էական տեղ կը գրաւեն այնտեղ խաղացող երկու արտաքին ուժերը՝ Թուրքիա եւ Ռուսաստան: Առաջինի «յաղթանակ»-ով երկրորդին վրայ տակաւին շատ բան չի փոխուիր Հայաստանի արտաքին քաղաքականութեան մէջ, բայց կրկին անգամ ցոյց կու տայ յարաբերութիւններու այն ծուղակը՝ որուն մէջ ինկած է Հայաստան ռուս-թրքական յարաբերութիւններուն պատճառով, յարաբերութիւններ՝ որոնք ո՛չ ուղղակի հակամարտային են եւ ո՛չ ալ ամբողջապէս դաշնագրային, այլ պայմանականօրէն կարելի է անուանել դաշնագրային հակամարտութիւն, տեղ մը՝ համաձայնեցուած տարածքաբաժանում, ուրիշ տեղ մը՝ պայքար երրորդ ուժերու ձեռքով: Նէօլիպերալ դարաշրջանի բնորոշ մրցակցութիւն, մրցակցութեան ամենակործանիչ տեսակը:

Ա.

## ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ԵՒ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿԵՂԾ ՊԱՏՈՒՄՆԵՐՈՒ ԱՐՇԱՒԸ ԸՆԴԴԷՄ ՖՐԱՆՍԱ-ՀԱՅԱՍՏԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ

Պաշտպանութեան Նախարարութեան ղեկավարի մը երբեւէ առաջին այցելութիւնն էր Հայաստան: Ան յանձնեց ռազմական սարք եւ ստորագրեց պաշտպանական համագործակցութեան համաձայնագիրներ, որոնք կը բովանդակէին զրահապատ փոխադրամիջոցներու, զէնքերու եւ ռազմամթերքի տրամադրում, ինչպէս նաեւ օդային պաշտպանութեան կարողութիւններու բարելաւում: Թէ՛ Փարիզ եւ թէ՛ Երեւան շեշտեցին այս կարողութիւններուն պաշտպանական բնոյթը: 2024 Փետրուարին Փարիզի մէջ կայացած նախագահ Մաքրոնի հետ համատեղ մամուլի ասուլիսին, Փաշինեան յայտարարեց՝ որ Հայաստան նպատակ ունի «տարածաշրջանին մէջ կազմել ճիշդ հաւասարակշռութիւն», պաշտպանելով իր «օրինական, ինքնիշխան, միջազգայինօրէն ճանաչուած տարածքը, սահմանները, տարածքային ամբողջականութիւնը եւ անկախութիւնը»:

2024 Մարտին, Ֆրանսայի նորանշանակ վարչապետ Կապրիէլ Աթթալ նշեց՝ որ Ռուսաստան կը ծրագրէ «պատժել» Հայաստանը Արեւմուտքի հետ մերձենալու համար: Այսպէս, Ֆրանսա իր աջակցութիւնը կը յայտնէ Հայաստանին ոչ միայն ընդդէմ Ազրպէյճանի տարածքային ծաւալապաշտութեան այլեւ Հայաստանի ինքնիշխանութիւնը խարխլելու Ռուսաստանի փորձերուն: Այս դիրքը համահունչ է Մոլտովայի եւ Վրաստանի ինքնիշխանութեան նկատմամբ Ֆրանսայի աջակցութեան: Ֆրանսայի նորանշանակ Արտաքին Գործոց Նախարար Սթեֆան Սեժուրնէ Հայաստանի դէմ Ազրպէյճանի գործողութիւնները համեմատեց Ուքրաինայի նկատմամբ Ռուսաստանի յարձակումին, ըսելով որ այս տեսակ վարքը կը պահանջէ աւելի մանրակրկիտ հետախուզութիւն, որ կարեւոր պատում մըն էր ձեւաւորելու ԵՄ-ի եւ ԱՄՆ-ի վերաբերմունքը Ազրպէյճանի ծաւալապաշտութեան եւ Հայաստանի դէմ ուժի կիրառութեան նկատմամբ:

### ՀԱՅԱՍՏԱՆԻՆ ՖՐԱՆՍԱՅԻ ԱՋԱԿՑՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ԵՒ ՌՈՒՍԱԿԱՆ ԽԱԲԷԱԿԱՆ ՊԱՏՈՒՄՆԵՐՈՒ ԲԱՑԱՅԱՅՏՈՒՄ

Ֆրանսայի եւ Հայաստանի միջեւ զարգացող յարաբերութիւնները յառաջացուցին Ազրպէյճանի հետեւողական բացասական հակազդեցութիւնը: Ասիկա ակնյայտ է Ալիեւի, Արտաքին Գործոց Նախարարութեան եւ անոնց քարոզչական միջոցներուն խստօրէն ձեւակերպուած բազմաթիւ յայտարարութիւններուն մէջ: Արդարեւ, ան մասնաւորապէս յարձակողական դարձաւ երբ Ֆրանսան որոշեց Հայաստանի հետ սկսիլ պաշտպանական համագործակցութիւն: Ազրպէյճան սկսաւ մեղադրել Ֆրանսային՝ օգնած ըլլալու համար Հայաստանին «պատրաստել նոր պատերազմներու հող» եւ «խաթարել խաղաղութեան ջանքերը»: Ազրպէյճանի Արտաքին Գործոց Նախարարութիւնը պատասխանեց ըսելով՝ որ «տարածաշրջանին մէջ նոր լարում հրահրելու, խաղաղութիւնն ու կայունութիւնը խափանելու Ֆրանսայի նենգամիտ քաղաքականութիւնը ոչ մէկ արդիւնք պիտի տայ»:

2024 Ապրիլին Ալիեւ զգուշացուց. «Մենք չենք կրնար անտարբեր մնալ՝ մինչ Ֆրանսան, Հնդկաստանը եւ Յունաստանը կը զինեն Հայաստանը մեզի դէմ: Անոնք ասիկա կ՚ընեն բացայայտօրէն եւ ցուցադրաբար, այս ձեւով ակնյայտօրէն փորձելով բան մը փաստել մեզի... Եթէ մենք լուրջ սպառնալիք տեսնենք, ստիպուած պիտի ըլլանք լուրջ քայլերու դիմել»:

Այս պատումը ամբողջութեամբ կեղծ է որովհետեւ նոյնիսկ 2020-ի եւ 2023-ի Լեռնային Ղարաբաղի ռազմական յաղթանակներէն եւ Հայաստանի սահմանային շրջանները ներխուժելէ ետք, Ազրպէյճան շարունակեց ուժեղօրէն զինել ինքզինք եւ զարգացնել ռազմական ենթակառուցուածքը: Ան ստացաւ զրոհային սպառազինութեան եւ ռազմական սարքի կայուն մատակարարում Իսրայէլէ, Թուրքիայէ, Փաքիսթանէ, Իտալիայէ, Սերպիայէ, Պուլկարիայէ եւ ուրիշներէ: Հայաստանին տրամադրած Ֆրանսայի պաշտպանական ռազմական սարքը սահմանափակ է եւ չի կրնար համեմատուիլ սպառազինութեան եւ ռազմական սարքի այն հսկայ ծաւալին՝ զոր Ազրպէյճան ձեռք կը բերէ ուրիշ երկիրներէ: Բայց եւ այնպէս, Ազրպէյճան սկսաւ հարցականի տակ դնել Հայաստանի ինքնապաշտպանութեան իրաւունքը, հակասելով ՄԱԿ-ի կանոնադրութեան՝ որ իւրաքանչիւր անդամ երկիրի կու տայ ոչ միայն իր տարածքն ու ժողովուրդը պաշտպանելու իրաւունք այլ պարտաւորութիւն:

Ազրպէյճանի քարոզիչները նաեւ պնդեցին՝ որ Հայաստան «նոր տէր կը փնտռէ» փոխարինելու Ռուսաստանին, թելադրելով որ ան չի կրնար ըլլալ իրական ինքնիշխան երկիր: Այս տեսանկիւնը կ՚անտեսէ այն փաստը՝ որ Ֆրանսան ո՛չ խոստացաւ զօրք ուղարկել պաշտպանելու Հայաստանին եւ ո՛չ ալ կը փորձէ Հայաստանը դարձնել իրմէ կախուած: Փոխանակ, Ֆրանսան կը ձգտի Հայաստանին օգնել նուազեցնելու իր կախուածութիւնը Ռուսաստանէն, ամրացնելու ինքնիշխանութիւնը եւ վերակառուցելու պաշտպանական ոլորտը՝ զարգացնելով իր կարելիութիւններն ու կարողութիւնները: Ինչպէս նշեց Հայաստանի մէջ Ֆրանսայի դեսպան Օլիվիէ Տեքոթթինիէ՝ «Հայաստան-Ֆրանսա երկարաժամկէտ համագործակցութիւնը, ներառեալ պաշտպանական դաշտի համագործակցութիւնը, ոչ միայն կը վերաբերի ռազմական մատակարարութեան, որ անշուշտ կարեւոր է, այլեւ մարզումի, ներառեալ աւագ հայ սպաներու»:

Ռուսաստանի Արտաքին Գործոց Նախարարը սկսաւ արձագանգել այս պատումներուն, արտացոլելով իր աճող մերձեցումը Ազրպէյճանին ընդդէմ Հայաստանի: 2024 Մարտին, նախարարութեան խօսնակ Մարիա Զախարովա յայտարարեց, որ Ֆրանսա կը փորձէ ամրապնդել իր ներկայութիւնը Հայաստանի մէջ՝ «լրտեսելու դրացի պետութիւնները եւ արգիլելու Ազրպէյճանի հետ խաղաղութեան համաձայնութիւններու իրագործումը»: Մոսկուա նաեւ թելադրեց՝ որ «միամտութիւն» է հաւատալ թէ Փարիզ կրնայ երաշխաւորել Հայաստանի ապահովութիւնը: Ռուսաստան մեղադրեց Ֆրանսային՝ Ափրիկէի մէջ իր խաղաղապահ դերը ձախողելու մէջ, իսկ հիմա կը փորձէ այդ ձախողութիւնը փոխհատուցել խաղաղապահ դերով Կովկասի մէջ, առաջնորդուելով աշխարհաքաղաքական տենչով:

Ազրպէյճան, Ռուսաստան եւ Թուրքիա կը պաշտպանեն տեղայնութիւնը, պնդելով որ խաղաղութիւն, ապահովութիւն եւ բարգաւաճում ձեռք բերելու համար Հայաստան պէտք է կեդրոնանայ տեղական երկիրներու եւ խաղացողներու հետ յարաբերութիւնները զարգացնելու վրայ, փոխանակ «արտաքին խաղացողներու», ինչպէս Ֆրանսա, ԱՄՆ եւ ԵՄ: Անոնք դէմ են որ Հայաստան զարգացնէ իր պաշտպանական համակարգը եւ նուազեցնէ կախուածութիւնը Ռուսաստանէն, քանի որ ասիկա պիտի հաւասարակշռէ ուժային շարժիչը Ազրպէյճանի հետ: Անոնք նպատակ ունին կասեցնել ասիկա որպէսզի կարելիութիւն տան Ազրպէյճանին պարտադրել իր ծաւալապաշտ պահանջները Հայաստանին, ըլլայ սպառնալիքներու կամ ուժի իրական գործածութեան միջոցով, եւ խոչընդոտել Հայաստանի ապահովութեան եւ ինքնիշխանութեան ամրացումը: Ըստ Ալթայ Կոյուշովի՝ սակաւաթիւ անկախ քաղաքական վերլուծող մը Ազրպէյճանի մէջ, «խիստ յուսահատեցուցիչ էր Իլհամ Ալիեւի համար, որ կ՚ուզէր կարող ըլլալ իր պահանջները պարտադրել տկար Հայաստանի վրայ, բան մը որ պիտի չիրականանայ եթէ Երեւանը մտածէ յոյսը դնել Ֆրանսայի աջակցութեան վրայ»:

Ազրպէյճան եւ Ռուսաստան կ՚ուզեն տեսնել դիւանագիտօրէն մեկուսացած եւ առանց աջակցութեան Հայաստան մը՝ որ անկարող է պաշտպանել իր սահմաններուն ապահովութիւնը ընդդէմ ռազմական յարձակումի, որպէսզի շարունակեն մարտահրաւէր կարդալ Հայաստանի տարածքային ամբողջականութեան եւ ինքնիշխանութեան հանդէպ եւ պարտադրել իրենց գերիշխանութիւնը անոր վրայ: Անոնք նաեւ շահագրգռուած են Հայաստանը պահել կախուած Ռուսաստանէ մը՝ որ նեցուկ չի կանգնիր Հայաստանին ընդդէմ ազրպէյճանական յարձակումին, այլ համահունչ կ՚ընթանայ ազրպէյճանական պնդումներուն եւ պատումներուն՝ պահպանելու համար իր քաղաքական ազդեցութիւնն ու ռազմական ներկայութիւնը Հայաստանի մէջ:

Աւելին. Ֆրանսա-Հայաստան համագործակցութեան մասին Ազրպէյճանի եւ Ռուսաստանի կիրարկած կեղծ պատումները կ՚անցնին հռետորաբանութեան եւ ապատեղեկատուութեան արշաւներուն սահմանները: Վերջերս Ազրպէյճան Ֆրանսայի դէմ գործածեց աւելի յարձակողական եւ մեծապէս անսպասելի հիպրիտային պատերազմի մարտավարութիւն: Պաքու կը մեքենայէ հակագաղութատիրական զգացումները եւ տեղական բնակչութեան ինքնորոշումի ձգտումները Հարաւային Խաղաղական Ովկիանոսի ֆրանսական տարածքներուն վրայ, ինչպէս նաեւ Ֆրանսայի դէմ հակագաղութատիրական դժգոհութիւնները Մարոքի եւ Ենթասահարային Ափրիկէի մէջ: Այս մարտավարութիւնները պիտի ներկայացուին յառաջիկայ յօդուածներուն մէջ:

***EVN Report***

5 Յունիս 2024

https://evnreport.com/politics/part-i-evolution-of-french-support-for-armenia-amid-azerbaijans-aaggression/

Անգլերէնէ թարգմ.՝ Ա.